# Հ Ա Յ Ք

# Յ Ե Ղ Ի Ս Ա Բ Ե Թ Ո Ւ Պ Ո Լ Ի Ս

## Դ Ր Ա Ն Ս Ի Լ Ո Ւ Ա Ն Ի Ո Յ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ԺԱ.

ՀԱՅՔ

## ՅԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼԻՍ

ԴՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ

**1680–1779.**



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1893.

# ՀԱՅՔ

# ՅԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼԻՍ

## ԴՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ

---

### ԱՅՍ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

*ՔԱՂՈՒԱԾ ԴՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ ԻՇԽԱՆԱՑ ԵՒ ԱՒՍՏՐԻՈՅ ԿԱՅՍԵՐԱՑ ԱՌԱՆՁՆԱՇՆՈՐՀՈՒԹԵԱՆՑ ԿՈՆԴԱԿՆԵ-ՐԷՆ, ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ ԵՒ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ :*

**1680—1779.**



---

*…ակիչն որեւէ տեսակ թարգմանութիւն իւրն կը վերապահէ*



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1893.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Բոլորովին պատահմունք մըն է առաջիկայ մատենիս հրատարակութիւնը:

Քաղքիս դիւանատան մէջ խուզարկած ու հնութիւններ փնտռած ատենս, հանդիպեցայ հայերէն պաշտօնական գրութիւններու: — Եւ որովհետեւ ասոնք ազգային գաղթականութեան պատմութեան վերաբերեալ շատ խնդիրներ կը պարունակէին, որոնք հետաքրքրական բաներ էին ինծի համար, ժողովեցի զանոնք ու յօղուածի ձեւով Վիեննայի “Հանդէս,, ին խրկեցի՝ գիտնական ամսաթերթին մէջ հրատարակուելու համար, մտածելով որ թերեւս ասոնք ալ ուրիշ նմանօրինակ յօղուածներու պէս. հայ հասարակութենէն, իբրեւ ազգային նիւթեր՝ սիրով պիտի ընդունուին ու պիտի կարդացուին:

Եւ ահա, երբ մէկ երկու յօղուած մամուլը թողուց, առաջարկուեցաւ ինծի, որ այն հրատարակութիւններն, ինչպէս յաջորդաբար գալի յօղուածները մատենի մը մէջ ամփոփուին ու այնպէս հրատարակուին:

Բնական է, որ ես մատեան յօրինելու մտօք չժողովեցի ու չգրեցի զանոնք, այլ պարզապէս իբրեւ լրագրի յօղուածներ, որոնք — ընդհանրապէս խօսելով — այնպէս չեն շարադրուիր, ինչպէս սովորաբար մատեանները կը գրենք: — Բայց յանձն առի այս բանս կէս մը յօժարութեամբ, կէս մը ակամայ. վասն զի յանկարծակիի եկայ:

Զիարդ եւ իցէ. նոր բան մը՛ն է առաջիկայ մատեանը: Ու ես մխիթարանքով եւ սիրով բայց միանգամայն կսկծմամբ սրտի գրեցի առաջիկայ գործքը: Մխիթարանքով՝ վասն զի համոզուեցայ, որ ծառայութիւն մը կը մատուցանեմ ազգիս, երբ գո՛նէ տպագրութեամբ կ'անմահացընեմ մեր նախնիներուն յիշատակաց արժանի գործքերը. երբ՝ կորստեան ճամբուն ծայրի՛ն եղած այնչափ յիշատակարանները դարաւոր փոշիներէն, մշտնջենապէս մոռցուելու դատապարտութենէն եւ զուցէ նոյն իսկ կորստեան վտանգէն կ'ազատեմ: Ցաւով ու կսկծմամբ սրտի. վասն զի այս յիշատակարաններէն — իբրեւ թէ հայելւոյ մը մէջ — կը տեսնեմ ակներեւ, թէ մեր պապերը՝ մեզմէ որչափ աւելի էին, թէ՛ ազգութեամբ, թէ՛ գործունէութեամբ թէ՛ զոհողութեամբ, թէ՛ օտարաց առջեւ ունեցած հեղինակութեամբ. թէ՛ գիտութեամբ, թէ՛ հարստութեամբ, թէ հաւատքով . . .:

Արդ ՝ կրցածիս չափ ժողոված ամփոփած եմ առաջիկայ մատենիս մէջ՝ Դրանսիլուանիոյ իշխանաց ու Աւստրիոյ կայսերաց՝ Եղիսաբեթուպոլսոյ Հայոց տուած հրամանագիրներն ու շնորհած արտօնութեանց եւ առանձնաշնորհութեանց կոնդակները, դիւանական արձանագրութիւնները, պաշտօնական գրուածքներն, եւ տարեգրոց յիշատակարանները:

Բայց աւա՛ղ, որ գործքը շա՛տ թերակատար ու պակասաւոր է: Մէկ կողմանէ անո՛ր համար, որ գործոյս ընթացքին մէջ շատ մը անանկ բոլորովին նոր յիշատակարաններու եւ գրուածքներու հանդիպեցայ, որոնք պատմութեանս մեծ լուսաւորութիւն կը մատուցանէին, եթէ ձեռքս ըլլային գործքս սկսած ատենը: — Ասոնք՝ բնականապէս դուրս մնացին: — Թերակատար է մէկալ կողմանէ անո՛ր համար, վասն զի բազմաթիւ ձեռագիր, արձանագրութիւն, պատճէն, հրահանգ կը պակսին, որոնք

անտարակոյս կային ատեն մը․ որովհետեւ ասոր յայտնի ապացոյցներ են — ձեռուընիս գտնուած — խել մը այնպիսի գրութիւններ, որոնք կ'ենթադրեն ասանկ գրուածոց գոյութիւնը: Տարակոյս չկայ, որ ասոնք մեր գործքը կ'ամբողջացընէին:

Աս այսպէս ըլլալով ալ պէտք ենք խոստովանիլ որ Եղիսաբեթուպոլսոյ Ազգայինք ճանաչման ու գովութեան արժանի են, որ այնչափ պաշտօնական կարեւոր գրութիւններ կրցած են պահել մինչեւ ցայսօր: Ասիկայ մեծ արդիւնք է: Եւ եթէ աչուընիս մէյ մը չորս դին դարձընենք, կը գտնենք թէ Դրանսիլուանիոյ եւ ոչ մէկ քաղքին մէջ, այնչափ ազգային յիշատակարան մէկ տեղ դիզուած կայ որչափ Եղիսաբեթուպոլիս: Մեծ արթնութիւն, քաղաքաբաշխութեան մեծ ճիգ արժած պէտք է որ ըլլայ զասոնք պահպանելն ու ներկայ վիճակի մէջ պահելը:

Սակայն մէկալ կողմանէ չենք կրնար չզարմանալ այն անհոգութեան վրայ, որ քաղաքային իշխանութիւնն ըրած է, ներելով՝ որ այս պաշտօնական գրութիւնները՝ դիւանատունէն հեռացուին եւ ցիրուցան ըլլան:

Մասնաւորաց քով հանդիպեցանք, քանի մ'անանկ արձանագրութիւններու եւ իշխանական պատճէններու, որոնք ամենեւին իրենց տէրերուն — որոնց քով կեցած էին — վերաբերեալ բաներ չէին: Հաւանական է, որ ասոնք այնպիսի կերպով մը հասած են ասոնց ձեռքն, որ պապերնին անոնցմով գործ ունենալով՝ քովերնին առած պահած ու մէյ մ'ալ ետ դարձուցած չեն: Այս կերպով՝ առանց գիտնալու, մնացած են այս զանձերն անանկ մարդիկներու ձեռք՝ որ ամենեւին անոնց յարգը չճանչնալով ու հայերէն կարդալ չգիտնալով՝ իբրեւ աւելորդ բան մը համարած՝ անպէտ թղթերուն հետ պահած ու ետքէն նետուած են: Ասանկ շատ գրութիւն գործոյս մէջ առած եմ:

*Տոհմային պատմութեան այս մասն, անո՛ր համար հետաքրքրական կը համարիմ, որովհետեւ ասպարէզն, ուր որ կը քալենք, բոլորովին անծանօթ երկիր մըն է* **(terra incognita).** *ուր ոչ ոք պտըտած. որուն հետ մինչեւ հիմակ ոչ ոք զբաղած է. — որ կը դնէ առջեւնիս անանկ պատմութիւն մը, որուն վրայ մինչեւ հիմակ ազգային եւ օտարազգի գիտնականք ոչ թէ միայն չեն խօսած, այլ եւ ո՛չ իսկ գաղափար ունեցած են:*

*Առաջիկայ մատեանն այն առաւելութիւնն ալ ունի, որ ասոր միջնորդութեամբ՝ ձեռուընիս իրական բան մ'ունինք Դրանսիլուանիոյ Հայոց գաւառական լեզուին վրայ: Ինչպէս յայտնի է, իրենց լեզուն մինչեւ հիմայ ժողովրդեան բերնէն գիտենք միայն: Արդ գործոյս մէջ կը գտնենք նորանոր բացատրութիւններ, ասութեան այլեւայլ կերպեր, խօսքեր, բառեր. մէկ խօսքով ամէն տեսակ բանի, ամէն ճիւղի վրայ խօսող լեզու մը. ուստի բանասէրք ու լեզուաբանք յօրինաւոր քերականութիւն մը կրնան ձեւել:*

*Լեզուն, թէպէտ բոլորովին խորթ, աղաւաղեալ ու օտարազգի բառերով խառն է. այսու ամենայնիւ յայտնապէս կ'երեւայ անոր մէջ արձանագրութեանց վսեմ ու կտրուկ ոճը եւ դիւանական գրութեանց կերպը: Բաց ասկէ կը գտնենք այս գրութեանց ներքեւը ծածկեալ հաստատուն բնաւորութիւն, որոշ կամք, ազատաշարժ ձեռնարկութեան ոգի, ընթացիկ ոճ, մեկին պատմութիւն ու շատ տեղ հեռահայեաց քաղաքագէտ տեսութիւն, խոհեմ քաղաքականութիւն ու խորին գիտութիւն:*

*Կը խոստովանիմ, որ պատմութեանս քանի մը տեղերն — մանաւանդ ուր տեղեաց ու փողոցաց անուանակոչութիւններ կան — չոր, ձանձրացուցիչ, դժուարահասկընալի՝ մանաւանդ թէ անըմբռնելի ալ են: Սակայն ասոնք ալ պատմութեանս ամբողջութեան մասը կը կացուցանեն եւ եթէ հիմակ ոչ, ապագայ ժամանա-*

կին խուզարկուաց ու բանասիրաց հասար մեծապէս օգտակար բաներ պիտի համարուին:

Թէպէտ տարիներով ուսումնասիրած եմ տեղւոյս լեզուն բայց եւ այնպէս քերականութեան ու բառագրոց պակսութեանը պատճառաւ, տեղ տեղ բառերու ամենաճիշդ նշանակութիւնը չգիտնալով սխալ հասկըցած ու ըստ հետեւորդի՝ պատմութեան սխալ իմաստ տուած եմ: — Այսպէս պատահեցաւ ի մէջ այլոց՝ ռ ա ւ ե ñ բառին (էջ 118), որուն իմաստը՝ տալիք հասկըցայ ու մեկնեցի. բայց ետքէն սխալն իմանալով ուղղած ու ճիշդ նշանակութիւնը (բախտ) դրած եմ: Այսպէս գ ղ ճ ա վ ա բառին ճշմարիտ իմաստին — խշըրտոց, աղմուկ — քով՝ ուրիշ նշանակութիւն ալ (բշոց՝ էջ 254) տուած եմ: Նմանապէս վ օ ղ ñ ի բառին իմաստն ի սկզբան անդ չկրցայ հանել. — "ով որ, ոմն որ,, հասկըցած էի. — բայց ետքէն ասութեան կերպէն ու յարաբերութիւններէն իմացայ, որ ուրիշ բան չի կրնար նշանակել, եթէ ոչ՝ հրաման, ներումն, թոյլտուութիւն եւ այլն:

Իրերն այս վիճակին մէջ ըլլալով ալ, մենք մեր կողմանէ հանգիստ խղճմտանքով ու խաղաղ սրտով կըրնանք ըսել թէ՝ Առաջին քայլն առած, սկիզբն ըրած ենք, Խուզարկութեան ճամբան, գործելու ասպարէզը բացած՝ ղժուարութեան մէկ մասը հարթած ենք: Թերի գործը մեր յաջորդները, մեր թոռները շարունակելով կատարեալ ընեն եւ զպակասը լեցընեն: Մեր կարողութիւնն առ ժամս այսչափ էր:

Կը վերջացընեմ ըսելիքս մեր պապերուն — 1758ին — մեզի թողուցած յիշատակաց արժանի խօսքերովը. ‘Ասոր ետեւանց, մեր բօղէրիղաչն տեսնելով թէ որքան կարողութիւններն բերիլէ, թէ խելքով, թէ աշխատանքով ու թէ ստըկով զՊատուելի հասարակն ընկերիլէ, պատճառ եղողնուն ողորմիս տայն... եւ իրենք ալ

ջանան, սիրով ... եւ միամտութեամբ ապրելու եւ բանը յառաջ տանելու. օրինակ առնելով իրենց նախնեացն մօտէն ... ճանչնալով թէ հաւատոյ սէր եւ միամտութիւն կեցիլ է, որ այնպէս մեծ բանի խլվիլին մեր նախնիքն օտար երկրի մէջ: Նայ մինք ալ հետեւինք իրենց, զէրայ ստեղծողն պի ընկերէ զմեզ ալ, որպէս զմեր նախնիքն ընկերիլ է:„

Եղիսաբեթուպոլիս 1893, Նոյեմբեր 15.

Հ. ԳՐԻԳՈՐ Վ. ԳՈՎՐԻԿԵԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԴՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ ԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼԻՍ

### ՀԱՅԱԲՆԱԿ ՔԱՂԱՔԻՆ

### 1.

*Անցած դէպքերը, վաղեմի պատահարներն երեւան հանելը՝ չէ թէ միայն զգածում մը, այլ նաեւ պարտք մըն է: Աս կը պահանջէ մեզմէ արդարութիւնը, որ յայտնուելու կը փափաքի. ան կը պահանջէ ժամանակիս խուզարկութեան հոգին, որ մէկ կողմանէ ճարակ կը մատակարարէ մտաց լուսոյն ու մէկալ կողմանէ կը լուսաւորէ քօղով ծածկուած անցեալ մը:*

*Դրանսիլուանիոյ մէջ տիրող ներքին կողմնակցութիւնները, նուաղապետութիւնն ու շարունակեալ խռովութիւնները զերկիրն բոլորովին փճանալու սահմանը բերած էին, երբ անդիէն՝ իր արեւելեան սահմանները երեւան կ'ելլէ ազգ մը, "մէկ ժրաջան, կարողութիւն ունեցող, արդարակորով ազգ մը„՝ վաճառականութեան ու արուեստից օծեալը, աքսորուած ու նեղուած պզտիկ հայ ազգը՝ — իւր հաւատքին մարտիրոսն՝ — որ նոր հայրենիք մը կը խնդրէ իրեն:*

*Դրանսիլուանիոյ այն ատենի իշխանը՝ աղէկ ճանչնալով իր երկրին ողորմելի վիճակը,*

որպէս զի արդէն շատ բաներու մէջ պակսութիւն կրող երկիրը ճարտար վաճառականներով եւ կարգաւորեալ արուեստագէտներով հարստացնէ, եւ ասով թէ երկրին ազդեցութիւնը տեղը բերէ եւ թէ իր անուան վրայ խօսելու աւելի ընդարձակ շրջան մը տայ՝ սիրով ընդունեցաւ օտարները։

Ազգայինք երկու անգամով պանդխտեցան այս իրենց Նոր Հայրենիքը։ — Առաջին “պզտի գաղթականութիւնը„ հանդիպեցաւ Գէորգ Ռագոցի Բ.ի ատեն 1654ին։ Ձեռուընիս մնացած հատակոտորներէն այսչափ միայն գիտենք՝ որ իրենց առաջնորդներն եղած ըլլան Մարտիրոս Գանտրա անուն մէկն եւ Ազպէյ եղբայրք։ Սակայն այս հեղու չմնացին երկայն ատեն երկրին մէջ. վասն զի ներքին ու արտաքին խառնակութիւնները վերանորգուելով՝ զիրենք կամ իրենցմէ շատերն ստիպեցին որ շուտ մը երկիրը թողուն ու իրենց յառաջուան տեղերը քաշուին։ — Ոմանք՝ Կյէրկյէօյի երկրին արեւելեան սահմանները մնացին։

Երկրորդ — բուն ու խմբովին — գաղթականութիւնը պատահեցաւ (1672ին), երբ Մոլտաւիայի իշխանը Հայոց կրօնին դէմ հալածանք հանեց։ Ներս գաղթողներուն մէջ կը գտնենք ի մէջ այլոց՝ իրենց առաջնորդը Զիլիֆտար Մինաս եպիսկոպոսն եւ ուրիշ եկեղեցականներ։ Ասոր վրայ Կյէրկյէօ Սէնդ Միգլօշի (Ճուրճով) ուղղափառ հայ եկեղեցւոյն ժողովրդապետութեան պատմութեան մէջ յաջորդ տեղեկութիւնները

կը գտնենք գրուած. "Ապա մինչ եկն բազմութիւն հայոց յերկրէն պուղտանաց եկն ընդ նոսա գերապայծառ եպիսկոպոսն իւրեանց Մինաս վարդապետ Զիլիֆտար օղլու կոչեցեալն եւ այլք բազումք քահանայք, որոց անուանք են այսոքիկ. պ. տէր եղիայն սեչովցի, մընարուլ անուանեալն որ էր աւագ քահանայ ընդ բոլոր երկիրն պուղտանաց ... պ. տէր ասվատուրն խօճա նիգօշեան, որ աստ ձեռնադրեցաւ ի նոյն վերոյգրեալ մինաս վարդապետէ„ : Ասոնցմէ զատ պատմութիւնը կը յիշատակէ նաեւ պ. Զաքարիա, Թէոդորոս ու Խաչատուր քահանաները:

Գլխաւոր տեղերն զորոնք աւելի բազմութեամբ բռնեցին Հայերն — ինչպէս ամէնուն յայտնի է — եղան՝ մանաւանդ Կերլա, Կյէրկյէօ, Պաշտպալով, Սէբվիզ, Պիսդրից, Չիք-Ճօմլեօ, Գանտա, Բէդէլէ, Կէօրկէն եւ այլն: —

Առաջիկայ գրութեանս նպատակն է այս գաղթականութեանց տեղերուն մէջէն առանձինն իմն կերպով Եղիսաբեթուպոլսոյ վրայ խօսիլ: Ասոր վրայօք՝ քաղքիս դիւանատան մէջ գտնուած արձանագրութիւնները, մուրհակներն ու արտօնութիւններն ըստ մասին ընդօրինակուած ու ըստ մասին թարգմանուած՝ պիտի տեսնեն ընթերցողները՝ Ա. Թէ ե՞րբ եկած հաստատուած են Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք իրենց հիմակուան բնակութեան տեղը: Բ. Թէ Դրանսիլուանիոյ իշխաններէն ու Աւստրիոյ կայսրներէն ի՞նչ առանձնաշնորհութիւններ ու արտօնութիւններ ընդունած են. եւ մանաւորապէս Գ.

Թէ ի՞նչ միջոցներ բանեցընելով եւ ի՞նչ ճամբաներ բռնելով եղած են Հայք սեպհական տէր հիմակուան Եղիսաբեթուպոլիս քաղաքին եւ իր շրջակայ գեղերուն, արքունի կալուածներուն ու երկիրներուն։

* *
*

Պատմութենէն գիտենք թէ քանի մը առաջին կարգի հայ գերդաստանք 1680ին մասնաւորապէս Միքայէլ Աբաֆիի գթութեան դիմելով՝ խնդրած ըլլան որ իւր յատուկ իշխանական կալուածներուն մէջ իրենց բնակութեան տեղ մը շնորհէ։ Իշխանը խնդիրքնուն զիջանելով՝ հրաման տուած է որ ըստ իրենց կամաց՝ բնակութիւն հաստատեն կամ Ռոտնօթի կամ Պաշտպալովի տէրունի կալուածներուն մէջ։ Ասոնք նկատելով զայն՝ որ Պաշտպալով շրջապատած է հարուստ անտառներով,[1] եւ մէկալ կողմանէ տեսնելով որ անոր կից Գիւգիւլլէօ գետն աղէկ նաւարկելի է ու լաստերով երկրին ծոցն եղած ուրիշ քաղաքներուն հետ վաճառականութեան հաղորդակցութեան մէջ կրնան ըլլալ, Պաշտպալովի՝ Աբաֆի կոչուած դղեկին շրջակայքը դրին իրենց բնակութեան տեղը։

Այս է գրով ու աւանդութեամբ մեզի հասած պատմութիւնը։

Սակայն այս վերոյգրեալ թուականէն 22

---

[1] Եղիսաբեթուպոլսոյ՝ ըստ մեծի մասին կաղնւոյ անտառներուն տարածութիւնը դեռ այսօր ալ 4000 արտավար է։ Քաղաքը փայտահատութենէ՝ միջինը հաշուելով՝ տարուէ տարի 10.000 ֆիորին եկամուտ ունի։

տարի յառաջ, այսինքն 1658ին, արդէն Հայեր բնակած կը գտնենք Պաշտպալըվ գեղին մէջ, որոնք եթէ յատուկ եկեղեցի ոչ, սակայն գոնէ մատուռ ու քահանայ ունեցած են: Ասոր յայտնի վկայ են քաղքին՝ պսակաց (copulatorum) մայր մատենին մէջ 1658ին անցուած յաջորդ դէպքերը. "Ամին ՌՃԷ (օտար ձեռքով՝ այսինքն 1658) պսակեցի Ճումէռտ խարիպը. պսակայհայր էղաւ էրէմիան: Ես տէր օհանէս պսակեցի խարիպ ներսէս պսակայհայր էղաւ դաւիթ շօմօլօվցի: Ես տէր օհանէս պսակեցի տիրացուն նիկօշին դուստր՝ իրեք ծանուցում էղաւ եւ ապա ահնեցի զամուսնութիւն նոցա հետ Ճուրճովցի էրանոսին ախբօրն: Ես տէր օհանէս պսակեցի սհատՃի գիրգորին որդին, հետ իսային դստերն. ես տէր օհանէս պսակեցի գանտրայի խաչատուրն. երկրորդ ամուսնութիւն. (եւ այսպէս յառաջ կ'երթայ. եւ կը վերջանայ այսպէս.) Ես տէր իմանուէլս պսակեցի սուլիման տէր տէրին որդին հետ սհակին դստերն: Ես տէր իմանուէլս պսակեցի գադըսուսին ագսէնդին որդին լուսիկ, հետ էրկան խաչումին դստերն իրեք ծանուցում եղեւ:„

Ուրեմն տարակոյս չկայ թէ Պաշտպալըվի մէջ արդէն 1658ին կը բնակէին Հայք մեծկակ թուով՝ հին Աբաֆի դղեկին շրջակաները, հիմակուան Լատինացւոց եկեղեցւոյն կողմերն, մեծ Գիւգիւլլէօ գետին եզերքը ու այսօրւան Ազնուականաց փողոց կոչուած տեղերը: —

Սակայն, ինչպէս դիւրաւ կրնանք ենթադրել, հոս տեղ բնակող Հայերը դեռ բնիկ քաղաքացւոյ

իրաւունք չունէին. իբրեւ օտար պանդուխտներ կը նկատուէին միայն. բայց եւ այնպէս տէրութեան կանոնաւորեալ տուրք տալու եւ ամէն օրինաց հնազանդելու պարտաւորուած էին։

Ատեն անցնելէն ետեւ, ինչպէս պատմութեան ընթացքէն կ'իմանանք, կ'երեւայ թէ գտնուած են Հայոցմէ ոմանք, որ կամ աղքատութեան պատճառաւ, կամ խորամանկութեամբ եւ կամ վասն զի տէրութեան տուրքերուն տակ շատ ընկճած ըլլալով ի վիճակի չէին պարտքերնին հատուցանելու՝ պարտք թողլով պահուըտած, փախած ու նոյն իսկ երկրէն ելած գացած են։ Տէրութեան ոստիկանները կամ պարտատէարք տեսնելով որ պարտականը չկայ՝ առաջին հայ մարդն որ ձեռուընին կ'իյնար — մանաւանդ երբ գիտէին թէ վճարելու կարող է — կը բռնէին կը նեղէին, կը չարչարէին ու նաեւ կը բանտարկէին, որ աներեւոյթ եղող ազգակցին տուրքը կամ պարտքը վճարէ։ Ան ալ հանդիպած է որ հայ հասարակութեան գլուխը եւ նոյն իսկ բոլոր ընկերութիւնը (compania) պատասխանատուութեան կանչուած ու պարտաւորուած է որ մասնաւորաց պարտքերը հատուցանէ։

Հայք համբերեցին ցժամանակ մը, բայց երբ որ դառնութեան բաժակն ալ լեցուեցաւ, եղած զրկանաց ու անիրաւ պահանջմանց դէմ բողոքեցին ու Աբաֆի Ա. իշխանին դիմեցին՝ յերկրինս գոյող անիրաւութեանց դէմ դարման մը գտնելու համար։ — Թէ այս այսպէս պատահեցաւ՝ պէտք ենք հաստատութեամբ ենթադրել,

Աբաֆի իշխանին իւր կենսէկի դղեկէն 1689 Սեպտ. 1ին հրատարակած այն հրամանագրէն, որով Պաշտպալովի Հայոց դէմ եղած զրկանաց ու անիրաւ պահանջմանց առջեւ թումբ մը կանգնած ու իրենց անձնական ազատութիւնն ապահովցուցած է։

Ահա պատճէնին հայ թարգմանութիւնը։

"Մենք Միքայէլ Աբաֆի, ողորմութեամբն Աստուծոյ իշխան Դրանսիլուանիոյ, տէր Հունգարիոյ մասին, դուքս Սէգոյներու, մեր հպատակացն ընդհանրապէս եւ առանձինն ամէն մեծարգոյ, ազնուական, քաջ ու մեծապատիւ գլխաւոր եւ փոխանակի գաւառապետաց, վերատեսչաց, բերդի հրամանատարաց, վերակացուաց ու հոգաբարձուաց, թագաւորական ազատ քաղաքաց իմաստուն եւ շրջահայեաց խորհրդականներուն եւ ամէն սաքսոնական դատաւորաց. դարձեալ՝ երեսնապետաց, կամրջապահաց, ճամբաներու եւ անցքերու պահանորդաց եւ ուրիշ որեւէ պաշտօն ունեցողներու, առանձինն իմն ծառայութեան մէջ եղող ազաներու, որոնք մեր կալուածներու մէջ են, եւ որոնք մեր այս պատճէնը կ'ընթեռնուն ու մեզի սիրելի են, ողջոյն բազում։"

"Մեր տէրութեան մէջ բնակող ու առուտուրով զբաղող Հայոց ընկերութեան (Compania) խոնարհութեամբ մեզի դիմելէն կ'իմանանք որ շատ տեսակ տուրք պատճառաւ՝ շատերը պարտուց տակ ընկճած են եղեր։ Ու լսենք որ պարտատէրներն այս պարտքերն առնելու հա-

մար՝ զիրենք շատ կը նեղեն ու անհանգիստ կ՚ընեն։ Երբ գոմպանիային որեւէ անդամն առաջին անգամ ձեռուընին կ՚իյնայ, կը բռնեն՝ յանցանք չունեցողը յանցաւորին տեղ, ու պարտք չունեցողը պարտք ունեցողին տեղ կը պատժեն։ Ասոնք խոնարհութեամբ մեզի աղաչեցին. եւ մեր պատուաւոր հպատակներուն մէկ քանիին միջնորդութիւնն ալ գթութեամբ նկատելով — թէ հայ գոմպանիան չդրուի այն վիճակին մէջ որ տուրքերն ամենեւին վճարել չկարենայ, — այս՝ մեր տէրութեան մէջ գտնուող Հայոց ընկերութիւնը՝ պզտիկէն մինչեւ ցմեծ ըստ ամենայն մասանց ու առանձինն իմն կերպով մեր պաշտպանութեան տակ առինք ու կ՚առնունք ի մասնաւորի հիմակ ի Փօկարաշ հանդիսութեամբ մէկտեղ գումարուած տէրութեան աւագաժողովին առթիւ — ներկայ պատճէնովս — թէ՛ իրենց անձինքները թէ՛ իրենց ապրանքները եւ թէ՛ ուրիշ ունեցած ամէն ստացուածքները։ Կը հրամայենք ու կը պատուիրենք՝ վերոյգրեալ ամէն կարգի հպատակաց գթութեամբ ու ծանրութեամբ որ պարտատէրներէն ոչ ոք համարձակի այսուհետեւ Հայոց ազգէն մէկը — ի բաց առնելով զայն որ պարտական է, — ո՛չ յանձին իւրում եւ ո՛չ յստացուածս բռնելու կամ բռնել տալու, բանտարկելու կամ բանտարկել տալու։ Ամենեւին չյանդգնի մէկը կերպով մը զանոնք անհանգիստ ընելու ու իրենց անձին վնաս հասցընելու։ Ամէն մէկ պարտատէր իր յատուկ պարտականն ստիպէ որ պարտքը վճարէ. վասն զի

մէկը միւսին համար ամենեւին պարտական չէ հատուցում ընելու։„

“Աս ալ կ՚ուզենք աւելցընել որ եթէ մէկն այս մեր պաշտպանութեան գործոյն ընդդէմ եղող՝ անտեղի, բռնազբօսուած ու ծուռ մեկնութեամբ մը՝ այս բանիս հակառակիլ ուզէ, այն բանն անզօր, անհաստատ ու ջնջելի համարուի։ Ամէնքն այնպէս վարուին ու այնպէս ճամբայ բռնեն՝ նկատմամբ այս Հայոց, ինչպէս որ մեր իշխանական պաշտպանութեան պատճէնին մէջ գրած ենք։„

“Ասկէ զատ պատահեցաւ ան ալ որ քանի մը հայ մարդ շատ պարտք ունենալով՝ որպէս զի պարտքին վճարմունքէն ազատին, պահուըտած, փախած ու մեր իշխանութեան երկրէն դուրս ելած են։ Դէպքեր ալ հանդիպեցան, որոնց համաձայն արդարութիւնն ա՛ն համարած է որ Հայերուն դատաւորն ու նոյն իսկ ընկերութիւնը պատասխանատուութեան կանչուի ու իրենց վըճարել տրուի այն պարտքը։ Եւ որովհետեւ ըստ իրաւանց չի կրնար պարտաւորուիլ մէկն որ պարտք չունի, ըստ այսմ ամենեւին պէտք չէ զիրենք (զդատաւորն, զընկերութիւնն) պարտաւորել։ Եթէ մէկը մէկու մը բան տուած է, անկէ պահանջէ։„

“Եւ որպէս զի մեր ներկայ գրութիւնը մնացական ըլլայ, այս պատճէնը կարդալով հրատարակեցինք առանց որեւիցէ ընդդիմութեան։

“Տուեալ ի դղեակն Վէռնէսէկի, յամի Տեառն 1689. Սեպտեմբեր 1։

Միքայէլ Աբաֆի. Ի. Յ.„

Պաշտպալովի Հայոց վիճակն աւելի եւս լաւացաւ ու ապահովուեցաւ, երբ Արաֆի Բ. 1696ին, Ֆօկարաշի դղեկէն հրատարակած հրամանագրովն Պաշտպալովի Հայերն՝ իբրեւ հայ վաճառականաց ընկերութիւն մը ապահովագրեց։ — Հրամանագրին մէջ յայտնապէս կը տեսնենք իշխանին առ Հայս ունեցած մեծ գութը։ Ասոր մէջ կ'երեւայ իշխանին կողմանէ հայրական սիրտ մը, սաստիկ խնամք ու մեծ խնայողութիւն։ Այս հրամանագրով կը ներուի՝ ի մէջ այլոց՝ Պաշտպալովի Հայոց աստուածային պաշտամանց լիուլի ազատութիւն. Թէ քահանայ մը կարենան պահել ըստ իրենց կրօնին. քահանային կը շնորհուի որ — երկրին այն ատենի սովորութեան հակառակ՝ — քիչ մը գինի կարենայ պահել աստուածային պաշտաման մատակարարութեան՝ բայց ոչ ծախելու համար. Թէ քահանան հարկ տալէն ազատ է։ — Աս պատճէնին ձեռօք կ'ապահովցուին Հայերն՝ Թէ ցորչափ ժամանակ հաւատարիմ կը մնան իշխանին ու իր յաջորդացն, ապահովապէս կրնան հոն կեանքերնին անցընել. Թէ կրնան իրենց դատաւոր մ'ընտրել, որ իրենց իրաւունքներուն պաշտպան կենայ. Թէ ըստ կամի առուտուր ընեն, եւ կենաց պարէնն ուսկից ու երբ որ ուզեն՝ ճարեն. Թէ իշխանն իրենցմէ ոչ զոք ու ոչ մէկ տեսակ յանցանքի համար պիտի ստիպէ՝ իրեն ու իր յաջորդաց ձրի ծառայութիւն ընելու. Թէ չունենայ մէկն իշխանութիւն զիրենք Թղթատարութեան ծառայեցընելու, ի բաց առեալ այն

դիպուածն՝ ուր հարկաւորութիւնն ստիպողական է. այն ատեն՝ կրնան իրենք ու իրենց ձիերը ծառայութիւն ընել, բայց բնականապէս վարձքերնին ընդունելով։ Կը շնորհուի իրենց դարձեալ՝ թէ այն միջոցին որ իշխանն ու իր մարդիկները (suite) Պաշտպալով գտնուին, բնակութեան տեղ տալէն ազատ ըլլան. թէ Ազնուականաց փողոց ըսուած տեղն օտարազգի ամենեւին չբնակի. վերջապէս թէ ազատ ըլլան մէկը մէկալին պարտքը վճարելէն՝ միշտ ենթադրելով որ երաշխաւորութիւն չկայ բանին մէջ. եւ թէ նոյն իսկ ընկերութիւնը պատասխանատու չէ մասնաւորի մը պարտքին հոգատարութիւն ընելու։

Այս հրամանագրին մէջ քանի մը վարչական ու պատժական կարգադրութիւններ ալ կը գտնենք. այսպէս 1. Պարտք ունեցող մը պէտք է ինք զինք արդարացնէ ընկերութեան գլխուն առջեւ։ 2. Մէկու մը համար որ չարութեամբ հրդեհի պատճառ եղած է, ընկերութեան գլուխն իր երդուեալներովը պատասխանատու է. եւ թէ վնասն՝ ընկերութիւնը հատուցանելու է։ 3. Օտարական անծանօթ ազգային մը չընդունին մէջերնին, որպէս զի չըլլայ թէ — ըստ իրենց սովորութեան՝ — պարտք թողլով ու փախչելով գոմբանիային գլուխը վտանգ մը բերուի։ 4. Մսահատն ըստ վաղեմի սովորութեան՝ կտրած անասնոյն լեզուն պալատը տալու է։ 5. Այն մարդն որ խռովութեան պատճառ եղած է կամ անբարոյական կեանք կ՚անցընէ եւ գոմբանիային գլխուն խօսքին ալ չ՚անսար, եւ ըստ հետեւորդի

թէ երկրին ու թէ Հայոց ընկերութեան վնասակար է, արտաքսուի. եւ այլն:

Տեսնենք Ֆօկարաշի դղեկէն ելած ու քսան կէտերու մէջ ամփոփուած այս հրամանագրին հայերէն թարգմանութիւնը:

“Մենք Միքայէլ Աբաֆի, Աստուծոյ ողորմութեամբն ընտրեալ իշխան Տրանսիլուանիոյ, այն ամէնուն, որոնց անկ է, կ'իմացընենք մեր այս հրամանագրովս՝ թէ որովհետեւ մեր Պաշտպալով գիւղը գաղթած վաճառական Հայերը շատ աղաչեցին մեզի, որ՝ ինչպէս իրենց անանկ ալ իրենց յաջորդաց՝ մէկ քանի ազատութիւն ու իրաւունքներ շնորհենք, որոնց զօրութեամբն ապահովապէս ու ազատապէս կարենան ապրիլ ու մնալ մեր հովանաւորութեան տակ, անոր համար մենք իրենց այս իրաւացի փափաքը կատարել ուզելով՝ գթութեամբ հաճեցանք իրենց արտօնութիւնները յաջորդ կարգով այս կէտերուն մէջ ամփոփել:

1. Ցորչափ ատեն որ մեզի ու մեր յաջորդաց հաւատարիմ կ'ըլլան ու արդարապէս կը ծառայեն, մեր Պաշտպալովի կալուածներուն մէջ ազատապէս ու հանգստութեամբ կարենան ապրիլ:

2. Իրենց մէջէն՝ ազատութեամբ դատաւոր մը կարենան ընտրել, որ իշխանութիւն ունենայ ամէն իրենց մէջ պատահած օրինաւոր գործքերուն կարգադրութիւն ընելու եւ վճիռ կտրելու: Բայց թէ որ իրենց մէջ զիրար չեն կրնար գտնել, այն ատեն կարենան բողոքել յունական ընկերութեան՝ այն բաներու նկատմամբ, որ վա-

ճառականութեան կը վերաբերին։ Իսկ եթէ մեր կալուածներու վերաբերեալ մարդիկներուն եւ օտարներու հետ ըլլայ խնդիրն, այն ատեն այս ըլլայ կարգը. Եթէ հայ մարդ մը կը պայքարի (perel) մեր հպատակներուն կամ օտարներէն մէկուն հետ՝ դատաստանն ըլլուի մեր Պաշտպալովի պաշտօնատեարց առջեւ ըստ օրինաց երկրին։ Իսկ թէ որ իրենց հետ օտար մարդ մը կամ մեր հպատակներէն մէկը պայքարի, դատաստանն ըլլայ՝ նախ Հայոց դատաւորին առջեւ. իսկ թէ որ մեր երկրագործ հպատակը կամ օտարն անով գոհ չ'ըլլար, այն ատեն դատաստանն ըլլայ՝ ըստ մեր երկրին օրինաց՝ մեր պաշտօնատեարց առջեւ։

3. Քահանայ մը պահեն՝ ըստ իրենց կրօնին, եւ իրենց հաւատքին ազատութիւնը մնայ անվրդով՝ այնպէս ինչպէս որ է։

4. Իբրեւ վաճառական մարդիկ՝ առուտուր ընեն ըստ կամի։ Ասոր մենք ամենեւին արգելք չենք դներ։

5. Եթէ վշտացում մ'ունենան եւ կամ եթէ մէկն իրենց բռնութիւն ընել ուզէ, արդարացի բաներու մէջ՝ ըստ օրինաց այս երկրին՝ մենք միշտ իրենց հետ ենք. զիրենք մեր պաշտօնաւորներովը կը պաշտպանենք ու պաշտպանել կու տանք։

6. Եթէ հանդիպի որ իրենցմէ մէկուն ալ մեր երկրին մէջ բնակիլը ծանր ըլլայ՝ ազատ է, իր ամէն ծառաներովն ու ստացուածներովը կրնայ երթալ. սակայն գնացողը՝ տան հարկին կամ պարտուց վրայօք՝ զոր թերեւս մէկու մը ունի,

պէտք է որ Գոմբանիային հաշիւ տայ եւ վճարէ։

7. Ցանցանքի մը համար՝ ոչ մենք եւ ոչ մեր պաշտօնատէրներն ոչինչ կերպիւ ոչ զիրենք եւ ոչ իրենց յաջորդները ձրի ծառայութեան տակ պիտի ձգենք։ Բայց թէ որ օրինաւոր գործք մը հանդիպի՝ մեր գործքն ըստ արդարութեան կը շարունակենք իրենց հետ։

8. Եթէ ըստ պատահման իրենցմէ մէկուն քով կրակ ելլէ, եւ օտարի մը տունն այրի, կրակը պատահմամբ ըլլալով՝ հարկ չկայ որ հատուցում ընեն։ Բայց եթէ ապահովութեամբ ստուգուի որ կրակը նոյն իսկ տան տիրոջ չարութեամբ կամ իր ծառաներուն անհոգութեամբն եղաւ, այն ատեն չենք կրնար այս բանիս աչք գոցել. Գոմբանիայի դատաւորին ու իր երդուեալներուն գործն ըլլայ՝ եղած վնասը հատուցանել։

9. Երբ Աստուծոյ շնորհքովը Պաշտպալով գտնուինք կամ հոն զբօսանք ընելու երթանք, մեզի բնակութիւն տալու պարտականութիւն չունենան։

10. Ոչ ով իշխանութիւն ունենայ զիրենք ոչ մեր գործքին եւ ոչ գեղին գործքերուն ստիպել։ Նմանապէս ոչ իրենք ոչ իրենց ծառաները եւ ոչ իրենց ձիերը թղթատարութիւն ընելու բռնադատուին։ Բայց երբ որ արտաքոյ կարգի դիպուածով մը հարկ ըլլայ այս բանն ընել, ի նպաստ իրենց՝ մէկ մարդ կամ մէկ երկու ձի կրնան տալ։

11. Թէ իրենց ազատ գինեպահութիւն շնորհենք ամէն ժամանակի համար, այս չի կրնար

*ըլլալ, ինչու որ այդ բանը մեզի ալ շատ վնաս պիտի բերէ։ Այսու ամենայնիւ կը շնորհենք որ Ս. Միքայէլի օրէն (Սեպտ. 29) մինչեւ օր մոխրոցին նախընթաց օրը փաղառաբար՝ իրենց պիտոյից համար հարկաւոր գինին պահեն։ Այս այսպէս ըլլալով ալ՝ կը շնորհենք որ իրենց քահանան քիչ մը գինի կարենայ պահել. սակայն ստակով մարդու մը ծախելու հրաման չունենայ։*

12. *Օտար հայ մարդ՝ առանց իրենց դատաւորին ու երդուեալներուն գիտնալուն՝ չկարենայ հոն բնակութիւն հաստատել. որպէս զի չըլլայ թէ կերպով մը պարտական ըլլալով՝ ընկերութեան դժբախտութիւն մը բերէ։ Ի վերայ այսր ամենայնի թէ որ բարի, մարդավար ու լաւ վաճառական հայ մարդիկ գալու ըլլան, կարենան բնակութիւննին մեր կալուածները հաստատել։*

13. *Թէ որ վաճառական հայ մը՝ թէ՛ մեր կալուածներուն եւ թէ՛ մեր գեղերուն եւ թէ՛ դղեակներուն մէջ՝ ուրիշի մը պարտք ունենայ եւ պարտքին մէջ երաշխաւորութիւն ըլլայ, այն ատեն այն բանին համար բոլոր Հայոց ընկերութիւնը պարտաւորեալ չէ պարտքը վրան առնելու, հապա միայն պարտականը կամ երաշխաւորը վճարէ։ Եթէ անոնք չուզենան վճարել՝ այն ատեն յառաջ բերուի Գոմբանիային դատաւորն ու հատուցում ընել տայ, առանց ընկերութեան վնաս մը հասցընելու։*

14. *Մսավաճառ ազատութեամբ կրնան պահել։ Այն որ հրաման ունի կտրելու, կարենայ*

ստակով միս ծախել որեւէ մարդու․ բայց գաւառին օրինաւոր կշիռները գործածելու են։ Երբ որ մեր դղեակը պէտք ունենայ մսի, տան՝ ստակով․ բայց լեզուն պալատը տալու պարտական են։

15․ Տան ու խանութի վարձքն այնչափ ըլլայ՝ որչափ մինչեւ հիմակ էր, թէ որ մէկն իր ունեցածն ընդարձակել չ'ուզեր. իսկ եթէ մեծցընել կ'ուզէ՝ ազատ է աւելին տալու, եւ Գոմբանիային դատաւորն ասոր արգելք մը չկարենայ դնել։ Թէ որ մէկն՝ արդէն որոշուած ու չափուած ներքնաբակին վրայ մթերանոց եւ կամ պզտիկ ախոռ մը կ'ուզէ կանգնել իրեն յատուկ ծախքովը, ասոր համար զատ վճարմունք մը տալու հարկաւորութիւն չունի։

16․ Կը շնորհենք որ քահանայէն տան հարկ չառնուի։

17․ Եթէ գտնուի իրենց մէջ խռովութեան պատճառ եղող մէկն կամ անբարոյական կեանք անցընող մը, որ իրենց դատաւորին խօսքին ալ չանսայ, այնպիսին՝ որ թէ՛ մեզի ու թէ՛ իրենց վնասակար է, Գոմբանիային առաջնորդն իր երդուեալներովն ու մեր պաշտօնատէրներովը միատեղ խորհրդակցելով՝ պէտք է վռնտել։

18․ Կը շնորհենք որ Հայոց շարքին ու փողոցին մէջ ամենեւին օտար մարդ, ո՛չ մաճառ, ո՛չ վալախ, տուն չկարենայ շինել։ Աս գիտնալով՝ իրենք իրենց կողմանէ պէտք չէ որ կամօք պարապ միջոց թողուն մէկ մէկու բնակութեան մէջ։

19․ Ինչ բան որ հարկաւոր է իրենց ապրուստին ու իրենց ընտանեաց պահպանութեան

համար, վաճառանոցէն ազատութեամբ կրնան գնել, միայն թէ անոնց գինը՝ մեր հպատակներուն՝ ինչպէս նաեւ օտարներուն՝ արդարապէս վճարեն։ Եթէ գեղերէն որեւէ տեսակ պարէն ներս տարուած ատեն՝ իրենք նախ անոր հանդիպին եւ ծախողին հետ գնոյն նկատմամբ միաբանին, այն բանն ոչ ոք կարենայ իրենց ձեռքէն առնուլ. եւ այս բանիս մէջ ոչ ոք զիրենք անհանգիստ ընէ։

20. Եթէ որ իրենց դէմ անիրաւութիւն մ'ըլլայ կամ իրենց զրկանք մը հանդիպի, եւ հոն՝ ուր որ դարման կրնային գտնել՝ չկրցան գտնել, կրնան համարձակապէս մեզի ալ դիմել եւ զմեզ տեղեկացընել, որպէս զի մենք ալ անոր դեղ դարման ընելու ջանանք։„

"Այս կէտերը վերոյգրեալ կերպով ըլլալու որոշեցինք։ Զիրենք կ'ապահովագրենք իբրեւ Պաշտպանելի վաճառական հայ մարդիկ։ — Եւ որպէս զի թէ մենք ցորչափ կ'ապրինք եւ թէ մեր օրինաւոր յաջորդները զասիկայ պահպանելու պարտաւորենք, մեր սովորական կնքովն եւ մեր յատուկ ձեռնագրովը կ'ամրացընենք՝ մեր անուան ազգեցութեան ու անփոփոխելի զօրութեան համար։"

"Տուեալ մեր Փօկարաշի դղեկէն, 1696 փետր. 7։

Միքայէլ Աբաֆի. Ի. Յ.„

Թէ այս իմաստուն ու խոհեմ իշխանը Հայերն այս աստիճանի կը փայփայէր ու իրենց ա-

սանկ արտաքոյ կարգի առանձնաշնորհումներ կ'ընէր, ամենեւին զարմանալու չենք։ Աղէկ գիտէր՝ թէ զասոնք իր երկրին մէջ ընդունելով ու իր բոլորտիքը ժողվելով՝ տէրութիւնն օգտակար տարրով մը կը հարստացընէ։ Եւ ստուգիւ ալ Հայոց ճարտարութեամբն երկրին ներքին հարստութիւնն աճեցաւ, արուեստները՝ մանաւանդ մաշկագործութիւնը՝ շատ յառաջացաւ. Դրանսիլուանիոյ առեւտրական ազդեցութիւնը Հայոց ձեռօք՝ մէկ կողմանէ Արեւելքի, մէկալ կողմանէ Արեւմուտքի հետ՝ Վիեննայի, Լայբցիկի, Տանցիկի ու Ամստէրտամի միջոցաւ՝ հզօր շարժում մ'ընդունեցաւ։

Լաւազգած իշխանն այսչափով ալ չշատացաւ։ Միջնորդ եղաւ առ Լէոբոլտոս Կայսր գրած աղերսանաց թղթով մը՝ Կերլացւոց եւ Պաշտպալովցւոց մէջ եղած հակառակութիւնը դադրեցընելու։ Այսօրուան Եղիսաբեթուպոլիս քաղաքն իր գոյութիւնը միայն այս միջամտութեան պարտական է։ Առանց ասոր՝ անտարակոյս Կերլա հայաքաղաքէն պիտի կլլուէր։ Տեսնենք թէ ինչպէս եղաւ այս բանը։

## 2.

Երկար ժամանակ անդորրութեան ու խաղաղութեան մէջ ապրեցան Պաշտպալովի Հայերն իրենց տեղը, մինչեւ մեծ հրդեհ մը զգեղը բոլոր աճիւն դարձընելով՝ գաղթականութիւնը չէ թէ միայն բոլորովին փճացաւ, հապա նաեւ ցիրուցան եղաւ՝ քիչ ժամանակի համար։ Հազիւ

Թէ գեղերնին դարձան, տներնին նորէն կանգնեցին ու իրենք զիրենք քիչ մը ժողովեցին, Ռագոցիի առաջնորդութեամբ Գուրուցներուն ապստամբութիւնը ծագեցաւ։ Ասով երկիրը ներքին երկպառակութեանց ու խառնակութեանց ասպարէզ մը դարձաւ։ Իրենց իշխանին հաւատարիմ Հայերն չմասնակցեցան ապստամբութեան, բայց ասոր համար ալ պէտք են եղեր պատժուիլ։ Ապստամբք անպատսպար Պաշտպալովը տակնուվրայ ըրին, կողոպտեցին ու կրակի տուին։ Երբ որ յեղափոխութիւնը լմնալէն ետեւ խաղաղութիւնը նորէն հաստատուեցաւ, Հայք վերադարձան իրենց ժողովրդապետին առաջնորդութեամբ, տներնին շինեցին ու նոր եկեղեցի մը կանգնեցին։

Աս միջոցին էր, ութեւտասներորդ դարուն սկիզբները, որ մեծանուն՝ սուր ու հեռատես քաղաքագէտ, Կերլա հայաքաղքին հիմնադիրը, Աւգսենտիոս Վրդպտ. Վրզարեան՝ որ Դրանսիլուանիոյ Հայոց եպիսկոպոսն էր, մտքին մէջ սկսաւ մեծ, բայց դժուարաւ յաջողցընելու գաղափար մ՚արծարծել։ Իր նպատակն էր բոլոր Դրանսիլուանիոյ Հայերն ամփոփել եւ ի մի ժողվելով ամրացընել ու Կերլա քաղաքը կենդրոնացընել։ Երբ ասոր հոտն Եղիսաբեթուպոլսոյ Հայերն առին, վերջին ատիճանի այլայլեցան ու շփոթեցան։ Կարծեցին որ ասով չէ թէ միայն իրենց ազատութիւնն ու անկախութիւնը բոլորովին պիտի կորսուի, հապա նաեւ իրենց ազատ առեւտրին առջեւը թումբ մը պիտի քաշուի. ուստի եւ

ամենայն զօրութեամբ դէմ կեցան, եւ ամէն միջոց բանեցընելով՝ աշխատեցան եպիսկոպոսին ծրագիրը փճացընելու։ Երբ Վօղարեան իր շինած յատակագիծն յառաջ տանելու համար՝ կրկին անգամ Վիեննա երթալով՝ իրերն այնչափի բերաւ, որ կայսրմէն հրամանագիրը ձեռքը՝ կ'ուզէր իր միութեան գաղափարը գլուխ հանել, Եղբայրութեանս ուղղակի կայսեր դիմեցին ու շատ մը պատճառներով ցուցուցին որ իրենց Սերլա երթալը՝ զիրենք բոլորովին փճացընել է. եւ թէ Սերլա երկրին վերջին սահմանն ըլլալով՝ այն նիւթերուն որոնցմով իրենք առուտուր կ'ընեն, վաճառանոց գտնելն անկարելի է։ Պատճառաբանութիւններէն մէկն ալ այն էր՝ թէ իրենց միտքն այն չէ որ իրենք զիրենք Հայոց հասարակաց ընկերութենէն դուրս հանեն ու հասարակաց ծանրաբեռնութենէն ազատեն, եւ ոչ խսկ թէ եպիսկոպոսին պարտաւոր հնազանդութիւնը զլանան. վասն զի իրենց ժողովրդապետին հետ մէկտեղ՝ իրենք զիրենք բոլորովին եպիսկոպոսին իշխանութեան տակ կը ձգեն. հապա այն որ իրենց ծննդեան տեղէն զիրենք չշարժեն. վասն զի երրորդ անգամ կանգնած տեղն ու եկեղեցինին թող տալով՝ շատ վնաս պիտի կրեն ու պիտի աղքատնան, այնպէս որ չէ թէ միայն պարտաւոր տուրքերը վճարելու, հապա նոյն իսկ կեանքերնին պահպանելու ի վիճակի պիտի չըլլան։ Ասոնք ծանրակշիռ ու բանաւոր պատճառներ էին։

Եւ որպէս զի իրենց այս աղաչանքին աւելի ազդեցութիւն ու զօրութիւն տան, աղերսագիրը

չխաւրեցին ուղղակի Լէոբոլտոս կայսեր, հապա իրենց սիրելի ու պաշտպան Աբաֆի իշխանին, որ այն միջոցին ա՛լ Վիեննա կ'ապրէր մեծ պատիւներու մէջ[1]: Իշխանը՝ կամ անոր համար, վասն զի իրենց խնդիրքն իրաւացի կը համարէր, կամ վասն զի չուզեց իր միջնորդութիւնն իրենց զլանալ, իր կողմանէ աղաչանաց թուղթ մը գրեց կայսեր ի նպաստ Պաշտպալովի Հայոց: Ասոնց խնդիրքին կատարումն իւր Վեհափառութեան յանձնեց աւելցընելով իւր կողմանէ որ չստիպէ այնչափ ատենէ ի վեր հոն հանգստեամբ ապրող ու ըստ բաւականի արմատացած հայ գաղթականութիւնն իր տեղէն մեկնելու եւ Կերլա փոխադրուելու հարկադրուիլ:

Թէ Պաշտպալովի Հայոց առ Լէոբոլտոս կայսր գրած աղերսանաց եւ թէ Աբաֆի իշխանին յանձարարական թղթին թարգմանութիւնն — որոնց միայն առանց թուականի ընդօրինակութիւնը կայ քաղքիս դիւանին մէջ — հոս կը դնեմ: Պաշտպալովի Հայոց առ Լէոբոլտոս գրած նամակն է այսպէս:

“Վեհափառ կայսր, ամենագթած Տէր:„

“Խոնարհելով կը մերձենանք Վեհափառութեանդ գթութեան գահուն եւ ամենախորին հպատակութեամբ կը յայտնենք՝ թէ մենք՝ փո-

---

[1] Իշխանը կողմնակից եւ գաղտուկ դաշնակից էր Տանկաց եւ Ալի բաշայէն մեծ պատիւներ ընդունած ու անոր որդեգիր եղած էր: Այս բանս կայսերականաց կողմնակցութեան մատնութիւնը գրաւեց: Հետեւութիւնն ան եղաւ որ Դրանսիլուանիա աւստրիական կայսրութեան հետ միացաւ. իշխանն՝ իբրեւ ստուերական թագաւոր՝ կ'անցընէր ի Վիեննա իւր կեանքը:

քրիկ հայ հասարակութիւն մը, որ կը բնակինք ի Դրանսիլուանիա, եւ մէկ քանի չնչին առեւտրի նիւթերով օր աւուր վրայ կեանքերնիս կ'անցընենք, բնակութեան տեղ վաստըկեցանք՝ որոշեալ պայմաններով՝ դեռ ասկէ 25 տարի յառաջ Հոս ի Պաշտպալով Հռոմէական սուրբ պետութեան ամենապատիւ իշխանին Տէր Միքայէլ Աբաֆիի բարութեամբն, եւ մեր մեծապատիւ Տէր Իշխանին կառուցած տներու մէջ խաղաղութեամբ կեանք վարեցինք։ Բայց կրակ իյնալով՝ ամբողջ մեր տները փճացուց։ Սակայն վերոյիշեալ Տէր Իշխանին օգնութեամբ մեր բնակարանները նորէն կանգնեցինք։ Ասոր վրայ Հունգարական դժբախտ յեղափոխութիւնը՝ մեր ամէն ստացուածները տակնուվրայ ընելով՝ մեր բնակութեան տեղը բոլորովին ապականեց. եւ այսպէս մենք այս տեղէն պանդխտելով՝ գնացինք ուր որ բախտն զմեզ տարաւ։„

"Այսու ամենայնիւ այս ամէն պատահարներն ի վիճակի չեղան զմեզ այն աստիճանի վհատութեան մէջ բերելու որ զմեզ կամ վախցընեն եւ կամ մեր հին բնակութեան տեղւոյն յիշատակը մեր մտքէն հանեն։ Խաղաղութիւն ըլլալէն ետեւ՝ վերոյիշեալ տեղւոյն նպաստաւորութիւնը գիտնալով եւ արդէն անկէ յառաջ ճանչցած քաղցր յիշատակէն մղուելով՝ շուտ մը մեր յառաջուան կրակատեղին դարձանք, մեր ժողովրդապետին հետ մէկտեղ։ Այնչափ անգամ յիշուած Պաշտպալովի մէջ երրորդ անգամ ալ մեր յատուկ ծախքովը տներ շինեցինք, եկեղե-

ցինիս նորէն կանգնեցինք, մեր ընկերութիւնը կարգի բերինք. եւ Վեհափառութեանդ Թեւերուն հովանաւորութեան տակ՝ ապահով եւ մինչեւ հիմակ անխռով հանգչեցանք:„

“Բայց լսեցինք որ մեր Գերապայծառ եպիսկոպոսը բոլոր Դրանսիլուանիոյ մէջ եղած Հայերուն ամէն ընկերութիւնները Կերլա քաղաքը — Վեհափառութեանդ արքունի կալուածքը — մէկտեղ ժողվել, տեղաւորել եւ հոն իրենց բնակութեան մը տեղ ապահովցընել կ'ուզէ: Արդ՝ մենք խոնարհութեամբ առ Վեհափառութիւնդ կը դիմենք ու կը խնդրենք որ բարեհաճի, իրեն յատուկ գթութեամբը, մեր Պաշտպալով գտնուած պզտիկ ու արդէն ըստ բաւականի արմատացած ընկերութիւնն ազատ ընելու այս տեղափոխութեան պարտաւորութենէն, որ մեր վերջին աստիճանի խեղճութիւնը յառաջ պիտի բերէ. վասն զի ինչ որ փոքր ստացուած ունէինք, զայն բոլոր նոր շինած տներուն եւ եկեղեցւոյն վրայ դարձուցինք: Զատոնք եթէ նորէն թող տալու ստիպուինք՝ ոչ հասարակաց տուրքերը վճարելու եւ ոչ կեանքերնիս պահելու ի վիճակի պիտի ըլլանք, որովհետեւ այն տեղն ուր որ երթալու կը ստիպուինք, իրեն աննպաստ դիրքովը ու երկրին վերջին սահմանին վրայ ըլլալուն՝ մեր առեւտրի նիւթերովը վաճառականութիւն ընելու յարմար չէ:„

“Մտքերնիս ան չէ, ամենագթած կայսր որ մենք զմեզ Հայոց հասարակաց ընկերութենէն ազատ ընենք կամ մեր Գերապայծառ

եպիսկոպոսին ունեցած պարտաւոր հնազանդութեան օրէնքներն ոտքի տակ առնունք. չէ, մանաւանդ ընդ հակառակն. այնպէս՝ ինչպէս մինչեւ հիմակ հասարակաց ծանրաբեռնութիւնները կրելու մասնակից եղանք՝ անանկ ալ ասկից ետքը, մեր Տէր եպիսկոպոսին ունեցած պարտաւոր հնազանդութիւնը կ'ուխտենք. եւ մեր ժողովրդապետին հետ մէկտեղ ամենայն խոնարհութեամբ մենք բոլորովին իրեն կը հպատակինք։ Միայն զայն կը խնդրենք որ մեր ծննդեան տեղէն զմեզ չշարժեն։„

“Խոնարհութեամբ աս բանիս կամակից ըլլալը կը խնդրենք Վեհապետութենէդ, զոր բարձրագոյն հրամանի մը ձեռօք գթածաբար ծանուցանելու բարեհաճի։ Նոյնպէս կը փափաքինք որ Ձեր Վեհափառութիւնը — ինչպէս բոլոր քրիստոնէ աշխարհի փափաքն է — միշտ կենդանի ըլլայ, եւ շարունակեալ յաղթութեանց դափնիները փթթին գագաթանդ վրայ։„

“Վեհափառութեանդ ամենախոնարհ հպատակները.

“Պաշտպանովի փոքրիկ հայ ընկերութիւնը։„

Ինչպէս վերն ըսինք, այս աղաչանաց թուղթըն Աբաֆիին խրկեցին, որ իր յանձարարական նամակովը առ Լէոբոլտոս կայսր ուղարկեց։

Ահա իշխանին թղթին թարգմանութիւնը։

“Կայսերական թագաւորական Վեհապետ։„

“Ամենագթած Տէր։„

“Դրանսիլուանիոյ մէջ՝ մեր Պաշտպանովի

կալուածներուն վրայ բնակող հայ Գոմբա-
նիան — ինչպէս ներփակեալ աղերսագրէն Ձեր Վեհափառութիւնն անոնց խնդիրքը լաւ հասկընալու պիտի բարեհաճի — այն պատճառաւ խրկած է ինծի իր աղաչանաց թուղթը, վասն զի ականջն հասած է՝ թէ բոլոր Հայերն որ Ատեալի մէջ ցրուած են, կ'ուզեն Վեհափառութեանդ արքունի կալուածոց վրայ ամփոփել: Ուստի աղաչեցին ինծի որ իրենց խոնարհ աղաչանքին իմս ալ ներփակելով՝ խնդրեմ Վեհափառութենէդ որ բարեհաճի շնորհելու որ չբռնադատեն զիրենք իրենց կամաց հակառակ ուրիշ տեղ փոխադրուելու:„

“Եւ որովհետեւ բոլորովին ստոյգ է՝ թէ աղաչաւոր Հայերն անցած պղտորութեան ժամանակին մէջ ասդին անդին ցրուելով՝ գրեթէ ամէն ունեցածներէն զրկուեցան ու կողոպտուեցան, հիմակ որ խաղաղութիւն եղաւ, իբրեւ թէ իրենց կրակատեղը ամփոփուեցան, կործանած եկեղեցինին շատ ծախքերով եւ բոլորովին այրած տըներնին վերոյիշեալ Պաշտպալովի կալուածին մէջ նորէն հաստատեցին. յետ որոյ ուղղափառ ժողովրդապետ ընտրեցին եւ հայ եպիսկոպոսին կատարեալ հնազանդութիւն խոստացան, եւ առանց մէկու մը վնաս ընելու խաղաղութեամբ հոն կ'ապրին, չեմ կրնար ընել որ զլանամ իմ միջնորդութիւնս Վեհափառութեանդ առջեւ ի նպաստ այս Հայոց, եւ խոնարհութեամբ չխընդրեմ Վեհապետութենէդ որ բարեհաճի գթութեամբ այն խեղճ Հայերուն խոնարհ խնդրուածքը

կատարելու, եւ գթածաբար հաւանութիւն տալու որ անկից ետքն ալ մեր Պաշտպալովի կալուածին մէջ կարենան մնալ, ապրիլ ու բնակիլ եւ չբռնադատուին ուրիշ տեղ պանդխտելու եւ վերստին շինած բնակարաններին ի մեծ վնաս իրենց ստացուածոցը՝ հոն թողլու։„

“Սպասելով գթած որոշմանդ, եմ Վեհափառութեանդ ամենախոնարհ եւ հնազանդ

“Միքայէլ Աբաֆի. իշխան։„

Այս կրկին աղաչանաց թղթերն ապարդիւն չմնացին։ Լէոպոլտոս կայսրն իր 1712 Նոյեմբեր 25ին տուած պատասխանին մէջ Պաշտպալովի Հայերը կը հանդարտեցընէ՝ զիրենք ապահովցընելով որ ոչ զոք կը ստիպէ ուրիշ տեղ փոխադրուիլ։

Քաղքիս դիւանատան մէջ գտնուած այս կրկին թղթերուն (թիւ 2 եւ 3) բնագիրն անտարակոյս Վիեննայի արքունական տան դիւանը պիտի ըլլայ։ Ինչպէս ըսինք, ասոնք թուական չունին. բայց պաշտօնապէս վաւերացուած ու ստորագրուած են։ Շատ հաւանական է որ ընդօրինակուելու ատեն մոռցած ըլլայ օրինակողը տարւոյն թուականը նշանակելու։ Առաջինին — այս ինքն Հայոց աղաչանաց — պատասխան կու տայ Լէոպոլտոս քանի մը տողով 1712 Նոյ. 25ին. ուրեմն ըսել է թէ քանի մ'ամիս յառաջ կրնայ գրուած ըլլալ այն թուղթը Պաշտպալովի քաղաքացիներէն։

## 3.

Հայերն իրենք զիրենք քիչ մը ապահովցընելէն ու ոտուընին հաստատուն կռուանի վրայ դնելէն ետեւ սկսան ներքին կարգադրութիւններ ընել։ Իբրեւ կրօնասէր մարդիկ՝ ամենէն յառաջ ձեռք զարկին (1723) պարտուպատշաճ քարաշէն եկեղեցի մը շինելու։ Վասն զի մինչեւ այն ատեն գտնուած փայտաշէն եկեղեցին՝ թէ պզտիկ էր ու թէ միանգամայն խարխուլ։ Ուստի այս եկեղեցիէն 3—400 քայլ հեռու դէպ ի արեւմուտք ձեռք ձեռքի տուած՝ միացեալ զօրութեամբ կանգնեցին՝ այն ժամանակին պարագայից համեմատ բաւական ընդարձակ, գեղեցիկ — ու թերեւս իրենց գաղափարին մէջ գոթական խոյակներով զարդարուած — եկեղեցին։ Ասոր գործակից եղան, ինչպէս կ'երեւայ, բոլոր ժողովուրդը՝ մեծամեծք ու փոքունք, այր եւ կանայք, ոմանք դրամ տալով ու ոմանք ձեռաց աշխատութիւն մատուցանելով։ Եկեղեցւոյ կանգնուելուն համառօտ պատմութիւնը կեցած է դեռ այսօր, մէկ կողմնական դրան վրայ քանդակուած։ Բոլորովին աւելորդ չէ այս՝ մեսրոպեան նշանագիրներով եղած յիշատակարանը — զոր “Հանդէսն„ ալ իւր ժամանակին ծանուցած է[1] — արդի հայերէն լեզուաւ հոս ընթերցողաց ներկայացընել։ “Սուրբ եկեղեցւոյս ու սուրբ սեղանիս շինութեան սկիզբն եղաւ փրկչին ՌՃՀԲ թուականին, Մայիսի

---

[1] Տես “Հանդէս ամսօրեայ„ 1891, թ. 2, էջ 54։

22ին։ Այն միջոցին սուրբ Պետրոսի գահը նստած էր Խնոմկենտիոս ԺԳ.։ Աւստրիոյ կայսր էր քրիստոսապսակ Կարոլոս. երկրիս կառավարը՝ Միկխմունտոս Գործիժ. քաղքիս ժողովրդեան երէց քահանան՝ Տէր Յովհաննէս — այս յիշատակարանը գրողը. — եկեղեցպան՝ բարեպաշտ պարոն Յովհաննէս եւ իւր որդին Պետրոս. գլխաւոր դատաւոր Ջատիկ աղա. եւ օգնական դատաւոր Նիգօշ աղա ու իւր եղբայրը՝ Վարդան։ Ասոնք ծերերուն հետ խորհուրդ ըրին սուրբ եկեղեցին շինելու։ Ոմանք շատ դրամ տուին եւ ոմանք սակաւ՝ ըստ սակաւուն. եւ շատ բարեպաշտ տիկնայք Աստուծոյ սիրոյ համար քար կրեցին։ — Բայց ի՞նչ ըսենք Լուսիկ աղային համար, որ յանձն առաւ այս պաշտօնը մինչեւ ի կատար հասցընել։ Անոր համար, դուք ընթերցողներ, պէտք էք զասոնք ձեր պատարագին ու աղօթքին մէջ յիշել. որպէս զի իրենց հոգիներուն քաւութիւն ըլլայ. եւ մանաւանդ զանոնք (յիշելու էք) որոնք այս եկեղեցւոյն պատճառ եղած են. եւ Տէր Քրիստոս զձեզ յիշէ վերջին դատաստանին օրը„։

Եկեղեցւոյս շինութեան անմիջապէս կը յաջորդեն շատ մը ներքին կարգադրութիւններ, օրէնսդրութիւններ, վճիռներ ու որոշմունքներ, ի մէջ այլոց՝ տօնական օրերը սուրբ բռնելու, եկեղեցի երթալու, իրիկուները Հրեշտակ Տեառնէն ետեւ պանդոկները գինի չխմելու, գաւազան կրելու, գինի եւ միս ծախելու, ե՛րբ եւ ի՛նչ տեսակ զգեստ հագնելու, ո՛ւր, եւ ի՛նչպէս տուն

շինելու, եկեղեցական եւ աշխարհական պաշտօնատարց տարեկան եկամուտը որոշելու, արգելանաց եւ զանազան դրամական պատիժներ ու տուգանքներ տալու վրայ, եւ այլն։

Ասանկ օրէնսդրութեան մէկ երկու որոշում կ'ուզեմ յառաջ բերել առջեւ դնել։ Ասոնք՝ ըստ իս շատ հետաքրքիր բաներ են. վասն զի բաց անկէ որ առջեւնիս կը դնեն Դրանսիլուանիոյ ազգայնոց քաղաքային ու բարոյական կենաց որպիսութիւնը, կ'իմանանք նաեւ թէ ինչպիսի վիճակի մէջ էր իրենց լեզուն անցած դարուն մէջ։ . . .

Ամենէն առաջին որոշմունքներէն մէկն է, գործադիր ժողովին 1729 նոյեմ. 7ին տուած օրէնքը գաւազան կրելու նկատմամբ։ Ինչպէս որոշումէն յայտնապէս կ'երեւայ, ամէն մարդ գաւազան, մանաւանդ եղեգէ գաւազան չէր կրնար կրել։ Գործածելը՝ իշխանութեան, հեղինակութեան նշան մըն էր, ուստի եւ գաւազան կրելը միայն վերին պաշտօնատէրներուն, այսինքն պիրովին, աղաներուն, նօտարիուշին վերապահեալ էր։ Հասարակ քաղաքացի մը պիրովին հրամանովը կրնար գաւազանով պտըտիլ՝ տարեկան մէկ ոսկի տուրք տալով։ Աս հրամանին դէմ ընողը՝ տուգանք կը վճարէր ու կը բանտարկուէր։ — Տեսնենք ասոր որոշումը։

“Խորհուրդ եղաւ, մեր գըլնաճը, որ փօփոր նատ բացայ[1] քալցընու ձեռն, նայ անպատճառ

---

[1] Հունգարերէն բառ է. կը նշանակէ եղեգէ գաւազան։

*տայ ա. օսգի պիրովին ձեռն, ու վօվօր չիտայ նա փակ էրթայ, եայ գնատ բացան ձեռնէն վար դընէ, ու օչ աստեղն ոչ աս երկրին մէջ ունէնայ քալցընելու. եւ զանհընազանդը անպատճառ պատիժն քաշէ եւ զճուրումն կամ օսգին աղանունն է. ու ամէն տարի ունէնայ ա՛ ա՛։ օսգի տալու տայխի հախ. ա՛. ա՛ օսգի։ Դարձեալ գիտացվի որ վօվօր քայլցընու նատ բացայ, նայ պիտոր ունենայ դիսդուլթիւն[1], այսինքն ընտօր պիրօմն ու աղաներն ու նօդարիուշներն ու սարըսդան[2] վատահներոմն[3], պաշ վատահներն կորընճնունը հոս քաղքին մէջ ունենան քալցընելու։ Դարձեալ գիտացվի որ զա՛. օսգին առաջ պի առնու մեծ դընաճը ու թէ որ կէնայ մարդ որ ուզէնայ քալցընէլու տայեախ նայ դընաճին կամօքն պի հաշդըվի հետ սարըսդին ու պի քալցընու ինչու անի ապրի նայ։„*

*Ուրիշ որոշում մը կայ՝ նկատմամբ գինի վաճառելու եւ խմելու. թէ ո՛ւր, օրուան մինչեւ ո՛ր ժամանակը կրնայ գինի վաճառուիլ ու խմուիլ. եւ թէ մարդ՝ մինչեւ ե՛րբ կրնայ գինետուն մնալ։ Եւ կ՚իմանանք թէ երեկոյեան Հրեշտակ Տեառնի զանգակէն ետեւ, մարդ թէ որ գինի կ՚ուզէ խմել, պանդոկը չի կրնար խմել, հապա պէտք է որ գինին կուժի կամ շշի մը մէջ դնելով՝ տուն երթայ խմէ։ Որոշեալ ժամանակէն ետեւ, թէ*

---

[1] Tiszt. պաշտօնատէր։

[2] Սարսդա. Դրանսիլուանիայի հայոց լեզուով կը նշանակէ ընկերութեան մը (մուշտակակարաց խաղախորդաց) գլուխ։

[3] Վատահ՝ գործակալ, ծառայ։

որ իմացուի որ մարդ կայ պանդոկի մը մէջ՝ պանդոկապետը երեք հունգարական ֆիօրին տուգանք պէտք է որ վճարէ։

Այս որոշումն եղած է 1730 Նոյեմբ. 20ին եւ է յաջորդը.

“Խորհուրդ դըլնաճէն այսպէս եղաւ, որ գըրչմայէն[1] մերը, օգկայ տեղ ալ գըրչմայ ըլլայ նայ ունենայ ծախելու գինի, ինչվան ի օր զանգակ քաշվի Հրեշտակ տեառն, էտեւ անոր էտեւանց վօլնի չիլլայ օչ մէկ գըրչման ալ մարդ գինի խըմէլու քշերօվ, վօվ ուզենայ անոր ետեւ գինի խըմէլու նայ, արնու բլօսգային[2] մէջ ու տունը տանի. զէ գտվի ու իմացվի թէ մարդ կայ գըրչման զանկակ քաշէլուն էտեւ, նայ ունէնայ ճուրում տալու 3 մաճրի[3], գինի ծախօղն անպատճառ։„ . . .

Կ'երեւայ որ ժամանակաւ աղաներն այնչափ եռանդեամբ ու ճշդիւ չէին ներկայանար ժողովքի։ Ուստի եւ 1751 Յուլ. 21ին որոշեց ժողովն ընդ պատժով, որ անկից ետքը խորհրդէն ոչ ոք կարենայ հեռանալ, առանց դատաւորին նախընթաց գիտութեան։ Թէ որ պիրովին ծառան աղայի մ'երթալով զինք ժողովի հրաւիրէր ու անիկայ հրաւէրը բանի տեղ չդնէր՝ երեք մարիաշ տուգանք պիտի վճարէր։ — Մի եւ նոյն ժողովին մէջ որոշուած կը գտնենք նաեւ, որ աղա մը, երբ տեսնէ թէ դըլնաճը եկեղեցի

[1] Koresma, հունգ. բառ է, կը նշանակէ պանդոկ, գինետուն։

[2] Fiasko = մեծ շիշ, կուժ։

[3] Սորկի տեսակ մըն էր, իբր 40 սանդիմի հաւասար։

կ՚երթայր, ինքն ալ ետեւէն հոն երթալու էր, ապա թէ ոչ տուգանք կը վճարէր։ Բացառութիւն կրնար ըլլալ միայն երբ աղան չմտնելու օրինաւոր պատճառ մ՚ունենար, զոր նախապէս իմացընելու էր պիրովին եւ իրմէն՝ եկեղեցի չերթալու հրաման խնդրէր։ Այս որոշման պատճառն ալ կու տայ ժողովը. վասն զի, կ՚ըսէ, Մարտիրոս Բաղրուպան ու Թէոդորոս Շիմիլովցին՝ առանց հրամանի ժողովէն հեռացան, բայց տուգանքը վճարեցին. ուստի եւ — կ՚աւելցընէ վճիռը — տուգանքն անմիջապէս վար պիտի դրուի։

Այս որոշումը կը գտնենք 1751, Յուլիսի 21ին ժողովոյն մէջ, որ բառ առ բառ յաջորդն է։

"Խորհուրդ էղաւ Պատուելի դըլնաճըն, որ այսուհետեւ հի որ մէկ աղան արանձ պիրովի խըրըէրի[1] դըլնաճէն դուս ելէ ու տուն էրթայ, կամ հի որ մէկ աղային մօտ էրթայ պըրկար[2] ու սէպ չի դընելով որ գայ դըլնաճըն կամ օղկայ տեղ ուրուխ որ ձէնվի նայ, պի տայ ճուրում արանձ միոյ պատճառի 3 մարիաշ. ու ժամէն ալ էլէնայ գիտնայ որ գըլնաճըն տեսնէ նայ նեսմըտնու չի մըտնելով պի ճուրումվի. բայց թէ որ մէկնիստ Աղան իք մը պատճառ կամ բան ունէնայ նայ գայ ու թօղութիւն առնու պիրովէն, ետեւ պի էրթայ. եւ զայս բանին էղան պատճարն Ա. Մարտիրոս Բաղրուպանի եւ Ա. Դօտէր Վարդիկի Շիմիլօվցունց, որ գընացին տուն Պ. դըլնաճէն արանց հըրամանի եւ տվան զճուրու-

[1] Թուրք բառ է, եւ կը նշանակէ՝ հաւանութիւն, որոշում։

[2] Քաղաքապաշխութեան (minicipio) ծառայ։

ձներըն. նայ ամէն մէկ աղան ինմէտիադէ տայ ղճուրումն։„

Խորհրդականաց՝ ժողովքի ներկայանալու նկատմամբ՝ ուրիշ աւելի մասնաւորուած որոշում մըն ալ կը գտնենք չորս տարի ետքը։ Ասոր պատճառը կ'երեւայ թէ այն էր որ շատ յաճախ կ'ըլլային ժողովքները։ Ուստի սահմանուեցաւ նախ՝ որ այնուհետեւ ժողովները միայն ամէն երեքշաբթի օրերն՝ ըլլան. երկրորդ՝ որ ժամը իններն ըլլան. բայց թէ որ պիրովին իմաց տալէն քառորդ մ'ետքն աղաներէն մէկը չներկայանայ ժողովքին՝ մէկ կրօշ տուգանք տայ։

“Խորհուրդ եղաւ — 1755 Նոյ. 18ին — Պատուելի Աղաչանուն մէջ, օր մէկ օր մը ընտրեն. այսպէս ընտրեցին ամէն շաբթին մէջէն 3 շաբթի օրն 9 սահդեն, պատուելի սարըսդին Աղաչաներօմն մէկտեղ, օր իք մը հասդատութիւն կամ պաքսութիւն ըլլար Գ. քաղքին նա հասդատվլի վասն քաղքին պիտվականութեան համար. պըկարն Գ. Ա. պիրովին հրամանօվըն իմաց անելով Աղաչանուն՝ չի հնազանդօղըն ինչխար 1/4 սահդեն օր ուշացվէր, մէկ մէկ կրօշ[1] ճուրում պի տայ։„ —

Յաջորդ տարին աւելի եւս մասնաւորուեցաւ այս օրէնքը՝ այնու որ վրան աւելցուեցաւ որ եթէ այն օրը — երեքշաբթի — մէկ կամ մէկալ աղան գործք մ'ունենալով ժողովքին երթալ

[1] Կրօշ հունգ. garas. այլեւայլ արժէք ունեցող փոքր դրամի տեսակ մըն էր։ Արժէքը միշտ 2—5 քրայցերի կամ 4—10 շանդիմի հաւասար էր։

չի կարենար, պիրովին իմաց տալու էր։ Առանց հրամանի հեռացողը մէկ մաճարի տուգանք պիտի տար։

«Գոնֆիրմադ եղաւ — կ՚ըսէ ժողովը՝ 1756 Յունիս 8ին — զ 1755ին Նոյբրի 18ին եղած խորհուրդն վասն քաղքի պիտվականութեանը որ իրեքշաբդին կու քաղվին. Նախ աս ալ գիտացվի օր մէկնիօր Աղաչան ուզէնար երթալու իրեքշաբդին տանէն, նայ ունէնայ իմաց անելու Պ. Ա. պիրովին եւ առանց հրամանի չի երթայ, զէրայ երթար նայ պիտայ մէկ մաճրի ճօպում։»

Սակայն բանն այսչափով ալ չլմնցաւ։ Այս հրամանը մասնաւորութելէն ետեւ խոստացուեցաւ ալ, մանաւանդ այն ատեն, երբ — ինչպէս կ՚ենթադրենք — տարի մը ետքը՝ Պիրովին ու տասնուերկու աղաներուն օգնութիւն տրուեցաւ Սարըստան, իր 24 անձինքներէ կազմուող խորհրդականաց կամ աղաչաներու ժողովը։ — Այս ընդհանուր ժողովին առաջին գործքերէն մէկն եղաւ կանոնաւորեալ կերպով խորհրդեան ներկայանալու խնդիրը կարգի մը բերել։ Ուստի եւ Նախընթաց (1755 Նոյ. 18ին, եւ 1756 Յուլ. 8ին) երկու ժողովներուն հրամաններն պահելով ու ամրացընելով, նորէն որոշուեցաւ՝ թէ երբ պիրովը կամ սարըստան հրաման խրկէ իւր ծառային ձեռօք թէ ժողովքի քաղուին, անմիջապէս պէտք էին ներկայանալ։ Զեկողը կամ քառորդ ժամ մ՚անցնելէն ետեւ եկողը ինմէտիադէ կրօշ մը տուգանք վճարելու էր. ու կրօշներն այնչափ կը շատնային, որչափ որ որոշուած ժամէն ետքը

քառորդ ժամերն էին։ Անմիջապէս չվճարողին անունն առ այս վախճան շինուած գրքին մէջ կ'անցուէր ու կրօշը՝կրկին կ'ըլլար։ Որոշուեցաւ նաեւ թէ ով եւ որմէն պիտի առնուր տուգանքը եւ թէ որո՞նց մէջ պիտի բաժնուէր այն ստակը։ Ինչպէս կ'երեւայ, պիրօվը պիտի առնուր աղաներէն եւ իր 12 խորհրդականներովը պիտի բաժնէր զայն, իսկ սարըստան պիտի առնուր իր 24 աղաչաներէն եւ իրենց մէջը պիտի բաժնէին։

Այս նոր որոշումը կը գտնենք 1757 Յունուար 13ին ժողովին մէջ՝ որ է յաջորդը։

"Աստուծոյ ողորմութեամբն 1757 ունվարի 13. — վասն, Պատուելի Աղաչանուն քաղվելոյն եղաւ խորհուրդ Պատուելի Աղաչայ Պիրօյն Ա. Անկսէնտ Մանուկի Խիգուցեանց իւրեն հրամանոցն Աղաչանէրօյն եւ Ա. Սարըսդան Ա. Խաչգօն Սնբէդրեանց իւրեն հրամանոցն Աղաչանէրօյն հասդատեցին, որ հիմիկուց ինտան երբոր հրամայէ Պ. Ա. Պիրօյն իմաց անելով քայքի ծառայօյն թէ ֆալան սահդեն ունէնան Աղաչանէրն քաղքին տունը քաղուելու վասն խորհրդի նայ ունենայ ամէն մէկն գալու. զէրայ թէ օր չիգար ան սահդենը եւ քանի սահդի ֆրդար անցնէր նայ՝ անխտար կրօշ ունենայ ճուրում տալու. եւ երբոր ինմետիադէ վար դընէ զճուրումն գրածին զօրայ, նայ բարի է, եւ թէ օր չի դընէր՝ նայ պի արվի մէկ տէֆդէրն, ուրուխ պիլայ ամէն աղաչանուն անուններն գրած. եւ այս տեղն պի գրվի մէկ կրօշին տեղն երկու կրօշ. որ ճուրումն պի առնու

Ա. Պիրօվն իրեն հրամանոցն, աղանուն մօտէն եւ Ա. Սարըսդան պի առնու իրեն հրամանոցն Աղաչանուն մօտէն եւ փայ պի ձնէ, Ա. Պիրօվն զԱղաչանուն ճուրումն պատուելի աղանուն, եւ Ա. Սարըսդան նմանապէս պի փայ անէ հետ իրեն հրամանոցն Աղաչանուն։ Դարձեալ վասն իրեք շաբդնաւուր որ հաստատած է 1755ին նոյ. 18ին. նմանապէս գօնֆիրմօվադ 1756ին ունիսի 8ին. նայ հիմիկ ալ գօնֆիրմօվադ եղաւ որ մնայ հասդատ որ իրեք շաբդին ոչ աղաներն եւ ոչ սարըսդի աղաչաներն դուս չի ելեն քաղքէն առանց Ա. Պիրօվին հրամանին՝ եւ ով որ երթայ արանց հրամանի նայ այնպիսին ունէնայ ճուրում տալու մէկ մաճրի. այս է պատուելի հասարակին կամքն„։

Ասոնք են իշխանութեան՝ ժողովքի գալու վրայօք դրած որոշմանց գլխաւորները։

Այն խստութիւններն, արգելքները ու դրամական տուգանքները, զոր դրած է Եղիսաբեթուպոլսոյ դլնաճը՝ Հրեշտակ Տեառնէն ետեւ գինի ծախելու եւ խմելու, գաւազան կրելու, քաղաքային ժողովին ներկայ ըլլալու նկատմամբ եւ այլն, բան մը չեն՝ համեմատելով այն պատժոց հետ, զոր սահմանած է օրէնսդիր իշխանութիւնը՝ թանկագին հագուստներ հագնողներուն եւ ուայլ զգեստներ մտցընողներուն համար։

Ասոր նկատմամբ Դրանսիլուանիոյ Կերլայ հայաքաղաքը հրատարակուած հունգարերէն ամսաթերթը "Զգեստուց շռայլութեան չափաւորութիւնը„ վերնագրով փոքրիկ տեղեկութիւն մը բերաւ, Եղիսաբեթուպոլսոյ դիւանին

ձեռագիրներէն առնելով[1]։ Ասոր մէջէն կ՚իմանանք ի մէջ այլոց, թէ քանի մը հոգի պատժուեր են իրենց վիճակէն վեր ու թերեւս ոչ այնչափ վայելուչ զգեստներ ու ոսկւոյ եւ արծաթի ժապաւէնով զարդարուած հագուստներ կրելնուն համար։

Ընթերցողք անշուշտ կը ծիծաղին, երբ կարդալու ըլլան, օրինակի աղագաւ, թէ "Մէղտէսու. Գիրգորին ընկերն եւ քուրն կիլապտոնով նաշխած ձերնոց քալուցիլին. տվաւ ճուրում էրկուսին սէպն 4, 76„. — կամ թէ "Լուսիկին ո. Հ. Ա. Ամիրային ընկերն քալուցիլէ մանճէգնուն վրայ գուդիշ կիլապտոնով խարն, տվաւ ճուրում. 3„ եւ այլն։

Դրանսիլուանիոյ Հայոց սովորութիւնքն ու յարաբերութիւնները բոլորովին տարբեր էին մայրենի երկրին սովորութիւններէն։ Աս երկիրներուն մէջ իգական սեռն ազատ էր, ընկերութեան մէջ կրնար մաս ունենալ, ինք զինք հրապարակական հանդիսութեանց մէջ կրնար ցուցընել։ Բայց բնական էր նաեւ որ շրջակայ ազգաց սովորութեանն ու իր վիճակին եւ կարողութեան համեմատ կրնար ու պէտք էր հագուիլ։ Միայն թէ այս վերջին պարագան կրնար էրիկ մարդիկներու աչքին փուշ մը, վէրք մ՚ըլլալ։ Եւ իրօք ալ, ինչպէս կ՚ենթադրենք՝ այս բանը կը վիրաւորէր արանց աչքը ու սիրտը, որոնք իրենց պապերէն տեսած ու լսած էին թէ կնիկ մարդը

---

[1] Տես Armenia ամսաթերթ, Szamosujvár 1891, էջ 123։

մնայ տունը, կրթէ տղաքը, ըլլայ ու մնայ այնպէս՝ ինչպէս էին իրենց մամերը Հայաստանի մէջ։ Հաւանական է որ ասկից սկսած ըլլայ անմիաբանութիւնն ու տժգոհութիւնը՝ մէկ կողմանէ արանց ու կանանց մէջ, մէկալ կողմանէ իշխանութեան ու քաղաքացւոց մէջ։

Եղիսաբեթուպոլիս քաղաքին օրէնքները չափ կը դնեն կանանց հագստին ու կ՚որոշեն թէ ինչ տեսակ զգեստներ պիտի գործածեն ու պիտի չգործածեն։ Օրինադիր իշխանութիւնը կու տայ նաեւ իւր բանաւոր պատճառները։ “Վասն զի կը տեսնենք, կ՚ըսէ, որ քանի կ՚երթանք նորանոր ու աւելորդ հագստեղէններ կը մտնեն գործածութեան մէջ, անոր համար կ՚ուզենք մեր փոքրիկ քաղքէն աղքատութեան պատճառները .... հպարտութիւնը, փառամոլութիւնը դուրս ընել, որովհետեւ հիմակուան ժամանակս այնչափ բարձրագլուխ եղեր է հպարտութիւնը, որ չենք կրնար զանազանել թէ ով է աղքատն ու ով է հարուստը։„ Ուրիշ տեղ մ՚ալ կ՚ըսէ. “Օտար մեծամեծներէ լսեցինք մեր ականջներովը թէ Հայերն ինչ անպատմելի հարստութիւն պիտի ունենան, որ ասանկ հագուստներ կը կրեն։ Մենք ալ կը տեսնենք — կ՚աւելցընէ օրէնսդրութիւնը — թէ այս տեսակ հագստեղէնները մեզի համեմատ չեն„ եւ այլն։

Թէ իրօք թանկագին հագուստներ ու գոհարեղէններ գործածելու սովորութիւնը կար այն միջոցին ազգայնոց մէջ, յայտնապէս կը տեսնուի դրուած օրէնքներէն. վասն զի օրէնք

չի դրուիր այն տեղ ուր պատճառ ու հարկաւորութիւն չկայ: Ուստի իշխանութիւնն ասոր առջեւն առնելու համար, ուզեց արմատաքի խլել զեղծումը՝ յառաջ քան տարածուիլը:

Զգեստուց գործածութեան նկատմամբ տրուած առաջին — այսինքն 1738, յունուար 30ին — օրէնքը բացարձակապէս կ՚արգելու որ կանայք ոչ տունը եւ ոչ փողոցը չֆէւ կոչուած գլխանոցը գործածեն. ապա թէ ոչ՝ որ կնոջ գլուխն որ գտնեն այն գլխանոցը՝ գլխէն վար պիտի քաշեն, ու անկից զատ 12 մաճարի (ֆիորին) պիտի վճարել տան:

Աւելորդ չէ այս որոշումն բառ առ բառ յառաջ բերել:

"1738. ին ունվարի. 30ին.

"Ինչպէս որ խորհուրդ արին Պատուելի աղաչաները ու կապէցին ի ներքոյ հրամանի տակ՝ տէսնէլով օր քանի կերթայ նայ աւելօք նոր նոր հագըստներ արաչ կի բերին ու կանին, նա վալըսնի[1] դոդնակ չէփէչին համար օր ափսօլուդէյ արգիլած ըլլայ, որ օչ տունը ոչ օրամը քալին անպէս չէփէչօվ, զէրայ որ Պիքային գլօխը գըտվի նայ՝ չէփէչը պի արնըվի գլխուն, ու համ պի ճուրումվի այսչափ 12 մաճրի անպատճառ:„

Տասուիրեք տարի ետքը՝ — այսինքն 1750, յունիս 16ին — եղած ժողովքին մէջ, թէպէտ եւ — ինչպէս կը տեսնենք — ներուած է չէփէչ գործածելը, բայց ընդհակառակն շատ տեսակ

[1] Wallis բառուած. ասոր սեռականն է՝ վալըսնի:

մնայ տունը, կրթէ տղաքը, ըլլայ ու մնայ այնպէս՝ ինչպէս էին իրենց մամերը Հայաստանի մէջ։ Հաւանական է որ ասկից սկսած ըլլայ անմիաբանութիւնն ու տժգոհութիւնը՝ մէկ կողմանէ արանց ու կանանց մէջ, մէկալ կողմանէ իշխանութեան ու քաղաքացւոց մէջ։

Եղիսաբեթուպոլիս քաղաքին օրէնքները չափ կը դնեն կանանց հագուստին ու կ'որոշեն թէ ինչ տեսակ զգեստներ պիտի գործածեն ու պիտի չգործածեն։ Օրինագիր իշխանութիւնը կու տայ նաեւ իւր բանաւոր պատճառները։ “Վասն զի կը տեսնենք, կ'ըսէ, որ քանի կ'երթանք նորանոր ու աւելորդ հագստեղէններ կը մտնեն գործածութեան մէջ, անոր համար կ'ուզենք մեր փոքրիկ քաղքէն աղքատութեան պատճառները . . . . հպարտութիւնը, փառամոլութիւնը դուրս ընել, որովհետեւ հիմակուան ժամանակս այնչափ բարձրագլուխ եղեր է հպարտութիւնը, որ չենք կրնար զանազանել թէ ով է աղքատն ու ով է հարուստը։„ Ուրիշ տեղ մ'ալ կ'ըսէ. “Օտար մեծամեծներէ լսեցինք մեր ականջներովը թէ Հայերն ինչ անպատմելի հարստութիւն պիտի ունենան, որ սանկ հագուստներ կը կրեն։ Մենք ալ կը տեսնենք — կ'աւելցընէ օրէնսդրութիւնը — թէ այս տեսակ հագստեղէնները մեզի համեմատ չեն„ եւ այլն։

Թէ իրօք թանկագին հագուստներ ու գոհարեղէններ գործածելու սովորութիւնը կար այն միջոցին ազգայնոց մէջ, յայտնապէս կը տեսնուի գրուած օրէնքներէն. վասն զի օրէնք

չի դրուիր այն տեղ ուր պատճառ ու հարկաւորութիւն չկայ։ Ուստի իշխանութիւնն ասոր առջեւն առնելու համար, ուզեց արմատաքի խլել զեղծումը՝ յառաջ քան տարածուիլը։

Զգեստուց գործածութեան նկատմամբ տրուած առաջին — այսինքն 1738, յունուար 30ին — օրէնքը բացարձակապէս կ՚արգելու որ կանայք ոչ տունը եւ ոչ փողոցը չէֆէն կոչուած գլխանոցը գործածեն. ապա թէ ոչ՝ որ կնոջ գլուխն որ գտնեն այն գլխանոցը՝ գլխէն վար պիտի քաշեն, ու անկից զատ 12 մաճարի (ֆիորին) պիտի վճարել տան։

Աւելորդ չէ այս որոշումն բառ առ բառ յառաջ բերել։

"1738. ին ունվարի. 30ին.

"Ինչպէս որ խորհուրդ արին Պատուելի աղաչաները ու կապէցին ի ներքոյ հրամանի տակ՝ տէսնէլով որ քանի կերթայ նայ աւելըք նոր նոր հագըստներ արաչ կի բերին ու կանին, նա վալընի[1] դողնակ չէփէչին համար որ ափսօլուդէյ արգիլած ըլայ, որ օչ տունը ոչ օրամը քալին անպէս չէփէչօվ, զէրայ որ Պէքային գլօխը գըտվի նայ՝ չէփէչը պի արնըվի գլխուն, ու համ պի ճուրումվի այսչափ 12 մաճրի անպատճառ։„

Տասուիրեք տարի ետքը՝ — այսինքն 1750, յունիս 16ին — եղած ժողովքին մէջ, թէպէտ եւ — ինչպէս կը տեսնենք — ներուած է չէփէչ գործածելը, բայց ընդհակառակն շատ տեսակ

[1] Wallis ըսուած. ասոր սեռականն է՝ վալընի։

զգեստեղինաց գործածութիւնը խստիւ արգելուած է, ոչ միայն կանանց, այլ եւ արանց։ Աս որոշման մէջ օրէնսդիր իշխանութիւնը մասնաւորապէս կը զբաղի այն պատճառաբանութիւններով, որոնց համար շատ մը տեսակ զգեստուց գործածութիւնը կ'արգելու։

Այս ժողովքին ընթացքն ու կարգադրութիւնը յաջորդն է։

"Տեսնելով Պատուելի քաղաքը, որ քանի որ կերթայ, ալ իժով մէկ քան զմէկ կու անցվին հագուստ հագնելովը, անոր համար ութվայ Պ. քաղքին, որ ալ շատ հագուստնուն մէջէն զայս ալ վար գրած ու նիշանած հագուստը արգիլած ըլլայ որ ամենեւին մարդ չի հագնի կամ ըզիւր տըղան չի հագցընույ, զէ թէ որ գըտվէր մարդ օր հրամանին չի հընազանդէր նայ գիտէնայ ուրուխ որ գըտվի թէ՛ մարդիգաց մէջ թէ օրամը թէ ուրեւիցէ վրայէն պի արնըվի օր ալ մեծ ամօթը պիլայ եւ անոր ետեւանց պի ճուրումվիալ։

"Վասն որոյ այսուհետեւ կու արգիլվի, օր ամենեւին հէջ մարդու տղի գլխույ վերայալ հօրբուգըր[1] չի գըտվի, մանէլայ,[2] լանձուգ,[3] մարգիտ, պօկլար[4] եւ օզկայ զարդարանք գլխուն վրայ ամենեւին չի գըտվի զարտօր հարկէոր

---

[1] Նորահնար բառ մըն է կարծեմ, կէսը հունգարերէն (hay = մազ) կէսը գաղղիերէն (poudre = փոշի)։

[2] Չեմ գիտեր ինչ կը նշանակէ։ Հաւանական է որ սխալ գրուած է, անշուշտ մանդէլա = mantille ըլլալու է։

[3] Պզտի շղթայ. lánc հունգարերէն բառ է, ու կը նշանակէ շղթայ. ու—գ, այսինքն ու—կ նուազական մասնիկ է։

[4] Հունգարերէն բառ է, կը նշանակէ՝ շրջանակի մէջ առնուած ակն պատուական։

փարթայ, ու պըղնձէ ու պաղչի ջիչակ ըսլօպօտ[1] պիլայ․ բայց գօրծնայ որն որ գլխուն վրայ օր կու դընին նայ պըղընձէ ալ ըսլօպօտ չիլայ ու թէվի կապնալ որն որ կու կապին ըզշապկըը թեվին մէջտեղը ան ալ արգիլած ըլլայ ու վօվ իրեն Աստուծմէ տված գլխուն մազով օգդըվի ավե-լօքը ճակատը մազ չի կապէ․ զայս հրամանին չի հնազանդօղը պիտայ ճուրում 24 մաճրի։

"Ու վօրօվհէտեւ աղջիկ տղոցը գլխուն վրայէն կու արգիլվի զարդարանքը, այն ալիժօվ[2] կընտոցը գլխուն վրայէն ալ արգիլած ըլլայ, որ չէփէչէն դուս ամէնեւին օսգի, արծաթ, մարգիտ եւ ուրիշ զարդարանք չիլայ ըսլօպօտ հագնէլոյ ի ներքոյ վերոյ գրեալ գծնտիձիայէն եւ ճուրու-մին տակը եւ զայս բունգդէրուն վրայ հաստա-տեց Պատուելի քաղաքը զՊատուելի Ա․ օվանէսն օսգէրիչեանց տիրէգդօր օր իրեն հրամանքն ըզ-վօվօր տէսնուի հրամանին ընդէմ քալօվ կա-րենայ ըզճուրումը արնէլու, զոր ճուրումին զի-րեքում փայը պիլայ Ա․ տիրէգդօրինը եւ երկու փայը Պատուելի դըլնաճինը„։

Այս օրէնքը սահմանուեցաւ, ինչպէս ըսի, 1750 Յունիս 16ին։ Բայց որովհետեւ կ'երեւայ թէ կամ բացայայտ չէր օրէնքը, կամ օրինաց պահպանութիւնը դժուարութիւններով ընկե-րացած էր, եւ կամ դրուած տիրէգդօրը չէր կրնար անձամբ գործադրութիւնն ընել, անոր համար նոյն տարւոյ վերջը — Դեկտ. 28ին —

[1] Ներեալ՝ ազատ է, հրաման կայ։
[2] Այնչափ աւելի, մանաւանդ թէ։

*Նոյն օրէնսդրութիւնը նորէն հաստատուեցաւ, մանաւորուեցաւ ու խստացուեցաւ յաջորդ կերպով ու նոր օրէնքներով եւ կարգադրութիւններով։*

*"†Ողորմութեամբն Աստուծոյ եղեւ հաստատութիւնըս այս ի մէջ Էլիզաբէդ քաղաքիս։ Քանզի խնդրելով Պատուելի դըլնաճըն զԳերյարգելի Տեառն Տեառն Տեառն Մ'ինաս Խնկանոսեանց Աստուածաբանութեան վարդապէտ եւ Առաքելական Միսօնար, գանօնիգուս գերազանցեալ գաբիդուլումին եւ առաքելական բրօդօնօդարիուս եւ արքիտիագօնուս Հայոց ազգին, նայ եւ արժանաւոր բլէպանուսն քաղաքիս որ եւ իւր յարգելութիւնն ներկայ գտվի այս հաստատութեանս որն օր անձըն առաւ եւ կամաւորեցաւ որ հաստատվին այս ալ վար դրած բունգդներն ըստ կամաց Պատուելի Աղաչանուն եւ Պատուելի քաղաքացոց այսինքն վասն հագըստէղէնուն որ արգիլվին վասն շատ պատճառաց որն որ հօս միայն կարճարօտաբար զդասմ̃ն կու յայտնինք։*

*"$1^a$ Առաջին պատճառն այս է, որ որով հետեւ մենք ալ կու կամինք, որ օր ըստ օրէ կու ջանանք թէ հաստատ քաղաք բընինք եւ կարաւարինք ինչպէս տան տըղաք որպէս որ Աստուծոյ ողորմութեամբն ունինք ալ զինքն բրէվէլէկիումով զարդարած, նա կի ութվի թէ օզկայ հնարով չիպի կարենանք կարաւարելու քանձ օր նայինք օր էգօյնօմիայ հաստատինք մեր քովը քաղքին մէջ։*

2° Կու կամինք բառնալու մեր փոքըր քաղաքին մէջէն զհըպարդութիւնը զփառամոլութիւնը եւ աղքըտութեանըն պատճառներ, այսինքն զանկարք հագըստեղէնը, մանաւանդ վասըն այս պատճառնի ալ, զէրայ հիմիկեն ժամանակս այնքան բարձրացիլէ հպարտութիւնը, որ չինք կարենալ ընտրելու թէ որնէ աղքատ կամ որնէ տօլվադոր. որովհետեւ որ աղքըտին եւ խօճին հագուստն մէկ կերպիւ է։

3° Թէպէտ ասոր առաջ հաստատիլին մեր Պատուելի Աղաչաներն եւ գրիլին կարք թէ ընտոր հագնի աղգատըն եւ կամ տօլվադորն, բայց մեր ազգն անհընազանդ գտվելով, ավերիլին զհաստատութիւնըն որ հիմի կու հագնին մէկ ընտոր մէկալն, վասն այսորիկ ութվեցաւ Պատուելի Աղաչանուն որ հիմիկեն հաստատութիւնըն ըլլայ այս կերպիւս, որպէս հոս ալ վար կու գտվի գրած։

4° Որովհետեւ որ կու տեսնուն Պատուելի Աղաչաներն թէ կարք դնէին Աղաչանուն եւ քաղաքացոց մէջ շատ պըղտորութիւն պի լինէր ի կողմանէ անհընազանդութեան, նայ կամեցաւ զտիշքուդաձիան՝[1] վերցնէլու եւ հաստատեց որ այլ ալ վար գրած բունդդէրուն ունէնայ հնազանդէլու թէ Աղաչայ Պիրօվըն եւ իրեն հրամանոցն Աղաչաները եւ թէ օզկայ բրիվադ քաղաքացի. մագար նէմիշ ըլլար[2], եւ Պատուելի

[1] Disputatio, վէճ, բանակռիւ։
[2] Թէեւ ըլլայ ազնուական։

քաղքին տէրէքձիային[1] տակը գտվէր նայ ունե-
նայ հնազանդէլու, զէրայ թէ որ մէկնիորն ըն-
դիմութիւն անէր նայ պի ճուրումնի այն ճուրու-
մովըն որն որ հոս ալ վար կայ հաստատած:

5^{to} Ասոր համար ալ կուզինք որ այս բարի
բանը հաստատվի, զէրայ չափէ դուս հպարտ
հագըստէղէն գտվելօվ մեր քաղքին մէջ եւ
զայս տեսնելով էրկըրին պարոնտանքըն մեծ
ուրայ[2] կու բէրինք մեր վրայ զորն դասմն անկը-
ճներօմն ըսիլին եւ կու ըսին հիմիալ, թէ հայերն
անսէպ խոճայ մարդիգին, որ այսպիսի հագըստէ-
ղեն ունին. որն որ մենք ալ կու տեսնունք, որ այս
հագըստներն մէզի գօրայ չին. վասն այսորիկ ութ-
վէցաւ Պատուելի Աղաչանուն մէկ խորհուրդով
եւ մէկ վօղումօվ որ այս աւելի հագըսդեղէնը
պաքսի մեր փոքըր Քաղաքին մէջէն որ մեր Քա-
ղաքացիքըն ոչ հոս քաղքին մէջ, ոչ երկրին մէջ
եւ ոչ օզկայ Երկիր այս այլ վար գրած կամ
արգիլած հագըսդէղէնը հագնի զէրայ թէ որ
հրամանի դէմ մէկնիորն հագնէր նայ այլվի այլ
գրած վինգուլումօմն[3] պի պատժվի:

“Բայց վասն հագըսդեղէնուն, որն որ կու
գըտվի Պատուելի քաղքին մէջ թէ էրիկ մար-
դիգաց ու թէ կանաց եւ թէ կըտըրըճվորաց եւ
կամ աղչկանց ունէնան ամէն մէկըն այս ալ վար
գրած բունգդերուն գորայ հնազանդէլու եւ
անելու:

---

[1] Directio:
[2] Ամօթ, խայտառակութիւն:
[3] Պատիժ, տուգանք:

«1ma Ամենեւին ոսկօվ մադէրիայէ այսինքն զարպայէ հագուստ չի գտուի մեր քաղաքացոցն վերայ, ոչ մեր քաղքին մէջ. ոչ այս երկրին մէջ եւ ոչ օղկայ երկիր չի գըտուի ոչ մէնդէյ[1] ոչ սուգնայ[2] ոչ շուրց[3] ձչ գեբդ[4] թէ հայնակ եւ ոչ մաճըրնակ եւ ոչ կրգալ[5]: »

2do Ամենեւին մէկ հագըսդեղէնուն վերայ արծըթէ, ոսգու զարդարանքներ չիգըտուի, ոչ գիւդիւշ[6] ոչ չիբգայ[7] ոչ բօռդիշբան[8], ոչ բասամանդ[9] ոչ ֆրանձըլ[10]. եւ կամ հի ինչ անունն ունենար այն ոսգու կամ արծըթէ զարդարանքըն ոչ մէնդէյնու ոչ սուգնանու ոչ շուրցէրու ոչ գեբդերու թէ հայնակ ու թէ մաճըրնակ եւ ոչ կըձգալնու[11] վերայ մէկ միայն ոսգու կամ արծըթէ չինօրն եւ սըրգըլապէն[12] դուս. որ ըլայ չինօրն որպէս հիմի կու հագնին կամ կու գտուի եւ ոչ օղկայ նոր բան որ ալ լան ըլար եւ սրգը-

---

1 Մէնդէյ — կրկնոց. հունգ. mente:

2 Հունգարերէն է szoknya, կը նշանակէ կանանց շրջազգեստը, կանացի վատուակ (փէշ):

3 Schurz. գերմ. բառ է. գոգնոց՝ առիգած կը նշանակէ:

4 Տեսակ մը նեղ կրկնոց է, զոր հիմակ աւելի Վալաքք կը գործածեն:

5 Անտարակոյս կրծակալն է:

6 Հունգարերէն բառ է. kötés. կը նշանակէ կապ, հանգոյց:

7 Հունգ. esipke ժանեկ:

8 Ճիշտ նշանակութիւնն չեմ կրնար ըսել:

9 Արծաթէ կամ ոսկիէ հիւսուած ժապաւէն:

10 Գերմ. franze բառն է, որ կը նշանակէ ծոպք, վերջաւորք:

11 Կըձգալը՝ կրծակալն է:

12 Սըրգըլապ = szarka—làb հունգարերէն բառերուն բաղադրութիւնն է, կը նշանակէ որիի ոտք: Այս ինքն ծիրն (խայթան) այնպիսի կերպով կամ ձեւով մը կը կարուի զգեստի վրայ, որ ագռաւի ոտքին ճանկերուն նման ձեւ մը կ'առնու:

լամի[1] պիլայ չմօրէ առանց վիդիզ գիւղիւշ[2] պիզտի բիգով[3] մըն եւ չափաւոր ռօյդօվըն[4] եւ այս ալ միայն կընտոցն հակըստնուն վերայ. բայց էրիկ մարդիգացըն աբսօլուդէ չի պիլայ ըսլօպօտ դընէլու, տարէ չէփէջներին գիտացվիօր ազատին։

3[to] Օսգօվ արծըթով լալէխներն թէ փեսուլթեան, թէ վզի որ կու գտվին նայ արգիլված պիլան որ ամէնեւին ըսլօպօտ չիլայ քալցընելու[5] կամ հագնէլու, նմանապէս օպրուզներն[6], բարձերեսքներն, սամներըն որն որ ոսգօվ կամ արծըթով զարդարած կու գտվին նայ արգիլած պիլան։

4[to] Օսգով կամ արծըթօվ շուխերն[7]. ապըշմէ շդըրինֆներըն[8] թէ տղայ կընտոց եւ թէ աղջիկնու եւ կամ հի որ մէկին արգիլած պիլայ։

5[to] Նըմանապէս ոչ էրիկ մարդիգաց ոչ կնտոց հագստի վըրայ ոսգու կամ արծըթէ գըրէբին[9] չի գտվի եւ չէ միայն արծըթէ կամ ոսգու հապայ ոչ ապըշէ չի գտվի պէրայ արգիլած է. Նաեւ արծըթէ կամ ոսգու ապըշէ վօրաշ[10] ալ չի տգվի։

---

[1] Սրգըլամի՝ սըրգըլապին հետ հաւասար է։

[2] Vitéz — kötés — քաջաց (այսինքն զինուորաց) հանգոյց. տեսակ մը հանգոյց է, զոր մինչեւ ցայսօր կը գործածեն Հունգարացիք իրենց ազգային զգեստուց վրայ։

[3] Բիգ = քիչ, սակաւ։

[4] Rojt մաճառերէն է. ծոպ, վերջաւոր կը նշանակէ։

[5] Քալցընել = գործածել։

[6] Abrasz հունգարերէն բառ է, կը նշանակէ սեղանի ծածկոց, սփռոց։

[7] Schuh գերմաներէն բառ է, կը նշանակէ հողաթափ։

[8] Strümpfe գերմաներէն է. զանկապան, գուլպայ կը նշանակէ։

[9] Ծոպ, վերջաւորք. գաղղ, crépine։

[10] Հունգարերէն varrás բառն է, կը նշանակէ կար, կարուածք։

6to Սիրմայէ, կիլապտոնէ[1] կոճակ հագըսդէղէնուն վերայ չի դրվի եւ ոչ կօշգի վերայ. արծըթէ կամ ոսգու չինօր, ոչ էրիկ մարդիգաց եւ ոչ կնոտց:

7ma Վասն շապկեղէնուն եղեւ հասդատութիւն որ օվօր ունի հատիրնայ հագնի զիրենք մինչեւ օր պատրին. բայց հիմիկուց ինտան արգիլածին որ զպըրձարներն կիլապտոնօվ չի անին, զփխպարըն եւ զըումիշօլներն կընան կիլապտոնօվ անէլու:

8vo Վասն եօղըմուն եղեւ հասդատութիւն որ ովոր ունի նայ վայլեցնու զինքըն. բայց հիմիկուց ինտան ըսլօպօտ չիլայ անէլու ոչ զարպայէ ոչ խատիֆէ ոչ ատամազքէ ոչ դըօգէդէ եւ ոչ կազու. նմանապէս փեսութեան շապիքն ալ չիլայ կիլապտոնօվ կամ սիրմայօվ նաշխած[2], զէրայ թէ որ իմացուէր որ մէկնիտըն հրամանի դէմ վերայ գրեալ մադէրիանուն եօղըան կու անէ նայ պի ճուրումվի:

9na Հասդատեցաւ որ ասորվանէն ինդան այլ շատ ըսդօլին վերայ ճէհէզ չի ցըցնվի,[3] նմանապէս սեղան խըկըվի[4] ոչ փեսան հարսին եւ ոչ հարսըն փեսին. եւ աս ալ որ փեսան ինքըն իրեն հագնըվի ու չէ կորըճներն հագցընուն:

"Այս է Պատուելի քաղքին կամքըն, զոր

---

[1] Մետաքսով կարուած, կար, հիւսք:

[2] Բանուած, կարուած:

[3] Ճէհէզ բառին նշանակութիւնը յայտնի է: Իմաստը կամ նշանակութիւնը կարծեմ այն է, որ չըլլայ թէ օրիորդին սեղանին վրայ դրուած այս հանդերձանքն ըլլայ միայն պատճառ, որ երիտասարդը զինք կնութեան առնու:

[4] Այսինքն՝ կերակրեղէն խրկուի:

գրեց ինը բունգղի տակ, որ բունգղներն կամե-
նալով որ հաստատ մընայ Աստուծոյ ողորմու-
թեամբն եւ Տիրամօր կուսին բարեխօսութեամբն
յոյս ունիմք որ հաստատ մընայ։

"Բայց թէ որ գտվէր մէկնիոր ամպուր
գլխով աղաչան կամ քաղաքացին, մանաւանդ
այս աղաչանուն մէջէն որն որ այս հաստատու-
թեանն մէջ ներկայ գտվիլէ, որ կամենար զայս
հաստատած բունգղերըն ոտից տակ առնելու եւ
ընդիմութեամբն անհընազանդութեամբ զայս
հաստատածներըն աւրէլու, զայնպիսին կու անձնէ
հաստատութիւնն Քրիստոսի ահեղ ատենին, որ
ունէնայ ճուեապն տալու, զոր էն ինքն Քրիստոս
զամէնէքեանըս հերի անէ այս հոգեւոր պատժոյն։
Մայ թէ որ այս ահեղ ատենէն չիվախնար ու
ամէնը իրեն քարացեալ սրտի էտեւանց քալէր
եւ ըղհասարակութեան զենը կամենար, նայ այն-
պիսին պի ունենայ պատիժ մարմնաւորապէս որ
պիտայ ճուրում։ 24։ ոսգի. այս ինքն, քըսա-
նըչորս, որ այս ճուրումս պի արվի չորս փայ.
մէկն եկեղեցոյ, մէկն պատուելի դըլնաճին, մէկըն
պատուելի սարսդին սնտկին եւ մէկն հօս ալ վար
գրած տէրէքգօրնուն, որն որ այս բանիս վերայ
կու հաստատէ պատուելի 'քաղաքն տէրէքգօր
այս բանիս զՊատուելի Ա. Օվանէսն Ոսգէրիչէնց
եւ զԱղաչայ Անկսէնտն Վրդանի Խսիգուցեանց
եւ զԱղաչայ Թորոսն Ունանեանց, զԱղաչայ Խնկա-
նոսը Ամիրայի Խնկանոսեանց, եւ տվաւ ձեռվը-
ներն զվերոյ գրեալ Փագուլդաշն[1] որ ըղվօվ

[1] Իշխանութիւն։

իմանային թէ ընդէմ այս հաստատութեանս նայ պի դատի վերըյ գրեալ վինգուլումին գօրայ։

«Գիտելի է եւ այս որ տեսնելով Պատուելի աղաչաններն որ այսպէս անգուման[1] եւ մանաւանդ տօներուն դիմաց չի պի կարենան ու չի պի ունենան եւ ոչ ունին ժամանակ Պատուելի քաղաքացիքըն զիրենց հագըստեղէնը թէ էրիկ մարդիգաց, թէ կնտոց, կորջորաց եւ աղջկանց այս հաստատած ըէկուլային[2] դօրայ տիրիկօվադանէլու[3] եւ հատրէլու[4], նայ ութվեցաւ Պատուելի աղաչանուն որ տան տիլաձիայ[5] հասարակութեանն դէր այս գալ Ֆարշանգիս[6] ալ. այսինքն մինչեւ ի գալ մոխրոցին, որն որ ունենան ժամանակ ամէն մէկը զիրեն հագըստեղէնը ըստ հրամանի Պատուելի քաղքին հատրէլու եւ այսպէս դէր այս Ֆարշանգիս պի կարենայ ամէն մէկն զիրեն ունեցած հագըստեղէնը այս կերպիւըն, որն որ ունի զինքն վայլեցնու. բայց լըմընալով վերըյ գրեալ տիլաձիային դէրմինը[7], պարտական պիլայ ամէն մէկ կազտան[8] վօվ իրեն տանը մէջ տէրէքդօր դարնալու եւ ամէն սօյ հագըստէղէնու վրայէ զոսգին, արծաթըն որ օր այլ վերի բունդգօներուն մէջ կու գտվի արգիլած, լնմէտիադէյ քակէլու, կուզէ էրիկ

---

[1] Յանկարծակի։

[2] Կանոն։

[3] Ուղղել։

[4] Պատրաստել։

[5] Տարածում, ընդարձակել, երկարել։

[6] Գերմաներէն Fasching, հունգ. Farsang, բարեկենդան կը նշանակէ։

[7] Որոշուած ատեն, ժամանակ։

[8] Տանուտէր. մաճառերէն բառ է.

մարդու հագուստ եղաւ կուզէ, կնիկ մարդու, որ ամենեւին ոչ մէկ ցեղին հագըսդի վերայ չի գըտվի, ոչ Նորի ոչ Հինի վերայ, եւ այս վասն այսորիկ որ ունենալով զինքն, չիլայ պատճառ ավերման վերոյ գրեալ հասդատութեանը, տարը թէ որ մէկնիորն չի հնազանդէր եւ չունենար տարտ այս Փարշանգիս մէջ զիրեն հագըսդէղէնը հրամանին գօրայ տիրիկովադ անէլու եւ պի պէտք ըլլայ որ գալ մոխրոցին օրն էրթար ժամ արծըլթէ ոսգու զարդարանքով. կուզէյ նայ քան ինչ հին էղաւ, նայ գիտենայ այնպիսին որ տված է Պատուելի Աղաչա տիրէգդօրնուն ձեռն Պատուելի դըլնաճէն Փագուլդաշ որ դնին գքաղքի ծառայքըն որ տեսնուն թէ մէկն հրամանի դէմ գտվի հագնված նայ ինմէտիադէ զան հագուսդըն այնպիսի անհընազանդօղին վրայէն վար պի քաշին. եւ չիպի օգդի ամօթօվըն, հապա դէր պի ճուրումվի վերոյ գրեալ հասդատած ճուրումօվն. եւ չէ թէ միայն մէկ անգամն հագնէր եւ զճուրումն տար նայ ըսպօլըտ պիլայ հագնէլու, հապա քանի անգամ որ անհընազանդ ըլլայ այս հասդատութեանս նայ անխըտար անգամ պի ճուրումվի. վասն այսորիկ իմաց կանին Պատուելի աղաչաներն Պատուելի քաղաքացոցն որ ոչ մէկն ալ չի կարէնայ ասէլու թէ չի գիտացիլ եւ անօվ էքզգուզօվադ ըլլայ. որ բանն վասն այլ մեծի հասդատութեան ըստորագրեցաւ նայ գեր յարգելի հայրն մեր Տէր Մինասն խնկանոսեանց եւ ապայ Պատուելի Աղաչայ Պիրօվն իրեն հրամանոցը Աղաչանէրօվըն,

Նմանապէս Պատուելի Աղաչայ Սարըսդան իրեն հրամանոցըն աղաչանէրօվն, Պատուելի քաղքին մօռ հօվն ամրացուցանելով որ մընայ միշտ անխախտ։

"Գրեցաւ Ամի տեառն 1751։ •
"Դեկտեմբերի 28։ Էլիզաբէդ քաղաքըն
"Հայոց երկրին Դրանզիլվանեայ„։

Թէ ինչպէս կատարեց պաշտօնը վարչութիւնն՝ ու ի՛նչ խստութեամբ վարուեցաւ անոնց հետ, որոնք հրամանին դէմ ընելով իրենց չափէն վեր կամ արգելուած զգեստներ հագան ու զարդարանքներ գործածեցին, կը ցուցընեն այն պատիժները, զոր ի յիշատակ ապագայ ժամանակաց՝ Ամիրայ աղա Դանիէլեան քաղքին դիւանին մատուցած է։ Թէպէտ խոստովանելու ենք ի պարծանս վարչութեան՝ որ այն խստութեամբ որով օրէնքը դրուած է, ոչ զոք կը գտնենք պատժուած։ Ամենէն մեծ պատիժը եղած է մինչեւ վեց Ֆիորին. եւ այս է խստագոյն տուգանքը։

Ահա պատիժ կրողներուն անուններն ու տուգանաց քանակութիւնը։

"1mo. Իլախին Լուսիկին որդին Վարդանը հագիլէ պէրնըվագ[1] կիլապտօնէ կայդընօվ եւ չէ նումայ կայնին[2] սէպէն ճուրումվեցաւ, հապա դըկըտուիդ կու անէր[3] թէ չէ քալուցիլ։ Գտան Պ. Տէրէգդօրներն որ տայ ճուրում. . 6.—

[1] Սանոց. վարտիք։
[2] Այսպէս գրուած է, չեմ կրնար հանել թէ ինչ է։
[3] Դըկըտուիդ անել, կը նշանակէ ուրանալ. հունգարերէն է tagadni։

2ուն. Աղ. Լուսիկին պիքան[1] Թորոսեան գընաց ժամ շուրջօմն որ շուրճին վրայ գրուվիլէ արծըլթէ ջիպգայ. գտան որ տայ ճուրում . . . . . . . . . 6.—

3ուն. Աղ. Մարտիրոսին Բաղրուպանին դուստրը մանճէդնուն վերայ գըտվեցաւ խարը[2] կիլապտնով ջիպգայ . 3.—

4ուն. Աղ. Պօտէրին Վարդիկեան դուստրը բոսամանդով ֆիճույիդ էղիլէ[3]. տվաւ ճուրում . . . . . . . . 3.—

5ուն. Սարգիսին Թորոսեան ընկերն մանճեդնուն վրայ կիլապտնով խարը գուդիշ քալուցիլէ, տվաւ ճուրում. . 5.—

6ուն. Մէղտէսու Գիրգորին ընկերն ու քուրն կիլապտնով նաշխաց ձէրնոց քալուցիլըն. տվաւ ճուրում երկուսին սէպն . . . . . . . . . . . 4.76

7ուն. Սարգիսին ընկերն Տիդօյ վասն ձերնոցնունը սէպն տվաւ ճուրում . . 2.38

8ուն. Մարտիրոսին Սընդովիչին ընկերն նմանապէս վասն ձէրնոցնունը տվաւ ճուրում . . . . . . . . . . . 2.38

9ուն. Ա. Պօտէրին Վարդիկին ընկերն նմանապէս ձէրնոցնունը տվաւ ճուրում . . . . . . . . . . . 2.38

10ուն. Ա. Վարդան եօլպէյի ըն-

---

1 Պիքա = խաթուն, տիկին։
2 Այսինքն՝ խառն։
3 Ֆիճուիդ ըլլալ, ինք զինք ցուցընել, պարծենալ, պանծալ, հպարտանալ։

կերն նմանապէս ձերնոցնունը տվաւ ճուրում . . . . . . . . . . . . . 2.38

11ուն. Գընտօվլին Հարսն նմանապէս վասն ձէրնոցնունը սէպն տվաւ ճուրում . . . . . . . . . . . . . 2.38

12ուն. Վարդերես Մինասի ընկերն վասն ձէրնոցնուն սէպն տվաւ ճուրում . 2.38

13ուն. Ա. Խաչգօյին Սեմբեդրեան դուստրը վասն ձէրնոցնուն սէպն տվաւ ճուրում . . . . . . . . . . . . 2.38

14ուն. Ա. Նիկօլին Ճիրախի ընկերն տվան նօրէն նաշխել փէսուլթեան շապէք կիլապտոնով տվաւ ճուրում . 2.38

15ուն. Ա. Խաչատուրին տէր Ըսթեփանի դուստրն Հագիլէ լայպըլ[1] վրան կարաց բօնդիշքանէ սդրուց[2] եւ դըկըտույիդ ալ արիլէ թէ իրեն դուստրը չի քալուցիլ անոր սէպն գտան որ տայ ճուրում . . . . . . . . . . . . . 480 պն.

16ուն. Ա. Լուսիկին Ո. Հ. Ա. Ամիրային ընկերն քալուցիլէ մանճըղին վրայ գուդիշ կիլապտոնով խարն տվաւ ճուրում . . . . . . . . . . . . 3.—

17ուն. Ա. Խնկանոսին Ո. Հ. Ա. Հանգօյի ընկերն կիլապտոնով նաշխաց ձէրնոց քալուցիլէ տվաւ ճուրում . . 2.38

18ուն. Ա. Խաչարենց մօտէն խըր-

---

[1] Գերմ. բառ է, կը նշանակէ ներքնակ։
[2] Զգեստեղէնի մաս մը պիտի ըլլայ։

կած է Նասիպ Հարսինը զորնոր ընդէմէ
արգելմունքինէ, գտան որ տայ ճուրում 2.38

19ին. Ա. Խնկանոսենց Ո. Հ. Հան-
գօյեանց մոտէն խըրկած է Նասիպ Ա. Լու-
սիկին Թորսեանց գտան որ տայ ճուրում 2.38

20ին. Ա. Խաչարին որդին Հա-
գիլէ պէրնըվաք կայդանը կիլապտնէ
միայն դարձուցաց էղիլէ, տվաւ ճուրում 2.38

21ին. Լուսիկ Բաղրուպանի էլ
դիզէ գըտակ Հագիլէ որ գըտկին վրայ
եղիլէյ Նաշխաց կիլապտնօվ տվաւ ճու-
րում . . . . . . . . . . . . 2.38

Pro Memoria
Տրվաւ զայս correction pro
futura . . Memoria ad
Archivum Պատուելի Աղ. Ամիրան
Տանիէլեան:„

Այս — քաղքիս դիւանին մէջ առանձին գտնուած — անթուական թուղթը՝ անշուշտ պատասխան կամ արձագանգ մըն է 1751ին օրէնսդրութեան, որ տրուած է, ինչպէս առորագրութենէն յայտնապէս կը տեսնենք, այն ատեն դիւանին առ ի յիշատակ ապագայից՝ ցուցընելու համար որ օրէնքը՝ օրէնք է, ոչ միայն թղթի վրայ, այլ՝ եւ ի գործնականս։

Ժողովրդեան հոգեւոր պիտոյքը հոգալու համար որոշուեցաւ որ երկու աշխարհական ու մէկ կրօնաւոր քահանայ ըլլայ։ Ասոնց եկամտին նկատմամբ ալ հոգատարութիւն եղաւ։ Երկու աշխարհական քահանայք պիտի հոգային զգես-

տեղինաւ, լուացքով ու կերակրեղինաւ զՀ. Մանուէլ Մխիթարեանը: Եկամուտը՝ հաւասարապէս երեք հոգւոյ մէջ պիտի բաժնուէր: Սակայն քաղաքային ժողովոյն այս որոշումն ըստ մասին փոփոխութիւն կրեց, երբ Պաշտպալով հանող Հ. Մանուէլն իրեն մասին եկամուտէն հրաժարեցաւ. ըսելով թէ Մխիթար Աբբահօր հրամանն է որ ինք դրամական հաստատուն եկամուտ չունենայ, այլ ձրի քարոզէ, եւ ով որ ժողովրդենէ կամաւորապէս ողորմութիւն մը տալ կ'ուզէ, զայն առնու ու անով շատանայ:

Այս միջոցին կ'իյնայ (1729) որ Տէր Ստեփան — անտարակոյս Ռօշքա — Դրանսիլուանիոյ Հայոց այցելութիւն ընելով՝ Եղիսաբեթուպոլիս ալ գնացած ու խել մը նոր կարգադրութիւններ ըրած ու շատ մը նոր ընկերութիւններ հիմնած է. ի մէջ այլոց Ս. Երրորդութեան, Ս. Աննայի, Ս. Յովսէփայ, Ս. Ստեփանոսի երիտասարդաց, մաշկեգործաց եղբայրութիւններն եւ այլն, ու անոնց կանոնադրութիւններ ըրած է: Քահանայից եկամտին նկատմամբ ըրած փոփոխութիւնն այն էր՝ որ Տէր Յովհաննէս հոգաբարձուն առնու եկամտին երկու մասն, իսկ Տէր Մանուէլ օգնական քահանան՝ մէկ մասը. բայց Տէր Յովհաննէս երկու մասն առնելուն՝ հոգայ զՀայր Մանուէլ կերակրով, ըմպելիքով, լուացքով եւ այլն, զգեստը դուրս առնելով:

Այս որոշմանց նկատմամբ՝ 1729 Սեպտեմբեր 24ին եղած տարեգրին խօսքերն են յաջորդ տողերը. "Խորհուրդ եղաւ այսպէս վասն Տէր

Տէրնուն, որ ունենան բ. տէր տէրն այսինքն տէր օվանէսն ու տէր մանուէլն զտէր Հայր մանուէլն պահելու կերակրով եւ լվանալով զշօրերն։ Վասն այս պատճառի սէպն որ այլ առաջ քանծ տէր Հայր մանուէլին հօս գալն, այնպէս խօսք արինք հետ մէզիկ, այսինքն հետ դըլնաճին, վերոյգրեալ բ. քահանայքն, որ թէ գայ հօս, մեզ մօտ, Հայր մանուէլն նայ զկերլուրն գ. փայ անին, որ կարենայ հարկաւորապէս ապրելու. նայ երբ աստուած տվաւ, որ բարով էկաւ Հայր մանուէլն՝ նայ չէր կամեցաւ որ քահանայից կերլուրէն առնուր, չէ հրաման էր աբայ հօրէն որ ամենեւին կէլուր չէր առնու, այլ ձրիապէս քարոզէ եւ օվ ինչ ողորմութիւն կամի տալու կամաւորապէս զան առնու միայն ապրելիք. ինչ եւ իցէ, ապրեսցէ հարկաւորապէս. վասն այսորիկ զայն վերոյ գրեալն հաստատեցանք, որ մինայ հաստատ մինչեւ ի վերջն հետ գահանայից։ եւ նմանապէս ի թվուն 1729 սեբդեմբերի ամսուն էկաւ սթէփան վարդապետն հօս ի պաշփալօմն վեզիրդաձիայ եւ հաստատեց զտէր տէրնուն ապրելիքն այսինքն ունենայ տէր օվանէսն բ. փայ արնէլու կէլուր ու տէր մանուէլն ա. փայ. օր ունենայ տէր օվանէսն պահէլու հարկաւորապէս զհայր մանուէլն կէրուխումօվ եւ լվանալով եւ այլն, զարտ հագըստի„։

Տղոց կրթութեան եւ ուսման նկատմամբ ալ խորհուրդներ եղան։ Հաւանական է որ մեր այս թուականէն յառաջ մանչ տղոց դպրոց մը կանգնած ըլլան Եղիսաբեթուպոլսեցիք։ Հիմակ առաջարկուեցաւ նաեւ աղջկանց համար գոնէ

սկզբնական դպրատուն մը բանալ: Աս առաջարկութիւնն ընդունուեցաւ, եւ 1730 Ապր. 11ին որոշուեցաւ որ աղջկանց առժամանակեայ դպրոցն սկսուի Աստուածատուր Սէնգովիչի տան մէջ: Տունն ընդարձակուի ու դէպ ի եկեղեցի դուռ մը բացուի, դպրատան խնամակալն ըլլայ Ներսէս աղան, իսկ ուսուցիչ՝ Հ. Մանուէլ: Ահա որոշման խօսքերը. “Խորհուրդ արինք աղջիկ տղոցն ըշգօլային սէպն. որ ըլլայ ժամանակաւոր ասվատրին սէնգօվիչին տանը սէպըն. օր հոն մեծցընունք գտունը ու բօրդիցայ[1] կտրըվի դէպ ի ժամն եւ այլն: Եւ դրինք վէքիլ զաղաչայ Նորսէսն որ կատարվի եւ սորվեցընօղ ըլայ վարպետ տէր Հայր Մանուէլն„:

## 4.

Ինչպէս տեսանք Միքայէլ Աբաֆի իշխանը 1696ին հրամանագրով մը շնորհած էր որ քահանան քիչ մը գինի կարենայ պահել իր յատուկ գործածութեան համար (11): Նաեւ քաղաքացիք ձմեռն՝ այսինքն Սեպտեմբերէն մինչեւ Փետրուար՝ կրնային գինի պահել, բայց չէ թէ ծախելու՝ հապա իրենց սեպհական պիտոյից համար: Աս հրամանը քանի մը տարի ետքն ընդարձակուած կը գտնենք: Ասոր համեմատ՝ դատաւորին ու 12 խորհրդականներուն հրաման տրուեցաւ ցմիշտ գինեպահութիւն. բայց ոչ թէ գինի ծախել: Ազգայինք՝ ասով ալ չշատացան.

[1] “Բօրդիցայ„ կը նշանակէ պզտիկ դուռ, դռնակ:

1726 Հոկտեմբ. 4ին երկոտասանից խորհրդին մէջ առաջարկութիւն եղաւ ու որոշուեցաւ որ նէթէ գաւառին վերակացուն Պաշտպալով գալու ըլլայ, իրմէն խնդրեն որ ինչպէս դատաւորն ու աղաներն իրենց յատուկ գործածութեան համար գինի պահելու հրաման ունին, անանկ ալ ամէն հայ մարդ նոյն հրամանն ունենայ: Աս բաւական չէ, — քայլ մըն ալ յառաջ գացին, — ժողովքին մէջ առաջարկուեցաւ նաեւ թէ վերատեսչէն հրաման առնուն որ դատաւորին ու խորհրդականաց շնորհուի գինետուն մը պահել եւ գինի ծախել: Պատճառն ալ կու տայ ժողովը. վասն զի, կ'ըսէ, ուրիշ տեղերու պէս՝ մենք ամենեւին եկամուտ մը, ո՛չ ջաղացք, ո՛չ դաշտ, ո՛չ անտառ ունինք, — ինչպէս այլք ունին — որ մեզի եկամուտ բերեն: Ահա տարեգրին խօսքերը. “Խորհուրդ արինք Ա.Վ. օր գայ հոս Կիբհալոմը նա ուզէ իրմէն քաղաքն օր թողուն զմեզ օր ունէնանք ամէնէքեանս գինի բռնելու վօվ իրեն սէպին, թէպէտ օր ունին պիրօվ եւ աղաներն, նայ կուզինք որ ունէնայ ամէն մէկն բռնէլու: — 2 ումն. Կուզինք որ տան մեր պիրօվին եւ Աղանուն, որն որ զքաղաքն կի կարավարին նայ ունենայ ա. գչմամն[1] բըռնէլու, չէ օզկայ տեղէ չունինք ոչ մէկ կէլուրմն ալ ոչ ջաղացք, օչ մօռի, օչ դաշդ, նայ կուզինք որ ըլայ աս չափ կրաձիեան:„

Աս բաներէն յայտնի կ'երեւայ թէ Եղի-

---

[1] Կ'ուզէ ըսել՝ ֆըչմայ մը: “Գըրչմայ„ Հունգարերէն Koresma բառն է, որ կը նշանակէ՝ գինետուն, պանդոկ:

սաքսեթուպոլսեցիք ձեռուընին ունեցած մէկ երկու առանձնաշնորհութեանց զօրութեամբ՝ իրենց տեղը կարգի խոթելէն եւ ներքին օրէնքներով կարգաւորելէն ետեւ, հետամուտ եղան որ կամաց կամաց ազատ քաղաքաց կարգն անցնին, ազատ եկամուտներ, արտօնացեալ տօնավաճառներ, գինեվաճառութիւն, ու եթէ կարելի է ջաղացքի, մաքսի իրաւունք, դարձեալ անտառներ, կալուածներ եւ ուրիշ հաստատուն եկամտի աղբիւրներ ունենան։ Իրենց աչքը դէպ ի Վիեննա ուղղուած էր, իրենց բոլոր յոյսը աւստրիական հզօր տան իշխանաց բարեզգածութեան ու առատաձեռնութեան վրայ էր. եւ ասկէ կը սպասէին իրենց բարօրութիւնն, իրենց յառաջադիմութիւնն, ապահովութիւնը, հարստութիւնն ու երջանկութիւնը։ Եւ յարատեւութիւնն ու հետեւութիւնը ցուցուցին՝ թէ իրենց յուսոյն մէջ չխաբուեցան։

Ամէն բանէն յառաջ սահմանեցին որ Հէրմանշդատ — ուր էր երկրին կառավարը — պատգամաւորութիւն մը ղրկուի որ կառավարութեան ներկայանալով՝ խնդրած արտօնագիրը յիշեցընեն. եւ վերյիշեալ երկու կէտերուն ալ — այսինքն թէ իւրաքանչիւր ոք գինի կարենայ պահել, եւ դատաւորն ու աղաները գինեվաճառութիւն մ'ունենան. — անոր մէջ գրուիլը՝ կենդանի խօսքով ալ խնդրեն։ "Դարձեալ խորհուրդ արինք, կ'ըսէ տարեգիրն, որ երթըվի մեծ գըմարաշին մօտ եւ բրէզլէնդօվադ ըլանք ու իշինք բրէվիլէկիումին սմն օր նօրէնք (այսինքն թէ

նոր մարդիկ ենք՛) եւ դրվի մէջն բրէվիլէկիումին զայս բ. բունդը. եւ այն ժամանակն զուրուցելու ատենը ալ պիտիշվի „:

Որչափ յարակցեալ պարագաներէն կրնանք հետեւցընել, տարիներէ ի վեր կայսերական արտօնութեանց հրովարտակի մը խնդիրը կար Եղիսաբեթուպոլսեցւոց մէջ: — Աս միջոցին է որ (իբր 1724ին) Հռոմէն կը խրկուի Դրանսիլուանիա առաքելական քարոզիչ մը: Այս գիտնական ու գործունեայ անձն Պաշտպալովցւոց քով միայն "միսոնար„ անունով ծանօթ է.— որ թերեւս Մինաս Թորոսեան վարդապետն ըլլայ. — բայց Վիեննայի արքունեաց մէջ ճանչցուած ու կայսրմէն մեծապէս գովուած անձ մըն է: Կարոլոս Զ. զինք "եռանդուն ու հաւատարիմ հպատակ, գեղեցիկ արուեստից ու փիլիսոփայութեան, ինչպէս նաեւ աստուածաբանութեան վարդապետ„ կ'անուանէ. ու քանի մը տարի ետքը հրատարակուած կայսերական արտօնագրին մէջ Պարոնեան (Barun) անունով նշանակուած է: Աս առաքելական ոգւով վառուած, ազգասէր, գործունեայ ու յաջողակ անձը՝ ամենայն զօրութեամբ, ճարտարութեամբն ու ճարտարաբանութեամբը կը ջանայ որ թէ զԿերլա ու թէ զՊաշտպալով ազատ քաղաքաց կարգը բարձրացընէ: Զինքը մէյ մը Վիեննա, մէյ մը Կերլա, մէյ մը Պաշտպալով, մէյ մը Հերմանշդատ կը գտնենք, խօսելու, գործելու, արտօնութիւններ ընդունելու. մէկ խօսքով իւր ազգը բարձրացընելու ու երջանիկ ընելու համար: Թէպէտ հաստատուն պաշ-

տօն մը չունի, այսու ամենայնիւ ազգայինք իրեն հաստատուն եկամուտ մը կապած կ՚երեւան, ցորչափ ժամանակ իրենց համար կը գործէ։

Եւ որովհետեւ ի սկզբան — ըստ Եղիսաբեթուպոլսոյ Հայոց — առաքելական քարոզիչն աւելի կերլացւոց միտեալ է կամ թէ ըսենք աւելի ի նպաստ անոնց կ՚աշխատի, անոր համար երբ 1726 տարւոյն վերջերը նաեւ պաշտպանով կու գայ, ազգայինք խորհուրդ կ՚ընեն ու մէջերնին կ՚որոշեն որ ըսեն առաքելոյն՝ թէ թէպէտ յօժար են սիրով իր առաքելական աշխատանաց համար վարձք տալու, սակայն բուն ծախքերը թող կրեն կերլացիք, որոնց համար ինք այնչափ ատեն Վիեննա կեցեր ու գործեր է։ Ահա խորհրդին եզրակացութիւնը. "... Միսօնար վարդապետն (անունն չկայ) էկաւ հօս ի պաշֆալօմն եւ ուզեց ըզը. տարեն եկայմուտն եւ ավլի ըզնոր տարեն կէլուրն կամ զհախն ... եւ մենք այսպէս խորհուրդ արինք ամէնէքեանս թէ որ աս չափ ատեն որ էղիլիս պէջը նայ ամպէս էղիլէ մեր խօսքն, օր թէ օր էղիլէ միսօնարը պէջը, նայ կեռլացոցն սէպն էղիլէ, նայ կեռլացիքն ունենան ըմնցընելու զամենայն կելուրն վարդապետինը ..:„ Բայց եւ այնպէս շատ մը ատեն խորհելէն ետեւ՝ մէջերնին կը գտնեն, ու կ՚որոշեն որ Նոր տարիէն ետեւ — այս ինքն 1727 ին սկիզբը — ստակ ժողվեն ու իրեն տան, միայն թէ Վիեննա երթայ ու 10 կէտերուն մէջ ամփոփուած եւ առաջարկուած արտօնութեանց պատճէնը ձեռք բերելու աշխատի. վասն զի ի-

րենք չէ թէ միայն իւր աշխատութեան վարձքը
պիտի հատուցանեն, այլ նաեւ այն 4000 ֆիորինը՝
զոր կը համարի թէ առանձնաշնորհութեանց
10 կէտերն ընդունելու համար հարկաւոր է,
կու տան: Կ'աւելցուի նաեւ խորհրդին մէջ, որ
եթէ արտօնութեանց հրամանագիրն ըստ ամե-
նայն մասանց չյաջողի, սակայն եւ այնպէս ինքը
աշխատի որ գոնէ քանի մը կէտ դրուի այն ա-
ռանձնաշնորհութիւններէն, զորոնք իրենք առա-
ջարկած են: Ահա խորհրդին որոշումը. «1727.
ապր. 25. խորհուրդ արինք հետ միսոնարին
վասն ի պաշֆալօվին տէրլօմանուն սէպն. որն որ
կայ գրած ժ բունգդ, որն որ տվիլէ մէզիկ միսօ-
նարն գրած. որ քալէ եւ աշխատի ու հանէ. եւ
ինչօր ըլայ խարճն նայ ունենանք մէք ի պաշ-
ֆալօվցիքը վար դնելու այսինքն. ինչունի ԴՌ
մաճրիմ: — Կու բռնըրվինք, տարը չի տային
ղտէրլօմաներն նայ ինչպէս օր գրիլէ միսօնարն
նայ մեր գիտնալովն ըլայ թէ իքմն պակաս կամ
աւելի բան դրվի մէջն»:

Ասոր վրայ լռութիւն տիրեց երկու տարի
առանց երեւելի բան մը պատահելու արտօնու-
թեանց պատճէնին նկատմամբ: Սակայն 1729ին
սկիզբները նորէն ժողվուած կը գտնենք քաղ-
քին առաջնորդներն, որոնք առաքելական Վար-
դապետին հետ խորհրդակցելով կը միաբանին
որ քաղքին յառաջադիմութիւնը նկատելով՝
պէտք եղած 150 ոսկին ժողվեն եւ ասկէ զատ
4000 ֆիորինն ալ՝ որ հարկաւոր է արտօնագիրը
ձեռք բերելու համար: Յիշեալ 150 ոսկին քովէ

քով բերելը՝ 30 հոգւոյ իբրեւ ամենէն ունեւորներուն վրայ բաժնուեցաւ։ Հաւաքման արդիւնքն արդէն անմիջապէս տեսնուեցաւ. վասն զի 150 ոսկւոյն տեղ 159 կարմիր ոսկի ստորագրուեցաւ։ Տուողներն՝ իրենց ստրկին համար քաղքէն հարիւրին 7°/₀ շահ պիտի ընդունէին։ “Խորհուրդ առինք միյօվ — կ'ըսէ ժողովն 1729 Փետր. 4ին — հետ վարդապետին միսօնարին, վասն մեր քաղաքին բրէվիլէկիումին սէպն, որ քաղինք սդակ, օր ըլլայ խարճի քաղքին պիտվականութեան. եւ էր խորհուրդն այս, որ քաղվի ճծ օսգի. եւ մինք ձըգէցինք Լ. հոգու վրայ. եւ գրէցինք թէ վօվ ինչ պիտօր տայ. ու գօմբուդօվաղ արինք օր էղաւ ճծթ օսգի ինչվան. ինչպէս որ ալ առաջ կամ՝ այլ վեր կայ գրած. որ է թվոյն քրիստոսի 1727ին եւ ապրելի 25ին. թէ այն ժամանակն կասէր միսօնարն թէ Դ.Ռ. մաճռօվ պիլայ. եւ ալ շատ չի պիլայ խարճ քանծ Դ.Ռ. մաճ. մաճարըքի. նայ անօր գօրայ մինքալ շաղըշ արինք թէ որ այդչափն է նայ, միյօվ կլանք գօնդէնդօվաղ անելու„։ Եւ դարձեալ. “Գիտացվի օր խորհուրդ արինք օր քաղինք ըսդակ վասն քաղքին տիբլօմանուն սէպն. որն որ քաղվեցաւ սումայ օսգի կարմիր 158 այսինքն ճծԸ օսգի կարմիր ու գիտացվի օր շահօվ դրվեցաւ ըսդակն օր տայ քաղաքն ըղշահըն հարըրի Է նացայ, որոնք օր ըսդակն վար դրիլըն. ու գիտացվի օր վօվ դրիլէ ըսդակն, դոքա վօրոնք օր հօս այլ վար կան գրած։„

Ու կարգաւ կու գան այն աղաներուն անուններն,

որոնք ստորագրած են յօգնութիւն արտօնու-
թեանց հրամանագրին յաջողելուն: Քսանուինը
տուողներուն մէջէն կը գտնենք թէ ամենէն շատը
(այսինքն 15 ոսկի) տուած է Աղաչայ Պետրոս.
ուրիշները տուած են 12 ոսկի: Աղաչայ Վարդան
Խոջագուցի գրած է 10 ոսկի, ուրիշներն 8ական:
Ամենէն քիչ, այսինքն երկուքական ոսկի տուած
են 4 հոգի, ասոնց վերջինն է "Խաչգոյ աւրամի
·գրբիդի:„

Մինաս վարդապետը նորէն Վիեննա եր-
թալով՝ աշխուժութեամբն իրերն այնչափի բե-
րաւ որ ի վիճակի եղաւ կայսերական արտօնու-
թեանց պատճէնին համառօտութիւնը կամ թէ
ըսենք առանձնաշնորհութեանց ստուերագիծ մը
Պաշտպալով քաղքին խրկելու: Այս՝ ըստ ամե-
նայն մասանց կը պարունակէ իր մէջը այն ամէն
առաջարկուած արտօնութիւնները՝ զորս քաղաքը
կը փափաքէր: Վասն զի ասոր մէջ կը շնորհուի.
1. Որ ասկից ետքը Պաշտպալով տեղը՝ Եղիսա-
բեթ կոչուի (Կարոլոսի) թագուհւոյն անուամբ.
թէ այնուհետեւ քաղաքն ալ գործակատարի
(provisor) իշխանութեան տակ պիտի չըլլայ. եւ
թէ ի դիպուածի որ արքունի կալուածներն օտարի
մը ձեռքն անցնելու ըլլան՝ արքունի վերատես-
չութիւնն (camara) աշխատի որ այս Հայոց տեղն՝
անկէ ազատ կացուցուի. թէ ուղղափառ հոգա-
բարձու եւ օգնական քահանաներ ունենայ:
2. Թէ ինչպէս որ մինչեւ այն ատեն ազատու-
թիւն ունէին վաճառականութիւն ընելու, անանկ
ալ այնուհետեւ կը շնորհուի իրենց չէ թէ մի-

այն Դրանսիլուանիոյ՝ այլ նաև բովանդակ կայսրութեան մէջ իրենց ապրանքներուն վաճառատեղի գտնելու. միայն թէ պատշաճ մաքսը վճարելու են։ Եւ որպէս զի առուտուրնին եւ արուեստնին յառաջանայ, պաշտպանութիւն պիտի գտնեն ինքնակալէն. եւ թէ առ այժմ Դրանսիլուանիոյ ընդհանուր կառավարին հովանաւորութեան տակ ըլլան։ 3. Թէ քաղաքն պիտի ունենայ քաղաքային խորհրդանոց՝ դատաւորով մը ու 12 առաջականներով։ Դատաստանն ըլլուի՝ նախ խորհրդանոցին մէջ, ու թէ որ չկարենան միաբանիլ ու մէջերնին գտնել, այն ատեն դիմեն արքունի վերատեսչութեան։ Տնտեսութեան վերաբերեալ բաներու նկատմամբ եղած խնդիրներու մէջ կառավարութեան (gubernium) դիմեն։ Վերջապէս թէ որովհետեւ հայ ժողովուրդն աւելի վաճառականութեան ետեւէն ըլլալով՝ դատաստաններուն ճամբաները չի գիտեր, անոր համար ուղղափառ քարտուղար մ'ունենայ։ Երբ որ պատժական բան մը հանդիպի՝ Գիւգիւլէօ գաւառէն երկու օգնական դատաւոր (assessor) կոչուի, ու անոնց հետ խորհրդակցելով՝ դատաստանը կտրուի. թէ որ չեն կրնար միաբանիլ, դատաստանը՝ վերին ատենին (tabula) կամ կառավարին առջեւը դրուի. խնդիրը կրնայ նաեւ կայսեր առջեւը տարուիլ ու իրեն բողոքուիլ։ Ամբաստանողն՝ ամբաստանելոյն բնակութեան տեղն երթալու է։

Ահա տրուելի արտօնութեանց համառօտ բովանդակութեան բուն օրինակը, զոր հաւանա-

կանագոյնս ինք միսիոնարը գրած է։ Հայերէն ուրոյն լեզուն ալ այնպէս կարծել կու տայ։

"Վճիռք վասն առաջադրեալ խնդրըլւածոց Հայոց ի պաշտփալու։

"Առ ա. շնորհեմք որ Հայք սլօպօթ[1] նստին եւ ունենան կարօղութիւն միաւորելու զայլս ցրուեալս, զարտ զկերլացիք. եւ այսուհետեւ կոչեսցի եղիսաբեթոց քաղաքն, վասն անուան թագուհուն. եւ տեղս այս ոչ լինի ի ներքոյ իշխանութեան բրօվիզօրին. եւ ի պաշտփալօվն տօմինիումէ այժմ եւ միշտ կոչեսցի բաժանեալ. եւ թէ ժամանակով պատահէր որ այս տօմինիումը թէ տարիով կամ օղկայ կերպիւ մարդու ձեռք գար. ափսօլութ եւ որչափ կարելի է գըմարան չանք անէ որ այս Հայոց գիւղաքաղաքն եղիսաբեդաբօլիս զատէ ու բաժանէ, եւ այս տեղն օղկայ ֆիշգուշի գէտին տայ. ունէնայն եւս Հայք զհօգաբարձու քահանայք եւ գաբէլանք ուղափառք զորս սիրեն։"

"Առ բ. որպէս մինչեւ ցայժմ սլօպօտ էղաւ իրենց պազըրկանութիւն, այսուհետեւ ալ կի թօղունք թէ ապրանք եւ փէշայի գործք ոչ միայն առտեալն նաեւ բովանդակ կայսերական երկիրք ծախեն՝ վճառելով զտամղան. եւ օղկայ անկարիայ կամ եօլէ դուս խարճ չունենան քաշելու. նայ եւ վասն ավելցընելու իրենց առուտուրն եւ փեշան պի տանք լիակատար իշխանութիւնն եւ փրօդէքձիայ. այժմ եւս հաստատ բրօդէքձիայ պի ունենան կէնէքրալ գօմանտիրէն։"

---

[1] Այսինքն՝ ազատութեամբ, համարձակ։

“Առ գ. Նոյն միաբանութիւնն ունէնայ զիւր դըլնաճըն պիրօվօվ եւ ժԲ ծէրօք, իրենց մէջէն ընտրեալք եկեղեցականօք հանդերձ. նայ եւ ա. գիտուն նօթար այն կերպիւ որ տավիճիքը առաջ դըլնաճին դիմաց գան, ուր եթէ ոչ կարենայ կատարիլ տավին, էրթան գըմարային մօտ. ի վերայ էգօնօմիական իրի եւ թէ ի վերայ ինչեւիցէ երթան կուպէրնումին: եւ քանզի այս ժողովուրդն ծախսի էտեւանց կու քալէ, չի գիտէր կատարեալ զդատաստանին եօլը, պարտ է բռնէ ա. ուղափառ նօթար: ու երբ գրիմինալ բան պատահի գօմգօմլօ վարմէկիայէն[1] ձէնէ բ. ասէսօր եւ նոցայ հետ զդատաստանը կտրեն, եւ թէ ոչ՝ թապուլան կամ կուպէրնիումին մօտ ըլայ դատաստան. նաեւ մինչեւ կայսերին մօտ ունեցվի աբէլաձիօյ. երբ տավի լինի, տավիճին երթայ տուշմանին մուխն:„

Բայց որովհետեւ առաքելոյն Վիեննա երթալէն ետեւ նորանոր բաներ ալ գտան քաղաքացիք արտօնութեանց պատճէնի մէջ դրուելի, անոր համար գրեցին իրեն որ առանձնաշնորհութեանց մէջ անպատճառ դնել տայ նաեւ գինի ծախելու իրաւունքը՝ զոր իրենց գնել կ՚ուզէին 133 Փիորինով: Ասկէ զատ կը խնդրեն իրմէն որ նաեւ քաղքին շրջակայքն եղած դաշտը դրուի անոր մէջ: Սակայն իրերն այնպէս դիւրաւ չէին կրնար յաջողիլ՝ ինչպէս որ Հայք կը փափաքէին:

Ասոր վրայ նորէն խորհուրդ գումարուեցաւ

[1] Varmegye հունգարերէն բառ է եւ կը նշանակէ գաւառ:

եւ որովհետեւ գինեվաճառութեան իրաւունքը՝ տէրութիւնն այն գնով տալու միտեալ չէր, ինչպէս որ Հայք կ՚ուզէին, անոր համար որոշեցին որ գինն որչափ ըլլայ թող ըլլայ՝ կը գնեն. եւ 133 ֆիօրինի տեղ տուին 350 ֆիօրին, այնչափ որչափ Սէնատէ վերակացուն խնդրած էր։ — Ահաւասիկ աս խնդիրներուն վրայօք եղած խորհուրդներն ու որոշումները։

"1730 հոկտ. 11. խորհուրդ էղաւ դըլնաճին տունը, որ գրվի թուղթ միսոնարին վասն տիպլօմային սէպն, որ գիր գրվի ճՂԳ. զլօթին գրչմային տաքշան որ պիտօր դրվի տիպլօմային մէջ քաղքինը . . . ու գրել տայ զգրչման ու զդաշդը որ կցվի գրէչունէն, որ հօս ալ շատ դաքշայօվ պազար չանինք հետ սէնատրէին ու գրիլինք որ զդաշտըն ալ թէզ պազարի գրել տայ, որ տներ դրվի նոր տարուն որ գիտացվի„։ Չորս շաբաթ ետքն, այսինքն Նոյ. 17ին. "Խորհուրդ էղաւ վասն գրչմային սէպն. որ քանի ըլլայ նայ արնըվի սէնատրէէն եւ զուրուցէցինք ու տվաւ 350 զլօթով„։ Սակայն — ինչպէս ետքէն պիտի տեսնենք — տէրութիւնը հաւանութիւնը չտուաւ այս վաճառման. աս կերպ առաջարկութիւնն ընդունիլ չուզեց ու ըստ հետեւորդի չհաստատեց ալ գնումը։

Ինչպէս վերը տեսանք, առաքելական միսիոնարը իւր յատուկ ձեռօք ժողոված գրած ու խրկած էր վճիռներն ու որոշմունքներն, որոնք Կարոլոս Զ. էն տրուելի արտօնութեանց պատճէնին մէջ պիտի դրուէին. այսու ամենայնիւ Եղիսաբեթու-

պոլսոյ Հայք բոլորովին գոհ չեղան. վասն զի ձեռուընին պաշտօնական գրաւոր, որոշ բան մը չունէին: Ուստի եւ անհանգստութեամբ իրմէն խնդրեցին որ գոնէ ընդօրինակութիւն մը խրկէ արտօնութեանց թղթէն: Ասոր նկատմամբ այսպէս նշանակուած է 1730 Հոկտ. 24ին տարեգրին մէջ. "Գրեցինք թուղթ միսոնարին որ մագար ղըարիան[1] գրէ ու խրկէ բրէվիլէկիումինը:„ Սակայն դեռ որոշ բան մը չկար: Վերը յիշուած արտօնութիւնք ու որոշմունք դեռ ճշդիւ պատրաստ կեցած չէին թղթի վրայ պաշտօնապէս: Բայց այսչափս ստոյգ է որ անոնց իրականութեան վրայ Վիեննա կը մտածէին ու կը գործէին, բայց հանդարտութեամբ ու շրջահայեցութեամբ:

Վերջապէս չորս տարի անցնելէն ետեւ, 1733 Օգոստոս 11ին լոյս տեսաւ, հրատարակուեցաւ ու ստորագրուեցաւ կայսրմէն՝ այնչափ տենչէ ի վեր անհամբերութեամբ սպասուած արտօնութեանց կայսերական հրովարտակը:

Այս՝ 12 կէտ պարունակող առանձնաշնորհութեանց թղթովն Հայք շատ աւելի կ'ընդունէին, քան որչափ նախնապէս ընդունելու կը յուսային: Այս արտօնութեամբ կ'ըլլան Պաշտպալովցէք ազատ քաղաքացի, կայսեր հպատակ, Պաշտպալովի արքունական կալուածներէն բոլորովին անկախ ու տէր Եղիսաբեթուպոլսոյ: Իրենց կը տրուի ի մէջ այլոց՝ դաշտավայրն որ զքաղաքը

[1] Գոնէ ընդօրինակութիւնը: Parja հունգարերէն բառ է եւ կը նշանակէ բանի մը զոյգը, ընկերը:

կը շրջապատէ. հայ չեղող հպատակներն անկէ ելլելու են. արահետով մը երկիրնին կը զատուի. տուրքի ու ձրի ծառայութեան պարտաւորութենէն ազատ են։ Քաղաքային նիւթերու մէջ՝ թագաւորական կառավարութեննէն, տնտեսական իրաց մէջ՝ արքունական վերատեսչութեննէն կախում ունին. իսկ անձնական պաշտպանութիւն կը գտնեն երկրին զօրաց զօրավարէն։ Կը շնորհուի իրենց յատուկ խորհրդանոց ու դատաստան։ Ապրանքնին, ըստ իրենց սովորութեան, ազատութեամբ կրնան աւստրիական պետութեան որեւէ քաղքին վաճառանոցն ի տես դնել։ Իրենց կը շնորհուի շաբաթական ու տարեկան տօնավաճառ։ Անտառներէն փայտ կրնան առնուլ, որչափ իրենց պէտք է։ Մսահատութիւն ու գինեվաճառութիւն կը տրուի իրենց՝ բայց այն պայմանաւ, որ այս իրաւանց համար տարեւէ տարի քաղաքն արքունի գանձուն 400 հունգարական ֆիորին վճարէ։ Գիւգիւլլէօ գետին վրայ կրնան կամուրջ շինել. առոր հարկաւոր ատաղձն ու նաեւ նորոգութեան համար փայտ՝ արքունիքը կու տայ. միայն թէ կամրջի ելեւմուտքը՝ քաղքին ու տէրութեան մէջ հաւասարապէս բաժնուի։ Ապրանքնին ապահովցընելու համար իրենց կը շնորհուի որ ղանոնք Պաշտպալովի իշխանական դղեկին մէջ զետեղեն։ Բնակութեան տեղ, ինչպէս նաեւ բեռնակառք տալէն եւ ուրիշ ծանր ծառայութիւններէն ազատ են. եւ այլն։

Մեծ իմաստութեամբ ու շրջահայեցութեամբ յօրինուած հրովարտակին մէջ՝ յիշեալ

առանձնաշնորհութիւններէն զատ՝ մտադրութեան արժանի են ի մասնաւորի քանի մը վարչական ու կարգադրական որոշմունքները. օրինակի աղագաւ. 1. Թէ քաղքին դատաւորն ու խորհրդականները միայն բարեպաշտ ու խղճմտանքաւոր մարդիկ ըլլան. թէ պաշտօնական գրութեանց յարմար քարտուղարն՝ ուղղափառ ըլլալէն զատ՝ արդարակորով ու ճարտար մարդ մ'ըլլալու է. թէ պաշտօնատեարց ընտրութեան ատեն — որ միշտ Յունուարի 2ին ըլլալու է — ի հարկաւորութեան արքունի վերատեսչութիւնը գործակալ մը կարենայ ղրկել՝ ոչ թէ ընտրութեան վրայ հեղինակութիւն կամ սեղմում մ'ընելու, այլ հարկաւոր օգնութիւնը մատուցանելու համար: 2. Ատենական գործոց նկատմամբ կը սահմանուի որ նախ քաղքին խորհրդարանին մէջ ըլլուի լմնցուի դատողական լնդիրն, ու եթէ նիւթին վրայօք կարծեաց տարբերութիւն կայ, այն ատեն գործքը կառավարութեան առջեւ դրուի: Պատժական լնդրոց համար կ'որոշուի որ քննութիւնը քաղքին խորհրդականները Գիւգիւլլէօ գաւառին՝ Եղիսաբեթուպոլիս քաղքին ամենէն մօտիկ եղող պաշտօնատեարց հետ ընեն. եւ ուրիշ նմանօրինակ պատժական լնդրոց համեմատ վճիռ բերեն: Արնայ լնդիրը նաեւ Գրանսիլուանիոյ բարձրագոյն ատենին տարուիլ ու նոյն իսկ Կայսեր բողոքուիլ: 3. Կալուածատուրքը՝ տէրութեան գանձատան՝ իբրեւ կալուածատիրոջ՝ տալու է քաղաքը տարուէ տարի: Արդէն շինուած Մեծ փողոցին տներուն համար

8, Պըզտիկ փողոցին մէջ եղածներուն՝ ինչպէս նաեւ նոր շինուելի տներուն համար Վական Փիռրին վճարուի։ 4. Հրովարտակը մասնաւոր յօդուածով մը կը խօսի եկեղեցական իրաց վրայ։ Ասոր մէջ կը սահմանուի որ աստուածային պաշտաման եւ ուղղափառ հաւատքին ողջմտութեան հոգ տարուի. թէ ընդարձակ եկեղեցի մը շինուի կամ՝ եղածն ընդարձակուի ու պատշաճ գիտութիւն ունեցող եկեղեցականներ ընտրուին։ Թէ լատին եպիսկոպոսն — որմէ կախում՝ ունենալու են Հայերը — հոգ տանի որ հայ արարողութիւնքն ու ծէսը ըստ պատշաճի պահպանուին։

Տեսնենք այս կայսերական հրովարտակն իր բովանդակ ընդարձակութեան մէջ՝ հայ թարգմանութեամբ։

"Մենք՝ Կարոլոս Զ. ողորմութեամբն Աստուծոյ միշտ գերագոյն եւ ընտրեալ կայսր Հռոմայ, թագաւոր Գերմանիոյ, Գաստիլիայի, Արակոնիայի, երկուց Սիկիլեայց, Երուսաղէմի, Հունգարիոյ, Պոհեմիայի, Դալմատիայի եւ Խռուադաստանի, Նավառրայի, Կրանատայի, Դոլէտոյի, Վալէնսիայի, Կալիցիայի, Մայօրգայի, Սէվիլեայի, Սարդինիայի, Գորտովայի, Քորսիքայի, Մուրսիայի, Կիէնսի, Ալկարպիայի, Ալճէզիրասի, Ճիպրալդարի, Կանարեան կղզեաց, ինչպէս նաեւ Հնդկաստանեայց եւ Ովկիանոսի ծովուն կղզեաց. արքիդուքս Աւստրիոյ, Պուրկունտիայի, Պրապանդի, Միլանի, Սդայրի, Կորընդանի, Կրանիայի, Լուքսէնպուրկի, Վիւրդէմպէրկի, վերին ու ստորին Սիլէզիայի. դուքս Աթէնքի ու Նէօբադրիայի. իշխան Դրան-

*սիլուանիոյ. սահմանակոմս Հելուետիայի. պարոն հռոմէական սուրբ պետութեան, Պուրկոսի, Մորավիայի, վերին ու ստորին Լաուսիցի. մարզպան Հապսպուրկի, Գլանտրիայի, Տիրոլի, Պարխինոնայի, Ֆէրէդդէի, Գիպուրկի, Կէօրցի, Ռոսիլիոյի եւ Գէրէգանիայի. լանտկրավ Էլսասի. սահմանակալ Օրիոնդանոյի. պարոն Կոչիանայի. տէր սլաւական Մարկէնոյի, Սլաւոնիայի, Պիւսգայայի Բօրդօ տէ Նաօսի, Մոլինա Սալինարումի, Թրիբոլիսի եւ Մէխէլնի։„*

*“Թագաւորաց փառքն ու իշխանաց բարձրագոյն օգուտը կը պահանջէ, որ իրենց տէրութիւններն ու երկիրները՝ մանաւանդ այնպիսի ժողովուրդներով բազմանան, որոնց կենցաղավարութիւնը հասարակաց բարւոյն անտարակուսելի յառաջացման յոյս մը կ'ընծայեցընէ։ փոխադարձաբար ասոնց՝ ինչպէս ամէն քաղաքացւոց հասարակաց բարւոյն կը վերաբերի, որ այսպիսի գաղթականութիւնները չէ թէ միայն իրենց վիճակին համապատասխանող արտօնութիւններով եւ առանձնաշնորհութիւններով երեւելի ըլլան, — որ այս շնորհմունքէն ձգուելով՝ ուրիշ շատերն ալ փափաքին այսպիսի պետութեան մը հովանաւորութեան տակ ապաւինիլ, — հապա նաեւ հոգ տարուի անոր ալ, որ անոնք առաքինի ու կանոնաւորեալ կեանք մը վարելու ջանան։ Վասն զի այս տեսակ կարգադրութիւններն զբնակիչները՝ արդարացի ու աստուածավախ կեանք անցընելու, բաց ասկէ — պարապորդ կենաց վտանգները թողլով — վա-*

ճառականութեան, շահ բերող արուեստներու, կամ ուրիշ պատուաւոր կենաց կերպ մը կը սորվեցընէ: Եւ այսպէս՝ երբ մէկ դիէն ժողովրդեան աճումը, վաճառականութեան տարածութիւնը, դարձեալ՝ արուեստից յառաջացումը աշխատութիւնը առատապէս կը վարձատրէ, եւ ժողովրդեան հանգստութիւն, օգուտ եւ քաղցր երջանկութիւն կը շնորհէ, մէկալ դիէն՝ մարդիկներուն անձկութիւն պատճառող մտածմունքները կը ցրուէ, եւ Աստուծոյ օրհնելոյն փառքը՝ ինչպէս նաեւ կառավարող թագաւորին անունն ու պայծառութիւնը օր քան զօր կը յառաջացընէ ու կը շատցընէ:„

“Ուստի մենք մեր սիրելի ժառանգեալ երկրին՝ Դրանսիլուանիոյ իշխանութեան ունեցած մասնաւոր միտութենէն առաջնորդուած եւ անոր նիւթական բարօրութեան հայրաբար օգնելու փափաքելով՝ որովհետեւ բազմաթիւ ուղղափառ հայ գերդաստաններ մեր եռանդուն եւ հաւատարիմ ստորակարգելոյն՝ գեղեցիկ արուեստից ու փիլիսոփայութեան, ինչպէս նաեւ աստուածաբանութեան վարդապետին՝ Մինաս Պարոնեանի ձեռօք — որ ասկէ յառաջ առաքելական սուրբ գահէն խրկուած՝ այն իշխանութեան մէջ բնակող Հայոց առաքեալն էր, — խոնարհութեամբ ու հպատակութեամբ մեր առջեւը դրին, որ Դրանսիլուանիայի իշխանութեան մէջ կ'ուզեն հաստատապէս տեղաւորուիլ եւ հոն արուեստանոցներ կանգնել ու առուտուրով զբաղիլ, մենք՝ մեր արքունական խորհրդականներովը նախըն-

թացաբար ու կինկին եւ կրկին անգամ խորհուրդ ընելէն ետեւ, յառաջ բերուած ու մեր առջեւը դրուած պատճառներէն եւ մեր կայսերական-թագաւորական կամքին ալ զգածող ուրիշ շարժառիթներէ դրդեալ՝ գթածաբար հաւանեցանք, որ աղաչաւորներն ի նշան մեր կայսերական-թագաւորական միտութեանն ու լաւազգածութեան՝ յաջորդ առանձնաշնորհութիւններն, իրաւունքներն ու արտօնութիւններն ունենան Տրանսիլվանայի մէջ:"

"1. Բարեհաճութեամբ կը շնորհենք որ այն տեղն, որն որ մեր Պաշտպալովի արքունի գանձուն կալուածներուն Գիւգիւլէօ գաւառին մէջն է, ուր վիշեալ հայ գերդաստաններն իրենց բնակութեան տեղ շինեցին, հիմակուընէ սկսեալ՝ ինքնիշխան կառավարութիւն ունեցող քաղաք մ'ըլլայ, ու լատիներէն՝ Elisabethopolis, գերմաներէն՝ Elisabethstadt, իսկ հունգարերէն Erzsébetváros անուանուի. եւ այս շնորհմունքին հետեւութեամբ՝ վերոյգրեալ Պաշտպալովի արքունական երկրին ուրիշ մասերէն — իբրեւ արտօնացեալ քաղաք — զատուի: Եւ եթէ մեր արքունի կալուածոց երկրին հպատակներէն մէկն՝ որ հայազգի չէ, այս՝ Հայոց շնորհեալ տեղւոյն վրայ կը բնակի ու տուն ունի, — որովհետեւ հայ հասարակութիւնն այս տան պարտուպատշաճ արժէքը վճարած է, — այն տեղէն ելլէ երթայ, եւ մեր Պաշտպալովի կալուածներուն մէկ ուրիշ մասին մէջ գտնէ իր բնակութիւնը:

2. Կ'ուզենք, որ այն 1500 ռենոսական

*Փիորինին մէկալ կէսը (վասն զի առաջին կէսն արդէն փոխանցուած առենը վճարուեցաւ,) վեց ամիս անցնելէն ետեւ՝ մեր այս իշխանութեան մէջ եղող կալուածոց գանձատունը դրուի։ Այն դաշտավայրն, որ իրենց տներուն կից է եւ Գիւգիլլէօ գետին քով կը տարածուի ու իրապէս Պաշտպալովի արքունական կալուածոց կը վերաբերի, ամէն իրաւունքի, եկամուտի, տուրքի եւ ձրի ծառայութեան պարտականութենէն դուրս առնուելով՝ տրուի այն հասարակութեան։ Եւ որպէս զի չըլլայ թէ հիմակ կամ ապագայ ժամանակի մէջ, ըստ իրաւանց կալուածոց՝ դատաստան կամ կռիւ ելլէ, անոր համար այն զատուած երկիրը՝ որ յիշեալ հայ հասարակութեան շնորհուեցաւ, զատուի անջատուի արահետով մը. եւ սահմանաւորումը լմննալէն ետեւ կալուածները գրի անցուին եւ գրութեանց մուրհակին մէկ օրինակը՝ մեր արքունական վարչութեան, մէկալը՝ հայ հասարակութեան տրուի։*

*3. Երբ որ կամ Պաշտպալովի հայ գերդաստաններն այս՝ հայ ազգին համար որոշուած՝ տեղւոյն վրայ նոր տներ կանգնեն, եւ կամ ուրիշ Հայեր (դուրս առեալ Կերլացիները, զորոնք ի վնաս Կերլայի հասարակութեան՝ այս Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան մէջ առնուլ ամենեւին չ'ըլլար, արգելեալ է,) այս հասարակութեան հետ միանալ եւ տներ շինել ուզենան, զանոնք իրենց մէջ ընդունելու եւ տներ շինելու համար բաւական երկիր տալու պարտաւորեալ են. ենթադրելով որ այս նոր բնակիչները՝*

*տեղւոյն խորհրդարանին առջեւ -— ինչպէս որ կը պատշաճի — իրենք զիրենք կը հարազատագործեն. հարազատութիւնը, բարի վարուք եւ ուրիշ նկատմամբ ստանալէն ետեւ՝ իշխանութիւնը հոգ տանելու է որ ասանկ եկամուտները — ըլլայ այս գաղթականութիւնն առժամանակեայ կամ տեւողական — պարտաւորեալ հարկն ու տուրքը վճարեն:*

4. *Եւ որովհետեւ այս հասարակութեան բարօրութիւնն ու աճումն ամէն բանէն աւելի՝ Աստուծոյ օրհնութենէն կը կախուի, անոր համար հարկաւոր է որ նախ աստուածային պաշտաման եւ ուղղափառ հաւատքին զօր յիշեալ հասարակութիւնն՝ ըստ հայ արարողութեան կը դաւանի — հոգատարութիւն ըլլուի: Ուստի եւ չէ թէ միայն հռոմէական ուղղափառ ընդարձակ եկեղեցի մը կանգնուելու է հասարակութեան ծախքովը, կամ արդէն եղած եկեղեցին ըստ պիտոյից ընդարձակելու է որ բոլոր ժողովուրդն իր մէջն առնելու ի վիճակի ըլլայ, հապա նաեւ անոր ալ հոգ տանելու է որ հոգեւոր ծառայութիւնն ընող եկեղեցականներ ալ գտնուին, որոնք պատշաճ գիտութիւնն ունենան եւ քաղքին եկամտից մասնակից ըլլան: Եւ վասն զի այս Հայերը Դրանսիլուանիայի լատին եպիսկոպոսէն կախում ունին ու պիտի ունենան, անոր համար եպիսկոպոսական իշխանութեան պարտականութիւնն ըլլայ, որ հսկէ թէ հռոմէական ուղղափառ հայ արարողութիւնն ըստ պատշաճի պահպանուի. եւ արեւելեան հայ հերձուածողները՝*

յանուանէ Եւտիքէսի, Դիոսկորոսի եւ ուրիշներու դատապարտութեան արժանի վարդապետութիւններն այս ազգէն հեռացուին: Բաց ասկէ այս եպիսկոպոսը հոգ տանի որ նուազ ծանօթ չմիացեալ հայ աստուածային պաշտամունք մեր Դրանսիլուանիոյ իշխանութեան մէջ կատարուելու, կամ վերոյիշեալ մոլորութեան հետեւողները՝ երկրին մէջ մտնելու թող չտրուին, եւ իրենց՝ հոն բնակիլը չներուի: Ի բաց առնուին այն մասնաւորներն, որոնք միայն առուտուր ընելու համար երկրէն կ'երթան կ'անցնին, եւ ըստ հետեւորդի քիչ ատեն կը մնան այն իշխանութեան մէջ:

5. Եւ վասն զի այս տեսակ հասարակութիւններուն օգտակարութիւնը միա՛յն օրինաւոր կարգն ու կանոնը կրնայ աճեցընել ու յառաջացընել, անոր համար գթութեամբ կը պատուիրենք որ յիշեալ հասարակութիւնը, քաղաքային նիւթերու մէջ հոն տեղի թագաւորական կառավարութենէն, ի տնտեսական մասին՝ այն տեղի արքունական վերատեսչութենէն կախում ունենայ: Իսկ պաշտպանութիւն — որպէս զի իրենց հոն մնալն աւելի ապահով ըլլայ — հոն տեղի իշխանութեան մէջ եղող մեր զօրաց զօրապետին քով փնտռեն:

6. Նկատմամբ քաղաքային խորհրդարանին կը սահմանենք որ ասիկայ քաղքին քաղաքացիներէն արդարութեամբ ընտրելի գլխաւոր դատաւորէ ու 12 խորհրդականէ կազմուի: Ասկից զատ՝ ըլլայ իրենց մէջ յառաջ գալի պաշ-

տօնական գրութեանց համար ատակ քարտուղար մը։ Բայց միշտ գնելու է որ դատաւորութեան, ինչպէս նաեւ խորհրդականի պաշտօնին, տեղւոյն եկեղեցականներուն եւ բոլոր քաղքին հասարակութեան ձեռօք՝ միայն բարեպաշտ, յարմար, խղճմտանքաւոր ու արդարասէր մարդիկ ընտուին։ Ընտրութեան վրայօք, որ տարուէ տարի պիտի ըլլուի, կանխապէս արքունական վերատեսչութեան իմաց տալու են։ Նոր դատաւորին եւ խորհրդականներուն ընտրութիւնը Յունուար երկուքին պէտք է ըլլալ։ Արքունի վերատեսչութիւնն ազատութիւն ունի, երբ որ պատշաճ կը համարի, ընտրութեան գործակալ մը խրկելու, որ ընտրութեան հարկաւոր օգնութիւն մատուցանէ, առանց ազատ ընտրութիւնը կերպով մը սեղմելու։ — Բայց արդեօք այս քաղքին բնակիչները՝ գլխեալ դատաւորն ու 12 խորհրդականներն իրենց յատուկ եկամուտքէ՞ն, սակերու վճարմունքո՞վն ու կամաւոր տուրքերո՞վը կ՚ուզեն վճարել. մէջերնին միաբանին եղբայրական սիրով։ Իսկ իրենց մէջ պատահելի գործոց կերպին ու կանոնին նկատմամբ այս կարգը բռնելու են. Դատախազները՝ գործքերը նոյն քաղքին մասնաժողովոյն՝ իբրեւ առաջին իշխանութեան՝ առջեւ դնեն ու ժողովը զանոնք ըստ օրինի քննելով՝ գործքը լմնցընէ։ Եթէ իրին պատշաճութիւնն այնպէս կը պահանջէ, այն ատեն, տնտեսական ճիւղին, հոն տեղի արքունական վարչութեան ներկայացուի գործառնութիւնը։ Իսկ քաղաքային գործոց մէջ՝ ատենական իշխա-

նութեան դիմելու են։ Բայց ընդհակառակն թէ որ նոյն նիւթին վերաբերեալ գործքին մէջ կարծեաց տարբերութիւն կայ, որպէս զի իրն աւելի հիմնովին քննուի, բողոքն ըլլայ արքունական կառավարութեան։ Այս հասարակութիւնն ամենէն աւելի առուտուրով զբաղելով՝ երկրին օրէնքները չի ճանչնար ու պարտուպատշաճ սովորութիւնները դեռ չի գիտեր, անոր համար՝ ինչպէս վերն ալ ըսուեցաւ, միօրինակ անոր հոգ տանելու է որ պաշտօնատեարց մէջ կարողութիւն ունեցող նոտար մը գտնուի, որն որ իր գործքին ու աշխատութեան համար օրինաւոր վարձք ընդունի։ Բայց այս մարդը կրօնիւք ուղղափառ ըլլալու է, ու ճարտար, յարմար, բարեպաշտ եւ արդարասէր ըլլայ։ Թէ որ պատժական խնդիրներ պատահին, այն ատեն կը կարգադրենք որ այսպիսի պատժական դիպուածոց մէջ — ըստ երկրին օրինաց ու սովորութեան — քննադատութիւնը, դատաստանն ու վճիռը միշտ արքունական ատենին առջեւ պատահի. հոս պէտք է կանչել ու ժողովել — ըստ երկրին սովորութեան — գաւառին (Գիւգիւլլէօ), որուն այս նոր հիմնուած ինքնիշխան քաղաքն ամենէն մօտիկ է, պաշտօնաւորներն. եւ նոյն քաղքին ծախիւքը ատենական քննութիւնն ըլլուի։ Այս ժողովքին մէջ՝ քննութեան տակ առնուին յիշեալ գործքերն. եւ ուրիշ՝ նմանօրինակ պատժական խընդրոց եւ կանոնական իրաւանց համեմատ՝ վճիռ բերուի։ Բայց իրաւունք ունենայ որեւէ անձ — վասն զի այսպիսի դիպուածոց մէջ ուրիշ արտօ-

նացեալ քաղաքներ ալ նոյն բանը կը գործադրեն — խնդիրը՝ Դրանսիլուանիոյ վերին ատենին կամ թագաւորական կառավարութեան առջեւը դնելու: Բաց աստի եթէ յիշուած դէպքերուն որպիսութիւնն այնպէս կը պահանջէ, կրնայ դիմել նաեւ մեր բարձրագոյն թագաւորական-կայսերական գահուն ալ: Եթէ քաղաքացի մը օտար մարդու մը դէմ ունի ամբաստանութիւն եւ զանիկայ դատաստանի առջեւ բերել կ'ուզէ, ամբաստանողն անոր վերաբերեալ իշխանութեան դիմելու է. վասն զի ամբաստանողն՝ ամբաստանելոյն վարչութեան հետեւելու պարտական է:

7. Յիշեալ ազգին ազատապէս առեւտուր ընելու հրաման կու տանք: Կը շնորհենք իրենց որ ներուած առեւտրի նիւթերը թէ Դրանսիլուանիոյ իշխանութեան, եւ թէ ուրիշ մեր ամէն ժառանգեալ թագաւորութեան ու երկիրներուն մէջ, ընդհանուր տօնավաճառներու ատեն, ծախել եւ ըստ իրենց սովորութեան ապրանքներն ի տես դնել կարենան, բայց երբ որ նախ՝ սովորեալ կայսերական տուրքը, մաքսը, երեսնամասնեանը կը վճարեն, ուրիշ կողմանէ առանց որեւէ ապօրինաւոր զրկանք կամ անիրաւութիւն կրելու: Եւ համոզուած ու ապահով կրնայ ըլլալ այն հասարակութիւնն որ մենք գործարանաց ու ձեռակերտաց մնացականութեանն եւ տարածութեան համար՝ մասնաւոր արտօնութիւններ կ'ուզենք իրենց շնորհել: Ինչպէս նաեւ իրենց վաճառականութիւնը յառաջացընե-

լու համար՝ բոլոր զօրութեամբ պարտուպատշաճ օգնութիւնը կը բաղձանք իրենց մատուցանել։ Ուստի ըստ այսմ

8. Կը շնորհենք որ այս քաղաքն ամէն շաբաթ օր՝ շաբաթական, ու տարուան մէջ երեք անգամ տարեկան ընդհանուր տօնավաճառ կարենայ ունենալ. այսինքն Մարտի 25ին՝ Աստուածածնի Աւետման տօնին օրը. Համբարձման ու Ս. Մատթէոսի աւետարանչին օրը (Սեպտ. 21ին), բայց առանց որեւէ մաքսի եւ կամ արգելեալ եկամուտներ մտցընելու, այնպիսի կերպով մը՝ որ ոչ շաբաթական եւ ոչ տարեկան տօնավաճառները՝ դրացի տեղեաց շաբաթական ու տարեկան տօնավաճառներուն հետ միատեղ չհանդիպին։ Իսկ Պաշտպալովի արքունի կալուածատէրութեան կը հրամայենք որ շաբաթական ու տարեկան տօնավաճառաց առթիւ ամենեւին կերպով մը ոչ գՀայերն եւ ոչ ուրիշ հոն եկող վաճառականները կամ օտարականները՝ տուրքով, սակով եւ բանարարչեայով անհանգիստ ընեն ու նեղեն։ Վասն զի Եղիսաբեթուպոլիս, ինչպէս յառաջագոյն ալ ըսուեցաւ, Պաշտպալովի արքունի կալուածներէն բոլորովին բաժնուած է. եւ այնպիսի քաղաք մըն է, որ անոր իրաւանց տակ չ'իյնար եւ ցմիշտ ժամանակաց ազատ կացուցուեցաւ։

9. Կը շնորհենք այս հասարակութեան որ Պաշտպալովի արքունի կալուածոց անտառները գործածել կարենայ, այնպէս՝ ինչպէս որ զանոնք գործածեցներս գաղթած ատենէն ի վեր՝ ուրիշ

Պաշտպալովլի ստորակարգերոց հետ։ Նմանապէս Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան կու տանք իրաւունք մսահատութեան ու գինեվաճառութեան իրենց քաղքին մէջ։ Բայց այս իրաւանց համար տարուէ տարի 400 հունգարական ֆիորին վճարելու են մեր թագաւորական գանձուն, ապա թէ ոչ՝ յիշեալ գանձուն կը մնայ Պաշտպալովլի մսավաճառութեան ու գինեվաճառութեան իրաւունքը։

10. Հասարակութիւնը, թէ որ հարկաւորութիւնն ու շահն այնպէս կամենայ, Գիւգիւլլէօ գետին վրայ կրնայ կամուրջ կանգնել։ Ասիկայ իր յատուկ ծախքովն ըլլալու է. եւ Պաշտպալովլի արքունի կալուածատէրութիւնը՝ թէ կամուրջը շինելու եւ թէ անոր պահպանութեան համար հարկաւոր ձրի փայտը կու տայ։ Եւ որպէս զի ծախքերը ծածկէ՝ կը շնորհենք որ կամրջատուրք առնու, միայն թէ տուրքին կէսն արքունի գանձուն ու կէսը հասարակութեանն ըլլայ։

11. Թէ որ հայ վաճառականներն ի դիպուածի հարկաւորութեան կամ՝ թշնամեաց յարձակմանց առթիւ իրենց թանկագին ապրանքները Պաշտպալովլի դղեկին մէջ տեղաւորել եւ ապահով ըլլալու համար՝ հոն պահել կ'ուզեն, իրենց յարմար տեղ մը կու տանք՝ յիշեալ բերդին մէջ, որպէս զի իրենց առեւտրի նիւթերն ապահովութեան մէջ ըլլան։

12. Տարեկան տուրքը՝ զոր մեր արքունի գանձուն վերատեսչութեան հետ ըրած դաշնա-

դրութեան համեմատ մինչեւ ցայժմ Պաշտպալովէ՝ իսկ հիմակ Եղիսաբեթուպոլսոյ մէջ եղած Հայերուն հասարակութիւնը՝ իւր որոշեալ ժամանակին, մեր տէրութեան գանձատան իբրեւ կալուածատիրոջ վճարելու է՝ յաջորդ կերպով պիտի ըլլուի: Հիմակ եղած բոտւննե համար՝ Մեծ փողոցին մէջ բնակող գերդաստանները 8 ֆիորին, իսկ ընդ հակառակն՝ Փոքր փողոցին մէջ բնակողները 4 ֆիորին վճարելու են: Նոր շինուելի տներուն ամէն մէկուն համար Ձական ֆիորին տուրք պիտի վճարուի, այն պայմանաւ միայն, որ արքունի գանձուն՝ գինեվաճառութեան իրաւանց համար տարուէ տարի 400 հունգարական ֆիորին վճարեն: Այս Նոր շինուելի տներուն տուրքէն ազատ կը կացուցանենք 40 տուն կամ գերդաստան — բայց ոչ աւելի: — Սոյն այս հասարակութիւնը տարուէ տարի գաւառական արկեղ որոշեալ սակ մը տալու է: Ասոր գումարը հոն տեղի գերդաստաններուն շատութենէն կամ քիչութենէն կախում ունի. աւելի է տարեկան սակն երբ որ գերդաստաններուն թիւը շատնայ. եւ աւելի քիչ՝ երբ որ գերդաստաններուն թիւը նուազի: Բայց անոր միտ դնելու է, որ վերոյգրեալ տուրքերուն վերնագրութիւնը՝ իշխանութեան սովորութեան համեմատ, քաղքին այն բնակչաց վրայ բաժնուի, որոնք աւելի հարուստ են. եւ յիշեալ տուրքը վճարող գերդաստանները խղճմտանքով ամէն տարի համրուին ու քովէ քով բերուին: Գերդաստան կը կազմէ տանուտէրն իրեն վերաբերեալներովն՝ որոնք իրաւցընէ իրեն հետ հաց կ'ուտեն:

"Իսկ բնակութեան տեղեր եւ բեռնակառք տալու եւ ուրիշ սանկ ծանր ծառայութիւններ մատուցանելու նկատմամբ արժանի համարեցանք, որ ասոնցմէ — դուրս առնելով ամենէն մեծ հարկաւորութեան դէպքերը — այս քաղաքը բոլորովին ազատ ու արտօնացեալ ընենք։

"Այս ըսածներուն մէջ յիշուած ու Եղիսաբեթուպոլիս քաղքին թէ հիմակ ապրող ու թէ ապագայի մէջ ըլլող հռոմէական դաւանանք ունեցող հայ բնակիչներուն տուած կայսերական-թագաւորական իշխանական արտօնութեանց ու առանձնաշնորհութեանց նկատմամբ՝ մեր այս բարեհաճութիւնն ու ամենագթած կամքը չէ թէ միայն սիրով կ'արտայայտենք, հապա նաեւ ձեզի՝ մեծարգոյ, արժանացեալ, վերապատուելի, մեծազգի, բարձրացեալ, ազնուատոհմ, քաջանուն, ազնուական, ինչպէս նաեւ մեր կայսերական կառավարութեան իմաստուն եւ շրջահայեաց արանց, մեր Դրանսիլուանիոյ ժառանգական իշխանութեան ամէն կարգացն ու դասուց, գլխաւոր ու փոխանակի գաւառապետաց, ազնուազարմ դատաւորաց, սէգուլական դատաստաններու վերատեսչաց, սաքսոնական ատենից ալքայական դատաւորներուն եւ ամէն որեւիցէ կերպով՝ մեր իշխանութեան իրաւանց տակ եղողներուն կը ծանուցանենք ու կը պատուիրենք, որ յիշեալ հայ ազգը՝ իբրեւ մեր ըլլալի․ բուն բնակիչները՝ չէ թէ միայն Դրանսիլուանիայի մէջ մտնելու թողուք, հապա նաեւ թող տուէք որ վերոյիշեալ առանձնաշնորհութիւններն ու արտօնութիւն-

Տվիլէ Ամիրան խնկանոս երկու հարուր մաճրի 200
„ Մարտիրոս բագրուպան „ „ 200
„ Հանգօն խնկճնօ „ „ 200
„ Նիկօլ չօմլեճի „ „ 200
„ Դաւիդ չօմլեճի „ „ 200
„ Գրիգոր Նօճոսի „ „ 200

Սմայ. 2400

դրանալադում 2400

Տվիլէ Աղաչայ խաչիկը Օսքճիչը · հճուր ու ․ խթնըն հինկ . . . . . . . . . 175
„ „ խաղար Օհնի հարուր ու լնսն մաճրի 150
„ „ լուսիկ Թորոնի նղճչ հարուր ու քրնն 140
„ „ խաչերեսն գաճդպն հարուր ու երսուն 130
„ „ Մրտճս պօչնախ հարուր ու իսնն . 150
„ „ Միդգօն գաբտէպօվ հարուր ու քսնան 120
„ „ Զատիկ օվանսին հարուր մաճրի . 100

Տվիլէ Արութիւն Պօչնախի հարուր մաճրի . . 100
„ Իսայ տիրացու „ „ . . 100
„ Խաչերես գրէչունի „ „ . . 100
„ Խաչիկ էրկանը „ „ . . 100
„ Տօնիկ տիագօնը „ „ . . 100
„ Լուսիկ Օսգէրիչը „ „ . . 100
„ Վարդան քնճի „ „ . . 100
„ Կաշբարը Մելքօնի „ „ . . 100
„ Խաչգօն Սնբէգրի „ „ . . 100
„ Վարդիկը Շումլըվուն „ „ . . 100
„ Սիմօնը գնտօվի Նըսուն մաճրի . . . . 90

Օվանէսը գրէչունի տվիլէ . . . . . . 75
Մանուկը մարգըտի տվիլէ . . . . . . . 65
Ըսթէփան Սընբըդրի „ . . . . . . 50
Սհակ տիրացուի . . . . . . . . . 50
Նիկօլ Ճիրախի . . . . . . . . . 50
Խաչիկ եկեղեցէնայ Լուսիկի . . . . . . 50
Ավատուր մէտիաշցունը . . . . . . . 50
Եօլպէյը սհակի . . . . . . . . . . 50

| | |
|---|---|
| Մինասը ու մալխասը տվիլէ . . . . . . . | 50 |
| Լուսիկ ու մանուկ ու գրիստոստուր տվիլին . . | 50 |
| Ծարուկը ասինը տվիլէ իսուն մաճրի . . . | 50 |
| Նիկօլը կօլօրիկը տվիլէ քսանուհինկ մաճրի . . | 25 |
| Մարգօն բագրուպանը տվիլէ քսան մաճրի . . | 20 |
| Մարգօն քնճինը " " " . . . | 20 |
| Գանէլն չուղան " " " . . . | 20 |
| Նիգօշն Պէկիճանի " " " . . | 20 |
| Գրիգորըշի բօնչի " " " . . . | 20 |
| Սագօն դրասդրաճունը տվիլէ իսուն մաճրի . . | 50 |
| Ավլատ՟ կօշկարի տվիլէ քսան մաճրի . . . | 20 |
| Վարդերես խազր՟ի " " " . . . . | 20 |
| Խաչատուր պուրնզի " քսանուհինկ մաճրի . . | 25 |
| Օվանէս տօպլի տվիլէ տասը մաճրի . . . . | 10 |
| Անկսէնտը մուրատի " " " . . . . | 10 |
| Խաչգօն գըրբիդի " " " . . . . | 10 |
| Պապիկը մէտից՟ի " " " . . . . | 10 |
| Պապիկը տ՟ր սթէփանի տվիլէ տասը մաճրի . . | 10 |
| Սմայ ամ՟ում | 5335 |

---

Կարոլոս Զ.ին արտօնութեանց հրամանագրին հետեւութեամբ Եղիսաբեթուպոլիս քաղաքը բոլորովին տարբեր վիճակի մէջ կը գտնենք։ Ալ հիմակ ազատ շունչ կ'առնու, ինքնիշխան տէր է, գլուխը վերցուցած կը հրամայէ, կը խրոխտայ։

Ա՛ն որ քանի մը տարի յառաջ (1729 փետր. 5) Հէրմանշդատի վերատեսչութեան կը դիմէ խոնարհութեամբ, որ շնորհք ընէ ու հարկապահանջին համար կտոր մը տեղ որոշէ ուր իրեն տնակներ կարենայ շինել ու կենալ հարկն առնելու համար (— "Խորհուրդ արինք դըլնաճըն

որ երթըլվի գըմարան ու խընդրինք տամղաճուն[1] սէպն, թէ չիգայ ուրուխ կենալու, նայ աղէկութիւն անէ գըմարան ու տայ կրաճիեան[2] եւ հրաման, որ տան կտօր մը տեղ իրեքմն[3], օր մինք անինք տնէր, օր կէնայ հախի վրայ. միեան թէ մեր ձէռն կենայ տներն ու մինք դաքշայ չի տանք, զէ մեր խարճօմն եղիլէ տներն.„ —) Հիմակ կը տեսնենք որ իբրեւ ազատ կալուածատէր, իբրեւ ինքնիշխան՝ Եղիսաբեթ քաղաքը կը չափչըփէ, կը կանոնաւորէ, կտորներու կը բաժնէ, հրապարակներ, փողոցներ, իւրթեր կը կորէ ու տեղւոյն եւ դրից ազնուութեանն ու մեծութեան համեմատ մասնաւորաց տըլկով կը ծախէ: — Քաղքին՝ կտորներու բաշխումը կը գտնենք "Սպիտակկողքով ըսուած մատենին„ մէջ 1734էն կամ թէ կայսերական հրովարտակին ընդունելութենէն տարի մը ետքն սկսած: Ասանկ՝ տեղ անջատելու ու ծախելու կը հանդիպինք ի մէջ այլոց երկծալ մեծ մատենին 22, 23, 52, 60, 61, 62, 63, 79, 85, 86, 87, 88, 89, 90, 106, 107, 108, 109, 112 էջերն եւ ուրիշ շատ տեղեր: Մէյ մէկ իջին վրայ տեղիս տեղիս .Օէն ալ աւելի անուն կայ, որոնք քաղաքային վարչութենէն տեղ ու երկիր գնած են տներ, խանութներ, պարտէզներ եւն շինելու համար:[4]

---

[1] Դրանսիլուանիացւոց լեզուաւ կը նշանակէ՝ մաքս (կամրջի, վաճառանոցի . .) տուրք:

[2] Gratia լատ. է, կը նշանակէ շնորհք:

[3] Տեղ մը:

[4] Երկիրներուն գնման ու տուչութեան վրայ գաղափար մ'ունենալու համար՝ կը դնեմ հոս մէկ երկու երկրի աւանդման օրինակ, առնելով վերոյիշեալ մատենին էջերէն:

Տներուն գիները շատ նուազ էին, վասն զի ամէն մէկ բաւական ընդարձակութիւն ունեցող տեղը 50, 100, 500, 800 եւն հունգարական ֆիորինի կը տրուէր. այսու ամենայնիւ ա՛ս ալ այն միջոցին քաղքին գլխաւոր եկամուտ աղբիւրներէն մէկը կը կացուցանէր: Ամէն մէկ քաղաքացի պարտաւորեալ էր տեղը՝ քաղքէն իբրեւ վերին վարչութենէն՝ գնելու, որպէս զի այն տեղն իր սեպհական ստացուածքը կարենայ համարուիլ: Այսպէս՝ ամէն մէկ քաղաքացի ըստ իր կարողութեան քաղքին գլխաւոր եւ կամ աւելի նուազ բանուկ տեղուոյն վրայ իրեն համար յատուկ երկիր մը կը գնէր, որպէս զի իրեն տուն տեղ ու ծուխ չինէ:

Աս կարգը կը պահուէր կէս մ'իբրեւ օրէնք

---

"Պչ. երկուստումն ըզգըրչման ու հուտիցան (փողոց) ... ինչվան ի մրիչի (ագարակ) տանը չաթանը աւելցուցին ու աւելցուց Աղաչայ մանուկը անկսէնտի խիգուցեանց ու կուտայ քաղքին 3000 մաճրի այսինքն 6 հարուր օսգի, որն որ լանք խուլաճլա այսինքն 31. ու ունենայ քաղաքն իւրթերուն ճոթէն զմաճար տրտրը դուս հանելու. ու եփոր հանին զտրտրը նայ ունենայ քաղաքը տալու Աղաչայ մանուկին իւրթերուն փունտը (լատ. է. ծայրը, խորքը) անպէս երկանքը ինչվան որ վերջիները էկանք որ տան, նայ ունէնայ քաղաքը տալու:

Nr. 3. Բըդրաշգոյին իւրթը խուլաճ լանքը $9^1/_3$, նայ տվաւ քաղաքը Աղաչայ պիրովին, այսինքն Ա. խազարին Օհանինը, որ տայ քաղաքին 700:

Nr. 4. Պուսպրեային իւրթը լանքը 10 խուլաճ գօրնի (ծայր) տունը. տվաւ քաղաքր Ա. լուսիկին ու Օհանին Տէր ակոբինը, որ տան քաղքին 810:

Գիտացվի որ տվաւ քաղաքըն ըզսաս դըլըըրարին (խաղախորդ, մաչկեգործ,) տունը օղորմած Հօգի արիւթիւնին վերի դիհէն իւրթը մարգար աղին կերակոսին օրգուն ու տվաւ քաղաքին 240:

Nr. 7. Խիւրթը Հէլէային ու ժուտէլին կանէ քաղաքըն 3 իւրթ, 8ը ութը խուլաճի մէկ իւրթ. — Արջի իւրթը տվաւ քաղաքըն խաչատուրին նորգոյին որ տայ քաղաքին 150:„

*ու կէս մ՚ալ իբրեւ սովորութիւն։ Այս անգիր օրինաց տակէն ոչ ոք ինք զինք դուրս հանել ուզեց։ —*

*Սակայն կ՚երեւայ թէ եղած են այնպիսի անձինքներ ալ, որոնք առանց քաղքին վերին իշխանութիւնը նկատելու՝ երկրատէր ուզած են ըլլալ, առանց երկրին տեղը քաղքէն ստըկով գնելու։ Այսպէս պատահեցաւ ի մէջ այլոց 1736ին։ Ազգայնոցմէ մէկը՝ Զատիկ Յովհաննէս երկրատէր ըլլալ ուզելով, շիտակ Հէրմանշդատ ազգունի կալուածոց վարչութեան դիմած եւ անկէ բաւական ընդարձակութիւն ունեցող երկիր ու տուն — Սամուէլ Բօյ բողոքական քահանային տեղերն — իրեն սեպհականել ուզած է։ Եւ որովհետեւ երկիրն եւ անոր վրայ եղած ամէն բաներն՝ ըստ օրինաց՝ Հայոցն էր, շատ ծանր եկաւ լաւազգաց ազգայնոց որ հայ մարդ մը՝ ընդհանուր օրինաց տակէն ինք զինք հանելով կառավարութեան դիմած եւ անկէ իրեն սեպհական անձին համար յատուկ երկրի մաս մը դուրս հանած առած է։*

*Ուստի եւ բոլոր Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք տհաճութիւննին ցուցուցին այս տեսակ վարմունքին վրայ. եւ միաբան յայտնեցին թէ այնչափ աշխատանք յանձն առնելով ու այնչափ ծախք ընելով՝ քաղաքնին ըստ բաւականի կարգի բերելէն եւ իրենց մէջ օրէնքներ դնելէն ետեւ, ըլլան անանկ մանաւորներ՝ որ ըստ իրենց քմաց այս օրէնքին ու կարգադրութեանց հակառակ գործեն, եւ իրենց յատուկ կալուածներ սեպ-*

հականեն, չէ թէ քաղքէն՝ իբրեւ իր օրինաւոր տիրոջմէն, այլ ալքունեաց վերատեսչութենէն։

Քաղաքային վարչութիւնն այս առթիւ մասնաւոր խորհուրդ գումարելով որոշեց որ այս տեսակ գործողութիւնը քաղքին սկզբան դէմ է, ու յաջորդաց գայթակղութեան պատճառ։ Ուստի եւ միաբանեցան որ ամենեւին չթողուն որ այս բանս այնպէս մնայ. թէ քաղաքացիք բողոքեն, եւ իրենց ձեռագրովն ու կնքովը ստորագրեն թէ հակառակ են Ջատիկ աղային այս տեսակ քաղաքականութեան, թէ ամէն միջոց բանեցընեն եւ ամենեւին ծախքի չխնայեն, որպէս զի ցմիշտ այս տեսակ գործողութեան առջեւն առնուի։ — Եւ իրօք ալ քաղքին առաջին մարդիկներէն, — ինչպէս վարը պիտ'որ տեսնենք — 21 հոգի բողոքին տակ իրենց անունը ստորագրեցին եւ կնիքնին դրին։

Աս ընելէն ետեւ կանչեցին աղաչայ Ջատիկն ու խնդրեցին իրմէն այս կերպ գործողութեան պատճառը. սակայն ինք լակոնական ոճով մը պատասխան տուաւ թէ գնացէք վարչութեան, ու թէ որ կառավարութիւնը ձեզի յետս կը դարձընէ այն կալուածը, ես ալ ետ կը դարձընեմ։

Լսենք աստ նկատմամբ եղածները ժամանակակից արձանագրութենէն։

"Թվին 1736ին Ապրիլի 30 Էլէզաբէդ քաղաքն.

"Եղեւ արընատ[1] քաղաքին խորհուրդն, զորն որ կայ ամէնին ձեռնագիրն եւ մոհրն, վասն

[1] Բոլոր։

Աղաչայ զատիկին օվանէսին որդուն սէպն. ինչպէս որ մեք այլ առաջ քանծ զայս թիւն, որ է այն վեր գրած այսինքն որպէս ի թվին 1729ին փետրվարի 1ին, ինչպէս որ կայ գրած ալ առաջ նումր 4ին մէջ թէ որպէս կցվիլէ մեր քաղքին խորհուրդը եւ ըսգիզըն մեր բանինը. որ Աստուծոյ ողորմութեամբն եւ կայսերին կրաձիեայօմն շատ աշխատանքով եւ շատ խարճով կցվիլէ ու Աստուծոյ ողորմութեամբն շատէն քիչէն զբաներս այսինքն զքաղքինը առաջ տարիլինք ու հաստատիլինք ըստ կարեացմերոց ու դէր կայ ալալ մնացած բաներ եւ տեղըանք քաղքին ուզելու եւ լանցընելու, զէ պէտք է. ու զապագան նայելու սէպն ալ եւ քաղքին հանգըստութեանը սէպն ալ կու ջանանք ու պի ջանանք ոչքան որ կարենանք։

"Ետ այսորիկ մեր մէջէն մէկ աղամն աննուն զատիկ Օվանէսի որդի, որն որ խորհրդակից լինելով հետ մեզիկ էղիլէ. առանց մեր կամային եւ առանց մեր խըրէրին[1] ու գընացիլէ գըմարան ու քալիլէ ու հանիլէ գրեր ի վերայ բօբ շօմուէլին տեղըանքնուն սէպն, օր ըլայ իրենը, ըլայ միեան ինքն լիպէրդայ, որն որ զայս տեսնելով քաղաքն նայ արմնցաւ ու կի տեսնունք, օր մեր քաղքին շատ զէնով է, զէ քաղքին նեղուց է եւ քաղքին շատ բանով կլայ թշով ըլալու, նայ այսօր քաղվէցաւ քաղաքն ու խորհուրդ արին վասն վերոյգրեալ բանին համար, թէ որպէս կու կամենան վասն վերոյգրեալ

[1] Առանց մեր գիտնալուն (°)։

բանին. նայ արընատ քաղաքն չի կամենալ, որ Աղայ զատիկըն ունէնայ մէնէնակըն զատ լիպերդան մեր քաղքին քով ու քաղաքըն ճիզմըվի ու քաղքին ներքուց ըլայ ու միայն իրեն լան ըլայ, նայ ասոր համար մեք ամենէքեանս կու խոստանանք մէկմէկի ու կի կապվինք մեր ձեռնագրօվն ու մօհրօվն այլ վար գրած թէ այսուհետեւ ունէնայ քաղաքն հանէլու եւ խարճելու ուրեւիցէ ու չի թօղու զայս բանս վար՝[1] եւ ինչ օր խարճենայ, զամենայն խարճըն եւ աշխատանքն ունենայ քաղաքն փնտրելու Աղայ զատիկէն, զէ թէ որ զայս բանս օր վար մնայ, նայ մեր քաղքին գէշ օրինակ կու մնայ. եւ ամէն մէկն կըլայ որ զոտւնը ծախէ եւ ելէ ու էրթայ. ու բեռն մնայ նացայ վիյ վօվոր մէջն քաղքինը կու մնան. նայ վասն այսորիկ ըսդըրագրեցաք այլ վար եւ մոհրեցինք որ մնայ հասդատ„ եւ այլն։

"Ես Նիգօշ խըլգուցի Պիրօվ վ. կ.
Ես վարդան Խսիգուցի վ. կ.
Ես պետրոս քէլի աղայ վ. կ.
Ես լուսիկ քէլի աղայ վ. կ.
Ես ամիրայ մեղտեսի խնկնօնի Աղաչայ վ. կ.
Եւս Դաւիդ Շիմիլովցու վ. կ.
Ես Հանգոյ մեղտեսի խնկնմի Աղաչայ վ. կ.
Ես լուսիկ Թորոսին Աղայ վ. կ.
Ես [illegible]արտիրոս բագրուն լմիկ Աղայ վ. կ.
Ես օվանէս գրէջունի Աղայ վ. կ.
Ես խաչերես սիմօնի Աղայ վ. կ.

---

[1] "Վար թօղուլ՝„ այնպէս թօղուլ։

ները վայելեն․ եւ կարենան յամենայնի եւ ա-ռանձինն պահել այն ամէն բան, ինչ՚որ վերի յօդուածներուն մէջ բովանդակուած են. եւ զանոնք Դուք ալ պահեցէք, Դուք՝ որ այս արտօնութեանց որեւէ կերպով ընդդիմացողներուն դէմ զիրենք պաշտպանելու եւ իրենց օգնութիւմատուցանելու պարտական էք։ Ինչպէս որ ամենեւին չենք տարակուսիր թէ այս անուանեալ Հայերը եւ անոնց յաջորդներն ալ նկատմամբ մեզի եւ մեր վեհափառ տոհմին պարտուպատշաճ պատիւը, հաւատարմութիւնն ու հպատակութիւնը պիտի ցուցընեն․ ու ճշմարտիւ համոզուած ենք, որ այնպիսի վարմունք պիտի ցուցընեն, որ թէ՛ մեր առջեւ եւ թէ՛ Դրանսիլուանիոյ մեզի սիրելի բնակչաց առջեւ սիրելի ու պատուելի պիտի ըլլան։„

“Որ բանին յիշատակին եւ ի նշան մեր յարատեւ սիրոյն՝ ներկայ իրաւանց արտօնութեան հրովարտակը ապագային ապահովութեան համար՝ վերոյիշեալ հայ ազգին շնորհել կարեւոր համարեցանք, մեր մեծագոյն կախուած կնիքին տակ։„

“Տուեալ ի Վիեննա քաղաք, յԱւստրիա, յամի Տեառն 1733, ի 11 Օգոստոսի. Մեր իշխանութեան՝ իբրեւ հռոմէական կայսր՝ 22երորդ, իբրեւ Սպանիայի թագաւոր՝ 30երորդ, իբրեւ Հունգարիոյ եւ Պոհեմիոյ թագաւոր, 23երորդ տարին։„

Կարոլոս. յ. ձ.

Գ. Յովսէփ Յովհ. Գորձեմիսա
տէ Գասոն, յ. ձ.„

Այս արտօնագրով՝ ինչպէս ըսինք՝ Եղիսաբեթուպոլսոյ Հայոց գաղթականութեան վիճակը կերպարանափոխ եղաւ՝ սոյն քաղաքն ազատ քաղաքի վերածուելով Յաջորդ մասերը պիտի ցուցընեն՝ թէ ինչ եղաւ սոյն քաղաքին վիճակն՝ այս մեծ կերպարանափոխութենէն ետքը:

## 5.

Շատ բնական էր ենթադրել, որ կայսերական արտօնութեանց հրովարտակն ընդունիլն առանց դրամի չէր կրնար ըլլալ: Ասոր շատոնց պատրաստ էին Եղիսաբեթուպոլսեցիք, եւ Մինաս Թորոսեանին խոստացած էին, դեռ 1729ին սկիզբները, թէ կու տան ասոր ստացման համար հարկաւոր եղած 4000 հունգարական ֆիորինը: Խօսքերնին իրօք ալ բռնեցին. վասն զի արտօնութեանց հրովարտակէն քանի մ'ամիս ետքը՝ կը գտնենք ճերմակ գրքին 20 ու 21 էջերուն մէջ անցուած այն ամէն առատատուր քաղաքացւոց անունները, որոնք իրենց կարողութեան համեմատ՝ որոշեալ գումարով մը առ այն օգնական եղած են: Ասոնց անունները են:

“Ելիսաբէդ Քաղքին Տէֆդէրն է վասն Տիբլումին ժամանակն թէ վօվ ինչ տվիլ է ըուդակ շահու, որն որ զարխին ալ ունին:[1]

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Տվիլէ | Աղաչայ | Պիրով Նիգօշն | իրեք | հարուր մանրի | 300 |
| Տվիլէ | Աղաչայ | Պետրոսը Քէլի | իրեք | հարուր մանրի | 300 |
| ” | ” | Վարդանը Խոիգուց | ” | ” | 300 |
| ” | ” | մանուկ Խոիգուց | ” | ” | 300 |

[1] Այսինքն՝ որոնք որ ձեռուընին ճանաչման մուրհակն ալ ունին:

| | | | | |
|---|---|---|---|---|
| Տվիլէ | Ամիրան խնկանոս | երկու հարուր | մաճրի | 200 |
| " | Մարտիրոս բագրուպան | " | " | 200 |
| " | Հանգօն խնկմնս, | " | " | 200 |
| " | Նիկօլ շօմլեն | " | " | 200 |
| " | Դաւիդ շօմլեն | " | " | 200 |
| " | Գրիգոր Նօճոի | " | " | 200 |
| | | | Ամայ. | 2400 |
| | | | դրանալագուժ | 2400 |

Տվիլէ Աղաչայ խաչիկը Օպոչը. հճուր ու ․խթննն հինկ . . . . . . . . . 175
" " խազար Օհնի հարուր ու լինսն մաճրի 150
" " լուսիկ Թոսի նգճչ հարուր ու քրնն 140
" " խաչերեսն գամդպն հարուր ու երսուն 130
" " Մրտճս պօչնախ հարուր ու իսնն . 150
" " Միդգօն գաբուէպօվ հարուր ու քսնան 120
" " Զատիկ օվանսին հարուր մաճրի . 100

Տվիլէ Արութիւն Պօչնախի հարուր մաճրի . . 100
" Իսայ տիրացու " " . . 100
" Խաչերես գրէչունի " " . . 100
" Խաչիկ Էրկանը " " . . 100
" Տօնիկ տիագօնը " " . . 100
" Լուսիկ Օսգէրիչը " " . . 100
" Վարդան քնճի " " . . 100
" Կաչբարը Մելքոնի " - . . 100
" Խաչգօն Սնբէգրի " " . . 100
" Վարդիկը Շումլցվուն " " . . 100
" Սիմօնը գնտօվի Նըսուն մաճրի . . . . 90

Օվանէսը գրէչունի տվիլէ . . . . . . 75
Մանուկը մարգըտի տվիլէ . . . . . . . 65
Ըսթէփան Սընբդրի " . . . . . . 50
Սհակ տիրացուի . . . . . . . . . 50
Նիկօլ Ճիրախի . . . . . . . . . 50.
Խաչիկ եկեղեցէնայ Լուսիկի . . . . . . 50
Աստուր մէտիաչցունը . . . . . . . 50
Եօլպէյը սհակի . . . . . . . . . . 50

| | |
|---|---|
| Մինասը ու մալխասը տվիլէ . . . . . . . . | 50 |
| Լուսիկ ու մանուկ ու գրիստոստուր տվիլին . . | 50 |
| Ծարուկը ասինը տվիլէ խսուն մածրի . . . | 50 |
| Նիկօլը կօլօրիկը տվիլէ քսանուհինկ մածրի . . | 25 |
| Մարգօն բաղրուպանը տվիլէ քսան մածրի . . | 20 |
| Մարգօն քնծինը " " " . . . | 20 |
| Դանէլն չուղան " " " . . . | 20 |
| Նիգօշն Պէկիծանի " " " . . | 20 |
| Գրիգորըշի բօնչի " " " . . . | 20 |
| Սագօն դրաադրածունը տվիլէ խսուն մածրի . . | 50 |
| Ասվատո կօշկարի տվիլէ քսան մածրի . . . | 20 |
| Վարդերես խազրի " " " . . . . | 20 |
| Խաչատուր պուրնզի " քսանուհինկ մածրի . . | 25 |
| Օվանէս տօպլի տվիլէ տասը մածրի . . . . | 10 |
| Անկսէնտը մուրատի " " " . . . . | 10 |
| Խաչգօն գըրբիդի " " " . . . . | 10 |
| Պապիկը մէտիցի " " " . . . . | 10 |
| Պապիկը տէր սթէփանի տվիլէ տասը մածրի . . | 10 |
| Ամայ ամբում | 5335 |

---

Կարոլոս Զ.ին արտօնութեանց հրամանագրին հետեւութեամբ Եղիսաբեթուպոլիս քաղաքը բոլորովին տարբեր վիճակի մէջ կը գտնենք։ Ալ հիմակ ազատ շունչ կ՚առնու, ինքնիշխան տէր է, գլուխը վերցուցած կը հրամայէ, կը խրոխտայ։

Ա՛ն որ քանի մը տարի յառաջ (1729 փետր. 5) Հէրմանշդատի վերատեսչութեան կը դիմէ խոնարհութեամբ, որ շնորհք ընէ ու հարկապահանջին համար կտոր մը տեղ որոշէ ուր իրեն տնակներ կարենայ շինել ու կենալ հարկն առնելու համար (— “Խորհուրդ արինք դըլնաճըն

որ երթըվի գըմարան ու խընդրինք տամղաճուն[1] սէպն, թէ չիգայ ուրուխ կենալու, նայ աղէկութիւն անէ գըմարան ու տայ կրաձիեան[2] եւ Հրաման, որ տան կտօր մը տեղ իրեքմն[3], օր մինք անինք տնէր, օր կէնայ Հախի վրայ. մինեան թէ մեր ձէռն կենայ տներն ու մինք դաքշայ չի տանք, զէ մեր խարճօմն եղիլէ տներն.„ —) Հիմակ կը տեսնենք որ իբրեւ ազատ կալուածատէր, իբրեւ ինքնիշխան՝ Եղիսաբեթ քաղաքը կը չափչըփէ, կը կանոնաւորէ, կտորներու կը բաժնէ, Հրապարակներ, փողոցներ, իւրթեր կը կորէ ու տեղւոյն եւ դրից ազնուութեանն ու մեծութեան Համեմատ մասնաւորաց սորկով կը ծախէ։ — Քաղքին՝ կտորներու բաշխումը կը գտնենք “Սպիտակ կողքով ըսուած մատենին„ մէջ 1734էն կամ թէ կայսերական Հրովարտակին ընդունելութենէն տարի մը ետքն սկսած։ Ասանկ՝ տեղ անջատելու ու ծախելու կը Հանդիպինք ի մէջ այլոց երկծալ մեծ մատենին 22, 23, 52, 60, 61, 62, 63, 79, 85, 86, 87, 88, 89, 90, 106, 107, 108, 109, 112 էջերն եւ ուրիշ շատ տեղեր։ Մէյ մէկ իջին վրայ տեղխս տեղխս ‚0էն ալ աւելի անուն կայ, որոնք քաղաքային վարչութենէն տեղ ու երկիր գնած են տներ, խանութներ, պարտէզներ եւն շինելու Համար։[4]

---

[1] Դրանսիլուանիացւոց լեզուաւ կը նշանակէ՝ մաքս (կամրջի, վաճառանոցի . .) տուրք։

[2] Gratia լատ. է, կը նշանակէ շնորհք։

[3] Տեղ մը։

[4] Երկիրներուն գնման ու տուչութեան վրայ գաղափար մ'ունենալու Համար՝ կը դնեմ Հոս մէկ երկու երկրի աւանդման օրինակ, առնելով վերոյիշեալ մատենին էջերէն։

Տներուն գիները շատ նուազ էին, վասն զի ամէն մէկ բաւական ընդարձակութիւն ունեցող տեղը 50, 100, 500, 800 եւն հունգարական ֆիորինի կը տրուէր. այսու ամենայնիւ ա՛ս ալ այն միջոցին քաղքին գլխաւոր եկամտի աղբիւրներէն մէկը կը կացուցանէր: Ամէն մէկ քաղաքացի պարտաւորեալ էր տեղը՝ քաղքէն իբրեւ վերին վարչութենէն՝ գնելու, որպէս զի այն տեղն իր սեպհական ստացուածքը կարենայ համարուիլ: Այսպէս՝ ամէն մէկ քաղաքացի ըստ իր կարողութեան քաղքին գլխաւոր եւ կամ աւելի նուազ բանուկ տեղւոյն վրայ իրեն համար յատուկ երկիր մը կը գնէր, որպէս զի իրեն տուն տեղ ու ծուխ շինէ:

Աս կարգը կը պահուէր կէս մ'իբրեւ օրէնք

---

“Պշ. երկուսումն ըզգըրշման ու հուտոյցան (փողոց) . . . ինչվան ի մրիշի (ագարակ) սանը շալթանը աւելցուցին ու աւելցուց Աղաշայ մանուկը անկսէնտի խիզուցեանց ու կուտայ քաղքին 3000 ժամրի այսինքն 6 հարուր օսգի, որն որ լանք խուլամ լա այսինքն 31. ու ունենայ քաղաքն իւրթերունծոթէն զմաճար տրտրը դուս հանելու. ու եփոր հանին զտրտրը նայ ունենայ քաղաքը տալու Աղաշայ մանուկին իւրթերուն ֆունտը (լաս. է. ծայրը, խորքը) անպէս երկանքը ինչվան որ վերջիները էկանք որ տան, նայ ունէնայ քաղաքը տալու:

Nr. 3. Բըդըրաշգօյին իւրթը խուլամ լանքը $9^{1}/_{3}$, նայ տվաւ քաղաքը Աղաշայ պիրօվին, այսինքն Ա. խազարին Օհանինը, որ տայ քաղաքին 700:

Nr. 4. Պուժպրեային իւրթը լանքը 10 խուլամ գօրնի (ծայր) տունը. տվաւ քաղաքր Ա. լուսիկին ու Օհանին Տէր ակոբինը, որ տան քաղքին 810:

Գիտացվի որ տվաւ քաղաքըն ըզսաս դըլըըրարին (խաղախորդ, մաշկեգործ,) տունը օղորմած Հօգի արիւթիւնին վէրի դիհէն իւրթը մարգար աղին կերակոսին որդուն ու տվաւ քաղաքին 240:

Nr. 7. Նիւրթը Հէլեային ու ժուտէլին կանէ քաղաքըն 3 իւրթ, 8ը ութը խուլամի մէկ իւրթ. — Արջի իւրթը տվաւ քաղաքըն խաչատուրին Նօրգօյին որ տայ քաղաքին 150:„

ու կէս մ'ալ իբրեւ սովորութիւն։ Այս անգիր օրինաց տակէն ոչ ոք ինք զինք դուրս հանել ուզեց։ —

Սակայն կ'երեւայ թէ եղած են այնպիսի անձինքներ ալ, որոնք առանց քաղքին վերին իշխանութիւնը նկատելու՝ երկրատէր ուզած են ըլլալ, առանց երկրին տեղը քաղքէն ստըկով գնելու։ Այսպէս պատահեցաւ ի մէջ այլոց 1736ին։ Ազգայնոցմէ մէկը՝ Ջատիկ Յովհաննէս երկրատէր ըլլալ ուզելով, շիտակ Հերմանշտատ արքունի կալուածոց վարչութեան դիմած եւ անկէ բաւական ընդարձակութիւն ունեցող երկիր ու տուն — Սամուէլ Բօբ բողոքական քահանային տեղերն — իրեն սեպհականել ուզած է։ Եւ որովհետեւ երկիրն եւ ասոր վրայ եղած ամէն բաներն՝ ըստ օրինաց՝ Հայոցն էր, շատ ծանր եկաւ լաւազգաց ազգայնոց որ հայ մարդ մը՝ ընդհանուր օրինաց տակէն ինք զինք հանելով կառավարութեան դիմած եւ անկէ իրեն սեպհական անձին համար յատուկ երկրի մաս մը դուրս հանած առած է։

Ուստի եւ բոլոր Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք տհաճութիւննին ցուցուցին այս տեսակ վարմունքին վրայ. եւ միաբան յայտնեցին թէ այնչափ աշխատանք յանձն առնելով ու այնչափ ծախք ընելով՝ քաղաքնին ըստ բաւականի կարգի բերելէն եւ իրենց մէջ օրէնքներ դնելէն ետեւ, ըլլան անանկ մանաւորներ՝ որ ըստ իրենց քմաց այս օրէնքին ու կարգադրութեանց հակառակ գործեն, եւ իրենց յատուկ կալուածներ սեպ-

Հականեն, չէ թէ քաղքէն՝ իբրեւ իր օրինաւոր տիրոջմէն, այլ արքունեաց վերատեսչութենէն։

Քաղաքային վարչութիւնն այս առթիւ մասնաւոր խորհուրդ գումարելով որոշեց որ այս տեսակ գործողութիւնը քաղքին սկզբան դէմ է, ու յաջորդաց գայթակղութեան պատճառ։ Ուստի եւ միաբանեցան որ ամենեւին չթողուն որ այս բանս այնպէս մնայ. թէ քաղաքացիք բողոքեն, եւ իրենց ձեռագրովն ու կնքովը ստորագրեն թէ հակառակ են Ջատիկ աղային այս տեսակ քաղաքականութեան, թէ ամէն միջոց բանեցընեն եւ ամենեւին ծախքի չխնայեն, որպէս զի ցմիշտ այս տեսակ գործողութեան առջեւն առնուի։ — Եւ իրօք ալ քաղքին առաջին մարդիկներէն, — ինչպէս վարը պիտ՚որ տեսնենք — 21 հոգի բողոքին տակ իրենց անունը ստորագրեցին եւ կնիքնին դրին։

Աս ընելէն ետեւ կանչեցին աղաչայ Ջատիկն ու խնդրեցին իրմէն այս կերպ գործողութեան պատճառը. սակայն ինք լակոնական ոճով մը պատասխան տուաւ թէ գնացէք վարչութեան, ու թէ որ կառավարութիւնը ձեզի յետս կը դարձընէ այն կալուածը, ես ալ ետ կը դարձընեմ։

Լսենք ասոր նկատմամբ եղածները ժամանակակից արձանագրութենէն։

"Թվին 1736ին Ապրիլի 30 էլէզաբէդ քաղաքն.

"Ըղեւ արընատ[1] քաղաքին խորհուրդն, զորն որ կայ ամէնին ձերնագիրն եւ մոհրն, վան

[1] Բոլոր։

Աղաչայ զատիկին օվանէսին որդուն սէպն. ինչպէս որ մեք այլ առաջ քանձ զայս թիւն, որ է այն վեր գրած այսինքն որպէս ի թվյն 1729ին փետրվարի 1ին, ինչպէս որ կայ գրած ալ առաջ Նումր 4ին մէջ թէ որպէս կցվիլէ մեր քաղքին խորհուրդը եւ ըսգիզըն մեր բանինը. որ Աստուծոյ ողորմութեամբն եւ կայսերին կրաձիեայօմն շատ աշխատանքով եւ շատ խարճով կցվիլէ ու Աստուծոյ ողորմութեամբն շատէն քիչէն զբաներս այսինքն զքաղքինը առաջ տարիլինք ու հաստատիլինք ըստ կարեացմերոց ու դէր կայ ալալ մնացած բաներ եւ տեղըանք քաղքին ուզելու եւ լանցընելու, զէ պէտք է. ու զապագան նայելու սէպն ալ եւ քաղքին հանգըստութեանը սէպն ալ կու ջանանք ու պի ջանանք որքան որ կարենանք։

“Եա այսօրիկ մեր մէջէն մէկ աղամն աննուն զատիկ Օվանէսի որդի, որն որ խորհրդակից լինելով հետ մեզիկ էղիլէ. առանց մեր կամքյին եւ առանց մեր խըրէրին[1] ու գընացիլէ գըմարան ու քալիլէ ու հանիլէ գրեր ի վերայ բօք շօմուէլին տեղըանքնուն սէպն, օր ըլայ իրենը, ըլայ միեան ինքն լիպէրդայ, որն որ զայս տեսնելով քաղաքն նայ արմնցաւ ու կի տեսնունք, օր մեր քաղքին շատ զէնով է, զէ քաղքին նեղուց է եւ քաղքին շատ բանով կլայ թշօվ ըլալու, նայ այսօր քաղվէցաւ քաղաքն ու խորհուրդ արին վասն վերոյգրեալ բանին համար, թէ որպէս կու կամենան վասն վերոյգրեալ

---

[1] Առանց մեր գիտնալուն (°)։

բանին. Նայ արընատ քաղաքն չի կամենալ, որ Աղայ զատիկըն ունէնայ մէնէնակըն զատ լիպերդան մեր քաղքին քով ու քաղաքըն ճիզմըմի ու քաղքին ներըուց ըլլայ ու միայն իրեն լան ըլլայ, Նայ ասոր համար մեք ամէնէքեանս կու խոստանանք մէկմէկի ու կի կապվինք մեր ձեռնագրօմն ու մօհրօմն այլ վար գրած թէ այսուհետեւ ունէնայ քաղաքն հանէլու եւ խարճելու ուրեւիցէ ու չի թօղու զայս բանս վար՝[1] եւ ինչ օր խարճենայ, զամենայն խարճըն եւ աշխատանքն ունենայ քաղաքն փնտրելու Աղայ զատիկէն, զէ թէ որ զայս բանս օր վար մնայ, Նայ մեր քաղքին գէշ օրինակ կու մնայ. եւ ամէն մէկն կլայ օր զտունը ծախէ եւ ելէ ու էրթայ. ու բեռն մնայ Նացայ վ̃յ վօվոր մէջն քաղքինը կու մնան. Նայ վասն այսորիկ ըսգրագրեցաք այլ վար եւ մոհրեցինք որ մնայ հաստատ„ եւ այն:

"Ես Նիգօշ խըլգուցի Պիրօվ վ. կ.
Ես վարդան Խսիգուցի վ. կ.
Ես պետրոս քէլի աղայ վ. կ.
Ես լուսիկ քէլի աղայ վ. կ.
Ես ամիրայ մեղտեսի խնկնօմի Աղաչայ վ. կ.
Եւս Դաւիդ Շիմիլովցու վ. կ.
Ես Հանգոյ մեղտեսի խնկնմի Աղաչայ վ. կ.
Ես լուսիկ Թորոսին Աղայ վ. կ.
Ես [illegible]արտիրոս բադրուհի լմիկ Աղայ վ. կ.
Ես օվանէս գրէջունի Աղայ վ. կ.
Ես խաչերես սիմօնի Աղայ վ. կ.

[1] "Վար թողուլ", այնպէս թողուլ:

Ես Նիգօղ սԹէփանի Սարըսղայ փ. է.
Ես մանուկ խսիգուձն փ. է.
Ես Միդգըյ Սիմոնի փ. է.
Ես խաչգըյ Սնբէդրի փ. է.
Ես օվանէս վասիլի փ. է.
Ես մանուկ անկսէնտի փ. է.
Ես խայ Օհանի փ. է.
Մէլքոն կաշըարի փ. է.
Խաչիկ քէլ լուսիկի փ. է.
Անկսէնտ վրդնի խսիգծն փ. է.։"

Թէպէտ եւ խնդիրն ասով չլմնցաւ. վասն զի Զատիկ աղան Սամուէլ Բօյին երկիրները չկրցաւ առնուլ. սակայն քիչ մը ետքը զասոնք յիշեալ բողոքական քահանային ժառանգները 300 Ֆիորինով աւանդի դրին 1738ին Յովհ. Զատիկեանին։ Եւ որովհետեւ 300 Ֆիորինը չվճարեցին, Յովհ. Զատիկ այն գումարին վրայ 1000 Ֆիորին ալ աւելցնելով՝ գնեց Մարիամ Թերեզիայէն այն երկիրները, եւ այսպէս՝ եղաւ անոնց տէրը։[1]

Աս միջոցին կը տեսնենք որ Եղիսաբեթուպոլիս ալ, ըստ սովորութեան ուրիշ ազատ քաղաքաց, մարդ կը խրկէ Հերմանշդատ որ պահանջէ թէ աղ տրուի դատաւորին, առաջականներուն, եւ այլն։ Կըսահմանուի խորհրդարանին մէջ որ "երթըվի Սիպինը, որ հանինք զաղին թուղթը, օր տան աղ մեզիկ, պիրօվի

[1] Տես Զաքարեան գերդաստանին ազնուականութեան թուղթը. 1750 Մայիս 4։

եւ աղանուն, որպէս օղկայ քաղաքաց:„ Եւ իրօք ալ կը գտնենք թէ ի զուր չէն քալեր: Կ'ընդունին աղը ձրի, դատաւորը՝ 12 կենդինար, իսկ 12 խորհրդականներն, ինչպէս նաեւ նոտարն ութական կենդինար. ու աս չէ թէ մէկ տարուան համար, այլ "մշտնջենական ու ամէն տարի պիտի արնըվի Աստուծոյ ողորմութեամբն„: Սակայն իւրաքանչիւր ոք իր սեպհական ծախքովը կամ կառքովը պէտք է որ բերել տայ՝ իրեն շնորհուած աղը:

Վերը (էջ 67) տեսանք թէ միս կտրելու, ոգեւոր ըմպելիք ու գինի ծախելու իրաւունքին նկատմամբ Եղիսաբեթուպոլսոյ Հայք ու արքունական կալուածոց վերատեսչութիւնը չկրցան մէջերնին գտնել: Քաղաքն ի սկզբան 150, ետքէն 350 ֆիորին տուաւ այն իրաւունքն իրեն սեպհականելու համար: Այս անմիաբանութեան վերջ տրուեցաւ Կարոլոսի հրովարտակին 9երրորդ կէտովը, որուն զօրութեամբ կը շնորհուի Եղիսաբեթուպոլսոյ Հայոց մսահատութեան ու գինեվաճառութեան իրաւունք, այն պայմանաւ որ քաղաքն այս իրաւանց գործածութեան համար արքունական գանձուն տարւէ տարի 400 հունգարական ֆիորին վճարէ: Հայք յանձն առած կ'երեւան այս բանս, վասն զի իրենց միայն առաւել շահուն կը ծառայէր: Ուստի եւ կայսերական հրովարտակին հրատարակուելէն չորս ամիս ետքը կամ թէ ըսենք 1734 տարւոյն սկիզբները կը սկսին Հայք կարգադրութիւններ ընել չէ թէ միայն գինի ու օղի, այլ նաեւ երկաթ ու

բամբակ ծախելու իրաւունքին նկատմամբ: — — Երեքն ալ մենավաճառութեան տակ ձգեցին:

Առաջինին, այս ինքն օղի ծախելու իրաւունքը կու տայ քաղաքը Ծարուկ Ասցու աղային վարձու (arenda), տարուէ տարի 50 մաճարի ֆիորինով[1], ու կը ծանուցանէ թէ ինքը՝ Ծարուկ՝ կրնայ թէ մեծ ու թէ պզտիկ չափով ծախել օղին: Սակայն ուրիշին ամենեւին հրաման չկայ նոյնն ընելու, ո՛չ քաղքին՝ Վալաքաց կոչուած թաղին մէջ եւ ո՛չ ալ քաղքէն դուրս: Ով որ գաղտնաբար ծախելու ըլլայ կը պատժուի եւ օղին ալ իրմէն կ'առնուի: Օղէվաճառ հրեայ կրնայ գալ ու ծախել օր մը միայն, այնպիսի պայմանաւ որ վարձակալն աղայով մը երթայ ու իր օղին քննէ, ծախելու օղւոյն գինը կտրէ եւ ամէն մէկ չափին համար իրմէն առնու ստակ մը: Շնորհուեցաւ նաեւ, ըստ խնդրոյ վարձառուին, որ Մատթէոսեան գերդաստանին տունն ալ ըլլայ օղէվաճառութեան տեղ, բայց ինչ որ այն պանդոկէն ծախուի, վարձակալն առնու, ու քաղքին ստակ տայ իբրեւ թէ պզտիկ չափով ծախուած

[1] Մաճարի ֆիորինը մեր հիմակուան դրամովը 33 գարանդան կամ շուրջ 85 սանդիմ կ'ընէ: Ըսել է թէ Ծարուկ աղան տարուէ տարի — մեր հիմակուան ստըկովը հաշուելով — 16 ֆիորին 66 գարանդան կը վճարէր քաղքին՝ ոգեւոր ըմպելիք ծախելու իրաւունքին համար: Ի՛նչպէս կը փոխուի ժամանակաւ ամէն բան: Այս իրաւունքը հունգարական տէրութիւնը ասկէ չորս տարի յառաջ՝ փոփոխութեամբ գնած կամ իրեն սեպհականած է, ու տեղը 157.000 ֆիորին ունեցող փոխարինութեան թուղթ մը տուած է 4½ % շահով: Իսկ իրաւունքը աճըրդի հանելով՝ Եղիսաբեթուպոլիս քաղքին ոգեւոր ըմպելիք ծախելու իրաւունքէն կ'առնու հիմակ տարուէ տարի 9200 ֆիորին աւստրիական: Աս գումարը՝ մէկուկէս դար յառաջ եղածին 550պատիկն է:

ըլլար։ Երէցկինը միայն իրենն եւ ոչ թէ քաղքին օղին կրնայ ծախել։ Իսկ մէկալ գինեվաճառութեան տեղը՝ ազատ ըլլայ պզտիկ չափով ծախելու, ամէն տեսակ օղի, նաեւ չօփրի (գինւոյ օղի), սակայն ոչ թէ պզտիկ, այլ մեծ չափով։ — 2. Երկաթ ծախելու նկատմամբ որոշուեցաւ որ վարձակալէն զատ ոչ ոք իշխանութիւն ունենայ երկաթ ծախելու, եւ ոչ մէկը մէկալին փոխ տալու՝ ո՛չ ցորենի, ո՛չ վարսակի, ո՛չ խոտի եւ կամ որեւիցէ բանի համար, եւ ո՛չ ալ Վալաքաց թաղը կրնայ դնել որ հոն ծախէ. վասն զի երկաթ ծախելու իշխանութիւնը միայն վարձառուինն է։ Բայց թոյլ կը տրուի որ տօնավաճառին օրը կարենայ ծախել ամէն մարդ. սակայն անկէ դուրս չէ. եւ ով որ ծախէ ու այս բանս իմացուի, 12 մաճառի ֆիորինի տուգանօք պիտի պատժուի։ Բաց ասկէ որոշուեցաւ որ վարձառուն զերկաթը՝ երկու դրացի քաղաքներէն, այսինքն Չէսպուրկէն ու Մէտիաշէն աւելի թանկ պիտի չտայ։ Կը ծանուցանէ այս առթիւ ժողովն ա՛ն ալ, որ երկաթ ծախելու իրաւունքն առած են Աղաչայ Պետրոս Քէլեանց եւ Աղաչայ Մարտիրոս Բադրուպանեանց 30 մաճարի ֆիորինով։ — 3. Բամբակ ծախելու նկատմամբ որոշուեցաւ որ միա՛յն տօնավաճառի ատեն կրնայ ամէն մարդ ծախել, բայց անկէ դուրս ոչ երբեք. ծախողը 12 մաճառի ֆիորին տուգանք պիտի վճարէ. թէ վարձառուն է արուեստաւորաց ընկերութեան գլխաւորը՝ Աղաչայ Հանգոյ, որ տարւէ տարի 13 ֆիորինի առած է այս իրաւունքը։

Ահա այս՝ 1734 Յունուարի երկուքին ու վեցին եղած երեք որոշմանց բնագիրը։

«1734 ունվարի 2ին Էլիզաբէդ քաղաքն.

«Գիտացվի որ տվանք ըզըրախին արընտայով Աղաչայ Ծարուկին ացուան, մէկ տարով, որ ինքը ծախէ գուբով[1] ալ եւ վատրայով[2] ալ եւ ընդօր ուզենայ. որ տայ քաղքին ծ̃ մաճրի մաճրքի. որ օզկանուն ամենեւին ըսըօպօտ չիլայ[3] ծախէլու, ոչ մէկ Հայի մըն ալ. եւ ոչ ունէնայ մէկն ի մէկն ծախելու օլախնոցը կամ քաղքէն դուս. զէ թէ որ գտվէր մէկն ի մէկն որ ծածկաբար ծախէր, նայ զայնպիսին անպատճառ ունենայ ճուրում տալու ժ̃բ մճրի. կէսն դընաճինըլայ, եւ կէսն արընտադօրինը[4] ըլայ. եւ ըրախին ալ արընվի անպատճառ։ Եւ գիտացվի որ թէ որ ճըհուտ ըրախի բէրէր, նայ ծախէ ա̃ օր մը. նա ա̃ պանը արնու գուբէն արընտադօրը. եւ ունենայ արընտադօրն մէկ աղայով մը զճհդին ըրախին գին կտրէլու։ Եւ գիտացվի, խնդրըվեցաւ վերոյ գրեալ ծարուկը որ թօղունք, որ մադէէնց ծախվի ըրախին. ու ինչ ըրախի էլէր ատ գըրըչմային[5] չօփրանուն, նայ ինքն պի առնու ու պան պիտայ քաղքին ընդօր որ բուդրագի[6] ծա-

---

1 Kupa, Հունգարերէն չափ մըն է, որ Հիմակուան չափով Հաշուելով շուրջ 12 տեսիլլիթր է։
2 Veder, Հաւասար է 10 լիթրի։
3 Szabad, Հունգարերէն է, ազատութիւն, Հրաման կը նշանակէ։
4 Arendator, լատ. բառ է, վարձառու կը նշանակէ։
5 Korcsma, Հունգ. բառ է, նշանակութիւնն է՝ գինետուն, պանդոկ։
6 Կընշանակէ կարծեմ, մասն մասն կամ պզտիկ չափով։

խէր նայ, այնպէս պի վիճարէ մեզի. նմայ թէ[1] ունէնայ իրիձգինը զիրեն ըռախին ծախէլու, չէ մերը. տարը մէկալ գըռչման մերը[2] սըօպօտ պիլայ բուգըրագի ծախէլու, թէ չօփրի թէ հի ինչ թուրլու ըռախի չէ գուբօվ:„

“Գիտացվի որ զերկաթը Աղաչայ պետրոսին օվանէսին տվանք մինչեւ տարին լմնայ, որ տայ դաքշայ կամ արըտնայ քաղքին 30 մաձրի, այսպիսի գօնտիձիայի վըայ[3] որ օզկային ամենեւին սըօպօտ չիլայ որ ծախէ երկաթ. եւ ոչ փոխ տայ մէկը մէկալին, եւ ոչ ցորենի վըայ տայ. կամ օվուսի[4], կամ խօտի, կամ ինչեւիցէ. եւ ոչ սըօպօտ ըլայ որ օզկայ տեղ դնէ օլախոցը որ ծախէ, զարտօր արընտաղօրը ծախէ: Եւ գիտացվի որ շօգօտօլին[5] կըլայ ծախէլու հի՝ վօվ,[6] տարը շօգօտօլէն ինտան[7] ամենեւին չի ծախէ, զէ թէ որ ղայնպիսն իմացվէր որ ծախիլէ, կամ հրամայէն դուս էլէր նայ, գիտացվի որ ունէնայ ճուրում տալու 12 մաձրի, եւ այս ճուրումն կեսն դըլնաձինն է եւ կէսն արընտաղօրին է: Եւ գիտացվի որ արընտաղօրներն ալ թանկ չի ծախին ինչպէս շիկիշվարն ու մէտիաշն կի ծախվի նայ. եւ գիտացվի որ զվերոյ սուման ունէնայ

---

1 Միայն թէ:
2 Նշանակութիւնն է. “բայց մեր մէկալ գինետունը:„
3 Այնպիսի պայմանաւ:
4 Վարսակ, վալաքերէն բառ է:
5 Sokadalom հունգարերէն է, կը նշանակէ՝ տօնավաճառ:
6 Ամէն մարդ:
7 Միայն թէ . . . անդին:

վճարելու իրեք անկարիայով:[1] Դ. ամիսը կի լմընայ նայ, տայ մէկ անկարիան: Գիտացվի օր Աղաչայ պէտրոսը քէլեանց եւ Աղաչայ մարտիրոսը բաղդուպանց իրենց հրամանքներն ին արընտադօր էրկըթինը:„

“Գիտացվի օր զըամպակն ալ տվանք արընտայի Աղաչայ սարըսդային հանգդյին, օր տայ քաղաքին 13 մաճրի, օր օզկային ամէնեւին սլօպօտ չիլայ օր ծախէ. զէ գտվի օր մէկնըմէկը օր ծախէ, նայ գիտացվի ճուրում, վերըյ ճուրումը պիլայ, տարը շօգօտօլին սլօպօտ է ամէնին օր ծախին:„

Միեւնոյն ժամանակ դրուեցաւ նախ շուկայի վերակացու մը որ պիտի հսկէր ու առնուր տամղայ, այսինքն մաքս՝ այն ապրանքներէն ու երկրի բերքերէն, որոնք քաղքին վաճառանոցը կը մտցուէին: Ասոր վրայօք եղած որոշմունքներն են որ վաճառանոցն եկած մէկ չափ (մէցէն) ցորենէն չառնուի մաքս, սակայն աւելիէն՝ առնուի. Եկամուտը կամ մաքսը վարձառուինն է: Ջրի ծառայողն ինչպէս նախ անդրէնածինը մաքս վճարելէն ազատ էին:

“Խորհուրդ էղաւ Պատուէլի դընաճն վասն պազըին համար: Գիտացվի օր տվանք Աղաչայ օվանէսին գրէչունինը, օր տայ քաղքին դաքշայ 36 մաճրի մաճարըքի օր ունէնայ իրեն հրամանքը քաղելու զտամղան ինչ օր բերվի պազարն. նայ գիտացվի ինչ օր ա. միրձայ ցորենէն չի առնու

[1] Angaria, լատ. բառ է. կը նշանակէ՝ տրոց որոշեալ ժամանակի մը մէջ վճարմունքը:

տամղայ, տարը[1] ալ շատ բէրվինայ, արընվի. ու շօգօտօյին ալ ինչ օր քաղվի իրեն հրամանոցն է. եւ գիտացվի որ եօպաձնուն[2] մօտէն չի առնու տամղայ. եւ վասն օվուսին թէ օր հըլադայէն պակաս է նայ, տամղայ չի արնըվի եւ գիտացվի օր քաղքըցոցը մօտէն չի առնու տամղան. եւ ունէնայ վիճարելու երկու անգամ տարին զվերոյ սուման. կէսն ունիսի եւ կէսն ունվարի ամսուն:„

## 6.

Վաճառանոցին խնդիրը լմըննալէն ետեւ ձեռք զարկաւ քաղաքն ուրիշ գործքերու: Գանձապետներ, քննիչներ, փողոցաց վերատեսուչներ դրուեցան եղած օրէնքներուն. ու կարգադրութեանց վրայ հսկելու համար: "Վասն քաղքին պիտվականութեանը — կ'ըսէ 1735 Նյ. 21ին օրէնքը, — դրանք աղաչաներ, թէ բրէցէբդօրներ, թէ բօշդայ մէշդէր, թէ վէքիլ օրմընուն. եւ պօր պիրօվի„ եւայլն:

Ասոնց իւրաքանչիւրն իր յատուկ պաշտօնն ունէր: Ա. Պօր պիրօվին գործքն էր, զգուշանալ չափերուն հարազատութեան վրայ եւ նայիլ ու հսկել որ ճշդութեամբ չափուին գինին, գարեջուրն, օղին եւայլն. եւ թէ անխարդախ ըմպելիք ծախուի: — Բ. Քաղքին շրջակայքն եղած արօտին վրայ, որ քանի մը հարիւր արտավար ընդարձակութիւն ունեցող դաշտավայր մըն էր, եւ քաղքին բաւական եկա-

[1] Բայց սակայն, միայն թէ:
[2] Jobbagy հունգ. բառ է, կընշանակէ՝ ձրի ծառայող:

մուտ կը բերէր, վերատեսուչ մը դրուեցաւ։ Ասոր գործքն էր հսկել տալ, որ դաշտավայրին բոլորտիքն եղած առուակները պեղուին ու մաքրուին, դարձեալ՝ որոշել խոտին հնձելու կամ կտրելու ատենը։ Ասոր վարձք որոշուեցաւ քաղքին կողմանէ՝ կտոր մը երկիր, զոր կրնար բանեցընել ու գործածել։ — Գ. Գանձապետին պաշտօնն էր, արկղակալէն, որ քաղքին ամէն եկամուտները կը քաղէր, ստակներն առնել եւ անով վճարել քաղաքացիներէն առած, թէ՛ հրամանագրին եւ թէ՛ մանաւանդ եօքէն տէրութեան կալուածները գնելու համար ժողոված դրամներուն շահերը։ — Դ. Ուրիշ ընդհանուր գանձապետ մըն ալ դրուեցաւ քաղքին տներուն տուրքին վրայ։ Ասոր գլխաւոր գործն էր՝ տներէն, գանձապետէն, վարձակալներէն ժողոված դրամներն առնել եւ ասոնց վրայօք քաղաքային ժողովոյն հաշիւ տալ։ — Ե. Դրուեցաւ տնտես մըն ալ հասարակաց գործառնութեան։ Ասոր գործն էր կամուրջներ շինել, փողոցները շտկել ու մաքրել, առուակները յըստակել տալ. միով բանիւ հսկել, որ քաղաքը չէ՛ թէ միայն մաքուր մնայ, այլ նաեւ շէննայ, գեղեցկանայ ու ընդարձակի։ — Զ. Սուրհանդակութեան պաշտօնն էր — քաղքին առաջնորդներն ու 12 խորհրդականները դուրս առնելով — հրամայել ամէն քաղաքացի Հայոց, որ կառօք երթան գործելու. եւ կամ կառք ու ձի տալով՝ հասարակութեան ու տէրութեան վերաբերեալ բեռերը՝ մէկ տեղէն մէկալ տեղ

փոխադրեն։ Ով որ սուրհանդակապետին հրամանին չհնազանդէր, կը պատժուէր։ Այսոր գործքն էր միանգամայն նշանակել, թէ երբ եւ ուր պիտի երթար քաղաքացի մը գործելու իր կառքովը կամ ձիերովը. եւ այլն։

Ահաւասիկ ասոր նկատմամբ եղած որոշումներն, ըստ տարեգրին։

“Ամի Տեառն 1735 Նոյեմբերի 21ին Էլիզաբէդ քաղաքն։

“Աստուծոյ կամօքն այսպէս խորհուրդ էղաւ Պատուելի դըլնաճէն. եւ հաստատեցինք վասն մեր քաղաքին պիտականութեանը համար եւ դրանք աղաչաներ թէ կէնէրալ բրէցէբդօրներ, թէ բօշդայ մէշդէր, թէ վէքիլ օրմընու եւ պօր պիրօվի ինչ պիտոր հախ տրվի եւ պաղչին այսինքն լունգային վէքիլն թէ վօվ է եւ ինչ հախ ունենայ։

1. Գիտացվի, որ դրանք պօր պիրօվ[1] ըզԱղաչայ օվանէսն գրէջունի, օր սէպէրն առնու գըրօշմանոցն եւ չափէ ըզամըներն. թէ գինուն, թէ փիվի[2], թէ ըրախու օր սէպն տայ Պատուելի դըլնաճին. եւ գիտացվի որ կու տայ քաղաքն Աղաչայ պօրպիրօվին աշխատանքին 25 մաճրի այսինքն իև մաճրի։

2. Եւ ըզԱղաչայ Մանուկն Խսիգուցեանց դըրանք վէքիլ ըրթին[3] վրայ. այսինքն խոտնոցինը

---

[1] Bor biro հունգարերէն է. կը նշանակէ՝ դատաւոր կամ հսկող գինւոյ, գինեվաճառութեան վրայ։
[2] “Փիվա„ կարծեմ լեհերէն բառ է. — կը նշանակէ գարեջուր։
[3] Rét դաշտ, դաշտավայր։

եւ լանցինը[1] ըլթին բոլորն. որ ունենայ իրեն հրամանքը Փըքըը քալցընելու[2] եւ հասդատելու խոտին ժամանակն, թէ շանցին ժամանակն. եւ այսպէս էղաւ, որ տանք իրեն հրամանոցը աշխատանքին մէկ տրապ[3] մը տեղ խոտնոցէն, որ իրեն հրամանքը հընծէյ ու խոտ անէ։

3. Խընդրեցինք ըզՊատուելի Աղաչայ Վարդանը խիգուցեան, որ կէնէրալ բրէձէբդօր ըլայ. եւ անձն արաւ թէ պիլայ. որ ունէնայ առնէլու մէկալ բրէձէբդօրէն, վըրն որ կի քաղէ ըզքաղքին խարճըն այսինքն ինչ սումայ ըսդակ ըլայ նայ պի առնու եւ անկից ունենայ վիճարէլու ամէն մէկին շահն այսինքն փօփոր տուվիլէ քաղքի ըսդակ ու պի գրէ զաբխսին վրայ։[4]

4. ԸզԱղաչայ օսգէրիչը դրանք այլվի կէնէրալ բրէձէբդօր ի վերայ քաղքին դաքշային, որ ունէնայ առնէլու մէկալ բրէձէբդօրէն եւ ուրիշ ինչ որ վինիդ կու գայ քաղքին առնտանուն մէջէն, նայ ան ալ ունէնայ առնէլու առնտադօրնունմէ. եւ Աղաչայ կէնէրալ բրէձէբդօրն ունէնայ սէպն տալու Պատուելի դընաճին։

5. ԸզԱղաչայ Հանգօն Խնկանօսեան դըրանք բրիսդավ[5] որ ըլայ, եւ հասդատէ ինչ գօնտիձիաներ որ տրվի, ունենայ իրեն հրամանքն

[1] Lancz, հունգարական բառ է. շղթայ կը նշանակէ։ Նշանակութիւնը պիտ'որ ըլլայ անտարակոյս, դաշտին մէջ մէյ մէկ կտոր երկիր, զոր հին ատեն շղթայով կը չափէին։

[2] Տախտակի մը վրայ նշանակել, որոշել, ծանուցանել բան մը (կարգադրութիւն, վճիռ)։

[3] Darab, կտոր։

[4] Ընկալագիր, ապահովագիր։

[5] Չեմ կրնար հանել թէ ինչ կը նշանակէ։

իշխելու եւ հրամայելու թէ բօտեր[1] անելու, թէ ճամփան խորդելու[2], թէ բըրըմ[3] խողակելու. որ ունենայ իրեն հրամանքը հասդատ կանելու այս բունգդէրուն եւ հասդատելու մեր քաղքին մէջ:

6. ԸզԱղաչայ լուսին[4] Թորոսեան դըրանք բօշդայ մէշդէր[5], որ ունէնայ հրամայելու դըռնաճի աղաչանուն դուս, մէկալ քաղքըցի Հայոց ամէնին, կարքով որ էրթան բօշդայ, կամ ձի տալու կամ արպայ ում որ հրամայէնայ ունենայ հնազանդէլու ու չիհնազանդօղն ունէնայ ճուրում տալու ա̃ մաճրի անպատճառ. եւ բօշդայ մէշդէրն ունէնայ զամէնայն մէկն գրէլու, որնոր ուրուխ էրթայ կամ խնչեւիցէ: — — —„

Եղիսաբեթուպոլիս քաղաքն այս կերպով ինք զինք օրէնքներով կապելէն ու կարգաւորելէն, եւ տնտեսական գործքերն ըստ բաւական կարգի բերելով՝ վարչութեան գործառնութիւնները առանձինն պաշտօնատեարց յանձնելէն եւ նիւթապէս ու բարոյապէս ամրանալէն ետեւ՝ իբրեւ խոհեմ հաշուակալ, իբրեւ հեռահայեաց քաղաքագէտ, սկսաւ մտածել անոր վրայ՝ որ իր ապագայ զաւակաց եկամուտն լաւացընէ, ու իր թոռանցը վիճակն ապահովցընէ:

Աչքը՝ Պաշտպալովի ու իրեն սահմանակից

---

[1] Կամուրջ:

[2] Հարթել, շտկել:

[3] Վտակ. առու:

[4] Թերեւս Լուսիկ ըլլալու է, որ այս միջոցին հաստրակութեան նոտարն էր:

[5] Հունգարերէն բառ է, կը նշանակէ սուրհանդակի գործակատար. Postmeister.

երկիրներուն վրայ էր. ան պէտք էր իրեն: Ուստի եւ նպատակին հասնելու համար չմնաց քար՝ զոր չշարժէ, չմնաց պաշտօնարան՝ որուն չդիմէ, ճամբայ՝ զոր չընէ, միջոց՝ զոր չբանեցընէ:

Ամէն բանէն աւելի այս բանիս մէջ կը տեսնուի Եղիսաբեթուպոլսոյ Հայոց մեծ գործունէութիւնը: Միջոցներն ու միջնորդներն լաւ գործածել գիտնալ, չափազանց մեծ զոհողութիւն, համարձակ՝ մանաւանդ թէ յանդուգն ձեռնարկութեան ոգի, բացորոշ ու հաստատուն կամք, — ասոնք էին այն ժամանակի Հայոց յատուկ նկարագիրը: Ասկից ետքն եկող 40ամեայ գործունէութիւննին իրենց պատմութեան մատենին մէջ ոսկեգրերով նշանակելու դէպքեր են:

Պաշտպալովցւոց սիրական ու պաշտպան Աբաֆին՝ իւր իշխանութիւնը կորսընցընելէն ետեւ — ինչպէս տեսանք — Վիեննա կանչուեցաւ, եւ հոն իբրեւ ստուերական թագաւոր ապրեցաւ ու մեռաւ: Իր Պաշտպալովի դղեակը շրջակայ գեղերովն ու ամէն տէրունի կալուածներով անցաւ աւստրիական տան իշխանաց: Այս բանս այսպէս ըլլալու էր, վասն զի այս էր ազգաց իրաւունքը: Ըստ այսմ Աւստրիոյ կայսրը եղաւ տէր եւ ժառանգ Աբաֆի իշխանին բոլոր կալուածոց. ու իրօք ալ անոնց վրայ ձեռք դրաւ իբրեւ սեպհական կալուածատէր:

Պատճառն, որ Հայերն այնպէս կը կպչէին — մանաւանդ իշխանին մահուանէն ետեւ — աւստրիական տան, ունէր իւր յատուկ ու բնա-

կան վախճանն, եւ այս ա՛ն էր, որ շատ տարի-
ներէ վեր աչք տնկած էին հանգուցեալ իշ-
խանին մեղր ու կաթ բխող կալուածներուն ու
երկիրներուն: Եւ կը յուսային ալ, որ դիւրաւ կը
հասնին իրենց փափաքին, մէյ մ՚որ Աւստրիայի
իշխաններն այն դղեկին ու երկիրներուն որպի-
սութեա՛նն ու ընդարձակութեանը վրայ ճիշդ
գաղափար չունէին. մէյ մ՚ալ օր աչքէ հեռու
ըլլալով՝ անոնց վրայ շատ հոգ չէին ըներ:

Ուստի Հայք մէյ մը մտքերնուն մէջ ծնած
գաղափարն սկսան մէջերնին եփել. եւ վախ-
ճաննուն հասնելու համար — 1739ին սկիզբ-
ներն առաջին քայլերն առնուլ ասոր ստացմանը,
թէեւ ոչ ուղղակի, այլ անուղղակի ճամբանե-
րով: — Յիշեալ տարւոյն Յունուարի 3ին եղաւ
առաջին գաղտնի խորհուրդն, այս մեծ գաղա-
փարին իրագործութեան համար: Մասնաժո-
ղովն ասոր մէջ սահմանեց, որ եթէ արքունի կա-
լուածոց վերատեսուչն, Յովհ. Նօկյ, Եղիսա-
բեթուպոլիս գայ, իրեն ներկայանան քաղքին
գլխաւոր դատաւորն ու խորհրդականներուն ա-
ռաջիններն, եւ իրեն աղաչեն, որ քաղքին սահ-
մանակից երկիրներուն համար — զորոնք ձեռք
բերելու կը փափաքէին — խօսի ու գործէ
Հէրմանշդատի մէջ ի նպաստ Հայոց: Պատգա-
մաւորք՝ յանուն քաղաքային խորհրդոյ, իրեն
ծառայութեան համար 100 ոսկի խոստացան:
Տասուերկու օր ետքը՝ նոյնը հաստատեցին եւ
վրան 100 ոսկի մըն ալ աւելցուցին, միայն թէ
վերատեսուչն աշխատի ու ետեւէն իյնայ, որ

կերպով մը երկիրն՝ Եղիսաբեթուպոլսեցւոց ձեռքն անցնի։

Ահա տարեգրին խօսքերը։

«1739. ունվարի 3ին։ Եղաւ ի քաղաքն Էլիզաբէդան վլասնի[1] քաղքին հօգարին համար. եփոր պիտոր գար Հօֆգօմօրադը մեր մօտ նայ, խրկեցին զԱղաչայ Պիրօփն ու ըզԱղաչայ Պետրոսն ու ըզԱղաչայ Նիգօշն Նեօկ Եանօշին մօտ. ու խոստացան՝ իրեն պաշխըշ, որ զուրուցէ մեր քօվ։ Նայ էղաւ աղաչանուն հրամանովն, որ տան կամ Ֆըկըդուիդ անին[2], որն որ արիլին 100 ոսգի, եփոր ծառութիւն անէ։» — «Ունվարի 15. — Էղաւ խորհուրդ վլասնի, անքօփն գրած բունգդէրուն համար[3]. ու թէ որ Աստուած տայ, որ կարնայ ծարութիւն անէլու ու տալու, ինչպէս որ Կուզենք, նայ խօսդանան աղաչաներն Հօֆգամարադին 200 օսգի. ու այս էղաւ քաղքըցոցը ուզենալովն։»

Այս՝ համեմատութեամբ գրեթէ ոչինչ՝ տեղւոյն ստացման առաջարկութիւնը պատրուակ մըն էր միայն Հայոց կողմանէ։ Վարպետութեամբ կամ խորամանկութեամբ մտածեցին, որ եթէ առջի բերան շատ մը հազար արտավար պարունակող երկիրներուն վրայ ըլլայ խօսքը, ոչ զիրենք մտիկ ընող, ոչ իրենց երեսը նայող պիտ՚որ

[1] Այս բառը հունգարերէն valasztmány բառին կրճատածն է, կարծեմ. ու կը նշանակէ մասնաժողով։ Ըստ այսմ. «մասնաժողով եղաւ քաղքին հօգարին (սահմանին, այսինքն՝ քաղքին կից եղող դաշտին կամ երկրին) համար։»

[2] Fogadni բառը կը նշանակէ՝ վարձու բռնել, կամ ուրիշ բացատրութեամբ՝ կաշառել, կաշառակեր ընել։

[3] Այսինքն՝ անգին, վերն եղած կէտերուն համար։

ըլլայ։ Բայց յայտնի է թէ — ինչպէս քիչ մը ետքը պիտ'որ տեսնենք — իրենց բուն միտքն ան էր, որ տէր ըլլան բոլոր արքունի երկիրներուն, կալուածներուն ու գեղերուն, որոնց մեծ յարգն ու ներքին արժէքն այն միջոցին միայն իրենք կը ճանչնային։ —

Անցաւ ասոր վրայ տարի մը, առանց բան մը գործելու, կամ թէ ըսենք, առանց տեսնելու որ Հայք մեծ յատակագիծ մը գլուխ հանելու կը պատրաստուին։ Իրենց ընդհանուր ու մասնական ժողովներուն ձեւօք՝ շարունակ որոշումներ ընելու վրայ էին։ — 1740 Յունուարի 13ին օրը՝ քովէ քով եկաւ քաղքին դընաձն՝ իր 12 խորհրդականներովն ու հասարակութեան ժողովն իր 40 խորհրդատուներովը։ Ասոր մէջ առաջարկուեցաւ որ Հերմանշդատ երթուի եւ արքունի կալուածոց վերատեսչին աղաչեն. 1. որ յստակէ ընդդիմադարձութիւնը (contradictio), զոր Պէթլէհէմ իշխանական զօրաւոր գերդաստանը, Կարոլոս Զ.ին Հայոց շնորհած արտօնագրին քանի մը կէտերուն դէմ ըրած էր։ Երկրորդ՝ խօսին այն աղաչանաց թղթին վրայ, զոր իրենք մատուցին — արքունական վարչութեան — նկատմամբ այն կտոր մը երկրին անջատման, զոր խնդրած եւ վարչութիւնն ալ իրենց խոստացած էր։ Երրորդ՝ թէ յիշեցընեն այս առթիւ եւ խնդրեն արքունի կալուածոց տեսչութենէն, որ վերոյիշեալ ընդդիմադարձութիւնը վերջացընելու ատեն, չմոռցուի տօմինիկումն ալ. ու եթէ կարելի է, կայսրը՝

զարքունի կալուածներն՝ անոր սեպհական հինգ գեղերովն Եղիսաբեթուպոլիս քաղքին տայ, այնպիսի՝ պայմանաւ, որ անոր դաքսան, այսինքն ստացման իրաւունքին վարձքը՝ Հայք, տարուէ տարի վճարեն արքունեաց: Կամ ուրիշ խօսքերով, այն երկիրները վարձու առնուն տէրութենէն:

Ահա խորհրդին յատուկ խօսքերը:

"Ամի Տեառն 1740ին. ունվարի 13ին. խորհուրդ էղաւ Պատուելի դըլնաճըն Աղաչայ պիրով Խազար իւր Պատուելի աղաներովն. եւ Աղաչայ Սարըսդայ Միդքօյ եւ իւր վաղահնէրովն եւ աղանէրովն. այսպէս հաստատեցինք որ երթան սիպինը Հօֆգօմօրադին մօտ, օր ունենան խնդրելու ըզՊատուելի Հօֆգօմօրան օր ունենայ ըզգօնդրատիգձիեան խսդիկելու, որն որ պէտըլէներըն արիլին նայ բրէվիլէկիումին մէջինը: 2. ինշդանձիային[1] համար, որն որ տված էր Հօֆգօմօրադին, որին մէջ ուղիլէ քաղաքն մերը, մէկ բարդիգուլա մը գետին տընէրով ու խօստացած է տիշգրէցիօն[2] Հօֆգօմօրադին ու կամ Նեօկ եանօշին ան գէտնին ու տնէրուն սէպն. հիմպիկ էրկուսումն խորհուրդ արաւ Պատուելի քաղաքն, որ խնդրին ըզՊատուելի Հօֆգօմօրադը, օր եփօր օր կարենայ կտրէլու ըզվերըս գրեալ գօնդրատիգձիեան, նայիշին իրեն տօմինիումին սէպն ալ, թէ հնար կէնար օր տար խօնթիքային ըզտօմինիումը իրեն հինկ գեղեօվն քաղքին, դաքշայօվն ու

[1] Աղերսագիր, աղաչանք, խնդրուածք:
[2] Ընտրութիւն, մասնաժողով:

գրըչմային ալ, որն որ տըված է բրէվիլէկիումին մէջ մեր քաղքին, ասօնք որ կարնար հաստատելու ու վերջ տանելու, նայ, ինչ օր խօսդացած էյ իրեն ալ վաղուց տիշգրէձիօն, նայ հիմպիկ պիլար աւելօքը երկու տակ[1], կամ աւելի ալ:„

Բայց այս մեծ խնդիրն առ ժամանակ մի մոխրոյ տակ մնացած կամ մոռցուած կը տեսնենք: Եւ պատճառն այն էր, որ Աւստրիայի մէջ յաջորդութեան պատերազմները կը յուզուէին: Հայք խոհեմութիւն չհամարեցան, որ այս ներքին խառնակութեանց ու շփոթութեանց ատեն՝ կայսերական տան նոր գլխացաւութիւն պատճառեն: Բայց ուրիշ կողմանէ, իրենց յատակագիծը կը շինէին, արգելքները կը հարթէին, եւ իրենց նպատակին հանելու գաղափարը, այլեւայլ ճամբաներով յառաջ կը տանէին:

Երկրորդ շլեզիական պատերազմին ատեն Մարիամ Թերեզիա դրամական նեղութեան մէջ էր. ուստի եւ Հայք զինուոր տալէն զատ, զորս ըստ օրինի զգեստաւորեցին[2], որոշեցին որ —

---

[1] Կրկին, երկու անգամ այնչափ:

[2] Ասոր նկատմամբ 1745ի տարեգրին մէջ յաջորդները կը գտնենք գրած. "Չէնէց պ. Մակխդրադն զԱ. լուլիձն, որպէս քաղքի հատնօկ (hadnagy = lieutenant) ... եւ տըվեցաւ իրեն հրամանոցն ինչդրուգձիա որպէս հօս ալ վար կըւ երեւնայ:„ (Այսինքն Լուլիօ տեղակալին հրահանգուած քաղաքը թէ յաջորդ զգեստեղէններով հանդերձաւորէ նոր զինուորները):

1ma մէկ ճուֆդ կօշիկ, բինդինօվ (խթան) նալած մէկին.

2do մէկ ճուֆդ պէրնէվաք (սռնոց), երկու փէճաթի, չուխէ.

3tio մէկ լայպլին (բաճկոն) Փլանէլէ, թէզնքօվ.

4to մէկ չադօվ (զինուորաց գլխանոց)

վերէն եկած հրամանին համեմատ — դրամով կամ ուրիշ կերպով մը մեծ կայսրուհւոյն օգնութիւն մատուցանեն: Գործքին աւելի ազդեցութիւն տալու համար սահմանեցին, որ Հերմանշդատ իրկեն Խնկանոսեան ժողովրդապետը իրեն օգնութեան տալով Պետրոս Քէլեան եւ Ղազար Յովհաննեան խորհրդականները. եւ որպէս հարկաւոր օգնութիւն մատուցանելու նկատմամբ իրենց լիակատար իշխանութիւն տուին, ան ընելու ինչ որ լաւ կը համարին եւ ինչ որ Աստուծոյ հոգին իրենց կ'ազդէ:

"Խնդրեց — կ'ըսէ ժամանակակից տարեգիրը, Դեկտ, 20ին, 1745 — Պատուելի քաղաքըն զգերյարգելի վարդապետն, եւ ըզԱղաչայ Պետրոսն Քէլեան եւ զԱղայ Խազարն Օհաննեան, որ էրթան սիպինը, վասն այս պատճարիս, այսինքն օր էկելէր հրաման թէ ունէնայ քաղաքն գումբանիայօմն տալու աճուդադօր այսինքն ըսդակ գրէասային մէկ սումամն ըսդակ պաշխըշ, նայ ասօր սէպն ովաւ Պատուելի գումբանիան զամէն փագուլըդաշն Պատուելի Աղանուն, օր ինչօր Աստուած խըրատէյ նայ այնպէս անին իրենց հրամանքներըն Սիպինըն եւ այդու վերջացնուն:„

Պատգամաւորները Հերմանշդատ երթալով եւ հոն արքունի կալուածոց վերատեսչին, երկրին կառավարին ու զօրաց վերին հրամանատարին հետ խորհրդակցելով, մէջերնին միա-

---

5to մէկ կունայ (վերնազգեստ. gunya հունգ. բառը հագուստ կը նշանակէ).

6to մէկին ասուր չորս կրօշ, ուտելու եւ խմելու:„

բանեցան որ Եղիսաբեթուպոլսեցիք — այն ատենին համար բաւական գումար մը, այսինքն — 1200 ոսկի պարգեւ մատուցանեն Մարիամ Թերեզիայի իբրեւ օգնութիւն պատերազմի։ Ժողովըրդապետն ու խորհրդականները Եղիսաբեթուպոլիս վերադառնալով՝ եղած խորհրդին եզրակացութիւնը քաղքին խորհրդանոցին առջեւը դրին։ Քաղաքը միաբան հաւանութեամբ առաջարկութիւնն ընդունեցաւ, ու որոշուեցաւ այսպէս. Տեսնելով որ մեր թագուհին, Մարիամ Թերեզիա, ստըկի կարօտութեան մէջ է, յառաջագոյն սահմանուած 1200 ոսկին հիմակ քովէ քով բերելով՝ որոշեցինք, որ մեր քաղքին ժողովըրդապետը Մինաս Խնկանոսեան եւ գլխաւոր դատաւորը Ղազար Յովհաննեան Վիեննա երթալով՝ այս մեր որոշումն գերաբարձր թագուհւոյն ոտուըներուն առջեւը դնեն։„

Սակայն ասիկայ պատճառանք մըն էր միայն։ Առաքման բուն նպատակն էր, ինչպէս նոյն ժողովքին որոշմունքէն յայտնապէս կը տեսնենք, որ պատգամաւորք 1733ին արտօնութեանց հրովարտակը — որուն մէկ քանի կէտին դէմ, ինչպէս վերն ալ ըսինք՝ Պէթլէհէմ գերդաստանը բողոքած էր, — ապահովցընեն ու ամրացընեն. եւ անոր վրայ այն 13 կամ 14 կէտերն ալ աւելցընել տան, զորոնք քաղաքն արդէն յառաջագոյն իրենց ձեռքը յանձնած էր։

Երկու պատգամաւորք Վիեննա երթալը յանձն առին. ասկից զատ իրենք զիրենք պարտաւորեցին վերըգրեալ 13 կէտերը՝ հրովար-

տակին մէջ դնելը յաջողցընելու համար ամէն բան ընելու: Ժողովքին կողմանէ իրենց երեք ամիս միջոց տրուեցաւ Վիեննա կենալու: Թէ որ հնար ըլլայ գործքն այս որոշեալ ժամանակէն յառաջ գլուխ հանել, լմընցընել եւ խնդիրը վերջացընել շատ լաւ, — քաղաքն իւր կողմանէ պատշաճ պարտաւորութիւնը պիտ'որ չմոռնայ, իրենց աշխատութիւնը պիտի վարձատրէ. — իսկ եթէ չկարենան գործքերնին լմընցընել սահմանեալ միջոցին մէջ, այն ժամանակ պէտք են հոն մնալ եւ աշխատիլ, որ այն բանը վերջանայ: Ի դիպուածի որ տեսնեն թէ որոշեալ ժամանակէն երկու կամ երեք շաբթուան միջոցի մէջ լմըննալու յոյս կայ, մնան հոն. ընդ հակառակն թէ որ տեսնեն թէ ամենեւին յոյս չկայ որ խնդիրը քիչ ատենի մէջ վերջանայ, այն ատեն իմացընեն քաղքին եւ ճարտար ու բարի գործակալի մը յանձնեն գործքին կատարումն ու ետ դառնան: Քաղաքն իր կողմանէ, այս ամէն որոշմունքներն ընելէն ետեւ կ'աւելցընէ այսպէս. “Գիտելի է, թէ մեր պատգամաւորներն այս նորոգութեան կէտերուն չեն կապուիր եւ ոչ ալ կրնան կապուիլ, վասն զի սիրտ թագաւորաց ի ձեռս Աստուծոյ է:„ Բայց կը յորդորեն զիրենք, թէ ինչ որ կրնան ընել՝ ընեն, ամէն միջոցները բանեցընեն ու ամէն քար շարժեն. վասն զի կրնայ յաջողիլ. “որովհետեւ յուսերնիս առ Աստուած եւ առ ամենասրբուհի Կոյսն Մարիամ դրած ենք„: Կ'որոշէ միանգամայն ժողովքն որ քաղաքը պատգամաւորաց աշխատան-

քին վարձատրութեանը համար ամէն մէկուն 100-ական ոսկի տայ։ Մէկալ ամէն ծախքերը, տալի պարգեւներն, իրենց՝ ինչպէս նաեւ իրենց ծառային ուտելը խմելը, մէկ խօսքով ամէն ծախքը քաղաքը վրան կ՚առնու։

Տեսնենք այս որոշմունքներն ըստ տարեգրին։

«Ամի Տեառն 1746 ունիսի 25 Էլեզաբէդան։

«Պատճառ գրոցս այս է, ինչպէս որ մեք Էլիզաբէդ քաղաքացիքս, ի միասին հետ բոլոր գումբանիային հրամանաւըն, գերայբարձր գըմարային խօսդացանք պաշխըշ մեր Թագուհւոյն Մարիայ Գէրէզիային հազար ու երկու հարուր օսգի. տեսնելով զպաքսութիւնը մեր Աննուանեալ Թագուհւոյնը 1ա խօսդանալուն էտէվանց[1]. ունէնալով կամ թէ ճարէլով զըսդակն, խնդրեցինք ըզԳերյարգէլի Տէր Տէրն մինասըն Խըլկանոսեանց բլէպանուշ Էլիզապէդ քաղաքիս, Նոյն Աստուածաբանութեան վարդապետ, աբաքելական միսիօնար, եւ վէնէրապիլէ գաբիդուլումին աքդուալիս գանօնիգուս. եւ նմանապէս ըզՊատուելի Ա. Ղազարն Օհանեանց եւ Ֆի պիրօվ[2] հայոց գումբանիայի, որ անձընէրն արին իրենց հրամանքներն էրթալու ու աշխատէլու ինչուան ի Պէչն, ու ըզվերոյ ասացեալ տիշգրէցիան ընբըրէզէնդօվադ անէլու մեր Թագուհուն։ Երկրորդ. Ան ալ խնդրեցինք ըզիրենց

[1] Ցառաջագոյն խօստացած ըլլալով։
[2] fö biró, գլխաւոր՝ առաջին դատաւոր։

հրամանքներին որ կանին ու աշխատին ու ըզմեր հին տիպլոմանորոգին ու դէր անոր քօվ գրվի կամօքըն Աստուծոյ եւ կրաձիայէն մեր Թագուհունը 13 կամ 14 բունքդալ, որն որ տված է իրեն հրամանոցը ձէռքըն. եւ գիտելի է որ այս վերոյ գրեալ ասացեալ նորոգութեանն եւ բունդ-դէրուն հաստատութեան օպլիկօվադ էղան իրենց հրամանքներըն նըստէլոյ պէջին մէջ 3 ամիս. հընար կենայ որ ալ առաջ կարնան իրենց հրամանքները զմեր խընդիրքըն կատարելու կամ հաստատէլոյ, նայ մեր տալէկըն պիլայ[1] ու չի կարնան ըմընցնելու զըանըն նայ ինչպէս ասինք ունէնան օպլիկացիային[2] գօրայ նըստէլու ըզիրեք ամիսն. ու ցեղ մը բանըն այնպէս բերէր, որ չի կենար հընար զայս իրեք ամսեան մէջ վերջացնելոյ ըզըանըն, նայ իրենց հրամանքները ազատ պիլան իրենց հրամանոցը կամքը պիլայ. թէ որ տեսնուն որ քիչ մը ժամանակեն վրայ նիաթ կենայ համնէլու այսինքն շաբաթ երկուս կամ իրեք ալ, ու Աստուած արժանի անէ, որ բէրեն նայ Պատուելի քաղաքն ալ մեծապէս շնորհակալ պիլայ իրենց հրամանոցը. բայց թէ որ ամենեւին հընար չի կենար այս դէրմինին, ինչպէս ալ վեր գրած է հանէլոյ կամ վերջացնելու, նայ իրենց հրամանքները իմաց պ՚անին մեզիկ որ գիտէնանք. ու պի թօղուն զըանըն մէկ աղէկ ու բարի ակէնշի մը վրայ, որ այն մարդն քալէ ու վերջացնու եւ իրենց հրա-

---

[1] Մեր տալիքը պիտ՚որ ըլլայ, պիտ՚որ կենայ. — այսինքն՝ մեր տալու վարձքը պիտ՚որ տանք։

[2] Պարտականութիւն, պարտաւորութիւն։

մանկները պիլան տուն գալու։ Երորդ. Աս ալ գիտելի է, որ վերոյ գրեալ նորոգութեանը եւ նմանապէս բունգդէրուն վրայ իրենց հրամանքները ամենեւին չեն կապվիլ, ոչ կլան կապվելույ թէ պի վերջացնուն ասելով թէ սիրտ թագաւորաց ի ձեռս Աստուծոյ է, մեր ուզածին գորայ։ եւ ոչ Պատուելի քաղաքըն զայս բրէդէնտօվադկանէ, թէ ըլայ. բայց ինչէն օր կարնան նայ կատարեալ սրտով կանին ու աշխատին, քան զի ամենայն յոյսն մեր ար աստուած է եւ ար Ամենայ Սրբուհի կոյսն Մարիամ։ Աշխատանքնին որպէսն խօսդացաւ քաղաքըն իրենց հրամանոցը այսինքն գերյարգելի վարդապետին եւ Ա. Ղազարին Օհանեանց, պաշխշ մէկին մէկին Հարուրական օսգի տալու, մէկալ խարճերն, պաշխշներն ուտելըն խմելըն իրենց հրամանոցը եւ տղինը, ամենըն մէկ խօսօք Պատուելի քաղաքն վրան արաւ, օր ամենըն Պատուելի քաղքին պիլայ։

Ամիրայ պիրօվ քաղաքիս զիմ
Աղաչանէրօվըս։»

Պատգամաւորները Վիեննա գնացին, եւ հոն չէ թէ երեք ամիս այլ երեք տարիէն ալ աւելի կեցած կ'երեւան։ Սակայն անգործ չմնացին։ Գործունէութեամբ, ճարտարութեամբ ու պաշտպանութիւն գտնելով գործքին առջեւն ելած դժուարութիւնները կամաց կամաց վերցուցին, ճամբաները հարթեցին եւ իրերն այնչափի բերին, որ Կարոլոս Զ.ին հրամանագիրն ամրացուեցաւ ու ըստ փափաքանաց Եղիսաբե-

թուպոլսոյ Հայոց Մարիամ Թերեզիայէն ալ նորոգուելու եւ հաստատուելու ճամբուն վրայ դրուեցաւ։ Պատգամաւորք — ըստ իրենց տրուած հրահանգին — եղածները ծանուցին քաղքին վարչութեան։ Տեղեկութեանց մէջ կ՚երեւայ թէ ան ալ աւելցուցին, որ կայսրուհին յօժար է, ոչ միայն Եղիսաբեթուպոլսոյ սահմանակից դաշտավայրերը Հայոց պարգեւելու, որոշեալ թէուլթեանց տակ, այլ նաեւ միտեալ է արքունական երկիրներէն քանի մը գեղ իրենց տալու։ Ասկից աւելի բան պէտք չէր քաղաքացւոց։ Աչուընին բացուեցաւ. ու տեսնելով որ Կարոլոսի արտօնութեանց բանը յաջողեցաւ, եւ քաղքին ստացուածն ալ շատ դժուարին պիտի չըլլայ, ծանուցին պատգամաւորաց թէ՝ Լաւ է. սակայն հիմակ կը փափաքի քաղաքն որ չէ թէ միայն Պաշտպալով իր սահմանովը գրուի քաղքին վրայ, այլ նաեւ ջանք ընեն որ Հունտօրֆ ու Էրնյէ գեղերն ալ իրենց շրջականներովն առնուին քաղքին ստանալի կալուածոց մէջ։ Ասոր պատճառն ալ կու տայ ժողովքը. "Վասն զի կը տեսնենք, կ՚ըսէ, որ եթէ միայն Պաշտպալովն իրեն սահմանակից տեղերովն իյնայ մեր քաղքին. իսկ Հունտօրֆ ու Էրնյէն պէթլէն գերդաստանին ձեռքն անցնին, այն ատեն, անկարելի է որ խաղաղութիւն ունենանք այս զօրաւոր գերդաստանին հետ։ Ուստի եւ տեսնելով մեր ապագայ անհանգստութիւնը, զոր պիտ՚որ ունենանք ասոնց հետ, հաճեցաւ քաղաքն զչարն ի միջոյ բառնալ. եւ այս երկու գեղն ալ Պաշտպալովի

կալուածոց վրայ գրել տալ։ Որովհետեւ թէ որ երեք գեղն ալ առնունք՝ ապահովութեան մէջ պիտի ըլլանք, մեր բոլորտիքը լաւ ու հանդարտ սաքսոն դրացիներ ունենալով»։ Քաղքին այս որոշումն ստորագրուեցաւ դատաւորին փոխանորդէն, իր խորհրդականներէն, ինչպէս նաեւ քառասնից ժողովքին գահերէցէն ու իր աղաներէն եւ խաւրուեցաւ Վիեննա, որ գիտնան եւ ըստ այնմ՝ շարժին։

Տեսնենք ժողովյն ընթացքն ըստ բնագրին։

“Խորհուրդ եղեւ — 1751 ունիսի 29 էլէզաբէդան — երկու տակ դընածքն այսինքն Ա. Պիրօմն իրեն հրամանոցն Աղանէրով եւ Ա. սաըլսդան իրեն հրամանոցը Աղաչաներոմն վասն Գերյարգելի հօրըն եւ Աղայ Օվանեսին ոսգերիչեանց որ գընացին տէբուդադուս պէջն, Պատուելի քաղքին հրամանաւն եւ տվիլէր Պատուելի քաղաքն բլէնիբօդէնձիայ իրեն հրամանոցն, թէ երթան եւ ուզեն Գերաբարձ Թագուհոյն մօտէն զպաշփալօվ գեղն իրեն հօդարօվըն։ Բայց հիմի կու կամի Պատուելի քաղաքըն, որ չէ թէ նմայ զիպաշփալոմն, հապայ ասոր քօվ ուզեն դէր զհունտօրֆ գեղն եւ զէրնայ գեղն, հետ իրենց ամէնայն հօդարներով. եւ այսպիսի կերպիւ գրեցինք Գերյարգելի հօրն եւ Աղայ Օվանէսին ոսգերիչեանց, որ ջանք անին արնէլու զերեք գեղն ալ իրենց հօդարնէրօմն, զէրայ այս է Պատուելի քաղքին կամքըն, վասն այս պատճառին, զէրայ կու տեսնու Պատուելի քաղաքըն,

որ թէ օր առնուր նմայ զիպաշֆալօմն իրեն հօդարօմն. եւ ըններ բանը որ հունտօրֆը եւ էրնան ըններ Պէկլէնին ֆամիլիային ձեռն, նայ անհնար պիլար քաղքին խաղաղութեան մէջ մընալու այս հօդօլմօշ[1] ֆամիլիային. վասն այնորիկ կու տեսնու քաղաքըն զապագայ անհանգըստութիւնը, որ պ՚ունէնար հետ իրենց, այսոր համար հաճեցաւ պչարն ի միջոյ բառնալու եւ զայս երկու գեղն ալ ի պաշֆալըվին քով առնէլու. վասն ալ մեծ հանգըստութեանն. զէրայ Աստուածով, թէ որ առնունք զիրեքնալ նայ պիլանք սիկուրանձիայի մէջ. աղէկ սաս դրացիներ ունենալով բոլոր բոլորման։ Այս է Պատուելի քաղքին կամքըն. վասն այսորիկ ըստրագրեցաւ Պատուելի Ա. Պիրովըն իրեն հրամանոցըն Աղանէրօմն եւ Ա. Սարըսդան իրեն հրամանոցըն Աղաչանէրօմն.

Անկսէնդ. Վարդանի իսիգուցեանցն
փոխանորդ Պիրովի իմ Աղանէրօվս. փոխանորդ
Ելիզաբէդ Քաղքի.
Սարըսդայ
Իսայ Օհանի իմ Աղանէրօվը։„

Բայց երբ Պէթլէնները հոտն առին, թէ Հայք ինչ բանի կ՚աշխատին եւ ինչ խնդիրները ետեւէն ինկեր են, թէ կայսրուհւոյն զինուոր տուեր են, թէ պատգամաւորաց ձեռօք 1200 ոսկի խրկեր են Վիեննա, թէ կը խնդրեն Կարոլոսի Զ.ի արտօնութեանց հրովարտակին վերանորոգութենէն զատ նաեւ ուրիշ արտօնա-

[1] Հունգարերէն է. կը նշանակէ՝ զօրաւոր։

գիր մը, որուն մէջ ըլլայ Եղիսաբեթուպոլսոյ ստացումն, եւ վերջապէս թէ մօրերնին է Հունտորֆ, Էրնյէ գեղերն տէրութենէն առնուլ են, վերջի աստիճանի զայրացան եւ նորոգեցին բողոքնին. աղերսագիր գրեցին Վիեննա եւ պատճառաբանութիւններով ցուցուցին, թէ այն երկիրներն որոնց վրայ խօսք կայ, իրենց ստացուածն է. վասն զի իրենք են Աբաֆի իշխանին օրինաւոր յաջորդներն ու ժառանգները։ Աս բաւական չէ, անձամբ կայսրուհւոյն ոտքն ինկան։

Այս միջանկեալ պարագաներով՝ բնականապէս երկիրներուն ստացման խնդիրն ի կախ մնաց քանի մը տարի։ — Պատճառն, որուն վրայ Պէթլէն գերդաստանը կը յենուր, այն էր որ ինք Աբաֆի գերդաստանին օրինաւոր ժառանգն էր, եւ ըստ հետեւորդի անոր ամէն երկիրներն ու կալուածներն իր գերդաստանին իյնալու էր։ — Իրօք ալ Պաշտպալովցի վերնագիրը կրող Նիկողայոս Աբաֆի եւ Գրիգոր Պէթլէն, Գիւգիւլլէօ գաւառին վերին գաւառակալը, արդէն 1584ին իրարու հետ այնպիսի դաշինք մը դրած էին, որ եթէ իրենցմէ մէկն առանց ժառանգի վախճանի, անոր ամէն երկիրները՝ մէկալին գերդաստանին անցնին։ Եւ այսպէս եղաւ, որ չունենալով Միքայէլ Աբաֆի ժառանգ, ըստ հին գերդաստանական դաշնադրութեան իշխանին երկիրներն անցան իր ամուսնոյն։ — Աբաֆի, ինչպէս յառաջագոյն ալ ըսուեցաւ, մեռաւ ի Վիեննա (1713 փետր. 13ին),

եւ իր ամուսինը Կատարինէ Պէթլէն, հին դաշնագրութեան համեմատ, իբրեւ որբեւարի ժառանգեց զՊաշտպալով՝ Աբաֆիի մէկալ ամէն կալուածներուն հետ։ Վախճանեցաւ 1724ին։

— Բայց հիմայ Պէթլէնեանց պահանջմունքը Աբաֆիի երկիրներուն եւ կալուածներուն վրայ բոլորովին անհիմն էր. չէ թէ միայն անոր համար, վասն զի ամբողջ Դրանսիլուանիա արդէն Աբաֆիի մեռնելէն յառաջ ուղղակի Աւստրիական կայսրութեան ինկած էր, այլ նաեւ անոր համար, վասն զի Աբաֆիի մեռնելէն ետեւ իր ամուսնոյն վրայ մնացած էր 189.965 ֆիորինի պարտք, զոր ջնջելու համար Լէոբոլտոս Ա.ին հետ ըրած դաշնագրութեան համեմատ՝ հրաժարեցաւ Կատարինէ Պէթլէն այն ամէն Աբաֆիի վերաբերեալ երկիրներու իրաւունքէն, որ իրեն վրայ անցած էին՝ իբրեւ ժառանգի. առնելով՝ միայն երկիրներէն եկած եկամուտքը ցկեանս։ Արքունիքը յենլով այս դաշնագրութեան ձեռք դրաւ Աբաֆիի ամէն երկիրներուն վրայ, եւ այսպէս՝ եղաւ աբաֆիեան կալուածոց միահեծան տէր։

Յայտնի է թէ ասով՝ ամէն խնդիր վերջացած էր։

Երբ որ Հայերն իմացան թէ Պէթլէն գերդաստանը անգործ չի կենար, իրենք ալ ուժերնին կրկնապատկեցին եւ աւելի զօրութեամբ շարժելու սկսան։ Պէթլէնեանք՝ տէրութեան հետ դատաստանի բռնուեցան. ու երկու անհաւասար ոսոխ իրարու հետ դիմացէ դիմաց կեցած էին՝

Պաշտպանողի արքունի կալուածոց տէրութեան համար: Հայք բնականապէս եոքինին կողմը բռնեցին. վասն զի մէկ կողմանէ իրենց շահն այնպէս կը պահանջէր, եւ մէկալ կողմանէ լաւ գիտէին որ եթէ մէյ մը դատաստանը որոշէր որ երկիրները Պէթլէնեանց է, Եղիսաբեթուպոլսեցէք այն երկիրներն ընդունելէն ցմիշտ կրնային բերաննին սրբել: Ազգայինք — որչափ կրնանք մակաբերել — այն վարպետութիւնն ալ ըրին, որ արքունեաց երկիրներուն վերատեսուչը վաստըկիլ ուզելով՝ աղերսանօք խնդրեցին իրմէն, որ այս գործքին մէջ իրենց թեր ըլլէ. եւ այս բանիս համար իրեն 40 ոսկի խոստացան: Միեւնոյն միջոցին Պէթլէնեանց գործակալն ալ 60 ոսկի խոստացան այն պայմանաւ որ եթէ արքունիքը դատը վաստըկի, այն գումարն՝ իբրեւ կառաց դրամ իրեն տրուի անպատճառ:

Տեսնենք ասոր նկատմամբ եղածներն ըստ արձանագրին:

"1756 Մայիսի 11ին, խորհուրդ եղեւ Պատուելի դընաճօվըն ի ժամանակի պիրովութեան Աղայ եւ Ա. մելքոնին կաշըարիանցը եւ Պ. Ա. Սարըսդօվն Աղաչայ խաչգօյի Մնբէդրեանց եւ իւր Պ. Աղանեռօվըն, օր բերելով ժամանակն օր Ֆիշգուշը հետ պէդլէն Ֆամիլիային դատասդան պիտոր կաննէն, վասն ի պաշֆալօվի տօմինիումին սէպն. ուրեմն, օր զօր ընդէմ ըլալով մեր քաղքին այս պէդլէնուն բրէդէնզիան[1]

[1] Լատիներէն բառ է. պահանջմունք կը նշանակէ:

պէտք էղաւ որ խնդրինք զԱղաչայ Տիրէքդօրն օր կաննի հասդատ մեր քաղքին քով. եւ ընդրէկ հասարակ քաղքին կամօքն տըված է Ա. Տիրէքդօրին 40 օսգի եւ պաշխայ խօսդաձանք Թագաւորին տիրէքդօրին 60 օսգի ալ որ Աստուած մեղքընալօվ եւտքը օր գընտըվի Ֆիշգուշը զպէդլէնին ֆամիլիան¹ զայս տօմինիումին կողմանէ նայ, զետգի խոսդացածն արպի տըըվի գընտըվէր կամ չի գընտըվէր, որն որ Աստուած մի արասցէ, նայ զխոսդացածն պէտք է որ տըվի տիրէքդօրին:„

Եղածներէն դիւրաւ կրնանք հետեւցընել, թէ այսպիսի պարագաներու մէջ, երկիրներուն ստացման խնդիրը բաւական կնճռեալ վիճակի մէջ մնաւ: Այնպէս որ Հայք, սկսան յոյսերնին կտրել, թէ ալ արքունական երկիրներուն իրենց ձեռքն իյնալն անկարելի է: Եւ ասոր բաւական ալ պատճառ ունէին, վասն զի յայտնապէս առջեւնին կեցած էր մէյ մը Պէթլէն գերդաստանին պահանջմունքը, մէյ մ'ալ — հազիւ թէ շւեդիական ու յաջորդութեան պատերազմները լմնցած էին — նոր սկսած բրուսիական եօթնամեայ պատերազմը, որուն ելքը շատ տարակուսական էր: Ասանկ երկբայական վիճակի մէջ

---

¹ Ինծի կ'երեւայ թէ արձանագրութեան մէջէն բառ մը (մեզ) դուրս մնացած պիտ'որ ըլլայ. եւ ասով իմաստը մթնացած է: Ըստ իս ըլլալու է այսպէս. "օր Աստուած մեզ մեղքընալօվ՝ եւտքը օր գընտըվի Ֆիշգուշը զպէթլէնին ֆամիլիան . . .„ այս ինքն. "Աստուած մեր վրայ մեղքընալով՝ տէրութիւնը (fiscus), երկիրներու նկատմամբ պէթլէնեան գերդաստանը վատըկելէն ետեւ, խոստացած 60 ոսկին, իրեն պարգեւ տանք, իբրեւ կառքիստակ:„ Թէպէտ կը խոստովանիմ, որ ուրիշ իմաստ ալ կրնայ ունենալ, որովհետեւ ամբողջ արձանագրութիւնը մթին կը գտնեմ:

Հարկաւ, ո՛չ տէրութեան լաւագգածութիւնը եւ ո՛չ ալ կայսրուհւոյն բարեսրտութիւնը կրնար զբաղիլ ու մտադիր ըլլալ, ասանկ՝ համեմատութեամբ փոքր ու աննշան խնդիրներու։

Երբ տեսան Եղիսաբեթուպոլսեցիք, որ յոյս չկայ, գոնէ մերձաւոր ատենի մէջ արքունի կալուածներն ստանալու, դրօշակնին փոխեցին. ուրիշ՝ նոր գաղափարի մը ձեռք զարկին։ Մտածեցին, որ եթէ ուրիշ կերպով չէ, գէթ վարձու բռնեն տէրութենէն այն երկիրները. բայց պէթլէններու ձեռքն իյնալու ամենեւին չթողուն, վասն զի ասոր հետեւութիւնն ապագայ ժամանակին համար, շատ մտածելու բան պիտի տար։ Ուստի շուտ մը խորհրդի նստան, եւ որոշեցին որ նորէն Հերմանշդատ երթեցուի։ Պատգամաւորք, հոն, ըստ իրենց իմաստութեանն եւ ըստ ազդեցութեանն զոր Աստուծոյ հոգին իրենց կուտայ, աշխատին հոգւով՝ որ գոնէ այս բանս յաջողցնեն առ այժմ։ Ըլլալի նոր որոշմունքներուն վրայօք քաղաքն իրենց հրահանգ պիտի տայ։

Ահաւասիկ ժողովքին խօսքերը։

"Աստուծոյ ողորմութեամբն 1757 ունվարի 18 էլեզաբեթան խորհուրդ եղաւ Պատուելի Մակիսդրադօմն եւ Պատուելի հասարակօմն վասն ի պաշֆալօվին տօմինիումին թէ արնըվի արէնտայօվ գամարայէն Պ. քաղքին սիպին վրայ. եւ երթալով Պատուելի Աղաչա տէբուդադուններն Սիպինը, պի աշխատին բանին վըրայ. եւ ինչպէս որ Աստուած խրատէ զիրենց հրամանքներն եւ ցըցնու ժամանակն նայ

այնպէս պի կարաւարին եւ անոր գօրայ ալ պի գրվի„։

Եւ որովհետեւ այս միջոցին Մարիամ Թերեզիա, շատ նեղ դիրքի մը մէջ մտած էր, բրուսիացւոց դէմ մղած պատերազմներուն պատճառաւը, անոր համար Վիեննայէն — ուր ընդհանրապէս ճանչցուած էր թէ Դրանսիլուանիոյ Հայք, բաւական լաւ դրամական վիճակի մէջ ու առատաձեռն են — ինչպէս ուրիշ քաղաքաց՝ անանկ ալ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան հրաւէր մ'եկաւ, որ ինքն ալ հասարակաց նեղութեան մէջ՝ օգնութիւն ըլլայ տէրութեան։ Գրուած թղթին մէջ, թէպէտ բոլորովին որոշ բան մը չկար, թէ ինչ կերպով օգնեն քաղաքացիք Կայսրուհւոյն, բայց եւ այնպէս տէրութեան առենադպրին նամակը կը յայտնէր իւր փափաքը թէ Հայք գոնէ կէս վաշտ մը ձիաւոր հոգան ու խրկեն 'վեր։ Ասոնք թէպէտ միշտ առիթ կը փնտռէին արքունեաց աչքը մտնելու, եւ իրենց վրայ խօսիլ տալու, բայց որչափ գրութիւններէն կը տեսնենք, այս միջոցիս ի վիճակի չէին, այն կէս վաշտ ձիաւորը պատրաստելու։ Ուստի եւ ընդհանուր ժողովք ընելով, որոշեցին որ — "տեսնելով հասարակութիւնը իւր աղքատութիւնը„ — 500 ոսկի իրական դրամ քովէ քով բերեն ու տէրութեան առենադպրին՝ Գաբրիէլ Պէթլէնին գրեն թէ, ուր եւ որուն ձեռքը կ'ուզէ որ յիշեալ օգնութիւնը յանձնուի։ Ահա որոշումը։

"Աստուծոյ ողորմութեամբն, 1757 ուն-

վարի 18 էլեզաբեդան խորհուրդ արաւ պատուելի Ա. Պիրօմի պատուելի Աղանէրօվ, նմանապէս պատուելի Ա. Սարըսդան պատուելի Աղաչաներօվ, պատուելի Ա. Տերէքդօրին Ա. Դօլնօյի Եանօշին դիմաձէն, վասն այն գրին, որ եկաւ պատուելի գումբանիային պէջէն, գանձալարխուսէն, պէդլէն կապօրէն, թէ մինք ալ մեր կարօղութեանը գօրայ ընկերութիւն տանք մեր թագուհոյն, ունենալով ծէծէլութիւնն հետ Բրուսին[1]: Որ բանին վերայ խորհուրդ անէլօվ ռէզօլվադ[2] եղաւ պատուելի Հասարակն թէ տանք մինք ալ 500 ոսգի այսինքն հինկ հարուր. եւ այս նաղտ ստակ պի տրվի. եւ այսպէս պի գրվի գիր պէջն, գանձալարխուսին այսինքն պէդլէն կապօրին, որ ինչ տեղ ասիկնօվադ[3] անէ Թագաւորն[4] թէ տանք զըդակըն, նայ հոն վար պի դընինք զըդակն. եւ զայս պի տրվի հասարակ գումբանիայով: Եւ աս ալ գիտացվի որ գանձալարխուսին գիրն կու յայտնէ գօմբանիային թէ մազար կէս գումբանիայի ձիաւոր տայինք. բայց տեսնելով պատուելի գումբանիան զիրեն աղքատութիւնըն ռէզօլվադ եղաւ միայն վերոյ գրեալ 500 ոսգին տալու:„

Ասոր վրայ անցաւ տարիէ մ'աւելի ու Եղիսաբեթուպոլսոյ Հայք յուսահատութեան մէջ

---

[1] Իմաստն է. Մեր թագուհին Բրուսիայի հետ պատերազմ ունենալով՝ օգնենք իրեն:

[2] Resolvo, լատ. է. որոշել, սահմանել:

[3] Assigner, կարգել, նշանակել, ցուցընել:

[4] Այս բառը վերն ալ եկաւ. բայց արքայ, թագաւոր չի նշանակեր, այլ պարզապէս՝ բարձրագոյն տէր, իշխան, պարոն եւ այլն:

կեցած ատենը թէ խնդրոյ տակ եղած կալուածներուն բանն ի՛նչ պիտի ըլլայ․ մէյ մ'ալ Վիեննայէն Ցովհ. Գօլնոյի՝ արքունեաց դիւանատան վերատեսչին ստորագրութեամբը նամակ մը կ'ընդունին, որուն մէջ ասիկայ կը ծանուցանէ իրենց թէ Գաբրիէլ Պէթլէն՝ իրեն նամակով մը յայտնած է, թէ արքունեաց բոլոր երկիրները գներ է կայսրուհիէն։ — Այս երկիրներուն մէջ էր նաեւ Եղիսաբեթուպոլիս քաղքին մօծ-նիւ—մ. ա՛ն, որուն համար Հայք այնչափ տարիներէ ի վեր քալած, աշխատած ու քրտնած էին, որ կերպով մը ձեռք անցընեն։

Առջեւնիս կեցած կտրուկ ու որոշ արձանագրութենէն յայտնապէս կը տեսնենք, թէ Պէթլէն ատենադպիրը — ինչպէս Գօլնոյի կ'իմացընէ — Աբաֆիի անուան տակ ծանօթ Գիւգիւլլէօյի կալուածները գնած է։ — Եղածն անըմբռնելի է։ Եւ որովհետեւ նամակները չկան մէջ տեղը, մտածել կու տայ մեզի, որ արդեօք թերիմացութիւն չկա՞յ բանին մէջ. եւ կամ արդեօք պատրուակ մը չէ՞ այս բանս, որպէս զի ասով Հայերն աւելի շփոթութեան ու յուսահատութեան մէջ ձգէ։ — Մեկնութիւն մ'որ այս արտաքոյ կարգի երեւութին կրնայինք տալ, — ենթադրելով միշտ, որ գրուածն իրօք եղած է, — այն է որ Մարիամ Թերեզիա վերջին աստիճանի դրամական նեղութեան մէջ պէտք է որ մտած ըլլայ եւ այսպէս՝ իր պաշտօնէին ձեռքովն անուղղակի կերպով այն երկիրները Հայոց ծախել ուզած ըլլայ։

Արքունի դիւանատան վերատեսուչն ան ալ կը ծանուցանէ, — ի մեծ զարմանս Եղիսաբեթուպոլսեցւոց՝ — որ հիմայ է ամենէն յարմար ատենն, որ երկիրները ցկեանս գնուելով՝ քաղքին վրայ անցուին։ Ուստի եւ ժողովին քաղաքացիք ու խորհուրդ ընեն տեսնելու համար, թէ ո՞րչափ ստակ կրնան քովէ քով բերել ու այն երկիրները գնել։ Որչափ կարելի է՝ շուտով պատգամաւորութիւն մըն ալ հասցընեն Վիեննա. եւ բանն ընեն լմընցընեն, որպէս զի թէ՛ խաղաղութեան մէջ մնան եւ թէ՛ իրենց ապագան ապահովցընեն։

Աս լրին վրայ հասարակութիւնն, իբրեւ թէ դիւթական գաւազանով մը զարնուած, անմիջապէս ժողովուեցաւ եւ սկսաւ մտածել թէ ինչ ընելու է։ Խորհրդականք տեսնելով թէ ամէն բանէ աւելի ստակ պէտք է, եւ իրենք ալ պատրաստ դրամ չունին, որոշեցին որ քաղքին վրայ փոխ առնուն։ Բայց աւելի ապահով ըլլալու համար, միաձայն հաստատուեցաւ, որ մինչեւ որ այն գումարը տեղէ մը գտնեն, իւրաքանչիւր քաղաքացի իւր կարողութեանն համեմատ, քաղքին փոխ ստակ տայ շահով։ Եւ ամէն քաղաքացի, այն գումարն որ իրեն վրայ կ՚իյնայ, մինչեւ Օգոստոսի վերջը պատրաստէ. որպէս զի՝ ի դիպուածի որ արքունեաց կալուածներուն գնումն յաջողի, բոլոր գումարը պատրաստ ըլլայ։ — Քաղքին ընկերութեանց դրամներուն նկատմամբ — արդէն սոյն տարւոյն Ապրիլի 4ին որոշուած էր որ քաղքին հասարա-

կութիւնը զանոնք շահու առնու, — Հիմայ որոշուեցաւ որ մասնաւորաց քով դրուած ստակներն ալ անոնցմէ առնուն ընկերութեանց վերատեսուչներն եւ Օգոստոսի 31ին անոնցմով Բէշլթա քաղաքը գնուին։ Բայց ասկէ հրաման խրկուեցաւ մասնաւորապէս Ս. Ստեփանոսի, Ս. Գրիգորի Լուսաւորչին, Ս. Յովակիմայ եւ Աննայի ընկերութիւններուն, դարձեալ՝ Յիսուսի եւ Ս. Երրորդութեան եղբայրութեանց, մաշկագործաց եւ խաղախորդաց ընկերութիւններուն, որ ամէն մէկն իր պարտաւորութիւնը կատարէ եւ մասնաւորաց քովն եղած ստակները ժողվելով՝ զանոնք պատրաստ բռնէ։

Երբ որ աս լմնցաւ, սկսաւ հասարակութիւնը բաժանումն (repartitio) ընել, գրի անցընելով՝ թէ իւրաքանչիւր քաղաքացի ո՛րչափ տալու կամ ստորագրելու է արքունի կալուածոց վաճառման համար։ Ամէն մէկ քաղաքացի պիտ՚որ ընդունէր իւր տուած ստակին համար ապահովագրութեան թուղթ մը, եւ հարիւրին 6% շահ։ — Սրտաշարժ են ստուգիւ ժողովքին այս վերջին խօսքերը. "Մեր յաջորդներն այս արձանագրութիւնը կարդալով եւ տեսնելով թէ ո՛րոնք պատճառ եղած են քաղքին ու երկրին կալուածոց մշտնջենաւոր հիմնարկութեանն, եւ իմանալով որ իրենց կարողութեան չափ, թէ՛ խելքով, թէ՛ աշխատանքով ու թէ՛ ստակով եռեւէ ինկած են հասարակութեան օգնութիւն մատուցանելու, ըսեն. Աստուած իրենց հոգւոյն ողորմի։ Եւ իրենք ալ իրենց յաջորդաց վրայ նկատ-

մունք ունենալով, աշխատին սիրով ու միաբանութեամբ քաղաքն ու կալուածները — իրենց առաւել շահուն համար — լաւ վիճակի մէջ պահելու, վայելչացընելու ու վայելեցընելու եւ Աստուծոյ փառք տալու: Ասկից զատ՝ աս բանիս պատճառ եղողներն յիշելով՝ ջանան սիրով ու միամտութեամբ սրտի ապրելու, քաղքին գործքերը յառաջ տանելու. օրինակ առնելով իրենց նախնիքն, եւ համոզուելով՝ որ այն միջոցին իրաւցընէ հաւատք ու միամտութիւն կեցեր էր, որ ասանկ մեծ բանի ձեռք զարկեր են մեր նախնիքն օտար երկրի մէջ. ուրեմն մենք ալ հետեւինք անոնց, վասն զի ստեղծողն մեզի ալ պիտի օգնէ, ինչպէս անոնց օգներ է:„

Կը գտնենք հոս այս ընդհանուր ժողովոյն արձանագրութիւնն, այնպէս ինչպէս անցուած է Սպիտակ Գրքին 142—147 էջերուն, մէջ:

"Այ ողորմութեամբն 1758 ապրիլ 15 էլեզաբէդան:

"Պատճառ գրոյս այս է, որ գալով գիրմն Աղաչայ Տէրէքդօրէն Պօլնոյի եանօշէն, որին մէջ կու գտվէր մէկ գիրմն, որն որ կու գրէ կրօֆ պէգլէն կապօրը, տէրէգդօրին թէ ուժէ[1] ընդրէկ Ֆիշգալիշ եօսակներն գնիլէ թադուհոյն մօտէն, որ եօսակնուն մէջ կու գտվի մեր քաղաքն, եւ ի պաշֆալօվին տօմինիումն. որին վրայ շատ կու քալիլինք ու կու քալինք թէ գնտվէինք

[1] Այս հինգ բառերն այնպէս ինչպէս եռեւէ եռեւ կեցած են, կը նշանակեն. արդէն ամբողջ արքունական երկիրները գնած է:

եւ հանգստութեան մէջ մնայինք, մենք եւ մեր տղաքն։ Նայ վերոյգրեալ Աղաչայ Տէրէգդօրն առաջ տալով[1] մեզի, թէ հիմպիկ է ժամանակն իւրիւգիուշէն[2] ինչպատիլալուիդ մեր Քաղքոյն եւ Տօմինիումօյն. ասոր համար քաղվինք եւ խորհուրդ անինք եւ տեսնունք թէ ինչխտար ըսդակ պի կարէնանք ունենալու եւ քանինչ թէզ տէքուդադուշներ ընտրինք եւ պէջն խրկինք, որ հօն հասդատ բան կօճկըվի.[3] եւ այսպէս խաղաղութեան մէջ մնանք, մինք եւ մեր բօսդերիդաշն։ — Որ բանին սէպն քաղվելով բոլոր հասարակն եւ խորհուրդ անելով, տեսանք թէ պէտք է որ բանի խլվինք, ու մէմն[4] զաղատութիւնը գնտվինք. բայց տեսնելով Պատուելի հասարակն թէ շատ ըսդակ պէտք է, հասդատեցինք, թէ ինչխտար ըսդակ որ գտնունք շահու մեր քաղքին վրայ, նայ պ'ի առնունք։ Բայց որ ալ սիկուր ըլանք մագար մէկ սումայեօվմն, ունօյ վօդջյ[5] հասդատեցինք, թէ մինչեւ ոզկայ դիհէ շահու սդակ առնելն, մենք ամենեքեանս ունենանք շահու տալու մեր քաղքին ըսդակ. եւ այս ամէն մէկն իրեն կարօղութեանն գօրայ. որ սդըկին սէպն այնպէս ույմիշվեցանք[6], թէ հի որ մէկին վրայ ինչօր ըլնէր, նայ ամէն մէկն պարտ

---

[1] Յայտնելով, ծանուցանելով։

[2] Örökösen հունգարերէն է. կը նշանակէ՝ ցմիշտ, տեւողապէս, մշտնջենաւորապէս։

[3] Կոճկել՝ Տրանսիլուանիայի Հայոց լեզուաւը, կը նշանակէ ընել, լմնցընել, բանի մը կապել, վերջացընել։

[4] Մէյ մը։

[5] Լատիներէն է. միաձայն հաւանութեամբ, մէկ ձայնով։

[6] Մտածեցինք, խորհեցանք։

*ունէնայ, որ այս սդակն առանց միոյ պատճառի. Աստուծոյ ողորմութեամբն գալ բէշդին օգոսդոսի վերջն հատիր ունէնայ. որ Աստուծոյ ողորմութեամբն այնպէս բէրէր. որնիաթի համըրվինք եւ զտօմինիումն գնտվէինք, նայ զսդակն հատիր ունէնանք: Նմանապէս վասն գօնկրէկաձիայնուն ըսդկնուն, որպէս ասոր առաջ ապրելի 4ին խորհուրդ եղաւ. թէ սդակներն գօնկրէկաձիանունը քաղքի բըրվադնուն[1] մօտէն որ Պատուելի քաղաքն առնու զիրենք շահու, նայ հիմիկալ այնպէս հասդատվեցաւ, թէ զայս ըսդկներն ունէնան գօնկրէկաձիանուն տէրէգդօրներն քաղելու բրիվադնուն մօտէն ուրուխ կու գտվին, որ այս ըսդակներն ալ վերոյգրեալ դէրմինին այսինքն գալ օգոսդոսի վերջն բէշդն հատիր ըլան, եւ տրվեցաւ հրաման Պատուելի Հասարակէն Նօմինանդէր[2] սըբոյն ըսթեփաննոսի գօնկրէկաձիային տէրէգդօրին, սըբոյ գրիգորի լուսաւորչայ, սըբոց օվակիմայ եւ Աննայի. Յիսուսի, սուրբ երրորդութեան այսինքն կորջորացն[3] եղբայրութեանն Թուքչոց[4] եւ Սուրուկչոց[5] պրասդավաներուն, որ դարտ ունէնան, եւ ամէն մէկն զիրեն պարտականութիւնն անէ զսդըկներն քաղէլով եւ հատիր ունէնալով: Աստուծոյ ողորմութեամբն այս լմնալով կու սկսի Պատուելի հասարակն զուէբարձիան[6] անէլու գրվէլով հոս այլ վար նօմինանդէր, թէ ո՛ր ա-*

---

1 = Բրիվադ, առանձնական, սոսկական:
2 Ցանուանէ:
3 Կորիճ, երիտասարդ:
4 Մուշտակագործ. — պրասդավա = ընկերութիւն:
5 Խաղախորդ:
6 Բաշխումն, բաժանումն:

ղաչան կամ քաղքըցին ինչխատր ըսդակ կուտայ Տօմինիումին սէպին վրայ Պատուելի Էլիզաբէդ Քաղքին շահու, տարեն գլօխ հարրի վեցօմն. եւ ասոր ետեւանցալ մեր բօսդէրիդաշն[1] տեսնելով մեր բրօդուգոլումէն, թէ որոնք պատճառ եղիլեն զՊատուելի Քաղաքն նաեւ զտօմինիումն իւրիուգիուչէն ֆուստադօվադ անէլու[2]. եւ որքան կարողութիւններն բերիլէ. թէ խելքով թէ աշխատանքով ու թէ ըսդկօվ զՊատուելի հասարակն ընկէրէլու[3], պատճառ եղօղնուն ողորմիս տան եւ իրենց բօսդէրիդաշին վրայ ռէֆլէկձիայ[4] ունենան. նաեւ ճահդ անին սիրով միամբրտութեամբ ըզՊատուելի քաղաքն, նաեւ զտօմինիումն վասն իւրեանց շահին ին շդանդէ[5] բընէլու, վայելցնելու եւ աստուծոյ փառք տալու: Նաեւ զՊատճառ եղօղներն աստուած ողորմի հոգոցնուն ասելով, յիշելու. եւ այսպէս իրենք ալ ջանան սիրով եւ միամտութեամբ ապրէլու, զՊատուելի հասարակին բանը սիրով առաջ տանէլու, օրինակ արնէլով իրենց նախնեացն մօտէն. ճանչնալով թէ հաւատայ սէր ու միամտութիւն կեցիլէ, որ այսպէս մեծ բանի լիվիլին մեր նախնիքն օտար երկրի մէջ: Նայ մինք ալ հետեւինք իրենց զէրայ սդեղծօղն պի ընկերէ զմեզալ, որպէս զմեր նախնիքն ընկէրիլէ:„

---

[1] Յաջորդութիւն, թոռներ:

[2] Այսինքն՝ արքունական կալուածոց տեւողապէս, մշանջենապէս հիմը դնելու:

[3] Այսինքն՝ Պ. հասարակութեան ձեռնտու ըլլալու:

[4] Եւ իրենց յաջորդութեանը վրայ նկատմունք ունենան:

[5] Instans, հաստատուն, զօրաւոր:

Կ'աւելցընեմ, ահա, այն աղաներուն, աղաչաներուն ու հասարակ քաղաքացւոց անուններն. որոնց՝ հասարակութիւնը որոշած էր թէ իւրաքանչիւր ոք ինչչափ գումար պիտի ստորագրէ երկիրներուն գնման:

"Եւ այս կու սկսինք զուէքարձիան, որպէս կու երեւնայ անքովլի[1] երեսին վրայ գրած այսինքն

| | |
|---|---|
| Պատուելի Աղաչայ Պիրոմ Աղայ Անկոէնտ Աղաչայ Մանուկի խոճգուցեանց . . . . | 500 |
| Ա. Ղազար օհաննեանց . . . . . . . . . | 250 |
| " Թուման Զատիկեանց . . . . . . . . | 250 |
| " Խնկանոս Ամիրայի . . . . . . . . . | 1000 |
| " Լուսիկ Ամիրայի . . . . . . . . . | 800 |
| " Խնկանոս հանգօյի . . . . . . . . . | 1000 |
| " Պետրոս հանգօյի . . . . . . . . . | 800 |
| " Թորոս ունանի, այսինքն դիուրիուգ . . . | 1500 |
| " Սարգիս ունանի, այսինքն դիուրիուգ . . | 150 |
| " Մելքոն Կաչքարի . . . . . . . . . | 300 |
| " Օհան տէր Ակոբի . . . . . . . . . | 1000 |
| dto ուէքարձիայէն դուս կամօք այլվի շահու . | 1500 |
| " Ասվատուր վիգօլի . . . . . . . . . | 500 |
| " Վարդան եօլպէյի . . . . . . . . . | 800 |
| " Զագարիաս պետրոս եւ տօնիկ գօշոդանի . | 100 |
| " Միքայէլ օվանէս եւ վարդան վարդանի խոճգուցեանց . . . . . . . . . . | 300 |
| " Մանուկ խոճգուցեանց հետ որդեկացն, այսինքն Նիգուլայ եւ սիլվէստր . . . . | 600 |
| " Մարտիրոս Ա. Մանուկի խոճգուցեանց . . | 300 |
| " Գրիգոր Սնքէդրեանց . . . . . . . . | 100 |
| " Զատիկ Ա. Մանուկի խոճգուցեանց . . . | 300 |
| Սումայ | 12.050 |

[1] Մէկալ, անդիի:

Առատածոյ ողորմութեամբն դրամալագում 12.050

Ա. Մարտիրոս Գոշգանի . . . . . . . . 1000

„ Պօտէր վարդանի խոխոնցեանց . . . . . 250

„ Լուսիկ Թորոսի . . . . . . . . . 150

„ Լուսիկ եւ Ասվատուր օսգերիչեանց . . . 250

„ Անտոն Նիգօչի խոխոնցենց հետ աղբօրն Գրի-
գորին . . . . . . . . . . . . 1500

dto ւէրարծիայէն դուս կամաւ . . . . . 1000

„ Ասվատուր Քէլի . . . . . . . . . 250

„ Մարտիրոս Բաղրուպանի հետ որդիգացն . 1000

dto ւէրարծիայէն դուս կամաւ . . . . . 500

„ Ակոբ անբէգրի . . . . . . . . . 400

„ Տօնիկ Ասվատրի . . . . . . . . . 600

„ Պօտէր Վարդիկի . . . . . . . . . 500

„ Պօտէր օսգերիչի հետ աղբրտացն . . . 100

„ Խաչատուր խաչիկի Մամու . . . . . . 100

„ Դավիդ պիլուչգայի . . . . . . . 150

„ Մկրտիչ տօպլի . . . . . . . . . 300

„ Նիկօլ Ճիրախի . . . . . . . . . 1000

„ Զատիկ Թորոսի . . . . . . . . . 500

„ Սիմոն խաչերեսի Գարտէպովեանց հետ աղբըր-
տացն . . . . . . . . . . . . 150

„ Սարգիս Թորոսի . . . . . . . . . 120

„ Գրիգոր Աբրահամի խոնթշիքարեանց . . . 200

„ Արութիւն եւ սիմոն Միդգօյի Գարդէպովեանց 100

„ Լուսիկ օվանէս եւ դօտէրաչ օսգերիչեանց . 1000

„ Մանուկ դավիդի շիմիլովցոնց . . . . . 300

„ Ուսէփ շիմիլովցու . . . . . . . . 400

„ Մկրտիչ շիմիլովցու . . . . . . . . 400

„ Լուսիկ շիմիլօվցու . . . . . . . . 400

„ Նիկօլ շիմիլօվցու . . . . . . . . 250

„ Իսայ օհանի . . . . . . . . . . 250

„ Խաչգօյ Անբէգրեանց հետ որդիկացն . . . 1500

„ Օվանէս Ա. խաչգօյի անբէգրեանց . . . 400

„ Լուսիկ Անգովիչի . . . . . . . . 200

Սումայ 27.270

| | | |
|---|---|---|
| | Աստուծոյ ողորմութեամբն դրանալաղում | 27.270 |
| Ա. | Սհակ օհանի | 100 |
| " | Վարդան լուսիկի խասօյեանց հետ աղբրտացն | 1200 |
| " | Գրիգոր Մեղտեսօնց հետ աղբրտացն | 600 |
| " | Խաչատուր պօրի | 100 |
| " | Եագուպաշ սնգովիչի | 100 |
| ". | Հ. Ա. Օվանէսին իլախին տղաքն | 100 |
| Ա. | Մարտիրոս պօշնախի հետ աղբրտացն | 100 |
| " | Գրիգոր սհակի ագօնց | 600 |
| " | Եկեղեցքանը Աղայ Տօնիկ տիագօնեանց | 3000 |
| " | Մանուկ Գրիգոր հետ աղբօրն համգօյին | 200 |
| " | Անկսէնտ մուրատն | 200 |
| " | Աւաք պօղոսի | 100 |
| " | Գրիգորի Ասվատրի | 100 |
| " | Ասվատուր դրուջիկի | 100 |
| " | Ակոբչայ Սհակի ագօնց | 100 |
| " | Օվանէս Գաբտէպովի | 100 |
| " | Խաչգոյ դրուջիկի | 50 |
| " | Նասդուր Սնբէդրի | 50 |
| " | Լուսիկ Սհակի ագօնց | 50 |
| " | Մինաս մխիթարի | 50 |
| " | Օվանէս Թուքչի | 50 |
| " | Մադեաշ պիաթայի | 50 |
| " | Գրիգոր Էտէլպէյի | 50 |
| " | Տօնիկ Գրբիդի | 50 |
| " | Մկրտիչ Գրբիդի | 50 |
| " | Վարդէվան պէկիջանի | 50 |
| " | Լուգաջ ըսթեփանի պապանց | 50 |
| " | Ջատիկ մէշգօյի | 50 |
| " | Մանուկ պիլուշգայի | 50 |
| " | Նիկօլ Վարդիկի | 50 |
| " | Եղիայի Անկսէնդի Գադնսուսի | 25 |
| " | Նիկօլ կօլօրիկ | 10 |
| " | Ջատիկ մարգօյի բադրուպանի | 25 |
| " | Անտոնի ընպէյի | 25 |
| | Սումայ | 34.855 |

| | |
|---|---|
| Աստուծոյ ողորմութեամբն դրանոյաթում | 34.855 |
| Ա. Խաչատուր բէրաիան | 25 |
| „ Գրիգոր վարդիկի | 25 |
| „ Անդրէաս Վառոլոզի | 25 |
| „ Տօնիկ Սնգովիչի | 10 |
| „ Պետէր գնտովի | 25 |
| „ Մինաս բդրաշգոյի | 25 |
| „ Ծարուկ մէշգոյի | 25 |
| „ Նաստուր Սնգովիչի | 25 |
| „ Յագուպ Սնգովիչի | 25 |
| „ Վարդերես մանուկի անտէնի | 50 |
| „ Ասվատուր Մադիկ | 10 |
| „ Մալխաս բդրաշգոյի | 10 |
| „ Գրիգոր օվանէսի դրուջիկեանց | 30 |
| „ Ըսթեփանի պօշնախի | 20 |
| „ Սագոյ դրադաճու | 10 |
| „ Լուսիկ վարդերեսի զադրիկեանց | 10 |
| „ Դագէս բոդոզգիի | 10 |
| „ Պետրոս գօշոդանի | 25 |
| „ Գալուստ պօշնախի | 25 |
| „ Լուսիկ ճումէրտի | 10 |
| „ Ակոբչա տայպուգադի | 10 |
| „ Նասդուր կօշկար նիկօշի | 20 |
| „ Օվանէս գալուստի | 10 |
| „ Նիկօլ մժարի | 15 |
| „ Խաչիկ պիրով | 10 |
| Աստուծով Սումայ Սումիմ | 35.340 |

Հասարակութիւնը լաւ համարեցաւ, որ իրին աւելի ապահովութեանը համար, այս անուանց ցանկին տակը ստորագրութիւննին դնեն. Նախ՝ դատաւորը, յանուն հասարակութեան, իւր քարտուղարովը. երկրորդ՝ հարիւրոց ժողովին ճարտարախօսն ու իւր նոտարն. ինչպէս նաեւ երրորդ՝ վաճառականաց ընկերութեան նախագահն

ու իւր քարտուղարը։ Ասոնք հասարակութեան փափաքն օրինաւոր համարելով, ինչպէս վարը պիտ՚որ տեսնենք՝ անուննին ստորագրեցին։

"Այս ողորմութեամբն լմնալով ուէբարձիան ուխտվեցաւ պատուելի հասարակին, որ վասն այլ մեծ սիկուրանձիայի բանիս, շուշգրիպովադ[1] ըլլայ Պ. Ա. պիրոմն Պ. Մակիսդրադին անընոմն. Նաեւ Պ. Ա. Նօդարիուշն։ Պ. Աղաչայ Սուդաշն հետ Պատուելի սուդային եւ Նօդարիուշին։ Պատուելի Ա. Սարըսդան հետ իրեն հրամանոցն Նօդարիուշին։"

"Անտոնիոս Մանուկի Խաչատուրեանց
պիրով էլեզաբէդ քաղաքին հետ իմ երդվեալ
պատուելի Աղանէրոմն m. p.

Աւետոր Վիգօլեանց
Նոդարիուշ էլեզաբէդ քաղաքին եւ Պ. Մակիսդրադին m. p.

Օհան տէր Ալոջի
Սուդաշ էլեզաբէդ քաղաքին իմ էրֆնցաց
Պատուելի Սուդայեօմն m. p.

Լուսիկ Ա. Աճրայի Տոնիկեանց
Նոդարիուշ Պ. սուդային m. p.

Խաչգոյ Սոբերդեանց
Սարսդայ պազըկնու Պ. Էլիզաբէդ քաղաքիս

Ջատիկ Թորոսեանց
Նոդարիուս Պ. Ա. Սարսդին։" m. p.

Այս անուանց ցանկէն կրնանք տեսնել թէ ինչպիսի ազգասիրութեան ոգւով վառուած էին

[1] Subscribo. ստորագրել. անունը տակը գրել։

մեր պապերն. ինչ միութեան հոգի կար մէջերնին, որ ոտուընին մէյ մը կռուանի դնելէն ետեւ, զանիկայ չէ թէ միայն չթողուն, չէ թէ միայն ամէն տեսակ զոհողութիւն ընելով՝ զանիկայ անխախտ պահեն. հապա նաեւ զարգացընեն եւ աճեցընեն։ — Քառասունուութը ժամու միջոցի մէջ 35.000 Փիորին քովէ քով բերելով, գործնականապէս ցուցուցին իրենց յաջորդաց, թէ ամէն դրամական միջոց, ամէն տեսակ զոհ, մտաց ու մարմնոյ ամէն աշխատութիւն յանձն կ՚առնուն, որպէս զի իրենց միութիւնը ցուցընեն. եւ մանաւանդ իրենց զաւկըներուն ու թոռներուն ապագայ հանգստութիւնն ու երջանկութիւնն ապահովցընեն։

Այս պատահեցաւ 1758 Ապր. 15ին։ — Երկու օր ետքը նորէն ժողովք ժողովեց հասարակութիւնը. 1. պատգամաւորաց համար. թէ Վիեննա գացողներն ինչ ընելու են, ինչպէս գործելու են. եւ 2. թէ գնացող պատգամաւորներն ու իրենց ծառաներն ինչ վարձք պիտի ընդունին քաղքին հասարակութենէն։ — Առաջին կէտին նկատմամբ սահմանուեցաւ միաբերան, որ քաղքին դատաւորն Ա. Աւքսենտիոս Խսիգուցեան, եւ քարտուղարն՝ Աստուածատուր Վիգոլեան, որ հոգին էր ամէն գործողութիւններուն, երթան պատգամաւորութեամբ Վիեննա։ Թէ ամէն բան, ամէն միջոց գործածեն. որչափ ըլլայ՝ թող ըլլայ գինը երկիրներուն, գնեն բոլորն ալ, իրենց յատուկ կալուածներովն հանդերձ. այսինքն. Պաշտպալովը, Հունտօրֆը,

Էրնյէն, Ոսյֆոլուն եւ Ռուտայլը: — Եւ որովհետեւ քաղքին ծախքովը պիտ'որ երթան եւ անոր հաշուին պիտ'որ ապրին ի Վիեննա, անոր համար բոլոր զօրութեամբ աշխատին այս բանիս: Զիրենք կը զգուշացընէ քաղաքն, ու վրանին պարտք կը դնէ, որ ուրիշ բանի չխլուին. մանաւանդ չըլլայ թէ — արքունի կալուածներուն պատրուակաւ — իրենց համար յատուկ երկիր գնեն: Դարձեալ՝ վերոյիշեալ երկիրներուն գնմանէն զատ ուրիշ բանի մէջ չմտնեն, որ մանաւանդ վաճառականութեան օրինաց դէմ ըլլայ: Եւ եթէ այնպիսի մասնաւոր ու իրենց անձին յատուկ գործքի մը ձեռք զարնեն, անիկայ այնպիսի բան մ'ըլլայ՝ որ հասարակութեան գլուխն ամօթ չբերէ: Բայց մէկալ կողմանէ ազնուականութեան թուղթ ընդունելու, կամ ուրիշ նմանօրինակ բանի մը ետեւէ կրնան իյնալ, որ քաղքին իրաւանց դպչող չըլլայ: Եւ Աստուած տայ, որ այս բանն իրենց յաջողի, վասն զի հասարակութիւնն ասանկ բաներու հակառակ չէ: — 2. Իրենց ծառայութեան ու վարձքին նկատմամբ որոշուեցաւ որ նոյնը չորս ամսուան տեւողութիւն ունենայ: Ամէն մէկ պատգամաւոր պիտ'որ ընդունէր, ամիսը 100 հունգարական ֆիորին, եւ ամբողջ հագստի մը համար հարկաւոր բարակ չուխայ: — Ի դիպուածի որ չկարենան գործքերնին չորս ամսուան միջոցին մէջ լմնցընել, այն ատեն՝ հրաման տրուեցաւ իրենց աւելի նստելու ի Վիեննա. ու պիտ'որ ընդունէին ամէն մէկ ամսուան համար հարիւրա-

կան ֆիորին։ Ճամբուն ծախքը, Վիեննա կենալը, հոն ապրիլը, կերակրեղէնն եւ այլն, քաղքին արկղէն պիտ՚որ ըլլար։ Իսկ եթէ չորս ամսուան միջոցէն յառաջ գործքերնին լմընցընէին, որոշուած 400 ֆիորին աշխատութեան վարձքը պիտ՚որ ընդունէին։ — Այն ալ որոշուեցաւ որ Ճամբորդութիւննին ինչ կերպով ընեն։ Գրիգոր Ագոնց, 100 ֆիորինով, զիրենք իւր կառքովը մինչեւ Բէշթա պիտ՚որ տանէր։ Ծառայ մըն ալ տրուեցաւ պատգամաւորաց, Զատիկ Պօղոսեան։ Ասիկայ իրենց հետ Վիեննա պիտ՚որ երթար եւ իրենց ամէն հարկաւոր ծառայութիւնները պիտի ընէր։ Այս ծառայութեան համար պիտ՚որ ընդունէր քաղքէն վեց ոսկի ու զոյգ մը կօշիկ։ Եթէ հարկ ըլլար հոն աւելի կենալու, այն ատեն ամէն մէկ ամսուան համար պիտ՚որ ընդունէր մէկ ու կէս ոսկի։

Ասով ժողովքը գոցուեցաւ։ Ժողովականք նորընտիր պատգամաւորաց վրայ Աստուծոյ օրհնութիւնը խնդրեցին, ըսելով թէ, Շնորհաւոր ըլլայ. եւ Աստուած տայ, որ մեր սրտովը քալէք. բարով երթաք ու բարով դառնաք։

Լսենք այս ամէն եղածները ժամանակակից արձանագրին բերնէն։

“Աստուծոյ ողորմութեամբն 1758 Ապրիլի 17ին էլեզաբեդան. խորհուրդ եղաւ բոլոր հասարակոյն վասն տէբուդադուշնուն, որոնք պատուելի հասարակըն կու ընտրէ որ երթան պէջն. վասն տօմինիումին. նայ այնպէս հաստատվեցաւ որ երթան եւ աստուծոյ ողորմութեամբն աշխա-

*տին որքան հնար է, որ կարենան գնտըվելու մեր քաղքին սէպին վրայ քանով որ ըլայ նայ զի-պաշֆալըվին տօմինիումն. այսինքն զիպաշֆալըմն, հունտօրֆը, երնան, նօվուլ եւ զըօնտօլան. եւ այս-պիսի գօնտիձիայօվ, որ այս Պ. Աղաչայ տէբու-դադուշներն, իրենց հրամանոցն ընրէգ ուժոմն[1] աշխատին միայն այս բանիս վրայ, որովհետեւ Պատուելի քաղքին խարճոմն եւ պաշխըշներոմն պիտոր քալին եւ ասկեց դուս հախ ալ կու տայ Պ. քաղաք իրենց հրամանոցն. որ հախն հոս այլ վար պի գրվի։ Վասն այսորիկ ոզկայ բանի չի մօտիկնան, մանաւանդ եօսակ[2], ատուկ, այս տօմինիումէն սին օլօդ[3], իրենց հրամանոցն չի գնին եւ ոչ օզկայ եօսակ այս երկրիս մէջ չի գնին որ ուրայ չիլայ[4] Պ. քաղքին։ Նմանապէս ասոր վերաեալ պարտ ունենան. որ եօսակէն դուս օզ-կայ բանալ սօլիձիդալուիդ[5] չի անին, մանաւանդ գոմերձիումին[6] դէմ. մէկ խօսօք թէ իքմն սօլի-ձիդալուիդ անէին մասնաւոր բանս, իրենց հրա-մանոցն սէպին վրայ նայ այնպէս բան չիլայ, որ հասարակին պօնումին[7] դպչէր։ Բայց նէմիշու-թեան[8] կամ օզկայ բան որ հասարակին ին իւրիայ[9]*

---

[1] Բոլոր զօրութեամբը։
[2] Երկիր, կալուած։
[3] Szinalatt, հունգ. ընդ պատրուակաւ, պատճառանօք։
[4] Որ ամօթ չըլլայ։
[5] Sollicito, շարժել. սկսել։
[6] Commercium, վաճառականութիւն, առուտուր։
[7] Որ հասարակութեան բարւոյն կամ անոր պա-տւոյն դէմ չըլլայ։
[8] Ազնուականութեան. այսինքն ազնուականութեան թուղթ։
[9] Injuria, լատ. բառ է, կը նշանակէ, անիրաւութիւն, զրկանք։

*չի երեւնայ, կլան սոլիձիդալուիդ անելու եւ աս-
տուած պաշխէ, որ գնովին. զէրայ Հասարակն
ամենեւինմը դէմ չէ։„*

*"Աստուծոյ ողորմութեամբն այս լմնալով ընտրեց այս բանիս վրայ պատուելի Հասարակն տէքուդադուշներ, որ Պէջն երթան եւ սրտանց այս բանիս վրայ աշխատին, եւ աստուծոյ ողորմութեամբն զբանը վերջ տանին: — Ջպատուելի Աղաչայ պիրոմն զԱղայ Անկսէնտն. Ա. Մանուկի խիգուցեանց. եւ զԱղաչայ Ասվատուրն վիգօլեանց որոնց հասդատեց պատուելի քաղաքն հախ իրենց հրամանոցն աշխատանքին չորս ամիսը մէկ աղաչին* 400 *մաճրի. այսինքն ամսեն* 100 *մաճրի եւ մէկ ըռընտ հագուստի բարակ չուխայ: Եւ գազուգվջյ*[1] *հանդդիպէր, որ ալ շատ նստէին եւ տեսնուին թէ ճվ բանը պիտոր կատարվի, նայ ուննեան նստելու ալ շատալ եւ հախն պի քալէ* 100 *մաճրի. բայց ճամբուն խարճն, թէ երթալն եւ թէ գալն նաեւ պէջն իրենց հրամանոցն հարկ է որ ապրելիքն ուտելն եւ խմելն պիլայ Պ. քաղքին գասայէն: Բայց թէ որ աստուծոյ ողորմութեամբն ըլար, որ ալ թէզ վերջ տանէին զբանը, քան չորս ամիսն, նայ ամէնը զչորս ամսեն հախն պի ուննեան. տարէ*[2] *չորս ամսէն աւելի նսդէին շաբաթ կամ երկուս, նայ անոր հախ չիպի ուննեան. բայց աւելոմն նսդէին, նայ վերօյգրեալ կերպիւն ամսեն հարուր մաճրին պի ուննեան. որ բանը որ շնաւոր ըլայ եւ աս-*

---

[1] Ի դիպուածի որ. լատիներէն է։

[2] Ցարը, այսինքն՝ բայց, սակայն։

*տուած պաշխէ, որ սրտերովս քալեն եւ բարով երթան եւ այլվի բարով գան ամէն։"*

*"Նմանապէս վասն օլգօլմօղոշակին[1], թէ ինչ կերպիւ երթան Աղաչայ տէբուդագուշներին պէջն, ուխտվեցաւ պատուելի հասարակին, որովհետեւ օֆէրալուիդ եղաւ Ա. գրիգոր Սհակի ագոնց, թէ իրեն հրամանքն պի տանի իրեն հրամանոցն գոջիեօվն եւ ձիանէրովն հախի վրայ մինչեւ ի բէշդն. եւ այսպէս ույմիշվեցաւ Պատուելի հասարակն, որ տանի երկու Աղաչայ եւ մէկ մանչմն իրենց հրամանոցն քըչէրովն մինչեւ ի բէշդն, իրեն հրամանոցն ատուկ խարճովն եւ պիտայ Պ. հասարակն իրեն հրամանոցն 100 մաճրի այսինքն հարուր։ Վասն տղի որ երթայ Ա. Տէբուդագուշնուն հետ պէջն գիտացվի, որ վարձեց Պ. հասարակն զզատիկն պօղոսի, այնպիսի գօնտիձիօնով, որ մինչեւ ի բէշդն ունէնայ ձիան քշելու. տարը պի ունէնայ Ա. գրիգորն ոզկայ մանչ որ զձիանը հօգայ. եւ զատիկն աղաչանուն քով ծառութիւն պի անէ, եւ ունէնայ չորս ամիս ծառութիւն անէլու եւ հախն պիլայ վեց ոսգի եւ մէկ ճուփդ կօշիկ։ Բայց թէ որ ավելի նսդէր քանց չորս ամիսն նայ, անոր գօրայ պի երթայ իրեն հախն, այսինքն ամսեն 1 1/2 ոսգի. տարէ թէ օր աստուծոյ ողորմութեամբն ըլար որ այլ թէզ գային աղաչաները տուննայ, ամէնը պի տրվի զատիկին զչորս ամսեն հախն լման։"*

[1] Alkalmatosság *հունգարերէն բառ է. նշանակութիւնն է, առիթ, պատեհութիւն։*

# Է.

Ամառուան մօտենալովն ու օդերուն տաքնալովը ժամանակն էր որ պատգամաւորք վայրկեան մը յառաջ ճամբայ ելլէին. այնչափ աւելի, որչափ որ այն միջոցին, որովհետեւ կառօք երթալու էին, առ նուազն երկու երեք շաբաթ պէտք էր Եղիսաբեթուպոլսէն Վիեննա երթալու: Պատրաստութիւններն իրօք հետզհետէ տեսնուեցան. եւ երեսփոխանք կը փութային ճամբորդութիւննին սկսելու: Սակայն խորհուրդն որ ամիս մը յառաջ եղած էր, միայն խօսքով եւ թղթի վրայ էր, իրականութիւն չէր. եւ երկրորդ որ քաղաքային վարչութեան մասնաժողովն, ինչպէս նաեւ երեսփոխանները՝ ձեռուընին իրական դրամ, լիակատար իշխանութիւն ու ապահովագրութիւն կ'ուզէին, որպէս զի թէ ազատութեամբ գործել կարենան, եւ թէ միանգամայն, որպէս զի իրենց ըրածին ու գործածին համար ետքէն պատասխանատուութիւնը վրանին չիյնայ: Անոր համար ուզուեցաւ, որ պատգամաւորաց ճամբայ ելլելէն յառաջ ընդհանուր ժողով մը գումարուի: Մայիսի 15ին իրօք ժողովքը գումարուեցաւ: Ասոր մէջ շատ բանի վրայ խորհուեցաւ ու խօսուեցաւ: Եւ նախ. թէ որովհետեւ բուն խնդիրը դրամի վրայ է՝ ինչ ընելու են քաղաքային վարչութիւնն ու պատգամաւորք, որպէս զի շուտ եւ ապահովապէս ձեռուընին ստակ գայ. որով երեսփոխանք թէ անմիջապէս ճամբայ ելլել եւ թէ Վիեննա ա-

զատապէս ու անպահովապէս գործել կարենան, որ՝ ինչպէս յայտնի է, առանց դրամի անհնարին է։ Երկրորդ՝ թէ Գարրիէլ Պէթլէն ատենադպիրն, — որուն միջնորդութիւնն անպատճառ հարկաւոր է, եւ առանց որուն գործակցութեան բան մ'ընելու ի վիճակի չեն, — ի դիպուածի որ իրենցմէ ստակ ուզէ կամ իբրեւ փոխ կամ ի պարգեւի մասին՝ ինչ ընեն, ու ինչ քաղաքականութիւն բռնեն։ Երրորդ՝ թէ ինչ միջոցներ բանեցընելու եւ ինչ ճամբայ բռնելու են որ քաղաքացիներէն նախագրուած ստակներն ընդունելու ժամանակին ապահովապէս վարչութեան կամ երեսփոխանաց ձեռքն հասնի։

Առաջին կէտին նկատմամբ՝ ընդհանուր ժողովքը զերեսփոխաններն հանդարտեցուց ու ապահովացուց այնու՝ որ անմիջապէս ձեռուըններն 1000 հունգարական կամ 833 ռենական ֆիորին տուաւ, իբրեւ ճամբու ծախք։ Դարձեալ որպէս զի Եղիսաբեթուպոլսոյ ծանօթ ներկայացուցչէն կամ գործակալէն, ինչպէս նաեւ Փրանկիսկոս Ռուտվորհէլյի Պանտի արքունական խորհրդականէն, այնչափ դրամ գտնեն՝ որչափ որ պէտք է, քաղաքային վարչութեան ստորագրութեամբն սպիտակ թղթեր (carte blanche) ընդունեցան։ Այս թղթերուն զօրութեամբ ի Վիեննա ուզած ատեննին վերոյիշեալ մարդիկներէն կրնային ի դիպուածի հարկաւորութեան մինչեւ 25.000 ֆիորին ալ գտնել։

Նկատմամբ ուրիշ եւ ի մասնաւորի այն դրամներուն, զորոնք առանձնականներէն պիտի

ընդունէր քաղաքն ու խրկէր ի Վիեննա, Նորէն որոշուեցաւ ու սահմանուեցաւ որ իւրաքանչիւր ոք այն գումարն, որ իրեն վրայ ինկած է, եւ զոր ամիս մը յառաջ խոստացած էր տալու, մինչեւ Օգոստոսի վերջը պատրաստ ունենայ. որովհետեւ ամէն մարդ գիտնայ — կ'ըսէ ի մէջ այլոց ժողովքը — թէ հասարակութիւնն որոշած ու վճռած է այնպիսւոյն ստակին վրայ, որ անհոգ ըլլալով՝ ատենին չի հատուցաներ, որպիսի կերպով եւ որպիսի եղանակաւորութեամբ որ ըլլայ, նոյն իսկ բռնութեամբ ու արգելմամբ ձեռք դնելու: Աս բաւական չէ, ստակը պատուով վար չդնողը պատիժ ալ պիտի ընդունէր. եւ պատիժն այն պիտի ըլլար, որ թէպէտ բռնութեամբ առնուած ստակին վրայօք տիրոջն ապահովագրութիւն պիտի տրուէր, սակայն շահ պիտի չառնուր: Այսինքն երբ քաղաքը դրամագլուխը վճարելու սկսէր, ինք թէպէտ համեմատութեամբ իւր դրամագլխէն մաս մը պիտ'որ ընդունէր, ինչպէս ուրիշները, բայց անոր շահը պիտի չընդունէր:

Երեսփոխանաց այն առաջարկութեան վրայ, որ եթէ Պէթլէն կոմն ստակ ուզէր իրենցմէ, կամ շահու եւ կամ իր աշխատութեան համար, կարենա՞ն եւ ո՞րչափ կարենան տալ, ի սկզբան ըսուեցաւ ու սահմանուեցաւ թէ որովհետեւ յայտնապէս կը տեսնէ քաղաքը, որ առանց այս պաշտօնէին միջնորդութեանն ու օգնականութեան՝ արքունական երկիրներուն ստացումն անկարելի է. անոր համար, որպէս զի

աւելի հոգւով ու տաք սրտով գործքին յաջողութեան եռեւէն իյնայ, կրնան իրեն 5000 ֆիորին մը տալ. բայց դաշնագիր մը առնուի իրմէն՝ չէ թէ միայն իր, այլ նաեւ Նիկողայոս Պէթլէնին ու ասոր ամուսնոյն ստորագրութեամբ։ — Սակայն այս բանս ետքէն փոխուեցաւ. վասն զի ժողովականաց ոմանց, որոնց համար այս գումարը՝ նոյն իսկ իբրեւ պարգեւ՝ ոչինչ բան մը կ'երեւար՝ — կարծիքն այն էր, որ իբրեւ փոխ տասը, տասնուհինգ ու նոյն իսկ քսան հազար ֆիորին կրնար իրեն խոստացուիլ. միայն թէ այնպիսի պայմանաւ, որ ապահով գրաւական մը ցուցընէ։ Իսկ եթէ հանդիպէր որ իբրեւ փոխ չուզէր ստակն, այն ատեն որպէս զի աւելի եռանդեամբ գործէ ու աշխատի, հասարակութեան կողմանէ իշխանութիւն տրուեցաւ պատգամաւորաց որ իրեն մինչեւ 1000 ոսկի պարգեւ խոստանան։ Եւ ի դիպուածի որ տեսնեն թէ փոխ ստակ տալով բանը չի լմննար, այլ պարգեւ ալ պէտք է, այն ատեն կարենան իրեն շահով ստակ փոխ տալէն զատ նաեւ 500 ոսկի պարգեւ տալ։

Ասոնք էին առ հա 1758 Մայիս 15ին Եղիսաբեթուպոլսոյ մեծ խորհրդին որոշմունքները։ Սակայն մենք պիտ'որ տեսնենք ետքէն որ չէ թէ 1000 կտոր ոսկւոյ եւ նոյն իսկ 20.000 ֆիորինի փոխատուութիւնը, եւ ոչ իսկ 500 ոսկւոյ ոչինչ գումարն՝ իբրեւ պարգեւ արժեցին բան մը. այլ 30.000 ֆիորին իրական դրամ պէտք եղաւ որ տրուի այս պաշտօնէին, կէս մ'իբրեւ

պարգեւ եւ կէս մ'իբրեւ պարտք, որ ստակը Հայք ալ երբեք չտեսան:

Երբ որ խորհրդին մէջ խնդիր եղաւ թէ երեսփոխաններն ինչ կերպով եւ որուն հաշիւ պիտի տան ըրած ծախքերուն վրայօք, ըսուեցաւ թէ հարկ չկայ որ ամէն բանի վրայօք մանրամասն հաշիւ ցուցընեն. բաւական է որ մեծամեծ գումարները նշանակեն ու ընդհանուր հաշիւ մը ներկայացընեն հասարակութեան:

Խօսակցութիւն ըլլալով անոր վրայ ալ որ արդեօք այն արտաքոյ կարգի զոհողութիւնը, զոր քաղաքացիք այս առթիւ ցուցուցին, ապագայ ժամանակին քաղաքացւոց համար ալ պարտաւորիչ է արդեօք եւ նոյնն ընելու պիտի հարկադրի՞ն ետքէն ալ, — պատասխանուեցաւ որ այս բանս ապագայ ժամանակին համար չէ, եւ չի կրնար իբրեւ կանոն առնուիլ. եւ թէ ամենեւին պատճառ չի կրնար ըլլալ ըսելու մէկուն կամ մէկալին համար՝ թէ որովհետեւ այս ինչ ժամանակին այսչափ ինչ գումար տուեր է, ուրեմն համեմատութեամբ հիմակ ալ այսչափ տալու է. վասն զի — աւելցուց ընդհ. ժողովը — ներկայ պարագաները բոլորովին տարբեր բաներ են, ամէն մէկն իւր կարողութենէն վեր, կամաւորապէս խոստմունք ըրաւ. եւ պատճառն ան է, որ ուզեցինք թէ մեր յաջորդներն ազատութեան ու հանգստեան մէջ ապրին ցյաւիտեանս:

Աս ըլլալէն ետեւ ժողովքը խնդրեց որ հասարակութեան առաջին աղաչաններն ու ամենէն պատուական քաղաքացիներն եւ մա-

նաւանդ անոնք որոնք մեծկակ գումարով նախագրուած կամ շատ նպաստամատոյց եղած են կալուածատէրութեան վաճարման՝ ստորագրութիւննին տան, եւ իրենց յատուկ կնքովը ժողովոյն արձանագրութիւնն ամրացընեն, զոր առանց ընդդիմութեան կատարեցին ալ:

Լսենք այս ամէն եղածները ժամանակակից տարեգրին բերնէն:

"Աստուծոյ ողորմութեամբն 1758 Մայիսի 15 Էլեզաբէդան.

"Պատճառ գրոյս այս է, որ 1758 ապրիլի 15ին ըսկսելով մեր Էլիզաբէդ քաղաքն խորհուրդ անելու վասն տօմինիումին ի պաշֆալօվինը, թէ ինչ կերպիւ կամ ինչ մօտալիդաշով[1] առնուինք, որ մենք եւ մեր բօսդէրիդաշն ազատութեան եւ հանգըստութեան մէջ մնար. որ խորհուրդներն մանաւորապէս կու երեւնան հօս այլ ետ գրած: Եւ հիմի Աստուծով գալով ժամանակն, որ աստուծոյ ողորմութեամբն պէջն երթան Աղաչայ Տէրուդադուշներն, այսինքն Աղաչայ Անկսէնտ Ա. Մանուկի խիգուցեանց եւ Ա. Ասվատուր վիգօլեանց. եւ կամենալով որ աղէկ սիկուրանձիայեօվ[2] երթան, մանաւանդ ըսդակ շատ պէտք ըլալով, կուզին որ վասն ըսդակին աղէկ սիկուրանձիայ ունենան. մանաւանդ այն ըսդակին կողմանէ, որն որ Պ. հասարակն ուէբարձիալուիդ արիլէ Պատւելի

[1] Ինչպէս յայտնի է՝ լատիներէն modalitas բառն է։ Կը նշանակէ՝ որպիսութիւն, հանգամանք, ճամբայ։

[2] Ապահովութեամբ, երաշխաւորութեամբ, հաւատեաւ։

Քաղքըցոցն վըրայ. որպէս հոս այլ ետ կու երեւ-
նայ գրած, առուկ առուկ, թէ որին վըրայ ինչ
ձգացէ.[1] եւ ասկից դուս սիրով կամաւոր ինչ
խոստացիլէ: Վասն այնորիկ հիմի, որ այլ հաս-
տատ ըլլայ այս բանս եւ ամէն մէկն տարոյս օ-
գոստոսի վերջն հատիր ունէնայ զայն Սուման,
որն որ ձգաց է վերան եւ որնոր խոստացիլէ.
զէրայ թէ որ գաղուգվոյ տարտ չունէնար կամ
քաշվէր եւ չիտար զըդակն, նայ գիտէլի է, որ
ունոյ վօդոյ հասդատվեցաւ, որ այն Աղաչաներն,
որն որ հասդատիլէ Պ. հասարակն, թէ ամէն
անգամ այս բանիս տարտն ունէնան եւ մնա-
ւանդ ըսդակնունը որ նես քաղին, որ այնպիսոյն
մօտէն որ քաշվէր եւ դէրմինին զըդակն վար
չի դնէր, նա փագուլդաշ կուտրվի Պ. հասա-
րակէն, որ մագար ինչ կերպիւ եւ կամ մօտա-
լիդաշով, ոչկային մօտ արգիլելով կարենան
զըդակն առնէլու եւ ըսդկին վըրայ զաբիս[2] տալու:
Բայց վասն որ այնպիսին չիհնազանդիլ ու տարտ
չիունացիլ հարկէորութեամբ[3] զըդակն վար դնե-
լու եւ պէտք եղիլ է, որ զօրով առնվի, այնպիսոյն
ճուրումն կամ վինգուլումն ոչկայ բան չիպի ըլլայ,
քանց զըդակն մօտէն պի առնվի եւ գօնդրագդ պի
տըվի իրեն առանց շահ. որ այնպիսին շահ չիպի
առնու իրեն ըսդկէն, այլ երբ որ սկսէր պա-

---

[1] Արդէն վերը (էջ 137) տեսանք թէ ամէն մէկ ա-գային ու քաղաքացւոյ վրայ ինչչափ գումար դրուած է վճարելի:

[2] Ընկալագիր, ապահովագրութիւն, անդորրագիր:

[3] Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւ կը նշանակէ՝ պատուով:

տուելի Քաղաքն վիճարելու գաբիդալէն, նայ իրեն ալ ա բրօբօրձիօնէ գաբիդալէն պի վիճարվի, բայց շահ չիպի տրվի, ընտոր մէկալնոնց, որոնք սիրով, առանց տիշբուդացիայի[1] տվիլին:„

“Դարձեալ առաջ տվին[2] վերոյգրեալ Ա-ղաչայ Տէբուդադուշներն թէ երթալով պէջն, հանդպէր որ կրօֆ պէդլէն կապօրը հէլպէտ ուզէր մէկ սումամն ըսդակ շահու հասարակէն, որ ընկէրէր[3] հասարակն զկրօֆն, նայ ինչխտարի վրայ ունենան փագուլդաշ Ա. Տէբուդադուշներն խոսդանալու. որով հետեւ կու տեսնունք, որ այս բանս կրօֆին ալդօլ[4] պէտք է որ վէրջանայ: . . . Խորհուրդ էղաւ վասն անդիձիբաձիային[5], որն որ կրօֆ պէդլէն կապօրն կուզէ Պ. Քաղքէն, որ որովհետեւ կու տեսնունք, որ այս մեր սկսած բանը, որ կուզեն թէ զտօմինիումն արնունք. եւ տեսնելով որ այս բանս առանց վերոյգրեալ կրօֆին գօնսէնսուսին[6] չիլալ առաջ երթալու. վասն այսորիկ, որ ալ տաք սրտով կաննի մեր հասարակին քով, ունոյ վօդոյ ութվեցաւ պատուելի հասարակին, թէ տրվի կրօֆին սէպին վրայ 5000 զլօթ, այսինքն հինկ հազար. որին վրայ

---

[1] Disputatio լատիներէն բառ է. վէճ, վիճաբանութիւն, բանակռիւ՝ կը նշանակէ։

[2] Առաջ տալ. Հունգարերէն բացատրութիւն է. առաջարկել, խօսք բանալ, խնդիր ընել կը նշանակէ,

[3] Այս բառը քիչ մը ետքը նորէն կու գայ. օգնել, օգնութիւն մատուցանել, կը նշանակէ։

[4] Այսինքն՝ կոմսին ձեռքովը։ Àltal, հունգ. բառ է. կը նշանակէ՝ ի ձեռն, միջնորդութեամբ։

[5] Anticipatio, կանխաւ, նախապէս տալը, յառաջուընէ հատուցում։

[6] Consensus, հաւանութիւն, հաճութիւն։

պի արնվի գօնդրագդ կրօֆ պեդլէն Միգլուշէն եւ պիքայէն,[1] որ երկուսին շուշգրիպձիայեօմը ըլլայ գօնդրագդն։ . . . Հաստատեց Պ. Հասարակն եւ առաջ տուաւ Ա. տէքուդադուշնուն, թէ գազուգվըյ հանդպէր որ ուզէր կրօֆն շահու ըսդակ, նայ մինչեւ ի 10։ 15։ կամ 20 հազար զլօթն կըլլան. խոսդանալու եւ պի ճարէ Պ. քաղաքն այնպիսի գօնտիձիօնով, որ աղէկ գրակվան[2] դնէ։ Բայց թէ որ ըսդակ չուզեր շահու, նայ որ ալ աղէկ սրտանց ծառութիւն անէ մեր հասարակին, մանաւանդ այս բանիս մէջ, կուտանք հասարակով փագուլդաշ Ա. Տէքուդադուշնուն որ մինչեւ ի հազար ոսգին պաշխշ կլան խոսդանալու. եւ գազուգվըյ հանդպէր որ շահու սդակալ ուզէր եւ տէմնուին Ա. տէքուդադուշներն թէ սդակ տալով չի օգնիլ. եւ պէտք է պաշխշ ալ, ասոր վրայ կուտանք փագուլդաշ որ գշահու սդակն խոսդանալով դէր հինկ հարուր ոսգի պաշխշալ խոսդանան իրեն։ Նմանապէս վասն Աղաչայ տէքուդադուշնուն սէպ տալուն, այնպէս գօնգլուտօվադ եղաւ,[3] որ մանրամասնաբար սէպ չի պի տան, այլ թէ որ մեծ սումամն իրեքմն տան նայ, զայն պի գրին։ Դարձեալ գիտացուի որ այս ըսդըկնուն վրայ, որ եղաւ ուէքարձիայ, նայ ամէն մէկին կամօքն եղաւ. անոր համար ասոր էտեւանց թէ օր հանդպէր, որ այլվի այս-

---

[1] Պիքա, Դրանսիլուանիացւոց լեզուաւ՝ խաթուն, տիկին կը նշանակէ։

[2] Այսինքն՝ գրաւական։

[3] Concludere. լատ. բառ է. սահմանել, որոշել, եզրակացընել կը նշանակէ։

պիսի ուէբարձիամն անէր Պ. Հասարակն նայ, չիլայ այս ուէբարձիան ուզանձիայ[1], որ ասէին, թէ ֆալան ուէբարձիայի այս չափս տվիլիս նայ, հիմիկ ալ աբրօբօրձիօնէ[2] տաս, հապա այն ժամանակին գօրայ պի արվի ուէբարձիայ ամէն մէկին կարօղութեան գօրայ. զէրայ հիմպի կամաւոր խոսդացան. ամէն մէկն կարօղութենէն դուս ալ պէտք եղաւ որ տայ. պատճառն, որ ամէն մէկն տեսնելով թէ այս բանս որ սկսիլինք նայ մեր եւ մեր բօսդէրիդաշին ազատութեանն եւ հանգստութեանն սէպն է, որ ազատ եւ հանգիստ մնանք մենք ին բէրբէդուվը:[3]

"Վլան այսօրիկ, որ այս ամենայն մեր գրածներն հասդատ եւ սիկուր մնայ, ութվեցաւ Պատւելի հասարակին, որ ալ առաջի Աղաչաներն, նաեւ ալ ֆրունդիայ[4] քաղքըցիքն, մանաւանդ նաքայ որ շատով կու ընկերին զՊատւելի քաղաքն, ամէն մէկն իրեն ատուկ ձեռօքն այս գրիս վրայ շուշգրիպօվադ ըլայ եւ իրեն ատուկ մոհրօվն ամրացուցանէ:

"Թվըյն որպէս այլվեր:

"Ես Տօնիկ Տիագօնի. m. p.
խոստացա քաղքին 3000 մաճրի, Մաճրքի, այինքն. Գ Ռ մաճրի, շահով քալէ, այսինք եկեղեցքան.

---

1 Սովորութիւն, օրէնք:

2 Համեմատութեամբ, ըստ պատշաճի: Վերն ալ եկաւ այս բառը:

3 Լատիններէն է. ցմիշտ, յաւիտեանս:

4 Այս բառը Դրանսիլուանիոյ Հայոց բարբառովն՝ ընտիր, առաջին, նախամեծար, կը նշանակէ:

Անկոէնտ Մանուկի խոջգուցեան. m. p.
    Պիրով էլէզարեգ քաղաքին·
Ղազար օհաննեանց. m. p.
Մարտիրոս Բաղրուպանի. m. p.
    հետ որդուս լուսիկին.
Լուսիկ Թորոսեանց. m. p.
Նիկոս ըսթեփանի շիմիլովցու. m. p.
Մելքոն Կաշքարի. m. p.
    կամօքս խոսդացայ քաղքին 300 Մանրի այս-
    ինքն երեք հարուր
Թորոս ունանի. m. p.
    իմ կամօքս է.
Նիկօլ ճիրախի. m. p. կամօքս է.
Թուման Ջատիկեան. m. p.
Խնկանոս եւ լուսիկ ամիրայի տանիէլեանց. m. p.
Մարտիրոս գոշոդանի. m. p.
Օհան տէր յակոբի. m. p.
Խաչգոյ Սընբէգրեանց. m. p.
Խայ տիրացու օհանի. m. p.
Լուսիկ եւ մկրտիչ շիմիլովցու. m. p.
Ասվատուր վիգօլեանց. m. p.
Խնկանոս Հանգօյի եւ պետրոս հանգօյի. m. p.
Ջատիկ Թորոսեանց. m. p.
Անտոն, ռ. հ. Նիգօշի իսիգուցեանց. m. p.
Պօտէրաշ ոսգերիչեանց. m. p.
Օվանէս խաչգօյի Սնբէգրեանց. m. p.
Մանուկ դավիդի շիմիլովցուն. m. p.
Լուսիկ սնգովիչի. m. p.
Առութիւն Միդգօյի գաբէպօվի. m. p.
Ասվատուր քէլեանց. m. p.
Գրիգոր ահակի ագոնց. m p.
Մանուկ գրիգորի հանգոյեանց. m. p.
Վարդան եօլպէյի. m. p.»

Ներեսփոխանները ճամբայ ելան դէպ ի Վիեննա՝ ժողովըն, քահանայից ու քաղաքա-

ցուոց օրհնութիւնը հետերնին տանելով։ Բայց՝ ինչպէս գրի անցուած ծախքերէն կը տեսնենք, առանց Աստուծոյ բարձրելոյն օրհնութեանն ալ քաղքէն հեռանալ չուզեցին։ Ուստի եւ յառաջ քան ճամբորդութիւնն սկսիլը պատարագ մատուցանել տուած են Թէ՛ վարդապետին՝ այսինքն Մինաս Խնկանոսեան՝ քաղքին ժողովրդապետին եւ Թէ՛ Մխիթարեան չորս վարդապետներուն. այսինքն Հ. Ղուկասին, Հ. Մարկոսին, Հ. Յովհաննէսին եւ Հ. Թորոսին։ Մայիսի 21ին Ռոտնոյ՝ Աստուածածնի հռչակաւոր ուխտատեղին հասած կը գտնենք, ուր դարձեալ պատարագ ընել կուտան իրենց գործոյն յաջողութեան համար Աստուածածնի հրաշագործ պատկերին առջեւ։ Նոյն ամսոյն 23ին Բէշթա են, ու Յունիսի 9ին Վիեննա։

Հոս հանելուն պէս իրենց տրուած լիակատար իշխանութեան համեմատ աշխատելու սկսան։ Առաջին գործքերնին եղաւ ստակ ճարել։ Ուստի եւ շուտ մը Եղիսաբեթուպոլսոյ տեղեկաբեր պաշտօնէին (referendarius) ծեր Կոզմասին գնացին ու քաղքին անուամբն եւ իրենց ստորագրութեամբ իրմէն 4000 Ֆիորին փոխ առին երեք տարուան միջոցի համար հարիւրի վեց շահով. այն պայմանաւորութեամբ որ եթէ ինք ուզենայ դրամագլուխն ետ առնուլ՝ վեց ամիս յառաջ իմացընելու է։ Նմանապէս եթէ հասարակութիւնը չուզենար պահել դրամագլուխը, վեց ամիս յառաջ պէտք էր իմացընել։ Աս դրամն ոչինչ ըլլալով՝ Յունիսի 20ին Փրանկ. Ուսվոր-

հէլլի պանտի, արքունի խորհրդականէն առին 10.000 հունգարական կամ 8333 ռենական ֆիորին տարուան մը համար, բայց այնպիսի կերպիւ որ եթէ դրամատէրն ստրկի պէտք ունենայ, երեք ամիս յառաջ իմաց տալու է քաղքին հասարակութեան։

Մեծ գործքին սկզբնաւորութեան համար այսչափ դրամ առ ժամն բաւական սեպելով եւ լաւ գիտնալով որ Աւգոստոսի վերջը իրենց համար հարկաւոր դրամը պիտի հասնի, արքունական կալուածոց գնման պատրաստութիւններն սկսան։

Դրամները ժամանակին հասան։ Սեպտեմբեր 1ին Բէշթա քաղաքը քաղուեցաւ նախագրուած քաղաքացւոց 25 աղաներէն ու աղաչաներէն 15.241 ֆիորին։ Հէրմանշդատի թըղթատարոմէն ընդունեցան 43.000 ֆիորին, որ գումարը խրկած էր քաղաքը Պէթլէն պաշտօնէին լիակատար իշխանութիւն ունեցող մարդիկներուն, այսինքն Յովսէփ Պոլոյին եւ Ստեփանոս Հալմակիին։ Հոկտ. 28ին Ա. Թորոս Գէօրգէքեան տարաւ իրենց ի Վիեննա Եղիսաբեթուպօլսոյ աղաչաներէն (1000 կտոր ոսկի) 4166 ֆիորին։ Նմանապէս նոյն օրը այս աղան տուաւ պատգամաւորաց ձեռքը 12.000 ֆիորինի անդորրագիր (quietantia) մը, զոր Եղիսաբեթուպօլիս քաղաքը Սեպտ. 1ին խրկած էր Յովս. Պոլոյի եւ Ստեփ. Հալմակիի, ի հաշիւ արքունական կալուածոց վաճառմանը։ — Չորս օր ետքը, Նոյ. 1ին, փոխ առին Եղիսաբեթուպօլսոյ գործա-

կալին կնոջմէն 2000 ֆիորին հարիւրի 6 %ով։ Նոյ. 13ին Յովսէփ Կարոլոս Գուքսէն առին փոխանակագրով 2000 ֆիորին։ Նոյ. 15ին Թղթատարութենէն 5000 ֆիորինի անդորրագիր մը, զոր քաղաքը Հերմանշդատի գանձատունը դրած էր ի փրկանս սակագնոյն (taxe)։ — Նոյն օրը Զատիկ Թորոսեանէն եւ Թէոդորոս Վարդիկեանէն անդորրագրով առին 3260 ֆիորին։ Նոյ. 20ին Աւքսենտիոս Խիզուցեան դատաւորէն 3000 ֆիորին։ Դեկտ. 13ին գլխաւոր մաքսատնէն 2292 ֆիո. Դեկտ. 30ին Վիօլանդէն եղբայրներէն 1709 ֆիորին եւ այլն։ Այնպէս որ 1759 Յունուար 30ին ձեռուընին ընդունած էին արքունեաց գնման, ոգեւոր ըմպելեաց իրաւանցն եւ ընդունելի նոր առանձնաշնորհութեանց հրամանագիրներուն ստացման համար 124.948 ֆիորին եւ 30 քառանդան։

Այս կերպով դրամի ձեռօք գործելու ասպարէզը բացուելէն եւ ապահովցուելէն ետեւ՝ բնականապէս գործքին յաջողութիւնը շատ դիւրացաւ։

Արդէն տեսանք (էջ 117) որ Եղիսաբեթուպոլիս քաղաքը տասուերկու տարի յառաջ այսինքն 1746 Յունիսի 25ին որոշմամբը, երբ կայսրուհւոյն 1200 ոսկի պարգեւ խաւրեց Տէր Մինաս Խնկանոսեան ժողովրդապետին եւ Յովհ. Ղազարեան գլխաւոր դատաւորին ձեռօք, Կարոլոս Զ.ի արտօնութեանց պատճէնը նորոգելէն ետեւ, Պաշտպալովլի տէրութեան կալուածներուն գնման խնդիրը մեծապէս դիւրինցուց

եւ ասոր առջեւն ելած դժուարութիւնները հարթեց։

Հիմա պատգամաւորք, ինչպէս մերձակայ յարաբերութիւններէն ակներեւ կը տեսնուի, նաեւ Պոլնոյի՝ արքունեաց քարտուղարն եւ մանաւանդ Գաբրիէլ Պէթլէն պաշտօնեան եւ ուրիշ մեծամեծներն իրենց կողմը վաստըկեցան։ Բայց բուն խնդիրն զկայսրուհին վաստըկիլն եւ անոր ստորագրութիւնն առնուլն էր։ Ուստի որպէս զի աս ալ աւելի դիւրութեամբ յաջողի՝ վերոյիշեալ երկու անձինք եւ ուրիշ՝ Հայոց կողմնակից մարդիկը յորդորեցին զերեսփոխաններն, որ Եղիսաբեթուպոլսոյ կողմանէ պատգամաւորութիւն հասցընեն Վիեննա ու խմբովին ներկայանան կայսրուհւոյն։ Ասոնք անմիջապէս Եղիսաբեթուպոլիս գրեցին ու անկէ շուտով Վիեննա գալու պատգամաւորութիւնը փութացուցին։ Իրը յաջողեցաւ. վասն զի քաղքին ընտիրներէն ու առաջին աղաներէն 16 հոգի Յուլիսի սկիզբները Վիեննա կը գտնենք։ Անտարակոյս այս պատգամաւորութեան, դարձեալ՝ աշխոյժ գործունէութեան, առատատու պարգեւաբաշխութեան եւ այլն հետեւանքն էր, որ 14 օր ետքն այսինքն Յուլիսի 4ին երկիրներուն գնման պատճէնը պատրաստ կեցած էր, որն որ Հերմանշդատ՝ ներքին խորհրդին ծանուցուեցաւ ու Օգոստոս 19ին պաշտօնապէս հրատարակուեցաւ։

Ասանկով՝ տարիներէ ի վեր խորհելէն, քալելէն, գործելէն ու ամէն քար շարժելէն ե-

տեւ, հասան վերջապէս Եղիսաբեթուպոլսոյ Հայք առաջիկայ կայսերական հրովարտակին ձեռօք այնչափ սաստիկ փափաքածնուն: Ընդունեցան ապահովագրութիւն իրենց ապագային համար, ու եղան բացարձակ ստացիչ ու ինքնագլուխ տէր այն ամէն կալուածներուն, զորոնք ձեռք բերելու համար այնչափ գլուխ յոգնեցուցած ու քրտնած էին:

Այս պատճէնին մէջ կը յայտնէ կայսրուհին թէ նկատելով Գրանսիլուանիոյ Եղիսաբեթուպոլիս քաղաքը բնակող Հայոց հաւատարմութիւնն եւ հաւատարիմ ծառայութիւնը զոր իրենք ամէն պարագայի մէջ ցուցըցած են արքունի տան, — յուսալով թէ նոյնն անկից ետքն ալ պիտի ցուցընեն, — իրենց շնորհելու, տալու, պարգեւելու որոշած է, մշտատեւ իրաւամբ, առանց յետս կոչում ընելու, ամբողջ Պաշտպալովի արքունական կալուածները, որ մինչեւ այն ժամանակ թագաւորական գանձուն ձեռքն էին: Ամբողջ Հունտօրֆը, Իրնյէի կալուածատէրութիւնը, Ռուտայլ եւ Ոսֆոլու՝ բոլոր իրենց վերաբերեալ երկիրներովն ու շրջականերովը. դարձեալ՝ ամէն թագաւորական իրաւունքներն՝ անոնց եկամտի մասերովը. մշակուած, գործուած ու չգործուած երկիրները, արօտականները, դաշտերը, եւն. մէկ խօսքով ամէն եկամուտ, որ օրինօք անոնց կը վերաբերին. իրեն վերապահելով՝ բողոք որեւէ կերպով աս հրամանինու շնորհման դէմ եղող ընդդիմութեան ու զլացման:

Տեսնենք այս՝ 1758 Աւգոստոս 31ին հրա-

տարակուած ու Մարիամ Թերեզիա կայսրու-
հիէն եւ իր պաշտօնէիցմէ ստորագրուած հրամանագրին հայերէն թարգմանութիւնը։

"Մենք, Մարիամ Թերեզիա, ողորմութեամբն Աստուծոյ կայսրուհի Հռոմայ, թագուհի Գերմանիոյ, Հունգարիայի, Բոհեմիայի, Դաղմատիայի, Խռուադաստանի, Սլաւոնիայի. արքիդուքս Աւստրիայի. դուքս Բուրկունտիայի. Բրապանդի, Մեդիոլանու, Ստիրիայի, Գարինթիայի, Գարնիոլիայի, Մանդուայի, Բարմայի Բիաչէնցայի, Լիմպուրկի, Լուքսէմպուրկի, վերին ու ստորին Սիլեզիայի. իշխան Սուեվիայի, Դրանսիլուանիոյ. սահմանակոմս Հռոմայ սուրբ տէրութեան, Բուրկովիայի, Մորավիայի, վերին ու ստորին Լաուսիցի. կոմս Հապսպուրկի, Ֆլանտրիայի, Թիրոլի, Ֆէրրարայի, Գիպուրկի, Կորիցիայի, Կրատիսկայի, Արթեսիայի եւ Սըգոնյից. տիրուհի Նամուրի, դքսուհի Սլաւոնիայի սահմանակոմսութեան, Բորդոնաօնի, Սալինարումի եւ Մեխլինիայի. դքսուհի Լոթարինգիայի եւ Պարիի. մեծ դքուհի Ետրուրիայի, եւ այլն.

Ներկայ գրութեամբ ա՛ն ամէնուն որոնց անկ է, միտքը կը բերենք ու կը յայտնենք, թէ Աւգոստինոս[1] Խիգուցեան դատաւորը, Յովհաննէս Ղազարոսեան, Մելքոն Գասպարեան, Յովհաննէս Ոսկերիչեան, Մարտինոս Խիգուցեան, Մարկոս Բաղրուպանեան, Լուսիկ Թորոսեան, Նիկողայոս Չիգիեան, Լուսիկ Ոսկե-

[1] Այսպէս է հրովարտակին մէջ։ — Աւգուստինոս անունը Augustinus հասկցուած ու թարգմանուած է։

րիչեան, Նիկողայոս Գասպարեան, Թէոդորոս Չիգիրեան, Թովմաս Ջաքարեան, Եւգինէոս Դանիէլեան եղբայրները, Մարկոս Գօշօղանեան քարտուղարը, Յովհաննէս Բօքեան, Խաչիկ Սէնդբըրգըրեան երեսփոխանները, Աստուածատուր Վիգոլեան եւ Անտոն Խիգուցեան պատգամաւորներն, իրենց՝ եւ բոլոր Հայ Հասարակութեան անուամբն — որ Եղիսաբեթուպոլսոյ մէջ կը բնակի — (այս քաղաքը մեր Տրանսիլուանիոյ իշխանութեան Գիւգիւլլէօ գաւառին մէջն է. —) մեր վեհափառութեան մատուցած խոնարհ խնդրուածքը գթութեամբ ընդունելով ու կշռելով եւ նկատելով հաւատարմութիւնն եւ հաւատարիմ ծառայութիւնը, զոր այս հասարակութիւնը մեզի եւ մեր թագաւորական տոհմին մինչեւ հիմայ մատուցած է — եւ կը յուսանք թէ ասկից ետքն ալ, ապագայ ժամանակին մէջ պիտի մատուցանէ եւ միշտ հաւատարմութիւն պիտի ցուցընէ՝ — Պաշտպանելով ամբողջ ու բովանդակ արքունական կալուածները, դղեակովը մէկտեղ, որոնք որ մինչեւ հիմակ մեր թագաւորական գանձատան ձեռքն էին, այսինքն ամբողջ Հունտօրֆը, բոլոր ու ամբողջ Էրնյէի կալուածատէրութիւնը, նմանապէս ամբողջ ու բոլոր երկիրներն որոնք Ռուտալյ եւ Ույֆոլուին մէջ են. դարձեալ՝ ամէն ու բոլոր մեր թագաւորական իրաւունքը, ամբողջ եկամուտներովն, ու անոնց վերաբերեալ ամէն եկամտի մասերովն այսինքն արօրուած կալուածները, գործուած ու անգործ երկիրները, դաշ-

տափայրերը, արօտականները, զառիվայրերը, խոտի դաշտերը, անտառները, անտառակները, լեռները, ձիւնադաշտերը, ձորավայրերը, այգիներն ու այգեստանները. անկից զատ՝ ջրերը, գետերը, լճերը, ձկի աւազանները, ջրի հոսանքները, ջաղացքներն եւ անոնց տեղերը. առհասարակ ամէն կերպ եկամուտ եւ որեւէ կերպով անոնց վերաբերեալ բան, որ այն գզեկին կամ նոյն կալուածներուն կը վերաբերին օրինօք. եւ հին ժամանակներէ անոնց վերաբերեալ իրական արահետներով եւ սահմանին տակն եղող մասերովը մէկտեղ 60.000 ռենոսական փիորինի՝ յիշեալ հայ հասարակութեան եւ իրենց ժառանգներուն եւ օրինաւոր յաջորդներուն, մեր այս որոշմունքովն — որն որ հրապարակական ու մեր գանձատան գործոց՝ կայսերական թագաւորական վերատեսչութեան ձեռօք Յուլիս ամսոյն 4ին, եւ մեր Գրանսիլուանիոյ իշխանութեանն արքունական դիւանատան ձեռօք առաջիկայ տարւոյն Ագոստոս 19ին հրատարակուեցաւ, — մեզի վերապահելով որեւէ զլացման դէմ օրինաւոր բողոքումն առ մեր թագաւորական գանձատունն — շնորհելու, տալու, պարգեւելու որոշեցինք, մշտատեւ եւ անդառնալի կերպով՝ առանց յետս կոչում ընելու: Զոր՝ մեր ներքին եւ արքունական կնքովն ամրացընելով, առաջիկայ պատճէնին զօրութեամբ, երբ անիկայ մանրամասն մեր առջեւը դրուեցաւ, այս առանձնաշնորհութեան մուրհակի ձեւովն յօրինել տուինք:

' Տուեալ ի մեր քաղաքն Վիեննա. յամի
Տեառն 1758 Ագոստոս ամսոյն 31ին. մեր իշ-
խանութեան 18երորդ տարին:

*Մարիամ Թերեզիա. յ. ձ.*

*Գաբրիէլ Պէթլէն կոմս. յ. ձ.*
*Փրանկիսկոս Պանտի. յ. ձ.:„*

Ընթերցողին թերեւս անմիջապէս աչքին կը զարնէ ու կը տեսնէ, թէ այս նամակի ձեւով գրուած համառօտ պատճէնը՝ առանձնաշնորհութեանց ընդհանուր ձեւէն տարբեր է: Ու իրօք ալ առաջինկայ գրութիւնն աւելի հրամանագիր մըն է: Ասոր մէջի բացարձակ, վսեմ ու կտրուկ ոճը մարդուն միտքն անմիջապէս կը գրաւէ: Բոլոր գրութեան մէջ բացարձակ իշխանութեան մը, բայց եւ գոհունակութեան ու վստահութեան հոգին յայտնապէս կը տեսնուի: Որմէ իրաւամբ կրնանք հետեւցընել, թէ ինչ մեծ յարգանաց ու պատուոյ մէջ եղած պիտ'որ ըլլան մեր պապերն՝ որ մէկ կողմէն իրենց արժանիքը յիշած, զիրենք բարձրացուցած ու գոված ատեն, մէկալ կողմէն, իբրեւ թէ կը գգուեն ու կը շոյեն, որպէս զի աւելի եւս իրենց ձգեն ու վստահութիւննին վաստկին:

## 8.

Անտարակոյս քանի մը պարագայ շատ նպաստամատոյց եղած պիտ'որ ըլլայ, գործոյս այսպիսի արտաքոյ կարգի արագ կատարման եւ յաջողակ գնմանը: Եւ նախ՝ որ — ինչպէս վերն

*ալ ըսինք — դժուարութիւններն ու մեծ գո՛րծքին առջեւն ելած խութքերն արդէն քանի մը տարի յառաջ Վիեննա խրկուած պատգամաւորաց ձեռօք հարթուեցան ու շտկուեցան։ Երկրորդ. որ պետութիւնն՝ առանց իր կամացը՝ պլլուած էր այն փափուկ խնդրոյն մէջ, թէ վերոյիշեալ կալուածատէրութիւնն ու երկիրներն որո՞ւնն են։ Հիմակ ուզեց վէճին թելը շուտով կտրել եւ բացարձապէս յայտնի ընել, թէ երկիրներն իրենն էին ու իրենն են ներկայապէս ալ։ Երրորդ. աւստրիական պետութիւնը՝ թէ՛ շլեզիական ու յաջորդութեան ու թէ՛ բրուսիական եօթնամեայ պատերազմներուն պատճառաւը՝ շատ նեղութեան մէջ մտած ու տէրութեան գանձը սաստիկ նուազած էր, որով դրամի պէտք ունէր։ Չորրորդ. շատ մը պաշտօնեայ բարեկամ, արքունի ներքին խորհրդական ու մեծամեծք՝ վաստկուած էին — զանազան ճամբաներով — ազգայիններէն։ Եւ վերջապէս հինգերորդ. արտաքոյ կարգի շրջահայեցութիւնն, աշխոյժ գործունէութիւնն ու դրամական մեծ զոհողութիւնն, որոնց միջոցաւն ի վիճակի եղան Եղիսաբեթուպոլսեցիք, գործքերնին անհաւատալի արագութեամբ ի գլուխ հանելու։*

*Ան ստոյգ է, որ այս եւ սոյն տարւոյն Նոյեմբ. 18ին կրկին հրովարտակներն Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց 124.581 ֆիորին եւ 11 քառանգանի նստան։ Սակայն ո՛վ կրնայ անգիտանալ, թէ այս էր գլխաւորաբար այն զօ-*

րաւոր զսպանակը, որ քաջալերեց զՀայերը՝ գործքերուն մէջ առանց վհատութեան յառաջ քալելու։ Ա՛յս էր այն քաղցր կերը, որով անձնատուր ըրին ամէն թշնամիներն ու անգործունեայ ամէն հակառակորդները։ Յայտնապէս ստուգուեցաւ հոս ալ այն ծանօթ առածը թէ դրամը կը կառավարէ զերկիրս։ Հայերը շատ լաւ գիտէին ասոր ոյժը. եւ լաւ համոզուելով թէ միայն ասոր միջոցաւն ամէն բանի կարող են, սփռեցին, բաշխեցին զայն առանց խնայելու, ա՛յն ամէնուն, որ այս պաշտօնական ու կարեւոր գործոյն մէջ առջեւնին կ՚ելլէր։

Եւ յիրաւի, եթէ մտադիւր հայեցուածով մը քննենք, թէ վերոյիշեալ — այն ատենի համար ստուգիւ — անհատնում դրամն ուր եւ ի՛նչ բանի գործածեցին. կը գտնենք թէ՝ երկիրներուն ստացմանը համար, ինչպէս կայսերական հրովարտակին մէջ յայտնապէս կը յիշուի, միայն 60·000 ֆիորին տուած են։ Ո՞ւր է ուրեմն եւ ի՞նչ բանի գնաց այս գումարին մեծագոյն մասն, այսինքն 64·581 ֆիորինը։ — Այս հարցման պատասխանը գրուած կը գտնենք այն հաշուեգրքին մէջ, զոր երեսփոխանք քաղաքային վարչութեան մատուցին, հաշիւ տալով՝ մինչեւ ցվերջին քառանդան այն ամէն ծախքերուն վրայօք, զորոնք ի նպաստ այս գործոյն ըրած էին։ Ասոր մէջ անցած են մէկիկ մէկիկ պարգեւաբաշխութիւնները՝ չէ թէ միայն պաշտօնատեարց, ու անոնց՝ որոնք իրենց գործոյն ձեռնտու եղած են ուղղակի կամ անուղղակի կերպով,

այլ նաեւ այն ամէնուն, որոնցմէ յոյս կար, թէ գոնէ հեռուանց գործին մէջ մաս կրնան ունենալ։

Այսպէս, օրինակի աղագաւ, այն ծախքերէն զատ, զորոնք հարկաւոր կը համարէին երեսփոխանք գործին համար, ու որոնք պէտք ալ էին, որպէս զի իրը յաջողութեամբ լմըննայ (ինչպէս 16.000 ֆիորինը՝ զոր տուին քաղքին՝ ոգեւոր ըմպելեաց իրաւանց գնմանը համար. — 2200 ֆիորինը՝ առանձնաշնորհութեանց տուրքին համար. — 30.000 ֆիորին՝ Գաբրիէլ Պէթլէնին, — 100 ոսկի՝ արձանագրութիւնը գրողին, — 300 ֆիորին՝ արքունի իրաւանց հարկին համար, եւ այլն. —) կը հանդիպինք շատ մը անանկ պարգեւաբաշխութիւններու, որոնք երկրորդապէս միայն հարկաւոր էին։ Այսպէս, ի մէջ այլոց, պարգեւեցին Շմիդլինկ պարոնին, իր աշխատութեանցը համար, մետաքսէ թաշկինակի մը մէջ 200 կտոր ոսկի կամ 834 ֆիորին. բաց ասկէ՝ տակառակ մը Թոգայի գինի (145 ֆիորին) ու 145 ֆիորին արժէք ունեցող արծաթէ կերակրոյ սպասք մը։ Զիկլէր արքունի ներքին խորհրդականին՝ տակառակ մը գինի, որուն գինն էր 150 ֆիորին։ Հորվաթ արձանագրին 100 ոսկի. — Պանտի խորհրդականին 145 ֆիորին արժող արծաթէ սպասք մը. — Զէրէ ատենադպրին քարտուղարին՝ կաղամար մը, զոյգ մը արծըթէ աշտանակ ու կտոր մը կտաւ՝ որոնց գինն էր 142 ֆիորին. — Պօպօշ գործակալին, որ աշխատեցաւ երկիրներուն գըն-

մանն ու արտօնութեանց հրովարտակներուն
ստացմանը՝, 200 ոսկի, այսինքն 833 ֆիորին.
20 քառանդան. ասոր քարտուղարին 16 ֆիո-
րին. — Պարոն Տիդրիխին՝ շաքար, խահուէ եւ չո-
գալադ (25 ֆիորին)։ — Անտոն Պոլու խորհրդա-
կանին քարտուղարին՝ 25 ֆիորին։ — Գրաչո-
վիլին՝ արտօնագիրը գրելուն համար՝ 50 ֆիո-
րին։ — Ասոնցմէ զատ պատգամաւորաց մտա-
դրութիւնը տարածուեցաւ նաեւ պաշտօնա-
տեարց ամուսնոց, գրագիրներուն, ծառայից,
նժուգաձգացը (lakai), դռնապաններուն վրայ
եւ այլն։ Ու տեղւոյն, անձին ու յարմարութեան
համեմատ կը պարգեւեն՝ իրական դրամէն զատ,
կաղամար, կտաւ, թաշկինակ, կեղծամ, գտակ
եւ այլն։

Այն քաղաքացիք, որոնք՝ իրենք զիրենք
պարտաւորած էին մինչեւ Աւգոստոսի վերջը
նախագրուած դրամը վճարելու. ինչպէս վերը
տեսանք, պարտքերնին ամենայն ճշդութեամբ
կատարեցին։ Մանաւանդ թէ շատոնք որպէս
զի չըլլայ թէ դրամի պակսութեամբ գործքին
յառաջացումն ու յաջողութիւնն ուշանայ, ժա-
մանակէն յառաջ իրենց վրայ ինկած կամ դրուած
մասը հատուցին։ Ասիկայ ակներեւ կը տես-
նուի երեսփոխանաց՝ քաղ.քին հասարակու-
թեան մատուցած հաշուէն. որուն մէջ՝ չէ թէ
միայն ընդհանուր ու վեր ի վերոյ հաշիւ մը, չէ
թէ միայն մեծագոյն գումարներն անցուցած կը
գտնենք — զոր՝ քաղ.քէն ընդունած իշխանու-
թեան համեմատ կրնային ընել —, այլ ման-

րամասնաբար ամէն մուտքերն ու ելքերը մէկիկ մէկիկ ճշդիւ ու որոշակի նշանակուած են։

Պատգամաւորք հաշիւնին ներս տուած ատեն, օրինաւոր ընծայման թուղթ մըն ալ ներփակած կը ներկայացընեն հասարակութեան, անոր մէջ համառօտիւ մը յառաջ բերելով թէ իրենք քաղաքային վարչութեան կողմանէ լիակատար իշխանութիւն ունեցած են ձեռուընին՝ Վիեննա երթալու եւ հոն գործելու. եւ թէ՝ երկիրներուն վաճառման եւ կայսերական արտօնութեանց հրովարտակին ստացմանը համար չէ թէ միայն Եղիսաբեթուպոլսոյ հասարակութենէն, այլ նաեւ Հերմանշդատի գերագոյն կառավարութենէն առ այս իրենց յանձնարարութիւն եղած է։

Աս ամէնուն վրայ աւելի պայծառ ու որոշ գաղափար մը կը ստանանք, եթէ որ վերէն ի վար հայեցուած մ'ընենք այն ամէն մուտքերուն եւ ելքերուն վրայ, զորոնք երեսփոխանք ընդունած ու ըրած են, իրենց ճամբայ ելլելէն մինչեւ արքունական կալուածներուն գործքին գընման կատարումը. այսինքն 1758 Մայիս 8էն, մինչեւ 1759 փետր. 14։

Արդ՝ երկու պատգամաւորաց՝ քաղքին խորհրդարանին մատուցած ելեւմտից հաշիւն, ըստ տարեգրին այսպէս կը սկսի։

"Աստուծոյ ողորմութեամբն Տէբուդովադըլալով մեք ներքոյ գրեալքս Պաւելի Էլիզա՝ բէգ Քաղաքին Մակխդրադէն, նաեւ Պ. բոլոր Հասարակէն երթալու Վիենան վասն իպաշֆա-

լօվին Տօմինիումին, նաեւ Պատուելի քաղաքին նոր բրէվիլեկիումին. որ Տէբուդաձիան, որ ալ Հաստատ ըլլայ տվին մեր ձեռն բլէնիբօդէնձիայ[1] գերապանծ կուպէրնիումէն՝ մեր Թագուհոյն մոհրօվըն. որ բլէնիբօդէնձիան 1758 մայիսի 8 Սիպինը գրեցաւ. վասն որոյ անցներըս արնելով կու գրվի հոս այլվար զամենայն բէրձէբձիաներն[2], որն որ առիլինք զայն տէբուդաձիային „:

Այս համառօտ բայց կտրուկ ու շատ բան պարունակող յառաջաբանէն ետեւ, կը սկսին մէկիկ մէկիկ շարել ժամանակագրական կարգաւ այն ամէն եկամուտներն, որոնք ձեռուընին եկած են, մասամբ քաղքէն, կամ քաղքին միջնորդութեամբը Եղիսաբեթուպոլսոյ ներկայացուցիչներէն, մասամբ առանձնականներէն, մասամբ պէթլէն կոմսին ներկայացուցիչներէն, այսինքն Յովսէփ Պոլոյէն եւ Ստեփանոս Հալմակիէն, դարձեալ՝ Հէրմանշդատի կառավարութենէն, Ա. Պօպօշին՝ Եղիսաբեթուպոլսոյ գործակալին կնոջմէն, Աւքսենտիոս Խոզուցեանէն, Յովսէփ Կարոլոս Ֆուքսէն, Վիեննայի Թղթատարութենէն, մաքսատնէն, Վիօլանդէն եղբայրներէն եւ այլն. եւ այլն:

Տեսնենք նախ մուտքերն բառ առ բառ այնպէս, ինչպէս զասոնք երկու պատգամաւորները գրի անցուցած ու 1759 փետր. 14ին քաղքին հասարակութեան ներկայացուցած են:

---

[1] Լիակատար իշխանութիւն։

[2] Perceptio. մուտք, եկամուտ։

| | R. Fl. |
|---|---|
| „1758 Մայիսի 13 Ելէզաբէդան. Պ. Քաղաքին Էքզաքդօրիայէն [1], գվիդանձիայով [2] . . . | 833.20* |
| Յունիսի 9. Վիէնան, ծեր գօզմայէն ռէֆէրէնտարիուսէն, Պաուելի Ելիզաբեդ քաղաքին ալպայօմն եւ մեր շուսգրիբձիայօմն առինք . . . . . . . . . . . . | 4000.— |
| Շահու հարըրի վեցօմն 3 տարօվ. եւ այս դէրմինըս անցնելով կամէնար զգարիդալն արնելու նայ, ունենայ կէս տարօվ առաջ իմաց անէլու։ Նմանապէս թէ որ գօմունիդաշն չուզէնար ալ շատ բրնելու նա, այլվի ունէնայ կէս տարօվ արաջ իմացնելու. | |
| Յունիսի 20. Վիէնան, պաուելի գօնչիլեարիուս ուտվօրհէլի Պանտի ֆէրէնցէն առինք շահու տարին գլօխ, որ երփալ պէտք ըլլար գարիդալն, նայ ունենայ գօմունիդաշին 3 ամսօվ առաջ իմաց անէլու. որին մօտ տվինք զՊաուելի քաղաքին ալպան մեր՝ շուսգրիբձիայօմն սումայ | 8333.20 |
| Յուլիսի վերջն. Աղա Թումանէն Ջատիկեանց, վիէնան. զԱղաչայ խնկանոսին հանգօյեանց աղակն մեր գվիդանձիայօմն. . . | 1500.— |
| Յուլիսի վերջն. Նմանապէս Աղաչայ. Թումանէն զատիկեանց, զուէքարձիան, որն որ իրեն հրամանոցն վրայ ընկլէ. մեր գվիդանձիայօմն . . . . . . . . . | 208.20 |
| Սումայ | 14875.00 |

---

[1] Հարկապահանջի պաշտօն. տուրքերը քաղել, ժողովելը։

[2] Լատ. բառ է. կը նշանակէ՝ անդորրագիր։

* Հաշիւներուն մէջ կրկին սիւնի տակ երկու տեսակ ֆիօրին անցուած է. այսպէս 1000 H. Fl. = 883.20 R. Fl. — Դարձեալ՝ 10.000 H. Fl. = 8333.20 R. Fl. եւ այլն։ Առաջինը՝ հունգարական, երկրորդը՝ ռենոսական ֆիօրին է։ Մենք միայն եաքինն, այսինքն ռենոսականն առած ենք։ — Մէկ ռենոսական ֆիօրինը 60 քառանդան էր — եւ հիմակուան 105 քառանդանի կամ շուրջ 2 ֆրանք եւ 20 սանդիմի հաւասար։

| | |
|---|---|
| Տրանսպորտում | 14875.00 |
| Օգոստոսի 1ma. վիէնան. Աղաչայ. Անդօնէն Նիգօլի Խոիգուցեանց. մեր գվիդանձիան տալով . . . . . . . . . . . . | 1000.— |
| Օգոստոսի 5ին. Վիէնան առինք Ա. լուտվիհ տէքրէդէն Fl. 4/m. որն որ տվլինք գանձալարիուսին, զոր ըողակըն վիճարեցինք Պ. Աղաչայ Պիրօվին Ա. անկսէնտին Ա. մանուկին խոիգուցեանց մօտէն արած ըսդըկօվըն, որպէս օր կու ցըցնու էրօկանձիան . . . . . . . . . . . . | 4000.— |
| Օգոստոսի 17. Վիենան լմնցընելով կրօֆ Պէդլէնկապօրին զ20/m.[1] fl. քի մուդումն, որ ադակներն ալ առաջ տալով մինչեւ գօնգրագդ անելն, առինք շահ մօտէն[2] . | 97.30 |
| Աստուծոյ ողորմութեամբ 1758 Սեպի 1ma բէշդըն, մեր Պատվէլի էլիզարէդ քաղաքին Աղաչանուն խրկած ըշբէցիֆիգացիային[3] գօրայ քաղվեցաւ այս Աղաչանուն մօտէն, որոնց ատուկ ատուկ գվեդանձիայ տվինք. | |
| Ա. Գրիգորէն Սհակի ագոնց. վասն Ա. օհանին տէր ակօբէնց առինք . . . . . . | 1966.40 |
| Ա. Խաչիկէն մանուկի. մէղտեսոնց. վասն Ա. վարդանին եօլպէյեանց . . . . . . . | 500.— |
| Ա. Գօտէրէն վարդանի խոիգուցենց . . . | 208.20 |
| Ա. Մարտիրօսէն Ա. Մանուկի խոիգուցենց . | 250.— |
| Ա. Անկսէնտի Եղիայէն . . . . . . . | 20.50 |
| Սումայ | 22918.20 |

[1] Ինչպէս վերը Fl. 4/m.ին նշանակութիւնն է quatuor millia. այսինքն 4000 — անանկ ալ հոս 20/m. fl. կը նշանակէ 20.000 ֆիորին։

[2] Իմաստն է. Գէորգ Պէթլէնի քսան հազար ֆիորինը յառաջուընէ փոխ տալով՝ պարտագիր ընելէն յառաջ՝ իրմէն շահ առինք . . .։

[3] Specificatio բառն է. կը նշանակէ մանրամասնութիւն, մէկիկ մէկիկ նշանակուած ըլլալը, ցանկ։

| | |
|---|---|
| Տրանսլադեւմ | 22918.20 |
| Ա. Մարտիրոսէն զախնօյենց. վասն Ա. Սնբէգրեանց գրիգորեան . . . . . . . . | 83.20 |
| Ա. Եղիայէն անկսէնտի. վասն Ա. Թորոսին դիւրիւգեանց . . . . . . . . | 833 20 |
| Ա. Գրիգորէն ասվատրին. վասն Ա. Խաչգօյի Սնբէգրեանց . . . . . . . | 1250.— |
| Ա. Գրիգոր ասվատրի, վասն իրեն հրամանոցը համար . . . . . . . . . . | 83.20 |
| Ա. Գրիգոր Իսայի. վասն Ա. Լուսիկին շիմլովցոնց . . . . . . . . . . . | 300.— |
| Ա. Ըստեփանէն գաբադանի. վասն Աղաչայ Նիկօլին շիմիլովցոնց . . . . . . | 208.20 |
| Ա. Գրիգոր Սհակի ագոնց. վասն իրեն հրամանոցը . . . . . . . . . . | 500.— |
| dto վասն փեսին Ա. Ղազարին անտրէանց . | 208.20 |
| dto վասն Աղբօրն Ա. Լուսիկին Սահակի ագոնց . . . . . . . . . . . | 66.40 |
| dto վասն Մադիասին . . . . . . . . | 58.20 |
| Ա. Խաչիկ մանուկի Մեղտեսոնց. վասն իրեն | 500.— |
| Ա. Պետրոս գօշօղանի . . . . . . . . | 41.40 |
| Ա. Վարդերես Ա. մինասի բդրշգօյենց. վասն տէպրէցինցոցն գումբանիային. . . . . | 231.15 |
| Ա. Վարդանէն Թորոսի ագոնց ճուրճովէն . | 4000.— |
| Ա. Գրիգորէն Նիգօշի ճուրճօվէն . . . . . | 2916.40 |
| Ա. Մկրտիչէն տօպլի . . . . . . . . | 250.— |
| Ա. Անկսէնտէն մուրատի . . . . . . . | 166.40 |
| Ա. Նասդուրէն Նիկօլի . . . . . . . . | 58.20 |
| Ա. Խնկանոսէն Հանգօյի . . . . . . . | 489.45 |
| Ա. Անտրաչէն Վալօվցուն . . . . . . . | 50.— |
| Աստուծոյ ողորմութեամբն վիճնան առածներըս. | |
| Ա. Զատիկէն Ա. մանուկի խիգուցեանց . | 250.— |
| Ա. Մարտիրոսէն գօշօղանեանց վէքսըլով Սեպի 26ին . . . . . . . . . . . . | 833.40 |
| Սումայ | 36298.00 |

Դրանսլադում 36298.00

Ա. Անկաէնտէն Ա. Մանուկի խիգուցենց վասն. Ա. Մանուկին խիգուցեանց . . 500.—

dto Ա. Անկաէնտէն որ պարտէր սուրբ գրիգոր լուսաւորչայ գօնկրէկածիային . . 190.41

Ա. Վարդան լուսիկի խասօյեանց. վասն Ա. Տօնիկին Տիագոնեանց . . . . . . 833.20

Ա. Վարդան լուսիկի խասօյեանց. վասն իրեն հրամանոցն . . . . . . . . . 1000.—

Գիտացվի, որ վերագրեալ Ա. Վարդանին աղբարն, Ա. Թումանը, տվավ մեկ խասափչու զարիսն դօմաս դելրինի, վասն վերոյ գրեալ սոըկին. որ ըադըլկէն առիլինք հօկ. 14ին, 1416 fl. 13 kr. եւ Նոյեմբերի 16ին. 480 fl. 30 kr. հօս կու աւելնայ. որպէս որ պիտոր տար 63 fl. 23 kr. որ ոդակն օգոսդոսի 29ին բէշդն տվի իրեն հրամանոցն.

Սեպի. 1ma Բէշդըն առինք զմեր Պատուելի Աղաչանուն խրկած գվիդանձիան, որ վրայ դրիլին Սիպինը Իպաշֆալօվին Տօմինիումին դիմաց կրօֆ Պէգլէն կապօրին բլէնիբօդէնձիարիուշնուն, այսինքն Ա. Պօլցյ եօժէֆին եւ Ա. Հալմակի իշդվանին. հինկ բօսդի մէջ. որպէս կու ցըցնու գվիդանձիան տադումներով. սումայ . . . . 43000.—

Հոկտեմբերի 28. Վիեննան բերաւ Ա. Թօրոս, դիւրիւգեանց տանէն, մեր Պատուելի Աղաչանուն մօտէն մէկ պարկըճիկին մէջ մոհրած 1000 ոսկի նոր . . . . . . 4166.40

dto վերոյ գրեալ Տադումին բէրաւ վերոյ գրեալ Աղաչան մէկ գվիդանձիան, որն որ մեր Պատուելի էլիզաբէդ քաղաքին աղաչաներն դրիլին Սիպինը կրօֆ Պէգլէն կապօրին բլէնիբօդէնձիարնուն տօմինիու-

Սումայ 85988.41

Դրանսլադում 85988.41

*մին գինոչը գիմաց․ այսինքն․ Ա․ Պօլօյ Նօժէֆին եւ Ա․ Հալմակի իշխանին* · 12000.—

*Նոյեմբերի* 1ma *Վիեննան Ա․ Պօպօշէն, մեր ակէնդին Պիքայէն առինք շահու հարրի վեցով, այս գօնտիձիայօմն, որ գաղուգվօյ պէտք ըլլար գարիդալը, նայ ունէնայ* 3 *ամ․ սով առաջ գօմունիդաշին իմաց անելու․ ուրուխ տվինք զՊ․ քաղքին ալպան մեր շուագրիրձիայօմն · · · · · սումայ* 2000.—

*Նոյի․ 5ին․ Վիէնան․ Պ․ Ա․ Պիրօվէն Ա․ անկաէնտէն Ա․ մանուկի․ խիդուցեանց, որ ըսդկօմն վիճարեցինք զօգոստոսի 5ին առած ըսդակըն տէքրէդին* · · · · 4000.—

*Նոյի․ 13ին․ Ա․ Եօզէֆ գարըլ ֆուքսէն վէքսըլօվ Ա․ մարտիրոսին գօշօղանեանց օրտրին գօրայ* · · · · · · · · · · 2000.—

*Նոյի․ 15ին․ Վիէնան, Բօշդայէն մէկ գվիդանձիամն, որն որ Պաուելը Աղաչաններն դըրիլըն Սիպինը, գասան, դաքշային ուէտէմձիայի համար* · · · · · · · · · 5000.—

*Նոյի․ 15ին․ վիէնան․ Ա․ Ջատիկէն Թորսեանց․ զԱ․ դօտէրին վարդիկեանց ըսդակըն, որին վրայ տվինք գվիդանձիայ․* · · 3260.—

dto *վերոյ տադումին Ա․ զատիկէն զԱ․ խնկանոսին ամիրայեանց ըսդակըն* · · · · 800.—

dto *Ա․ Ջատիկէն զԱ․ Դօտէրին վարդիկեանց եւ Ա․ լուսիկին ամիրայեանց ըսդակըն* · 209.07

*Նոյի․ 20ին․ վիեննան․ Պ․ Ա․ Պիրօվէն Ա․ անկաէնտէն Ա․ մանուկի․ խիդուցեանց․ օպլիկաձիայ տալօվ․* · · · · · · · · 3000.—

*Դեկի․ 5ին․ Ա․ սավատրէն ոսդերիչեանց․ գվիդանձիայ տալօվ․* · · · · · · · 605.—

Սումայ 118862.48

Դրանսլադում 118862.48

Դեկկ. 12ին. Հաւդմաուդէն զԱ. ասվատրին ոսգերիչեանց ռուգցօլն[1] . . . . . . 2292.16

Դեկկ. 30. վիեննան Պ. Ա. Պիրօվէն Ա. անկօէնտէն Ա. մանուկի. խոջուցեանց. օպլիկածիայով . . . . . . . . . . . 1750.—

Դեկկ. 30. Ա. Կէպրիտըր վիօլանդէն զԱ. Դօտէրին վարդիկեանց բոդակըն գվիդանձիայ տալօվ . . . . . . . . . . 1709.—

1759 ունվարի 3. վիեննան. Կրօֆ Պէդլէն կապօրէն զ10/m. քի[2] մուդումին շահըն, մինչեւ գօնդըրագդ անին . . . . . . . 51.06

Ունվրի. 22ին. Վիեննան Պ. Ա. Պիրօվէն Ա. անկօէնտէն Ա. մանուկի. խոջուցենց օպլիկածիայով . . . . . . . . . 200.—

Ունվրի. 30ին Բեշդն Ա. ասվատրէն վիգօլեանց օպլիկածիայով . . . . . . . . . 83.20

Սումայ Սումարում. R. Fl. 124.948.30

Անթօնիոս Մանուկ Խոջուցեանց m. p.
Տէրուդադուշ Պատուելի Էլիզաբէդ քաղաքի։

Աստվատուր Վիգօլեանց m. p.
Տէրուդադուշ Պ. Էլիզաբէդ Քաղաքի։„

Ասկից կը տեսնենք ուրեմն, թէ պատգամաւորաց ձեռքն ինն ամսուան միջոցի մէջ, այսինքն 1758 Մայ. 14էն մինչեւ 1759 Յունուար 30 հասած է այլեւայլ հաշուով ու այլ-

[1] Անտարակոյս կամ rück-zahlen կամ Rück-zoll գերմաներէն բառն է։ Եթէ առաջինն է, անշուշտ յետս վճարումն, դրամոց գումար մը ետ դարձընել պիտ՚որ նշանակէ։ իսկ եթէ երկրորդն է, այն ատեն ցուցէ ետ դարձուած մաքս, կամ մաքսէն ետ դարձուած ստակ կրնայ ըլլալ։ — Բայց հաւանականագոյնս առաջինն է։

[2] Այս +ի մասնիկը՝ մաճըրքի բառին վերջի մասն է։ Եւ ինչպէս որ վերը 20՝ անանկ ալ հոս 10 հազար ֆիորինին քով կը նշանակէ՝ մաճրքի — այսինքն հունգարական ֆիորին, զանազանելու համար ռենոսական ֆիորինէն։

եւայլ կողմանէ՝ երկրին գնման ու արտօնութեանց հրովարտակներուն ստացմանը համար 124.948 ռենոսական ֆիորին եւ 30 քարանդան:

Ելքերու հաշիւն ալ միեւնոյն յառաջաբանն ունի, զոր ունէր եկամուտներունը՝ այսպէս.

“Այ ողորմութեամբն մեք ներքոյ գրեալքս Տէբուդօվադ ըլալով մեր պատվելի Ելիզաբէդ-Քաղաքին Մակիսդրադէն, նաեւ պատուելի բոլոր Հասարակէն, երթալու վիենան վասն ի պաշֆալօվին Տօմինիումին, նաեւ պատուելի նոր բրէվիլէկիումին, որ տէբուդաձիան որ այլ հասդատ ըլայ, տվին մեր ձեռըն բլէնիբօդէնձիայ գերաբարձր կուպէրնիումէն մեր Թագուհոյն մոհրօվըն, որ բլէնիբօդէնձիան գրեցաւ 1758 մայիսի 8ին Սիպինը. վասն որոյ անձերս արնելով կու գրվի հօս այլ վար ամենայն էրօկանձիաներն, որն որ արիլինք այս տէբուդաձիային:„

Ահա ելքերուն հաշիւն ալ ըստ արձանագրութեան:

| | R. Fl. |
|---|---|
| “գ. Վարդապետին Պատարագի . . . . | 4.10 |
| Վ. Հայր Ղազարին Պատարագի . . . . | 4.10 |
| Վ. Հայր Մարկոսին Պատարագի . . . . | 2.— |
| Վ. Հայր Օվանէսին Պատարագի . . . . | 2.— |
| Վ. Հայր Թորոսին Պատարագի . . . . | 2.— |
| Մայիսի 21. ռակնան Պատարագի . . . . | 4.10 |
| Մայիսի 26. Բէշդըն Ա. գրիգորի Սհակի Ագոնց գրըվուշիան[1] . . . . . . . | 83.20 |
| Սումայ | 101.50 |

[1] Այսինքն՝ կառաց վարձքը:

| | |
|---|---|
| Գրանսլադում | 101.50 |
| Գրըվուշիան Բէշդէն մինչեւ ի Վիենան . . . | 16.46 |
| Վ. տէր Մանուէլին Պատարագ . . . . . | —.30 |
| Մէկ լալեխի ապրշմէ. որն որ կայ[1] . . . . | 2.12 |
| Ունիսի 20. Վիեննան առինք շահու Ա. ուտավօրհէլի Պանտի Ֆէրէնցէն 8333 fl. 20 kr. որպէս կու երեւնայ բէրձէրձիային սէպէրուն մէջ. եւ կամէնալով որ զմէկ տարեկան շահըն տանք իրեն հրամանոցն, առաջ որ վճարած ըլայ շահըն, 1758էն ունիսի 20էն, մինչեւ 1759 ունիսի 20ը տվինք . . . . . . . . . . . . . | 500.— |
| Ուլիսի 13ին Վիեննան վճարեցինք Ա. ասվատրին վիգօլեանց 1000 զլօթն որնոր առիլէինք էքզաքդօրիային ալդօլ իրենց հրամանոց մօտէն . . . . . . . . | 1000.— |
| dto երկու ամսեն շահ տվինք. արնելով զգօնդրագդըն . . . . . . . . . . | 10.— |
| Ուլիսի 28ին Տօնածիային դաքշան լիպէլուշովըն[2] . . . . . . . . . . . . . . | 1900.— |
| dto իւշ ըէկխումին դաքշան . . . . . . | 300.— |
| Սեպտեմբերի. 1ma. Բէշդըն վճարեցինք Ա. ասվատրին, քէլեանց տանէն. Պ. Աշաչանուն գրածին զօրայ, առնելով զՊատուելի քաղքին գօնդրագդըն. . . . . | 6400.— |
| Ասոր շահըն 10 աւուր . . . . . . . . . | 10.40 |
| dto վճարեցինք այլվի Ա. ասվատրին Քէլեանց, զայն ողակն, որն որ Ա. օվանէսն Անբէդրեանց տուվիլէր տունը Պատուելի քաղքին շահու, արնելով զհին գօնդրագդըն . . . . . . . . . . . . . | 500.— |
| Ասոր շահըն $2^3/_4$ ամսեն . . . . . . . | 8.15 |
| Սումայ | 10750.13 |

[1] Այսինքն, որն որ դեռ կեցած է, կայ։

[2] Լատիներէն բառ է. կը նշանակէ գրքոյկ, թուղթ աղէրս։ Տես նաեւ 198 էջին ծանօթութիւնը։

| | |
|---|---|
| *Դրանսլագում* | 10750.13 |
| *Բէշգըն երթալն եւ գալն գրըվուշիայ եւ օղկայ խարճեր* . . . . . . . . . . | 36.57 |
| *Սեպ.* 13. *Ցօնածիային*[1] *խարճերն* . . . . | 23.08 |
| *Ցօնածիային գլաբսուլային*[2] . . . . . . | 10.— |
| *Եանիգօրին եւ պէրկրին Ցօնածիային հօհրէլչէքն* . . . . . . . . . . . . | 8.20 |
| *Ըշդադուցիային*[3] *հօհրէլչէքն* . . . . . . | 4.10 |
| *Մէկ դէաւք*[4] *մոհրէլու* . . . . . . . . | 6.— |
| *Մէկ հայլի, քաղքին սէպին վրայ* . . . . | 25.— |
| *Շաքրի, գաֆէի, որն որ թագաւորաց տվինք առջի մէկութ պաշխըշ* . . . . . . | 194.10 |
| *Հօկի.* 10. *գրաշովիլին Ցօնածիային գրէլչէքն* | 50.— |
| *Մէկ աման*[5] *դօզայի գինի* . . . . . . . | 150.— |
| *Հօկի.* 23*ին. Պարօյ շմիգլինկին մէկ Ապրշմէ քսակի մէջ* . . . . . . . . . . | 834.10 |
| dto *մէկ աման դօզայի գինի* . . . . . . | 150.— |
| *Հօկի.* 30. *Ձիկլըին գամէրէ գօնգիլիարին մէկ աման դօզայի գինի* . . . . . . . . | 150.— |
| *Մէկ տուձ*[6] *գանաֆաս լալեխ Պօլու եօժէֆին՝* | 9.— |
| 2 *հատ պարօզայ* . . . . . . . . . . | 4.— |
| 2 *հատ գուրիր գաբըլ* . . . . . . . . | 5.— |
| *Պատարագի գօնձէրդաձիային*[7] *գիմաց* . . . | 4.10 |
| *Սումայ* | .2414.18 |

---

1 *Պարգեւաբաշխութիւն, տուչութիւն. լատ. բառ է։*

2 *Լատ.* capsula. *գզ.* capsul. *պատեան. աման, տուփ. այսինքն, այն թիթեղէ կամ խաւաքարտէ տուփն որուն մէջ հրովարտակը, պատճէնը կը պահուի։*

3 Statutum, *կանոն, կանոնադրութիւն։*

4 *Այսպէս գրուած է. Ի՛նչ բառ ըլլալը չեմ կրնար հանել։ Անշուշտ կնքելու համար բան մը պիտ՚որ ըլլայ։*

5 *Աման բառը Դրանսիլուանիայի հայոց լեզուաւը տակառ կը նշանակէ։*

6 Douzaine *կամ գերմ.* Dutzend *տասներկու, երկվեցեակ բառերուն կարճառօտուածն է, կարծեմ։*

7 Concertatio, *լատ. է. կռիւ, բանակռուութիւն, վէճ, կը նշանակէ։*

| | |
|---|---|
| Դրանսլադում | 12.414.18 |
| Նոյեմբրի 21. վճարեցինք զՊ. Քաղքին դաք-շային ռետեմձիան[1] . . . . . . . | 16000.— |
| Հոկի. 7ին առիլէինք Տէքրեգէն 2/m. քի շա-հու նայ, տվինք շահ . . . . . . . | 15.— |
| Օգոստոսի 5ին առիլէինք լուտվիհ տէքրեգէն շահու 4/m. Fl. որ ըսդակն Նոյի. 5ին Ա. Պիրօվին մօտէն ըսդկօճն վճարեցինք. ուրուխ տվինք շահ տէգրեգին . . . | 60.— |
| Դեկի. 2ին գօնչիլիարիուս պանտիին մէկ ար-ծըլթէ աւսած[2] . . . . . . . . . . | 145.— |
| Դեկ. 7ին. չէրէին գանձալարային սէքրէդա-րին մէկ կմըը.[3] եւ մէկ ճուֆդ ճիրախգալ՝ արծըլթէ, եւ 1 կտոր կտաւ . . . . . | 142.— |
| Դեկի. 7ին Շօմլօյին գօնչիլիարին մէկ արծըլթէ աւսացին . . . . . . . . . . . | 145.— |
| Դեկի. 11ին. Ֆէսգին ռեկիսդրադօրին[4] զըրէ-վիլիկիումին դաքշան . . . . . . . | 2200.— |
| Փատի տվինք. . . . . . . . . . . | 8.— |
| Դեկի. 25. Պարօյ տիդրիհին շաքար, գաֆէ, չօգօլադ . . . . . . . . . . . . | 25.36 |
| Պօլու անդօլին[5] գանձալարիուսին սէքրէդարին | 25.— |
| Քէմֆին լօգային. . . . . . . . . . | 4.10 |
| Գանձալարիուսին . . . . . . . . | 16.40 |
| Լաուֆրին[6] . . . . . . . . . . | 8.20 |
| Առաջի լօգային . . . . . . . . . | 4.10 |
| Երկուսումին . . . . . . . . . . | 2.— |
| Բօրդիրին . . . . . . . . . . . | 4.10 |
| Սումայ | 31219.24 |

1 Ռետեմձիա = Redemptio. փրկանաւորութիւն, վաճառումն։

2 Գերմ. Aufsatz կը նշանակէ՝ սեղանի սպասք։

3 Անտարակոյս "կաղամար„ բառը պիտ՚որ ըլլայ։

4 Registrateur, կոնդակ՝ հրամանագիր արձանագրող։

5 Antal. Անտոն. հունգարերէն է։

6 Գերմաներէն է. կը նշանակէ՝ մանչ կամ ծառայ, զոր միայն աստիս անդին երթալու կը գործածեն։

| | |
|---|---|
| Դրանսլադում | 31219.24 |
| Պանֆիլին բօրդիլին | 2.— |
| Ֆէսդին լօգային | 2.— |
| Պանտիլին լօգային | 4.10 |
| Շօմլօյին լօգային | 4.10 |
| Ջէրէին լօգային | 4.10 |
| Ըշմիդլինկին լօգային | 4.10 |
| Տղայ գօզմային, որ ադակ շըշուիդ[1] առաւ | 25.— |
| Միքշէին գանձալիսդային, որ զտօմինիումին գօնդրագդներն եւ օզկայ գըրեր գրիլէ | 16.40 |
| Բրէվիլէկիումին լիպէլուշին խարճըն | 26.37 |
| Տօնաձիային եւ բրէվէլէկիումին գօդէրուն | 12.— |
| Գրաջօվիլին, բրէվէլէկիումին գրէլչէքն | 50.— |
| Հօրվադին բրօդօգօլիսդային 100 ոսգի | 416.40 |
| Կնկանը մէկ կտոր կտաւ | 20.— |
| Լօգային | 4.10 |
| Պօպօշին մեր ակէնշին, տօնաձիային եւ բրէվէլէկիումին աշխատանքին 200 ոսգի | 833.20 |
| Պօպօշին սէքրէդարին | 16.40 |
| Սօլիձիդադօրին[2] | 8.20 |
| Տօմինիումին գինը ին սումայ | 60000.— |
| Առաջի խօսդացած մուդուում[3] կրօֆ Պէդլէն կապօրին | 20000.— |
| dto Երկուսում այլվի կրօֆ Պէդլէն կապօրին | 10000.— |
| Խօնախին տանը հախն | 68.— |
| 2 Բինձի դօքի[4] | 28.— |
| Հայր Մանուէլի ողորմութիւն | 2.— |
| Հայր Սարգըսին ողորմութիւն | 2.— |
| Սումայ | 122.769.31 |

[1] Շըշուիդ անել, այսինքն չըջեցընել. կը նշանակէ՝ Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւը ստակ փոխել, չըջել։

[2] Լատիներէն բառ է. խնդիր մը, դատ մը յառաջ տանող՝ փութացընող կը նշանակէ։

[3] Mutuum լատ. բառն է, որ կը նշանակէ փոխ, փոխատուութիւն, փոխառութիւն։

[4] Pincetok հունգարերէն բառ է. կը նշանակէ՝ արկղ կամ աման մը, որուն մէջ չիշով ըմպելի կը պահեն (զով մնալու համար)։

| | |
|---|---:|
| Դրանսլադում | 122·769.31 |
| Հայր Օվանէսին ողորմութիւն . . . . . | 2·— |
| Ա. Պօլու անդօլին փոխ, զաբիսով . . . . | 100·— |
| Տէրուդաձիան. Ա. Պիրովինը Ա. անկօէնտինը. Ա. Մանուկի խոխդուցենց. ինը ամսէն 1758 մայիսի 16էն մինչեւ 1759 փետրվարի 14 . . . . . . . . . | 750·— |
| Տէրուդաձիան, Ա. Ասվատրին վիգօլեանց ինը ամսէն 1758 մայիսի 16էն մինչեւ 1759 փետրվարի 14 . . . . . . . . | 750·— |
| Ջատիկին հախը . . . . . . . . . . . | 66·40 |
| 2 ճուֆդ կօշիկ . . . . . . . . . . . | 5·— |
| Գըրվուշիան պէջէն մինչեւ ի բէշդը . . . | 26·— |
| Գըրվուշիան բէշդէն մինչեւ տունը . . . | 64·— |
| Շիմօրին եանիգօրին եւ պերկրին բրէվիլէկիումին մօրհլչէքն . . . . . . . . | 8·20 |
| Աղաչա Պիրօվին Պատուելի Հասարակին խօսդացածին զօրայ 1 ուընտ հագըսդի բարակ չուխայ 7 կան. à 2 fl. 50 kr. . . | 19·50 |
| Ա. ասվատրին վիգօլեանց նմանապէս 7 կան. | 19·50 |
| Սումայ Սումարում R. Fl. | 124·581·11 |

Անդօնիոս Մանուկի Խոխդուցենց. m. p.

Տէրուդադուշ Պատուելի Էլիզաբէդ քաղաքին.

Ասվատուր Վիգօլեանց. m. p.

տէրուդադուշ Պատուելի Էլեզաբէդ քաղաքին:„

Եւ ասով արքունի կալուածոց գնման գործքերն ու հաշիւները լմնցած համարուեցան Եղիսաբեթուպոլսոյ կողմանէ:

Եթէ ընթերցողը մոադիր աչքով դիտէ, կը գտնէ թէ ելքը՝ մուտքէն 367 ֆիորին ու 19 քառանդան նուազ է: Ի վերայ այսր ամենայնի պատգամաւորք Եղիսաբեթուպոլիս

դարձած ատեն, Հետերնին 63 քաւանդան ունէին միայն։ Ուր թողունք ան ալ, որ երկու անգամ 19 ֆիորինն ու 50 քաւանդանը, այսինքն Ջուխայի ստակն՝ զոր քաղաքը խոստացած էր իրենց, անցուած չէին Հաշուոց մէջ. ուստի եւ այս գումարը պէտք եղաւ որ ետքէն քաղքին արկղէն վճարեն Հաշուեկալները։

Աւիկայ ակներեւ բան է։ Սակայն Հաշուոց տարբերութիւնը չտեսնուեցաւ. անոնց աչք գոցուեցաւ։ Գոնէ ձեռուընիս չունինք ասոր վրայօք տեղեկութիւն մը։ Ան ալ կրնայ ըլլալ որ այս պակաս գումարն սկզբնապէս Հաշուոց ելքերուն մէջ անցուած, բայց ետքէն ընդօրինակուելու ատեն — մոռացութեամբ դուրս թողուած ըլլայ. եւ կամ ակնառութեան ու մեզի՝ յետոյ անյայտ պատճառի մը Համար, նոյները՝ բուն Հաշուեգրոց մէջէն Հանուած ու դուրս ձգուած ըլլան։ Որ եւ է կերպով ըլլայ բանը՝ այս գումարն այնչափ Հազարաւոր ֆիորինի Հաշուոց մէջ ոչինչ կամ քիչ փոփոխութիւն կ՚ընէ։

Ջուխայի վրայօք եղած դիտողութիւնը կը գտնենք տարեգրին մէջ յաջորդ կերպով անցուած։

"Աստուծով. գիտացվի, որ վերոյգրեալ Աղաչայ տէրուդադուշնուն Հագըսդի չուխաներն, միայն ասոր սէպն գրածին սէպէրուն մէջ, որ երեւնայ թէ ինչ խարճ էղելէ տէրուդացիային օլգօլմօդօշակոմն. բայց զգինը չուխինը արիլէ Ա. անկսէնտըն քաղքին գասայէն. զէրայ կու գրէ զինքն իրեն Հրամանոցըն պիտվականու-

թեանը էրօկանձիային մէջ. եւ Ա. ասվատրին վիճարիլէ Պ. քաղքին էքզաքդօրիան. զէրայ տէքուդադուշնուն դասան տուն էկան նա, ալ շատ պան չունէին 63 պանէն. անոր պէտք էղիլէ, որ վերայ գրեալ փունտուշնուն արնուն:„

Իրերն այս կերպ վերջանալով՝ երեսփոխանք ուզեցին, որ քաղաքային վարչութիւնը զիրենք այս Հաշիւներու պարտաւորութենէն ու պատասխանատուութենէն տնօրինէ ու արձակէ: Քաղաքն՝ իրենց իրաւացի 'խնդիրն ընդունելով՝ մասնաժողովոյ մը յանձնեց, որ Հաշիւներուն ճշդութիւնը քննէ, ու եթէ անոնց մէջ մտադրութեան արժանի բան մը չգտնէ, վերոյգրեալ երկու պատգամաւորները Հաշիւներու պարտաւորութենէն արձակէ: Իրօք ալ Հաշուեկալութեան քննիչները ժողովելով՝ բանը լմնցուցին եւ 1760 Ապրիլ 16ին զԱւքսենտիոս Խիգուցեան ու զԱստուածատուր Վիգօլեան Հաշիւներու պարտաւորութենէն տնօրինեցին, տալով իրենց կողմանէ յաջորդ յայտարարութիւնը:

“1760 Ապրիլի 16ին էլէզաբէդան:

Աստուծոյ ողորմութեամբն այսօր սէպերն առին Ա. Տէբուդադուշնուն, այսինք Աղաչայ. անկսէնտին Ա. Մանուկի Խիգուցեանց եւ Ա. ասվատրին Վիգօլեանց որ ան՛վ. որպէս կու գրէ այլ վեր. թէ ըսդակ առնելն եւ թէ տալն. եւ Աստուծով գվիդօվադ արինք զամէնայն սէպերն, որին կու Հասդատինք մեր անընէրօվն որ աբսօլվադ կլան վերայ Աղաչաներն:

Գէորգ Վարդէնի Շէմիլեանց m. p.
*բրէզլէնս էքզաքգօրիայի Էլիզաբէդ քաղաքի.*

Մարտիրոս Ֆօլօտանեան. m. p.
*էքզաքգօր Պ. Էլիզաբէդ քաղաքիս.*

Օհաննէս Խաչքօյի Մնքեդրեանց. m. p.
*էքզաքգօր Պ. Էլիզաբէդ քաղքի.*

Մանուէլ Դաւիդի Չիմլեանց. m. p.
*Նօդարիուշ Պ. քաղքին էքզաքգօրիային:„*

*Ասոր վրայ աւելցուցին իրենց կողմանէ. թէ յիշեալ աղաներէն ընդունեցան այն պարտագիրը՝ զոր Գաբրիէլ Պէթլէն ատենադպիրը* 30.000 *ֆիորինի վրայօք տուած էր իրենց ձեռքը:*

*“Աս ալ գիտացվի, որ առինք զերկու զաբիոն ալ, որ տված է Պէդլէն կապօրն* 30 *հազար զլօթի, այսինք երեսուն հազառ զլօթի, որպէս կի գրէ վէրի սէպէրուն մէջ նայ առինք:*

*Էքզաքգօրիան:„*

## 9.

*Երբ խնդիրներ ելան Հայոց հակառակորդներուն կողմանէ Կարոլոս Զ.ին արտօնութեանց հրովարտակին նկատմամբ՝ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնն — ինչպէս գիտենք — պատգամաւորութիւն մը խրկեց ի Վիեննա՝ առ Մարիամ Թերեզիա, որպէս զի նախ վերանորոգելու աշխատի կայսրուհւոյն հօրը Հայոց տուած առանձնաշնորհմունքներն ու ամփոփէ զանոնքն այն տասուերեք կէտերուն մէջ, զորս Հայք այն*

ժամանակին համեմատ օգտակարագոյն կը համարէին. եւ երկրորդ, որպէս զի գնուելի երկիրներուն խնդիրը լմնցընէ ըստ փափաքանոց արքունեաց։

Ընթերցողաց արդէն յայտնի է, թէ պատգամաւորները խնդիրներուն դիրքը փոխեցին։ Երկիրներուն գնումը կարեւորագոյն համարելով՝ քան առանձնաշնորհութեանց հրովարտակին վերանորոգութիւնը՝ նախ անոնց ստացման ետեւէն ինկան. զոր, ինչպէս գիտենք, մեծ ճարտարութեամբ ու զոհողութեամբք յաջողցուցին լմնցուցին։ Բայց երկիրներուն զբաղած ատեննին, անփոյթ չեղան առանձնաշնորհութեանց պատճէնին ալ ամենայն զօրութեամբ ետեւէն իյնալու։ Զայս ալ ընդունեցան, թէեւ քիչ մը ետքը։

Մարիամ Թերեզիա, 1758 Աւգ. 31ին շնորհած տուչութեան թղթոյն մէջ երկիրներուն վրայ կը խօսի միայն. արտօնութեան հրովարտակն — որուն ստացման վրայ խնդիր կար, զոր Հայք կը փափաքէին, — ամենեւին չի շօշափեր։ Աս տեսնելով՝ քաղաքային վարչութիւնը բանն այնպէս կարգադրեց, որ պատգամաւորք չդառնան Վիեննայէն, մինչեւ որ ասոր խնդիրն ալ չվերջացընեն։

Վիեննայէն վերադարձող երեսփոխանաց խումբը, վերը՝ պաշտօնէից եւ արքունեաց մեծամեծներուն երակները զննած ու յարաբերութիւնները եւ միտութիւնները շատ լաւ ու նպաստաւոր գտած էր։ Ասոր վրայօք հասարակութեան

տեղեկութիւն տալէն ետեւ ընդհանուր ժողով գումարուեցաւ. եւ հրահանգաց համառօտ բովանդակութիւն մը յօրինուեցաւ վերանորոգելի արտօնութեանց նկատմամբ, որուն տասը կէտերը պատճէնին մէջ գնելը յարմար համարեցան եւ նամակի ձեւով՝ երկու երեսփոխանաց խրկեցին։

Այս հրահանգներուն մէջ կը գտնենք ի մէջ այլոց. Ա. Թէ Եղիսաբեթուպոլսոյ դատաստանէն՝ ամէն, նոյն իսկ փոքր խնդիրները, չելլեն ելեւմտից վարչութեան, այլ միայն վերին կառավարութեան առջեւ. բայց այնպիսի սեղմամբ՝ թէ երբ որ հասարակութիւնը հարկաւոր համարի, այն ատեն միայն խրկէ խնդիրը կառավարութեան կամ վերին արքունական ատենին։ Ասկից զատ որոշուի ան ալ, որ քաղաքը պարտական չըլլայ՝ զդատաւորը տեղ մըն ալ, բայց մանաւանդ ելեւմտից վարչութեան առջեւ ներկայացընել՝ ըստ օրինի ուրիշ քաղաքաց։ Վասն զի երբ որ Եղիսաբեթուպոլիս արքունական քաղաք դառնայ՝ պարտական չէ այս բանիս։ — Բ. Պատժական խնդրոց մէջ քաղաքային հասարակութիւնը պարտական չըլլայ Գիւգիւլլէօ գաւառէն օգնական դատաւորներ (assessor) կանչելու. որովհետեւ՝ փառք Աստուծոյ՝ այժմ Հայոց մէջ ալ կան այնպիսի ուսեալ մարդիկ, որ երկրին օրինաց լաւ տեղեակ են։ Սակայն եթէ քաղաքն իւր ազատ կամօքն կանչել ուզէ, թող կանչէ, միայն թէ ո՛չ ընդ պարտաւորութեամբ։ — Գ. Ջինուորաց տեղ տալու եւ նախամոլքի նկատմամբ՝ իւրենք ալ Կերլացւոց. — 1743ին —

տրուած արտօնութեան համաձայն վարուին, ինչպէս որ հոս տունը խօսուեցաւ. այսինքն ազատ ըլլան՝ նոյն իսկ հարկաւորութեան ատեն: — Գ. Տէրութեան այն ժողովին մէջ որ գումարուած է արքունի սակերը քննելու եւ անոնց վրայ խորհելու համար, Եղիսաբեթուպոլիս քաղաքն ալ ներկայացուցիչ ունենայ, որովհետեւ Հայք առանց ասոր՝ երկրի զաւակ ու տէրութեան որդի չեն կրնար նկատուիլ: — Ե. Պատերազմի ժամանակ, երբ հարկ է տեղէն ելլել ու փախչիլ, Եղիսաբեթուպոլսեցիք որեւէ բաց քաղաք մտնել կարենան, եւ նոյն քաղաքը՝ զիրենք ներս առնելու պարտական ըլլայ: Հայք կարենան անկէ ետքն ալ հոն մնալ. իսկ ուզողն իր տեղը դառնալ կարենայ: — Զ. Եթէ երեսփոխանաց հաճոյ երեւայ, այն ալ դրուի արտօնութեանց կոնդակին մէջ, որ հայ ազգէն զատ ամենեւին ուրիշ ազգ չկարենայ Եղիսաբեթուպոլսոյ քաղաքացի ըլլալ. որպէս զի միշտ յիշուի, թէ Հայոց քաղաք է ան եւ ուղղափառութիւնը կարենայ ամուր մնալ: — Է. Պատճէնին մէջ յանուանէ կամ ընդհանրապէս ան ալ դրուի, թէ որեւիցէ տեսակ ապրանք, որուն համար թագաւորական մաքսը վճարուած է, կարենայ ծախուիլ ամէն գաւառի ու որեւէ տօնավաճառի մէջ՝ թէ՛ առաջին, թէ՛ երկրորդ ու թէ՛ երրորդ օրը: Որովհետեւ փորձառութիւնը կը ցուցընէ թէ — կ'ըսէ հրահանգը — ազգային վաճառականները՝ մանաւանդ Հունգարիայի մէջ, շատ նեղութիւն կը կրեն. վասն զի արուեստաւ-

որաց ու վաճառականաց ընկերութիւններն ամէն դի ու ամէն վրան կը մտնեն ու ստակ կ՚առնուն։ Այսու ամենայնիւ, երկրորդ ու երրորդ օրը ծախելու հրաման չկայ։ — Ը. Դարձեալ հրովարտակին մէջ գրուի — ինչպէս ընդհանուր սովորութիւն է, — թէ՝ ո՛ր եւ իցէ տեսակ երկիր — որ կա՛մ ի պարգեւի մասին եւ կա՛մ ստկով տրուած է արքունիքէն, երկրատէրը՝ կամ ա՛յն՝ որ զերկրատէրութիւնն ստացած է, — ստակը վճարելէն ետեւ, կարենայ ձեռք առնուլ։ Ուստի եւ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնը կ՚ուզէ որ այս պայմանը գրուի առանձնաշնորհութեանց պատճէնին մէջ. որովհետեւ մանաւանդ Նոկյ ֆօլուն կան շատ ազնուականներ, որոնք արքունի կալուածներ ունին ձեռուընին եւ չենք գիտեր որ այն երկիրներն ինչ ճամբով ստացած են։ — Թ. Թէպէտ հին արտօնութեանց պատճէնին մէջ գրուած է, որ քաղաքը բերդակալութեան կամ արքունեաց հետ ձեռք ձեռքի տալով, իրենց կամուրջ մը շինեն, սակայն աղէկ կ՚ըլլար թէ որ հրովարտակին մէջ մասնաւորապէս գրուէր, թէ հիմայ կը տրուի քաղքին հրաման կամուրջ շինելու. ու այնպիսի կերպով, որ թէ՛ քաղքին վերեւն ու թէ՛ վարի կողմը կարենայ մէյ մէկ հատ կանգնել ու երկուքէն ալ, ըստ երկրին օրինացը մաքս առնուլ։ Վերցուի կամ շտկուի այն պայմանաւորութիւնը՝ թէ եկամտին կէսը տէրութեան ու կէսը՝ քաղքինն է։ — Թ. Տրոց նկատմամբ — կ՚ըսէ հրահանգը — մենք Ձեզի կը գրենք։ Բայց Դուք հոն աւելի աղէկ կրնաք

տեսնել ու իմանալ թէ ինչ կ'ըսեն մեր բարե-
կամները։ Եթէ կարելի էր, որ հին արտօնու-
թեանց հրովարտակին մէջ եղածին պէս մնար
գումարը, զոր շատ անգամ վճարած ենք. —
այսինքն միջինն առնելով՝ 500 ֆիորին — շատ
աղէկ կ'ըլլար։ Ասով պիտի ազատէինք այն շատ
մը խնդրուածքներէն ու աղերսանքներէն եւ
այնչափ գործք ալ պիտի չունենայինք։ Աս բանս
աղէկ պիտի ըլլար, մանաւանդ աղքատներուն
համար, որոնք ուտելու հաց չունին, ի վերայ
այսր ամենայնի 4—5 ֆիորին կ'իյնայ վրանին.
որ գումարն իրենցմէ առնուլն անկարելի է։ Եւ
տրոց որոշմանը համար, այս ժամանակէն աւելի
յարմար ատեն չկայ. — ինչ կերպով որ ըլլայ
թող ըլլայ, լմննայ. — որովհետեւ երկիրն ասոր
նկատմամբ ընդդիմադարձութիւն ընելու բան
չունի. վասն զի ասկէ ոչ շահ մը եւ ոչ օգուտ
մ'ունի։ Նկատմամբ վերոյգրեալ գումարին, ար-
դէն յայտնի է, որ ան՝ քաղաքային հասարակու-
թեան հաւանութեամբն եղած է։ Մենք ասկէ կը
գրենք Ձեզի, բայց ինչպէս որ Հրամանքներդ
աղէք տեսնէք ու ճանչնաք, այնպէս ըրէք։ Մենք
համոզուած ենք, որ բոլոր ուժերնիդ թափելով՝
սրտանց գործքին ետեւէն պիտի իյնաք։„

Կը ներփակեմ հոս՝ այս տրուած հրահան-
գին բուն բնագիրը. որ, ինչպէս յայտնապէս
կ'երեւայ, օրէնքները լաւ ճանչցող ու շրջա-
հայեաց գրչէ մը ելած ու յօրինուած է. եւ
հասարակութեան ներկայացուած, — որպէս զի
վարչութիւնը՝ զերեսփոխաններն աւելի մտադիր

ընէ, որ այս ուղղութեամբ շարժին ու ըստ այսմ գործեն։

"1. Գըմարային դիմաց աբէլաձիեան մագար ինչ գաւուզա չէրթա մեր դատաստանէն գըմարան, հապա երթա դապլան[1] կամ կուպէրնիումը. բայց անպիսի գլաւզուրայով, որ ուրուխ որ ճանչընա մակիստրադը մերը, նա հօն ալլէ դապլան կամ կուպէրնիումը ու անալ կըտրըվի[2] որ պարտական չիլա քաղաքը մերը ըրգպիրօվը բրէզէնդօվադ անէլու. հընար կէնա նա օչ ուրէք մալ ու ալ իժօվ[3] գըմարան, ինչպէս օզկա ազատ քաղքըներ, զէ եփօր դարնա մեր քաղաքը գիրալի վարօշ[4], նա չունի պարտականութիւնն ազատութեանը գօրա։

2. Գրիմինալիս գաւուզանու մէջ. չունէնա պարտականութիւնն մեր մակիստրադը ձէնէլու վարմէկիայի[5] աւէսօր, զէ աստուծոյ փառք կան հիմպի սօրված մարդիք, որ գիտին զէրկըրին դատաստանները։ Բայց թէ օր ուզէնան ձէնէլու նա, կամքը ըլա մակիստրադինը, նումայ[6] չիլա ի ներքայ պարտաւորութեան։

3. Գուարդիրի կողմանէ ու ֆօրշբանդի[7]

---

[1] Tábla հունգարերէն է, ու կը նշանակէ՝ բարձրագոյն, վերին ատեան։
[2] Որոշուիլ, սահմանուիլ։
[3] Մանաւանդ թէ։
[4] Երկու բառն ալ հունգարերէն է. királyi város, կը նշանակէ՝ արքունական, ազատ քաղաք։
[5] Vármegye, գաւառ։
[6] Միայն, միայն թէ։
[7] Quartier ու Vorspann, գերմ. բառեր են. առաջինը կը նշանակէ՝ զինուորաց՝ տեղ, բնակութիւն տալ. իսկ երկրորդը՝ զինուորաց աղխը՝ բեռերը տանիլ։

*գիտինք օր պի ունէնաք հրամանքներտ ըզԱղաչա Կերլացոցը բրէվէլէկիումին գօրիեային։ Ըլա մէչը անպէս գըրման, ինչպէս օր հօս տունը կի զուրուձէյին նա. Թէ ազատ ըլան ամէն տարպա գուարդիրէ ու ֆօրշըանդէ, նէձէսիդաս[1] ըլա ալ ու չիլա ալ, ամէնը ազատ։ Աս բունգդը մեծ կրաձիեա պիլար մեր քաղքին։ Գիտինք որ ըլա անպէս նա, մինք ալ արանց գօնզօլաձիեայ[2] չի պի մնանք։*

4. *Ռէկալ[3] տիեյդաի ժամանակ ձէնէլու զմեր քաղաքն ալ։ Գիտինք օր ան ալ պի բանէք ու աս ալ պիտվական է. զէ առանց անոր չինք կարնալ օչխի[4] տղաք դառնալու կամ հօզաֆիեցյի[5]։ Նա ինչէն օր կարնաք Հրամանքներտ ուրկիեալուիդ[6] անէք, օր գընտըվինք։*

5. *Հէծէլութեան[7] ատենները, կամ աստուած հերի անէ, մէկ զօր փախ մը ըլար, նակարենան մեր քաղաքացիքը հիվօր գօզօշ[8] քաղաքը նես մտնելու ու ան քաղաքն ալ պարտա-*

---

[1] Լատ. բառ է. պէտք, հարկաւորութիւն՝ կը նշանակէ։

[2] Consolatio, լատ. բառը մխիթարանք, օգնութիւն, սփոփանք՝ կը նշանակը։

[3] Վերագունութեան իրաւունք։

[4] Այսպէս գրուած է։ Կամ աշխարհ՝ հայերէն, եւ կամ ország (երկիր, աշխարհ) հունգարերէն բառերուն սեռականը պիտ'որ ըլլայ։

[5] Hazafi, յոգն. hazafiai, կը նշանակէ՝ հայրենասէր։ Ամբողջին իմաստն է. Ո՛չ երկրի զաւկըներ, եւ ո՛չ հայրենասէր կրնանք ըլլալ։

[6] Ուրկիալուիդ անել. Դրանսիլուանիոյ հայոց լեզուաւը կը նշանակէ՝ ետեւէն լինալ, շուտցընել։

[7] Պատերազմ։

[8] Közös, հունգ. է. հասարակաց, բաց քաղաք՝ կը նշանակէ։

կան ըլլա նես առնէլու ալ իժով. վասն ապա-
գային մնալու ու անոր էտեւ ալվի[1] վօվ իրեն
տեղը քաղվելու:

6. Թէ որ ութվի ձեռ հրամանոցն ալ, նա դըրվի բրէվէլէկիումին մէջ աս գլաւզուլան[2] ալ, թէ ամենեւին օղկա ազգ հայ ազգէն դուս չի՛ կարնա քաղքին մէջ քաղաքացի դառնալու: որ ամէն անգամ, ինչվան ի վերջը իշվի հայի քաղաք, որ կարնա ուղափարութիւնը ին վիկօրէ[3] մինչեւ վերջը մնալու:

7. Գըրվի աս ալ բրէվէլէկիումին մէջ, նօմինադէր կամ կէնէրալիդէր[4], թէ մաքար ինչ թուրլու փէշայի ապրանք գա աս էրկրին մէջ, ինչպէս կայդընեղէն, գօտի, պումպեր, երկըթեղէն, թավախալկին, ռօսա[5], վընադէղէն[6] եւ այլն. մագար ինչ թուրլու աննօվ անվանաց փէշայի բան, կամ ապրանք ըլլա, որն օր պէչէն կու գա թագուհուն տիրապետութեանը տակէն ու տամղա կու վիճարվի թագաւորական, նա ազատ ըլլա աս էրկրին մէջ ամէն դի ու ամէն անգամ ծախէլու ու ալ իժօվ հիոր շօգօտօյները[7], աւուրն ալ ու էրկուսում ու իրեքում օրն ալ ազատ ըլլան պազըրկընները ըզտամղայօվ բէրած ապրանքը ծա-

---

[1] Դարձեալ, նորէն:

[2] Clausula, լատ. է. յաւելուած, դիտողութիւն՝ կը նշանակէ:

[3] Հաստատուն, ամուր. լատիններէն է:

[4] Երկուքն ալ լատ. է. մասնաւորապէս ու ընդհանրապէս՝ կը նշանակէ:

[5] Rasra, հունգ. մանգաղ կը նշանակէ:

[6] Չեմ կրնար հանել թէ ինչ նշանակութիւն կրնայ ունենալ. բառիս վերջաւորութիւնը հայերէն է:

[7] Հունգարերէն բառ է. տօնավաճառ՝ կը նշանակէ:

*խելու. զէ ասս, ինչպէս գիտէք Հրամանքներտ ալ, որ շատ նաչարութիւնն[1] կու քաշին մեր պազըրկըններըը, ալ իժօվ մաճրի քաղքըները կարնուն, ու աւուրը ամէն դի կամ ամէն շադրա կու քալին ձէխերը[2] ու լադօ բինգ[3] կարնուն մեր պարզըկընուն. բայց էրկուսում ու իրեքում օրը ամենեւին սլօպօտ[4] չէ ծախելու։*

8. *Տօնաձիեային մէչ, ինչպէս որ օզկա տօնաձիեանուն մէչ ալ կա ախօզ ատատ[5], որ կու գըրվի, թէ մագար ինչ թուրլու անվանած անընօվ, տված եօյսակ, ինչցրիբդի[6] կամ ըսդըկի տեղ, նա տօնիմինիումին աղաչան, կամ նա վօվօր կու արնու ըզըօլոր տոմինիումը, թէօր դէրմինօվալ արնու ու ալ իժօվ աւիտեննական, նա զօնուշը[7] վար դընէլօվ կարնա ետ արնէլու։ Այսբէս մեր Հասարակը կու կամի որ այս գլաւզուլան ունէնանք Տօնացիեային մէչ. զէ կան երնան շատ տուն նէմիշներ[8], որոնցմե պէտք է փընտրէլու, որ ցըցնուն, թէ ինչի քօվ կու բըռնին ըզեօյսակը[9]։*

---

1 Նեղութիւն, անհանգստութիւն, զըկանք։

2 Zeche, գերմ. բառ է, արհեստաւորաց ընկերութիւն. միաբանութիւն։

3 Երկու բառն ալ Հունգարերէն է. այցելութեան, տեսութեան ստակ տուրք, վճարք՝ կը նշանակէ։

4 Szabad, Հունգ. բառ է, ներումն, հրաման, կը նշանակէ։

5 Դրանսիլուանիացւոց լեզուաւը կը նշանակէ, ճշմարտիւ սովորութիւն. սովորեալ։

6 Inscriptus, յատկացեալ, վրայ գրուած՝ անցուած։

7 Ծանրութիւն, բեռն, լատ. է։

8 Nemes, Հունգ. բառ է. կը նշանակէ, ազնուական, ազնուատոհմ։

9 Jószág, Հունգարերէն է, երկիր՝ կալուած կը նշանակէ։

9. Թէպէտ կա գըրած բըրէվէլէկիումին մէջ, որ կարնա քաղաքը հետ գօշդէլին[1] մէկ տեղ բօդ[2] անէլու. բայց աղէկ պիլար, որ գօնֆիրմաձիեային մէջ դըրվի, թէ հիմպի կու տըրվի ատուկ քաղքին. ու հընար կէնա նա, այսբէս, որ վարի դիհէն ալ ու վէրի դիհէն ալ կարնանք դընէլու բօտեր, ու էրկուսն ալ ունէնան էրկրին ռէկուլային գօրա տամղա։ Կըտըրըվի ան գլաւզուլան կամ խօրդըրվի գօշդէլին կողմանէ, գօնֆիրմաձիեային մէջ, որ գըրվի, ինչբէս ասինք, ատուկ քաղքին։

10. Տալեցը կողմանէ, մինք կու գըրինք ձեռ Հրամանոցը։ Բայց հօտ ալ աղէկ պի տէսնուք հրամանքներտ թէ ինչ պասին մեր բարեկամաքը։ Հընար կէնա, որ հին բըրէվէլէկիումին, այսինքն, գարօլօսին տվածին մէջ, կու գըրէ թէ ունէնանք ան գվանդումին քով մնալու, ըզվըր գվանդումը ալ շատ տարպա տվիլինք։ Ու մեր տված գվանդումը ալ շատ տարպա էղիլէ 500„ ըզլօդ ու 600„ ալ էղիլէ ու 700„ ալ էղիլէ։ Բայց ամէնը ալ շատը հինկ հինկ հարուրը էղիլէ։ Աս բանն ալ, թէ որ հընար կէնա գընտըրվէլու, որ խալըսէյինք նի շատ լիպէլուշնուն[3] իժօվ աղէկ պիլար խալըսէլու, որ այսչափ աշխատանք չունէնայինք ու ալ իժօվ աղքատ էլին

---

[1] Kastély, հունգ. է. կը նշանակէ, դղեակ, բերդ։

[2] Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը բոդ կամ բոտ կը նշանակէ՝ կամուրջ։

[3] Libellus լատ. բառը կը նշանակէ՝ գրով եղած ամբաստանութիւն. ագերս. աղաչանք. եկակոչ ի դատաստան եւ այլն։

համար․ զէ ողորմելիք որ չունին ինչ ուտելու․ նա լիպէլուշին գօրա 4„ ու 5„ ու 6„ ըզլօդ ալ կու ընի վերայները ու չիգա հընար արնելու, կամ հանելու պան մօտվընուն։ Ու ալ աղէկ ատեն քանց հիմպի չի գըտվիլ տալեց կողմանէ, ինչըէս ալ գընտըվինք նա․ զէ երկիրը չունի ինչ գօնդրատիգօվադ անէլու․ զէ օչ զէն կանէ, օչ շահ։ Ու վերոյ գրեալ գվանդումը, ինչըէս գիտէք հրամանքներտ որ հասարակ գումբանիեայօվ էղիլէ։ Մինք ասգիձ կու գրինք, բայց հրամանքներտ ալ աղէկ ինչըէս հասգընաք ու ըզժամանակը ճանչընաք, նա անպէս պանիք։ Բայց աս ալ կու հաւատանք, որ ամէն ուժով, ինչ որ աստուած կարողութիւնն տա նա պի կաննիք։„

Երեսփոխանք այս նոր հրահանգները ձեռուընին՝ ուժերնին կրկնապատկեցին․ եւ աշխատանքնին ու ջանքերնին պարապի չելաւ։ Խնդրած ու Կարոլոս Զ․էն ընդունած առանձնաշնորհութեանց հրովարտակն, ըստ ամենայն մասանց, այնպէս՝ ինչպէս ազգայինք կը բաղձային՝ վերանորոգուեցաւ․ մէջը հիւսուեցան այն տասը կէտերն ալ՝ զոր Եղիսաբեթուպոլսոյ Հայք կը փափաքէին։

Այս առանձնաշնորհութեանց նոր հրովարտակը ստորագրուեցաւ Մարիամ Թերեզիայէն 1758 Նոյ․ 28ին։ — Ասոր մէջ Կայսրուհին հաճութեամբ ծանուցանելէն ետեւ թէ Հայոց Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնն, իրենց օրինաւոր դատաւորին եւ լիակատար իշխանութիւն ունեցող պատգամաւորաց ու երես-

փոխանաց ձեռօք իրմէն խնդրելով, որ ողորմած հոգի հօրը՝ Կարոլոս Զ.ին, 1733 Աւգ. 11ին տուած հրովարտակը նորոգուի. — որով թէպէտ Հայք ամրացած ու քաղաքացի եղած էին, այսու ամենայնիւ փափաքելով որ աւելի եւս ամրացուին ու հաստատուն ըլլայ իրենց մնացականութիւնը պետութեան մէջ, — կը շնորհէ ի մէջ այլոց՝ 1. Որ այն արքայական մշտատեւ տուչութեան իրաւամբը, զոր ստացած է հասարակութիւնը՝ Արաֆիի կալուածոցը վրայ, Հայք այն բոլոր երկիրները Պաշտպալովի կալուածատէրութեան վրայ գրեն ու անոր մէջ անցընեն: — Որ հայ չեղող հպատակներն անկէ կարենան հեռացընել. ենթադրելով միշտ, որ անոնց յատուկ կամ գնած երկիրներուն փոխարինութիւն պիտի ընեն Հայք՝ այն երկիրներն ու կալուածները գնելով. — իսկ տնուորներուն՝ ստակ տալով, զանոնք ուրիշ տեղ փոխադրել կարենան: 2. Թէ Եղիսաբեթուպոլիս ըլլայ հիմակ ու ապագայ ժամանակի համար բոլորովին արտօնացեալ քաղաք: Քաղքին կընքոյն վրայ ըլլայ Ս. Եղիսաբեթի՝ Հունգարացւոց Անդրէաս Բ. Թագաւորին դստեր՝ կենդանագիրը: Թէ այնպիսի հայազգիներ միայն (Կերլացիքը հոս ալ դուրս առնուած են,) կարենայ ներս ընդունիլ քաղաքն, որոնք պատուաւոր մարդիկ են: Բայց զանոնք մէյ մը ներս ընդունելէն ետեւ, քաղաքն անոնց գործոց համար պատասխանատու է: 3. Թէ որովհետեւ Աստուծոյ օրհնութեամբը՝ հայ ժողովուրդը շատցած է, եղած

եկեղեցիներէն զատ՝ ուրիշ եկեղեցիներ ալ կանգնէ, ու հոգ տանի որ Աստուծոյ ծառայութիւնն ընող եկեղեցականք պատշաճ գիտութիւնն ունենան. բայց եւ անոնց յարգը ճանչնալու է, ու պէտք է զանոնք լաւ վարձատրել: 4. Թէ Հայք քաղաքային գործառնութեանց մէջ՝ Դրանսիլուանիոյ թագաւորական վարչութենէն, տնտեսական մասին մէջ՝ արքունական գանձապետութենէն կախում ունենան. իսկ պաշտպանութիւն՝ հոնտեղի զինուորական վերին կառավարութենէն գտնեն: 5. Եղիսաբեթուպոլսոյ քաղաքային վարչութիւնն՝ այս արտօնագրով կը մնայ քիչ մը կերպարանափոխութեամբ՝ գրեթէ այն, զոր ստացած էր Կարոլոս Զ. Կայսրմէն: Ասոր մէջ կը սահմանուի որ 12 խորհրդականներն ամէն տարւոյն սկիզբը, Յունուարի 4ին (եւ ոչ թէ 2ին) ընտրուին: Ընտրութեան ատեն արքունական գործակալին ներկայ ըլլալը չկայ: — Պատժական խնդիրներու մէջ սուսերի իրաւունք ալ կը տրուի քաղքին — ինչպէս ուրիշ արտօնացեալ քաղաքներու —: Սակայն այս պատժական խնդիրները պէտք են ըլլալ՝ տէրութեան օրինաց ու գաւառին սովորութեան համեմատ: Բայց՝ հրաման ըլլայ ասկից բողոքելու առ արքունական կառավարութիւնն եւ նոյն իսկ առ ինքնակալն: 6. Կը խոստացուի Հայոց, որ առուտուրնին յառաջացընելու համար, տէրութիւնն ամէն կերպով առ այս իրենց նպաստամատոյց պիտի ըլլայ: Կը շնորհուի քաղքին՝ երկու շաբաթական ու չորս տարեկան տօ-

նավաճառ. ամէն տօնավաճառին նախընթաց ըլլայ երեքօրեայ դուարավաճառ մը։ 7. Գերդաստանաց ու առանձնականաց տուրքերը, ինչպէս նաեւ մսահատութեան ու ոգեւոր ըմպելեաց իրաւանց խնդիրն՝ այս արտօնագրով բոլորովին կը վերնան։ Տներուն համար՝ ութը եւ չորս, իսկ առանձինն գերդաստանաց համար ըստ կարողութեան աւելի կամ նուազ գերդաստանական տուրք վճարելն, ինչպէս նաեւ մսահատութեան ու ոգեւոր ըմպելեաց համար տարեկան 400 ֆիորին տալը՝ կը վերջանայ. որովհետեւ քաղաքն արքունական գանձուն 16.000 ֆիորին տալովն, այս իրաւունքները ցմիշտ փրկանաւորեց (տես էջ 170)։ Ուստի եւ առանձնաշնորհութեան իններորդ յօդուածին զօրութեամբ Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք չէ թէ միայն գերդաստանաց ու առանձինն տանց համար սովորեալ տուրքը վճարելէն՝ այլ առհասարակ որեւէ տեսակ տուրքէ ազատ կը հրատարակուին. դուրս առնելով բնականապէս տէրութեան այն տուրքերն, որոնք գաւառական գանձուն վճարուելու են, զորոնք մասնաւոր քաղաքացիք՝ ուրիշ հարկատու քաղաքացւոց պէս, տէրութեան վճարելու պարտական են։ 8. Զինուորանոցներ ու զօրք պահելէն, ինչպէս նաեւ զինուորաց բեռները տանելէն, կառք ու ձի տալէն եւ ասոնց նման ծանրաբեռնութիւններէն ազատ կը կացուցուին։ 9. Կը շնորհուի որ Գիւգիւլլէօ գետին վրայ երկու կամուրջ շինուի, որոնց տուրքը քաղաքն ընդունի. (ուր որ յառաջուան դաշնադրութեան համեմատ՝ կամրջատուրքին եկա-

մուտը քաղքին ու տէրութեան մէջ կը բաժնուէր։) Հարկ եղած ատեն — բայց ոչ՝ երբ որ թշնամիներէն հալածուելով՝ առ հասարակ ամէնքն ապահովութիւն կը փնտռեն, — իրենց թանկագին ապրանքներն Դրանսիլուանիոյ՝ ամրութիւններով պատսպարուած քաղաքները կարենան տանիլ, — եւ թէ այս քաղաքները զիրենք ներս ընդունելու եւ վաճառքնին ապահովցընելու համար՝ հոն իրենց յարմար տեղ տալու պարտական են։ 10. Դրանսիլուանիայի մէջ ասդին անդին ցրուած Հայերը՝ մինչեւ որ զատ ու յատուկ երրորդ հասարակութիւն մը չկազմեն, (մէկն է Հայաքաղաք, մէկալը՝ Եղիսաբեթուպոլիս,) եւ իրենց համար յատուկ առանձնաշնորհութիւն մը չվաստըկին՝ տրոց եւ ուրիշ հասարակաց ծանրաբեռնութեանց նկատմամբ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան իշխանութեան ներքեւ կը ձգուին։ — Մասնաւոր մտադրութեան արժանի է որ այս առանձնաշնորհութեանց հրովարտակին մէջ՝ քանի մը տեղ կը շեշտուի, թէ այս արտօնութիւնները Դրանսիլուանիոյ մէջ բնակող՝ միայն հռոմէական դաւանանք ունեցող Հայոց համար են։

## 10.

Այս կայսերական արտօնութեանց հրովարտակը թէեւ շատ տեղ Կարոլոս Զ.ին, 1733ին տուած պատճէնին հետ նոյն է, բայց որովհետեւ շատ նոր բաներ ալ կը պարունակէ իր մէջը, ու ասացուածոց կերպն ալ տեղիս տե-

ղիս տարբեր է, — կարեւոր կը համարիմ ամբողջապէս թարգմանել։

“Մենք, Մարիամ Թերեզիա, ողորմութեամբն Աստուծոյ՝ կայսրուհի Հռոմայ, թագուհի Գերմանիոյ, Հունգարիոյ, Պոհեմիայի, Դալմատիայի, Խռուադաստանի, Սլաւոնիայի եւայլն եւայլն. (Ճշդիւ այնպէս՝ ինչպէս Աւգ. 31ին հրովարտակին մէջ յիշուած է. տես էջ 164)։

“Դարուց փորձառութիւնը կը ցուցնէ թէ երկիրներուն եւ իշխանաց փառքն ու շքեղութիւնը այն ատեն միայն արտաքուստ ալ հեռու տեղուանք կը տարածի, երբ որ զհպատակներն ի ներքս չէ թէ միայն լաւ կարգաւորուած գործքերը՝ քաղցրաբարոյ ու հեզ կերպով մը իրենց տեղւոյն կը կապեն, հապա երբ ասոնք նաեւ զուրիշներն ալ առ այն կը յորդորեն, որ իրենց մէջ բնակութեան տեղ փնտռեն եւ հաստատեն։ Եւ անոր համար ալ մեր մեծաշուք նախորդները միօրինակ հոգ տարած են որ իրենց տէրութիւնն ու իրենց երկիրները, որչափ կարելի է, միշտ աւելի բազմաթիւ բնակիչներով աճեցընեն. որոնց ապրելու եւ կեանքերնին պահպանելու կերպն՝ ըլլայ կարգեալ հասարակաց օգուտն յառաջացընելու։ Ուստի եւ որպէս զի թէ՛ ասոնց անկասկած մնացականութիւնն ապահովուի եւ թէ՛ մէկալ քաղաքացւոց երջանկութիւնն՝ օտար քաղաքացւոց ջանքովն ու փութովն օգտուած ըլլայ՝ անոր համար ասանկ նոր գաղթականութիւններ հաստատեցինք — ըստ իրենց փափաքանացն — իրենց վիճակին համապա-

տասխանող արտօնութիւններով ու առանձնաշնորհութիւններով։ Որմէն յետոյ այն օգուտն ալ յառաջ կու գայ, որ բարեկամեցութեան այս քաղցրութիւնը զուրիշներն ալ դրդելով՝ զշատերը օրինաւոր կեանք անցընելու, զծուլութիւնն ու տգեղ անգործութիւնը թող տալու, եւ ճշդութեան կ'առաջնորդէ։ Եւ ասանկով՝ երբ կենաց ընթացքը՝ կամ առեւտրական գործքերով, կամ արուեստական զբաղմամբ եւ կամ որեւիցէ ուրիշ պատուաւոր գործքով մը կ'անցնի, վաճառականութիւնը կը յառաջանայ եւ արուեստները նպաստաւորութիւն կը գտնեն։ Եւ ինչ որ ասոնց մէջ ամէնէն աւելի փափաքելին է՝ ժողովրդոց հանգստութիւնը, մահկանացուաց փոյթն ու եռանդուն գործքերն օրհնող Աստուծոյ փառքն, ու միանգամայն տիրող իշխանին անունն օր ըստ օրէ կը տարածի։

Եւ որովհետեւ մեր Դրանսիլուանիոյ իշխանութեան Գիւգիւլլէօ գաւառին մէջ եղող Եղիսաբեթուպոլսոյ հայաբնակ քաղքին բոլոր քաղաքացիներն ու բնակիչները, գործունեայ ու եռանդուն Աւգոստինոս Խուէգուցեան՝ յիշեալ քաղքին օրինաւոր դատաւորին եւ Աստուածատուր Վիգոլեան երեսփոխանին — մեր արքունի դիւանատան առջեւ՝ իբրեւ այս հասարակութեան գործքերը կարգադրելու օրինապէս յանձնառուներու, — ինչպէս նաեւ այս բանիս լիակատար իշխանութիւն ունեցող պատգամաւորաց, այսինքն՝ պատուելի Միքայէլ[1] Դանի-

[1] Հօս ալ Մինասը՝ Միքայէլ թարգմանուած է։

էլեան՝ Դրանսիլուանիոյ Ալպա Գարոլինայի մայր եկեղեցւոյն կանոնիկոսին ու Եղիսաբեթուպոլսոյ ժողովրդապետին. դարձեալ՝ ազնուազարմ Յովհաննէս Ղազարոսեանի. գործունեայ ու խնամող երդուեալներուն՝ Մինաս Գասպարեանի, Յովհաննէս Ոսկերիչեանի, Մարտինոս Խուէգուցեանի, Մարկոս Բաղրուպանեանի, Թէոդորոս Ղուկասեանի, Նիկողայոս Չիգիեանի, Լուսիկ Ոսկերիչեանի, Նիկողայոս Գասպարեան, Թէոդորոս Չիգիեան, Թովմաս Զաքարեան, Եւգինէոս Դանիէլեան, Մարկոս Գոշոդանեան, Յովհաննէս Բոբեան քարտուղարին, Խաչիկ Սընբէդրեան եւ Անտոն Խուէգուցեան երեսփոխաններու ձեռօք մեր առջեւ դրին, թէ ողորմած հոգի վեհափառ կայսրը, Սպանիոյ եւ Լեհաստանի թագաւորն ու Դրանսիլուանիոյ իշխանը՝ Կարոլոս Զ. երորդ, մեր հայրը, մեր ամենասիրելի Նախորդը՝ 1733 տարւոյն Աւգոստոս 11ին տուած արտօնութեան թղթին համեմատ, զիրենք իբրեւ կաթուղիկեայ Հայեր, վերոյգրեալ քաղքին մէջ թէպէտ հաստատած ու ամրացուցած է, բայց փափաքելով աւելի ապահով ըլլալն իրենց մնացականութեան՝ հպատակութեամբ ու խոնարհութեամբ մեզի դիմեցին որ իրենց նոր արտօնութիւններ ու առանձնաշնորհութիւններ տանք։

Մենք, յառաջ բերուած ու առջեւնիս դրուած եւ մեր կայսերական - թագաւորական սիրտը շարժող ուրիշ պատճառներէ ալ դրդեալ՝ գթածաբար սահմանեցինք, որ նկատմամբ այս աղաչաւորաց ի նշան մեր կայսերա-

կան թագաւորական միտութեան ու բարեհաճութեան՝ այն առանձնաշնորհութիւններով, իրաւունքներով եւ արտօնութիւններով — որ հոս կը յաջորդեն, — Դրանսիլուանիոյ մէջ ապրին ու ապրիլ կարենան։

1. Գլխաւորաբար կը շնորհենք որ այս հայազգի հասարակութիւնը, որովհետեւ Պաշտպալովի կալուածատէրութիւնն իր շրջականերն եղող գեղերովը հանդերձ՝ մեր թագաւորական տէրութեամբը՝ մշտնջենաւոր իրաւամբ ստացած է, այն իրաւանց համեմատ զոր այս տէրութեան ձեռօք վաստըկած է, չէ թէ միայն ազատութեամբ կարենայ ապրիլ, այլ նաեւ իր մեծագոյն շահուն համար՝ Պաշտպալովի կալուածները քաղքին մէջ առնուլ եւ ըստ հետեւորդի անկից հպատակները՝ կալուածատէրութեան ուրիշ տեղերը տեղափոխել կարենայ, — ենթադրելով որ անոնց համապատասխանող երկիրներ պիտի տրուին, իսկ վարձուորներուն ստակ պիտի վճարուի, — ու երկրին վրայ կանգնած շէնքերուն գինն օրինաւոր եւ արդարացի գնահատութեան համեմատ՝ բարձրացընել կարենայ։ Եւ հիմակուընէ սկսեալ ապագայ ժամանակին համար՝ ըլլայ բոլորովին արտօնացեալ քաղաք մը, ու լատիներէն լեզուաւ Elisabethopolis, գերմաներէն՝ Elisabethstadt, հունգարերէն՝ Erzsébetváros անուանուի, ինչպէս որ ըստ մասին արդէն ասկից յառաջ ալ կ'անուանուէր. ու իր կնիքին վրայ — ինչպէս մինչեւ հիմակ՝ անանկ ալ ասկից ետքը — Սրբուհի Եղիսաբեթի, Ան-

դրէաս Բ. Երուսաղեմացւոյն որբեւարիին, Հունգարացւոց Թագաւորին դստեր՝ պատկերը կարենայ գործածել, որմէն քաղաքն իր անուանակոչութիւնն ընդունած է։

2. Ի դիպուածի որ օտար հայազգի մը՝ իբրեւ բնակիչ ուզէ քաղաքը գալ ու բնակութիւնը հոն հաստատել, կը պարտաւորի նախ այն տեղւոյն խորհրդարանին առջեւ ներկայանալ եւ ինք զինք ամէն բանի նկատմամբ իբրեւ պատուաւոր մարդ ճշմարտել։ Այսպիսի օտար ազգայնոյ մը համար — քաղաքացի գրուիլն արդէն յառաջուընէ կատարուած ըլլալով — վերոյիշեալ քաղքին խորհրդարանն ու հասարակութիւնը պատասխանատու են։

3. Եւ վասն զի այս հասարակութեան յառաջադիմութիւնն ու երջանկութիւնը գլխաւորաբար Աստուծոյ օրհնութենէն կախում ունի, ըստ հետեւորդի հարկաւոր է որ նախ աստուածային պաշտամունքին եւ կաթուղիկէ սուրբ հաւատքին, — զոր վերոյիշեալ հասարակութիւնն ըստ հայ արարողութեան կը դաւանի — հոգ տարուի։ Անոր համար ալ գթածաբար կը հաւանինք եւ կը շնորհենք, որ այս քաղքին մէջ Աստուծոյ օրհնութեամբը ժողովրդեան թիւը շատնալով՝ շինուածներէն զատ՝ նոր ուղղափառ եկեղեցիներ կանգնուին։ Հոգ տանելու է դարձեալ հասարակութիւնն որ հոգեւոր ծառայութիւնը կատարող՝ պարտուպատշաճ եւ պաշտօնին համապատասխանել կրցող յատկութիւններով եկեղեցական անձինքներ ունենայ,

որոնց քաղաքը կը պարտաւորի ըստ պատշաճի ռոճիկ կապել։ Եւ որովհետեւ Գրանսիլուանիոյ Հռոմէական ուղղափառ լատինածէս եկեղեցական իշխանութենէն կը կախուին ու պիտի կախուին, անոր համար եկեղեցական վարչութեան պարտաւորութիւնն ըլլայ հսկել, որ հոն հայ հռոմէական կաթուղիկէ արարողութիւնն ըստ պատշաճի պահպանուի, եւ արեւելեան հայ հերձուածողք, յանուանէ եւտիքականք ու դիոսկորեանք, եւ ուրիշներուն դատապարտեալ մոլորութիւններն այս ազգէն հեռու ըլլան։ Ասկից զատ այս եկեղեցական իշխանութիւնը մեծապէս հոգ տանի որ չըլլայ թէ այս մասնաւոր ու նուազ ճանչցուած աստուածային պաշտամունքը Գրանսիլուանիոյ իշխանութեան մէջ ուղղափառ չեղող Հայերուն կերպով մը ներուի, կամ վերը յիշուած մոլորութեանց ետեւէն եղողները ներս թողուին եւ կամ անոնց՝ հոն բնակելուն աչք գոցուի, ի բաց առեալ եթէ անոնց մէկը կամ մէկալը առանձինն վաճառականութեան նպատակաւ երկրէն անցնի երթայ. եւ այնպէս հոն առ ժամանակ մի անցընէ ատենը, կամ հարկաւորութիւնն այնպէս պահանջէ։

4. Եւ որովհետեւ այս տեսակ հասարակութեանց յառաջադիմութիւնը՝ շատ կը զօրացընէ ու կը յառաջացընէ աղէկ կանոններու ու կարգադրութեան հաստատութիւնը, անոր համար գթածաբար կը պատուիրենք որ վերոյիշեալ հասարակութիւնը քաղաքային իրաց մէջ՝ հոն տեղի թագաւորական վարչութենէն, տըն-

տեսական բաներուն մէջ՝ նոյնպէս հոն տեղի գանձապետութենէն կախում ունենայ. իսկ իրեն պաշտպանութիւնը՝ իր ապահովագոյն պահպանութեան համար այն տեղի իշխանութեան մէջ եղող զինուորական վերին կառավարութենէն ընդունի։

5. Յիշեալ քաղաքն ունենայ իր քաղաքային խորհրդարանը, որ կազմուի դատաւորէ մը ու տասուերկու խորհրդականէ, որոնք ընտրուին՝ ըստ օրինի՝ քաղաքացւոց մէջէն, պաշտօնատարց եւ պատգամաւորաց ձեռօք ։ Այս քաղաքային խորհրդարանն ունենայ կաթուղիկեայ ուղղափառ դաւանանք ունեցող քարտուղար մը, որն որ քաղքին շրջանին մէջ յառաջ եկած գրութիւնները պատրաստելու մէջ ատակ, լաւ, արդարասէր ըլլայ, եւ որուն գործքն ու աշխատանքն արդարապէս յարգուի ու ճանչցուի։ Դատաւորին ազատ ընտրութիւնն ըլլայ՝ Յունուարի 4 ին, եւ աչքի առջեւ ըլլուի որ թէ դատաւորութեան եւ թէ խորհրդականութեան պաշտօնին յարմար ու լաւ խղճմտանք ունեցող մարդիկ ու արդարութեան եռանդուն կուսակիցներն ընտրուին։ — Իսկ իրենց մէջ ըլլալի դատաստանական խնդրոց կարգին նկատմամբ կը կարգադրենք որ այսպիսի խնդիրներուն պարտուպատշաճ քննութիւնը՝ որոնք ըլլան թէ քաղաքային, թէ տնտեսական ու թէ պատժական, ամբաստանողները՝ խնդիրն այս քաղքին պաշտօնատարց՝ իբրեւ առաջին ատենին առջեւը տանին. ասկից — եթէ իրին նիւթն այնպէս կը

պահանջէ, — որպէս զի անոնք աւելի հասուն կերպով քննութեան տակ ձգուին՝ մեր արքունական ատենին կամ թագաւորական կառավարութեան, իսկ ի տնտեսական մասին՝ մեր արքունական գանձուն վարչութեան տարուելու են: Վերն ա՛ն ըսինք թէ պատժական խնդիրներն այս քաղքին պաշտօնատարաց առջեւը դրուին. ուստի եւ սուսերի իրաւունքը (jus gladii), որն որ այս հասարակութեան արդէն ասկից յառաջ շնորհուած էր, ասկից ետքն ալ գթածաբար կը շնորհենք, այն եղանակաւորութեամբ՝ որ այս տեսակ պատժական խնդրոց վճիռներուն բանակցութիւնը՝ տէրութեան օրինաց եւ օրինաւոր սովորութեան եւ ընդունուած իրաւանց թելադրութեան համեմատ՝ վերոյիշեալ Գիւգիւլլէօ գաւառին — որուն մէջ այն քաղաքը կեցած է, — պաշտօնատէրները ժողովին: Եւ ասոնց մէջէն (այն սովորութեան համեմատ, որ ուրիշ արտօնացեալ քաղաքաց համար ալ նմանօրինակ խնդրոց մէջ կայ,) մեր այն տեղի դատաստանական ատենին կամ արքունական կառավարութեան դիմելու եւ բողոքելու հրաման ըլլայ: Բայց քիչ մը յառաջ յիշուած խնդրոց մէջ, եթէ անոնց բնութիւնն այնպէս կը բերէ՝ ներեալ է բողոքել առ մեր վեհափառութիւնն: Իսկ եթէ քաղաքացիներէն մէկը օտարի մը հետ կը պայքարի կամ անոր վրայ ամբաստանութիւն ունի, հարկ է որ անոր դատաստանական ատենին դիմէ. վասն զի ամբաստանողն՝ ամբաստանեալին ատենին պարտական է հետեւիլ:

6. Նմանապէս ազատ է վաճառականութիւնը, զոր այս հասարակութիւնը հիմակ ալ ունի։ Կը շնորհենք իրեն ասկից ետքն ալ, որ թէ՛ ներուած առեւտրի նիւթերովը՝ մեծ ու փոքր չափով (all' in Grosso, all' in Minuta) Դրանսիլուանիոյ իշխանութեան մէջ՝ դռնաբաց քաղաքաց որեւէ տեղերն իրենց սովորեալ կերպովն առուտուր ընեն, եւ թէ՛ անոնցմով՝ որոնք մեր ուրիշ ժառանգեալ երկիրներն ու գաւառները կը տարուին — ու հատուցանելով կայսերական թագաւորական հարկերն ու մաքսերը, եւ պահելով՝ ըստ իրաւանց պահելիները, առանց որեւէ իրաւանց դէմ եղող եւ բռնադատեալ տուրքի մը, — կարենայ ազատութեամբ վաճառականութիւն ընել։

7. Սակայն համոզեալ ըլլայ այս հասարակութիւնն որ իրեն արուեստակերտներուն կամ ձեռագործներուն ապահովութեան համար մասնաւոր առանձնաշնորհմունքներ ամենագթած կերպով շնորհելու պիտի բարեհաճինք։ Բաց ասկէ, որպէս զի իրենց վաճառականութիւնն աւելի յառաջացում գտնէ, պարտուպատշաճ օգնութիւնը կարողաբար պիտի մատուցանենք։

8. Կը շնորհենք այս հասարակութեան շաբաթական տօնավաճառներ՝ Երեքշաբթի ու Շաբաթ օրերը։ — Իբրեւ մեծ կամ տարեկան տօնավաճառ՝ տարւոյն չորս եղանակներն, այսինքն՝ Մարտի 25ը՝ Աւետման տօնին օրը. Տեառն մերոյ Համբարձման տօնը. Սեպտեմբեր 25ը՝

Սրբոյն Մատթէի առաքելոյն տօնը. Նոյեմբեր 19ը՝ Սրբուհւոյն Եղիսաբեթի օրը։ Այս չորս տարեկան տօնավաճառին ամէն մէկը — ուրիշ տեղերաց համեմատ — երեք օր տեւող դուարի տօնավաճառ մը նախընթանայ։ Սակայն անոր միտ դնելու է, որ չըլլայ թէ տարեկան տօնավաճառները՝ դրացի տեղերաց հետ միեւնոյն օրն իյնան կամ հանդիպին։

9. Որովհետեւ գթութեամբ բարեհաճեցանք որ այս հասարակութիւնը, տուրքը՝ զոր գերդաստանաց, տանց, մսահատութեան, ինչպէս նաեւ ոգեւոր ըմպելեաց համար մինչեւ հիմակ կը վճարէր, միանգամ ընդ միշտ փրկանաւորել կարենայ, եւ ըստ հետեւորդի մենք ալ ասոր համար արդէն տասնուվեց հազար Ֆիորին ընդունեցանք, եւ յիշեալ հասարակութիւնն այս գումարը իրօք մեր գանձուն վճարած է, անոր համար կը յայտնենք թէ այս հասարակութիւնը տրոց վճարմունքէն ցմիշտ ազատ կը կացուցանենք. վերապահելով՝ գաւառական գանձուն վճարուելի տուրքը, զոր նոյն իսկ քաղաքացիք տէրութեան ուրիշ հարկատու քաղաքացիներուն պէս՝ մեր հրամանին համեմատ՝ վճարելու պարտական են։

10. Կը հաւանինք ու կը շնորհենք որ այս հասարակութիւնը շատ հեղ յիշուած Եղիսաբեթուպոլիս քաղքին սահմաններէն ներս, այս քաղքին քով անցնող Գիւգիւլլէօ գետին վրայ, երթեւեկութեան մեծագոյն դիւրութեան համար երկու կամուրջ կարենայ շինել, շինածները՝

պահպանել, եւ ծախքերը գոցելու համար վերոյգրեալ Գիւգիւլլէօ եւ դրացի գաւառներուն կամրջատուրքի նկատմամբ եղած օրինաց եւ սովորութեան համեմատ՝ անոնց վրայէն անցնող ճանապարհորդներէն — որոնք օրինաց ձեռօք անոնցմէ ազատ չեն, — այսուհետեւ ալ տուրք պահանջել կարենայ. սակայն առանց ուրիշ մաքսերու վնաս հասցընելու. բայց այնպիսի պայմանաւ որ պարտական ըլլայ հասարակութիւնը քաղաքացւոց համար հեշտին ու ճամբորդաց համար՝ անդին անցնելու յարմար կամուրջները լաւ վիճակի մէջ պահելու։

11. Կ'ուզենք որ երբ որ հարկն այնպէս պահանջէ — բայց ոչ թէ թշնամւոյն յարձակման հետեւութեամբն, — եթէ քաղքին ազգայիններն իրենց աւելի յարգի առեւտրոյ նիւթերը Գրանսիլուանիոյ բերդերով ու ամրութիւններով պատսպարուած քաղաքներուն մէջ զետեղել եւ մեծագոյն ապահովութեան համար պահել կ'ուզեն, այն քաղաքները զանոնք ներս ընդունին եւ հոն իրենց վաճառքներուն պահպանութեանը համար յարմար տեղ տան։

12. Զինուորաց տեղ տալէն, զինուոր պահելու պարտաւորութենէն, նախամոլք տալէն եւ ասոնց նման ուրիշ ծանրաբեռնութիւններէն այս հասարակութիւնը դուրս կ'առնունք եւ ազատ կը հրատարակենք։ Վերջապէս

13. Գրանսիլուանիայի մէջ ասդին անդին ցրուած Հայերն (ի բաց առեալ Հայաքաղաքացիքը) ուր ալ բնակին, մինչեւ որ երրորդ տեղ

մը ժողովելով՝ իրենց համար յատուկ առանձնաշնորհութիւններ չեն վաստըկիր, տուրքերու եւ ուրիշ հասարակաց ծանրաբեռնութեանց համեմատեալ պարտաւորութիւնը կրելու, ինչպէս նաեւ այն տուրքերու նկատմամբ ինչ որ իրենց վրայ դրուած է, այս հասարակութեան վերատեսչութեանը տակ ձգուին: Սակայն՝ բաղդաբար այս քաղքին նպաստաւոր եղած բաներուն մէջ՝ օգնութիւն մատուցանենելու պարտաւորեալ չեն:

Մեր այս ամենագթած բարեհաճութիւնը, վերյիշեալ շնորհմունքներուն եւ արտօնութիւններուն նկատմամբ՝ Եղիսաբեթուպոլիս բնակող հիմայ եւ ապագայ ժամանակին հռոմէական ուղղափառ սուրբ հաւատքը դաւանող հայ ազգին, չէ թէ միայն գթածաբար կը յայտնենք, այլ նաեւ Ձեզի՝ մեծապատիւ, յարգելի, արժանացեալ, մեծազգի, վերապատուեալ, բարձրացեալ, ազնուատոհմ, քաջանուն, ինչպէս նաեւ շրջահայեաց արանց, մեր արքունական կառավարութեան, Դրանսիլուանիոյ իշխանութեան ամէն եւ միացեալ կարգացն եւ վիճակաց, գլխաւոր ու փոխանակի գաւառապետաց, դարձեալ՝ ազնուազարմ դատաւորաց, սըգոյական ատենից վերատեսչաց, եւ արքունական դատաւորաց, սաքսոնական քաղաքաց թագաւորական ատենակալաց, քաղաքապետաց, եւ ամէն որեւիցէ կերպով մեր իշխանութեան ներքեւն եղողներուն կը ծանուցանենք ու կը հրամայենք, որ վերն անուանեալ հայ ժողովուրդը չէ թէ միայն Դրանսի-

լուանիոյ մէջ մտնելու, այլ նաեւ վերը յառաջ բերուած արտօնութիւններն, ինչպէս — ապագայ — ճշմարիտ բնակիչներուն ամբողջապէս վայելելու, եւ յընդհանուր եւ առանձինն այն բաներն, որ վերը յիշուած կէտերուն մէջ բովանդակուած են, պահելու թող տուէք. Դուք, որ զիրենք առանձնաշնորհութեանց՝ որեւէ կերպով ընդդիմացողներուն դէմ պատսպարելու պարտական էք. զորոնք մենք առանց երկմտութեան յիշեալ Հայոց եւ իրենց յաջորդներուն խոստացած ենք: փոխադարձաբար իրենք ալ մեզի ու մեր վեհափառ տոհմին նկատմամբ միտութիւն, հաւատարմութիւն ու հպատակութիւն խոստացած են, որ թէ մեզի ու թէ Դրանսիլուանիոյ մէկալ սիրելի ժողովրդոց առջեւ սիրելի ու պաշտպանեալ ըլլան:

Որ բանին յիշատակին, ամրութեան ու մնացականութեան համար որոշեցինք, վերը յիշուած հայ ազգին իրաւանցն առաջիկայ հրովարտակը՝ ապագայ ժամանակին ապահովութեան համար՝ մեր մեծագոյն կախուած կնիքին տակը հրատարակելու եւ շնորհելու, անվնաս թողլով ուրիշին իրաւունքը:

Տուեալ ի քաղաքի մերում, ի Վիեննա Աւստրիոյ, յամի Տեառն 1758, Նոյեմբեր ամսոյն 28երորդ օրը, Մեր կառավարութեան 19երորդ տարին:

Մարիամ Թերեզիա. յ. ձ.

Գաբրիէլ Պեղլէն կոմս. յ. ձ.

Ադրիանոս Տոմինիկոյի տէ Զիք Տոմինիկո յ. ձ.:,

## 11

Զարմանալի երեւոյթ մըն է — որ թերեւս ընթերցողին աչքին ալ զարկած ըլլայ, — թէ մեր առաջիկայ պատմութեան մէջ այնչափ նշանաւոր դեր խաղացող եկեղեցական անձը՝ Մինաս Խնկանոսեան՝ քաղքին հոգին, հասարակութեան աջ բազուկը, այն՝ առանց որուն ձեռնտուութեան խորհուրդ մը չէր ըլլար, վճիռ մը չէր բերուեր... քաղաքային կենաց, ինչպէս նաեւ բարոյական օրինաց ու կանոնադրութեան առաջին օրէնսդիրը, որն որ իր յաջողակութեան, տաղանդին ու մեծ կարողութեանց համար "Տէրն, Տէրն, Տէրն Մինաս Խնկանոսեանց, Աստուածաբանութեան Վարդապետ եւ Առաքելական Միսօնար, գանօնիգուս գերազանցեալ գաբիդուլումին եւ առաքելական բրօդօնոդարիուս եւ արքիտիագօնուս Հայոց ազգին, նաեւ արժանաւոր բլէպանուս„ վերադիրներով պատուուեցաւ, որն որ իւր ժամանակին Մարիամ Թերեզիա մեծ կայսրուհիէն շքանշան ընդունած էր... մէկէն ի մէկ այսպէս մոռցուեցաւ, եւ իբրեւ թէ անհետացաւ ու աներեւութացաւ:

Այս գիտնական անձն, որ հասարակութենէն Վիեննա ու Հերմանշդատ խրկուեցաւ քաղաքային գործքերը շտկելու, արքունական երկիրները գնելու եւ Կարոլոսի առանձնաշնորհութեանց կոնդակը վերանորոգելու, հիմակ միայն տեղ մը կը յիշուի, եւ այս՝ առաջիկայ արտօնութեանց կոնդակին մէջ: Բայց ան ալ,

ինչպէս կ'երեւայ, միայն վասն արտաքին երեւութին, միա՛յն անոր համար՝ որպէս զի իր անունն ալ հոն ըլլայ։

Ի՞նչ է արդեօք այս տարօրինակ երեւութին պատճառը։

Մինաս Խնկանոսեանի — ծննդեան տեղն անշուշտ Եղիսաբեթուպոլիս է — տղայութեան վրայ քիչ բան գիտենք։ Տղուն վրայ տեսնուած մեծ տաղանդի նշաններն եւ ուսման մէջ ցուցուցած սաստիկ յաջողակութիւնը՝ յորդորեցին — որչափ կրնանք մակաբերել պարագաներէն, — իր հայրն՝ որ պատանին Հռոմ խրկուի։ Հոն Ուրբանեան դպրոցն ուսմունքն աւարտելէ ու քահանայ ձեռնադրուելէ ետեւ՝ Վենետիկ անցնելով, Մխիթարայ ու իր աշակերտաց ձեռքին տակ հայերէն լեզուին ու հայերէն ուսմանց մէջ ինք զինք կատարելագործեց։ Իր ճարտարաբանութիւնն ու յաջողակ գործունէութիւնը հասարակութիւնն յօգուտ իւր գործածել գիտնալով՝ քաղաքը թէ նիւթապէս ու թէ բարոյապէս իր ատենը շատ յառաջացաւ։ Իր ձեռնտուութեամբ շատ մը նոր կարգադրութիւններ եղան, իր միջնորդութեամբ շատ մը օրէնքներ դրուեցան — ինչպէս տեսանք, — եկեղեցի երթալու, զգեստեղէններ հագնելու, գինետուն չերթալու, Հրեշտակ Տեառնէն ետեւ դուրս չմնալու նկատմամբ. եւ այլն։

Այն քիչ բանն, զոր իր վրայ կը գտնենք գրուած տարեգիրներուն մէջ՝ յաջորդներուն մէջ կրնանք բովանդակել։ 1733ին զինքը կը

գտնէ քաղաքն ամէնէն արժանաւորն Հռոմ երթալու, սորվելու եւ քահանայական կարգ ընդունելու։ Երբ ասկից Վենետիկ կ'անցնի՝ խորհուրդ կ'ընէ քաղքին դատաւորն . . . եւ բոլոր ժողովուրդն, որ նամակ մը գրուի Տէր Մինասին որ Եղիսաբեթուպոլիս գայ։ Կը խոստանայ հասարակութիւնն այն ամէն ծախքերն զոր ըրած է քաղքէն մինչեւ Հռոմ, եւ ասկէ մինչեւ Եղիսաբեթուպոլիս, եւ դարձեալ՝ ինչ որ տան վարձու եւ կերակրոյ տուած է, բոլորը յետս դարձընելու կամ վճարելու։ Ուրիշ տեղ ալ կը գտնենք թէ քաղաքը հաշիւ ընելով՝ վճարած է իր հօրը 50 ոսկի կամ 250 հունգարական ֆիորին. եւ պայման կը դրուի, որ Տէր Մինաս մինչեւ ի մահ ծառայութիւն ընէ, իւր կարողութեանն համեմատ, իբրեւ քահանայ եւ իբրեւ ուսուցիչ. բաց ասկէ՝ որ օգնութիւն մատուցանէ ուրիշ որեւիցէ բանի մէջ, որ քաղքին բարօրութեան ու յառաջադիմութեան համար հարկաւոր է։

"Ամի Տեառն 1733 Ապրիլի 6 իպաշֆալօյն.

Պատուելի Աղաչայ Պիրօվին Նիգօշին ժամանակն եղաւ այս բանն։

Խորհուրդ արինք այսպէս վասն տէր Մինասին Խնկանոսեանցն սէպն, որպէս սկիզըն զիբեն պատուելութիւնը ընտրելով ազգից մեր ի պաշֆալօվ քաղքէն ու խրկելով զիբեն հրամանքը Հռօմ առ ուսուցանելոյ (°) եւ առնելոյ կարգ գահանայութեան, որն որ Աստուած ար-

ժանի արիլէ ու հասիլէ կարգի. եւ ըլալով ի-
րեն պատուելիութիւնը վէնէտիք, անոր համար
մինք խորհուրդ արինք այսպէս. պատուելի պի-
րօմն եւ պատուելի աղաներն եւ գահանայք եւ
սարըսդայ վադահնէրօմն եւ բօվանդակ ժօղօ-
վուրդն հաւասաու եւ խնդրեցինք զպատուելի
Աղաչայ պէտրոսն որ խրկէ ա. թուղթմը Տէր
մինասին ու հրամէցէք անէ, օր ալվի գայ մեր
քաղաքը եւ այսպէս խօսդացիլինք, որ ունէնանք
խարճն քաշէլու ասգից մինչեւ հռօմ ու հռօմէն
այլվի մինչեւ տուն, իւր հրամանոցն բէրնի եւ
քիրայի ինչ օր տված ըլայ նայ ունենանք դար-
ձընէլու. ու ինչ օր խարճած ըլայ թէ հագըսդի
թէ թղթէրու[1] վերայ, թէ ինչ եւ իցէ եւ վէնէ-
տիքալ ինչ որ խարճած ըլայ նայ բան չունինք.
միան երթալու եւ ետ գալու մինչեւ տուն. եւ
կամ թէ օր իքմը խարճած ըլայ քաղաքին սէպն
նայ քաղաքը պի դարձընու„:

"Գիտացվի որ սէպէց Աղաչայ ամիրան
հետ քաղաքին ու վիճարեց քաղաքն զՏէր մի-
նասին խնկանոսին օրդու սէպն օր հռօմ գընացի-
լէ եւ սօրվիլէ, նայ վիճարեց քաղաքը Ծ օսգի,
այսինքն ԲՃԾ մաճրի 250 մաճքի մաճրի, որ ու-
նէնայ վերըդգրեալ Տէր մինասը քաղաքին մինչեւ
ի մահ ծարութիւն անէլու ըստ կարեացն ամե-
նայն բանի քով, թէ քահանայութեան կարքին
մէջ, թէ չգօլանունը[2] եւ թէ ուրիշ քաղաքին
պիտվականութեանը սէպըն. որ գիտացվի ու

[1] Դրանսիլուանիացւոց լեզուաւը կը նշանակէ՝ գիրք։
[2] Schola, դպրոց, դասատուն։

հաստատ մնայ մինչեւ ի մահ. զոր Տէր Աստուած ընդերկայն աւուրս պահեսցէ զամենեքեանըս եւ խաղաղութեամբ. ամէն„:

Ինչպէս ուրիշ տեղ ալ յիշեցինք կայսրուհիէն հրաման մ'եկած ըլլալով որ քաղաքը կերպով մը օգնէ տէրութեան, Մինաս Խնկանոսեան կը խրկուի Հերմանշտատ, Պետրոս Քէլեանին եւ Ղազար Յովհաննէսեանին հետ. կը տրուի իրեն իշխանութիւն գործելու եւ խօսելու, ինչպէս որ Աստուած իրենց ազդէ:[1]

Քանի մ'ամիս ետքը (1746 Յունիս 25) լիազօր իշխանութեամբ կը խրկուի առ Մարիամ Թերեզիա, որպէս զի թէ քաղքին պարգեւած 1200 ոսկին, իրեն ձեռքը հասցընէ. եւ թէ որպէս զի արտօնութեան պատճէնին 13 կամ 14 կէտերը վերանորոգել տայ: Ու կը գտնենք թէ այս ամէն բան մեծ յաջողութեամբ ի գլուխ հանած եւ ըստ կամաց ու ըստ քմաց Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան քալած ու գործած է:

Պատճառն ուրեմն որ քաղաքը մէկէն ի մէկ իրմէն այնպէս ցրտացած է, կամ՝ այն է որ Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք իրմէն վախցած են, որ եպիսկոպոսութեան խնդիրը նորէն երեւան կը հանէ. եւ ըլլալով ինք կայսրուհւոյն առջեւ ամենասիրելի անձն, անտարակոյս ինք զինք Դրանսիլուանիոյ Հայոց եկեղեցւոյն գլուխ անուանել կու տայ, — որ բանէն Եղիսաբեթուպոլ-

[1] Տես էջ 114:

սեցիք մեծապէս կը վախնային, — եւ կամ այն, որ Գրիգորեան տոմարին խնդրոյն մէջ Խնկանոսեան սաստիկ ընդդիմադրական դիրք մը բռնած էր. որովհետեւ այս նորոգութեան մեծապէս հակառակ էր: — — —

Պատմութիւնը կը վկայէ թէ Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք՝ Դրանսիլուանիոյ գաղթականութեանց մէջ՝ իրենք զիրենք միշտ առաջին կամ Նախամեծար կ'ուզէին համարիլ: Ուստի եւ չէին կրնար տեսնել որ օտար Հայաքաղաքացիքն ինչ կերպով եւ իցէ իրենց վրայ հեղինակութիւն ցուցընեն ու ազդեցութիւն բանեցընեն:

Այսպէս հանդիպեցաւ ի մէջ այլոց նախընթաց դարուն սկիզբն, երբ մեծանուն Վրզարեան վարդապետ՝ Դրանսիլուանիոյ Հայոց եպիսկոպոսն իր իշխանութիւնը վրանին բանեցընել ու զիրենք Կերլայ հայաքաղաքը ամփոփել կ'ուզէր[1]: — Այսպէս հանդիպեցաւ 1736ին, երբ Մինաս Թորոսեան, որ ինչպէս գիտենք Վիեննա բանիւ եւ գործով կը ճգնէր որ բոլոր Դրանսիլուանիոյ Հայերն երջանկացընէ, ու զիրենք շրջակայ ազգաց հետ հաւասար աստիճանի բերէ, — որուն միջնորդութեամբ՝ ինչպէս յայտնի է, թէ՛ Հայաքաղաքացիք ու թէ՛ Եղիսաբեթուպոլսեցիք ընդունեցան Կարոլոս Կայսրմէն իրենց առանձնաշնորհութեանց հրովարտակը, — Հայոց եպիսկոպոս ըլլալու ետեւէն ինկած էր: Եղիսաբեթուպոլսեցիք խնդրոյն առաջն

[1] Տես էջ 19 եւն:

*առնելու ու եպիսկոպոսութեան վերանորոգութիւնը դեռ բողբոջի մէջ եղած ատեն արմատաքի խլելու համար, ժողովեցան եւ սկսան խորհիլ թէ ի՛նչ ճամբայ բռնելու են՝ որովհետեւ կը լսեն թէ Մինաս Թորոսեան Վիեննա կայսեր խոստովանահայրը շահելով՝ միջնորդ կը բռնէ ու կը ճգնի Վրզարեանին իբրեւ յաջորդ՝ Դրանսիլուանիոյ Հայոց եպիսկոպոս ըլլալու. ու թէ ետեւէն կ'իյնայ իմանալու որ արդեօք Եղիսաբեթուպոլսոյ քահանայք, ինչպէս նաեւ աղաներն ու քաղաքացիք գիտե՞ն այս բանս, ու թէ արդեօք կ'ուզե՞ն զինքն իրենց եպիսկոպոս թէ ոչ: Իրերն այս վիճակի մէջ ըլլալով միաբերան սահմանեցին նախ որ բացարձակապէս ընդդէմ են եպիսկոպոսութեան. եւ երկրորդ թէ չեն ուզեր որ Թորոսեան հայ եկեղեցւոյն գլուխն ըլլայ: Եւ որպէս զի չըլլայ թէ այս բանը մէկ երկու հոււոյ վրայ իյնայ, որոշուեցաւ որ չուզողներուն անունը գրի անցուի ու միանգամայն լատին եպիսկոպոսին իմացընեն Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան կամքն ու դիտաւորութիւնը:*

*Աս ըլլալէն ետեւ բողոքեցին քաղաքովին Թորոսեանին քաղաքականութեան դէմ, գլուխնին ունենալով զՏէր Մինաս Խնկանոսեան ու հասարակութեան մեծամեծներէն քանուչորս հոգի, որոնք անուննին ալ բողոքման թղթին տակը ստորագրեցին:*

*Իրին աւելի լուսաւորութեան համար, կը դնեմ հոս այս ժողովոյն ու բողոքման արձանագրութիւնն՝ ըստ բնագրին:*

"Ի Թվին․ քնի 1736․ սեկտեմբերի․ 23։
Գիտաձվի ինչպէս որ քաղվեցաւ պատվելի դլինածը եւ Ա․ սարըսդան իւր աղանէրօվն լեսելով թէյ պատվելի տէր մինասն Թորոսեանըն կու քալէյ պէջըն իւրեայն եպիսկոպոսութիւն հանէլու. եւ քընութիւն արաւ թէյ գուման ունին գահանայնքըն․ կամ աղաներըն, կամ քաղաքըն, այս բանիս, թէ չէյ․ եւ նըմանապէս թէյ կուզին զինքըն Եպիսկոպոս թէ չէյ․ եւ գիտաձվի օր զչուզօղնուն անըններըն պի գըրվի, որ եոդըն բանըն մէկի կամ էրկուսի վրայ չի ըննի․ եւ զայս մեր խորհուրդըն գիտաձվի օր իմաց պի արվի մեր Եպիսկոպոսին օր գիտաձվի, կամ գիտէնայ Եպիսկոպոսն զմեր քաղաքին կամքը, կամ թէյ զդիտաւորութիւնըն„։

Ու կը յաջորդեն ստորագրութիւններն, ուր իւրաքանչիւր ոք իր անունին քով՝ համառօտիւ կ'աւելցընէ միանգաման իր կամքն՝ այսպէս․

"Ես տէր մինաս խընկանոսեայց եւ Աստուածաբանութեան վարդապետ եւ բլէպանուշ քաղքիս, կամս չէյ եւ ոչ գիտեմ. տ․ կ․
Ես տէր էմանուէլ գաբէլան էլիզաբէթ քաղաքի, իմ կամքը չէ․ տ․ կ․
ես տէր ստէփանոս տէր մէլքսէկան գաբէլան էլիզաբէթ քաղաքի, իմ կամքըս չէ․
Ես Նիգօշ խըրգոցի պիրով քաղքիս, իմ կամաւըս չէ եւ ոչ գիտացիլիմ. տ․ կ․
ես լուսիկս քէլի էկէղէցբան էպէշֆալօվի, իմ խըրէրովըս չէ ոչ իմ խապուս է. տ․ կ․

Ես Պետրոս քէլչի ոչ գիտեմ եւ ոչ խապուլս է. տ. կ.

Ես վարդան խըրգուձ ոչ գիտեմ եւ ոչ խապուլս է. տ. կ.

Ես ամիրայն մէղտէս խըրնկանոսի ոչ գիտէմ եւ ոչ խապուս եմ. տ. կ.

Ես Հանգոյ մէղտէսու խըրնկանոսի ոչ գիտիմ եւ ոչ խապուլս է. տ. կ.

Ես մարտիրոս լուսիկ ոչ գիտէմ եւ ոչ խապուլս եմ. տ. կ.

David Csikjj nec scio nec volo. տ. կ

Ես խաչերես սիմոնի ոչ գիտեմ եւ ոչ խապուլս եմ. տ. կ.

Ես օվանէս գրչուն որդի, ոչ գիտէմ եւ ոչ խապուլս եմ. տ. կ.

Ես Նիկօղ որդի ըսթէփանի չիմիլօվցույ ոչ գիտիմ եւ ոչ խապուլս է. տ. կ.

Ես մանուկ խըրգոցի օչ գիտեմ օչ խապուլսէ. տ. կ.

Ես միդգոյ սիմոնի ոչ գիտիմ եւ ոչ կամէնամ. տ. կ.

Ես մանուկ անտէնի ոչ գիտիմ եւ ոչ խապուլս է. տ. կ.

Ես իսայ օհանի ոչ գիտիմ եւ ոչ խապուլս է. տ. կ.

Ես խաչգոյ անբեդրի ըսթէփանի որդի, ոչ գիտեմ եւ ոչ խապուլս է. տ. կ.

Ես խաչիկ քէլ լուսիկի ոչ գիտիմ եւ ոչ խապուլս է. տ. կ.

Ես անկսէնտ ոչ գիտեմ եւ ոչ խապուլս է. տ. կ

ես ղազար օհանեայնց, ոչ գիտեմ եւ ոչ խապուլս է. տ. կ.

ես լուսիկ Թորոսեանց ոչ գիտեմ եւ՛ ոչ խապուլս է.

ես լուսիկ ակօբշայի օսգրիչեն ոչ գիտեմ եւ ոչ խապուլս է. տ. կ.

ես զատիկ օվանէսի ոչ գիտեմ եւ ոչ խապուլ է ինծի. տ. կ:„

Շուրջ տարի մը ետքը՝ երբ որ եպիսկոպոսութեան վերականգնումը նորէն արծարծեցաւ ու Եղիսաբեթուպոլսեցիք իմացան որ Տէր Մինաս (հիմակ Զուազեղեան) իր գործքը ծածուկ ճամբաներով յառաջ կը տանի՝ ընդհանուր ժողով մը գումարեցին: Ժողովքին մէջ Տէր Նիկողայոս Խնկանոսեան նամակ մը ցուցուց՝ զոր ընդունած էր կայսեր խոստովանահօրմէն, որուն մէջ հարցում կ'ըլլուի թէ ինչ է պատճառն որ Եղիսաբեթուպոլսեցիք չեն ուզեր որ Զուազեղեանն եպիսկոպոս ըլլայ. եւ կը յանձնուի որ իրենց ընդդիմութեան ու չկամելութեան պատճառը գրով յայտնեն: Ժողովականք այս նամակն առիթ առնելով՝ որոշեցին որ գրեն Գերապայծառին իրենց չուզելուն պատճառն ու նորոգեն իրենց կամքը: Կը խնդրեն միանգամայն խոստովանահօրմէն որ չըլլայ թէ թողու որ Տէր Մինասն եպիսկոպոս ըլլայ. վասն զի, ինչպէս արդէն 1736 Սեպտեմբերի 23ին յայտնեցին, իրենց ամենեւին պէտք չէ: Որովհետեւ գիտենք, կ'ըսեն, իր ամէն գործքերն ու կը ճանչնանք իր զուր իմաստութիւնն ու խոնարհութիւնը: Որո-

*շուեցաւ նաեւ որ ժողովոյն արձանագրութենէն երկու օրինակ առնուի եւ դրուի դիւանատան մէջ, որպէս զի ապագայ ժամանակին համար ալ ըլլայ ապացոյց մը՝ թէ եպիսկոպոսութեան խընդրոյն մէջ ինչ ճամբայ բռնած են. եւ թէ ի դիպուածի որ եպիսկոպոս ըլլայ Զուազեղեանն, իրենք ցուցընել կարենան թէ ինչ կարծիքի տէր էին իր ժամանակին:*

*Ահաւասիկ այս* 1737 *Յուլիս* 18*ին ժողովոյն արձանագրութիւնը:*

*“Այլվի քաղվեցաւ Պաւելի դընաճը վասն Տէր մինասին ձըվածեղին համար. ինչպէս որ առաջ ալ մենք լսելով որ կ՚ուզէ մեր Հայ նացիային եպիսկոպոս ըլլալու ու մենք գիտնալով զամենայն իրեն կացութիւնը եւ զուր իմաստութիւնն եւ խոնարհութիւնն, նայ ամենեւին չենք կամենալ որ ըլլայ. չի կամենալով մենք՝ ամէնեքեանս էլեզաբեթ քաղաքացիքն քաղվեցանք ու կապ ու խորհուրդ արինք եւ ամէնէքեանս զմոհրերըս դըրինք եւ ըստորագրեցանք թէ ամենեւին չուզինք ու չենք կամենալ եւ ոչ մեր գիտնալօվն է եւ ոչ մեր կամայօվն է. վասն այնորիկ հիմպիկ ալ տեսնելով որ մէկ գիր մը բէրաւ Տէր Նիկօլն խնկանոսեան, որն որ խրկիլ էր կայսերին խօսդօվանահայրն իրեն Հարգելութեան. վասն Տէրին մինասին ձըվածեղեանին սէպն, թէ ինչպէս լսիլ է, որ մինք պատճառ գըտնելով եւ գօնդրայտիգօվադ անելով իրեն, այսինքն տէր մինասին վերայ, նայ գրինք իրեն գերայպայծառութեանն զպատճառն եւ մեր կամքն որ չի թօղու,*

որ ըլլայ ինքը եպիսկոպոս, այսինքն տէր մինասը ձրվածեղի. անոր համար այլվի այսօր 1737 ուլիսի 18ին կու գրինք որ գիտացվի. զէ անպէս էղաւ խորհուրդն, որ գրինք թուղթ խօսդովանայ Հցյրն կայսերինը թէ մէզիկ ամէնեւին անպէտէ. ոչ մեզիկ պիտիկ է զինքը եպիսկոպոս, ընտօր որ առաջ ալ ունինք գրած եւ հաստատած ի թվոյն 1736 սեպտեմ 23ին էլեզապեթան. եւ որպէս գրվի նայ պի գրվի բարեան մեր գրերուն մէջ, որ գիտացվի. ու պիտի ըլլայ նայ պի ցըցնունք եւ այլն:„

Կայսեր խոստովանահօր գրուած թուղթն, որչափ կրնանք պարագաներէն հետեւցընել, սահմանուած տեղը գացած չէ. որովհետեւ բնագիրն, որ ժողովականաց յատուկ ձեռնագիրներովը ստորագրուած է եւ իւրաքանչիւրին կնիքն ալ անունին ներքեւ դրուած է, հոս ձեռուընիս է: — Սակայն ան ալ կրնայ ըլլալ որ ասոր մէկ թարգմանութիւնը գնացած ըլլայ ի Վիեննա կայսեր խոստովանահօր:

Ուստի եւ շատ հաւանական է որ Մինաս Խնկանոսեանն ալ իր բարձր գիտութեան վրայ վստահացած, եւ տեսնելով իր հեղինակութիւնը Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան վրայ՝ Վիեննա երթալով ու հոն վաստըկելով իր արտաքին երեւութովն, իր մարդավարութեամբն ու հաճոյական քաղաքավարութեամբը թէ պաշտօնեաները, թէ արքունեաց մեծամեծները եւ թէ զնոյն ինքն զկայսրուհին, — որմէ իբրեւ պարգեւ ընդունած էր նաեւ իր մանրանկար կեն-

դանագիրն ոսկիէ շղթայով կախուած, — ասանկ եկեղեցական վերին իշխանութեան գաղափար մը ծնած ըլլայ իր մտաց մէջ, զոր զգացուցած ալ ըլլայ իւր քաղաքացւոց, որոնք — ինչպէս վերը տեսանք, — հազիւ թէ սաստիկ ընդդիմադարձութեամբ ու հակառակութեամբ՝ Գրանսիլուանիոյ հայ եպիսկոպոսութեան վերանորոգութեան դռները գոցած էին։

Աս մտածել կու տայ այն պարագան, որ զինք երկիրները գնելու համար վերջին անգամ (1758) Վիեննա խրկուած պատգամաւորաց մէջ չեն ընտրած. մինչդեռ գիտենք թէ ինքն էր ճամբաներն առ այս պատրաստողը։ Ա՛ս մտածել կու տայ այն պարագան ալ, որ երբ Եղիսաբեթուպոլսոյ քաղաքային վարչութիւնն երեսփոխանները խրկեց, այն խրատը դրաւ առջեւնին որ զգուշանան ու չըլլայ թէ անանկ ուրիշ բանի մը խօսին կամ բան մը սկսին որ հասարակութեանն անպատուութիւն բերէ[1]։ Եւ գիտենք թէ խրատն ու զգուշութիւնը հոն պէտք է, ուր որ հարկաւոր է։

Ուստի այս ճամբով ու այս վարմունքով՝ Խնկանոսեան ինք զինք իւր քաղաքացւոց առջեւ չէ թէ բարձրացուցած ու յարգն եւ հեղինակութիւնը ոչ թէ մեծցուցած ու աճեցուցած է, այլ ընդ հակառակն Հայերն իրմէն բոլորովին խրտուցած ու հեռացուցած է. որուն հետեւութիւնն ա՛ն եղաւ որ հետ զհետէ ամէնուն երեսէն ինկած ու մոռացութեան մէջ թողուած է։

---

1 Տես՝ էջ 145։

Եթէ մեր այս ենթադրութիւնը չունի հիմն, եթէ չէ այս պատճառն որ Մինաս Խնկանոսեան իր ժողովրդեան աչքէն ելած է, այն ատեն կը մնայ երկրորդ պատճառն, այսինքն իր սաստիկ ընդդիմութիւնն ու հակառակութիւնը նոր կամ գրիգորեան տումարին Եղիսաբեթուպոլիս մտցնելուն դէմ, որ բաւական խռովութեանց պատճառ եղած է, բաց ասկէ հարիւր ոսկւոյն ու վրանին խնդիրները։

Տեսնենք թէ ինչ պարագաներով մտաւ նոր տումարն Եղիսաբեթուպոլիս։

## 12.

Դրանսիլուանիոյ ազգայինք Հռոմայ եկեղեցւոյ հետ հաղորդակցութեան մէջ մտնելէն անմիջապէս ետքը չգործածեցին գրիգորեան կամ նոր տումարը, այլ իբր հարիւր տարի ետքը։ Սակայն ինչպէս ամէն նոր բան, այսպէս ալ աս՝ մեծ անմիաբանութեան ու յեղափոխութեան առիթ եղած է ազգայնոց մէջ։ Այս՝ հին տումարը վերցնելու եւ նորը մտցնելու պատմութիւնը բաւական նշանաւոր մաս մըն է Եղիսաբեթուպոլսոյ պատմութեան մէջ։

Թէ այլեւայլ հայաբնակ քաղաքներն երբ ընդունեցան նոր տումարը՝ դեռ ճիշդ տեղեկութիւն չունինք։ Սակայն Եղիսաբեթուպոլսոյ դիւանական գրութիւնք այս՝ տումար փոխելուն պաշտօնական գործառնութիւնները բաւական լուսաւոր կերպով առջեւնիս կը դնեն։

Ինչպէս յաջորդ արձանագրութեանց համառօտ բովանդակութենէն պիտի տեսնենք, մեծամեծք ու ազնուականք եւ ժողովրդեան իմացական մասը կ'ուզէր Նոր տումարի գործածութիւնն. իսկ եկեղեցականք ու անոնց հետ հասարակ ժողովրդեան մէկ մասը կ'ընդդիմանար նորոգութեան:

Նոր տումար մտցընելու համար առաջին քայլերն եղած են 1757ին քաղաքային ժողովոյն մէջ, ուր խնդիրն առաջարկուեցաւ նախագահին կողմանէ իբրեւ խորհելու նիւթ:

Ասոնք են ժողովքին խօսքերը.

"Աստուծոյ ողորմութեամբն — 1757 դեկտեմբերի 19 Էլիզաբէդան-ի փիու[1] եւ քաղաքի պիրովութեան Աղա եւ աղաչայ Անկսէնտի Ա. Մանուկի խիգուցեանց. նաեւ ի սարըսդութեան աղաչայ Խաչգոյի Ըստեփանի Մնբէգրեանց: Խորհուրդ եղաւ երկու տակ դընձոմն[2] վասն նոր գալէնտարիումին թէ այս դադումէն[3] ինտան, ունենանք զնոր գլնտարն բռնելու. վասն շատ պատճառնու: Այսինքն նախ եւ առաջ որ հիմիկուցէն ինտան կարենանք քրիստոնէաբար սուրբ եկեղեցոյն հրամանին գօրայ զտօներն եւ զպասերն բռնելու, թէ հօս մեր քաղքին մէջ, թէ ճամբոմն[4]: Զէրայ Աստուծոյ ողորմութեամբն

---

[1] Fiú, հունգարերէն բառ է, կը նշանակէ՝ օժանդակ, օգնական:

[2] Երկու տեսակ, կրկին ժողով, այսինքն՝ գումարուեցան թէ գլխաւոր ու թէ օժանդակ ժողովքին անդամները:

[3] = datum, թուական:

[4] Այսինքն ճամբայ եղած՝ ճամբորդութեան ատեն:

ամէն դի կու գտնէ նոր գնտար, նայ ամէն մէկն կլայ գիտնալու[1] զիրեն պարտականութիւնն։ Երկուսում օր զայս Նաբաստնալ[2] վերցնունք մեր վրայէն։ Ջէրայ երկրին մէջ շատոնք կասին ու շատոնցմէ կու լսինք թէ զհին գնտարն բռնելով ջիզմադիգուններ ինք։ Նայ կուզինք որ այսպէս Նաբասդ կալածիքն վերցըվին մեր վրայէն։ Եւ ալ շատ պատճառներն ալ կան որնօր հօս չինք գրիլ։ Եւ այս խորհուրդս ըլլալով քաղվեցաւ ընդրէկ քաղաքն եւ բրօբօնովադ եղաւ բանը ընդրէկ հասարակին դիմաց. որ բանը ընդրէկ հասարակն ունօյ վօգօյ հաստատեց եւ աբրօբովադ արաւ[3]. թէ իժով աղէկ է ու աղէկ պիլայ։ Եւ այսպէս հաստատվեցաւ, որ Աստուծոյ ողորմութեամբն այս գալկիրակիս զՔրիստոսի ամենասուրբ ծնունդն ձէլէբրալուիդ անինք[4] ամենեքեանս. զոր տէր աստուած պաշխէ ամէն մէկիս որ կարենանք ի փառս Մանկացելոցն Յիսուսի եւ ի շահաւէտութիւն հոգւոց մերոց կատարելու. Ամէն ,,։

Աս բանս պարզապէս խօսք ու առաջարկութիւն չմնաց. խորհրդին յաջորդեց գործադրութիւն։ Վասն զի՝ ինչպէս քիչ մը ետքը պիտի տեսնենք, քաղաքային ժողովն ու հարիւրոց ժողովը Մինաս Խնկանոսեանին երթալով՝ հասարակութեան կամքն անոր առջեւը դրաւ, եւ իւր կողմանէ առաջարկեց որ այս եղած որոշումը Թեմական եպիսկոպոսին ծանուցուի։

---

[1] Ի վիճակի է՝ կրնայ գիտնալ։
[2] Պարապ, զուր խօսք։
[3] Ընդունեցաւ, հաւանեցաւ, հաստատեց։
[4] Տօնախմբենք, հանդիսութեամբ կատարենք։

Յաջորդ ժողովոյն ընթացքէն կ'իմանանք որ թէ՛ հասարակութիւնն ու թէ՛ Խնկանոսեան գրած են առ եպիսկոպոս. բայց շատ հաւանական է որ ժողովրդապետը հակառակ կարծիք ունեցած ըլլալով՝ եպիսկոպոսին իր յատուկ կարծիքը հաղորդած է, որով եպիսկոպոսէն եւ ոչ մէկ կողմնակցութիւնը պատասխան ընդունած է։ Ասկէ՝ հասարակութիւնն այն հետեւանքն ըրաւ, որ եթէ գէշ բան մ'որոշած ըլլար՝ եպիսկոպոսը զինք այն բանէն կը զգուշացընէր. ուստի ըստ այնմ թէ "որ լռէ՝ հաւանի", Դեկտ. 19ին ըրած որոշումը նորէն ամրացուց։ Եւ որպէս զի բանն աւելի հաստատուն ու ապահով ըլլայ՝ 12 խորհրդականները, սարըստային 24 աղաչանները եւ ժողովքին ներկայ գտնուող մէկալ 82 անդամները, ընդ ամէնը 118 անձինք որոշման ստորագրեցին։

Այս՝ 1757 Դեկտ. 24ին եղած ժողովքին ընթացքը յաջորդն է։

"Աստուծոյ ողորմութեամբն 1757 Դեկ.ի 24. Էլիզաբէդան։

Պատճառ գրոյս այս է, որ ասոր առաջ տարոյս Դեկի. 19ին խորհուրդ ըլալով մեր Պ. Հասարակին մէջ վասն նոր գլընտար արնելուն, որին պատճարներն կան գրած կարճ ի կարճոյ այն խորհրդին մէջ։ Որ խորհրդին ժամանակն քաղելով զբոլոր քաղաքացիքն, որոնք տունը կը գտվէին, առաջ դրվեցաւ իրենց հրամանոցն Պատվելի Մակիսդրադէն, որ բանին ետեւանց ամէնքն ունոյ վօդոյ հաւանութիւն տվին զնոր

գլխտարն արնելու, ասելով թէ իժով աղէկ է եւ աղէկ պիլայ եւ ասոր առաջ ալ եղած ըլար նայ, աղէկ եղած պիլար: Եւ այսպէս զհասարակին կամքն իմանալով Պատվելի Մակիսգրագն եւ բոլոր ձէնդում վիրադուշն [1], գնացինք գերյարգելի վարդապետին, այսինքն Տէր Մինասին Խնկանոսեանց, սոյն քաղաքիս բլէպանուշին[2] մօտ, եւ առաջ տվինք զբոլոր հասարակին կամքն. ուրուխ այսպէս գօնգլուտովադ եղաւ. թէ որովհետեւ Մեր էգսբրէսն էկիլէ եւ գրով պատասխան չի բերիլ նայ, ալէսդէ[3] հաւանութիւն տվիլ է Հասարակին խորհրդին. զէրայ հասարակն խուծած[4] խորհուրդ արած ըլար նայ, գրած պիլար թէ չի անինք. ըստ այնմ (թէ գվի դաձէդ գօնսէնդիրէ վիտէդուր[5]) մինք ալ ասօր գօրայ քաղվելով բոլոր Մակիսդրադն նաեւ բոլոր ձենդում վիրադուշն, գօնֆիրմօվադ արինք՝ զտարոյս Դեկտեմբերի 19ին վասն նոր գլխտարին արած խորհուրն: Վասն որոյ, որոնք այս գօնֆիրմացիային քաղվեցան, կամեցաւ պատվելի Մակիսդրադն հարցընելու ատուկ ատուկ[6] թէ որն կու ընդունի զնոր գլտարն եւ որն չէ. զորոնց անըներն կու գտվին հոս այլ առաջ:

"Աստուծով. այս այլ վար գրեալ աղա-

---

[1] Centum viratus, հարիւրոց ժողով:
[2] Ժողովրդապետ:
[3] Ըսել է թէ, ուրեմն:
[4] Դրանսիլուանիացւոց լեզուաւ՝ գէշ, չար:
[5] Լատիներէն ծանօթ ասացուած մըն է Հայերէն գրերով: Կը նշանակէ. Որ լուէ՝ հաւանի:
[6] Զատ զատ:

չաներն ու քաղաքացիքն զնոր գլտարն կու ընդունին կամաւորապէս։

Ա. Անկաէնտ Ա. Մանուկի խոհգուցենց պերով քաղաքին.
Ա. Ղազար Օհաննեանց.
Ա. Լուսիկ Թորոսեանց.
Ա. Նիկոլ Շիմիլովցունց.
Ա. Լուսիկ ոսգերիչեանց.
Ա. Օվանէս ոսգերիչեանց.
Ա. Անկաէնտ վրդնի. խոհգուցենց.
Ա. Նիկոլ Ճիրախեանց
Ա. Դոտէր վարդիկեանց.
Ա. Թուման Ջատիկեանց.
Ա. Մարտիրոս Գոչոդանի.
Ա. Օհան Տէր ակօբի Սուդաշ[1]
Ա. Խաչգօյ սնդրեդրեանց Սարադայ[2].
Մ. Իսայ Օհանի.
Ա. Օհանէս վասիլի.
Ա. Խաչիկ քելեանց.
Ա. Ուսէփ չիմիլովցու.
Ա. Լուսիկ չիմիլովցու.
Ա. Թորոս ուհանի.
Ա. Ավատուր վիգօլեանց.
Ա. Ակոբ սնդրեգրի.
Ա. Ջատիկ Թորոսի.
Ա. Անտոն Նիգօչի.
Ա. Դոտէրաշ ոսգերիչի.
Ա. Օվանէս խաչգօյի.
Ա. Մանուկ դաւիդի.
Ա. Լուսիկ սնգովիջի.
Ա. Մկրտիչ չիմիլովցու.
Ա. Արութիւն գաբաէպօվի.
Ա. Լուսիկ Ղազարի.
Ա. Ավատուր քելի.
Ա. Գրիգոր սհակի ադոնց.
Ա. Մանուկ գրիգորի.
Ա. Լուսիկ ամիրայի.
Ա. Մարտիրոս Բադրուպանի.
Ա. Մելքոն Կաչքարեանց.
Դաւիթ Ճիրախի.
Վարդերէս լուսիկի բդրաշգոյի.
Կուրեղ անկաէնտի.
Քրիստոսատուր բդրաշգոյի.
Տօնիկ գրբիթի.
Եազուպաշ սնգովիջի.
Նիգօլ պօջգաշի.
Մկրտիչ տօպլի.
Անկաէնտ մուրատը.
Ակոբ էտիլի.
Վարդան եօլպէյի.
Լուլից տէր օվանէսի.
Լուբուլ մէտիաչցու.
Դոտէր գնտովի.
Մանուկ իլախի.
Խաչիկ գրիգորէ
Խաչիկ մամու.
Պետրոս հանգօյի.
Սիմոն գաբաէպօվի.
Թորոս պէջիջանի.
Վարդերէս մինասի բդրչգոյի.
Օվանէս մէտիաչցու.
Նիգուլայ Ա. մանուկի խոհգուցենց.
Տօնիկ ասվատրի.
Օհան Ա. Իսայի.
Ծարուկ Մէչգօյի.
Նիկօլ Թարի.
Խաչատուր Բէրսիան.
Տօնիկ Նիկօլի.
Անտոն Ա. Խաչգօյի.
Սագօյ դրաստաջու.
Գրիգոր բոբոյի.
Մանուկ սնգովիջի.
Մանուկ ասլանի.
Ակօբ գադրվի.
Լուսիկ գնճի Մարդոյի.
Վարդեվան պէկիջանի.
Ակոբչայ տայպուգադի.
Մանուկ գէգարի.
Նիկօլ վարդիկի.
Մանուկ պիլուչդայի.
Գրիգոր գրագիայի.
Տօնիկ սնգովիջի.
Մարտիրոս տօնիկի.

---

[1] Ճարտարախօս, Հրապարակախօս (orator)։
[2] Ընկերութեան մը գլուխ, առաջնորդ։

Մանուկ բողոցգիի.
Օվանէս Նորսէսի.
Դանէլ իսայի.
Գրիգոր բադրուպանի.
Գրիգոր վարդիկի.
Լուսիկ գադնասուսի.
Օվանէս մրիգուցի.
Նիկօլ կօլօրիկ.
Մարտիրոս սնդովիջի.
Գրիգոր Տէր ըսթեփանի.
Մարքոս քնճի.
Սհակ օհանի.
Ասվատուր Մասդիք.
Անտօն ընպէյի.
Մալխաս ըդրաշգօյի.
Մկրտիչ դրրիդ.
Նասդուր Նիկօլի.
Թորոս դրասատանճու.
Խաչգօյ դրուջիկի.
Լուսիկ սհակի ադոնց.
Խաչիկ ադոնց.
Եօլպէյ սհակի.
Օվանէս Թուքչի.
Ըսթէփան գապալպ.
Ասվատուր դրուջիկի.
Օվանէս Նորգօյ.
Վարդերէս չիմգօյի.
Ասվատուր ոսգէրիչի.
Խաչիկ գօժօլեայի.
Դադէս բօղոցքիի.
Նաստուր գադրվի.
Խաչիկ դանէլի.
Ակոբշայ սհակի ադոնց.
Վարդան խասայի.
Մանուկ վարդիկի.
Լուսիկ գրօդեայի.
Ըստեփան Ա. Նիկօշի չիմ-լովցունց.
Օվանէս վըդնի. իսիգու-ցենց.

են ամց. Աղաչայներն եւ քաղքցիքն 106 Բէր-սօնայ »:

Բայց բանն աստ՝ չվերջացաւ: Քաղաքային վարչութեան ու հարիւրոց ժողովոյն բարեմիտ անդամներն ա՛ն համոզմամբ որ Խնկանոսեան ժողովրդեան կարծիքն ունի, շուտ մը իրեն գա-ցին իմաց տալու որ եղած որոշման համեմատ՝ երկրորդ օրն ըստ նոր տումարին ծննդեան տօ-նախմբութիւնը կատարելու բարեհաճի: Սակայն ժողովրդապետն՝ իւր անուղղակի ընդդիմութիւնը յայտնեց այնու որ իր օգնական քահանայովը հեռանալէն եւ խորհրդի նստելէն ետեւ, իմա-ցուց որ ինք իրմէն այս բանս չի կրնար կատա-րել, այլ վերնագոյն եկեղեցական իշխանու-թեան հրամանին կը կարօտի: Այն ատեն պի-րովը յանուն հասարակութեան բողոք ըրաւ ժողովրդապետին դէմ. ստ բանին պատասխա-

նատուութիւնը վրան առաւ. եւ սպառնաց միանգամայն որ եպիսկոպոսին կը գրէ: Ասոր վրայ պրաստավային գլխուն հրաման խրկեց որ վաղեմի սովորութեան համեմատ հիմակ Աւետիս քալեն, այսինքն Ծննդեան տօնախմբութիւնն աւետեն. եւ ուրիշ անգամ աւետիս տալու չերթան: Նոյնպէս քահանաները Նոր տումարին համեմատ տուն օրհնեն. եւ թէ որ չուզեն ըստ Նոր տումարին օրհնել, հին տումարին համեմատ ամենեւին պէտք չէ որ օրհնեն:

Միեւնոյն միջոցին հրաման խրկուեցաւ նաեւ Ս. Ստեփանոսի ընկերութեան պաշտօնատեարց, որ ըստ հին սովորութեան Ծննդեան երկրորդ՝ այսինքն Ս. Ստեփանոսի օրն ողորմութեան քաղեն:

Այս բաները կատարուելէն ետեւ երկրորդ օրն՝ այսինքն 1757. դեկտ. 25ին ըստ Նոր տումարին, ազգայինք՝ Հունգարացւոց եկեղեցին գացին եւ Յիսուսի ծնունդը կատարեցին: Այս եղած ատեն անդիէն ժողովրդապետը Հայոց եկեղեցւոյն մէջ՝ ամպիոնէն զգուշացուցեր է ժողովուրդն որ հին տումարէն չհեռանայ, եւ այն աղբիւրը՝ զոր մինչեւ հիմակ գործածեր է, չթողու:

Լսենք եղածներն ու պատահածները ժամանակակից տարեգրին բերնէն:

“Աստուծոյ ողորմութեամբն գիտացվի, որ այս լմնալով ութվեցաւ[1] Պատվելի հասարակին

---

[1] Լաւ համարեցաւ, (հաճոյ) թուեցաւ:

որ ին գօմունէ[1] էրթվի գերյարգելի վարդապետին մօտ. այսինքն մեր քաղաքին բլէպանուշինը, եւ խնդրինք որ մեր կամացն գօրայ անէ նոր գլնտարին գօրայ զծննդեան Սօլէնիդաշն[2]: Որ բանին ետեւանց պատվելի Մակիսդրադն Նաեւ Պ. Սուդան գնացինք Գ. Հօրն մօտ եւ յայտնեցինք զմեր կամքն: Ուրուխ օր ասաց թէ. Պատվելի աղաչաններ, կու լսիմ զձեր հրամանոցն խնդիրքն եւ բրօբոզիցիան. միայն հատայ պի երթանք Վ. Պ. Տէր օվանէսին խուցն, որ մինք ալ խորհուրդ անինք եւ անոր գօրայ ճուաբ տանք[3] ձեր հրամանոցն: Եւ այնպէս գնացին եւ այլվի նեա եկան մեր մօտ. եւ պատասխան տուաւ Գ. Վ. ասելով թէ. Պատուելի Աղաչաններ, այս բանը որ հրամանքներդ կուզէք նայ Մեզիմէ անհնարին է: Որ բանին մօտ բրօդէշդօվադ արաւ Պ. աղայ պիրոմն նօմինէ[4] հասարակին. ասելով թէ. Գերյարգելի Հայր, Մինք կասինք որ անխ մեր ուղածին գօրայ եւ թէ օր էքմն փարխը ունենաս նայ, Մինքն ճուաբ կու տանք. զէրայ անիս նա բարի ու չի անիս նայ, Մինք ամենեքեանս կանինք. եւ թէ որ չուզենաս անելու, նայ Մինք Մէզի գերապայծառ եպիսկոպոսէն Մեր գլնտարին գօրայ Քահանայ կուզինք: Ուրուխ արաց թէ, արէք հրամանքներդ ընտօր կուզէք նայ. եւ ասով էլինք եւ ինմէտիադէ[5] ձէնիլինք

---

[1] Խմբովին. լատիներէն է:

[2] Հանդիսութիւն:

[3] Ճուաբ տալ. Գրանսիլուանիայի Հայոց լեզուաւը կը նշանակէ՝ պատասխանել:

[4] Անուամբ, յանուն:

[5] Անմիջապէս:

զպատուելի կորչորացն պրաստավաին մեծաւորաքն այսինքն Մեծ վադահ սթեփան Ա. Նիկօշի չիմիլովցունց, պիզոի վադահ Նիգուլայ Ա. Մանուկի խիգուցեանց եւ մարշալէք օվանէս, ո. հ. վարդանի խիգուցեանց։ Եւ հրամայեց Պ. Աղաչայ Պիրոմն գօմունիդաշին գօնսէնսուսոմն[1], որ ունենան իրենց հրամանքներն վաղենը օրն զպատուելի պրաստավան քաղելու եւ ասոր առաջ եղեալ ատաթին գօրայ[2] ունենան Պատուելի Քաղքին մէջ աւետիս քալելու ի ներքոյ հնազանդութեան. չի հնազանդելոմն եւ չի քալելով հիմպի աւետիս, այնպէս գօնգլուտովադ արաւ Պ. հասարակն որ անկից ետան ալ շատ աւետիս չի քալին։ Դարձեալ գիտելի է վասն Վ. Պ. Քահանայիցն, որ այսպէս խորհուրդ կօձկեց Պ. Հասարակն որ առաջ արվի իրենց վերապատվելութեանն, որ ունենան նոր գլխաւորին գօրայ ջրօրհնեացն տուն օրհնենք քալելու, եւ թէ որ չուզենային քալելու հասարակին հաստատածին գօրայ նայ, հին գլխաւորին ջրօրհնեացն ամենեւվին չի քալեն։

Նմանապէս հրամայեց Պ. Հասարակն սըրբոյն ըսթեփանոսի գօնկրէկացիային օֆիձիալնուն այսինքն Աղաչայ Թումանին Ջատիկեանց, Աղաչայ խնկանոսին ամիրայի եւ աղաչայ Ասվատրին վիգօլեանց, որ ունենան ասոր առաջի եղեալ ատաթին գօրայ նոր գլխաւորին ծննդեանը երկուսում

---

[1] Հասարակութեան հաւանութեամբը։
[2] Սովորութեան համեմատ։

օրն, սուրբ ըսթեփանոսի օրն, Մեր Քաղքին մէջ ողորմութիւն քաղելու:

Եւ այսպէս Աստուծոյ ողորմութեամբն 1757ին Դեկտեմբերի 25ին ամենքեանս գնացինք մաճրին ժամ եւ սօլէնիդէր ծնունդ արիլինք: Բայց գերյագելի վարդապետն ծանուցում արիլէ գադէտրայէն ռամիկ էլին. ասելով. Քրիստոսի արեամբ գնեալ ժողովուրդ. կու յայտնիմ ձեր հրամանոցն, որ գալ չորեքշաբթի ծնընդեան բարեկենդան է եւ կու խնդրիմ որ չի հէրէնաք հին գլնտարին քովէն եւ այն իզվօրէն[1], որն որ ինչվաս ունացիլինք. եւ այլն:„

Ժողովրդապետին այս գրգռիչ խօսքերուն վրայ հասարակութիւնը շատ վշտացաւ: Սակայն որպէս զի խառնակութեան առջեւն առնու, երեք օր ետքը նորէն ժողովք ըրաւ, ուր լիուլի ձայնով որոշուեցաւ որ պատգամաւորներ խրկեն եպիսկոպոսին, անոնց լիակատար իշխանութիւն տալով որ ըրած կատարածնին՝ ըրած ու կատարած ըլլայ: Աս եղած ատեն պատուէր տուին մէկալ կողմանէ պատգամաւորաց որ եպիսկոպոսին հասկըցընեն թէ ժողովրդապետին հրամայէ որ նոր տումարին համեմատ տօներն ու պահքերը պահել տայ. ապա թէ ոչ՝ ուրիշ քահանայ մը խրկէ, որ իրենց նոր տումարին համեմատ առաջնորդէ: Ժողովքն այս որոշումն ընելէն ետեւ կ'աւելցընէ թէ ամէն մարդ գիտնայ որ նորէն հաստատեցին թէ Հռոմայ նոր տումարէն ամենեւին պիտի չհեռանան:

[1] Աղբիւր, ակնաղբիւր:

Ահա տարեգրին խօսքերը։

"Աստուծոյ ողորմութեամբն 1757 դեկտեմբերի 27 էլիզաբէդան։

Լսելով պատուելի Հասարակն որ գերյարգելի վարդապետին ծանուցումին գօրայ, զօր պղտորվիլէ քաղքին մէջ ռամիկ էլն, եւ շատ աւելի պակաս կալաճիք կու զուրուցին, ուն օր հոս չինք գրիլ, ութվեցաւ պատուելի Հասարակին որ այս պղտորութեանն ճարմն անինք։ Ուրուխ քաղվելով ունօյ վօդոյ հաստատեցինք որ չորս լէկադուս[1], այսինքն երկուս Պ. Մակխուդրադէն եւ երկուս Պ. Սուդայէն խրկինք գերապայծառ եպիսկոպոսին մօտ, որ լէկադուշնուն տուաւ Պ. Հասարակն բլէնիբօդէնձիայ, որ ինչ ալ անին նա արտծ ըլայ։ Եւ թէ որ գերապայծառ եպիսկոպոսն հրամայէ գ. վարդապետին որ մեզի հովիւ ըլայ նոր գլնտարին գօրայ, որ մեզի նոր գլնտարին տօներն եւ պասերն անէ եւ սօլէնիդաշներն կատարէ, նայ բարի. ու թէ որ այս չիլար նայ մեզի քահանայ տայ, որ զմեզ հովվէ եւ նոր գլտարին գօրա սօլէնիդաշներն կատարէ. նաեւ նոր գլնտարին ջրօրհնեացն զմեր տներն օրհնէ։ Եւ այսպէս ընտրեց Պ. Հասարակն տէբուդադուշ այս բանիս մօտ Պ. Մակխուդրադէն զՊ. Աղաչայ Ղազարն օհանեանց, զՊ. Աղաչայ օվանէսն ոսգերիչեանց։ Նմանապէս Պ. Սուդայէն զՊ. Աղաչայ Սուդաշն, զԱղաչայ օհանն տէր ակոբեանց եւ զՊ. Աղաչայ Թորոսն ունանեանց։

---

[1] Legatus, լատ. բառ է. կը նշանակէ՝ երեսփոխան, պատգամաւոր, առաքեալ։

Եւ աս ալ գիտացիր որ Նորէն հաստատեցինք եւ կապվեցանք ամէնքեանս որ ամէնեւվիմբ ասկից ինտան հրօմայու Նոր գյնտարին քովէն չի հէրէնանք„ ։

Հասարակութիւնն՝ եպիսկոպոսին պատգամաւորներ խրկելէն ետեւ, իր բարկութիւնը պրաստավային կտրիճներուն վրայ դարձուց, որոնց հրաման խրկած էր որ ըստ սովորութեան աւետիս քալեն ծննդեան։ Բայց ասոնք չհանզանդեցան այն հրամանին։ Ուստի ընկերութեան պաշտօնատէրներն անով պատժեց որ արգելեց իրենց գաւազան կրել, եւ վերապահեց միայն այն ատենին որ պաշտօնական գործի մը հետ են։ Ասոր դէմ ընողը, այսինքն գաւազանով պտըտողը՝ վեց մաճարի ֆիորին տուգանք պիտի վճարէր։

Նմանապէս Նորոգեց ասկէ տարի մը յառաջ՝ 1756 Յունուար 2ին ըրած որոշումն, որուն մէջ սահմանած էր, թէ որովհետեւ շատ զեղծումներ կ՚ըլլան աւետիս քալելովն, անոր համար այնուհետեւ Ս. Ստեփանոսի ընկերութեան անդամներն ո՛չ ծննդեան եւ ո՛չ զատկին քալեն տնէ տուն. հապա երկու հոգի խրկէ, որ ողորմութիւն ժողովեն, բայց չէ թէ երգելով։ Իսկ երիտասարդաց ընկերութիւնը՝ թէպէտ կարենայ քալել աւետիս ծննդեան ու զատկին, բայց ոչ թէ գիշեր, այլ ցորեկ։ Նոյնպէս Ս. Գրիգորի Լուսաւորչի ու Աստուածածնայ ընկերութիւնները ծննդեան ու զատկին կամաւոր ողորմութիւն ժողովել կարենան ուխտին համար։ Սակայն աս-

կից եւքն ոչ զատկին եւ ոչ ծննդեան, ոչ տղաք, ոչ վարդապետները, ոչ օտարազգի մը՝ երգելով բան ժողովեն, վասն զի արգելեալ է՝ ընդ պատժով: Ահաւասիկ որոշումը:

“Ամի Տեառն 1756, ունվարի 2, Էլիզաբէդան.

Պատճառ գրոյս այս է, որ ասոր արաջ ատալթ ըլլալով մեր քաղքին մէջ որ ծննդեան եւ զատկին կու քալէին քաղքին մէջ տնէ տուն սուրբ սթէփանի Պ. գօնկրէկաձիային, նմանապէս Պ. կորջորացն պրասդավան, ասկից դուս տիրացուներ. հայ ու մաճար տղաքն եւ օտար ազգ ալ, խորհուրդ մեծ, աւետիս, այսօր յայրեաւ, հայր մեր եւ քրիստոս յայրեաւ եւ այլն. վասն որոյ, ասորվանէն ինտան ուլթվեցաւ Պ. հասարակութեանն, որ Պատուելի գօնկրէկաձիան սուրբ ըսլթեփանոսի ունենայ հաստատելու երկու եղբայր, որ քալին ծննդեանը եւ զատկին տներուն կամաւոր ողորմութիւնն ժողովելէն ու չէ կարդալէն որպէս ասոր առաջ: Նմանապէս Պատուելի կորըջորացն Պրասդավան պի քալէ աւետիս ծննդեան եւ զատկին հայրմեր, տարէ չէ քշերն, հապա ցորեկն. եւ ասդից դուս Սուրբ գրիգոր լուսաւորչայ եղբարքն պի քալին ծննդեանը ու զատկին կամաւոր ողորմութիւն ժողովելէն. եւ եւս սուրբ աստուածածնայ եղբայրքն ուխտին սէպին վրայ պի քալին կամաւոր ողորմութիւնն ժողովելու, տարէ ասդից դուս, ոչ ծննդեան եւ ոչ զատկին եւ ոչ օզկայ տարպայ պի քալին, ոչ տղաքն, ոչ վարդապետաքն եւ ոչ

օզկայ ազգ կարդալէն մեր քաղքին մէջ, ստակ ժողովելէն, զէրայ զվօվօր գտնուին, որ կու քալէ, նայ այնպիսին պի ճուրումվի։ Այս է Պատուելի Հասարակին կամքն. Թվըն որպէս այլ վեր։ — Նա եւ պրկարներն[1] ալ, ալ շատ չի քալին, ոչ ծննդեանը եւ ոչ զատկին եւ ոչ օզկայ տարպա„։

Այս որոշումը հիմայ նորոգեց ու հաստացուց, եւ հրամայեց որ երիտասարդաց ընկերութիւնն ասկից ետքն ամենեւին — ցժամանակ մը՝ մինչեւ որ հասարակութեան կամքն ըլլայ, — ո՛չ ծննդեան՝ աւետիս, եւ ո՛չ զատկին՝ Հայր մեր քալեն, եւ ո՛չ ալ պրաստավան տղաք առնու իր ընկերութեանը մէջ բռնութեամբ. հապա ինչպէս որ կանոնին մէջ գրուած է, երիտասարդին ծնողքն երթան ու խնդրեն ընկերութեան վերատեսչութենէն որ որդինին ընկերութեան մէջ առնուի։

Տեսնենք ասոնց վրայ եղած որոշումները։

"Աստուծոյ ողորմութեամբն 1757 Դեկտեմբերի 28 էլիզաբէդան։

Պատճառ գրոյս այս է, որ տարոյս Դեկտեմբերի 24ին գօնդլուտօվաղ անելով Պ. Հասարակն վասն Պ. կորջօրացն պրաստավային որ ունենան նոր գլնտարին ծննդեանն, ասոր ալ առաջի եղեալ առաթին գօրայ Պ. քաղքին մէջ աւետիս քալելու։ Բայց իրենց հրամանքներն չի հնազանդելով Պ. Հասարակին հրամանին գօրայ, ութվեցաւ Պ. Հասարակին որ ունենան Պ.

[1] Կը նշանակէ՝ քաղաքի ծառայ, սպասաւոր։

պրաստավային օֆիձիալներին այսինքն Վադահ-ներին ու Մարշալէքն ասկից ինտան Պ. քաղքին մէջ տայախ չի քալցընելու, ոգկայ ժամանակ, զարդ երբ որ գօնկրէկաձիային բանովն ըլան նայ. այսինքն պսակի, թաղումի, բրօձէսիանու եւ կամ պրաստավայի բանով քաղվէին նայ, ան ատենէ պի քալցընուն զպրաստավային տայախն ձեռվներն, որպէս օֆիձիալներ. բայց ասկից դուս չէ: Եւ թէ որ չի հնազանդէին եւ քալցընուին հրամանի դէմ նայ, ունենայ այնպիսին վեց մաճրի ճուրում տալու դօձիէս գվօձիէս[1]:

Նմանապէս ութվեցաւ Պ. Հասարակին վասն ծննդեան աւետիս, եւ զատկին Հայր մեր քալէլուն, որ ամենվին ալ շատ չի քալվի, եւ այն մինչեւ որ ութվի Պ. Հասարակին: Բայց թէ որ չի հնազանդէին եւ հրամանին դէմ քալէին աւետիս կամ Հայր մեր նա, ամէն մէկ քալողէն պի արնըվի վեց մաճրի ճարում[2]: Նաեւ աս ալ

[1] Այնչափ, որչափ: Լատիներէն ծանօթ ասացուած մըն է, որ կը նշանակէ թէ այնչափ անգամ պիտի վճարէ գրուած տուգանքը, որչափ անգամ հրամանին դէմ ընելով գաւազան գործածելու յանդգնի: — Գաւազանի վրայօք եղած որոշումներն ու օրէնքները տես էջ 29:

[2] Աւետիս քալելը՝ ընկերութեան պաշտօնատարց, (եւքէն տիրացուներուն) ծննդեան ճրագալուցին գիշերը՝ ծնունդ աւետելն էր՝ առ այն յօրինուած ստանաւոր երգերով ու տաղերով: Աս սովորութիւնը դեռ պահուած մնացած էր դարուս առաջին կիսուն մէջ: — Հայր մեր քալելն անտարակոյս Զատկին երկրորդ օրը՝ ննջեցելոց յիշատակին համար տնէ տուն երթալ ու երգելով Հայր մեր ըսելն էր: Աս բանս ալ դադրած է հիմակ: — Թերեւս ասոր յիշատակն ըլլայ, որ ցարդ Կերլայ քաղաքը մնացած է, որ Զատկին երկրորդ օրը հանդիսաւոր պատարագին մէջ՝ չէ թէ միայն դպիրք, հապա սարկաւագունք ալ ու ոտքի վրայ եղած ժողովուրդն ալ փոխն ի փոխ ոչ թէ մէկ, այլ երեք Հայր մեր կ'երգեն:

գիտացվի, որ ասկից ինտան ունենայ Պ. պրատավան կօնտակնուն գօրայ ժաժելու[1]. եւ ոչ զմէկ Պ. քաղքցուն որդին ալ ճօրովէն նես չի առնու, հապա ինչպէս որ կօնտակն կու գրէ, թէ երթայ կտրիճին ծնողքն եւ խնդրէ զպրաստավան որ նես առնուն զիրեն որդին եւ ոչկայ կերպիւ չէ„։

## 13.

Սակայն խնդիրն ասով չլմնցաւ։ Երիտասարդաց ընկերութիւնը — անտարակոյս ժողովրդապետին գրգռելովը՝ — ոտք ելաւ, եւ Խընկանոսեանին՝ իբրեւ իր հոգեւոր առաջնորդին աղերսագիր մ՚ուղղեց, որուն մէջ կը բողոքէ հասարակութեան այս քաղաքականութեան դէմ։

Ասոր մէջ եղբայրութիւնը նախ այն խնդիրը կ՚առաջարկէ, որ որոշուի, թէ ընկերութիւնն ուսկի՞ց ունի իր կախումը՝ եկեղեցիէ՞ն, թէ քաղքին վարչութենէն։ Որովհետեւ՝ եթէ եկեղեցիէն է, — կ՚ըսէ — այն ատեն քաղաքային վարչութիւնն իր վրայ ազդեցութիւն չի կրնար բանեցընել ու իրեն հրամաններ խրկել եւ օրէնքներ տալ։ Իսկ եթէ քաղաքային իշխանութենէն կը կախուի, այն ատեն ընկերութիւնն ինք զինք կանոններէն բոլորովին անկախ համարելով՝ կը խնդրէ որ ինչպէս մինչեւ հիմակ եղած էր, անանկ ալ այնուհետեւ ըլլայ, միայն թէ յաջորդ պայմաններով. այսինքն՝ նախ՝ ըն-

---

[1] Այսինքն՝ ժաժուիլ, վարուիլ։

կերութեան գլխաւորները՝ գաւազանով քալեն, ինչպէս մինչեւ հիմակ սովորութիւն եղած էր։ Երկրորդ՝ ինչպէս որ մինչեւ հիմակ աւետիս կը քալէին ծննդեան ու զատկին, անանկ ալ ասկից ետքը քալեն։ Երրորդ՝ Ընկերութիւնը թէ հարստին ու թէ աղքատին 15 տարեկան տղան՝ կարենայ առնուլ ընկերութեան մէջ։ Չորրորդ՝ Գիտնալ կ'ուզէ ընկերութիւնը, թէ ունի՞ հիմնադիրներ. որովհետեւ կը լսէ թէ աղաները կը հրաժարին հիմնադրութենէն։ Հինգերորդ, Լսած է ընկերութիւնն աղայէ մը, որ ըսած կ'ըլլայ թէ եթէ այնպէս մնայ ընկերութիւնն, որդիս բանադրանքի տակ կը դնեմ։ Ուստի կը փափաքի ընկերութիւնն որ բանադրանքէն ազատի։ Վեցերորդ՝ Որովհետեւ հրապարակաւ լսուեցաւ որ չըլլայ թէ յանդգնին ընկերութեան անդամները գաւազանով քալելու, վասն զի ձեռուըներնէն պիտի առնուի ու պիտի պատժուին. անոր համար՝ որպէս զի ընկերութեան դէմ հրապարակաւ նախատինք մը չըլլայ՝ վար կը դնէ գաւազանները։ Եօթներորդ՝ Պրասդավան կը լսէ որ աղաչաները կ'ուզեն պսակ դրամն ու գլխաւորներուն տրուելի թաշկինակը խափանել։ Աս բանս կանոնին դէմ ըլլալով՝ ընկերութիւնն ասոր բացարձակապէս աչք չի կրնար գոցել։

Ասոնք ըսելէն ետքն ժողովրդապետէն կը խնդրէ, որ ինք գլուխ ըլլալով ընկերութեան, ետեւէն իյնայ որ այս բաները խափանուին։

Ինկանոսեան այս թուղթը հասարակու-

թեան խրկեց։ Իր կողմանէ վրան աւելցընելով, որ՝ տեսնէ հասարակութիւնը թէ ի՛նչ կ'ուզէ պրասդավան ու անոր պատասխան տայ։

Քաղաքային վարչութիւնն անմիջապէս ժողով գումարեց ու հաստատուն մնալով՝ իր արդէն մէկ երկու անգամ սահմանած վճիռներուն վրայ, յաջորդ կերպիւ պատասխանեց երիտասարդաց ընկերութեանը։ "Եթէ որ, կ'ըսէ, երիտասարդաց ընկերութիւնն եկեղեցւոյ որդիք ըլլալու կը փափաքի, այնպէս կը համարի հասարակութիւնը, որ ինքն ալ եկեղեցւոյ աւագ որդին է։ Ուստի եւ ամէն բանէն յառաջ կը պահանջէ, որ իր որդիքն իրեն հնազանդին․ ու ինքն ալ իր զաւկըներովը, ինչ որ կը հայի ու կը պատկանի եկեղեցւոյն, կը կատարէ․ վասն զի այս բանիս ամենեւին դէմ չէ։ Բայց կը պահանջէ, որ իր որդիքներն իրմէն կախում ունենան․ ու ինք անոնց վրայ հեղինակութիւն ունենայ „։

Այս համառօտ յառաջաբանէն ետեւ, կ'անցնի թղթին ուղղակի պատասխանին ու այսպէս կը շարունակէ․ "Առ առաջին խնդիրն՝ հասարակութեան պատասխանն այն է, զոր արդէն 1756 Յունուար 2․ ու 1757 Դեկտ․ 28ին տուած ու հաստատած է․ այսինքն թէ՝ ընկերութեան պաշտօնատէրներն այն ատեն միայն զաւազանով պտըտին, երբ որ իրենց պաշտօնը կը կատարեն։ Առ երկրորդն․ Չենք ուզեր, որ Ծննդեան ու Զատկին աւետիս քալեն վայնասունով, հապա միայն երկու հոգի՝ ընկերութեան անուամբն ողորմութիւն քաղեն։ Առ երրորդն․ Թէպէտ քա-

Հանայք ու հիմնադիրք առանց Հասարակութեան կամացը՝ բան մը կատարել չեն կրնար, այսու ամենայնիւ բանադրանքը վերցնելով ու բաները կարգի բերելով՝ Հասարակութեան կամաց համեմատ կը թողունք որ 15—16 տարեկան տղաք ընկերութեան մէջ կարենան առնուիլ։ Առ չորրորդն. Հնազանդ զաւկըները միշտ գտած են հիմնադիրները. ուստի ասկից ետքն ալ պիտի գտնեն։ Առ հինգերորդն. Երիտասարդաց ընկերութիւնը՝ այս կէտէն գեղեցիկ ու խելքով բան չէր կրնար ուզել։ Առ վեցերորդն. Երկրորդ կէտին մէջ արդէն ըսուեցաւ, որ ի պաշտօնէ քալած առեննին գաւազանով պտըտին, սակայն անկէ դուրս չէ։ Առ եօթներորդն. Պսակի դրամին ու գլխաւորաց թաշկինակին համար՝ Հասարակութիւնն ետքէն խորհուրդ պիտ'որ ընէ. վասն զի իրաւ է որ քանի մը բան թեթեւցընել կ'ուզէ, ինչպէս որ արդէն քանի մ'ուրիշ բաներ թեթեւցուած են քաղքին տնտեսութեան համար„։

"Աս է ահա — կը շարունակէ Հասարակութիւնը, — պատասխանը, զոր կու տայ քաղաքային վարչութիւնն երիտասարդաց խնդրուածքին։ Ասկէ դուրս, քաղաքային վարչութեան կամքն է, որ ամէն կէտերն ըստ պատշաճի կարգի բերուելով՝ ինչ որ եկեղեցւոյն է, եկեղեցւոյն տրուի ու ինչ որ Հասարակութեանը՝ Հասարակութեան. բայց կ'ուզէ ու կը հրամայէ վարչութիւնն որ ասկից ետքը՝ երիտասարդաց ընկերութիւնն իր պաշտօնատեարց ընտրութեան ձայ-

ները հասարակութեան ներկայացընէ. ու թէ որ հասարակութիւնը զանոնք հաստատէ՝ զի բարի, ապա եթէ չէ՝ հասարակութեան կամաց համեմատ ըլլայ: Նմանապէս ընկերութիւնն, իր հիմնադրացը հետ ամէն տարի թէ իր մուտքերն ու թէ իր ելքերը քննէ. ու նայի թէ ո՞ւր եւ որո՞ւն ձեռքն են ընկերութեան դրամները: Եւ հիմնադիրք ու առաջնորդք տարուէ տարի ներկայացընեն հասարակութեան համարակալութեան պաշտօնին իրենց հաշիւներուն մէկ օրինակն, որպէս զի առանց հասարակութեան գիտութեանն աւելորդ ծախքեր չըլլուին„:

Լսենք այս ամէն եղածներն ժամանակակից արձանագրութեան ու տարեգրին բերնէն:

“Աստուծոյ ողորմութեամբն 1758 փետրուարի 18. Էլիզաբէդան. Խրկեց Գերյարգելի Վարդապետն, այսինքն Տէր Մինասն Խնկանոսեանց, Պատուելի Հասարակին զայս այլ վար գրած իշդանձիան. որն որ Պ. կորջօրացն պրասդավան նես տվիլէ, իրեն գերյարգելութեան, ասէլով թէ տէմնու Պ. Հասարակն թէ ինչ կուզէ Պ. պրասդավան եւ անոր գօրայ զուէբրիգան[1] տայ„: — Ահա նամակը:

“Գերյարգելի եւ Ամենայպատուելի Տեառն Տեառն Մինաս Խնկանոսեանց. Աստուած զգերյարգելութիւնդ միշտ եւ հանապազ առողջ պահէ. ի սրտէ կու կամենանք:

Պէտք էղաւ, որ այս մեր փոքրիկ գրովս

[1] Լատ. բառ է եւ կը նշանակէ՝ պատասխան:

գյարգելութիւնդ պէզտրէցնունք.[1] եւ մեծաւ խոնարհութեամբ կու խնդրենք. որ սիրով մտիկ անիս զայս մեր խնդիրքն: Նախ եւ առաջ կու խնդրէ Պատուելի պրաստավան եւ կուզէ գիտնալու, թէ տէրէնտէնձիան եկեղեցւոյ մէ է, թէ Պ. քաղքէն, այս մեր գօնկրէկաձիայինը: Թէ որ եկեղեցւոյ մէ ըլայ նայ, ամենեւիմբ թեվ չունէնայ Պ. քաղաքը Պ. պրաստավային վրայ: Եւ գիտէնար Պ. պաստավան որ տէրէնտօվադ կըլայ Պ. քաղքէն, նայ Պ. պրաստավան աբսօլուդէ[2] օպլիկօվադ չիլաւ կօնտակին գօրայ: Անոր համար կու խնդրըվի Պ. պրաստավան, որ ինչպէս ինչվաս հասդատ եղիլէ, նայ այսուհետեւ ալ կուզէ որ այնպէս հասդատ մնայ. բայց այս գօնտիձիայօմն, որ ունէնանք մինք այս այլ վարի բունգդէրն ունէնալու: $1^{\text{ma}}$ կու խնգրվի Պ. պրաստավան, որ այնպէս քալին գլխաւորաքն տայիրըներով, ինչպէս ալ առաջ ալ քալիլին նայ. $2^{\text{do}}$ կու խնդրվի պատուելի պրաստավան, ինչպէս որ ալ ինչվան հասարակ պրասդավան քալիլէ աւետիս ծննդեանը կամ յարութեանը հայր մեր. նայ այսուհետեւ ալ այնպէս քալէ: $3^{\text{tio}}$ կու խնդրվի Պ. պրասդավան, ինչպէս որ հասդատած էր Տէր բլէպանուշէն[3] եւ Պ. Ա. Փունտադօրնունմէ թէ 15 տարեկան կտրիչը նես ունենանք արնելու թէ խօճի եւ թէ աղքտի: $4^{\text{to.}}$ կուզէ գիտնալու Պ. պրասդա-

---

[1] Անհանգիստ ընել, ձանձրացընել:

[2] Լատիներէն է եւ կը նշանակէ՝ ոչինչ կերպով, բացարձակապէս:

[3] Լատիներէն բառ է, կը նշանակէ՝ ժողովրդապետ:

վան, դէ ունի փունտադօրնէր դէ չէ. զէ լսիլէ Պ. պրասդավան թէ կու թափլվին[1] փունտադօրութենէ: $5^{\text{to}}$ լսիլէ Պ. պրասդավան մէկ աղաչիմ մէ դէ ասիլէ, դէ անխտար մնայ ու կէնայ պրասդավան, որ պիտամ վորդիս բանադրանգի տակ, նայ Պ. պրասդավան այնպէս կու կամէնայ, որ խալսի բանադրանգի տակէ: $6^{\text{to}}$ Գիտէ գերյարգելութիւնդ աղէկ ու լսիլէ ականջներօմն որ ասաց է պրասդավային դիմաց, դէ անպէս քալին վադաՀներն տայխընէրօմն օրամն[2], զէրայ ձեռմնուն պի արնվի եւ պի ճուրումվին ալ: Նայ անոր Պ. պրասդավան, Հիմպի վար կու գնէ ըզտայխըներն, որ ամնթ չի արվի Պ. պրասդավային օրամն: $7^{\text{ma}}$ լսիլէ Պ. պրասդավան դէ կուզին Պ. Աղաչաներն արգիլէլու զպսակ դրամն եւ զգլխաւորաց լալեխներն, որն որ բանը արգիլին նայ, ընդէմ կօնտակին է, նայ Պ. պրասդավան աբսօլուտէ ընկըտուիդ[3] չի անիլ, որովՀետեւ կու խնդրվինք մեծաւ խոնարՀութեամբ յարգելութեանդ, ճանչնալով զյարգելութիւնդ այս գօնկրէկաձիային գլօխ. որ կաննի այս բանիս վրայ, զորն որ ինչվաս ճանչըցիլինք դէ Հոգեւոր բան է, նայ ասոր էտեւանց ալ կու կամենանք որ չի խափանվի: Մնալով այսու Հետեւ Հնազանդ որդիք, եկեղեցւոյ ծառայք:

---

1 Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը՝ Հրաժարիլ կը նշանակէ:

2 Կը նշանակէ՝ փողոց, ճամբայ:

3 Engedni, Հունգ. բառ է, կը նշանակէ՝ յանձն առնուլ:

Համարակութիւնը միաբան հետ բրէ ֆէգդնուն սուրբ երորդութեան գօնկրէկաձիայինը„ :

Կը ներկայացընեմ ընթերցողաց նաեւ նամակին պատասխանն ըստ բնագրին:

“Աստուծոյ ողորմութեամբն 1758 փետրվարի էլիզաբէդան.

Քաղվելով Պ. Համարակն վասն իշդանձիային, որ տվիլին կորջորացը պրասդավան Գերյարգելի վարդապետին. եւ իրեն հրամանքն խըրկիլէ Պ. Համարակին թէ ինչ կու պատասխանէ: Ութվեցաւ Պ. Համարակին, որ այս ալ գրած կերպիւն ուէբրիգովադ ըլայ կորջնուն իշդանձիան:

Թէ որ կուզէ Պ. կորջորացն գօնկրէկաձիան եկեղեցւոյ որդիք ըլալու նայ, մինք բոլոր Համարակոյն եկեղեցւոյն մեծ որդիք նինք, վասն որոյ կուզինք որ նախեւ առաջ մեր որդիքն մեզի հնազանդին եւ մենք մեր տղոցմոյն եկեղեցւոյն, ինչ օր գօնձէրնալուիդ[1] կանէ զեկեղեցին, անոր դէմ չինք: Եւ այսպէս կու կամինք, որ բոլոր տէբէնտէնձիան[2] մեր տղոցն մեր մէ ըլայ, եւ մինք թեվ ունենանք վրաներն:

Ad $1^{mum}$. Վասն տայխի քալցընելուն ուժէ հաստատիլ է Պատվելի Համարակն, որ ոչկայ անգամ տայախ չի քալցընուն, քանց միայն երբ որ գօնկրէկաձիային բանոյն ըլան: Ad $2^{dum}$. Աւետիս ծննդեանը եւ հայր մեր Ջատկին չուզինք

[1] Concerno, պատկանիլ, հայիլ, պատշաճիլ:
[2] Dependeo, կախուիլ, կախում ունենալ:

որ քալին կլճավայեօվ[1], Հապա քալին որպէս մէկալ գոնկրէկաձիաներն, երկու եղբայր գոնկրէկաձիային անընոյն ողորմութիւն։ Ad $3^{\text{tium}}$. Թէպէտ չին կարցիլ Պատուելի Քահանայքն եւ Ա. Ֆունտադօրներն կօնդակին բունգդին դէմ, առանց Հասարակին բան Հաստատելու, տալը վերցընելով զբանադրանքը եւ խորդելով զամենայն բունգդերն Հասարակին կամացն գօրայ, կու թողունք որ 15 ։ 16 ։ տարեկան տղան նեա արնվի գօնկրէկաձիային մէջ ։ Ad $4^{\text{tum}}$. Հնազանդորդիկացն կէցիլին Ֆունդադօրներ. եւ Հիմիկալ, որոնք ինչվաս էղիլին նայ, պիլան։ Ad $5^{\text{tum}}$. Ալ ըռինդ ու ալ խելօք բան չին ուզիլ Պ. կորջորացն պրաստավան, քանց զայս բունգդն, որն որ մենք ալ կու կամենանք։ Ad $6^{\text{tum}}$. Այլ վեր, երկուսում բունգդին մէջ գրած է, թէ գօնկրէկաձիային բանոյն քալին նայ, պի քալցընուն տայախ, տարէ անկից դուս չէ. միայն կիրակին ու տօն օրերն պի երթան ժամ տայխօվ եւ ասալ վասն բրօձէսիանու եւ սօլէնիդաշնու։ Ad $7^{\text{mum}}$. Վասն պսակ դրամին եւ գլխաւորացն լալեխնուն, ասոր էտեւանց խորհուրդ պի անէ Հասարակն. զէրայ լման է թէ կու կամէնայ, որ դաս մը բան թեթեւցնու, ինչպէս օզկայ բաներ թեթեւցուցած ին վասն քաղքի էգօնօմիայի։

Ռէբլիգայէն դուս, այս է Պ. Հասարակին

---

[1] Վայնաառուն, խշրառոց կը նշանակէ՝ կարծեմ։ Բայց նաեւ քշող կրնայ նշանակել։ Աս անկից կը մակաբերեմ, որ այն միջոցին, որ Կերլայ Հայաքաղաքը ծննդեան խթման՝ աւետիս կարդալու հրաման կար, տիրացուք ձայնաւոր պատարագին մէջ գործածած քշոցին նման ճառագայթաւոր գաւազան մը կը տանէին հետերնին։

*կամքն, որ խորդվելով[1] ամենէն բունգդերն, որպէս պէտք է, որ ինչ որ զեկեղեցին գօնձէր-նալովադ կանէ, եկեղեցւոյն մնայ, եւ ինչ որ Հասարակին, Հասարակին գայ. կու կամինք ու կու հրամայինք, որ ասկից ինտան ունենայ Պ. կորջորացն պրաստավան զիրենց օֆիձիալնու[2] ընտրութեան վօդումներն[3] Պ. Հասարակին բրէ-զէնդովադ անէլու, որ թէ օր գօնֆիրմովադ անէ նայ, բարի. ու թէ օր չէ նայ, Հասարակին կամացն գօրայ ըլայ: Նմանապէս Պ. կորջորացն պրասդավան, հետ Ալվայ ֆունտադօրնուն, ունե-նան ամէն տարի, ռաձիայ[4] անելու, թէ եկամուին եւ թէ խարճերուն. եւ թէ, ուրուխ, ում՝ ձեռն կու գտվին շահու գօնկրէկաձիային ըստկներն: Որ ռաձիան, ունենան տարտ Ա. ֆունտադօրներն եւ գօնկրէկաձիային բրէֆէգդներն, տարոց տարի Հասարակին բրէզէնդօվադ անելու. եւ զգօբիան Պ. Քաղքին էգզագդօրիան նես տալու. որ ամենեվիմբ առանց Հասարակին գօնսէնսուսին մէկ տեղմն առանց երկայ[5] ըստակ չի խարճըվի„:*

*Հեղինակութեամբ ու զօրութեամբ գրուած թուղթ մըն է ասիկայ, որմէ յայտնապէս կրնանք տեսնել թէ քաղաքային վարչութեան ոյժը, չէ թէ միայն արտաքին իրաց ու Հասարակ*

---

[1] Խորդել՝ կը նշանակէ Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը՝ շակել, տեղը բերել։

[2] Պաշտօնաւոր, պաշտօնատէր։

[3] Լատ. է, կը նշանակէ՝ ձայն, քուէ, քուէարկու-թիւն։

[4] Razzia բառն է. քննութիւն, խուզարկութիւն, յանկարծակի վրայ հասնիլ կը նշանակէ։

[5] Անպէտ. առանց հարկաւորութեան։

ժողովրդեան, այլ նաեւ հոգեւոր ընկերութեանց ու միաբանութեանց վրայ կը տարածուէր։

Անցաւ ասոր վրայ մէկուկէս տարիի չափ, առանց գրիգորեան տումարին նկատմամբ նոր բան մը հանդիպելու (բայց ինչպէս յայտնի է, նոր տումարի գործածութիւնը շարունակելով). մինչեւ որ եպիսկոպոսն — որ անտարակոյս այս բաները Ս. Գահին ծանուցած էր, — թուղթ ու հրաման ընդունեցաւ ի Հռոմայ՝ նկատմամբ նոր տումարի գործածութեան եւ ուրիշ հոգեւոր բաներու։ Եպիսկոպոսն աս բանս Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան իմացուց. եւ ուզեց որ խնդիրներուն վերջ տալու համար հասարակութիւնը երկու պատգամաւոր խրկէ Ալվինձը, ուր ինք կը նստէր։ Բայց ժողովը՝ չէ թէ երկու այլ եօթը հոգի խրկեց, երեք աշխարհական ու չորս եկեղեցական. այսինքն զՂազար Օհանեանց, զՅովհաննէս Ոսկերիչեանց եւ զԹուման Ջատիկեանց խորհրդականները. իսկ եկեղեցականներէն՝ զՏէր Մինաս Խնկանոսեանց ժողովրդապետը եւ իւր օգնական քահանան զՅովհ. Գրէչունեանց եւ երկու Մխիթարեան՝ զՀ. Ղազար եւ զՏէր Մարկոս։ Ասոնք Ալվինձը ժողովելով ուրախութեամբ լսեցին թէ Ս. Ժողովը սիրով գրկեր եւ օրհնութեամբ հաստատեր է զնոր տումարը։

Ահաւասիկ ասոր նկատմամբ հասարակութեան ժողովին 1759, Մայիս 1ին արձանագրութիւնը։

“Պատճառ գրոյս այս է. ինչպէս որ եկաւ

գերապայծառ եպիսկոպոսէն զԻկիսմունտոս Անտոնիուս Պարցյ տէ սալըյէն մէկ հրամանմն թէ արիլէ մէկ գիրմն հռոմայու սուրբ ժողովէն վասն հոգեւոր բաներու. անոր համար իմաց կանէ մեր հասարակին, որ տէբուլթովադ անէ երկու մակիսդրադի բէրսօնայ, որ երթան վինձը եւ ալէցադ[1] անեն զամենայն բանը: Վասն որոյ քաղվելով Պ. հասարակն տէբուդովադ արաւ զՊ. Աղաչայ Ղազարի օհանեանց, զՊ. Աղաչայ օվանէսն ոսկերիչենց եւ զՊ. Աղաչայ Թումանն զատիկեանց, որ Պ. աղաչանուն ձեռն տւաւ Պ. հասարակն բլէնիբօդէնձիայ թէ երթան եւ ույմիշին[2] զամենայն բանը որպէս աստուած խրատէ: Որ բանին մօտ գնացին նաեւ մեր Պ. Քահանայքն այսինքն գեյարգելի վարդապետն Տէր Մինասն խնկանոսեանց, մեր քաղքին բլէպանուշն, Վ. Տէր ովանէսն գրէչունեանց, որպէս գաբէլան եւ վանքէն Վ. Հայր Ղազարն եւ Վ. տէր Մարկոսն, երկուսն ալ կրօնաւոր սրբոյն անդոնի աբբային կարգէն:„

## 14.

Եպիսկոպոսին ու պատգամաւորաց երկրորդ գործքն էր որ զհասարակութիւնը ժողովրդապետին հետ հաշտեցընէ: Հասարակութեան ու ժողովրդապետին մէջ եղած անմիաբանութիւնը՝ եպիսկոպոսը Ս. Ժողովէն լսած էր, ուստի բաղձաց անոր պատճառը գիտնալ: Բայց պատգա-

[1] Ալէցադ անել — բանի մը կապել. լմնցընել:
[2] Ցարմարցընել, վերջացընել, լմնցընել:

մաւորք բանը յայտնել չուզելով՝ վեր ի վերոյ խօսքեր մ'ըսին։ Այն ատեն եպիսկոպոսն առաջարկեց միջնորդ՝ կերլայի տէր Մինաս Զուածեղեան քահանան եւ զտէր Ղուկաս Վրծարեան ժողովրդապետը։ Սակայն պատգամաւորները հաշտութիւնը միայն յաջորդ պայմաններով ուզեցին յանձն առնուլ. այսինքն՝ նախ որ ժողովրդապետն այն 100 ոսկին, զոր առած էր քաղաքին արկղէն՝ ետ դարձընէ. եւ երկրորդ շաղրային, այսինքն վրանին իրաւունքն՝ զոր իրեն սեպհականած էր, ետ տայ։ Եթէ այս պայմանները ընդունի՝ այն ատեն շատոնց՝ ժողովրդապետին ամէն տարի տուած հարիւր ֆիորինը — զոր հասարակութիւնը զանազան պատճառներու համար զլացած էր, — նորէն կը խոստանայ տալու։

Աս բաներուս վրայ աւելի լուսաւոր գաղափար մ'ունենալու համար հարկ է, որ մեր պատմութեանը մէջ քանի մը տարի ետ դառնանք։

Դրանսիլուանիոյ լատին եպիսկոպոսն, 1755 Նոյ. 20ին նամակ մը գրած էր Տէր Մինասեանին։ Ասոր մէջ կը խնդրէ, որ զինք տեղեկացընէ թէ՝ ի՞նչ եկամուտ ունին քահանայք. եւ ի մասնաւորի այն հարիւր ֆիորինը զոր ինքը քաղքէն կ'ընդունի, մշտնջենաւո՞ր է թէ առժամանակեայ։ Ժողովրդապետը՝ նամակը հասարակութեան ցուցուց, ու իրմէն այն պատասխանն ընդունեցաւ, թէ այն հարիւր ֆիորինը միայն ժողովրդապետին անձին համար է. վասն

զի շատ ծառայութիւն մատուցած է քաղքին։ Խրմով սկսած է, ու իրմով պիտ'որ վերջանայ։

Բայց հազիւ թէ տարի մ'անցաւ այս բանիս վրայ՝ հասարակութիւնը զլացաւ 100 ֆիորինի տուչութիւնը ժողովրդապետին, որովհետեւ հասարակութեան՝ հնուց դրած պայմանները չպահեց։ Խօսքն այնպէս եղած էր, որ ժողովրդապետը երկրորդ քահանայ մըն ալ բերել տայ, որ երեք հոգի ըլլան. — եւ "փառք ի բարձունս„ի ատեն, եկեղեցին՝ տիկնանց բաժինը սկաւառակ պտտցընել չտայ։ Բայց ժողովրդապետը՝ ոչ քահանայ բերել տուաւ եւ ո՛չ սկաւառակ պտտցընելը դադրեցուց։ Հասարակութիւնն այս ըրածին պատճառաբանութիւնը տալէն ետեւ, աւելցուց. եթէ քահանայք, կ'ըսէ, պահանջմունք մ'ունին սկաւառակին վերցուելուն, գիտնան որ այն ժամանակն որոշուեցաւ այս բանս, երբ հաստատուեցաւ, որ տունօրհնէքի ատեն մեծամեծները տան գլուխ հինգ մարիաշ[1] ու պզտի աղաչանները տան գլուխ չորս մարիաշ վճարեն, տուն օրհնէքի համար։ — Այս գնահատութեամբ քահանայից եկամուտն առնուազ 240 ֆիորինով աւելցաւ։

Այս եղածները՝ յաջորդ խօսքերով անցուած են տարեգրոց մէջ։

"1755 Նոյեմբրի 20. Եղիզաբէդան.

Պատճառ գրոյս այս է, որ գալով հրա-

[1] Մարիաշը — այսպէս կը կոչուէր, որովհետեւ վրան Աստուածածնայ պատկերը կար, — հին քսաննոցն էր, ու հաւասար՝ հիմակուան 35 գարանթանին, եւ կամ մէկ հունգարական ֆիորինին։

ման գերապայծառ եպիսկոպոսէն, գերյարգելի վարդապետին, Տէր Մինասին Խնկանոսեանց, թէ գրէ, թէ ինչ ունին տարեն գլուխ մեր Պատուելի քահանայքն։ Որ բանն բրօբօնովադ արաւ վերոյ գրեալ գերհարգելի Հայրն, Պատուելի Աղաչանուն, մանաւանդ այն հարուր մաճրուն սէպն, որն որ տարոց տարի կու տայ Պատուելի Քաղաքն, գերյարգելի վարդապետին, հարցը-նելով թէ, այս պաշխըշը բէրբէդուվալ է, թէ չէ։ Որ բանին վրայ քաղվելով Պատուելի Աղա-չաներն ուէզօլվադ եղաւ, թէ այն հարուր մա-ճրին, որ կուտայ Պատուելի քաղաքն գերյար-գելի վարդապետին Նայ, Նումայ[1] գերյարգելի վարդապետին տրվիլ է ու կու տրվի, մինչեւ որ ապրի Նայ, որպէս մէկ պաշխշմն, վասն մասնաւոր ծառութեան որ արիլ է ու կու անէ Պ. քաղքին։ Բայց աստ արաջի եղած բլէպանուշնուն չի տված, եւ աստ էտեւանց ալ չի պի տրվի, այս-ինքն գերյարգելի վարդապետին անձմանը էտ-եւանց, զէրայ Պատուելի քաղաքն, չունի աստ պարտականութիւն, այլ տված է որպէս մաս-նաւոր անձինմն պաշխշ։„

Գիտէ անշուշտ ընթերցողը թէ այս մի-ջոցիս Նոր տումարին խնդիրը դեռ երեւան ելած չէր։ — Ահա որոշումն.

"1756 Դեկտ. 28.

"4[to] Վասն հարուր մաճրուն, որ ինչվաս

---

[1] Նումա կամ Նմա բառը կը նշանակէ Տրանսիլուանիայի Հայոց բարբառովը՝ միայն, առանձինն, մասնաւորապէս։

տվիլինք գերյարգելի վարդապետին, ասխտար տարի նայ, հիմիկուցէն ալ շատ չի տրվի. պատճառն, որ գերյարգելի վարդապետն չի կաննիլ քաղքին հետ գօնվէնձիային[1] քով։ Ջէրայ էղիլէ, որ մէկ տէրտէր մըն ալ բերէ, որ իրեք ըլան։ Նմանապէս կնտօցն մօտ դապախ չի քալցընու։ Նայ, ոչ տէրտէր բերիլէ, եւ այս շատ տարի. եւ ոչ զդապախն վերուցիլէ ու զհարուր մաճրին արիլէ, ձիրձիդէր[2] 16 տարիմն։ Անոր համար հաստատեց Պ. հասարակն, որ ալ շատ չի տրվի։ Գիտացվի որ փառք ի բարձունգին դապախն, որ կնտոցն մօտ կու քալցընուն, կու հասգըցվի, վերոյ գրեալն։ Բայց թէ որ իքմը բրէդէնզիայ անէին Պատուելի Քահանայքն դապախին կողմանէ, նայ գիտացվի, օր դապախն այն ժամանակ վերցըվիլ է, երբօր դաքշօվադ[3] էղիլէ տուն օրհնեանքըն, այսինքն թէ մեծ Աղաչաներն ունէնան տալու հինկ մարիաշ տուն օրհնէնք, եւ պիզտի Աղաչաներն չորս չորս մարիաշ։„

Իրօք ալ տունօրհնէքի նկատմամբ եղած այս սակադրութիւնը կը գտնենք քաղաքային ժողովոյն 1740 Դեկտ. 5ին որոշման արձանագրութեան մէջ յաջորդ խօսքերով անցուած։

“Ամին տեառն. 1740 դէկի. 5ին էլիզբդան. ի ժամանակի Փի եւ Քաղաքի Պիրօվութեան Պատուվելի Աղաչայ ղազար օհաննեան եղեւ

[1] Conventio լատ. բառն է, կը նշանակէ՝ դաշինք, դաշնադրութիւն։

[2] Շուրջ, գրեթէ. լատ. է։

[3] Taxo, բանի մը գինը որոշել, սահմանել։

հաստատութիւն ի մէջ սուն քաղաքիս. Հրովմանաւն Մեծարելի եւ գերհարգելի կէներալիս վիգարուշին, մականուամբ Եօյանէս տէյ գօշգօլ. վասն եկայմոյ Քայհանայից տուն օրհնէնքի սէպն. թէյ ինչ ըլայ հախն որ պատուվէլի Աղաներն եւ Քաղաքացիքն: Գըրածէյ կարքաւ„:

Եւ կը յաջորդէ անուանց ցանկ մը, որմէ կը տեսնենք թէ ո՛ր աղաչաներն ինչ պէտք են եղեր վճարել տնօրհնէքի համար[1]:

Իսկ հարիւր ոսկւոյն խնդիրը սա էր: — Ժողովրդապետը շատոնց՝ քաղքին ծայրը պարտէզի մը վրայ ձեռք դրած էր ու կ'ըսէր թէ թուղթ ունի այն ստացման վրայօք. եւ քաղքէն՝ ասոր վրայ հարիւր ոսկի ալ առած էր. բայց փոխառութեան թուղթը չէր տուած քաղքին: Վարչութիւնը հիմայ պահանջեց որ կամ գնման թուղթը տայ, որ քաղքին քով մնայ ապահովութեան համար, եւ կամ հարիւր ոսկին ետ դարձընէ: Ուստի եւ երկու հոգի խրկեց, որ այս բանիս վրայ խօսին ժողովրդապետին հետ: Ժողովրդապետը՝ պատասխան տուաւ թէ թուղթը չկայ, պատռեր է, ինչպէս որ իր ժամանակին Մելքոն Գասպարեան պիրովին ալ ցրուցած էր: Առաքեալք այս բանս ժողովոյն առջեւն ըսին: Սակայն յիշեալ դատաւորը խորհրդին մէջ պատասխան տուաւ թէ ասանկ բան չի յիշեր՝ կարելի է անոր համար, վասն զի հին բան է:

[1] Տես՝ արձանագրութիւն 373/de A. 740. 8:

Երեք շաբաթ մ’անցաւ այս բանիս վրայ, ու դարձեալ երկու հոգի խրկեց հասարակութիւնը ժողովրդապետին — երրորդ անգամ — որ կամ պարտէզին վրայօք ունեցած թուղթը եւ կամ հարիւր ոսկին ետ տայ. որովհետեւ թէ որ չի տար, քաղաքը կը գտնէ միջոցն թէ ուր պէտք է փնտռել, որ ետ առնուլ տայ: Այս բանիս վրայ ժողովրդապետը խրոխտանօք պատասխան տուաւ. թէ Թող փնտռէ քաղաքն ուր որ կ’ուզէ:

Ասոնք են ահա խնդրոյս վրայօք ունեցած տեղեկութիւննիս՝ ըստ ժամանակագրոց:

“1756 Դեկտ. 28:

$3^{tio}$ վասն քաղքի ճոթի պաղչին, որ բռնիլէ գերյարգելի վարդապետն, եղաւ խորհուրդ, որ ունենայ տալու գերյարգելի Վարդապետն, զգիրն, որն որ կասէր թէ ունի վրան. զէրայ հարուր ոգի արելէ Պատուելի քաղքէն պաղչին վրայ, նայ կուզէ որ ըլայ գիրն Պ. Քաղքին սնտուկն, բրօ սէգուրիդադէ[1]: Որ բանին խրկեց Պատուելի հասարակն գերյարգելի վարդապետին մօտ երկու տէբուտադ, այսինքն զԱղաչայ ակոբն Սնբէգդրեանց եւ զԱղաչայ լուսիկըն բադրոսպանեանց, որ ուզին զգիրն քաղքին խօսօքըն: Որ բանին պատասխան տվիլէ գերյարգելի Վարդապետն. թէ չի գայ գիրն, զէրայ կորիլէ[2] զինքն. ու ասիլէ Ա. Պիրօվին Ա. Մելքոնին կաշբարեանց, թէ գիրն կորած է: Հօս ճուեապ արավ

---

[1] Լատիներէն է, կը նշանակէ՝ վասն ապահովութեան:

[2] Տրանսիլուանիայի Հայոց լեզուաւը կը նշանակէ՝ պատռել:

Ա. Պիրօվն թէ իրեն հրամանքն չիտէ ոչ իքմընալ, ոչ թէ կտրիլէ. ոչ թէ ասիլէ թէ կտրիլէ։ Որ բանին վրայ խորհուրդ անելով Պ. Հասարակն, որ խրկին երկու տէրուղադ գերյարգելի վարդապետին մօտ, խրկեցինք զվերոյ գրեալ տերուղադներն, ասելով թէ. կու խնդրինք զգերյարգելի վարդապետն, եայ զպաղչին թուղթն տայ, եայ զհարուր ոսգին ետ տայ Պ. քաղքին։ Երթալով Ա. տէրուղադուշներն, պատասխան տվիլէ գերյարգելի վարդապետն, թէ թուղթ չունի, զէրայ կտրիլէ. եւ Ա. Պիրօվին վաղուց ասիլէ. Նայ կլայ օր մօռցած ըլայ. տարը թէ զհարուր ոսգին ետ տայ, ալ ալ պի զուրուցինք ասոր ետեւանց„։

“1757։ ունվարի 18. էլիզաբէդան։

Խրկեց Պ. Հասարակն այլվի[1] երկու տէրուղադուշ գերյարգելի վարդապետին, ասելով թէ, խնդրինք զգերյարգելի վարգապետն աս իրեքում տարպան, վասն պաղչին, օր տաս եայ զթուղթն եայ զհարուր ոսգին. զէրայ չիտաս նայ, Պ. քաղաքն պի փնտրէ ուրուխ որ տեղն է։ Որ բանին այլվի եղիլին տէրուղադ Ա. ակոբն մնբէդրեանց եւ Ա. լուսիկն բաղրուպանեանց։ Որին վրայ պատասխան տվիլէ գերյարգելի վարդապետն, թէ աղէկ է, թող փնտրէ քաղաքն ուրուխ օր գիտենայ„։

Իրերն այս բանիս մէջ մնացին այս միջոցին, վասն զի հասարակութիւնը յայտնի պատերազմ

---

[1] Դրանսիլուանիացւոց լեզուաւը կը նշանակէ՝ նորէն, դարձեալ։

չուզեց վարել ժողովրդապետին դէմ։ Բայց երբ նոր տումարին խնդիրն ալ երեւան ելաւ ու եղած բաները եպիսկոպոսին ականջն անգամ հասան, ալ ծածուկ պահելու բան չմնաց։

Պատգամաւորք՝ Ալվինձը՝ վերը յիշուած պայմաններով իրենց մէջը հաշտութիւնը կատարել լմնցընելէն ետեւ՝ Եղիսաբեթուպոլիս դարձան ու հասարակութեան ժողովոյն պատմեցին եղածները. այսինքն թէ եպիսկոպոսը զիրենք կանչած է նախ, որպէս զի իմացընէ թէ Ս. Ժողովքը նոր տումարը սիրով ընդունեցաւ։ Երկրորդ թէ, եպիսկոպոսը Հռոմէն լսելով որ հասարակութիւնը ժողովրդապետին հետ աղէկ չէ, զՎերլացիքը միջնորդ բռնելով՝ ուզեց որ հաշտութիւն ըլլայ ժողովրդապետին ու հասարակութեան մէջ։ Եւ թէ՝ եպիսկոպոսէն ելլելով՝ միաբաներ են ժողովրդապետին հետ այն պայմաններով, զորոնք քաղաքն իրենց առջեւ դրած էր. այսինքն թէ հարիւր ոսկին ետ դարձընէ։ Որովհետեւ՝ ինչպէս ինքը ժողովրդապետը խոստովաներ է, չէ ունեցած թուղթ պարտէզին ստացմանը վրայօք։ Երկրորդ թէ ապրանք ծախելու վրանին իրաւունքը, որն որ քաղքինն էր, — զոր ժողովրդապետն այն միջոցին, երբ Ամիրայ Խնկանոսեանց նոյն ատենի դատաւորին հետ Հերմանշդատ պատգամաւոր գացած էր՝ Լոպգովիցի իշխանէն պաշտպանութիւն գտնելով՝ Ամիրայ Խնկանոսեանին վրայ անցուցած էր, — քաղքին՝ իւր օրինաւոր տիրոջը դարձընելու խոստացաւ։ Պատմեցին նաեւ թէ այս

բաները շտկելէն, կատարելէն ետեւ, եպիսկոպոսին գացին, իրարու ձեռք տուին։ — Ժողովքին մէջ խնդիր ըլլալով Նաեւ Հարիւր Ֆիորինին վրայ, Նորէն որոշեցին, որ եկեղեցւոյն մէջ կանանց քով սկաւառակ չպտըտցուի. երկու օգնական քահանայ ունենայ ժողովրդապետն։ Ու եթէ ասոնք յանձն առնու, դարձեալ կ՚ընդունի վերոյիշեալ գումարը։

Կը դնեմ այս պատահարներուն վրայօք ձեռքս եղած արձանագրութիւնը։

“1759 Մայիսի 23 էլիզաբէտան։

Գալով Պ. աղաչայ Տէրուդադուշներն վինձէն, քաղվեցաւ Պ. Հասարակն եւ յայտնեցին Պ. Աղաչայ տէրուդադուշներն թէ ձէնէն վերոյգրեալ գերապայծառ եպիսկոպոսինը եղիլէ. $1^{ma.}$ վասն Նոր գընտարին. որ բանն աստուծոյ ողորմութեամբն սուրբ ժողովն սիրով գրկիլէ եւ օրհնութեամբ հաստատիլէ զայս մեր Նոր գընտար արնելն եւ այսպէս վերջացիլէ։ Երկուսումն յայտնիլէ գերապայծառ եպիսկոպոսն թէ էկիլէ սուրբ գոնկրեկաձիայէն մէկ գիրմն, թէ մեր Պ. Քաղաքն աղէկ չի ապրիլ հետ վերոյգրեալ Տէր բլէպանուշին, այսինքն Տէր Մինասին խնկանոսեանց։ Որ բանին պատճառն ուզիլէ գերապայծառ եպիսկոպոսն. եւ այսպէս վերիվերոյ պատճառներ տալով Պ. Ա. տէրուդադուշներն, չի կամենալով զամենայն առաջ տալու։ Զորոնք լսելով գերապայծառ եպիսկոպոսն խնդիմավադ արիլէ զմեր Պ. Աղաչայ տէրուդադուշներն եւ զգերյարգելի վարդապետն Տէր Մինասն խնկա-

*Նոսեանց, զմեր ըլէպանուշն, որ Հաշտելութիւն անին. Մէտիադօր դնելով Գ. Կերլայի քաղքէն զՏէր Մինասն Ձվածեղեան եւ զվ. Տէր Ղուկասն վրծարեանց. որպէս ըլէպանուշ Գ. Կերլայ քաղքին: Եւ այսպէս դուս էլէլով գերապայծառ եպիսկոպոսին տանէն, Աստուծոյ ողորմութեամբն Հաշտելութիւն արիլին մեր Գ. աղաչայ տէրուդադուշներն, Հետ գերյարգելի վարդապետին, այսինքն մեր քաղաքին ըլէպանուշին:* 1ma *ունենայ գերյարգելի վարդապետն Տէր Մինասն խնկանոսեան, մեր ըլէպանուշն, մեր Գ. Քաղքին Նախ եւ առաջ զայն* 100 *ոսկին որ առիլէ մեր քաղքին գասայէն, քաղքին ջոթի պաղջին պատճառովն. զէրայ յայտնիլէ գերապայծառ եպիսկոպոսին դիմաց թէ առանց ճամիայ առիլէ ետ տալու. Զէրայ ամէն անգամ ասիլէ թէ թուղթ ունի պաղջին վրայ ո. Հ. Նեօկ եանօշէն, թէ իրեն Հրամանոցն ըլայ պաղջան. եւ չի ունացիլ ոչ մէկ թուխթ. զէրայ զպազչան Գ. Քաղաքն գնիլէ գամարայէն. եւ սին օլօդ ֆօկլօլուիդ արիլ է*[1] *գերյարգելի վարդապետն: Նայ Հիմի մէնը յայտնիլէ, թէ չի ունացիլ գիր պաղչին վրայ. անոր Համար ետ կու տայ զ*100 *ոսկին: Երկուսումն ունենայ զկիւլէշի շադրան*[2]*, որն որ ունացիլէ Քաղաքն: Եւ այն ժամանակն, երբ որ ո. Հ. Աղաչայ Ամիրայ խնկանոսեանց եղիլէ պիրով մեր քաղ-*

---

[1] *Ամբողջ բառածը Հունգարերէն է: Կը նշանակէ՝ այն պատրուակաւ՝ որ* Nagy Jànos *զանի իրեն տուաւ, ձեռք դրաւ պարտէզին վրայ:*

[2] Gyülési sátor *կը նշանակէ՝ առուտուրի՝ մէկ տեղ ժողվուելու, քաղուելու՝ վրան:*

քին. եւ գերյարգելի վարդապետն ըլալով. դօդում ֆագդում[1] Պ. քաղաքինը, երթալով սիպինը վերոյ գրեալ Պ. Աղաչան, հետ վերոյ գրեալ գերյարգելի հօրն տէրուդադուշ, քալըլին բրինձ լօքգօվինձին մօտ ու արիլ բրոդէկձիան ալ շադրային վրայ ո. Հ. Աղաչայ Ամիրային անընին վրայ. եւ այսպէս դուս ընկիլէ շադրան կիւլիշէն: Նայ անոր համար ետ տայ գերյարգելի վարդապետն, այսինքն Տէր Մինասն խնկանոսեանց զշադրային իւշն[2] Պ. քաղքին. որ ասկից ինտան Պ. քաղքին ըլայ իւշն, որպէս էղիլէ որ Պ. քաղաքն անէ շադրայ, որ բանին մօտ օպլիկօվադ էղիլէ վերոյ գրեալ գերյարգելի հայրն, թէ անպէս ըլայ եւ պիլայ: Եւ այսպէս Նես մոիլին գերապայծառ եպիսկոպոսին մօտ ու ձէր տալով գօնֆիրմօվադ եղիլէ հաշտելութիւնը: Եւ այսպէս հաստատիլէ որ գերապայծառ եպիսկոպոսն գրել տայ այս հաշտելութիւնը բունգդառ բունգդ. որն որ ասիլէ գերապայծառ եպիսկոպոսն թէ պի խրկէ զգիրն մեր գօմունիդաշին: Ասկից դուս խնդրիլին մեր աղաչայ տէրուդադուշներն զՎ. Տէր Մէտիադորներն, որ անին աղէկութիւն եւ տան մէկ ադէշդաձիամն[3] այս հաշտելութեանս վրայ: Իրեքումն. աս ալ ֆօրկուտօվադ[4] եղիլէ այս հաշտելութեանս մէջ, որ

---

[1] Totum factum. Լատիներէն բացատրութիւն մըն է. կը նշանակէ, ամէն՝ լիազօր իշխանութիւն: Իմաստն է՝ Եւր որ քաղքին բոլոր իշխանութիւնն իր ձեռքն էր:

[2] Jus = իրաւունք:

[3] Լատ. բառ է. կը նշանակէ՝ վկայութիւն, հաստատութիւն:

[4] Դարձաւ, խօսք եղաւ. Հունգարերէն է:

տոր առաջ կուտար Պ. քաղաքն գերյարգելի վարդապետին ֆիքսում, տարին հարուր մաճրի. այնպիսի գօնտիձիօնով, որ վերցընու զտապախն, որն որ կու քալցընու փառք ի փառձունքին ժամանակն կնկտոցն մօտ. եւ այլ շատ չի քալցընու[1]: Նմանապէս ունենայ էրկու գաբելան բրնելու. Նայ վասն մասնաւոր պատճառնու կտրիլէր Պ. քաղաքն զայն ֆիքսումն[2] Եւ հիմի այս հաշտելութեանս պատճառաւն, խոստացաւ Պ. քաղաքն վերոյգրեալ գերյարգելի հօրն, այս տադումէն ինտան ամէն տարի զ100 մաճրին տալու. բայց զվերոյգրեալ տապախն վերցնու: Բայց գիտաձվի որ այս ֆիքսումն, որ կու տրվի վերոյգրեալ գերյարգելի հօրն չիլայ թէ ու-զանձիայ[3] անին զինքն. ասելով թէ բլէպանուշի ֆիքսումէ. հապա զայս Պ. քաղքին կամքն պիլայ. Թէ ոչկայ բլէպանուշի պիտայ զայս ֆիքսում կամ չէ. զէրայ կամաւորապէս խոստացիլէ, վասն մասնաւոր ՝պատճառնու գերյարգելի հօրն, Պ. քաղաքն„ :

Երեք օր ետքը հասարակութիւնը՝ Խնկա-նոսեանին չորս հոգի խրկեց, որ եղած հաշտու-թեան համեմատ հարիւր ոսկին ու վրանին իրաւունքին գրութիւններն առնուն: Ժողովրդա-պետն այս պատգամաւորներուն չհաւնեցաւ. ու հասարակութեան ողջոյնը խրկելով՝ խնդրեց որ զՅովհ. Ոսկերիչեան խրկեն իրեն: Ժողովր

1 Պտտցընէ:
2 Որոշ՝ հաստատուն վճարք:
3 Օրէնք, սովորութիւն:

զինջաւ այս բանիս ու Ոսկերիչեանին հետ խրկեց նաեւ զԹումաս Ջատիկեան ու զՄարտիրոս Գաշողանեան։ Առաքեալք՝ ժողովրդապետին հետ խորհրդածելէն ետեւ՝ վերջնական պատասխանը տարին ժողովոյն, որուն համեմատ ժողովրդապետը դաշնագիր մը տուաւ հասարակութեան։ Ասոր մէջ կը խոստանայ, որ հարիւր ոսկին Մէտիաշի տօնավաճառին, այսինքն Յուլիս 13ին կը վճարէ։ Իսկ վրանին համար ըսաւ թէ թող վարչութիւնն անմիջապէս Հէրմանշդատ երթայ, ու Եղիսաբեթուպոլսոյ քաղքին անունին վրայ նշանէ, ու գրել տայ վրանին իրաւունքը։ Ասկից զատ կարեւոր համարեցաւ քաղաքն, որ՝ որովհետեւ ժողովրդապետը վրանին իրաւունքը քաղքին վրայ գրել տուաւ, ըստ հետեւորդի քաղքին յանձնէ նաեւ այն գրութիւնները, զոր ունի վրանին վրայօք։ Երբ առաքեալներն այս գրութիւններն իրմէն խնդրեցին, պատասխանեց. Շատ լաւ, կը յանձնեմ գրութիւնները. սակայն կամ Սիմոնին եւ կամ տղոց քովն է, կը նայիմ ու պիտ'որ խրկեմ։

Հետեւեալներն են ժամանակակից տարեգրին՝ ասոնց վրայօք մեզի թողուցած տեղեկութիւնները։

"1759. Մայիսի 26 Էլիզաբէտան։ Ուխտվեցաւ Պ. Հասարակին որ վասն վերոյ գրեալ հաշտելութեան, խրկէ գերյարգելի վարդապետին այսինքն Տէր Մինասին խնկանոսեանց մօտ դէբուդատուշներ, որ վերոյ գրեալ հաշտելու-

Թեան դէնօրին[1] գօրայ, ուզին զ100 ոսկին եւ զկիւլիշի շադրային տեղն: Եւ այսպէս խրկեց Պ. Հասարակն ըզ Աղաչայ. Պօտէր ո. Հ. վարդանի խնեգուցեանց, զԱ. Ջատիկն Թորոսեանց եւ զԱ. Անտօն Նիգօշի խիգուցեանց. նաեւ զԱղաչայ. Մանուկ դավիդի շիմիլովցեանց, որն որ երթալով եւ յայտնելով զբանը գերյարգելի Հօրն, շատ բարեւ արիլէ Պ. Հասարակին եւ կու խնդրէ, որ աշխատի մինչեւ իրեն գերյարգելութեան մօտ Պ. Աղաչայ. օվանէսն ոսկէրիչեանց: Որ բանը լըսէլով Պ. Հասարակն, ութվեցաւ, թէ երթայ Աղաչայ օվանէսն ոսկերիչեանց, Աղաչայ Թուման զատիկեանց եւ Աղաչայ Մարտիրոս գօշողանեանց: Եւ երթալով եւ ետ գալով, բերան ռէզուլուձիայ գերյարգելի վարդապետէն Նախ եւ առաջ 100 ոսկուն վրայ մէկ գօնդրագդին, որ ունենայ գերյարգելի Հայրն զ100 ոսկին, գալ ամրան Մէտիաշին, ուլիսի 13ին վիճարէլու: Նմանապէս վասն շադրայի տեղին, ասիլէ, թէ Հիմի կու երթայ Սիմոնը ո. Հ. Միդգցի գաբտէպօվեանց պրաշօվն շոգոտոլ, իրեն Հրամանոցն ապրանքովն, Նայ ինմէտիադէ, թող խրկէ Պ. Քաղաքն մէկ շադրամն սիպինը, որ շադրայ անէ Պ. Քաղքին անընտվն. եւ այսպէս ճէտալուիդ[2] կու անէ ղկիւլիշի շադրային իուշն Պ. Քաղքին: Աս ալ ութվեցաւ Պ. Հասարակին, որ որովհետեւ

---

1 Tenor լատ. է. իմաստ, բովանդակութիւն:

2 Անտարակոյս լատիներէն cedula բառին աղաւաղածն է, որմէ շինուած է նաեւ բայ մը՝ ցէտուլուէլ անել, այսինքն՝ վրան նշան, պիտակ, ծանուցագիր դնել:

ձէտալուիդ արաւ գերյարգելի վարդապետն Պ. Քաղքին զկիւլիշի շադրային տեղն, նայ տայ Պ. քաղքին զայն բրօդէ կձիօնալներն կամ գրերն, որ ունի շադրային տեղին վրայ։ Որ բանին սէպն խրկեց Պ. Հասարակն զԱղաչայ Ասվատուրն Քէլեանց եւ զԱղաչայ Անդօնը Նիգօշի Խսիգուցեանց, որ երթան եւ ուզին զվերոյ գրեալ գրերն։ Եւ երթալով պատասխանիլէ գերյարգելի վարդապետն ասելով. Թէ խիստ բարի, կու տամ, միայն ձեռս չին. կամ Սիմոնին մօտին, կամ մեր տղոցը մօտ կու գտվին, նայ պի նայիմ եւ պիտամ„։

Ասանկով վերջացան Նոր տումարին խընդիրն ու քաղաքային վարչութեան եւ ժողովըրդապետին մէջ եղած անմիաբանութիւնը։ Բայց հաշտութիւնն իրական արդիւնաւորութիւն մը չունեցաւ։ Շփումն, որ շատ տարիէ վեր կար երկու կողմնակցութեանց մէջ, թէպէտ եպիսկոպոսին ու Կերլացւոց միջնորդութեամբը վերջացաւ, սակայն վաղեմի անձուկ ու ներքին կապը երբեք չնորոգուեցաւ։

## 15.

Մարիամ Թերեզիայի 1758 Նոյ. 30ին արտօնութեանց հրովարտակին առաջին կէտին մէջ իւր հօրը՝ Կարոլոս Զ.ին այն հրամանին՝ թէ քաղաքն Եղիսաբեթուպոլիս կոչուի, կ'աւելցուի որ քաղքին կնիքն ըլլայ այնուհետեւ Սրբուհւոյն Եղիսաբէթի Հունգարացի իշխանուհւոյն կենդանագիր պատկերը։

Մեր ժամանակները կնքագիտութիւնն ալ՝ գիտութեան մէկ մասնաւոր ճիւղը կացուցանելով՝ կարեւոր կը համարիմ այս առթիւս քաղաքին կնիքն ընթերցողներուն ճանչցընել, այնչափ աւելի՝ որչափ աս ալ ուղղակի մեր պատմութեան կը վերաբերի։

Արդ՝ Եղիսաբեթուպոլսոյ քաղաքին կնիքը Կարոլոսի արտօնութենէն քիչ մը ետքը գործածութեան մէջ առնուեցաւ։ Կնիքը՝ միշտ միեւնոյն էր, զոր կը գործածէ ցայսօր քաղաքն, այն տարբերութեամբ միայն՝ որ նոյնը քանի մը մեծութեամբ շինուած էր։ Բունը կամ սկզբնականն, որ 1746էն յառաջ փորագրուած էր, հաւկթաձեւ էր, ինչպէս են ընդհանրապէս կնիքները. իր մեծ տրամագիծը 50՝ իսկ պզտիկ տրամագիծը 43 միլիմէդր էր։

Համառօտ ստորագրութիւնը՝ յաջորդն է։ — Կնիքին վրայ փորագրուած էր Սրբուհւոյն Եղիսաբէթի ամբողջ պատկերը, ձախ ձեռքը թագաւորական գաւազանով. ճառագայթներով շրջապատած գլխուն վրայ կեցած էր Դաւիթ մարգարէին թագը. ճառագայթներուն վերեւը՝ խաչ. ոտուըներուն տակը՝ երկիր։ Սրբուհւոյն դիմացը կը կենայ մուրացիկ մը, մէկ ոտքով ծունր կրկնած, ձախ ձեռքը՝ մուրացկանի գաւազան մը բռնելով, աջ ձեռքով ողորմութիւն կ՚ուզէ Սրբուհիէն։ Ս. Եղիսաբէթ ողորմութիւն կու տայ աջ ձեռօքը՝ երեք· ստակ։ Կնիքին բոլորտիքը այսպէս գրուած է լատիներէն. SIGILLVM. OPPIDI. ARME. ELISABETH. 1746.

Այս ըրած ստորագրութիւնս թարգմանութիւն է՝ Դրանսիլուանիոյ հայոց բարբառովը գրուած հայերէնէ մը, որ պատահական բան մըն է եւ դժբախտ կորստեան մը ուրախալի արդիւնքը։ Առանց ասոր դուցէ պիտի չունենայինք այն՝ տեղական լեզուաւ գրուած ստորագրութիւնը։ — Պատահարը յաջորդն է։

1749ին քաղքին գլխաւոր դատաւորն էր Պ. Ղազար Յովհաննեանց։ Իրեն ձեռքն ըլլալով քաղքին թէ մեծ ու թէ պզտիկ կնիքը, որոնք լաւ փակուած արկղի մը մէջ կը պահուէին եւ միայն պաշտօնական թղթերը կնքելու համար դուրս կը հանուէին, չի գիտցուիր ինչպէս՝ քաղքին պզտիկ կնիքն աներեւոյթ կ'ըլլայ։ Թէպէտ ինքն երդմամբ յայտնեց թէ քաղքին սպասաւորին տուեր է, որ անցագիր մը կնքէ. եւ կամ՝ որչափ որ կը յիշէ Յովհաննէս Վասիլենցի ապրանքը զատելու ատեն՝ հոն կեցած էր կնիքը, ու անշուշտ այս առթիւ գողցուեցաւ կամ կորսուեցաւ։ Քաղաքը փնտռեց ու փնտռեց 1749էն մինչեւ 1752, ամէն կողմ տեղեկանալով ու ամէն դի մարդիկներ խրկելով, սակայն ի զուր. քաղքին կնիքը երեւան չելաւ։ Այս տեսնելով՝ հասարակութիւնը 1752 Դեկտ. 18ին ընդհանուր ժողով գումարեց, որուն մէջ այս կորուստը հասարակութեան առջեւը դնելով եւ խնդիրը լաւ մը կշռելով՝ որոշուեցաւ որ քաղաքային վարչութեան կողմանէ յաջորդ շատ խելացի ու շրջահայեաց յայտարարութիւնն ըլլուի։

«Կը ծանուցանենք թէ մեր երկրին ու թէ ուրիշ երկիրներուն, թէ մեր Գիւգիւլլէօ գաւառին եւ թէ ուրիշ գաւառաց ու աթոռներուն մէջ գտնուող, թէ հունգարացի, թէ սաքսոն, թէ գերմանացի, թէ հայազգի ու թէ որեւէ ազգայնութեան վերաբերող մարդու, բայց մանաւանդ մեր քաղաքացեացն, որ գիտնան թէ ձեռուընին դաշնագիր մը, կամ հաստատութիւն մը եւ կամ որեւիցէ տեսակ պարտաւորութեան գիր մ'ունենան մեր հասարակութենէն, որ մեր քաղքին այս կորսուած կնիքովն ըլլայ կնքուած, — որուն նշանները վերը յայտնեցինք, — պարտական է մեզի բերելու ու քաղքին ներկայացընելու, որպէս զի եթէ այնպիսի հարկաւոր բան մ'ըլլայ, եւ պէտք ըլլայ որ քաղաքն իրեն տուած պարտականութեան խօսքին վրայ կենայ՝ նորէն կնքուի, այն կնիքովը զոր հիմակ ունի քաղաքը։ — Երկրորդ. անոր՝ որ քաղքին հասարակութենէն ասանկ պարտականութեան գիր մ'ունի, ժամանակ կու տանք՝ օտար երկիրներն եղողներուն համար՝ տարի մը, մեր երկիրն եղողներուն՝ վեց ամիս. մեր գաւառին մէջ եղողներուն՝ երեք ամիս, մեր քաղաքացիներուն՝ վեց շաբաթ, որ այս միջոցին՝ ձեռքն եղած գրութիւնն հասարակութեան ներկայացընէ։ Եւ թէ որ անձամբ չկարենայ գալ եւ ուրիշին հետ չկարենայ զանիկայ՝ վերոգրեալ ժամանակի միջոցին մէջ խրկել, — եթէ որ ուրիշ կերպով չէ, գոնէ գրով իմաց տայ. որովհետեւ եթէ այս տեսակ թուղթ մը չներկայացընէ քաղաքային իշխանութեան,

գիտենայ որ փուճ բան պիտ՚որ համարուի այն գրութիւնն եւ բանի մը տեղ պիտ՚որ չդրուի։ — Երրորդ. որովհետեւ մենք մեր երդմամբը, զոր քաղքին ըրած ենք, կը վկայենք որ մեր գիտնալովը տեղ մը՝ ո՛չ մեր երկրին, եւ ո՛չ օտար երկիր մը, մեր՝ այս վերոգրեալ կորսուած կնիքովը կնքուած պարտականութեան թուղթ, դաշնագիր կամ հաստատութեան թուղթ մ՚ունինք, անոր համար մեր քաղքին արձանագրութեան մէջ կ՚անցընենք, ինչպէս որ հոս յայտնեցինք, մեր յաջորդաց համար, որ գիտնան սանկ կնքոյ մը կորուստը։ — Չորրորդ. թէ որ այս մեր կորսուած կնիքը, մէկ՝ առանց Աստուծոյ երկիւղն ունեցող մարդու մը ձեռքն ինկած ըլլայ, որն որ մեր քաղքին վրայ գրած ըլլայ մէկ պարտաւորութեան դաշնագիր մը, կ՚ուզէ ըլլայ պարտքի վրայ, կ՚ուզէ ըլլայ որեւէ կերպով ուրիշ բանի մը վրայ, որ կնքուած ըլլայ այս մեր կորսուած կնքովը, կարծելով թէ կնիքին զօրութեամբ արժէք մը պիտի ունենայ այն գրութիւնն. ու ինք չհամարձակելով նոյնը մեզի ներկայացընել իրեն ու մեր կենդանութեան ատեն, եւ այսպէս մնայ անիկայ իւր ժառանգաց՝ եւ կամ ուրիշի մը ձեռքը, ու ինք ելլէ եւ պահանջմունք ընէ յաջորդներէն՝ մեր մահուանէն ետեւ այս կնիքին զօրութեամբ, — գիտնայ ամէն մարդ որ ուղիղ ճամբով եղած պահանջմունք պիտի չըլլայ այս բանս, այլ ծուռ։ Վասն զի մենք, ինչպէս վերն ալ յիշեցինք, ամենեւին մարդու մը ձեռքը չունինք ոչինչ տեսակ գրու-

*թիւն, որ մեր այս կորսուած կնքովը կնքուած ըլլայ։*

*Ասոր համար կը հաստատենք եւ կը ստորագրենք ամէն մէկն մեր յատուկ անունը. եւ քաղաքին կնիքովը կ'ամրացընենք։„*

*Այս յայտարարութենէն կրնանք տեսնել նախ՝ թէ այն միջոցին որչափ ծանրակշռութիւն կը դրուէր կնքոյ մը կորստեան վրայ. եւ թէ ի՛նչ մեծ երկիւղի մէջ էին մեր նախնիքն, որ չըլլայ թէ կնքոյն կորստեամբն իրենց ու իրենց զաւակաց վրայ մեծ պարտաւորութիւն մը ծանրանայ։ Երկրորդ՝ թէ ի՛նչ խղճմտանքաւոր, ի՛նչպէս զգուշաւոր, բայց միանգամայն ի՛նչպէս շրջահայեաց էին իրենց գործոց մէջ։ — Առաջիկայ յայտարարութիւնը թէպէտ ամենապարզ ոճով ու միամտութեամբ գրուած երեւայ, ի վերայ այսր ամենայնի այս պարզութեան ներքեւ սուր քաղաքականութիւն, սաստիկ զգուշաւոր միտք ու հեռահայեաց աչք մը ծածկուած է։ Մեղմով ու պարզութեամբ կը սկսի, զօրութեամբ կը շարունակուի ու ամենամեծ խստութեամբ եւ սաստիկ սպառնալեօք կը լմընայ։*

*Աւելորդ չէ թերեւս այս եղածները՝ յայտարարութեան թղթոյն հանդերձ՝ ընթերցողաց առջեւը դնել ըստ հայ բնագրին։*

*“Մեք, ներքոյ գրեալքս կը վկայեցնունք այս գրովս, ինչպէս որ ի թվոյն 1749 ըլլալով Պատուելի Աղաչայ Ղազարն օհանեանց Պիրով քաղաքիս մերոյ եւ ունենալով Պատուելի քա-*

ղաքն իրեն Հրամանոցն ձեռն զիրեն երկու մոհրն, որ մեծ ու պզտի, որպէս Պիրօվի ձեռք. որ Մոհրերուն վրայ կու գտվի փորած այս կերպիւս, այսինքն Սրբուհոյն եղիսաբէդայ պատկերքն. Թագաւորական ձէքդրումն Սօլախայ[1] ձեռն. Դաւիդ Մարգարէին գօրծնան գլօխն. Ճարագայդներն գլխուն բոլոր. Ճառագայդին վրայ խաչ. եւ ոտիցն տակն քաշած որպէս գետին դիմացն մէկ մարդմն մէկ ոտքն ծունր կու անէ. սօլախայ ձեռն գրժամն[2]. աջէկ ձեռօքն ողորմութիւն կ'ուզէ Սրբուհւոյն Եղիսաբեդայ մօտէն։ Սրբուհի Եղիսաբէդ ողորմութիւն կու տայ աջէկ ձեռօքն[3] իրեք սդակ։ Բոլորն ունի գիր գրած լատինակ այսպէս. Սիկիլիում օբիտի. արմէ. էլիզաբ. 1746։ Այս գրին բոլորն կայ փորած բոլոր բոլորման. այս փորածին դուսէն ունի մէկ տունկամն[4] մոհրին հետ պարէպար. որ մոհրերն գրվելով վերջգրեալ պատուելի աղաչին ձեռացն տակն, պատուելի քաղքին սընտկին մէջ եւ ով գիտէ թէ ինչ բանի պէտք էղիլ է որ մոհրըվի պատուելի Քաղքին մէջ։ Թէպէտ կու յայտնէ իրեն հրամանքն, իրեն հրամանոցն հօգօմն, թէ տվիլէ մարդու որ մոհրէ քաղքին մէկ բաշուշմն[5], կամ թէ որպէս միտը կուգայ զԱ-

---

[1] Ձախ ձեռք. — թերեւս չօլախ բառն է։

[2] Մահկաձեւ գլխով գաւազան, զոր կաղերը սովոր են գործածել, անթացուպ։

[3] Աջ ձեռք. եւրոպական բացատրութիւն է. հունգ. jobb kèz, գերմ. rechte Hard = աջէկ՝ ուղիղ ձեռք։

[4] Տունկա՝ վոլաքերէն բառ է. կը նշանակէ՝ կնիքին բունատեղը։

[5] Անցագիր. լատիներէն բառ է։

ղաչայ օվանէսին վասիլեանց ուէբարձիալուիդ[1] արած ապրանքն որպէս որն օր Պատուելի քաղքին մոհրին տակն կու գտվէր մինչեւ ի գրէտիդօրնուն արներն. բայց ատուկ չիտէյ ու միտը չի լիննիլ թէ ում տված ըլայ. ու այս կերպիւս մեր պատուելի Քաղքին ալ պիզտի մոհրն կորիլէ եւ է կորած մինչեւ այսօր, որ մոհրն վերայ գրեալ փորվածքովն եւ գրէրովն կու գտվէր: Զայս փնտրելով մեք 1749էն մինչեւ 1752ըն եւ ուսղըն չի տալօվ իրեն, քաղվեցանք ամենեքեանս, որոնք հօս այլ վար կու գտվինք գրած. եւ խորհուրդ անէլով ի վրայ կորսդիան մոհրիս, հասդատեցինք վասն Ապագայի, որ գրվի այս մոհրիս կորուսդն մեր քաղքին բրօդօգօլումին մէջ եւ բուբլիդօվադ ըլայ մեր հասարակութեանն դիմաց. նմանապէս մեր գիւգիւլէօյ վարմէկիային կիւլիշին[2] մէջ. եւ այս, այս կերպիւս:

1ma. Իմաց կու անինք ամէն մէկին, թէ այս երկրիս մէջ եւ թէ օզկայ երկիր. թէ մեր գիւգիւլէօյ վարմէկիան եւ թէ օզկայ վարմէկիաներ կամ աթոռներ, թէ մաճրի, թէ սասի, թէ օլախի, թէ նէմէցի եւ թէ հայի եւ կամ թէ ինչ նաձիօնի, մանաւանդ ալ իժօվ մեր քաղաքացոցն. որ գումվայ ունենար մէկնիվօրն իրեն ձեռն գօնդրագդմն, ամպրութիւնմն կամ այլ կերպիւ գիրմն, կուզէ ինչ անուն ունէնայ, Պատուէլի քաղքէն որ ըլար, այս մեր կորած մոհ-

---

[1] Անտարակոյս repartitio լատ. բառն է, որ բաշխումն, բաժանումն կը նշանակէ։

[2] Երկու բառն ալ հունգարերէն է. կը նշանակէ՝ գաւառի՝ գաւառական ժողովք։

րօմն մոհրած, որպէս այլ վեր յայտնեցինք զնշաններն, նայ ունենայ առաջ բերելու եւ Պատուելի քաղաքին բրէզէնդօվադ անէլու, որ թէ որ այնպիսի հարկաւոր բանմն ըլլայ եւ պէտք պիլար որ Պատուելի Քաղաքն կանի իրեն տված օպլիկաձիային քով [1], նայ մոհրըվի հիմիկէն մօռհօմն. որն որ ունի Պատուելի քաղաքն։

2do. Ունողին Պատուելի Քաղքէն այսպիսի գիր, կու տանք դէրմին օտար երկրէ եղեալնուն մէկ տարի. այս մեր երկրին մարդիգացը վեց ամիս, մեր վարմէկիայէն եղեալնուն իրեք ամիս. եւ մեր քաղաքացոցն վեց շաբաթ, որ ունէնայ այս դէրմինուս զիրեն ձեռքն եղեալ գիրն Պատուելի Քաղքին բրէզէնդօվադ անէլու. եւ թէ որ չի կամէնար այնպիսի ինբէրսօնայ [2] գալու եւ կամ օզկային հետ ալ չի կարենար խրկելու նայ ունենայ այնպիսին, այս վերոյգրեալ դերմինուս, օզկայ ցեղ չէ նայ. Պատուելի քաղքին գրով իմացնելու. զէրայ, թէ որ ունենար մէկ այնպիսի գիրմն ու բրօդուգօվադ չի անէր [3] այս դէրմինուս. նայ գիտէնայ այնպիսին, որ զուրի պիլայ այն գիրն ու ոչ մէկ տեղմալ սէպի չի պի բըռնըվի։

3tio. Որօվ հետեւ մինք մեր երդումովն, որն որ դրիլինք Պատուելի քաղքին, կու հաս-

---

[1] Այսինքն, եթէ հարկ ըլլայ որ քաղաքն իր պարտաւորութիւնը կատարէ կամ իր պարտականութեան խօսքին վրայ մնայ։

[2] Լատիններէն է, կը նշանակէ՝ անձամբ։

[3] Բրօդօքօլօդ անել, կը նշանակէ, արձանագրել, արձանագրութեան մատեններն մէջ անցընել։

դատվինք, որ մեր գիտենալովը չիտինք որ ունենանք հէջ մէկ տեղ մըն ալ այս երկրիս մէջ եւ ոչ օտար երկիր, այս մեր վերոյ գրեալ կորած մոհրովը մոհրած ոչ մէկ ցեղմն օպլիկաձիայ, ոչ գօնդրագդ, ոչ հասդատութեան գիր, ոչ խուրթերու վրայ եւ ոչ մէկ ցեղմն գրի վրայ, վասն այսորիկ կու գրինք հիմի մեր Պատուելի քաղաքին բրօդօգօլումին մէջ, որպէս որ հօս բուբլիգօվադ արինք, մեր տղայոցն յիշատակ, որ գիտենան զորպիսութիւնն կորըսդեան մոհրին:

$4^{to}$. Թէ որ ընկած ըլլար այս մեր վերոյ գրեալ մոհրն մէկ այնպէս առանց Աստուծոյ ահին եղեալ մառդու ձեռ, որ գրած ըլլար կամ գրէր Պատուելի քաղքին վրայ մէկ զօր օպլիկաձիամն, կուզէ պարտքի, կուզէ այլ կերպիւ բանի վերայ եւ մոհրած ըլլար, այս մեր վերոյ գրեալ կտրած մոհրովը, այն նիամթօվը թէ մոհրին ուժէլութեամբն հասդատ մնայ այն գիրն ու ինքն չի իշխելով բրէզէնզիայ անելու իրեն եւ մեր կենդանութեան ժամանակն. մընար գիրն իրեն բօսդէրիդաշին եւ կամ օզկային ձեռն, որ ձեռն ունեցողն ելէր ու բրէզէնզիայ անէր մեր բօսդէրիդաշին մէր մահւանը էտեւանց այս մոհրին ուժէլութեամբն, նայ գիտենան ամէն մէկն որ հէլէլ ճամբօվ չի պիլար բրէզէնզիա հապա ծուռ. զէրայ, որպէս մինք այլ վեր յայտնեցինք մեր հոգւօվը թէ մառդու ձեռ ալ չունինք հէջ մէկ ցեղմն գիր, այս մեր կտրած մոհրովը մոհրած. վասն այսորիկ հօս ալ կու հասդատինք եւ կու գրինք զգիրըս ամէն մէկըս շուշգրիպօվադ

անէլով եւ Պատուելի քաղքին մոհրօվն ամրացուցանելով։

Գրեցաւ ի Թվըն 1752․ Դեկտեմբերի 18ին, երկրին Դրանզիլվանիոյ ի Քաղաքն Հայոց Էլիզաբէդ։„

## 16.

Եղիսաբեթուպոլսոյ Հայք արքունական կալուածները տէրութենէն գնելէն ետեւ սկսան խորհիլ ու ճամբաներ եւ միջոցներ գտնել թէ ի՛նչ կերպով զանոնք կարգադրեն, ըստ օրինի կառավարեն, պահպանեն, լաւագունացընեն ու աւելի պտղաբեր ընեն։ — Ա՛ս՝ ինչպէս ընդհանրապէս հասարակութեան ամէն գործքին գլուխն էր քաղքին գլխաւոր դատաւորը։ Սակայն ասանկ ընդարձակ երկիրներուն, ինչպէս բնական էր, մէկ զատ մասնաւոր կառավարութիւն ու վերատեսչութիւն մը հարկաւոր էր։ Ուստի հասարակութիւնը տեսնելով որ դատաւորն ի վիճակի չէ թէ՛ քաղքին այլեւայլ գործքերը կատարելու եւ թէ՛ միանգամայն այն տարածեալ երկիրներուն հոգաբարձութիւնը վարելու, որով մէկ կողմանէ քաղքին օրինաւոր վարչութեան կերպը եւ մէկալ կողմանէ երկիրներուն կառավարութիւնն ըստ օրինի չըլլալով՝ հոն, պարտ ու պատշաճ հսկողութիւնը պիտի պակսէր, իսկ հոս՝ խնդրած ու պահանջած եկամուտքները պիտի չըլլային, անոր համար մտածեցին որ կալուածներու վերատեսուչ կամ տնտես անունով վերակացուներ դնեն երկիրնե

րուն վրայ. որպէս զի թէ այս ծանրաբեռնութեամբ դատաւորին գործքերը չաւելնան ու թէ երկիրներուն կառավարութիւնը պատշաճապէս ըլլալով՝ եկամուտները աւելնան։ Այս վերակացուներուն գլխաւոր ու մի միայն գործքը պիտի ըլլար կալուածատէրութեան տնտեսութիւնը. երկիրներուն նկատմամբ եղած վէճերն ու ընդդիմադարձութիւնն՝ իբրեւ երկրատէր մը հոգալ, երեւան եղած վէճերն ու դատերը կարգադրել. դարձեալ՝ — այն երդումին համեմատ՝ զոր ըրին քաղքին վարչութեանն առջին, հաւատարմութեամբ ետեւէն իյնալ որ վաստակն աւելնայ ու արդիւնքը յառաջ տարուի եւ վնասները հեռացուին։ — Երդման ձեւին եւ որպիսութեանը վրայ՝ զոր ամէն խորհրդական եւ պաշտօնատէր ընելու սովոր էր պաշտօնի մ'ընտրուած ատեն, ետքէն խօսելու առիթ կ'ունենանք։

Առ այս ծանր պաշտօն ընտրուեցան քուէարկութեամբ Պ. Աղաչայ Ղազար Յովհաննեանց ու Պ. Աղաչայ Յովհաննէս Տէր Յակոբեան։ Ասոնց տարեկան վճարքն ալ որոշեց քաղաքը։ Ամէն մէկ տնտեսը պիտ'որ ընդունէր այս բանիս համար 300 հունգարական ֆիորին. բաց ասկէ Ղազար Յովհաննեանց 12 չափ ցորեն ու 10 ձողաչափ վառելու փայտ։ — Այս վճարքը կամ թէ ըսենք դաշնադրութիւնը մէկ տարւոյ համար տրուեցաւ ու դրուեցաւ յաջորդ կէտերուն համեմատ։ Ա. Մէկ արկղ մը պիտ'որ ունենային պաշտօնատէրներն, ուր որ կալուա-

ծատէրութեան ամէն տեսակ եկամուտները պիտ՚որ դրուէին։ Արկղը Թէպէտ Յովհաննեանցին քով պիտի ըլլար, սակայն բանալին պիտի պահէր կալուածատէրութեան վերակացուն։ Բ. Վերատեսուչներն ամէն կերպ տնտեսական բաներուն վրայօք՝ քաղքին քննիչներուն կամ գանձապետներուն գրով հաշիւ պիտի տային։ Գ. Վերակացուներն ամէն շաբաթ մէյ մը — չորեքշաբթի — ատենական խորհուրդ կամ ժողով պիտի ընէին որ եւ է կողմանէ եկած, ու որ եւ է կերպով հանդիպած ու յառաջ եկած կռիւներն ու հակառակութիւնները յստակելու համար։ Ասոնց նկատմամբ եղած որոշումները պիտի յայտնէին թէ՛ վարձուորներուն եւ թէ՛ տնուորներուն։ Դ. Թէ որ բան մը տեսնէին կամ նոր բան մը հնարէին, ուսկից կալուածատէրութեան վաստակ ու եկամուտ մը կրնար գալ, զանիկայ անմիջապէս ուզածնուն պէս ու ըստ քմաց պիտի չգործադրէին, մինչեւ որ նոյնը հասարակութեան առջեւը չդնէին՝ անոր վրայ խորհելու համար. ու թէ որ քաղքին վարչութիւնն այն բանիս հաւանէր, այն ատեն կրնային զանիկայ գործադրել։ Ե. Եթէ կալուածատէրութեան մէջ սովորականէն դուրս բաներ պատահելու ըլլային, անոնց խնդիրը՝ քաղքին վարչութեանը պիտի ներկայացընէին՝ իրին վրայ աւելի պայծառ գաղափար մ՚ունենալու համար։ Եւ վերջապէս Զ. Պատիժներէն ժողոված լումաներուն եւ քառանդաններուն երկու մասը պիտ՚որ երթար կալուածատէրութեան արկղն,

ու մէկ մասը պիտի ընդունէին դատաստան ընող ատենականները: — Բաց ասկէ քաղաքային վերատեսչութիւնն իրեն վերապահեց իշխանութիւնն որ ինչ նոր ու կարեւոր հրաման ու կարգադրութիւն որ տար վերատեսուչներուն, անոնք պարտական էին ասոր համեմատ շարժելու եւ բաներնին ըստ այսմ կարգադրելու:

Կը դնեմ հոս, այս կէտէրուն վրայօք եղած որոշումներն, ըստ ժամանակակից տարեգրին:

„Աստուծոյ ողորմութեամբն 1759 Մարտի 13 էլէզաբէդան.

Պատճառ գրոյս այս է, ինչպէս քաղվելով Պ. Հասարակն վասն Տօմինիումին եւ խորհուրդ անելով թէ ինչ կերպիւ հաստատին վասն տօմինիումին էգօնօմիային, որ ալ աղէկ ֆօյդօդուիդ[1] ըլլայ տօմինիումին բանը, որ ամէն բանովն չի ծանրանայ Պ. Աղաչայ Պիրովն նաեւ Պ. Մակիսդրադն. ուխտվեցաւ Պատուելի հասարակին որ հաստատէ երկու Աղաչայ ինշբէգդօր[2] տօմինիումին վրայ, որ ունենան զամենայն տարտն տօմինիումին քալցընելու, այս ինքն ինչվան որ նալէժիդ կու անէ զտօմինիումին էգօնօմիան, զեօսակնուն[3] գօնդրովէրզիաներն[4] որպէս դատսդներն եւ այլն. ինչ որ պէտք ըլլար մէկ տօմինուս դէրէսդրիմ[5],

---

1 Folytatni, հունգարերէն բառ է. կը նշանակէ՝ շարունակել:
2 Տնտես, հոգաբարձու:
3 Jószág, հունգարերէն է. կը նշանակէ՝ երկիր, կալուած:
4 Կռիւ, վիճաբանութիւն, հակառակութիւն:
5 Dominus terrestri. երկրատէր, կալուածատէր:

տարտ ունէնալու, նայ զամենայն տարտն հօգան. զվասդակն առաջ տանին եւ զզէնը հերացնուն հաւատարմաբար. այն երդումին քով որուն որ էրփընցիլին պատւելի հասարակին։ Որ եւ ընտրեցին վօդումօվ զՊատւելի Աղաչայ Ղազարն օհաննեանց եւ զՊատւելի Ա. օհանն տէր ակոբի, որ աղաչանուն խոսդացաւ Պատւելի հասարակն մէկին մէկին տարեկան հախ Hni. fl. 300, այսինքն երեք հարուր մածրի, 10 կէլադայ ցորեն եւ 10 խուլաճ փատ Աղաչայ Ղազըրին. բայց Աղաչայ օհանին միայն ըսդակ։ Եւ գիտաձվի որ այս գօնվէնձիաս[1] մէկ մէկ տարօվ է, այս այլ վար գրած բունգդերուն գօրայ.

$1^{mo}$. Պի ունենան իրենց հրամանքներն մէկ սնտուկմն, ուրուխ որ տօմինիումին գասան պի քաղվի, որ սնտուկն պի կաննի Ա. օհանին մօտ. եւ բալինքն պիլայ Աղաչայ. օտօրպիրօվին[2] մօտ։

$2^{do}$. Ունենան Աղաչայ ինչըէգդօրներն ամենայն ցեղ էգօնօմիանուն Պ. քաղքին էգզագդօրիային գրով սէպ տալու։

$3^{tia}$. Ունենան Աղաչայ ինչըէգդօրներն ամէն շաբդու, այսինքն չորեք շաբդին տօմինալի փօրում[3] բռնէլու ու զամենայն գօնդրօյվէրզիաներն[4] իսդիկելու. օր բանը ունենան բուպլիգօվադ անէլու թէ եօպաճնուն եւ թէ ժէլէրնուն,

---

[1] Conventio, դաշինք, դաշնագրութիւն։
[2] Udvar biró հունգարերէն է. կընչանակէ՝ տան տնտես, հազարապետ։
[3] Կալուածատէրութեան ատեան եղած դատաստան։
[4] Հակառակութիւն, վէճ, ընդդիմագրութիւն։

որ ողկայ օր մոլեսդալուխդ չի անին[1], բայց միայն գչորեքշաբդին։

4^{to}. Մէկ նոր բանմն իմանային կամ հրնճարէին ուսկից որ վաստակմն պիդար տօմինիումին նայ, իրենց հրամանոցն ուզածին գօրայ չի անին, հապայ ունենան առաջ տալու Պ. մակիսդրադին. եւ թէ որ ուդվէր նայ հրաման պիտայ որ առաջ տանին զբանը։

5^{to}. Մեծ գաւզաներ առաջ գային տօմինիումին մէջ նայ, անոնց աբէլացիան ալ պի գայ Պ. մակիսդրադին դիմաց։

6^{to}. Շիշդակներն ու ճուրումներն, ինչ որ քաղվէին իրենց հրամանոցն դիմաց եղած գաւզանուն նայ, երկու պանը պի մոնու տօմինիումին գասան ու իրեքումն պիլայ դատասդան անօղնունը։ Ասկից դուս ալալ ութվի Պ. հասարակին նայ կարենայ ինշդրուգձիայ տալու Աղաչայ ինշըէգդօրնուն, որ ինշդրուգձիանուն գօրայ ունենան ժաժէլու եւ ամէն բանին մէջ տիրիկովադ ըլալու։„

Նախընթաց հատուածներուն մէջ տեսանք թէ Մարիամ Թերեզիա 1758 Աւգոստոսի կոնդակովն ամէն ու բոլոր երկիրներն, որոնք ատեն մը Աբաֆի իշխանին կը վերաբերէին, վրան աւելցընելով նաեւ մօտակայ չորս գեղերը՝

---

[1] Այսինքն — ինչպէս որ բառերը ետեւէ ետեւ կուգան, — պարտքերնին ըլլայ ծանուցանելու թէ տնուորներուն եւ թէ վարձուորներուն. որպէս զի անոնք զիրենք ուրիշ ատեն անհանգիստ չընեն։ Jobbágy ու szellér, հունգարերէն բառեր են։

մշտնջենապէս Եղիսաբեթուպոլսոյ Հայոց հասարակութեանը բաշխած, տուած ու ծախած էր. ու տուչութիւնն եւ առումն ալ եղած լմընցած էր: Այս հրամանագիրը 1759 Սեպտ. ամսոյն մէջ Հերմանշդատ քաղքը գումարուած տէրութեան ժողովոյն առջեւ կարդացուեցաւ ու հրատարակուեցաւ: Սակայն այս բանս երկրին՝ կամ թէ ըսենք Դրանսիլուանիոյ կառավարութեան կողմանէ — անտարակոյս պէթլէն գերդաստանին գրգռելովը — ընդդիմադարձութիւն գտաւ, եւ ընդդիմադարձութիւնը առանձնաշնորհութեան պատճէնին վրայ անցուելով ու նշանակուելով՝ հարկ եղաւ որ հասարակութիւնն ասոր դէմ ճար մը գտնէ:

Անոր համար քաղաքային վարչութիւնն 1760 Ապր. 25ին ընդհանուր ժողով մը գումարելով՝ ուրիշ ճար կամ միջոց չգտաւ եթէ ոչ որ Կայսրուհւոյն ոտքն իյնայ, ուսկից այս երկիրներն ստացած էր: Ուստի եւ որոշուեցաւ որ աղաչանաց նամակ մը գրուի առ ինքն Մարիամ Թերեզիայ եւ իրմէն հրաման ուզուի որ պատգամաւորութիւն մը կարենայ երթալ ի Վիեննայ, որպէս զի ընդդիմադարձութեան խընդիրքը յստակուի ու յետս կոչուի: Հասարակութեան աղաչանքն ընդունուեցաւ կայսրուհիէն. եւ հրաման խրկուեցաւ Դրանսիլուանիոյ կառավարութեան որ երկու հոգի, զոր քաղքը կ'ընտրէ իբրեւ պատգամաւոր թագուհւոյն առջեւ ելլել կարենայ: — Կառավարութիւնը իւր կողմանէ ընտրեց պատգամաւոր

այս բանիս այն անձինքները, զորոնք երկու տարի յառաջ ընտրած էր, այսինքն զԱւքսենտիոս Խոփգուցեան եւ զԱստուածատուր Վիգօլեանց, մասնաւորապէս անոր համար, որ ասոնք արդէն այս տեսակ գործառնութեանց մէջ վարժ էին, եւ երկրորդ՝ որ Պաշտպանողի կալուածատէրութեան գնման՝ ինչպէս նաեւ արտօնութեանց հրամանագիրը հանելուն մէջ իրենք էին գլխաւոր գործողները:

Ուստի այս պատճառներու համար լաւ համարեցաւ հասարակութիւնն որ այս երկու Աղաչաններն յանձն առնուն Վիեննա երթալ եւ եղած ընդդիմադարձութիւնն ու բողոքումը ետ առնելու, իրերը շտկելու եւ կարգի բերելու համար, մեծամեծաց եւ այն ամէն անձանց ներկայանան, որոնց ձեռօք որ կրնայ յուսացուիլ թէ այս բանս յաջողի, վերջանայ:

Ինչպէս որ նախընթաց անգամուն քաղաքը դրամի ամենեւին չխնայեց, անանկ ալ այս անգամ պատգամաւորաց վարձք տալու որոշեց, Խոփգուցեանին՝ 1000 ֆիորին իրական ստակ, եօթը կանգուն չուխայ եւ մէկ զոյգ կօշիկ. իսկ Վիգօլեանին՝ 800 ֆիորին, բաց ասկէ՝ որ իր տանը քով եղած առուակը քաղաքը հողով լեցընէ, որչափ որ հարկը պահանջէ, 10 չափ մաքուր ցորեն, 20 ձողաչափ վառելու փայտ, եօթը կանգուն բարակ չուխայ ու զոյգ մը կօշիկ: — Եթէ պատգամաւորաց բախտովն՝ վեց ամսէ յառաջ գործքը կատարուէր ըլլինար՝ վերոյգրեալ վարձքը պիտի ընդունէին, իսկ եթէ հարկաւո-

րութիւնն այնպէս բերէր որ պէտք ըլլար վեց ամնէն աւելի Վիեննա նստելու, իրենք պարտական պիտի չըլլային հոն մնալու։ Բայց թէ որ գործքը լմնցընել չկարենալով հարկ ըլլար, որ Վիէննա գործակատար կամ երեսփոխան մ'ունենայ հասարակութիւնը՝ գործքին յառաջացմանը համար, այն ատեն պէտք էր որ իրենք քաղաքային վարչութեան իմաց տային որ հասարակութիւնն այս բանիս հոգ տանելով՝ մէկ կամ երկու գործակալ անուանէր գործոյն։ — Իսկ եթէ բանն այնպէս բերէր, որ քիչ մ'ատեն աւելի պէտք ըլլար գործքին կատարմանը, այն ատեն պատգամաւորք հոն մնալու էին. բայց իրենց նստելուն համեմատ ամիս գլուխ վճարքնին պիտի ընդունէին։ Ամէն տեսակ ծախք՝ Վիեննա երթալը, հոն նստիլն, ուտելը խմելը, պարգեւաբաշխութիւններն, անկէ ետ դառնալն եւ այլն քաղքին արկղէն պիտ'որ ըլլար։

Լսե՛նք այս ամէն եղածները տարեգրին բերնէն։

“Աստուծոյ ողորմութեամբն 1760 Ապրելի 25ին Եղիզաբէգան.

Պատճառ գրոյս այս է, որ 1758ին գընտըվելով Պաւելի քաղաքն բրէվիլէկիումը, որ բրէվիլէկիումն բուբլիգօվատ ըլլալով 1759ին Սեպտեմբերի, ամսուն Սիպինը, ընդրէկ երկըրին դիմաց օրսակ կիւլիշին[1], որ բուբլիգաձիային ժամանակն գօնդրօտիգատ եղաւ երկրէն. եւ

[1] Ország-gyülés, հունգարերէն է, կը նշանակէ՝ տէրութեան ժողով։

գրվելով գոնդրատիքձիան մեր բրէվիլէկիումին վրայ, պէտք էղաւ որ մեր Պ. Հասարակըն ասոր ճար գըտնու. եւ ճարըն օղկայ չիլալով, քան թէ այլվի մեր Թագուհոյն, ումմէ որ գընտըվիլինք տըլըն ըննելըն: Գրեցինք Հասարակաւ ինչդանձիայ[1] Թագուհոյն պէջն, որ տայ հրաման որ կարենանք երկու տէբուդադուշ պէջն խրկելու, որ զբանը խօսիկինք. ու խնդրըլվածքնուս գօրայ խըլկելով Թագուհին Տէքրէդ արտեալըն կուպէրնիումին, որ իմայ անլըն մեր Հասարակին թէ կուզէ եւ կու կամի Թագուհին, որ մեր գօմունիդաշէն երթան վեր Թագուհուն դրօնուշին դիմաց երկու տէբուդադ, զորոնք Պատուելի Հասարակն ընտրէ: Զոր բանը գօմիսիօնալիդէր[2] յայտնելով կուպէրնիումն մեր Հասարակին. ասոր վրայ քաղվելով մեր Պ. Հասարակն ընտրեցին տէբուդադուշներ. նախ եւ առաջ զՊատուելի Աղաչայ Անկսէնդըն Աղաչայ Մանուկի իսիգուցեանց. երկուսում՝ զԱղաչայ Ասվատուրըն Վիգօլեանց, եւ այս մանաւանդ անոր, զէրայ ասոր առաջ ալ 1758ին էղիլըն իրենց հրամանքներն այսինքն մեր իպաշֆալօվլին տօմինիումին գնվածքին եւ բրէվիլէկիումին հանելուն ժամանակըն պէջըն տէբուդադուշ: Վասն որոյ հիմիկալ այնպէս ութվայ Պ. Հասարակին որ իրենց հրամանքներն վալօլուիդ[3] անին զայս աշխատանքն. եւ

---

[1] Լատիներէն է. կը նշանակէ՝ աղերսագիր, աղաչանաց թուղթ:

[2] Ցանձարարական կերպով. լատիներէն է:

[3] Vállalni հունգարերէն բառ է. կը նշանակէ՝ յանձն առնուլ:

երթալով պէջն, քալին այս բանիս սէպն թագաւորաց մօտ. եւ թէ օր աստուծոյ կամքն ըլլայ նայ, վերջ տանին զբանը. որ Աղաչանուն աշխատանքին կու խօստանայ Պ. Հասարակն, 1ᵐᶦ Պ. Աղաչայ Անկսէնտին Աղաչայ Մանուկի իսիգուցեանց նաղտ ըսդակ 1000 Մաճրի մաճրքի, այսինքն հազար. 7 կան. բարակ չուխայ եւ մէկ ճուֆդմը կօշիկ։ Նմանապէս Աղաչայ Ասվատրին վիգօլեանց նաղտ ըսդակ 800 Մաճրի, այսինքն ութը հարուր. նմանապէս զշանձը[1] այսինքն ղաղպարն, որ ունի տանը քով նայ ունենայ ըլնելու Պ. Քաղաքն գետնով, ոլքան որ պիտավական ըլլայ եւ երկան բերէ կամ ցրցնու[2]. 10 կէլադայ ըուինտ ցորեն չախչէն, այսինքն առաջին տամղայի ցորենէն. 20 խուլաճ ըսդըլժընի[3] փատ ունենայ եւ այս աղպարն բերվի. 1 գետին փորիչ մը, գէր ծընընդեանը[4]. 7 կան. բարակ չուխայ եւ մէկ ճֆդ կօշիկ պի տրվի իրեն հրամանոցն. այնպիսի գօնտիձիայով օր թէ օր մեր Պ. քաղքին տալեհէն եւ իրենց հրամանոցն տալեհէն ալ առաջալ քանձ 6 ամիսն կարենան զբանը վերջ տանելու նայ բարի է.

---

[1] Sáncz Հունգարերէն բառը կը նշանակէ՝ շինուած հողաբլուր, թումբ։ Իսկ ղաղպար՝ Դրանսիլուանիոյ Հայոց լեզուովը կը նշանակէ՝ բակ։

[2] Երկան բերէ կամ ցրցնու կը նշանակէ՝ պատշաճութիւնը բերէ, կամ ցուցընէ։

[3] Վալաքերէն բառ է. նշանակութիւնն է՝ ձողով չափուած կամ ձողաչափով դրուած փայտ։

[4] Ճշդիւ այսպէս գրուած է արձանագրութեան մէջ։ Սակայն այլաբանական իմաստ մը պիտ'որ ունենայ. «գետին փորիչ» բացատրութիւնը «գէր ծննդեան»ին քով թերեւս նշանակութիւնն այն ըլլայ, որ քաղաքը՝ Քրիստոսի ծննդեան միջոցներն՝ իրեն գէր խոզ մը պարգեւ կու տայ։

զվերոյ գրեալ հախըն պի ունենան. բայց թէ որ վեց ամիս պէտք ըլլար նստէլու նայ, ունենան զվեց ամսին լըմնըցնելու վերոյ գրեալ հախոմն եւ վեց ամսին լմնալով զվերոյ գրեալ հախն պի ունենան. եւ աւելօքն օպլիկադ չի պիլան նստէլու, որ բանը աստուած մի արասցէ, չի կարենայինք լմնցնելու վեց ամսեն մէջ եւ աւելօքն կամք չի ունենայինք նստէլու. եւ թէ որ պէտք ըլլար, որ տէբուդադուշներ գտվին պէջն նայ պարտական պիլան ալ կանուխ իմաց անելու Պ. Հասարակին, որ զտարտն ունենայ Պ. Հասարակն: Բայց դաղուգվօյ հանդպէր բանը որ իքմն աւելի, այսինքն ամիս կամ 6 շաբաթ պէտք պիլար որ դէր նստէին եւ բանը պի վերջանար, նայ ունէնան իրենց հրամանքներ նստէլու. եւ այն աւելօքն նստէլուն հախն պիլայ ամսեն գլօխ որպէս բրէբօրձիան[1] ցըցնու վերագրեալ հախինը. այսինքն ինչ որ ըննէր ամսեն վրայ, նայ այնպէս պի վիճարվի: Բայց գիտացվի որ ամենայն խարճերն ինչ օր անէին Աղաչայ տէբուդադուշներն թէ երթալն, թէ պէջը նստելն եւ թէ պէջն պաշխըշներ տալն եւ թէ տուն գալն, ինչ օր խարճէին այսինքն իրենց հրամանոցն ուտելն եւ խմելն նայ Պ. քաղքին գասաէն պիլայ:„

Նրեսփոխանք Վիեննա գնացին: Հոն հանդիպած ու կատարուած բաներուն վրայ թէպէտ ուղղակի տեղեկութիւն չունինք վասն զի ասոր վրայօք — գոնէ մինչեւ հիմակ — ոչ արձա-

[1] Proportio. համեմատութիւն, պատշաճութիւն:

նագրութեանց, ոչ տարեգրոց եւ ոչ ալ քաղաքային ժողովոյն տեղեկութեանց մէջ նշանակուած բան մը կը գտնենք, այսու ամենայնիւ հետեւանքներէն ու պատգամաւորաց տարի մը ետքը — 1761 Մայիսի — քաղաքային ժողովոյն մատուցած տեղեկութիւններէն ու եղած արձանագրութիւններէն կ'իմանանք թէ պատգամաւորք յաջողութեամբ գնացեր, ճարտարութեամբ գործեր ու լմնցուցեր են իրենց յանձնուած գործքը: Հետերնին Մարիամ Թերեզիա կայսրուհիէն հրովարտակ մը կը բերեն, որուն մէջ կը պատուիրուի Դրանսիլուանիոյ կառավարութեան թէ ընդդիմադարձութիւնը՝ զոր կալուածատէրութեան գնմանը դէմ ըրած է, յետս կոչում ընէ: Իրօք ալ այս հրամանագրին հետեւութեամբը Դրանսիլուանիոյ աւագաժողովն ընդդիմադարձութիւնն ետ առաւ:

Պատգամաւորք տուն գալով՝ իրենց ըրած գործքին, ինչպէս նաեւ ունեցած ելեւմուտքին վրայօք տեղեկութիւն տուին հասարակութեան: Աս տեղեկութիւններէն կ'իմանանք որ ընդդիմադարձութեան գործողութիւնը քաղքին 7747 ֆիորին ու 44 քառանդանի նստած է:

Որպէս զի ընթերցողն աւելի լուսաւոր գաղափար մ'ունենայ ասոր վրայ, կը դնեմ հոս այն արձանագրութիւնն ու ելեւմտից հաշիւը, զոր երեսփոխանք մատուցած են հասարակութեան, Վիեննայէն դառնալէն ետեւ: Ասոնցմէ կը տեսնենք, թէ ինչպէս նախընթաց առթիւ ասանկ ալ հիմակ՝ գործողք դրամի ամենուն

*խնայողութիւն չըրին, այլ առատ պարգեւաբաշխութեամբ ամէն բան շռկեցին, որպէս զի քաղաքը իւր վախճանին հասնի եւ հանգստանայ:*

*Ահաւասիկ տարեգրին, ասոր վրայօք մեզի թողուցած տեղեկութիւնը:*

*“Աստուծոյ ողորմութեամբն* 1761 *Մայիսի Էլիզաբէդան.*

*Պատճառ գրոյս այս է, ինչպէս* 1760 *ապրելի* 25*ին Տերուդօվադ ըլլալով մեր Պ. Էլիզաբէդ քաղքէն Պ. Աղաչայ Անկսէնտն Ա. Մանուկի. խոխգուցնց եւ Պ. Աղաչայ. Ասվատուրն վիգօլեանց, որ երթան պէջն, մեր թագուհոյն մարիայ թէրէզիային դրօնուշին դիմացը, վասն որ գօնդրօտիգօվադ արիլէր երկիրն զմեր բրէվելէկիումն, որպէս որ կայ ալ ետ գրած, թէ ինչ կերպիւ եւ ինչ գօնտիձիայօվ երթան եւ քալին վասն րէմիդաձիային: Եւ Աստուծոյ ողորմութեամբն երթալով եւ աշխատելով բերան մեր թագուհոյն մօտէն Տէքրէդ, որ ունենայ երկիրն զգօնդրատիքցիան ռէմիդալուիդ անելու. եւ այսպէս տուն գալով զսէպերն կուտան թէ բէրձէբձիային եւ թէ էրօկաձիային, որպէս հօս ալ վար կու երեւնայ գրած:*

Բէրձէբձիայ ռէճօդադօշիօնը

| | R. Fl. |
|---|---|
| 1860 *մայիսի 24ին Պատւելի քաղքէն էքզաքգօրիայէն առինք. տալով գվիդանձիայ* | 416.40 |
| *Ունիսի 26ին. Աղաչայ Դօմաս դէյէրէն զԱղաչայ. լուսիկին. Աղաչայ Պ.ազարին Օհանեանց բատակըն* . . . . . . | 600.— |
| *Սումայ* | 1016.40 |

| | |
|---|---|
| Գրանսլագում | 1016.40 |
| Ուլիսի 17ին. dto. գոմաս դէլէրէն այլվի զվերոյգրեալ Աղաչին բոզակըն . . . | 1400.— |
| Դեկի. 3ին Վիեննան. Աղաչայ Մանուկէն խայի ճուրճօվէն, արինք. որին վրայ տուվինք օպլիկածիայ . . . . . . | 2900.— |
| 1761 Մարտի 10. արատն Աղաչայ անկուէնտէն Ա. Մկի խիզուած արինք, որին վրայ տվինք օպլիկածիայ . . . . . . . . . . | 133.20 |
| Սումայ | 5450.— |

Աստուածով Երօխային Տեբուագագուանը.

| | |
|---|---|
| Էլիզաբեգան տվինք մեր ըլէպանիան եւ վանքն Պատրըքնու . . . . . . . . . | 14.12 |
| Լըգըրդուշին[1], որ զՊ. քաղքին ըլնաուկն խօրդիլէ[2] . . . . . . . . . . | 2.18 |
| Վաշարհէյըն երթալն եւ գալն խարճ . . | 2.34 |
| Սուրբ Մարիա ռակնան պատարագի . . . | 4.10 |
| Ա. ըսթեփանին գօչին տվինք խարճի բէշղէն մինչեւ ի տէվան, որ ադակն Ա. ասվատրին քէլեանց ձեռըն . . . . . . . . | 8.20 |
| 1860. ունիսի 13ին. գըրվուշիան բէշղէն մինչեւ ի պէջն . . . . . . . . . . . | 21.12 |
| Ուլիսի 15ին. Վիեննան երկու ճուֆդ կօչկի | 6.30 |
| Ուլիսի 18ին վիճարեցինք ծեր գօզմային զ8/m. քին շահըն 1759 էն ուլիսի 9 էն մինչեւ 1760 ուլիսի 9. եւ գրվեցաւ երկու գօնդրագդին վրայ ալ . . . . . . . . | 480.— |
| Ուլիսի 23ին. երբ զիշդանձիան[3] նես տվինք, Պատարագի . . . . . . . . . . | 4.10 |
| Սումայ | 543.26 |

[1] Հունգարերէն բառ է, կը նշանակէ երկաթագործ:

[2] Խօրդել, Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւը, կը նշանակէ՝ շտկել:

[3] Կարծեմ instantia լատ. բառն է: Սակայն հօս յայտնապէս խնդրուածք, աղերսագիր կը նշանակէ:

| | |
|---|---:|
| Փոխադրում | 543·26 |
| Օգոստոսի 14ին եղաւ խարճ Պատուելի Քաղքին շադրային ռէշգրիբդումին[1] . . . | 39.— |
| Սեպտեմբերի. 14ին. տուվինք Պատարագի . | 4·10 |
| Նոյեմբերի. 27ին Սուրբ մարիաձէլն տուվինք Պատարագի. . . . . . . . . . . | 4·10 |
| Մարիաձէլն երթալն եւ գալն գըրվուշիայ . | 22.— |
| Դեկտեմբերի. 1ma Տվինք գերապայծառ եպիսկոպոսին Անդօնիուս պայդային շահուսդակ. մէկ տարով հարըրի վեցօմը, որին վրայ օպլիկանիայ . . . . . . . . | 2000.— |
| Դեկ. 11ին. Ա. Սէգլին գանձալիսդային Ա. Տօմպի եանօշին սէպին վրայ, որ շահին մէջ սէպվի, որին վրայ ունինք գվիդանձիայ . . . . . . . . . . . . . | 67·12 |
| Դեկի. 13ին. ինսինուվադումին[2] դաքշան, որ գնաց մեր բանը գանձալարիայէն, դոմարան | 6.— |
| Դեկի. 14ին տուվինք պատարագի . . . | 3.— |
| Դեկի. 24ին. Պարօյ Շմիդլինկին վասն գօնձերդանձիային . . . . . . . . . | 433·20 |
| Դեկի. 30ին. Նեօկին, Մեծ մաճըրքի գամէրէ գօնչիլիարին մէկ ֆասըլ[3] դօզայի գինի | 125.— |
| Դեկի 31. Ա. Հօրվադին ռեկիադրադօրին 50 ոսգի . . . . . . . . . . . | 208·20 |
| 1761. Ունվարի 15ին. վիճարեցինք զԱ. հօրվադին աղբօրն հադըսդի ոսգու խարճերն, օր սիպինը դարձընու . . . . . . | 35·46 |
| Փետրի. 21ին. Ա. ակէնդ պօպօշին տվինք զռէշգրիբդումին դաքշան. որօմ օր թագուհին ձէնիլէ զտեքուդադուշներն Վիենան . . . . . . . . . . . | 6·11 |
| Սումայ | 3497·45 |

[1] Այսինքն. վրանին վրայօք եղած հրամանագրին համար։

[2] Լատիներէն բառը կը նշանակէ, բարեհաճութեամբ ընդունելութեան։

[3] Գերմաներէն բառ է. կը նշանակէ՝ տակառակ.

| | |
|---|---|
| Դրանսլադում | 3497.45 |
| dto. Վճարեցինք զ1760ին ակէնդութեան հախն . . . . . . . . . . . . | 50.— |
| dto. Ա. Պօպօշին Պիքային վճարեցինք զ2/m. քին շահըն 1759 էն, Նօյի. 1ma էն, մինչեւ 1760 Նօյեմբերի. 1ma . . . | 120.— |
| dto. Ա. ակէնդ Պօպօշին զայս ուէբուդաձիային բանին աշխատանքն 50 ոսկի . . | 208.20 |
| dto. Ա. Պօպօշին սօլիձիդադօրին, օր ամէն անգամ գրիլէ զմեր գործքերն 8 ոսկի . | 33.20 |
| Փետրի 23ին. ուէշգրիբդումին վալչակըն[1], որն որ բերիլինք . . . . . . . . . . | 6.— |
| Շաքրի եւ գաֆէի վրայ տուվինք, որ պաշխշ տված է մէկին մէկալին . . . . . . | 307.23 |
| 10 կտոր լինձի եւ մանչերու պաշխշ. տան հախ հօրվադին 1 խլի. եւ այլն. ին սումայ . . . . . . . . . . . . | 363.13 |
| Ատուծով նոյն 1760 եւ 61ին Տէբուդաձիային էրօկաձիան . . . . . . . . . . . | 4585.51 |
| Աստուծով. Սէպէցինք զմարտիրոսին հախն եւ ինչօր տվիլինք ըրդակ թէ տունը, թէ պէջն, պէրնըվագներն[2] եւ կօշկըներն ամէն բանը մէկ տեղ սէպէլօվ տվինք ին սումայ. R. . . . . . . . . . . . | 115.25 |
| Արի ես սավատուր վիգօլեանց Պ. քաղքին գասայէն իմ սէպին վրայ . . . . . . | 130.— |
| Գըրըվուշիան Պէջէն մինչեւ ի արատն . . | 58.— |
| Ունինք նաղտ ըրդակ ին սումայ . . . . | 45.28 |
| Արատէն մինչեւ ի տէվան գըրըվուշիայ . . | 26.— |
| Նու գիտացվի, որ զվերոյ գրեալ ըրդակն այսինքն 45 F. 28 kr. արաւ Պատուելի Աղաչայ. անկաէնտն Ա. Մանուկի. խփ- | |
| Սումայ | 4960.44 |

[1] Váltsag հունգարերէն բառը, փրկանաւորութիւն կը նշանակէ։

[2] Այս բառը, Դրանսիլուանիոյ հայոց լեզուաւը կը նշանակէ՝ վարտիք։

| | | |
|---|---|---|
| | Դրանս. ադում | 4960·44 |
| գուձէնց Պատուելի քաղքին գաայէն, որ իրեն հրամնացն հախին մէջ սէպվի. 1761 ապրելի 7ին . . . . . . . | | |
| Սումայ սումարում էրօկաձիան R. F. | | 4960·44 |

---

| | |
|---|---|
| Աստուծով. 1761 մարտի 25ին էլիզաբէգան, գիտացվի որ վիճարեց Պ. քաղքին Էքզաքդորիան Ա. ըսԹէփանին պօշնախեանց զգրըվուշիան, որ տարիլէ զԱ. Տէրուդադուշներն մինչեւ ի բէշգըն եւ բերիլէ տէվպայէն տուն . . . . . . . . . | 78·40 |
| Պաշ. վիճարեց Պ. քաղքին էքզաքդօրիան Պ. Աղաչայ. Անկսէնտին Ա. Մանուկի. Խսիգուցենց զՏէրուդադուշութեան հախն $9^3/_4$ ամսեն . . . . . . . . . . | 1354·10 |
| dto. Վիճարեց Աղաչայ Ասվատրին Վիզօլեանց պլվի Տէրուդացիայի հախն $9^3/_4$ ամսեն | 1354·10 |

Անկսենտ Ա. Մանուկէ Խօճայեանց m. p.
Տէրուդադուշ Պ. էլիզաբէգ քաղաքի:
Ասվատուր Վիզօլեանց m. p.
Տէրուդադուշ Պ. էլիզաբէգ Քաղաքի:„

Եւ ասով, ինչպէս կրնանք տեսնել, Եղիսաբեթուպոլսեցիք հանդարտեցան, թէպէտ առ ժամանակ մի. վասն զի մէջ ընդ մէջ եղան հակառակութիւնք ու ընդդիմադրութիւնք երկիրներուն օրինաւոր ստացմանը համար: Բայց ասոնք անոր համար եղած կ'երեւան, որ հայերուն հանգիստը վրդովեն, ու իրենց սիրտն անհանգիստ ընեն: Արաֆիեան կալուածատէրութիւնն ընդ միշտ Եղիսաբեթուպոլսեցւոց ձեռքը մնաց, որովհետեւ այս՝ իրաւամբ եւ մշտատեւ վաճառմամբ գնած ու ընդունած երկիրներուն վարչութիւնն

*իրենք կը վարէին կը տնտեսէին ու ստացուածոց եկամուտները կը վայելէին, թէպէտ մէկալ կողմանէ ընդդիմութիւնք միշտ կը շարունակուէին Պէթլէն գերդաստանին կողմանէ։ Մինչեւ որ դարուս երկրորդ կիսուն սկիզբները տէրութիւնն՝ որպէս զի բերաննին գոցէ եւ զիրենք ցմիշտ լռեցընէ, Սօլնոք Տօպօգայ գաւառին մէջ իրենց կալուածատէրութիւն մը պարգեւեց։*

*Կալուածատէրութեան խնդիրն, ինչպէս նաեւ ընդդիմադարձութեան գործողութիւնը վերջանալէն ու պատգամաւորք՝ իրենց ելեւմուտքը քաղքին հասարակութեանը ներկայացընելէն ետեւ, քաղաքը զիրենք նորէն ամէն կերպ պարտաւորութենէն արձակեց, այն տնօրինման վկայագրովը, զոր տուած է իրենց* 1761 *Մայ.* 15*ին։*

*Ասոր մէջ հասարակութիւնը՝ Վիեննայ երթալուն պատճառը համառօտիւ մը յառաջ բերելէն ետեւ, կ'աւելցընէ, թէ իրենց լիակատար իշխանութիւն եւ միանգամայն քաղքին ստորագրութեամբը երեք կտոր սպիտակ թուղթ տուած է, այն պատճառաւ, որ ի դիպուածի դրամական հարկաւորութեան, զանոնք կարենան գործածել։ Պատգամաւորք — կ'ըսէ տարեգիրը — Վիեննայէն վերադառնալով՝ երեք սպիտակ թուղթը ետ դարձուցին եւ հաշիւները, — մուտքերն ինչպէս ելքերը — մէկիկ մէկիկ յայտնի ընելով՝ զանոնք հասարակութեան ներկայացուցին։ Թէ՛ քաղաքային վարչութիւնն ու թէ՛ հարիւրոց ժողովը զանոնք ի կարգի գտան.*

եւ քաղքին կողմանէ, առ այս ընտրուած Համարակալները, յանուն քաղաքային վերատեսչութեան՝ վերոյիշեալ երկու պատգամաւորներն ամէն կերպ պատասխանատուութենէն արձակեցին, յայտարարելով՝ թէ ասկից ետքը, ոչ քաղաքն եւ ոչ ետքէն եկող Համարակալները, կարենան հաշիւ ուզել այս պատգամաւորութեան նկատմամբ, ոչ իրենցմէ, եւ ոչ իրենց ժառանգներէն: — Այս ազատութեան թղթին տակը ստորագրեցին անուննին — յանուն Համարակութեան Եղիսաբեթուպոլսոյ երկու Համարակալները:

Ահա այս տնօրինման թղթին ձեւն ու կերպը, որ անցուած է քաղքիս 1761 ին արձանագրութեանը մէջ:

«Աստուծոյ ողորմութեամբն

Աբսօլուցիայ.

Մեք ներքոյ գրեալքն կու վկայեցնունք այս գրօվս, ինչպէս որ 1760 ին Մայիսի 24 ին Տէրուդօվադ ըլալով մեր Պ. Էլիզաբէդ քաղքին Մակիստրադէն, նաեւ Սուդայէն Պ. Աղաչայ. Ընկսէնտ Մանուկի խնդուցենց, որպէս Սէնադօր Պ. Էլիզաբէդ Քաղքին, նաեւ Պ. Աղաչայ. Ասվատուրն վիգօլեան որպէս ադդուվալիս Նօտարիուշ Պատուելի Էլիզաբէդ Քաղքին Մակիստրադին, որ երթան Վիէննան Պ. Էլիզաբէդ քաղքին անընօվըն տէբուդադուշ մեր թագուհոյն, այսինքն Մարիայ Թերեզիային դիմաց. վասն մեր բրէվէլէկիումին, որն որ մեր թագու-

Հոյն կրաձիայէն 1758/ին գնտըվիլընք եւ 1759/ին Սիպինը տիեղային[1] ժամանակն բուբլիգօվաղ եղաւ երկրին տունը[2] ըշղադուշնուն[3] դիմաց, որ բրէվէլէկիումին գօնդրատիգօվաղ արաւ ընդրէկ Շղադուշն նօմինէ դրիում նաձիօնում[4]. որ գօնդրատիգձիային պատճառաւն պէտք եղաւ որ տէբուդադօվաղ ըլան վերոյ գրեալ Աղաչաներին երթալու Վիենան մեր թագուհոյն մօտ վասն գօնդրատիքձիային ուէմիդաձիային։ Վասն որոյ տրվեցաւ վերոյ գրեալ Աղաչայ Տէբուդադուշնուն ձեռն կուպէրնիումէն եւ մեր Գ. հասարակէն բլէնիբօդէնձիայ. նաեւ երէք հատ ալպա Գ. քաղքին մահրօմն, որ գաղուգվըյ պէտք էղած ըլար սդակ նայ, ալպանէրօվըս առնուին Գ. Քաղքին անընէին վրայ։ Վասն այնորիկ այս տէբուդաձիայիս օլգօլմօդօշակովըն[5] բէրձիբիալուիդ անէլօվ ըսդկներ, որպէս ալէտ[6] բէրձէբձիան կուցըցնու Գ. քաղքէն, նաեւ Գ. քաղքին աննընօմն եւ էրօկօվաղ անէլօվ, որպէս ալ ետ էրօկաձիան կու ցըցնու։

Գալօվ Աստուծոյ ողորմութեամբն տուն, ետ բերան զիրեք ալպան. եւ զսէպերն տուվին թէ բէրձէբձիայինը եւ թէ էրօկաձիայինը, մի

---

[1] Dieta կը կոչուէր Դրանսիլուանիայի մէջ գումարուած տէրութեան կամ երեսփոխանաց ժողովը։

[2] Հունգարերէն բացատրութիւն է, կը նշանակէ պատգամաւորաց սենեակ։

[3] Աւագանի, մեծամեծք, վիճակք։

[4] Ամբողջ ասացուածը լատիներէն է. կը նշանակէ. յանուն երից ազգայնութեանց. այսինքն՝ Հունգարացւոց գերմանացւոց (սաքսոնացւոց) եւ վալաքաց։

[5] Աւիթ, պատահար, հունգարերէն է։

[6] Բոլոր, ամբողջ։

ըստ միոջէ մեր Պ. քաղքին մակիսդրադին, նաեւ Պ. Սուգային դիմաձէն, որ սէպերն Աստուծով հէլէլ վրտվելով գօնդրօպօվադ[1] եղաւ Պ. Մակիսդրադէն նաեւ Պ. Սուգայէն թէ աղէկին։ Վասն որոյ աբսօլվալուիդ կու անինք մեք ներքոյ գրեալգըս Պ. Էլիզաբէդ քաղքին անընօմն, որպէս մեր Պ. քաղքէն հասդատած էքզաքդօրներ զվերոյ գրեալ Պ. Աղաչայ. Տէբուդադուշներն, որ ասգից լինտան, ոչ մեք եւ ոչ մեր եսէվանցի եղեալ էքզաքգօրներն կարենան սէպ ուզելու այս դեբուդաձիայիս կողմանէ, ոչ իրենց հրամանոցը մօտէն եւ ոչ իրենց հրամանոցն բօսդէրիդաշին մօտէն։ Որ եւ վասն հասդատութեան. ամիսօլուձիայիս մեք, մեր ներքոյ գրեալ շուշգրիբձիայօմն կու հասդատինք եւ կու ամրացուցանեմք. 1761/ն Մայիսի 15/ին ի քաղաքն Հայոց Էլիզաբէդ.

Գօտէր Վարտէլէ Շէմէլէկեան. m. p.
Էքզաքդօր Էլիզաբէդ Քաղաքիս.

Մարտիրոս Ֆօշըտանէնց. m. p.
Էքզաքդօր Պ. Էլիզաբէդ Քաղաքիս։„

## 17.

Պատմութեանս ընթացքին մէջ ըստ բաւականի առիթ ունեցանք տեսնելու, որ Դրանսիլուանիոյ ազգայինք լաւ դրամական վիճակի մէջ էին։ Ասոր իրական փորձը շատ հեղ առաւ

---

[1] Անտարակոյս contribuo բառը պիտ'որ ըլլայ։ Ուստի եւ ամբողջ իմաստն է. Հասարակութիւնն ինչպէս նաեւ հարիւրոց ժողովը ծանոյց կամ հաղորդեց թէ (հաշիւներն) ի կարգի են, աղէկ են։

տէրութիւնը Գրանսիլուանիոյ ազգայնոց վրայ ու հասարակ. բայց մասնաւորապէս Եղիսաբեթուպոլսեցւոց վրայ, որոնք հետզհետէ՝ հինգ հարիւր ու հազար երկու հարիւր ոսկի. ետքէն զինուոր, քիչ մը ետքը 60 հազար ֆիորին, կալուածատէրութեան վաճառման համար. դարձեալ՝ 16.000 ֆիորին ոգեւոր ըմպելեաց ու մնահատութեան իրաւունքին ստացմանը համար ու 30.000 ֆիորին պէթլէն պաշտօնէին՝ հատուցին որ կալուածատէրութեան գնման խնդիրն ու արտօնութեանց վերանորոգման հրամանագիրը փութացընէ ու յաջողցընէ։ Չենք հաշուեր այն առատատու պարգեւներն ու պարգեւաբաշխութիւնները, զորս Եղիսաբեթուպոլսոյ պատգամաւորք ըրին թէ իրական դրամով ու թէ ուրիշ այլեւայլ տեսակ բաներով։

Այս առատաձեռնութեամբ, այս աչքի զարնող արտաքին ցոյցերով՝ թէպէտ մէկ կողմանէ Հայք համարումին շատցուցին, ու ազդեցութիւննին աւելցուցին թէ մասնաւորաց եւ թէ տէրութեան առջեւ, սակայն մէկալ կողմանէ իրենք իրենց վնասեցին, որովհետեւ փուշ եղան արքունեաց մեծամեծներուն. որոնք ծուռ աչքով կը տեսնէին Հայոց մեծ հարստութիւնը։ Բաց ասկէ, նոյն իսկ տէրութիւնն առիթ առնելով ազգայնոց ունեւորութիւնը՝ շարունակ իրենց հրաւէրներ կը հասցընէր, որ մէյ մը աս, մէյ ան բանին համար օգնեն տէրութեան։

Այս միջոցին էր, որ Մարիամ Թերեզիայ, քիչ մը դադրած բրուսիական — եօթնամեայ

— պատերազմին մէջ նորէն պլլուելուն պատճառաւը, Հայոց դիմեց. թէպէտ ոչ ուղղակի, այլ անուղղակի կերպով։ Վիեննայէն 1760ին — ինչպէս որ ենթադրել կու տայ, մէկ 1761էն մնացած արձանագրութեան հատակատոր մը — Մարիամ Թերեզիայ, Գաբրիէլ Պէթլէն ատենադպրին միջնորդութեամբը, Յովհաննէս Պոպոշ, արքունական խորհրդականին, Եղիսաբեթուպոլսեցւոց մտերիմ բարեկամին ու գործակալին ձեռօք քաղքին հասարակութենէն 25.000 փիորին պարտք ուզեց։ Հասարակութիւնը շատ անգամ ժողովք ընելէն ետեւ, որչափ որ ալ կը փափաքէր որ կայսրուհւոյն բաղձանքը կատարէ, սակայն նկատելով թէ վերջի տարիներն ունեցած չափազանց ծախքերուն պատճառաւը — մանաւանդ տէրութեան ստացուածները գնելովն եւ ընդդիմադարձութեան աոթիւը — սաստիկ նեղ վիճակի ու մեծամեծ պարտուց տակ ընկճած է՝ մէկ երկու անգամ պատիպատ բանիւք հրաժարած ու փախուստ տուած էր այս բանէն։ Սակայն տեսնելով որ խնդրանաց, մանաւանդ թէ ստիպման թղթերը մէկը մէկալին կը յաջորդեն, ու ասկէ առանց վնասի ազատիլն անկարելի է, վերջապէս որոշեց հասարակութիւնը, որ գրուի Գաբրիէլ Պէթլէնին, թէ այս ծանր ժամանակին մէջ 25.000 փիորին քովէ քով բերելն անհնարին է։ Այսու ամենայնիւ, եթէ որ հաճոյ է կայսրուհւոյն, 3000 ոսկի կամ շուրջ 15.000 փիօրին կրնայ քաղաքը ճարել եւ կայսրուհւոյն փոխ տալ։

Բայց այս գրուածքին պատասխանելու տեղ, 1761 նոյեմբեր ամսոյն սկիզբները, Յովսէփ Պոլլ, քաղքին գործակալը տնկուեցաւ, եկաւ Եղիսաբեթուպոլիս եւ յայտնեց հասարակութեան թէ 3000 ոսկւով գործ չի կրնար գործուիլ։ Ինք այնպէս կը համարի, որ եթէ հասարակութիւնը 4000 կտոր ոսկի տայ, կարելի է թագուհին ու ատենադպիրը գոհ կ'ըլլան։ Ասոր վրայ հապճէպով ընդհանուր ժողովք գումարեց հասարակութիւնը. եւ համոզուելով որ ազատելու հնարք չկայ՝ սահմանուեցաւ, որ գրուի Պէթլէն կոմսին թէ քաղաքն որոշեց 4000 կտոր ոսկի տալու, եւ դրամն անձամբ Վիեննա տանելու, սակայն այնու պայմանաւ, որ դաշնագիր մը տրուի քաղքին, որուն զօրութեամբ փոխըրած դրամագլխոյն շահն՝ ամէն տարի, հասարակութեան տալիքին մէջ հաշուուի։ Եթէ այս բանս Վիեննա ընդունելի ըլլայ՝ դրամը կը յանձնուի արքունեաց։

Ահաւասիկ եղածներն, ըստ տարեգրին։

“Աստուծով 1761 նոյեմբերի 10 Էլիզաբէդան։

Պատճառ գրոյս այս է, ինչպէս օր ասոր առաջ եկաւ գիր պէջէն մեր ակէնշէն, այսինքն եօհաննէս պօպօշէն, գանձալարիուս անընին տակը, այսինքն կրօֆ Պէդլէն կապօրինը, թէ ունենայ շահու տալու մեր Էլիզաբէդ քաղքին գօմունիտաշն Թագուհոյն 25/m. F. որ բանին սէպն շատ անգամ քաղվելով հասարակն եւ խորհուրդ անելով, որ բանին ժամանակն տեսնե-

լով հասարակն թէ որ քան պարտքի մէջ թաղվիլ է, նայ, կու քալէր էքսգուզօվադ ըլալու այս օնուշէն[1]։ Բայց ալալ գրեր գալով եւ տեսնելով հասարակն թէ հնար չիգայ խալըսելու, ուէզօլվադ եղաւ անցեալ օգոստոսի ամսուոյն թէ գրենք պէշն գանձալարիուսին, այսինքն կրօֆ պէդլէն կապօրին թէ մեզիմէ անհնարին է այս ծանտրը ժամանակնուն 25/m. F. տալու։ Բայց թէ որ ութվլի թագաւորին նայ ուէզօլվադ կլայ հասարակն, իրեք հազար ոսգի տալու մեր թագուհոյն, որ բանին վալօսն[2] կու բօվինք թագաւորէն. եւ այս կերպիւ գրվեցաւ գիր։ Եւ հիմայ վերոյ գրեալ տաղումին գալով մեր քաղաքն Աղաչայ Պօլօյ Եօժէֆըն, յայտնեց Պատուելի աղաչանուն թէ անհնարին է իրեք հազար ոսգօվ. բայց թէ որ սէպէր Պ. հասարակն թէ պի կարնար տալու չորս հազար ոսգի նայ, կու սէպէ, գօնդէնդ[3] պիլայ թագուհին եւ կամ գանձալարիուսն։ Վասն որոյ քաղվելով Պ. հասարակն հաստատեցին. թէ որովհետեւ հնար չիգայ խալըսելու, նայ ութվեցաւ Պ. հասարակին, որ գրվի գանձալարիուսին, այսինքն կրօֆ Պէդլէն Կապօրին, թէ ուէզօլվադ էղիլէ հասարակն զչորս հազար ոսգին մեր թագուհոյն շահու տալու, եւ այս սդակն պի տարվի պէշն. եւ չի տրվի մինչեւ որ այսպէս գօնդրագդ չիտան, թէ զշահն ունենան տարոց տարի Պ. հասարակին տալեցն մէջ

[1] Onus. ծանրաբեռնութիւն, տհաճոյ, անհաճոյ դէպք։
[2] Válasz հունգարերէն բառ է. կը նշանակէ պատասխան։
[3] Content. գղ. գոհ, շատացեալ, հաւան։

ազձէրդօվադ անելու. եւ այսպէս պի տրվի ազակն նես։„

Անցաւ տարի վրայ ամիս մը ու քաղաքը նորէն ընդհանուր ժողով գումարելով՝ նախընթաց ժողովոյն մէջ յառաջ բերուած դժուարութիւններն ու պատճառաբանութիւնները կրկնուեցան։ Այսու ամենայնիւ մէկալ կողմանէ կշռելով ու մտածելով այն ամէն շնորհմունքներն զորոնք ընդունեցան իրենք կայսրուհիէն, առ Մարիամ "գթածագունեղ Թագուհին„ ունեցած հաւատարմութիւննին ու սէրերնին ցուցընելու համար — սանկ նեղ վիճակին, սանկ մեծ պատերազմի ժամանակ — օգնութիւն մատուցանել՝ բարոյական պարտք մը համարեցան։ Ուստի եւ հասարակութիւնն որոշեց, որ, որեւիցէ կերպով, ուսկից որ ըլլայ թող ըլլայ, պէտք է ճարել խոստացուած 4000 ոսկին, մինչեւ 1762 տարւոյն սկիզբը եւ խրկել այն տեղն ուր որ Գաբրիէլ Պէթլէն ատենադպիրը կարգադրէ։ Փոխատուութեան պայմանն էր, որ պաշտօնեան կայսրուհիէն թուղթ մ'առնու, որ 4000 ոսկւոյն շահը հասարակութեան տոցը մէջ կ'առնուի։ Այս իմաստով քաղաքային վարչութիւնը ատենադպրին նամակ մըն ալ գրեց Վիեննա։

Բայց դժուարութիւնը ստակ հոգալն էր, որովհետեւ ճշմարտիւ քաղաքն, իր մեծ պարտուցը պատճառաւն իրական դրամ չէր կրնար ճարել, եթէ ոչ որ երեք տարի յառաջ եղածին պէս տրուելի ստակին գումարը նորէն առաջին եւ ունեւոր քաղաքացիներուն վրայ բաշխէ. եւ

ա՛ն ալ խնդիր էր, թէ այն յաջող ելքը պիտ՛որ ունենա՞ր, զոր այն միջոցին ունեցաւ։ Ասոր վրայ շատ մը խօսելէ ու վիճելէ, եւ այլեւայլ հնարքներ մտածելէ ու յատակագիծներ շինելէ ետեւ, այն փրկաւէտ գաղափարը յղացաւ մտուընին, որ քաղքին մէջ եղած խել մը պարապ երկիրներն ու տեղերը քաղաքացւոց ստակով ծախեն։ Ասով այն օգուտը կ'ըլլար, որ թէ մէկ կողմանէ քաղաքն ու իր անընդմիջական բոլորտիքն եղած կալուածները կը զարգանային ու կը կարգաւորուէին, թէ մէկալ կողմանէ քաղաքացւոց վրայ նոր ծանրաբեռնութիւն մը չէր աւելնար. եւ երրորդ՝ որ քաղաքային վարչութիւնն այս կերպով դիւրաւ դրամի կը հանէր։ Այս գաղափարն ընդունելի եղաւ։ Ուստի եւ սահմանուեցաւ, որ քաղաքացիքն նային իրենց համար յարմար երկիրներ, եւ թէ որ կ'ուզեն գնեն զանոնք։ Միայն թէ իւրաքանչիւր գնողը լաւ մտածէ եւ այնպէս գնէ, որ որոշեալ ժամանակին ստակը վճարէ, եւ աս անոր համար, որովհետեւ քաղաքը շուտով ստըկի պէտք ունի։ Վերջին պայմանաժամը ամիս մըն էր, որ միջոցին ամէն գնող՝ ստակը քաղքին հասարակութեան ձեռքը եւ կամ այն տեղը պիտի վճարէր, ուր որ քաղաքն որոշէր։

Սահմանուեցաւ նաեւ որ եթէ ի դիպուածի գնող մը վճարել չուզենար, կամ խօսքը ետ առնուր, այն ատեն հասարակութիւնն իշխանութիւն ունենայ, գնողին հատուցանել տալու, գնած տեղւոյն գումարին մէկ չորրորդական մասը։

Ասանկով՝ թէպէտ ամբողջ գումարին վճարումներն՝ ազատէր պիտի գնողը, բայց երկիրը կամ կալուածը նորէն քաղքին պիտի անցնէր։ Այս որոշումն ընդունեցաւ, թէ՛ քաղաքային վարչութիւնն ու թէ՛ հարիւրոց ժողովը։ Ուստի եւ գլխաւոր դատաւորը՝ հասարակութեան սպասաւորին ձեռօք ժողովրդեան հրատարակել տուաւ, թէ որուն որ երկիր պէտք է, կամ տան տեղ, եւ կամ որեւէ տեսակ կալուած՝ աճրդով կրնայ գնել։

Այս եղածները՝ յաջորդ խօսքերով կ՚աւանդէ մեզի 1761 Դեկտեմբեր 16ին ժողովոյն արձանագրութիւնը։

"Աստուծոյ ողորմութեամբն 1761 Դեկի. 16 Եղիզաբէդան։

Պատճառ այս է գրոյս, ինչպէս որ քաղվելով Պատուելի մակիստրատն նաեւ Պատուելի Սուդան եւ խորհուրդ անելով վասն այն մուդումին, որն որ մեր թագուհին կուզէ շահու մեր գոմունիդաշէն. այսինքն 25/m. F. զոր սդակն տեսնելով Պ. հասարակն, որ ժամանակիս գօրայ շատ է. որովհետեւ առանց անոր արուտուրներն թուլին եւ ատուկ մեր Քաղաքն շատ պարտի տօմինիումին պատճառաւն։ Ամէնը կամեցաւ Պատուելի հասարակն զիրեն հաւատարմութիւնը եւ սէրն դէպ ի մեր գթածագունեղ թագուհին ցրցնելու. եւ կարօղութեան գօրայ այսպէս մեծ հեծելութեան ժամանակն օգնութիւն հանելու, ուէզօլվադ էղաւ թէ մագար ուսկից կամ ընտոր որ ճարէր նայ 4/m. ոսգի պիանէ այս գալ նոր

տարեն առաջի ամսնուն եւ պիդնէ զսդակն ուրուխ որ մեր գանձալարիում, այսինքն կրօֆ պէդլէն կապօրն տիշըօնօվադ անէ, ագօնտիձիօնէ որ կրօֆըն մեզի զաբխս հանէ Թագուհոյն մօտէն, Թէ տարոց տարի ագձէբդօվադ պիլայն 4/m. ոսգուն շահն գօմունիդաշին գվանդումին մէջ: Եւ այսպէս գրեց Պ. Հասարակն մեր գանձալարիուսին այսինքն կրօֆ Պէդլէն Կապօրին գիր պէջն: Որ բանը լմընալով, կամեցաւ Փունտուշ նայելու վերոյ գրեալ 4/m. ոսգուն. եւ շատ բրօեկդնուն էտեւանց գօնգլուտօվադ արաւ Պ. Հասարակըն, Թէ էլին քաղքըցիքն դուս. եւ ուրուխ տեսնու Պ. Հասարակն Թէ կլան սէսիաներ ծախելու նա ծախին այնպիսի գօնտիձիօնօվ, որ ամէն մէկ գնողն սէպն առնու եւ այնպէս գնէ, որ դէրմինին զսդակն ունէնայ վար դնէլու. եւ այս վասն այսօրիկ զէրայ ըսդակն Թէզօվ պէտք է: Եւ գիտացվի որ տըվեցաւ դէրմին, վիճարքի մէկ ամիս, որ ամսեն վերայ ունէնայ ամէն մէկ գնօղն զսդակն Պ. քաղքին Եքզաքդօրիան կամ ուրուխ տիշըօնօվադ անէր Պ. Հասարակըն անպատճառ համպրելու. զէրայ Թէ օր մէկնիօրն ուզէնար զխօսքն ետ դարձընէլու եւ զգնած իւրԹըն չի կամենար առնելու կամ զսդակն դէրմինին չուզենար կամ չի կամենար վիճարելու նայ, ասոր առաջի հաստատուԹեանը գօրայ ունենայ զգնած տեղին սումային գվարդալիդաշն անպատճառ Պ. Քաղքին վար դնելու. եւ այսպէս աբսօլվալուիդ պիլայ եւ պի մնայ իւրԹըն այլվի Պ. քաղքին. որ բանըն գօնֆիրմօվադ եղաւ Պ.

Մակխդրադէն եւ Պ. Սուդային դիմացէն եւ կամաւն: Եւ այսպէս քաղքի ծառային աղդօղ Պ. Աղաչայ. Պիրօվին հրամանաւն իմաց արվեցաւ ընդրէք քաղքին մէջ թէ ում պէտք է տան տեղ, նայ ելէ դուս ուրուխ օր Պ. մակխդրադըն եւ Պատուելի Սուդան գտվէր քաղված, զէ կու ծախվին իւրթեր լիձիդաձիայով. այսինքն ով որ ալ շատ խոստանայ նայ նարանը պիլայ իւրթը:„

## 18.

Երդ՝ Քաղաքային վերատեսչութեան վերոյիշեալ որոշման համեմատ՝ պաշտօնատարք ու հարիւրոց ժողովոյն անդամները, 1761 Դեկտ. 16ին քաղքին շրկաջայքն այն տեղերը գացին, ուր ծախուելու երկիրներ կային: — Նպատակնին էր, ինչպէս արդէն գիտենք, մէկ կողմանէ. այն՝ որ այսու քաղաքն ընդարձակի ու գեղեցկանայ նորանոր փողոցներով ու շէնքերով. բայց մէկալ կողմանէ ու գլխաւորաբար այն՝ որ հասարակութիւնը 4000 ոսկին, կամ 20.000 ֆիօրինն, այս ճամբով կարենայ ձեռք բերել:

Ուստի նախ եւ յառաջ ժողովեցան քաղքին ամէնէն արեւմտեան կողմն եղած դաշտը եւ հոն նոր բսուած փողոցին եսեւի դին նոր ճամբայ մը ձեւեցին ու անունը դրին Դաշտի — հիմակ Ռափայէլեան[1] — փողոց: Ճշդիւ որո-

[1] Ի պատիւ Ռափայէլ Ղարամեանի, որ 1842ին, քաղքին 15.000 աւստրիական ֆիօրինի հիմնարկութիւն մը դրած էր, ուղղափառ վարժոցի մը համար: Այս փողոցին մէջ ըլլալով՝ իրմէն հիմնուած վարժարանին շէնքը, 1890 Նոյեմբերի որոշմամբ, փողոցը կոչուեցաւ Ռափայելեան փողոց:

շուեցաւ նաեւ որ փողոցն ուստի սկըսի եւ ուր լմըննայ։ Սկիզբը պիտի ըլլար Լուսիկ Ոսկերիչեանցի պարտէզին ծայրն եղած ճամբուն դէպ ի Թումբ նայող գերանը։ Այսինքն՝ Թէոդորոս Ոսկերիչեանի Թումբին դին եղած ծայրի գերանէն դէպ ի երկայնութիւն պիտի չափուէր 36 ձողաչափ տեղ։ Ասկից դէպ ի վեր, կամ դէպ ի Գիւգիւլլէօ գէտ, պիտի առնուէր 21 ձողաչափ՝ իբրեւ լայնութիւն։ Աս տեղէն նորէն չափուէր պիտի դէպ ի Նոր փողոց, 28 ձողաչափ. եւ այս պիտի ըլլար Նոր բաժնին սահմանը։ Հոս տեղ՝ քսանութը ձողաչափ անոր համար առնուեցաւ որ ութը ձողաչափը փողոցին համար տեղ մնայ։

Աս տարածութեամբ ծախուելիք երկիրներէն բաժին մը գնեց Լուսիկ Ոսկերիչեան 180 ոսկւով կամ 900 ֆիօրինով. քովը՝ Մանուկ Վարդիկեանց՝ նոյնչափ երկիր 102 ոսկւով կամ 510 ֆիօրինով։ Ասկից անդին՝ Գրիգոր ու Եագուպաշ Սնգովիչեանց 420 ֆիօրինով. ետքէն Գրիգոր Ագոնց ու Անտոն Խիգուցեան. եւ վերջապէս Խնկանոս Հոնգոյեան։

Աս տեղէն դէպ ի Լուսիկ Ոսկերիչեանցի նոր գնած երկիրը դառնալով՝ թողուեցաւ 12 ձողաչափ տեղ փողոցի. ու նմանապէս Վիգոլեանի երկրին սահմանէն մինչեւ Մարտիրոս Բաղրուպանեանի նոր գնած տեղը՝ ութը ձողաչափ, ուրիշ նոր փողոցի մը համար, որ կոչուեցաւ կամրջի — հիմակ Ուղտեան կամ Գամէլլէր — փողոց։ Ասկից սկսելով՝ բաժինները պիտի ընթանային դէպ ի Գիւգիւլլէօ գետը։

Հոս տեղի երկիրներուն մեծութիւնը պիտի ըլլար 12 ձողաչափ լայն ու 40 ձողաչափ երկայն։ Այս տեղուանքն եղած երկիրները գնեցին. Նախ Մարտիրոս Բադրուպանեան. ու տուաւ 150 ոսկի կամ 750 ռենոսական ֆիօրին։ Իրեն կից, Խնկանոս Ամիրայի, գնեց նոյնչափ երկիր 125 ոսկւով կամ 615 ֆիօրինով. ասոր քով՝ Լուսիկ Պօղոսի. Վարդան Խօսեանց. ու ասկից անդին երեք կտոր երկիր քովէ քով. Լուսիկ Ամիրայեանց 830 ֆիօրինով։

Ասանկով, ինչպէս կրնանք տեսնել, մէկ ամբողջ թաղ մը գնեցին քաղքին առաջին կարգի աղաներն. ու անոր վրայ տներ կանգնելով շինեցին լայն փողոց մը՝ կանոնաւորեալ տներով ու ետեւնին բաւական ընդարձակ պարտէզներով։ Ամբողջը հաշուելով՝ ընդունեցաւ քաղաքային վարչութիւնը 14 կտոր երկրին համար 759 կտոր ոսկի, կամ 3645 ռենոսական ֆիօրին։

Կը դնեմ հոս երկիր բաժնելուն, փողոց կտրելուն եւ տեղ գնելուն արձանագրութիւնն, այնպէս ինչպէս որ տարեգրին մէջ անցուած է. ու որն որ, ինչպէս ընթերցողին առջեւ յայտնի է՝ վերջին ժողովոյն շարունակութիւնը կամ գործադրութիւնն է։

"Աստուծոյ ողորմութեամբն Նախ եւ առաջ գնացինք Նոր օրմին[1] էտեւի դաշտն եւ ձվեցինք մէկ օրամն, անունը դաշտին օրամն. սկսեալ Ա. լուսիկին ոսգերիչեանց պաղչին

[1] Օրամ. Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը կը նշանակէ՝ ճամբայ, փողոց։

փունտի օրմին դիւ շօշէն[1] 36 խուլած, մինչեւ ի Աղաչայ Գօտէրաշին ոսգերիչեանց շանցին[2] դիւն պաղչին փունտի[3] շօշն. կամ ուրուխ օր ցըցնուր 36 խուլաճն։ Եւ աագից, այսինքն պաղչին փունտէն, դէմ ի օրամն, դէպ ի դընավան պի չափվի 21 խուլած լանքը։ Եւ այս մէդայէս[4] պի չափվի այլվի դէրիվեր, այսինքն դէպ ի օրամն, որ նոր օրմէն կերթայ դէպ ի դաշդն 28 խուլած։ Եւ ուրուխ օր ցույնու դիմացէն 28 խուլած նայ, զան պիլայ մէդան այս սէսիային։[5] Ջէրայ դիմացէն 8 խուլճով ալ կարճ պիլայ քանց էտեւէն. վասն օրմին, որ ալ մեծ ըշպաձիում[6] ունէնայ այս մնացած օրմի սէպի վրայի Սէկէլէդօմն։[7] Եւ այսպէս ըսգըսվեցաւ ծախելու։

1ma Աղաչայ լուսիկ Ակոբշայի ոսգերիչեանց, զվերոյ գրեալ սէսիան գնեց, վերոյգրեալ գօնտիձիայոմն. գինը ին սումայ, ոսգի 180—900.—

2do Մանուկ վարդիկեանց պի չափվի Ա. Գօտէրաշէն, շանցի դիհու փունտի շօշէն, դէպ ի շանցը 36 խուլած, թէ դիմացէն ու թէ էտեւէն. եւ լանքն 21 խուլած. այլվի երեք պաղչի փունտ. գինը, ոսգի 102 510.—

3tia Ա. Մնկ. գրիգորի, հետ Ա. Եագու-

---

[1] Sas, հունգ. բառ է, կը նշանակէ՝ գերան։
[2] Գերմ. ու հունգ. է. կը նշանակէ՝ թումբ, խրամ։
[3] Fundus լատ. է. յատակ, երկիր, գետին կը նշանակէ։
[4] Լատ. է. սահման, սահմանաքար կը նշանակէ։
[5] Sessia. լատ. է. տեղ, բաժին։
[6] Spatium. պարապ տեղ. միջոց։
[7] Szegelet. անկիւն. ծայր. հունգարերէն է։

պաշին Մնգօվլիչեանց. այլվի վերոյգրեալ չա-փօմն. գինը, ոսկի 84. 420.—

4^to Գրիգոր Սհակի ադոնց, վերոյգրեալ չափօմն. ոսկի 76 380.—

5^to Ա. Անդօն Նիգօշի Խիգուցենց վերո-գրեալ չափօմն. ոսկի 56 280.—

6^to Ա. Խնկանոս Հանգօյի սկսեալ Ա. անդօնին խիգուցենց ուրթէն պի չափվի դէր վար. այսինքն դէպ ի շանցն 24 խուլաճ, թէ դիմացէն եւ թէ ետեւէն. եւ լանքն այլվի 21 խուլաճ, այսինքն երկու պաղչի փուռա. գինը 40 ոսկի. 200.—

Աստուծով կու դարնանք այլվի դէրիվեր ու կու չափվի Ա. լուսիկին ոսգերիչեանց նոր գնած օրմէն դիհու մէդայէն, դէպ ի դրնավան կամ դէպ ի Ա. ասվատրին վիգօլեանց սէսիան, 12 խուլաճ: Եւ այս կու մինայ օրամ. այսինքն որ դիմացի դիմաց գան տներն: Նմանապէս կու չափ-վի Ա. ասվատրին վիգօլեանց սէսիային շանցին դիհու փաջէդայէն[1], մինչեւ Աղաչայ Մարտիրոս բադրուպանեանց նոր գնած ուրթն 8 խուլաճ: Եւ այս պի մինայ օրամն. որ պի երթայ դէպ ի դրնավան:[2] Եւ այս մէդայէս պի սկսվին սէսիա-ներն քօվխս քօվ. ու պի երթայ մինչեւ ի շանցն: Որ սէսիանուն լանքն պիլայ 12 խուլաճ եւ էր-կանքն, այսինքն դէպի դրնավան, պիլայ 40

[1] Անտարակոյս լատ. facies: կերպարանք երես, ճակատ բառէն առնուած պիտ'որ ըլլայ:

[2] Դրնավա բառը Գիւգիւլէօ գետին վալաքերէն անուանակոչութիւնն է:

*խուլաճ. զորոնք այս ալ վար գրած աղաչաններն գնեցին. այսինքն:*

1ma *Աղաչայ Մարտիրոս բադրուպանին, 12 խուլաճ լանքը. եւ 40 խուլաճ երկանքն. գինը* 150 *ոսկի.* 750.—

2do *Այլվի Աղաչայ Մարտիրոս բադրուպանին. գինը* 123 *ոսկի.* 615.—

3tio *Աղաչայ խնկանոս Ամիրայի. գինը* 108 *ոսկի.* 540.—

4to *Ա. Լուսիկ պողոսի, խաչատուրն խաչիկի* 102. 510.—

5to *Ա. Վարդան լուսիկի խօսեանց* 80 *ոսկի.* 400.—

6to *Ա. լուսիկ Ամիրայի* 62 310.—

7mo *Այլվի Ա. լուսիկ ամիրայի* 58 290.—

8vo *Այլվէ լուսիկ ամիրայի* 46 230.—„

*Երկրորդ օրն — այսինքն Դեկտ. 17ին — քաղաքային վարչութիւնը նորէն դուրս ելաւ երկիր ծախելու: Բայց հիմակ չէ թէ քաղքին արեւմտեան՝ այլ հիւսիսային կողմը: — Հոս էր Եղիսաբեթուպոլսոյ ամենէն բարձր եւ ըստ հետեւորդի ամենէն ընտիր տեղը:*

*Ուստի սահմանուեցաւ, որ Աստուածատուր Վիգօլեանի եւ Միքայէլ Խսիգուցեանի — այս՝ինքն այսօրուան Աբաֆի փողոցէն անդին — երկիրներուն մէջ եղած Թումբի անդիի կողմը երկիրները չափուելու սկսին, դէպ ի հունգարացւոց եկեղեցւոյն շրջափակը: — Այս տեղուանքն սկսան չափելու, նախ դէպ ի հիւսիս — ուր էր ժողովրդեան շրջագայութեան տեղը — քսան*

քան ձողաչափ լայն ու իւր 36 ձողաչափ — կամ աւելի ճիշդ՝ 35 ձող. եւ $4\frac{1}{2}$ ոտք — երկայն երկրի կտորներ։

Այս՝ 20×35, այսինքն 700 քառ. ձողաչափ տարածութեամբ կտրուած հողաբաժնին մէկը գնեց Գրիգոր Մեղտեսոնց ու տուաւ քաղաքին 320 կտոր ոսկի կամ 1600 ֆիորին. իսկ մէկալը՝ Պետրոս Հանգօյեան ու վճարեց 351 ոսկի կամ 1755 ֆիորին։ — Աս երկու երկիրներուն առջեւի — կամ թէ ըսենք հարաւային կողմի — պարապ միջոցին մէջ կանգնուեցաւ ետքէն 1792ին այսօրուան հոյակապ մայր եկեղեցին։

Վերոյգրեալ երկիրներուն անդին, աւելի դէպ ի հիւսիս՝ թողուեցաւ փողոցիկի մը համար, երեք ձողաչափ լայն միջոց մը հունգարացւոց ժամն երթալու. եւ սահմանուեցաւ, որ փողոցիկին մէկալ կողմի բաժիններուն ամէն մէկուն տարածութիւնն ըլլայ 10 ձողաչափ լայն ու 34 ձողաչափ երկայն։ Այս բաժիններուն ծայրն եւ այսօրուան Սէնդ Իվան փողոցին՝ դէպ ի ժամ նայող տեղը քաղքին մնաց։ Աս՝ հունգարացւոց եկեղեցւոյն քովի փողոցին կամ կռնըկին, դէպ ի պտըտելու տեղն եղած երկիրները, ծախու հանուելով՝ բաժին մը գնեց Խնկանոս Հանգօյ եւ տուաւ $302\frac{1}{5}$ կտոր ոսկի կամ 1511 ֆիորին, ուրիշ մը՝ Խնկանոս Ամիրայ 222 ոսկւով կամ 1110 ֆիորինով։ Ասոր քով Ակոբշայ Ագոնց, 1200 ֆիորինով. եւ վերջինը Անտոն Խսիգուցեանց 1206 ֆիորինով։

Այս տեղէն դէպ ի դղեակ դառնալով՝ եղած երկիրները չորս հաւասար բաժնի կտրուեցան։ Եւ բերդին կից, դէպ ի հիւսիս, հունգարացւոց ժամն երթալու փողոցին ըստ ամենայնի դիմացը, նոյն ուղղութեամբ եւ նոյն չափով — այսինքն երեք ձողաչափ լայնութեամբ — նոր փողոցիկ մը կտրուեցաւ, արեւելքէն դէպ ի արեւմուտք։ Այս ըսուած երկիրները 10 ձողաչափ լայնութիւն ու 32 ձողաչափ — դէպ ի Գիւգիւլլէօ նայող — երկայնութիւն պիտ'որ ունենային։ Երկու մեծ երկրաբաժնին մէջ տեղը կտրուած փողոցին վերին մասը 12, իսկ մէջ տեղը 13 ձողաչափ լայնութիւն ունենալու էր։

Այս նորաշէն փոքրիկ թաղին մէջի երկիրները գնեցին կարգաւ, նախ՝ Մանուկ Գրիգորի, բերդին քով՝ փողոցիկին կից, դէպ ի հիւսիս, 10 ձող. լայն ու 32 ձող. երկայն կտոր մը, 151 ոսկւով կամ 755 ֆիորինով։ Քովը՝ Լուսիկ Պօղոսեան, նոյնչափ երկիր $170\,^1/_5$ կտոր ոսկւով կամ 851 ֆիորինով. քիչ մ'անդին Լուսիկ Վարդերեսի 761 ֆիորինով. եւ ասոր կից Յովհ. Իսայի 8 ձողաչափ լայն եւ 32 ձողաչափ երկայն կտոր մը, վրան աւելցնելով՝ հոն գտնուած փոքրիկ կտորը՝ վերոյգրեալ երկիրներուն գնահատութեամբն. ու վճարեց ընդ ամէնը 144 ոսկի կամ 700 ֆիօրին։

Այս չորս բաժնին ետեւի դին, ուրիշ կտոր մը երկիր ալ չափուեցաւ ու կտրուեցաւ, բերդին մեծ դրան դիմացի կողմերը։ Ասոր լայնութիւնն էր 12 ձողաչափ՝ իսկ երկայնութիւնը կը

հասնէր մինչեւ բերդին ծայրը։ Այս երկիրը գնեց Թորոս Ունանեան, Մխիթարեան Հարց համար տալով քաղքին 125½ ոսկի կամ 627 ֆիորին։

Տեսնենք այս եղածներն՝ ըստ տարեգրին։

«Աստուծոյ ողորմութեամբն. 1761 դեկտ. 17 ին. գնացինք Ս. ասվադրին Վիգօլեանց եւ Ս. Միքայէլին Վարդանի Խսիգուցեանց միջորէ շանցին անքովի ճոթը. այսինքն դէպ ի շուրին[1] դիհունը. եւ ծախեցինք Ս. Միքայէլին պաղչին էտեւ. որ չափվի Ս. միքայէլին պաղչին ֆունտի շանցին դիհու շօշէն, մինչեւ ի մաճրի ժամին ասպրի[2] չաթանը.[3] եւ չաթնին քօվոմն դէպ ի շուրանոցն պի չափվի 20 խուլաճ. եւ ասգից պի չափվի դէպ ի շանցն 35 խուլաճ ու 4½ շուխ։[4] Եւ ասգից պի երթայ լինեայ,[5] այլվի դէպ ի Միքայէլին շանցին դիհու պաղչին ֆնտի շօշն։ Լանութիւնը 20 խուլաճ։ Եւ զայս պիլայ երկու իւրթ. զոր իւրթերն գնեցին.

$1^{ma}$ Աղաչայ. գրիգոր Մեղտեսոնց. Ս. միքայէլին դիէն 320 ոսգի. 1600.—

$2^{do}$ Աղաչայ Պետրոս Հանգչյի. քօմն. 351 ոսգի. 1755.—

Գիտացվի օր հօս կու մնայ հուտիցայ[6], 3

---

[1] Շուր կամ շուրանոց, անտարակոյս՝ ժուռ գալու, պտըտելու տեղ կը նշանակէ։

[2] Ասպար. Դրանսիլուանիացւոց բարբառովը՝ բակ, գաւիթ կը նշանակէ։

[3] Ցանկ, ցանկապատ՝ կը նշանակէ։

[4] Գերմաներէն է, կը նշանակէ՝ ոտք, ոտնաչափ։

[5] Գիծ. ուղղութիւն։

[6] Պզտիկ փողոց. փողոցիկ։

խուլճէն, ուսգից օր ժամ երթըլլի. եւ Հուտիցին քով իւրթերն պիլան լանքն դէպ ի շուրան 10 խուլաճ ու երկանքն 34 խուլաճ: Եւ գիտացվի որ այս սէսիանուն ֆունտը եւ սէնդիվանին օրմին ժամի դիհու կալքին ֆունտն, մնաց քաղքի տեղ, ին ձիրգայ[1] 7 խուլաճ լանքն. եւ էրկանքն կերթայ դէպ ի շուրանոցն: Եւ այսպէս սկսեցինք ծախելու Ա. պետրոսին Հանգօյի գնած սէսիային Հուտիձին քով դէպ ի շուրանոցն այսինքն գօրնը:[2]

$3^{tio}$ Աղաչայ խնկանոս Հանգօյի 10 խուլաճ լանքն եւ 34 խուլաճ երկանք. գինը $302\frac{1}{5}$ ոսգի. 1511.—

$4^{to}$ Աղաչայ. խնկանոս Ամիրայի, վերոգրեալ չափովն. 222. 1110.—

$5^{to}$ Աղաչայ Ակոբշայ Սհակի Ագոնց, այն չափովն 240. 1200.—

$6^{to}$ Աղաչայ Անտոն Նիգօշի Իսիգուցենց, այն չափովն $241\frac{1}{5}$. 1206.—

Հօս կու մնայ օրամ, օր կու անցնի շիտակ սէնդիվանին օրամն գրչմային քովօվն, քաղքին դիհէն: Եւ ասգից այլվի կու դարնանք դէպ ի բերդն եւ կու ծախինք չորս սէսիայ այսինքն բէրդին դիհէն դէպ ի շուրանոցն: Բայց նախ եւ առաջ թողինք բերդին դարուն եւ Ա. մնուկին գրիգորեանց իւրթին միջորէ մէկ հուտիձամն, լանութիւնը 3 խուլաճ: Աս հուտիձին բօրդիվան,[3]

---

[1] Լատիներէն է, կը նշանակէ՝ իբր, գրեթէ:

[2] Գաղղիերէն corne բառն է, եղջիւր, մահիկ՝ կը նշանակէ. այսինքն երկու ճամբուն իրարու հանդիպած տեղը, ծայրը:

[3] Այսպէս գրուած է. դուցէ մուտք, ընթացք կը նշանակէ:

[redacted]



դէպ ի ժամն կու երթայ։ Եւ ապա չափվեցան սէսիանէրն. որոնց լանքը պիլայ 10 խուլաճ եւ էրկանքն դէպ ի դընավան 32 խուլաճ։ Եւ օրմին լանքն օր կու երթայ դէպ ի շուրան այսինքն Ա. խնկանոսնուն դիմաց եւ Ա. մնակին դիմաց պիլայ 12 խուլաճ. բայց վարի դիհէն այսինքն շուրին դիհէն Ա. անդօնին իսիգուցենց եւ Ա. օհանին իսիգուց միչորէ պիլայ օրմին լանքն 13 խուլաճ։

1ma Աղաչայ Մանուկ գրիգորի. հուտիցին քով, 10 խուլաճ լանքը եւ 32 խուլճ. երկանքը. գինը 151 ոսգի 755.—

2do Ա. լուսիկ պողոսի. վերոյ գրեալ չափովն. 170 1/5. 851.—

3tia Ա. լուսիկ Վարդէրեսի նմանապէս. 152 1/5. 761.—

4to Ա. Օհան իսայի. 8 խուլաճ լանքը եւ 32 երկան, գօրնը, օրմին քօվ. եւ պատշաճ ասոր քով տրվեցաւ . . . .[1] խուլաճ. վերոյ գծին գինոչը բրօբօրձիով 140 ոսգի. 700.—

Նմանապէս այս իւրթերուն ետեւ, այսինքն Ա. մանուկինը գրիգօրենց ծախէցինք մէկ իւրթ մը, որ չափվի բէրդին բօրդիձին դէպ ի շլարին տունը, շիտակ հետ ուրվէնիքին, 12 խուլաճ լանքըն եւ երկանքն պի քաշվի լինեայ մինչեւ ի պաշդային 3 ում գօրնը։ Եւ ինչ օր մնար այս լէնիայէս մինչեւ բերդին չիդն, այն պիլայ սէսիային մէծութինը։ Բայց բօրդիցին դիմաց եւ այս իւրթին դիմաց պի չափվի քօվը, չիայէն, մինչեւ

---

[1] Զողաչափն անցուած չէ արձանագրութեան մէջ։ Բայց պարապ միջոցը կեցած է։

այս իւրթիս փաչէդան $3^{1}/_{2}$ խուլաճ. եւ այս պի ճնայ օրամ։ Որ սէսիան գնեց

5^to Աղաչայ Թորոս ունանի, Ա. ըսԹեփանին. մխիԹարեանց սէպին վրայ. գինը $125^{1}/_{2}$ ոսկի. 627.50։„

Ասանկով, ինչպէս կը տեսնենք, Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնը քաղքին հիւսիսային ու արեւմտեան կողմերը ծախած այլեւայլ մեծութիւն ունեցող երկիրներուն համար, որոնց միջոցաւ քանի մը բոլորովին լայն ու շիտակ փողոցներ կանգնուեցան ու անոնց վրայ լաւ տներ ու պարտէզներ շինուեցան, ընդունեցաւ ընդամէնը 3681 կտոր ոսկի կամ 18.411 ռենոսական ֆիորին։

Այս դրամոց գումարն անտարակոյս անմիջապէս, ինչպէս որ նախնապէս սահմանուած էր, իր որոշեալ տեղը հասուցած պիտի ըլլայ քաղաքային վարչութիւնը։ Հարկ է որ աս այսպէս ենթադրենք. որովհետեւ չունինք ձեռուընիս ասոր վրայօք արձանագրութիւն մը՝ գոնէ մինչեւ հիմակ։ Անշուշտ աս ալ ուրիշ շատերուն հետ կորսուած, անհետացած պիտ'որ ըլլայ։

## 19

Քաղքին՝ այլեւայլ տեղեացը կտրուելուն եւ երկիրներուն բաշխուելուն ու ծախուելուն վրայ ըլլալով խօսքը, հարկ է որ այս առթիւ երկու տարի յառաջ — 1759ին — աճրդի հանուած մէկ երկու երկիրներն ալ մեր պատմութեանը մէջ հիւսենք։

Անտարակոյս կը յիշեն ընթերցողները, թէ քաղաքային վարչութիւնն աբաֆիեան երկիները գնելուն, ինչպէս նաեւ յիշեալ կալուածատէրութեան քաղքին անցուելուն ընդդիմադարձութեան պատճառաւը՝ դրամոց մեծկակ գումար մը իր քաղաքացիներէն փոխ առած էր, այնու պայմանաւ որ անոնց շահը — հարիւրին վեց — տարուէ տարի պիտի վճարէ, մինչեւ որ դրամագլուխը հատուցանելու ի վիճակի ըլլայ։

Արդ՝ որպէս զի այս պարտքէն քիչ մը թեթեւնայ, ամէն բանէն յառաջ, քաղքին կենդրոնին մէջ, քանի մը կտոր առաջին կարգի տեղ ծախու հանել ուզեց, որպէս զի քաղաքացիք՝ հոն տներ, խանութներ շինեն եւ այլն։

Յիշեալ տեղերը՝ յաջորդ պայմաններով պիտի ծախուէին. 1. Երկրի պէտք ունեցողը գնելի երկրին գումարին կէսը՝ չորս ամսուան միջոցին մէջ — այսինքն 1759 Աւգ. 15ին — պիտի վճարէր. իսկ մնացած մէկալ կէսը՝ Դեկտ. 15ին։ — 2. Ամէն մէկ գնողը՝ քաղքին հաշուեկալութեան դաշնագիր մը պիտ՚որ տար գնած երկրին գումարին վրայօք։ 3. Որովհետեւ ամէն երկիր աճրդով պիտի ծախուէր, անոր համար՝ աւելի խոստացողին պիտի ըլլար ծախուելի երկիրը։ 4. Թէ որ գնող մը ըրածին վրայ զղջալով՝ այնպէս համարէր թէ թանկ գնած է երկիրն եւ կամ ուրիշ պատճառ մը գտնելով՝ գնած երկիրն առնուլ չուզէր ու ստակը չվճարէր, այն գնած տեղւոյն կամ կրպակին եւ կամ կալուածին գնոյն գումարին քառորդ մասը — զոր

յառաջուընէ իբրեւ գրաւական վարչութեան մատուցած էր — պիտի կորսնցընէր։ Այսու՝ թէպէտ պիտի ազատէր տեղւոյն ամբողջ գինը հատուցանելէն, սակայն տեղն — ինչպէս ինք իրմէն կը հասկըցուի — քաղքին պիտի մնար։

Ասոնք էին քաղաքային վարչութեան որոշմունքները՝ յառաջ քան երկիրներն աճրդի հանելը. որուն ամէնքը հաւանեցան։

Աս երկիրներէն՝ վերը հաստատուած պայմաններով՝ գնեց նախ Յովհ. Տէր Յակոբեան. իր կալուածին ետեւի դին գտնուած թումբը, որ ամրոցին փակին կողմն եղած խրամէն մինչեւ իւր ցանցապատնէշը կը տարածուէր։ Նոյնպէս գնեց Վարդան Եօլպէյ իր պարտէզին ետի դին 17 ձողաչափ երկայն ու 4 ձողաչափ լայն տեղ մը 100 ոսկւով։ — Աստուածատուր Վիգօլեան՝ գնեց, քաղքին խորհուրդ ընելու տեղուանքը երկիր մը, 4400 հունգ. Ֆիորինով։ Արձանագրութեան մէջ այս երկրին որպիսութիւնն ու սահմանը ճշդիւ կընշանակուին։ Նոյնպէս՝ ամենաճիշդ կերպով կը ստորագրուի կեցած տեղը, դրացիները, տարածութիւնն եւ այլն։ Վիգօլեան՝ քաղաքային հաշուեկալութեան պարտագիր մը պիտ՚որ տար այս երկրին գնման գնոյն վրայօք. որուն համեմատ կը խոստանար որոշուած ժամանակին, այսինքն Աւգ. 15, եւ Դեկտ. 25ին 4400 Ֆիորինը վար դնելու։ Ի դիպուածի որ տակը չկարենար հատուցանել, այն ատեն գումարին շահը պիտի վճարէր, մինչեւ որ ամբողջ գլուխը հատուցանէր։ Ապահովութեան համար

տները՝ քաղքին վրայ գրուեցան, մինչեւ որ վերոյիշեալ գումարին կէսը վճարուի։

Այս կերպով ծախեց քաղաքային վարչութիւնը Եղիսաբեթուպոլսոյ կեդրոնը — քաղքին մեծ հրապարակն — եղած արեւելեան շուկային կրպակներն ալ։ Ասոնք աճրդի հանելէն յառաջ սահմանեց, որ տեղը հաւասարապէս պիտի բաժնուի. ու ըլլայ ամէն մէկ խանթի երկայնութիւնն, ինչպէս նաեւ լայնութիւնը՝ երեքական ձողաչափ։ Խանութներուն բոլորտիքն եղած երկու գլխաւոր ճակտի գաւիթներուն լայնութիւնը պիտի ըլլար՝ մէկուկէս ձողաչափ. իսկ մէկալ, կողմնակի ճակտի երկու գաւիթները՝ հինգ հինգ ոտնաչափ։ — Այս գաւիթները պիտի միայն ցմիշտ քաղքին ստացուածքը. ուր որ քաղաքաբաշխութիւնը՝ հաց եւ ուրիշ բան պիտի կարենար ծախել։ Կրպակներուն տէրերը՝ գաւիթներուն մէջ ամենեւին բան մը պահելու հրաման չունէին։ Ասոնց մէջ ոչ արկղ, ոչ տակառ եւ ոչ ուրիշ բան երկայն ատեն կրնար մնալ. ի բաց առեալ այն դիպուածն, երբ հարկ ըլլար, որ ապրանք վար տարուի կամ վեր բերուի։ Ուստի անոնք միշտ պարապ պիտի կենային։ Կրպակներուն տէրերը՝ գաւիթներուն սիւներուն խոյակներէն, խանութին որմին մէջ՝ երկաթի հաստատուն ձողեր պիտի անցընէին, որպէս զի քաղաքն ըստ կամի կարենայ հոն կրակի ճանկերն ու սանդուղները պահել։ Թէպէտ ամէն ծախք շէնքին վրայ խանութին տէրերը պիտի ընէին, այսու ամենայնիւ գաւիթներուն տրամադրու-

թիւնը քաղքինն էր։ Մեծ՝ ինչպէս նաեւ շաբաթական տօնավաճառներու ատեն, մանաւանդ երբ անձրեւ կամ ձիւն գար, քաղքին խաղախորդներն ու մաշկեգործները հոն — գաւիթներուն մէջ — պիտի կարենային իրենց ապրանքը զետեղել ու ծախել. բայց այնպիսի կերպով որ կրպակներուն դռներն ազատ մնան. եւ գնողները համարձակ կարենան խանութները մտել ելլել։ — Մեծ շէնքին վերնայարկն ու գինետունները՝ գնողներուն կարգադրութեան տակ ձգուեցան. բայց այնու պայմանաւ թէ ի դիպուածի որ խանութներուն տէրերը շէնքին վրայ դստիկոն բարձրացընել ուզէին, քաղաքաբաշխութիւնը՝ հոն ձայն պիտի ունենար։ Որովհետեւ արդէն խօսք կար, կ՚ըսէ տարեգիրը, թէ անոնց վրայ տներ բարձրացընեն, սակայն քաղաքն այն միջոցին այս բանիս հրաման չտուաւ, “վասն մասնաւոր պատճառի։„

Մեծ հրապարակին մէջ տեղը կանգնուած շուկային վեց կրպակներուն տեղերը, դիրքն ու տարածութիւնը մանրամասնաբար նշանակուելէն զատ՝ կը յիշուի նաեւ թէ ամէն մէկ խանութն, ո՛վ եւ որչափո՛վ գնած է։ — Ահա ասոնց նկատմամբ ձեռուընիս եղած արձանագրութիւնները։

“Աստուծոյ ողորմութեամբն 1759 Ապրիլի 19, Ելիզաբէդան։

Պատճառ գրոյս այս է, ինչպէս որ վերոյգրեալ տաղումին ութվեցաւ Պաուելի Հասա-

րակին, որ ծախէ իւրթեր պօլդերու[1] տեղրանք, պազարին եւ օզկայ ֆունտուշներ. որովհետեւ որ զօր պիտվականութիւն ունի Պատվելի Քաղաքըն ըսդկի, որ քիչմն թեթեւնայ պարտգէն։ Վասն որոյ, այս գօնտիձիօնօմն ծախվեցաւ այսինքն դէրմինը վիճարքինը պիլայ, որ զկէսն ունէնայ վիճարելու գնօղն, այս գալ Աստուածածնայ վերափոխման, այսինքն օգօստոսի 15ին եւ զմնացած կէս գալ ծննդեանը։ Եւ այս վերոյ գրեալ գօնտիձիօնօմն ունէնայ ամէն մէկ գնօղն Պատւելի Քաղքին Էգզագդօրիային գօնդրագդ տալու։ Եւ գիտացվի, օր ինչ ալ ծախվի նայ, լիձիդաձիաեօվ[2] կու ծախվի. անոր սէպն վօվ ալ շատ տայ նայ, նայ է տեղին աղաչան։ Բայց գիտելի է, որ ասոր էտեւանց թէ որ մէկնիոր գնօղին չի ութվէր գնածն եւ սէպէր թէ թանկ է, կամ օզկայ պատճառ դնէր ու անոր համար ետ քաշվէր գնածէն եւ չուզէնար առնելու, նայ վօլնի պիլայ[3], միայն այս գօնտիձիօնօմն, որ ինչխտարի տեղ որ գնիլէ Պ. քաղքէն, զայն իւրթն կամ պօլդի տեղն կամ ոզկայ բան, ինչ որ ֆունտուշ կը ժիշվի, ունէնայ նախ եւ առաջ զգնածին գվարդալիդաշն, այսինքն $2^1/_4$ ն. այն ըսդկինը վար դնէլու. եւ այնպէս այն իւրթն կամ տեղն պի մնայ Պ. Քաղքին. եւ գնօղն դնէլով զգվարդալիդաշն, աբսօլվալուիդ պիլայ. եւ պի մնայ տեղն Պ. Քաղքին. զէրայ առաջ քանց զլիձիդաձիայ

[1] Bolt հունգարերէն բառը՝ խանութ, կրպակ կը նշանակէ։

[2] Licitation. աճուրդ, թմբկով ծախել։

[3] Այսինքն՝ ազատ պիտ'որ ըլլայ։

անելն, այսպէս գօնգլուտովադ եղաւ Պ. Հասարակէն. եւ ամենեւքեանքն կամաւորեցան:

$1^{mo}$ Աղաչայ օհան տէր Ակոբի, արաւ զիրեն հրամանոցն ազպրին եռգի շանցն, որ չափվի բերդին ազպրին դիհու շանցին պատին մէջտեղէն 11 խուլաճ երկանքն. մինչեւ ի չաթանը, որ միջորէ կու գովի, հետ Ա. Վարդանին. եւ լանքն մինչեւ ի բերդին պատն. գինը ին սումայ, 60 ոսգի, այսինքն վաթսուն:

$2^{do}$ Աղաչայ Վարդան եօլպէյի այլվի արաւ զիրեն հրամանոցն ազպրին եռգի շանցն, որ չափվի Ա. Օհանին եւ Ա. Վարդանին միջորէ եղեալ մէդայէն, մինչեւ այն չորս խուլաճն, որն որ տուած է շանցէն. դլնաճին տանը ազպար. ին ձիրգայ 17 խուլաճ, գինը ին սումայ 100 ոսգի, այսինքն հարուր:

$3^{tio}$ Աղաչայ Ասվատուր վիգօլեանց, արաւ զդլնաճին տունը. մէկ դիհաց վիձինուշ[1] Աղաչայ վարդան եօլպէյեանց եւ մէկալ դիհաց բերդին շանցը, որ կերթայ դէպ ի հօտվիլակն. որ պի տրվի տանը քով բօրդայի տեղ. շանցին դիհէն շիտակ հետ տանը չիտին[2] պազրի դիհէն 2 խուլաճ եւ 4 շուխ. այսինքն երկու խուլաճ եւ չորս շուխ: Նմանապէս տանը եռգի գօրնէն, այսինքն բերդին դիհունը պի չափվի շանցին չիտին վրայեօշն դէպ ի շանցը, որ կերթայ դէպ ի հօտվիլակ, 2 խուլաճ ու 4 շուխ. այսինքն երկու

---

[1] Vicinus լատ. բառն է, կը նշանակէ՝ մերձաւոր, դրացի:

[2] Անտարակոյս ճէփ բառն է, հոս՝ շտկութիւն, ուղղութիւն կրնայ նշանակել:

*խուլած ու չորս շուխ։ Նւ ասկից տանի լինեայ զչաթանը, բերդին պաշդային[1] գօրնը։ Նմանապէս Աղաչայ Վարդանին եօլպէցեանց դիհէն, տանը գօրնէն պի չափվի դէպ ի Աղաչայ Վարդանին գուհնեան.[2] չորս խուլած ու պի տրվի դլնածին տանը իրեն չիտոմն. եւ ուրուխ տանի չորս խուլաձն նայ, անկից պի երթայ չաթանը, մինչեւ բերդին պատը։ Եւ այսպէս պի ունէնայ դլնածին տանը շանցին մէջ դէպ ի Աղաչայ վարդանը դէր չորս խուլած, որ անով կու երկնայ ասպարն. գինը* H. F. 4400. *այսինքն չորս հազար ու չորս հարուր Մաձրի. որին վրայ ունէնայ գօնդրագդ տալու Պ. քաղքին էգզագդօրիային։ Եւ թէ որ վինձարէր այն դէրմինին օր հասդատիլէ Պ. Քաղաքն, նայ բարի, եւ թէ օր չի վինձարէր նայ ունէնայ այն դէրմինէն սդկին շահ տալու, հարրի վեց, տարին գլօխ. մինչ որ վինձարէ։ Եւ վասն սիկուրանձիայի Պ. Քաղքին պիլան տներն գաւձիօն.[3] մինչեւ որ ֆէլիհ[4] վինձարվի։*

$4^{to}$. *Նմանապէս ծախեց Պ. Քաղաքն այս ալ վար գրած գօնտիձիօներօմն, այսինքն* $1^{ma}$. *Հիօր[5] մէկ պօլդն պիլայ նէսէն, թէ երկանքն եւ թէ լանքն, լուսն* 3 *խուլած, զարդ չիտերն։* $2^{do}$. *Պի ունենան այս պօլդերն կանկ,[6] բոլոր բոլոր-*

---

[1] Անշուշտ Basta գերմ. կամ bástya հունգ. բառը պիտ'որ ըլլայ, որ կը նշանակէ՝ մարտկոց։

[2] Թերեւս konyha, հունգ. բառն է, որ կը նշանակէ խոհանոց։

[3] Երաշխաւորութիւն, ապահովացուցում։

[4] Félig, հունգ. է. կը նշանակէ՝ կիսով չափ, կէսը։

[5] Որեւէ, ամէն մէկ։

[6] Գերմաներէն է, գաւիթ՝ կը նշանակէ։

մաՆ, որ կանկէրուն երկու դիհաց լանութեանը լուս պիլայ 5 շուխ զարդ տօտկըներն.[1] եւ երկու ճակտին կանկերն պիլան լանութիւնը խուլած ու կէս։ Որ երկու կանկն ամէն անգամ քաղքին պիլայ, որ կարենայ մէջվըներն, հաց կամ այլ բան ծախելու. եւ մէկալ կանկերն ալ քաղքինը պիլայ։ $3^{tio}$. Պօլդէրօվ աղաչաներն[2] ամենեվին, ոչ սնտուկ, ոչ դօնա եւ ոչ օղկայ բան երկար ժամանակ կանկերուն մէջ չի բընին. էգսձէբդօյ, ապրանք վար տալուն կամ բարնալուն ժամանակն. եւ օղկայ անգամ չէ։ $4^{to}$. Աս ալ գիտացվի, որ կանկն սէմէլ բրօ սէմբէր[3] մինայ պարապ. որ պօլդերով աղաչաներն, ոչ իքմն չի փրին կամ չի ծախին կանկին մէջ։ $5^{to}$. Ջաս ալ հաստատեց Պ. քաղաքն, որ պօլդէրով աղաչաներն ունենան ամէն մէկ կանկին,՝ մինչեւ ի պօլդէրուն չիտն հաստ երկթներ դնելու խաչմէրկէն. որոնց վրայ կարենայ Պ. Քաղաքն կրակի գըլիկներ[4] կամ ըսգարաներ դնելու։ Եւ գիտաձվի, որ ամենայն խարճն, թէ պօլդէրուն, թէ կանկէրուն եւ թէ երկթնուն, մէկ խօսք մազար ինչ խարճ ըլլար, պօլդէրօվ աղաչանուն պիլայ. ու ամէնը[5] կանկէրուն վրայ Պ. Քաղաքն տիզըօնալուիդ[6] պի անէ։ $6^{to}$ Մեծ շօգօտօճու

---

[1] Ցօտիկ՝ Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւը կը նշանակէ՝ ոտք, կամ լաւ եւս՝ ոտիկ։
[2] Այսինքն՝ խանութներուն տէրերը։
[3] Լատիներէն ծանօթ ասացուած մըն է հայերէն գրերով. ու կը նշանակէ՝ մշտնջենապէս, մի անգամ ընդ միշտ։
[4] Դրանսիլուանիացւոց լեզուաւը կը նշանակէ՝ ճանկ։
[5] Այսու ամենայնիւ, սակայն եւ այնպէս։
[6] Dispono. կարգադրել, տրամադրութիւն ընել։

ժամանակ, այսինքն տարին չորս անգամ, Նաեւ պազըի օրերու, մանաւանդ երբ որ Թաթաւ կամ բուգ ըլլայ, կարենան մեր քաղքըցի սուրուկճիքն եւ Թուկչիքն[1] ծախելու։ Նումայ[2] այնպէս, որ զպօլղէրուն դրվոիքն օբլչիդ կամ ինդուրպալուիդ[3] չի անին. որ կարենան պօլգերով աղաչաներն համարձակ, Նաեւ ոզկայ մուշդէրիք ալ չի կադօլուիդ[4] անին. Հապա կարենան զիրենց արուտուրն քշելու։ Եւ գիտացվի որ պօլղերով աղաչաներն ասոնք են, որն որ հոս կարգաւ կու գրիմ։

1ma Աղաչայ Մարտիրոս գոշողանի. մէկ պօլղ, գօրնը, մէկ դրնօվն դէպ ի վանքն եւ մէկ դրնօվն դէպ ի գաբօնան. գինը H. F. 870։

2do Աղաչայ Անկսէնտ Ա. Մկի. խիգուցենց. մէկ պօլղ, մէկ դրնով, երեսովն դէպ ի վանքն կու նայի. H. F. 870։

3tia Աղաչայ Մանուկ գրիգոր, մէկ պօլղ, երկու դրնով. մէկն կու նայի օրամն դէրիվար եւ մէկն դէպ ի վանքն. 870։

4to Աղաչայ Անտօն ո. Հ. Նիգօշի խիգուցեանց. մէկ պօլղ երկու դրնով. մէկն կու նայի դէպ ի Քաղքին ճոթը եւ մէկն դէպ ի իրեն հրամանոցն տունը. 1070։

5to Աղաչայ Ասվատուր Քէլեանց, մէկ

---

[1] Խաղախորդներն ու մաշկագործները։
[2] Միայն թէ։
[3] Turbo անհանգիստ ընել, վրդովել։ Ասկից՝ իրեն շինած է՝ inturbo բայը։
[4] Gátolni, հունգարերէն է. կը նշանակէ արգելք ըլլալ, արգելք դնել։

*պօլդ. մէկ դրնով. եւ կու նայի դէպի իրեն հրամանոցն տներն.* 790։

6[to] *Աղաչայ Մանուկ դավիդի շիմիլովցոնց. մէկ պօլդ երկու դրնով. մէկն կու նայի դէպ ի Աղաչայ լուսիկենց Թորոսեանց եւ մէկալն դէպի գաբօնան, գինը* 1170։

*Գիտացվի ասալ որ չարտախներումն եւ բաղէրումն*[1] *Պ. Քաղաքն բան չունի, հապա ատուկ իրենց հրամանոցն տիշբօզինձիայլին տակն կու մնայ։ Բայց ժամանակով կամէնային պօլդէրուն վրայ տնէր անէլու նայ, հոն պի կարենայ զուրուցելու. զէրայ հիմիկալ բրօբօնալուիդ արին պօլդէրով ազաչաներն, բայց չի կամեցաւ թողէլու. վասն մասնաւոր պատճառնու, որն հոս հիմի չինք գրիլ։„*

*Այս ժողովքին մէջ որոշուեցաւ ան ալ, որ ընդարձակ բերդին դէպ ի Գիւգիւլլէօ նայող բակը կամ պարտէզը ծախուի։ Ուստի՝ բակը չորս հաւասար մասերու կտրուեցաւ։ Ամէն մէկ բաժնին երկայնութիւնը* 24 *ձողաչափ. իսկ լայնութիւնը՝ առջեւն այսինքն դէպ ի գետ* $10^1/_2$, *իսկ ետեւը — դէպ ի դուռ —* 9 *ձողաչափ պիտի ըլլար։ — Այս բաժիններուն առաջինը գնեց Մելքոն Գասպարեան* 1530 *հունգ. ֆիորինով. քովինը՝ Պետրոս Չիգիեան* 1000. *երրորդը՝ Յովհաննէս Տէր Յակովբի* 900, *իսկ վերջինը՝ Յովհաննէս Սնբէդրեան* 830 *ֆիօրինով։*

---

[1] Չարթախ Դրանսիլուանիացւոց լեզուաւ ը կը նշանակէ՝ վերնայարկ. տանիք. — Բօլդ = գետնափոր, գինետուն, մառան։

Բաց ասկէ, սահմանուեցաւ նաեւ, որ ծախուին քաղքին ծայրը — Մեծ փողոցի — գինետան քովն եղած երկիրներն ալ։ Ասոնք՝ պիտի չափուէին Յովհաննէս կօշկակարին տան անկիւնէն ու դէպի ասդին — դէպ ի քաղաք — պիտի գային։ — Հոս ալ կ'որոշուի ճշդիւ թէ աներն ինչ ձեւ, որչափ տարածութիւն պիտ'որ ունենան, ու գիներնին ինչ է։

Այս տեղն եղած հինգ բաժինը՝ գնեցին կարգաւ նախ Մկրտիչ Գրբիդեանց։ Իրեն քով դէպ ի վար՝ Խաչգդյ Դրուչիկեանց. երկրին վրայ գտնուած բաներովը հանդերձ։ Ասոր կից՝ Խաչիկ Սանամեան։ Եւ որովհետեւ այս աղան՝ Փոքր կոչուած — հիմակ Գիշ-Էրնէօ — փողոցին մէջ՝ կտոր մը երկիր ունէր, այս երկիրը քաղքին տուաւ ու վրան 125 հունգ. ֆիորին ալ, եւ ասոնց դիմաց առաւ վերջիշեալ բաժինը։ Չորրորդ կտորը գնեց՝ Ստեփան Պօշնախեան։ Իսկ ամենէն վերջինը՝ Յակովբ Մնբէդրեանց։

Ահա յիշատակարանը։

«Նմանապէս ութվեցաւ Պ. հասարակին, որ ծախէ զբերդին ազպարն, Ա. Մելքոնին քով, ֆաջէդայեօվն դէպի դռնավանը. երկանքը 24 խուլաճ եւ լանքը, դիմացէն 10 1/2 խուլաճ եւ էտեվէն դէպ ի բերդին բօրդան լանքը 9 խուլաճ։ Բայց գիտացվի, որ չիտերուն քարը Պ. Քաղքին կու մնայ։

1 ma Աղաչայ Մէլքոն Կաշբարեանց առաջի սեսիան. այսինքն իրեն հրամանոցն իուրթին քովինը, սումայ H. F. 1530։

2. Աղաչայ Գոտէր վարդիկի չիմիլովցոնց, երկուսում սէսիան. 1000։

3. Աղաչայ օհան տէր Ակոբի. իրեքում սէսիան H. F. 900։

4. Աղաչայ օվանէս Ա. խաչգցյի սնբէ-դրեանց, չորսում սէսիան. 830։

Նմանապէս ութվեցաւ Պ. Հասարակին ծախելու, Մեծ որամն, քաղքին ջոլթի գրջմային քով սէսիաներ. որ պի չափվի օվանէսին կօշ-գրին, գրչմային դիհու տանը գօրնէն, որ դէպ ի օրամն է, 15 խուլաճ դէր ի վեր. որ չափը կու երթայ մինչեւ գրչմային, ու գովը, չիային միջորէ եղեալ շբաձիում։ Եւ այս կումնայ գըրչ-մայի տեղ։ Ասոր քով ծախվեցաւ.

$1^{ma}$ Մկրտիչին Գրբիդեանց, լանքը $7^{1}/_{2}$ խուլաճ եւ երկանքը մինչեւ ի Նոր օրմին սէսիա-նուն փունտը։ Եւ դիմացէն պի էլէ դէպ ի օրամն, որպէս օվանէս կօշգրին տունը. գինը H. F. 505։

2. Խաչգօյ խաչերեսի գրուջիկեանց գնեց մէկ սէսիամն, որ պի չափվի մկրտիչին խուրթէն դէպ ի վար 11 խուլաճ լանքը, եւ դէպ ի օրամն մէկալնոնց գօրայ այսինքն օվանէսին կօշգրին տանը գօրայ. եւ երկանքն մինչ ի պապիկին գաղնստուսեանց խուրթին փունտը. եւ ինչ որ կու գտվի վերան, որ քաղքին եղիլէ նայ, զան ալ իրեն հրամանոցն կու տրվի. գինը H. F. 825։

3. Խաչիկ սանամի, որ ունացիլէ պիղտիկ օրամն, պիղտի պուրնազին քով մէկ բէդիքմն[1]

---

[1] Բէդիկք՝ Գրանսիլուանիոյ Հայոց բարբառովը կը նշանակէ՝ կտոր, մաս։

տեղ, Նայ զայն տուաւ քաղքին. եւ քաղաքն տուաւ զաս իրեն եւ զ125 մաճարին. ատավսա[1] տուաւ:

4. Ա. ըսթեփան մարտիրոսի պօշնախեանց, գնեց մէկ սէսիամն, Նոր օրամն, պապիկին գադնսուսեանց, որ պի չափվի պապիկին օրմին դիհուտանը գօրնէն դէրիվար, այսինքն դէպի գաբօնան. լանքը 8 խուլաճ եւ երկանքը պապիկին իուրթին գօրայ այսինքն մինչեւ ի մեծ օրմին իուլթներուն փունտը, գինը H. F. 350:

5. Աղաչայ Ակոբ սնբէդրեանց, քաղքին ճոթի պաղչան, գաբօիային քով. պի չափվի Ա. դօտէրաշին չաթնէն դէպ ի գաբօնան, լանքը 10 խուլաճ. եւ երկանքն որպէս մէկալ վիչիներն. գինը H. F. 860:„

## 20.

Քաղաքային հաշուեկալութիւնն ու հարկապահանջութիւնը, որչափ որ ալ կը ճգնէր ու ամէն տեսակ միջոցներ կը բանեցընէր, որ կալուածատէրութեան եւ քաղաքաբաշխութեան մէջ խնայողութիւն ըլլալով՝ եկամուտները շատնան ու ծախքերը քիչնան, սակայն եւ այնպէս աբաֆիեան կալուածատէրութեան գնմամբը, տէրութեան ժողովոյն ընդդիմադարձութեամբը, այլեւայլ ատեն Վիէննա ու Հերմանշդատ խըրկուած պատգամաւորութիւններովը, քաղաքային պաշտօնատեարց բազմանալովն եւ ասոնց վճարքներուն շատնալովը. եւ դարձեալ՝ յառաջուընէ

[1] Այսպէս գրուած է. յաւելուած կրնայ նշանակել

չտեսնուած ու չհաշուուած շատ մը ելքերուն եւ ծախքերուն պատճառաւն, իր հաշիւներուն հաւասարակշռութիւնը չկրցաւ պահել: — Տարեկան ելքերն աւելի էին, քան զմուտքերը: Թող եւ զայն թէ իբր հարիւր հազար ֆիորինի պարտք մը կը ծանրանար կռնակն, զոր իր յատուկ քաղաքացեաց պարտական էր: Չէ՛ թէ միայն այս պարտքը վճարելու պարտաւորութիւնը կը ճնշէր զինք, այլ նաեւ դրամագլխոյն շահը, զոր հարկ էր ամէն տարի վճարել:

Այն ճամբան, զոր վերջին անգամ — 1761 դեկտ. 12ին — հնարած էր, թէ նորանոր երկիրներ ծախելով ստակ ձեռք բերէ, ու Մարիամ Թերեզիայի դրամական նեղութեան մէջ ձեռնտու ըլլայ, — ինչպէս ընթերցողք կրցան տեսնել — շատ լաւ յաջողած էր: Անոր համար քաղաքային վերատեսչութիւնն, երբ իր գլուխն ասդին անդին զարնելով ալ, ուրիշ միջոց չգտաւ իր եկամուտները շատցնելու եւ պարտքերէն ազատելու, մտածեց որ նորէն այս ճամբան բռնէ: Այսինքն քաղքին ուրիշ կողմերն ալ գտնուած պարապ երկիրները ծախու հանէ: Ու սանկ երկիր ու դաշտ շատ կար քաղքին բոլորտիքը: Ասով՝ բնականապէս մէկ կողմանէ քաղաքն աւելի պիտի շէննար. եւ մէկալ կողմանէ երկիրներն աւելի պիտի պտղաբերուէին: Եւ որ գլխաւորն է, քաղաքն իր պարտքէն պիտի ազատէր, եթէ ոչ ըստ բոլորին, գոնէ ըստ մասին. այնու որ իրեն վրայ ծանրացած պարտուցը մէկ մասը վրայէն պիտի կարենար նետել:

Ուստի եւ քաղաքային վարչութիւնն 1762ին աշնան որոշեց որ քաղքին արեւելեան դին ու Գիւգիւլլէօ գետին մէջ եղած ընդարձակ դաշտավայրը — շուրջ 150 արտավար երկիր — որ բոլորովին պարապ կը կենար, եւ ըստ հետեւորդի քաղքին շահ մը չէր բերեր, օգտիւ գործածելու նպատակաւ կտոր կտոր ընէ ու քաղաքացեաց բաշխէ, որ մէջը եգիպտացորեն հասցընեն: Երկիրները պիտ'որ կտրուէին հաւասար բաժիններու: Լայնութիւննին պիտի ըլլար 12, իսկ երկայնութիւննին 82 ձողաչափ. ու պիտ'որ տրուէին 35 տարուան համար: Մասնաւորք պիտի վճարէին, ինչպէս որոշումէն կընանք մակաբերել, ամէն մէկ ձողաչափ լայն, բայց 82 ձողաչափ երկայն երկրաշերտին համար տարուէ տարի երեք հունգարական, կամ այսօրուան ստակով հաշուելով մէկ ֆիօրին ու 20 քառանդան: Երեսունուհինգ տարին անցնելէն ետեւ եգիպտացորենի երկիրները նորէն իրենց բուն տիրոջը՝ քաղքին պիտի դառնային:

Աս՝ համեմատութեամբ բաւական աժան գնահատութիւնը քաղաքացիք սիրով ընդունեցան. որովհետեւ իւրաքանչիւր ոք գրեթէ 1000 քառակուսի ձողաչափ հողին համար պիտ'որ վճարէր տարուէ տարի 36 հունգ. ֆիորին կամ նոյնչափ ֆրանգ: — Ասանկով սկսան այս երկիրները կտրուիլ ու ծախուիլ նոր կամ հիմակուան Ռափայէլեան փողոցին պարտէզներուն ետեւի դին դէպ ի արեւելք ու դէպ ի Գիւգիւլլէօ: Եւ անմիջապէս իննսուն տան տէր իրեն

*համար հոս երկիրներ կամ եգիպտացորենի դաշտեր գնեց։*

*Աս երկիրներուն ամենէն առաջին* — 20 *ձողաչափ լայն եւ* 82 *ձողաչափ երկայն — կտորն ընդունեցաւ՝ ցանկապատին կից, Ա. Մարտիրոս Գոշողանեան, քաղքին գլխաւոր դատաւորը. այնպիսի պայմանաւ, որ եթէ ասոր քով գտնուած երկրատէրերն ուզենային այս երկրէն իրենց համար մաս մ'առնելու՝ քաղաքային վարչութիւնն իշխանութիւն ունենայ յիշեալ դատաւորէն երկիրն ետ առնելու. եւ բնականապէս առած ստակն ետ դարձընելու։ Իսկ եթէ ձայն հանող չըլլալով՝ Գոշողանեան այն երկիրը քանի մը տարի պահէր, այն ատեն քաղաքն իրմէն ալ այնպէս, ինչպէս ուրիշներէն, պիտ'որ առնուր մէկ ձողաչափ երկրին համար* 3 *հունգ. ֆիորին. ուստի եւ* 20 *ձողաչափին համար* 60 *ֆիորին։*

*Ահա յիշեալ տարւոյն, այս երկիրներուն վաճառմանը նկատմամբ եղած արձանագրութիւնը։*

*"Աստուծոյ ողորմութեամբն,* 1762 *հոկտեմբերի* 16*ին էլիզաբէդան։ Ութվեցաւ Պատուելի Հասարակին, որ ծախին զկրէտինայ մէլիլօր*[1] *գուգուրուծի տեղ a* 35 *տարով, զխուլաճը* 3 *մաճրի.* 82 *խուլաճ երկանքը։ Որ լըմընալով* 35 *տարին, պի կորսըվի ըսդակըն եւ մընայ տեղըն Պատուելի Քաղքին կրադիս։ Ի պիրովութեանն ժամանակի Աղ. Մարտիրոս գօշօղանի եւ Սու-*

[1] *Վալաքերէն է, կը նշանակէ՝ պարտէզ խնձորոց։*

դաշ Պատուելի սուդաի Աղ. Լուսիկ Ամիրայի եւ սարըսդայ պազըրկըննու գումբանիայի Աղ. Խաչ-գըյ ըսթեփանի սնբէգըրեանը։ Եւ կու գըվին տեղըրանքնուն Աղաչաներըն։

Աղ. Պիրովըն Աղ. Մարտիրոսը գօշօդանի չափած է Նոյ օրմին պաղչընուն ֆունտէն դէպ ի դըրնավան. լանքը 21 խուլաճ, բայց 20 խուլաճ սէպվի, որն որ չաթընին քով է. երկանքը 82 խուլաճ։ Եւ այնպիսի գօնտիձիայօվ, դէ օր կազտաներըն[1] պաղչըներով ֆունտէրօվըն, ուզէնային Պատուելի Քաղքին մօտէն գընէլու իրենց պիրվականութեանը սէպը, Պատուելի Քաղաքըն ըսլօպօտ[2] պիլայ առնէլու Աղ. Մարտիրոսէն եւ ըսդակըն դարձընէլու իրեն Հըրմօնցը։ Եւ դէ օր բըրնէր մէկ քանի տարի մը Աղ. Մարտիրոսըն զտեղըն նայ, այն ժամանակըն Պատուելի Քաղաքըն պի սէպէ թէ ինչ կուգայ տարին գօլօխ. ու այնպէս պիտան 60 մաճըրին. այսինքն մէջէն վազսուն մաճրունը. եւ պիտօր վիճարէ տեղըն 20 խուլաճ. 60 մաճրի։

Ա. Խազար օհանի էրկընութիւնն 82 եւ լայնութիւնը 12 խուլաճ. 36 մաճրի։

Ա. Լուսիկ Թորոսի 82 եւ լայնութիւնը 12 խուլաճ 36 մաճրի։

Ա. Լուսիկ օսգերիչեան 82 եւ լայնութիւնը 12 խուլաճ 36 մաճրի։ . . . .„

Եւ ճիշդ այս կերպով կը շարունակուի

---

[1] Հունգ. բառ է, կը նշանակէ՝ տանտէր։

[2] Szabad Հունգարերէն բառն է, նշանակութիւնն է՝ հրաման, թոյլտուութիւն, ազատութիւն։

արձանագրութիւնը։ Ասոր մէջ, նոր բան, միայն գնող աղաներուն անունն է։

Բայց քաղաքն այս ճամբով չկրցաւ բոլորովին իր նպատակին հասնիլ։ Ծախած իննսուն կտոր երկրէն պիտ՚որ ընդունէր տարուէ տարի 3240 հունգ. ֆիորին, որ թէպէտ բաւական գումար մըն էր, սակայն իրեն դրամագլուխ պէտք էր, որպէս զի կրնակը ծանրացած պարտքերը վճարէ։

Եւ որովհետեւ երկիրներէն զատ ծախելու բան մը չունէր, ուրիշ բան մը հնարեց. եւ ասով նպատակին հասաւ։ 1763 Ապր. 11ին նորէն երկիրներ ծախելու ելաւ. բայց ոչ թէ այն կերպով որով 1761ին եւ 1762ին ծախած էր, այլ ուրիշ՝ քաղաքացւոց համար աւելի նպաստաւոր պայմաններով։ Այսինքն՝ քաղաքացիք, որոնք այս երկիրները պիտի գնէին, չէ թէ անմիջապէս՝ այլ վեց տարուան միջոցի մէջ պիտի կարենային վճարել գնած տեղերնին. այսինքն, ամէն տարին գնածնուն մէկ վեցերորդ մասը։ Իսկ եթէ այս ալ չկարենային վճարել, այն ատեն բաւական էր, որ իրենց պարտուցը գումարին միայն 6% շահը տային։

Ասիկայ շատ խելքով մտածուած բան էր։ Ասոր հետեւութեամբն, նոյն իսկ միջակ կամ աղքատ քաղաքացւոց միջոց մը տրուեցաւ երկրատէր ըլլալու. առանց առած երկրին գինն իրապէս վճարելու։ Ուստի բաւական էր, ինչպէս ըսինք, այն երկրին գնոյն մէկ մասն, ու եթէ աս ալ չէ, անոր միայն շահը հատուցանելը։ Այս

առթիւ եղաւ, որ քաղաքացիք ընդարձակ երկիրներու, մեծամեծ դաշտերու, այգիներու, տան տեղերու եւ այլն, իսկ քաղաքն — ինչպէս պիտ'որ տեսնենք — բաւական գումարի տէր եղան։ Մեծամեծք եւ ունեւորք ստակ ունենալով՝ բնականապէս գնած երկիրնին ընդ միշտ գնեցին ու դրամն անմիջապէս վճարեցին. մինչդեռ նուազ դրամ ունեցողներն՝ երկիրները թէպէտ եւ գնեցին, բայց ոչ ցկեանս, հապա գնած երկիրներուն գումարին միայն շահը վճարեցին ու կը վճարեն զայն, իրենց ժառանգներն, որդւոց որդի՝ մինչեւ ցայսօր։ Այս ճամբով, հասարակ ժողովրդեան միջոց մըն ալ տրուեցաւ, իրեն նոր եկամտի աղբիւր մը գտնելու — երկրագործութիւնը ծաղկեցընելու։

Քաղաքն՝ այս տուած կամ ծախած երկիրներուն վրայօք ապահովագիր մը տուաւ գնողներուն. որով անոնք տէր կ'ըլլային, ինչպէս ըսինք, այն գնած տեղերուն, եթէ դրուած պայմանները պահէին. այսինքն կամ տարուէ տարի առած երկիրներուն վեցերորդ մասը՝ եւ կամ դրամագլխին շահը — հարիւրին 6% — վճարէին։

Աս ճամբով նախ Խնկանոս Ամիրայի եւ Ակոբշայ Սահակի Ագոնց եւ Անտոն Խսիգուցեան, Նոր փողոցին մէջ, իրենց երկիրներուն — զոր երկու տարի յառաջ գնած էին — ետեւի դին եղած դաշտը գնեցին. այն կերպով ու պայմաններով որով նախընթացները գնած էին։ Այն կերպով գնեց դարձեալ, Սահակ Գրի-

գորի Ագոնց, այլեւայլ տեղուանք երկիրներ. Այսպէս ուրիշ շատերն ալ:

Ահա ասոր նկատմամբ քաղաքային ժողովոյն արձանագրութիւնը:

“Աստուծոյ ողորմութեամբն 1763 Ապրիլ 11 էլիզաբէդան.

Ուխտվեցաւ Պ. Հասարակին, օր ծախէ այս ալ վար գրած իւրթերն, վեց տարի վճարքի դէրմինօվ. այսինքն անկարիադիմ. ամէն տարի ինչ օր գար նայ, զվեցում փայը ունենայ գնօղն վճարելու: Բայց թէ օր մէկնիվօր Աղաչին ութվէր մէկումն վճարելու նայ, պի կարենայ քալելու սումայէն տարին գլօխ զ100 ի վեցըն ու այսպէս վճարէ:

1ma Աղ. խնկանոս Ամիրայի Ա. ակոբշայ սըրհակի ագոնց եւ Ա. Անդօն Նիգօշի Խսիգուցենց արին, զիրենց հրամանոցն դվին վրայի գնած իւրթերուն փունտերեւներն,[1] այնպիսի գօնտիձիայով, որ ունենան վճարէլու աբրօբօրձիօնէ[2] զխուլած գետինը, որպէս իրենց հրամանացն իւրթերն գնածին. այսինքն սումա

R. F. 3516.—

զայս րէբարձիայ անէլով, ըստօր ըննէր խուլճի վրայ նայ. զան ունէնան քանի խուլած օր ըլայ փունտերեւըն վճարէլու:

2do Աղաշ. Անտօն Նիգօշի խսիգուցեանց,

---

[1] Անծանօթ բառ մըն է, գոնէ ինծի համար: Որչափ կը մակաբերեմ՝ կրնայ նշանակել կալուածի կամ երկրի մը՝ ետեւի, վարի մասը. եւ կամ նոյն իսկ երկիր, գետին:

[2] A proportione. ըստ համեմատութեան. համեմատութեամբ:

գնեց իրեն հրամանոցն իւրթին քով, գօրնը
դէր լանքն վեց խուլաճ դէպ ի շուրան. դիմա-
ցէն եւ ետեւէն 3 խուլաճ ու 2 շուխ, այլվէ
այն գօնտիձիայօմն, որ ունենայ վիճարելու ա-
բրօբօրձիօնէ զխուլաճ գէտինը, որպէս զիւրթն
գնիլէ:

Գիտացվի որ հօս կու թօղվի ուամ, օր
չափվի Ա. անտօնին իւրթէն դէպ ի շուրան 10
խուլաճ, օր օրամն կերթայ դէպ ի սէնդիվանի
օրամը:

$3^{tio}$ Ա. Սհակ գրիգորի ագոնց, գընեց մէկ
իւրթ մը գօրնը, Ֆըկըտըմնուն[1] ետեւ. եւ Փա-
չէդան պիլայ, մէկ լինեայ հետ Ա. Անտօնին
իւրթին: Լանքն 10 խուլաճ եւ երկանքն դէպ ի
Ֆըկըտօվը 34 խուլաճ. գինը. 1455.—

dto. վերոյգրեալ Աղաչան քովըն, դէպ ի
շուրան, գնեց այլվէ մէկ իւրթ մը, լանքը 10
խուլաճ եւ երկանքն 34 խուլաճ, գինը 1065:

$4^{to}$ Էգուն օրամն Ա. Լուսիկ ամիրային
քով, օր թողած էր գրչմայի տեղ, գնեց մէկ
էգի մը, 12 խուլաճ լանքն եւ 30 երկանքն, Ա.
լուսիկ Ամիրայի, գինը. 877.50:„

Երկրորդ օրը — Ապրիլի 12ին — քա-
ղաքային վարչութիւնը՝ հարիւրոց ժողովըն ան-
դամոցը հետ դաշտավայրն ելաւ, եւ Դաշտի
փողոցին ետեւի դին՝ պարտէզք խնձորեղենաց
ըսուած տեղը նորէն բաժիններ կտրեց ու ծա-
խեց: — Ամէն մէկ բաժնին լայնութիւնն էր 10,
իսկ երկայնութիւնը 40 ձողաչափ: Բնական է,

[1] Fogadó, պանդակ իջեվան, հունգարերէն է:

որ այն կտորներն, որոնք քաղքին աւելի մօտիկ ու լաւագոյն էին, շրջակայ տեղերէն աւելի լաւ վճարուեցան։ — Այն օրը՝ հասարակութիւնը ծախեց մէյ մը կէսօրէն յառաջ վեց աղաչայի 1000 ոսկւոյ կամ 4986 ֆիոր. 20 քառանդի երկիր. մէյ մ'ալ կէսօրէն ետեւ, քաղքին հիւսիսային կողմը Դուրքերու ըսուած մատրան շրջականերն եղած երկիրներէն, ուրիշ վեց աղաչայի 824 ոսկւոյ կամ 4120 ֆիորինի երկիր։ Ասոնց մէջէն Լուսիկ եւ Ցովհ. Աբրահամենց բաժին մը գնեցին, Գէորգէօքեանց մատրան դիմացը, այն պայմանաւ, որ երկիրն՝ իր երեք մասովն ալ ճակատ ունենայ։ Մէկ ճակատը պիտի ըլլար Մեծ — այս օրուան Եղիսաբեթ — փողոցին վրայ, ու հոս՝ բաժնին լայնութիւնը պիտի ըլլար 12 ձողաչափ. մէկալն, այսինքն դէպ ի մատուռն նայողը՝ 19 ձողաչափ. իսկ դէպ ի Նոր կամ՝ Ռափայէլեան փողոց նայողը՝ 14 ձողաչափ։

Ահա ասոնց նկատմամբ ձեռուընիս ունեցած արձանագրութիւնները։

“Աստուծոյ ողորմութեամբն, 1763 Ապրիլի 12։ Ելէլով Պ. Մակիսդրադրըն եւ Պ. Սուդան այլվի կրէտինայ մէէլիլօր, այսինքն դաշդին օրամն, որ ծախվին ալ ալ իւրթեր։ Եւ սկսեցին ծախելու Ա. լուսիկին Ամիրայենց սէսիային քօվէն դէպ ի շանցն, զոր իւրթերն գնեցին, զայս ալ վար գրած աղաչաներն, վեց տարի դէրմինով, որ ունէնան անկարիադիմ ամէն տարի վիճարելու։ Եւ գիտացվի, որ մէկ սէսիային լանքն 10 խուլաճ եւ էրկանքն քարսուն խուլաճ։

1mo Աղաչայ լուսիկ մարտիրոսի բաղրու-պանենց 1 սէսիայ 120 ոսգի R. F. 600.—

2do Աղաչայ լուսիկ մարտիրոսի բաղրու-պանենց dto 102½ ոսգի. 512.50

3tia Աղաչայ լուսիկ մարտիրոսի բաղրու-պանենց dto 120½ ոսգի. 602.50

4° Աղաչայ լուսիկ մարտիրոսի բաղրու-պանենց dto 116 ոսգի. 580.—

5to Աղաչայ գրիգոր ո. Հ. վրդիկի չիմի-լովցու 110 ոսգի 550.—

6to Աղաչայ լուսիկ մարտիրոսի բաղրու-պանենց վերայ գրեալ իւրթէն պի չափվի, մինչեւ ի չանցն ձիրձիդէր 39 խուլաճ լանքն եւ երկանքն 40 խուլաճ. 428 ոսգի. 2140.—„

“Այլվի ութվեցաւ Պ. Հասարակին, օր ծախին տեղըանք քաղքին ճօթըն, գաբօնային դին: Եւ ասոնք վեց տարի տէրմինօվ, օր ունէնան ամէն տարի անկարիադիմ վիճարելու:

1ma Ա. ըսթէֆան օվակիմ. Ա. ակաբին սնբէդրեանց քօվ. եւ մէկ դիհաց գաբօնային. Հինկ խուլաճ լանքն. եւ երկանքն որպէս մէկալ կարքն. 200 ոսգի. 1000.—

2do Ա. գրէջուն դրիւչիկի օվանէսի 8 խուլ-ճին քօվ, օր ունի պապիկին գադընսուսեանց քով, դէր տվաւ Պ. Հասարակն 2 խուլաճ. որն որ ունէնայ վիճարէլու, գալ ղատկին, այսինքն 1764ին. 20 ոսգի. 100.—

3tia Ա. լուսիկ եւ օհան ո. Հ. մնուկի աբրահամենց, մէկ սէսիամն 3 գօրնէն, քաղքիս ճոթը, գաբօնային գիմաց. մեծ օրմին դիհու

փաճէգային երկանքն 12 խուլաճ եւ դուս ելէ-լըն գՆորքին խաչիկի սանամեանց տանը գօրայ, գաբօնային դիՀու փաճէգան, այսինքն որն որ դէպ ի գաբօնան կու նայի, 19 խուլաճ ու 2 շուխ։ Նոր օրմին դիՀու փաճէգան 14 խու-լաճ. եւ լէնիան պապիկին գաղընսուսեանց տանը լէնիայօմն։ Այնպիսի գօնտիձիօնօվ, որ ալ շատ տուն չի արվի քօվըն, Հապա 3 փաճէգան ալ մընան փաճէգա. գինը 316 ոսգի. Rr. F. 1580։

4to Ուխթվեցաւ Պ. Հասարակին, որ ընկրէ-դինայ մէլիլօր մայէրնուն[1] կարքը, ալ ալ ծախ-վին մայերներ։ Եւ ծախվեցաւ Ա. ակոբշային մեզտեսոնց մայէրին քով. դէպ ի դըընավան, գրիգոր վարդիկի շիմլօվցոնց, մէկ մայէր. էր-կանքն 35 խուլաճ եւ լանքն 12 խուլաճ, գինը 101 ոսգի. 505.—

5to Վարդէրէս Ա. մինասի բըդըրաշգօյեանց մէկ մայէր. էրկանքն 35 խուլաճ եւ լանքն 12 խուլաճ. գինը 83 ոսգի. 415.—

6to Ա. Թորոս Դիւրիւգեանց 2 մայեր, լանքը դիմացէն $25^{1}/_{2}$ խուլաճ. եւ երկանքն Ա. վարդէրէսին դիՀէն 25 խուլաճ եւ դընավային դիՀէն երկանքն 30 խուլաճ։ Ետեւէն պի քաշվի ջուվանը 35 խուլճի մէդայէն, մինչեւ ի 20 խուլաճի մէդան, եւ այն պիլայ լէնիայ, գինը 104 ոսգի. 520.— „

Ապրիլ 13ին Նորէն ծախուեցաւ քաղքին աւելի Հիւսիսային-արեւելեան կողմը, լերան

[1] Ագարակ, կալուած. գերմաներէն է։

ստորոտը, ամբողջ փողոց մը շինելու համար տեղ․ եւ անունը դրուեցաւ Գրիգոր Լուսաւորչայ փողոց։ Հոս երկիր կտրելը երկու կողմանէ եղաւ։ Մէյ մը ասդիէն այսինքն Լուսիկ Ամիրային ագարակին վերեւն եղող գերանադիր նշանէն դէպ ի անդին պիտ'որ երթային՝ չափելով երկայնութեանը 30՝ իսկ լայնութեանը 12 ձողաչափ․ մէյ մ'ալ անդիէն Ամիրայեանց ագարակին վերին գերանէն, որ տեղէն որ պիտի քաշուէր չուանն դէպ ի ասդին՝ այսինքն Ոսկերիչեանց երկիրը։

Այս երկիրներն այնպիսի պայմանաւ տրուեցան թէ ով որ քաղքին վարչութեանը տուած էր փոխ ստակ, այն ստակն՝ իբրեւ ապահովացուցում համարուի։ Իսկ ով որ տուած չէ, ան՝ պէտք էր որ ապահովացուցում դնէր, գնած երկրին գնոյն գոնէ վեցերորդ մասը։ Ապահովացուցում չդնողն՝ երկիրը պիտի կորսնցրնէր, զոր քաղաքն ուրիշին կրնար ծախել։ Սակայն հասարակութիւնն այնչափ երկրին վրայ միայն ձեռք պիտի կարենար դնել, որչափին համար որ ապահովացուցում դրուած չէր։

Այս տեղուանքը ծախեց քաղաքը 30 կտոր երկրաբաժին, որոնց վրայ կանգնուեցաւ, ինչպէս վերն ըսինք, Ս․ Գրիգոր Լուսաւորչի փողոցը։ Փողոցին լայնութիւնն էր 12 ձողաչափ եւ ունէր, լերան ստորոտը — դէպ ի արեւելք նայող — 15, իսկ ասդին՝ դէպ ի քաղաք, ճակտովը դէպ ի հիւսիս նայող՝ նոյնպէս 15 տուն։ — Երեսուն աղաչաններն, որ ամբողջ տեղը

գնեցին, վճարեցին քաղքին 2115 ոսկի կամ 11.931 ռեննոսական ֆիորին։

Ասոր վրայօք Եղիսաբեթուպոլսոյ տարեգիրներուն մէջ յաջորդները կը գտնենք նշանակուած։

“Աստուծոյ ողորմութեամբն 1763 Ապրիլի 13ին էլիզաբէդան.

Ծախվեցաւ մէկ Նոր օրամն գրիգոր լուսաւորչայ օրամ։ Եւ վճարքի դէրմինը 6 անկարիայ, այսինքն 6 տարի։ Եւ պի չափվի դոտէրին ոսգերիչեանց իւրթին ֆունտին վարի գօրնին շօշէն, դէպ ի դարը 30 խուլաճ երկանքն եւ 12 խուլաճ լանքն։ Եւ այլվի պի չափվի վէրի դիհէն Ա. լուսիկին ամիրայեանց մայէրին ֆունտին վերի դիհու շօշէն 30 խուլաճ դէպ ի դարն. եւ այս մէդայէն պի քաշվի չուվան մինչեւ ի վարի մէտան. այսինքն դօտէրին ոսգերիչեանց իւրթին ֆունտի մէդան։ Իւ ընտոր ալ գային իւրթերն, կուզէ էրկան, կուզէ ալ կարճ, ան ամէն մէկին տալէհը[1] պիլայ։ Ու այսպէս կուծախվի, որ գիտացվի որ ֆաճէդան չիտակ ըլայ։ Եւ աս ալ գիտացվի, որ օվ սդակ ունի քաղքին մօտ շահու նայ, նայ կլայ արնէլու արանց գաուձիօն. բայց օվօր չունի, նայ գաուձիօն դնէ մագար մէկ անկարիային. եւ չվճարելով զմէկ անկարիան չուդվէր նայ պի կորսընու զտված ըստակըն եւ պի մնայ տեղըն պատւելի քաղքին. եւ հի որ անկարիան չվճարվէր, նայ կարենայ

---

[1] Այս բառն ուրիշ տեղ ալ եկած է, կը նշանակէ բախտ։

*ֆօկլօլուիդ*[1] *անէլու զտեղըն Պ. քաղաքն, նմայ այն մնացածին դիմաց ու ծախէ օզկային:*

1ma Ա. *գալուստ Աբրահամի Պօշնախեանց* 131 *ոգի.* R. F. 655.—

2do Ա. *Թուման զատիկի* 94 *ոգի* 470.—

3tia Ա. *Թուման Ջատիկի* 91 *ոգի* 455.—

4to Ա. *գէորք Հէրէսի* 94 *ոգի.* 470.—

5to Ա. *լուգաշ ըսթէփանի պապու* 85 *ոգի.* 425.—

6to Ա. *ըսթէփան մարտիրոսի պօշնախեանց գօրնը, զէրայ հուտիցայ պի մնայ քանի խուլճէն որ ձէվէց քաղաքն ու ատինդէրէմ*[2] 10 *խուլաճ մնայ օրմի: Բայց ինչ ալ ծախէր քաղքն այս* 10 *խուլճէն նայ, վերոյ Աղաչին պի տրվի գնածին բրօքօրձիօյովըն. այսինքն գնածին գօրայ զխուլաճըն. ատինդէրիմ գնած* 12 *խուլաճն* 96 *ոգի.* 480.—

7. *Արութիւն Աբրահամի պօշնախենց, այլվի գօրնը* 12 *խուլաճլանքն,* 81 *ոգի* 405.—

8. *Անդօն վարպետ լուսիկի* 72 $^1/_2$ *ոգի.* 362.50

9. *Անդօն Աբրահամի պօշնախենց* 73 $^1/_2$ *ոգի.* 367.50

10. *Ջատիկ գրիգորի բաղրուպանեանց* 72 *ոգի.* 360.—

11. *Գէորք անկսէնտի* 68 $^1/_2$ *ոգի* 342.50

12. *Նիկօլ օհանի* 71 *ոգի.* 355.—

---

Foglalni, *հունգ. է. կը նշանակէ՝ առնուլ, վրան ձեռք դնել:*

[2] Ad interim. *առ այժմ, մինչեւ այն ժամանակը:*

13. Մանուկ Պիլուչգայի 75 ոսկի 375.—

14. Դաւիթ Ասլանրի մասդիկի 80 ոսկի. 400.—

15. Մարտիրոս Ասլանրի մասդիկի 94 ոսկի. 470.—

Եւ գիտացվի, որ գօրն է, պուտէին օրմինը դէպի էգին:

Աստուծով կու ըսկըսինք վերոյ ծախվածնուն դիմացի կարքը ծախելու եւ կու մնայ լանքը օրմինը 12 խուլած. եւ կու ըսգըսվի բրօվին[1] քօվի կարքը.

$1^{ma}$ Մալխաս Աբրահամի պօշնախի, 121 ոսկի. 605.—

$2^{do}$ Անդօն պօղոսի, 80 ոսկի. 400.—

$3^{tia}$ Գրիգոր գրըսդըյի, $70\,^{1}/_{2}$ ոսկի. 352.50

$4^{to}$ Օհան Իսայի, $68\,^{1}/_{5}$ ոսկի 341.—

$5^{to}$ Ա. Թորոս դիւրիւգենց, 68 ոսկի 340.—

$6^{to}$ Եագուպաշ լուսիկի մնգօվիչի $70\,^{1}/_{2}$ ոսկի. 352.50

7. Սիմոն խաչերեսի գաբտէպօվի, $66\,^{1}/_{5}$ ոսկի. 331.—

8. Սըհակ գրիգորի գօժօչեայի, 68 ոսկի. 340.—

9. Օվանէս կօշգրի, $68\,^{1}/_{5}$ ոսկի. 341.—

---

[1] Բըրըվ կամ բրօվ կամ բրըվ. Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը՝ կը նշանակէ ղակիչ, պատուար, թումբ. — ուրիշ տեղ յառաջ եկած չանց բառին հետ նոյնանշան է:

10. Խաչատուր պօրի, 65 ոսկի. 325.—
11. Ըսմէփան կաղ մինասի, 67 ոսկի. 375.—
12. Աւվատուր բօրու մպի, 65 ոսկի 325.—
13. Վարդան Պօղօսի, 68 ոսկի. 340.—
14. Պօտէր ոսկերիչի, 68 ոսկի. 340.—
15. Ա. Թուման Ջատիկի, գօրնը 85½ ոսկի. 427.50„

*Աս երկիրներուն չափուելովը ու ծախուելովը եւ Նորանոր փողոցներու եւ Ճամբաներու կտրուելովը՝ եղաւ քաղքին երկրորդ վերանորագութիւնը: Առաջինին, այսինքն 1734ին բաժանմամբ (էջ 90) քաղաքը՝ պզտիկ քառանկիւնի ձեւ մը առացած էր: Ասով նոյն քառանկիւնն ամէն կողմանէ տարածուեցաւ ու ընդարձակուեցաւ:*

*Այս կերպով Նորաշէն փողոցներուն եռեւի բանջարեղինաց պարտէզներովն, եգիպտացորենի ու խոտի դաշտերովն եւ այգեստաններովը, մէկ կողմանէ քաղաքը վայելչացաւ ու աւելի պտղաբեր եղաւ, մէկալ կողմանէ քաղքին գանձուն մէջ — չհաշուելով 1761 ի երկիրներուն վաճառման առթիւ ընդունած 18.411 ֆիորինը, զոր Մարիամ Թերեզիային պարգեւեց — մտաւ 27.588 ռեննսական ֆիորին իրական դրամ. եւ 54.500 հունգարական ֆիորինի դրամագլխոյ մը՝ 3230 ֆիորին տարեկան շահը:*

## 21.

Ըսանկով քաղքին տնտեսական վիճակն ըստ բաւականի լաւացաւ, ու դրամական նեղութենէն ազատեցաւ։ Սակայն ինչպէս քիչ մը ետքը պիտ'որ տեսնենք, այս բանս երեւոյթ մըն էր միայն։ Երկիրներն իրապէս ծախուեցան ու յանձնուեցան գնողներուն. բայց դրամերն այնպէս չեկան ներս, ինչպէս որոշուած կամ թէ սահմանուած էր քաղաքային վարչութենէ։ — Հասարակ քաղաքացիք ու նոյն իսկ մեծամեծք իրենց պարտքերը ժամանակին չկրցան հատուցանել, "վասն զի եկամուտ չկայ, վասն զի առուտուրները թոյլ են„ կ'ըսէին։

Քաղաքային վերատեսչութիւնն աս տեսնելով ու միանգամայն լսելով թէ երկիրները գնող տէրերը կը գանգատին թէ, այն երկիրները վերջի ատիճանի սուղ նստած է իրենց, բաղձաց այս՝ կէս մը իրաւացի գանգատը վերջացընելով ժողովրդեան բեռը քիչ մը թեթեւցընել։ Ուստի եւ մտածեց որ մէյ մը երկիրներուն վճարման ժամանակէտն երկնցընէ, մէյ մ'ալ անոնց գիները նուազեցընէ, որ դիւրութեամբ վճարել կարենան։ Ասոր համար, 1765 Դեկտ. 12ին ընդհանուր ժողով գումարելով՝ սահմանուեցաւ լիուլի քուէով՝ Ա. Թէ այն երկիրներն, որոնք որ արձանագիր անցուած են եւ արդէն այն ժամանակէն՝ իրենց հիմակուան տիրոջը ձեռքն են — փոխանակ վեց տարուան մէջ

*վճարուելու — ութը տարուան միջոցի մէջ կարենան վճարուիլ։ Ի դիպուածի որ մէկն այսպէս ալ չկարենայ հատուցանել իր պարտքը, թող այն չվճարուած գումարին շահը վճարէ։ Բ. Նկատմամբ այն երկիրներուն, որոնք դեռ արձանագիր անցուած չեն, հասարակութիւնն այն շնորհմունքն ըրաւ, որ տէրէրն, որոնք իրական ստակով կը բաղձան գնելու, ութ ամսուան միջոցի մէջ — մինչեւ 1766 Աւգոստոսի վերջը — պէտք են վճարել. բայց այնպիսի նպաստաւոր պայմանաւ, որ գումարին միայն կէսը վճարելով՝ ամբողջը վճարուած համարուին ու երկիրները բարով վայելեն։ Բայց Գ. այն քաղաքացւոյն որ վճարել չ'ուզեր կամ չի կըրնար, թէպէտ շնորհուեցաւ որ ութ ժամանակակէտի մէջ կարենայ վճարել. սակայն մէկ չվճարուած ժամանակակէտն (termiu) անցնելէն ետեւ անոր — հարիւրին վեց — շահն ալ վճարելու էր։ — Վճարման ժամանակը պիտ'որ սկսէր 1766 Ապր. 24ին, որ միջոցին քաղաքը՝ գնած երկիրը գնողին ձեռքը պիտի յանձնէր։ Մէկն որ Ապրիլ 24ին չառնուր երկիրը, հապա ետքէն, բնականապէս այն միջոցէն պիտ'որ սկսէր վճարքն, որ ժամանակին որ իր ձեռքը յանձնուէր երկիրը։ Դ. Թէ որ երկրատէր մը, որ արդէն դաշնագիր ըրած է, քաղքին վարչութեանը հետ, խօսքը ետ առնուր ու պարտքը դաշանց համեմատ վճարէր չուզենար. եւ ասոր հետեւութեամբն երկրէն ելլելու հարկադրէր, այնպիսին քաղաքային վարչութեան՝ յառաջա-*

գոյն որոշածին համեմատ[1] — վճարելի գումարին մէկ չորրորդ մասն՝ իբրեւ գրաւական, պէտք էր հաշուեկալութեան հաստուցանել: Աստով՝ ամբողջ գումարին վճարմունքէն պիտի արձակուէր. բայց տեղը պիտ'որ մնար քաղքին:

Բաց ասկէ, զգուշացուց վարչութիւնն զքաղաքացիներն, որ որոշուած ժամանակին անպատճառ ստակները հատուցանեն. վասն զի, ըսաւ, ժամանակակէտն անցնելէն ետեւ, պարտատէրներուն ըսելը թէ անոր շա՛հը պիտի վճարէ, ընդունելու պիտի չըլլայ. որովհետեւ ժամանակակէտն անցնելէն ետեւ, անոր շահն ալ պէտք է որ վճարէ: Ու չըլլայ թէ մէկն ընէ ան, որ շահին վճարմունքը՝ մէկ ժամանակակէտէն մէկալ ժամանակէտ թողու, որովհետեւ վարչութիւնը՝ վճարման ատենն անոր համար ուզեց երկնցընել, որ քաղաքացիք աւելի դիւրութեամբ վճարելու ի վիճակի ըլլան. եւ չունենան խօսք իրենք զիրենք արդարացընելու: Իսկ այն երկրատէրներուն, որոնք իրական դրամով վճարելու կը փափաքին, պարտուց կէսը թողլուն պատճառն այն էր, որ քաղաքային վարչութիւնը շատ պարտքի մէջ ինկած ըլլալով՝ ստըկի պէտք ունէր. եւ կ'ուզէր որ դրամ ժողվուի, որպէս զի շուտով պարտքէն ազատի: — Վերջապէս կը յայտնէ ժողովն, որ այս բանս լիուլի ձայնիւ սանկ հաստատուեցաւ:

---

[1] Համեմատէ 324 իջին 4 կէտին ու 311 իջին, դարձեալ քաղաքային ժողովոյն, 1759 Ապր. 19ին եղած որոշմանը հետ. էջ 325:

Ուստի եւ ասկից ետքը մարդ չելլէ ու խօսք չընէ եւ խոստումը ետ չառնու, հապա հաստատուածը ըլլայ միշտ հաստատուած. եւ գնուած տեղերը՝ միան իրենց աէրերուն ցյաւիտեան:

Ահա, աս եղածներուն նկատմամբ տարեգրին խօսքերը:

«Աստուծոյ ողորմութեամբն 1765 դեկտեմբերի 12 ելիզաբեգան:

Քաղվելով Պ. Աղաչայ Պիրումն հետ Պ. Մակիսդրադին նմանապէս Պ. Աղաչայ Սուգաշն հետ Պ. Սուգային, եւ խորհուրդ անելով վասն եուրթերուն, որն օր ծախածին Պ. Քաղքըցոցըն վեց տարի դերմինով. Եւ տեսնելով Պ. Հասարակն, որ ծանր կու ըննի քաղքըցոցն, զէրայ ժամանակներն դժար ըլալով ու տեղըանքն անսէպ[1] թանկ ծախվիլին, կամեցաւ որ թեթեւցընուն Քաղքըցոցն վերայէն զբեռն, որ ալ թէթեւով վիճարին: Հաստատվեցաւ ունանիմօյ վօդումօվ,[2] որ այն եուրթերն, որն օր բրօդօգօլն մտիլին նայ, այն դէրմինէ որ ձեռն տված է, ունէնայ ութը տարեն մէջ, այսինքն ութըն անկարիայի[3] վիճարէլու. եւ այսպէս, որ գագու գվօյ անկարիայէն չի վիճարէր նայ, ինչ օր անցնէր դէրմինէն նայ, ունէնայ զշահն տալու, տարեն 100ի վեցօմն: Բայց այն եուրթերն որն օր բրօդօգօլ դէր չին մտիլ, նայ ութվեցաւ Պ.

[1] Արտաքոյ կարգի, չափազանց:

[2] Միաբան խորհրդով. միացեալ քուէիւք. լատ. է:

[3] Վճարման որոշ ժամանակակէտ. լատ. է:

Հասարակին, օր, որ կաղտային[1] ուլթվի նաղտ ըսդըկով վիճարելու զիուրթն նայ, կու տրվի դէրմին վիճարքի, մինչեւ այս գալ օգոստոսի վերջն, այսինքն 1766, որ ունէնայ զկէս ստակն գնածինը վար դընէլու ու անով Փէլիխ[2] պի վիճարվի, եւ բարով վայլեցնու: Տարը որ կաղտան չի կամէնայ վիճարելու նայ, կու տրվի դէրմին վիճարքի ութը տարի, որ ութը անկարիայի ունէնան վիճարելու. այնպիսի գօնդիձիօնով, որ գազու գվօյ մէկնիվօր անկարիան անցնէր ու դէրմինին չիվիճարէր նայ, անցած ժամանակին, ունենայ տարին գօլօխ հարըրի վեցն վիճարելու, եւ այսպէս պի վազէ եուրթն տարին: Եւ դէրմինը պի սկըսվի այս գալ սմճօրճէն,[3] այսինքն 1766. որ գալ սմճօրճին ունէնայ Պ. Քաղաքն Աղաչ. գնօղին զիուրթըն ձեռն տալու: Եւ թէ օր գնօղն ձեռն չի արնուր սմճօրճին զիուրթը նայ, այն ժամանակէն որ ձեռն առնու նայ, պի ըսգսվի դէրմինը ու պի վազէ մինչեւ ութը տարի: Բայց թէ որ մէկնիվօր կաղտան, որն օր ուժէ գօնդրագդը տվիլէ Պ. Քաղքին էգզագդօրիային եւ մաշօլուիդ[4] անէր զքանը, մագար հիօր անկարիային եւ չունէնար վիճարելու զաքիսին դէնօրին գօրայ եւ թապլըվէր իուրթէն նայ, ունէնայ այնպիսին Պ. Քաղքին ասոր առաջ հասդատածին գօրայ, այն ըսդըկին գվանդումը այսինքն ըզչօրսոււմ պանը

---

1 Հունգարերէն է, կը նշանակէ՝ տանտէր:

2 Félig. Հունգ. է, կը նշանակէ, կէսը, կիսով չափ:

3 Ս. Գէորգ. այսինքն Ապր. 24:

4 Másolni, խօսքը էտ առնուլ, չպահել. Հունգ. է:

Պ. Քաղքին վինգուլում[1] վար դնելու ու պի մնայ խուրթըն Քաղքին, եւ այսպէս աբսօլուա-լուխդ պիլայ: Աս ալ գիտացվի, որ անկարիաներ անցնէին ու չիվիճարէր, ասէլօվ թէ զշահն պիտամ. նայ, այս ագձէբդօվադ[2] չիլալ, հապա քիչ մըն ժամանակ անցնէր անկարիայէն նայ, անոր շահըն պիտայ: Ու չիլայ դէ անկարիայէ անկարիայ անցնէր ու չիվիճարվէր. զէրայ ասոր համար էրկնցուցած է զդէրմիններն, որ ալ հեշդով ըննի Պ. Քաղքըցոցն, որ չի կարենան էգսգուզաձիայ[3] անէլու: Եւ պատճառն, որ թողվեցաւ այն կազտանուն, որն օր կիսօվ ու-զէնան դէրմինին վիճարէլու, այս է, որ Պա-տուելի Քաղաքն զօր պարտգի մէջ կու գտվի, նայ կուզինք որ ալ թէզով ըսդակ քաղվի եւ պարտգերն վիճարվին, որ ալ թէզով խալըսինք պարտգերուն: Դարձեալ գիտելի է, որ այս հասդատութիւնը մէկ վօղումօվ այնպէս հաս-դատվեցաւ, որ ասոր ետեւանց մարդ ալ չի էլէ ու ալալ խօսք ու կալաճի[4] անէ, որ մաշուլուխդ ըլայ բանը. հապա ամէն անգամ ու ամէն ժա-մանակ հասդատ մընայ, մինչեւ որ ֆէլիհ վի-ճարվին եւ իւրուգիւշն[5] կազտանուն մնան խուրթեռն:„

---

[1] Լատ. է. ըսել է գրաւ, գրաւական, ապահովա-ցուցում:

[2] Accepto. ընդունիլ, յանձն առնուլ:

[3] Excusatio. արդարացուցում, անմեղադրութիւն:

[4] Կալաճի. Դրանսիլուանիայի հայոց լեզուաւը կը նշանակէ. խօսք, զրոյց:

[5] Örökösen. Հունգարերէն է, ըսել է՝ մշանջենապէս, յաւիտեան:

Բայց ինչպէս կ'երեւայ, այս որոշումն ընդդիմութիւն գտաւ մանաւանդ անոնցմէ, որոնք գնած երկիրներուն — թէպէտ արժէքին կէս — գինն Աւգոստոս 31ին պէտք էին հատուցանել: Սակայն քաղաքային վարչութիւնն ըրած որոշման վրայ հաստատուն կեցաւ. ու երեք ամիս ետքը, 1766 փետր. 8ին, ձայնից մեծամասնութեամբ որոշեց թէ ամէն բան մնայ վերջին ժողովքին — 1765 դեկտ. 12 — սահմածին համեմատ: Դուրս առնելով՝ այն մէկ կէտը, թէ երկիրներ գնողներն, որ կէս գինը պիտի հատուցանէին 1766 Աւգոստ. 31ին, ըստ այսմ որոշման, հարկ չկայ որ մէկ անգամով վճարեն. այլ իրենք ալ ութ տարուան միջոցի մէջ կրնան վճարել, սկսելով վճարքը ներկայ տարւոյն Ապրիլի 24էն: Յայտնի է որ այն երկիրներուն նկատմամբ էր այս որոշումն, որոնց գնումն արձանագրութեան մէջ չէր անցուած: Նախընթաց ժողովքին մէկալ ամէն կէտերը հաստատուն մնացին:

Յետագայ արձանագրութենէն ա՛ս կը հասկըցուի, եւ կամ գոնէ ես այսպէս կը հասկընամ:

“Աստուծոյ ողորմութեամբն 1766 փետրուարի 8ին ելիզաբէդան.

Քաղվելով Պ. Մակիսդրադն եւ Պ. Սուդան ի միասին. եւ գօնդրօվէրզիայ էլէլով վասն ծախած հուրթերուն կողմանէ, որն որ ասոր առաջ, 1765 դեկտեմբերի 12ին հասդատիլէր Պատուելի Մակիսդրադն եւ Պ. Սուդան, թէ

ինչ կերպիւ վիճարվին։ Ուրեմն հինտիկ[1] ալ բլուրարիդէ վօգօրում,[2] զայն հաստատութիւնը տեղը կը թողու.[3] էգսձէբդօ,[4] որ կէս ըսդակը ամինեվին չի արնըվի, այլ թէ ութը տարի դէրմինօվ անկարիադիմ, գալ Սըմճօրճէն տարոց տարի պի վիճարվին, օվ որ ուզէնայ բընէլու զայն եուրթերն, որն որ բրօղօգօլին մէջ չին մտիլ, կամքը պիլայ։[5] Բայց մէկալ բունգդերն 1765 դեկտեմբերի 12ին հաստատութիւնը ամէնը ին վիկօրէ[6] պի մնան։ Եւ այս կերպիւն պի կարավարվի զաբիններօմն ալ եւ վինգուլումօմն ալ։[7] Եւ այսպէս պի մնայ հաստատութիւնը, հաստատ ամէնայն ժամ։„

Բայց ուրիշ բան ալ կրնայ ըլլալ խնդրոյն մէջ։ Եւ է յաջորդը։

Բուն անմիաբանութիւնն ու խառնակութիւնն, որչափ որ կ'երեւայ, ժողովականաց մէջ եղած պիտ'որ ըլլայ, որոնց մէջէն ոմանք — գուցէ աւելի աղքատ կարգի խորհրդականք — հաւան չէին այն՝ Դեկտ. 12ին որոշման, որուն համեմատ՝ իրական դրամով երկիր գնողները՝ բաւական էր, որ երկրին գնոյն կէսը միայն

---

[1] Հինտի կամ հիմպի, կը նշանակէ. հիմակ, այժմ։

[2] Բազմութեամբ ձայնից, քուէից. լատիներէն է, հայերէն գրերով։

[3] Այսինքն. Այն որոշածը՝ կը հաստատէ, կը վաւերացընէ։

[4] Լատ. է. ի բաց առեալ։

[5] Նշանակութիւնն է. Եթէ կամք ունենայ երկիրները պահելու, պահէ։

[6] Լատ. է. կը նշանակէ, կենդանութիւն, կայտառութիւն։ Իմաստն է՝ հաստատուն, անշարժ պիտի մնան։

[7] Այսինքն, նոյնը պիտի ըլլայ անդորրագիրներուն ու գրաւականներուն նկատմամբ ալ։

վճարելով՝ բոլորը վճարած սեպուէին։ Ոմանք ալ հակառակեցան, թէ նախընթաց — 1765 Դեկտ. 12 — եւ թէ այս — 1766 Փետր. 8 — ժողովոյն որոշմունքներուն. եւ զասոնք ապօրինաւոր համարեցան։

Ժամանակիս քաղաքապետը Խնկանոս Ա. Դանիէլեան իւր կամքը բացարձակապէս յառաջ տանիլ ուզելով, այն քանի մը բաւական ծանրակշիռ կէտերուն — զորոնք տեսանք — գործադրութիւնն որոշած էր, բայց ինչպէս ապահովապէս կը տեսնուի, ժողովքին մէջ միայն այնպիսի անձինք գտնուեցան ներկայ, որոնք իր կողմնակիցներն էին։ Եւ ասոնցմով խորհրդակցելով՝ իրերը լմնցուց, կտրեց՝ ըստ իւր քմացը. առանց մտածելու, որ այս բանս հետեւութիւններ ալ կրնայ ունենալ. եւ թէ ետքէն այս ժողովքին վաւերականութեան դէմ կրնայ տարակոյս ունեցուիլ։ — Դիւրին էր, իրաւցընէ, սահմանել ու հաստատել բան մը լիուլի ձայնով, երբ ժողովքին մէջ քանի մը — ու անոնք ալ իրեն կողմնակից — խորհրդականներ կային. եւ կամ որոշել ձայնից մեծամասնութեամբ, երբ անբաւական ձայներուն մեծագոյն մասն արդէն իրեն կողմը վաստըկած էր։

Արձանագրութեան այս կրկին բացատրութիւնները — “մէկ վօղումօվ„ ու “բլուրարիդէ վօղօրում„ — մտադրութիւն ընողին կասկածելի բան մըն է։ Թէ իրօք աս այսպէս եղած է, այսինքն թէ, դատաւորն ինք իր գլխուն, իւր մարդիկներովը հաստատած ու որոշած է, երկիրնե-

րուն վաճառման ու վճարման նկատմամբ այնպիսի բաներ, զորոնք գուցէ ընելու իրաւունք չունէր, անկէ ալ կրնայ հետեւցուիլ, թէ առաջին քաղաքային ժողովոյն մէջ — որ փետր. 8էն ետքն եղած է, — ամենէն յառաջ խնդրուեցաւ, որ սահմանուի թէ, անկից ետքը դատաւորն, ամենեւին բան մը, որ հասարակութեան որոշմանն ու իրաւանցը կը պատկանի, եւ մասնաւորապէս մշտնջենական բան եւ այն՝ յանուանէ, գետին, կալուած, կամ ուրիշ բան ծախելու նկատմամբ առաջարկութիւն ընել չկարենայ ու չհաստատէ յանուն քաղաքային վարչութեան, մինչեւ որ հասարակութենէն ու հարիւրոց ժողովէն, գոնէ քսան հոգի ներկայ չգտնուին ժողովքին մէջ. որոնց խորհրդովը միայն հաստատածն ըլլայ հաստատած ու մնայուն:

Աս բաւական չէ: Հասարակութեան ժողովը քայլ մըն ալ յառաջ գնաց ու սահմանեց, որ եթէ վերոյիշեալ թիւը — մէկտեղ հաշուելով հարիւրոց ժողովոյն անդամներն ալ — ներկայացուած չըլլայ ժողովոյն մէջ, այն ատեն առաջիկայ որոշման համեմատ, երբ դատաւորը, պահանջուած թուէն նուազ խորհրդականներով, մանաւանդ մշտնջենաւոր ու անշարժական բան մը հաստատէ, այն հաստատուածը՝ անվաւեր ըլլայ. եւ հասարակութիւնն իրաւունք ունենայ այն որոշուած բանն աւրելու ու նորէն հաստատելու, այնպէս՝ ինչպէս որ շատերը լաւ համարին: Եւ այնուհետեւ այն հաստատուածն. ըլլայ հաստատուն ու անփոփոխելի.

Ասոնք են ահա 1766, Սեպտ. 2ին ժողովոյն խօսքերը.

"Քաղվելով Պ. Մակիսդրադըն, Նըմանապէս Պ. Սուդան եւ խորհուրդ անելով վասն Հասարակութեան բարույն. ութվեցաւ Պ. Հասարակին, որ հաստատվի, որ ասոր էտէվանց ամէնէվիմը Պ. Աղաչայ Պիրօմն մէկ բան մըն ալ հասարակի, ինչ օր Պ. Հասարակը գոնձէրնալուիդ կու անէ, մանավանդ իւրիւգիւշ բան, որպէս իուրթ եւ օզկայ բան ծախել առաջ չի արնու եւ չիհաստատէ Պ. Հասարակին անընին տակը, մինչեւ օր թէ Պ. Մակիսդրադէն եւ թէ Պ. Սուդայէն, ալ քիչ քան 20 բէրսօնայ ներկայ չի գտվի, որ ըէկօլայ[1] քըսան հօգի ըլան խորհուրդին մէջ. որոնց խորհուրդօվըն ինչ օր հաստատվի նայ, հաստատ պիլայ եւ պիմնայ: Բայց թէ օր վերոյ նումէրըն գօմբլէդ չիլայ Պ. Մակիսդրադէն եւ Պ. Սուդայէն, եւ հաստատութեանս գօրայ Պ. Աղաչայ. Պիրօվըն ալ քիչ խորհուրդակիցներօվըն բան մը հաստատէր, մանավանդ իւրիւգիւշ բան, նայ այն հաստատութիւնըն հաստատ չիպիլայ, հապա ամէն անգամ պի կարէնայ Հասարակութիւնը զայն բանը ավըրրէլու եւ նօրէն հաստատելու, որպէս օր ալ շատոնց ութվի, եւ այնպէս հաստատութիւնը հաստատ պիլայ:"

Ըսել է թէ անմիաբանութիւնը՝ նոյն իսկ հասարակութեան ժողովոյն մէջ ծագած էր:

---

[1] Legalább 'հունգարերէն է. կը նշանակէ' գոնէ, առ նուազն:

ցեսութիւնները հոս այլեւայլ էին, ու դժբախտութեամբ չէ թէ մէկ, այլ շատ բանի նկատմամբ: Ասով՝ բնականապէս իրերը փոխանակ շտկուելու աւելի կնճռեցան: Որուն հետեւութիւնն ան եղաւ, որ այս միջոցին կարգաւորեալ ժողովքներ չկրցան ըլլալ:

Ասկից զատ կրնայ ըլլալ, որ անմիաբանութիւնն աւելի եւս արծարծեց ան ալ, որ մեծամեծք, որոնք ազնուականութի՛ն ընդունած էին 1758էն ի վեր, իրենց ազդեցութիւնն զգացընել կ'ուզէին հասարակ ժողովրդեան վրայ: Իսկ աս՝ խոնարհիլ չէր ուզեր: — Քաղաքացիք՝ աւելի զօրութիւն ստացան, երբ իմացան թէ վարչութեան ժողովոյն խորհրդականներուն մէջ կարծեաց տարբերութիւն կայ. ու հոն կը գտնուէին անանկ լաւազգածներ, որոնք ժողովըրդեան բարօրութիւնը կը փափաքին ու կ'ուզեն որ քաղաքացիք ալ երջանկանան:

Ասանկ գնաց իբր երեք տարի — 1766ի սկզբէն մինչեւ 1769ին գրեթէ վերջը: Այս միջոցին ժողովուրդն ատեն ատեն — թէեւ գաղտնապէս — իր տժգոհութիւնը կը յայտնէր. եւ ասով խառնակութիւնը՝ մանաւանդ երկիրներուն նկատմամբ՝ օր քան զօր կը շատնար:

## 22.

Այս վիճակին մէջ էին իրերն, երբ քաղաքային տեսչութեան ականջը հասաւ, թէ ժողովուրդն իրեն դէմ դառնապէս կը գանգատի, ըսելով թէ վարչութիւնն իրեն անիրաւութիւն

կ՚ընէ, զինք փճացընել կ՚ուզէ, այնու որ մեծամեծաց շնորհմունքներ կ՚ընէ ու զինք աղքատութեան ու ողորմելութեան մէջ կը ձգէ։

Քաղաքապաշխութիւնը վախնալով որ շփոթութիւնն աւելի չսաստկանայ՝ ընդհանուր ժողովքի մը գումարումն առաջարկեց։ — Որովհետեւ հոս մէկ կողմանէ յայտնապէս տեսնուեցաւ թէ երկիրներն ստուգիւ տկար ու ողորմելի են եւ չափազանց գնով տրուած են ժողովրդեան, եւ մէկալ կողմանէ ըսուեցաւ ան ալ թէ ժողովուրդը կը սպառնայ որ երկիրներն ետ կու տայ, որովհետեւ չունի ինչով վճարելու. -- դաշնագրութիւնն ալ այնպէս եղած էր՝ որ գնուած երկիրները գրաւ մնան, մինչեւ որ անոնց գինը վճարուի. — որպէս զի այս խառնակ ու անբնական վիճակին մէյ մը վերջ տրուի եւ իրերը յստակուին, որով թէ՛ քաղաքացւոց օգնութիւն ըլլայ ու թէ՛ վարչութեան վնաս չըլլայ. — որ ստուգիւ շատ նեղ վիճակի մէջ էր եւ ուրիշ եկամտի աղբիւր չունէր, ինչպէս կ՚ըսէ յիշատակարանն, եթէ ոչ երկիրները, — սահմանուեցաւ լիուլի քուէով, միանգամ ընդ միշտ եւ անդառնալի կերպով, թէ այն քաղաքացիքն, որոնք 1758էն իրենց երկիրներ գնած էին՝ թէ որ կ՚ուզեն, այն երկիրները կամովին պահել, պահեն. անոնց միայն կէս գինը վճարելով. բայց աս ստակն անմիջապէս վար դնեն հարկապահանջութեան ձեռքը։ Իսկ որ քաղաքացին չ՚ուզեր գնած երկիրները պահել՝ այլեւայլ ժամանակ տուած պայմանագիր վճարք-

ները (angaria), տասը տարի քաղքին վարչութեանը թողու, առանց շահի։ Թէ որ քաղաքացւոյն թողած այս երկիրը՝ հասարակութիւնը գնէ, այն ատեն տասը տարի ետքը վճարելիքը՝ հիմայ կը վճարէ։ Նաեւ անոնք, որոնք 1758էն երկիրներ գնած են, ու անոնց գինը կամ անմիջապէս իրական ստակով եւ կամ ժամանակ ժամանակ վճարելով հատուցած են, հասարակութիւնը՝ հիմակ տեսնելով եւ համոզուած ըլլալով որ անոնք ստուգիւ թանկ վճարուած են. ինչպէս որ վերը գնողներուն — որոնք զկէսը վճարած են ու զկէսը քաղաքն իրենց շնորհած է — անանկ ալ ասոնց կ՚ընէ. այսինքն, գումարին կէսին վրայօք համարակալութիւնն իրենց անդորրագիր կու տայ, թէ տասը տարի ետքն իր պարտքը անոնց կը հատուցանէ։

Ան ալ կը ծանուցանէ քաղաքային ժողովն, թէ անոնք, որոնք ատեն ատեն վճարելիքները իւր ժամանակին վճարած չեն, պէտք են այն ժամանակակէտին շահն ալ վճարել հարկապահանջութեան։ Դարձեալ՝ թէ այն կալուածներն, որոնց վրայ տներ կեցած էին, այն տները՝ կալուածներէն պիտի բաժնուին, անոնց արժէքը, գնուած գումարէն վար պիտի առնուի. միայն հողը պիտի հաշուուի, ու պարզապէս գետնին արժէքը՝ կիսու վրայ պիտի ամփոփուի։ — Դուրս կ՚առնուին ասկէ Ա. Ակոբշային եւ Զաքարիային երկիրներն, ինչպէս նաեւ անոնք, որոնց վրայ փայտէ տներ շինուած էին։ Բայց կրպակներն, ինչպէս նաեւ Վիգօլեանին տներն

ու ամբարտակները չէ. վասն զի զասոնք աժան ծախած կը գտնէ հասարակութիւնը։

Իրին աւելի հաստատութիւն տալու համար, քաղքին դատաւորն ալընթերակաց խորհրդականներէն մէկ քանին, ինչպէս նաեւ հարիւրոց ժողովյն նախագահն ու ասոր անդամներէն անոնք որոնք ներկայ էին ժողովյն, ընդ ամէնը՝ 25 հոգի, ժողովյն արձանագրութեանը տակ անուննին ստորագրեցին։

Ահաւասիկ այս ժողովքին յիշատակարանն, ըստ ժամանակից տարեգրութեան։

"1769. 29ma 10bris. Աստուծոյ ողորմութեամբն քաղվելով Պ. Մակխտրադն, նաեւ Պ. Հասարակըն մէկ տեղ, եւ ըլալով ասոր առաջ գօնդրավէրսիայ վասն ծախած իւրթերուն համար, որն որ ասոր առաջ 1758էն ծախած եղիլին Պ. քաղաքացոցը. եւ ճանչնալով զպաքսութիւնը վասն իւրթերուն կողմանէ, թէին սուբէրլադիվ՟ս կրատու[1] ծախած էղիլին. տեսնելով Պ. Հասարակը, մէմը զան թէ իժօվ թանկ ծախված ին եւ էրկուսումն, զգընօղնուն կամքն ալ, ասէլով թէ մինք ապսօլութէ[2] զգընած իւրթերն ետ կուտանք. զէ չունինք ընտօր վիճարէլու եւ անհընարին է բընէլու. եւ որով հետեւ գօնդրագդն ալ ասպէս էր գրած, թէ իւրթէրն գրակվանին, նայ դտաւ մէտիում[3] Պ. Մակխտրադն, նաեւ Պ. Հասարակն, օր Քաղ-

[1] Լատիներէն է, կը նշանակէ, վերջի աստիճանի, արտաքոյ կարգի։
[2] Բացարձակապէս, ոչինչ կերպով. լատ. է։
[3] Միջին ճամբայ, միջոց։

քըցիքն չի ավըրվին, որով հետեւ ունէնալով Պ. Քաղաքը զօր պաքսուԹիւն եւ չի գըտնելով օգնկայ ֆունտուշ, որ զպաքսուԹիւնը Պ. Քաղքինը լըմընցընու, ուԹվեցաւ Պ. Մակիստրադին նաեւ Պ. Հասարակին, եւ գոնգլուտօվադ եղաւ unanimi voto, semel pro semper et irrevocabiliter,[1] օր, որ Քաղաքացին գընած ըլար Պ. Քաղքէն իւրԹ ի տարըյն, որպէս ալ վեր, այսինքն 1758նէն, Թէ օր ուԹվի, զայն գնած իւրԹըն կէսի վերայ բըռնէլու, նայ ինմէտիադէ[2] ունէնայ Պ. էկզագդօրիային վիճարէլու զգընած իւրԹըն այսինքն զկէսը։ Բայց Թէ որ մէկնիվոր քաղաքացին չի ուզենար զիւրԹըն բըռնէլու, նայ զտված ասոր առաջ անկարիան ունէնայ Պ. Քաղքին մօտ Թօղէլու 10 տարի առանց շահ։ Բայց Թէ որ Պ. Քաղաքը ելէր գընելու նայ, այն ժամանակը ազձէբդալուիդ պիլայ, ասոր առաջ 10 տարով մընացած անկարիան։ Նաեւ վօրօնք օր վերոյ տադումէն այսինքն 1758էն, մինչեւ այսօր Թէ նաղտ ըսդըկի, Թէ անկարիայով վիճարիլին ֆէլիհ Պ. քաղքին ՊիտվականուԹեան ժամանակը եւ հիմպի տեսնելով Պ. Հասարակը, օր իժօվ Թանկ գինով վիճարիլին, նայ ինչպէս օր վերայ գընօղներին, օր կէսը կի վիճարին ու զկէսը Պ. Հասարակը պօշ արիլէ եւ մէկալ կիսուն վերայ Պ. Քաղաքը զաբիս տայ, օր տասը տարենը վերայ, իրենց վիճարէ, առանց շահ.

[1] Լիուլի ձայնով. միանգամ ընդ միշտ, անդառնալի կերպով։

[2] Immediate. անմիջապէս, անընդմիջապէս։

Նոյնպէս դարձեալ կիսուն վերայ զաբիս պի տրվի։ — Աս ալ գիտելի է, որ վօլօնք ինչվան զանկարիաները չին վիճարիլ դէրմինին նայ, զանկարիանուն շահը ունենան էկզագօրիան մինչեւ այսօր վիճարելու։ Նաեւ որ իւրթերուն վրայ որ քաղաքը ծախիլէր. եւ տըներ կեցիլին վրաներն, նայ տներըն լիմիդօվադ[1] պիլան, գը-նածին սումայէն դուս պի ձըգվի եւ նումայ յատուկ ֆունտուշը պի սէպվի. եւ յատուկ ֆունտուշը կիսու վերայ պի վիճարվի։ Նումայ Ա. Ակոբշայինը եւ Ա. Ջագարիաշինը, նայեւ ուրուխալ որ փատէ տըներ կեցիլին. բայց պօլ-դերըն, Ա. վիգօլին տըներն եւ շանցըն ամե-նեւինմբ չէ. որօվ հետեւ աժան կուլթվի Պ. Հա-սարակին։

Անդօն իսէգուձեան. յ. ց.
Պիրօվ Elizabet Քաղքիս,
Ղազար օհաննեց սէնադօր. յ. ց.
Լուսիկ Ակշի. ոսգրէչեն յ. ց. սէ-նադօր.
Դօտէր վըդիկի չիգիեն. յ. ց.
Անկսէնտ մանուկի իսըգուձեն յ. ց. սէնադօր
Մարտիրոս գօշդանց. յ. ց. սէ-նադօր.
Լուսիկ բադրուպանի յ. ց. սէ-նադօր

[1] Limito. զանազանել. զատել. բաժնել։

Լուսիկ Ամիրայի դանիէլեան յ. ց. սէնադօր

Նայեւ Պ. Սուդայէն.

Լուսիկ օ. Հ. Նիկօլի սէնգօվիչի յ. ց. սուպսդիգուուշ սուդաշ.[1]

Խաչգյ սընբր. յ. ց.

Ըսթէփան Պօշնկեանց. յ. ց.

Գոտէր ո. Հ. վարդնի իսիգուձեն յ. ց.

Զոկ. մանուկի (չի կարդացուիր) յ. ց.

Օհան. ո. Հ. իսայի. յ. ց. իմ խապուլս է.

Գրիգոր սահակի ագոնց. յ. ց. իմ խապուլս է.

Մանուկ գրիգորի հանգոյեց յ. ց. կամօվս է.

Սիմոն խաչէրեսի գապտէպոն յ. ց. կամօվս է.

Տօնիկ այսվատր. յ. ց. կամօք.

Միքըլ. Ո. Հ. վօդնի. իսիգձեն յ. ց.

Մարտիրոս մնկի իսըգուձենց. յ. ց.

Լուսիկ խաչիկի օսգրիչեն. յ. ց.

Մանուկ Վարդիկենց. յ. ց.

Զագարիաշ գօշօդն. յ. ց.

Զատիկ ո. Հ. Թումանի Զատի-կեանց. յ. ց.

Վարդան բադրուպանենց. յ. ց.„

---

[1] Փոխանորդ նախագահի, Հարիւրոց ժողովյն։

Սակայն այս որոշմունքն իրական արդիւնաւորութիւն մը չունեցաւ: Անմիաբանութիւնն ու զայրոյթը չէ թէ նուազեցաւ այլ աւելի եւս շատցաւ ու ոգիներն աւելի եւս գրգռեցան: Անշուշտ՝ ասոր մէկ պատճառն էր, որ քաղաքային վարչութիւնը այլեւայլ փոփոխութիւններով ու այլեւայլ ճամբաներով՝ երկիրները մէյ մը իրական ստըկի տալով, մէյ մը ժամանակակէտի վրայ կապելով, մէյ մը կէսի իջեցնելով, մէյ մ'ալ դրամագլխոյն միայն շահը պահանջելով՝ խնդիրներն անանկ կնճռեալ վիճակի մէջ խոթեց, որ փոխանակ շտկուելու աւելի եւս խառնակեցաւ: Մէկալ պատճառն էր ժողովրդեան աղքատութիւնն ու խռովասիրութիւնն որ աչք ու միտք ունենալով՝ կը տեսնէր ու կ'իմանար, թէ մեծամեծաց՝ երկիրներուն տուչութեան նկատմամբ շնորհմունքներ կ'ըլլուին. իսկ զինք վճարելու կը ստիպեն այլեւայլ ճամբաներով ու այլեւայլ պայմանադրութիւններով:

Ասանկ պարագաներու մէջ՝ վարչութիւնն ինչ ընելիքը չէր գիտեր: Թէպէտ կը փափաքէր որ հասարակ ժողովրդեան անիրաւութիւն ու զրկանք չըլլայ, բայց մէկալ կողմանէ ինքն ալ պարտքերէն ազատիլ կ'ուզէր ու չէր կրնար: — 1771 Յունուարի սկիզբներն ընդհանուր ժողով գումարուեցաւ: Հոս դառնապէս գանգատեցաւ հարիւրոց ժողովոյն նախագահն ու ճարտարաբան բերնով յայտնեց, թէ գնած երկիրներուն նկատմամբ այնչափ ժամանակէ ի վեր մեծ անմիաբանութիւն մըն է կը տիրէ ժողովըր-

դեան ու քաղաքային վարչութեան մէջ. որուն վերջը լաւ բան մը պիտի չըլլայ։ “Վարչութիւնն է ըսաւ — ի մէջ այլոց, — պատճառն այս ամէն խառնակութեան ու շփոթութեան, վասն զի մէյ մը կէս վարձով, մէյ մը նորէն ետ դառնալով՝ ու պայմանաւոր առենի վրայ կապելով, ասոր վրայ՝ իրական ստակով երկիրները ծախելով, այնպիսի անել լաբիւրինթոսի մը մէջ մտած է, ուսկից դուրս ելլելու ճամբան չի գտներ։ Մէկալ կողմանէ կալուածատէր քաղաքացիներն — աւելցուց — երկիրներ ունին. ու այսպիսի հակասութեանց մէջ՝ մինչեւ ցայսօր բան մը վճարած չեն։„ — Վարչութիւնն այս բաները լսելու պատրաստ էր. վասն զի ինք ամէնէն լաւ գիտեր ու համոզուած էր, որ իրերն ստուգիւ այս վիճակի մէջ են։ Ուստի որպէս զի այս խառնակ ու խռովայոյզ վիճակին մէյ մը — որ կերպով որ ըլլայ թող ըլլայ — վերջ տրուի, մտածեց որ վերջնական ու որոշ բան մը հաստատէ. որպէս զի ասով նաեւ համարակալութիւնն — որ ինչպէս կ'երեւայ մանաւանդ երկիրներուն պատճառաւն արգելուած էր կարգաւորեալ հաշիւ տալու, — ի վիճակի ըլլայ իր հաշիւները կարգի բերելու եւ միանգամայն քաղքին արկղին մէջ ստակ մտցընելու։

Շատ մը խօսելէն ու խորհելէն ետեւ ընդհանուր քուէարկութեամբ որոշուեցաւ՝ Ա. Որ այն ժամանակէն, որ քաղաքը կալուածատէրութիւնն ընդունած է, ինչ տեղեր որ իրական դրամով ծախուած են — որովհետեւ այն մի-

ջոցին իրօք աժան տրուած են երկիրները — ու գնողներն անմիջապէս ստակը վար դրած են՝ գնուած, վճարուած մնան: Եթէ քիչ մը պարտք մնացած է, ան ալ ամբողջ հատուցուի: — Բ. Նկատմամբ այն երկիրներուն որ ասկից նախընթաց որոշմունքներով՝ ընդդիմադարձութեան տակ ինկած, բայց վերջապէս իրական դրամով ծախուած են. սակայն ծախուելէն ետեւ՝ դարձեալ ժամանակակէտի թողուած են, ու այսպէսով ալ նորէն չեն վճարուած, այսու ամենայնիւ դեռ մինչեւ ցայսօր քաղաքացւոց ձեռքը մնացած են — որպէս զի ամենեւին եւ ոչ մէկ քաղաքացւոյ զրկանք ըլլայ, — կը սահմանէ հասարակութիւնը, որ քառասուն առհարիւր շնորհմամբ, ով որ գնած տեղը, պարտէզը կամ այգին պահել կ'ուզէ, թող պահէ. սակայն ամսուան մը միջոցի մէջ պէտք է որ անոր գինը վճարէ:

Աս որոշմանց նկատմամբ քաղաքային վարչութիւնը յաջորդ յայտարարութիւնն ըրաւ:

Նախ. Հասարակութիւնն ամէն քաղաքացւոյ ազատութիւնը կը թողու, որ եթէ գնած երկիրը պահել կ'ուզէ պահէ. իսկ եթէ չէ, քաղքին ետ դարձընէ:

Երկրորդ. Եթէ այնպիսի մէկն, որ երկիր գնած, ու մէկ կամ երկու հատուցման պայմանաժամն (angaria) վճարած՝ եւ կամ ամբո́ղջ գնածին գումարն արդէն հատուցած է. — որպէս զի առաջիկայ շնորհմամբ (devalvation) այնպիսի քաղաքացւոյն փոխարինութիւն մ'ըլլուի —

[redacted]



*թէ որ քաղքին հետ ուրիշ կողմանէ հաշիւ մ'ունի՝ թող ան հաշիւներուն խնդիրը համարակալութեան հետ լմընցընէ։ Եթէ այսպիսի քաղաքացի մը, նոր երկիր, պարտէզ, այգի եւ այլն գնել ուզէ՝ կարենայ այս իր պահանջմունքը երկրին վճարմունքին դիմաց հաշուել։ Եթէ սանկ բաներ չկան — այսինքն ուրիշ կողմանէ ոչ քաղքէն առնելիք եւ ոչ քաղքին տալիք ունի — այն ատեն տասը տարի սպասելու է. որ ժամանակի միջոցը լմըննալով՝ հարկապահանջութիւնն՝ այն ճանաչման մուրհակին զօրութեամբ — զոր ամէն մէկ պահանջողին ձեռքը պիտի տար, — իւր պարտքն ամէն մէկուն պիտի հատուցանէ. սակայն առանց շահու։*

*Երրորդ. Այն քաղաքացիքը, որ երկիրներ առնելով՝ մինչեւ հիմակ ամենեւին սակ մը չեն վճարած՝ թէ որ պահել ալ, թէ որ ետ դարձընել ալ ուզենան այն երկիրները՝ որչափ տարի որ զանոնք գործածած են, այնչափ անգամ հինգ հինգ փիորին տալու են համարակալութեան։ Իսկ եթէ գոնէ մէկ պայմանաժամ մը վճարած են, այն ատեն այս սակագինը վճարելէն ազատ կը կացուցուին։*

*Չորրորդ. Այն երկիրներն, որոնց վրայ ծախուելու ատեն շէնքեր կեցած էին ու շէնքերովը մէկ տեղ ծախուած էին, այն շէնքերուն գինը նորէն պիտի կտրուի, կալուածին գնէն դուրս պիտի առնուի ու միայն մնացածին — այսինքն զուտ երկրին գումարին — մէջէն քառասուն հարիւրչեայ շնորհմունք պիտի ըլլուի։*

Այս բաներուն համար — կ'ըսէ ընդհ. ժողովքը, — շատ անգամ քովէ քով գալով, շատ հեղ խօսելով ու շատ բանակռիւ ըլլալով՝ վերջապէս հաստատուեցան վերոյգրեալ որոշմունքներն, որոնք ասկից ետքը միանգամ ընդմիշտ հաստատուն ու անխախտ պիտի մնան։

Ասոնցմէ զատ սահմանուեցաւ ան ալ, որ եթէ հասարակութիւնն ինչեւիցէ տեսակ ու որեւէ անունով կոչուած շարժական կամ անշարժ բան մը աճրդով ծախու հանէ. ամենեւին առանց իրական դրամի չծախէ հապա գնողն դրամը անմիջապէս վար դնէ։

Ահաւասիկ այս ամէն եղածներն ըստ արձանագրութեան։

"Աստուծու ողորմութեամբն 1771 die 11ª Januarij. Քաղվելով Պ. Հասարակն վասն ծախված յիւրթերուն սէպը, որ այսչափ ժամանակէ տիշգօրտիայի[1] մէջ կաննիլին, անով որ յեփ դէրմիններով եւ կիսակէս վիճարքով, ալվի յետ դարնալով եւ նօրէնը դէրմիննէրօվ, կամ նաղտի ծախէլով, ինչեւիցէ. այնպիսի լապիրինթոսի մէջ ընկիլին որ գընողները, Քաղվըցիքըն, ինչվաս յիուրթով եղիլին եւ զգինը այսպիսի գօնդրովէրզիայի[2] մէչ մինչեւ ցայսօր չին վիճարիլ։ Որ այս ամենայն տիսէնսիային[3] մէմը վերչ ըլայ եւ յիւրթերուն կօղմանէ բամմը հաստատվի, հաստատվելով Պ. էգզագդօ-

[1] Discordia. հակառակութիւն. անմիաբանութիւն
[2] Լատ. է, կռիւ, վիճաբանութիւն ըսել է։
[3] Dissensio. անմիաբանութիւն, երկպառակութիւն։

րիանալ կարենայ սէպի տակ ըննելու. զոր սէպըն ալ իժօվ յիւրթերուն բանը ինչպաս իմբէտիա-լուիդ[1] արիլէ. Նաեւ Հիմպիկուցէն կարէնայ պան քազելու, Հասարակ վօգումօվ կօձկըլվեցաւ որ այսու յետեւ Հասդատ եւ այնփոփոխելի մնայ: Այսինքն 1758էն, քանի տօմֆնիումը մեռ գը-դածագունեղ Թագուհին, մեռ գօմաւնիդաշին շնորհիլէյ, ինչ յիւրթեր օր Նաղտի ծախածին որովհետեւ աժան գին ծաղվիլին եւ մէկէն ախօս վիճարիլային, մնան վիճարած. կամ թէյ թէօր խմքը ուէշդանձիայ[2] մնացած ըլլայ նայ, տէ բլէ-նոյ[3] վիճարվի: — Մէկալ յիւրթերըն որ ատոր արաչի Հասդատութիւններովը գօնդրօվէրզիայի տակ ընկիլին եւ վերչապէս Նաղտի ծախվիլին եւ ծախվաձգին էտէվանց ալվի դէրմիննէրով թո-ղածին, եւ անոր քովալ ինչպաս չին վիճարիլ. եւ մինչեւ ցայսօր յիւրթերըն Քաղքըցոցը ձեռգը արանց վիճարած կաննիլին. որ ոչ մէկ քաղ-քըցուն ալ ինչխուրիայ չիլայ, Հասդատվեցաւ եւ կօձկըլվեցաւ, օր 40 այսինքն քարսուն բըռ-ձէնդ տէ ֆալքացիայով[4] այսօրվանէն վօվօր ու-զէնայ զգընած յիւրթերըն, պաղչըներըն կամ էգըրսդանըն բընէլու նայ, այս գալ Փետրվարի 15ին ունէնայ վիճարելու, այսպիսի ալ վար գրած տէգլարաձիոյով.[5] 1ᵐᵒ. Ազատ կամք կու թողու Պ. Հասարակութիւնը, թէյ օվօր ուզե-

---

[1] Impedio. խափանել, արգելք ըլլալ:
[2] Restantia. վճարելիք, պահանջ:
[3] Լիովին, ամբողջապէս:
[4] Devalvatio. փոփոխութիւն, տէրութեան արժէ-թղթի մը, կամ դրամի մը արժէքին փախուելով նուազիլը:
[5] Declaratio. յայտարարութիւն, մեկնութիւն:

նայ ըրընէլու զգընածըն, նայ բարի. եւ չէնայ Քաղքին յետ տայ։ Բայց $2^{do}$. Թէօր անկարիամմը կամ էրկուս այնպիսի յետ տըվօղը ինչվաս վիճարած ըլար. կամ թէ զգընածին գինը ամէնօվը վար դըրած ըլայ. եւ զգընած յիուրթըն, էգին կամ պաղչան հիմպիկ յետ կու տայ, կամ թէ զայնպիսի գնվաձգըն հիմպիկ բընելով իսդով վիճարած ըլայ. եւ տէֆալգաձիօյէն այնպիսի Քաղքըցուն իքմը պօնիֆիգաձիօյ[1] դառնայ եւ Պ. էգզագդօրիան պարտք մնար նայ, թէ որ ունենայ իքմը սէպեր հետ Պ. էքզագդօրիային, հօն պի կարնայ սէպ բընելու։ Հօս չի հասգընալով միայն զան, որ թէօր շահու ըսդակ ունէնար այնպիսի քաղքըցին, նայ ունէնայ ըսդկով յետ վիճարելու, եւ այնպիսի սէպէրու մէջ չի կարնայ մըտցընելու. կամ թէյ թէօր նոր յիուրթ, պաղչայ կամ էգի գընէր այնպիսի քաղքըցին, նայ կարենայ զըրէդէնզիան[2] այնպիսի վիճարքին դիմաձ սէպելու։ Ասոնք չիլան նայ, ունէնայ 10, այսինքն տասը տարիք բօյէլու[3] եւ լմնալով 10 տարիքը Պ. էքզագդօրիայն իրեն ուէգօկնիձիօնալիշին[4] քօվ, զորըս ամէնայն մէկ բրէդէնտէնշին[5] արանց շահու գօնտիձիօյի քով պի տայ, այնպիսի քաղքըցուն զըրէդէնզիան արանց շահ պի վիճարէյ։ $3^{tio}$. Վօրոնք որ յիուրթեր գընիլին. եւ ոչ մէկ անկարիամմըն ալ

---

[1] Հատուցում, փոխարինութիւն։

[2] Pretensio. պահանջմունք։

[3] Բօյել. Դրանսիլուանիացւոց լեզուաւը կը նշանակէ՝ սպասել։

[4] Պարտուց մուրհակ. ընկալագիր։

[5] Պահանջող. լատ. է։

ինչվաս չին վիճարիլ, բրնէյին կամ թէյ յետ տային գյիւրթերըն, նայ քանի տարէք որ գյիւրթերըն բընիլին, անչափ տարպայ հինկ հինկ ըզըօթ Պ. էքզագդօրիան դաքշայ ունէնան եւ պարտական պիլան վիճարէլու: Բայձ թէօր միայն մէկ անկարիամմը վիճարած ըլան, նայ դաքշայէն զատ պիլան: 4^to. Ցիւրթերը վօրոնց վերայ ծախվաձգին վօղըը[1] չէնք գտվիլէ եւ չէնքովը ծախվիլին, նայ այնպիսի չէնքերը գին պի կտրըվին, յիւրթերուն գինոչմուն դուս պի ձըգվին. եւ մնացածին մէչէն տէֆալգաձիօյ պիլայ 40 pct.: Ջոր հասդատութեանս վերայ մինչեւ որ այս վերայ գրեալ կերպիվըն օր կօճկըվեցաւ, շատ անգամ քաղվելօվ եւ գօնձէրդաձիօյ[2] ունենալով, որ այսուհետեւ սէմէլ բրօ սէմբէր[3] հասդատ եւ անփոփոխելի մնայ, մէկ հասդատ կամօք ուխտվեցաւ Պ. Հասարակին: Նաեւ ասկից դուս Հասարակօվ կօճկըվըցաւ զան ալ, որ այսուհետեւ մագար ինչ դուըլու աննօվ անվանելու աղէկըն գօմունիդաշինը, թէյ մօպիլէ եւ թէյ իմմօպիլէ, լիձիդաձիայով օր ծախվէր, արանց սդակ ամենեվին չի ծախվի. այլ թէյ իմմէտիադէյ վիճարվի նաղտով. եւ զայս ասդից ինտան մինչեւ որ Աստուած զքաղաքըն հասդատ պահէյ, մնացական ըլայ:»

---

[1] Անեն. ժամանակ, միջոց:

[2] Concertatio. բանակռիւ. վիճաբանութիւն:

[3] Լատ. է, հայերէն գրերով: Կը նշանակէ՝ միանգամ ընդ միշտ:

## 23.

Վերջին էջերուն մէջ կարդացած բաներէն բաւական առիթ ունեցանք տեսնելու, թէ Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց մէջ եղած անմիաբանութեան ու խառնակութեան պատճառը, երկիրներուն մասնաւորաց ծախուիլն ու զանոնց քաղաքացւոց բաշխելն էր։ Երկիրները բաշխելուն պատճառն էր անշուշտ դրամոց պակասութիւնը. իսկ դրամոց պակասութեան պատճառը՝ վերոյիշեալներէն զատ, ինչպէս պարագաներն, ըստ մասին կուահել կու տան, նաեւ քաղքին համարակալները կամ գանձապետներն էին. որոնք թերեւս չէին կատարեր իրենց յանձնուած պաշտօնն անանկ հոգւով եւ այսպէս խնամքով ու խղճմտանքով եւ մանաւանդ հաւատարմութեամբ, ինչպէս որ պէտք էր, ու ինչպէս որ իրենք այն պաշտօնը ձեռուընին առած ատեն, երդմամբ կը խոստանային։

Քաղաքային վարչութեան մէջ համարակալութեան պաշտօնը 1733էն ետքն սկսաւ։ Առ այս հասարակօրէն քաղքին ամենէն պատուաւոր անձինքները կ'ընտրուէին. որոնք արդէն ուրիշ կողմանէ փորձուած մարդիկ էին։ Շատ նշանաւորութիւն ունեցաւ այս պաշտօնը՝ մանաւանդ 1758էն ետքը, երբ քաղաքը՝ տէրութենէն Պաշտպալովի կալուածատէրութիւնը գնեց։

Համարակալութեան պաշտօնը (exactoria) շատ ընդարձակ էր Եղիսաբեթուպոլսոյ վարչութեանը մէջ։ Համարակալք՝ ինչպէս ուրիշ տեղ

տեսանք, հաստուցանելի տուրքերը կը ժողովէին եկամուտքները կը քաղէին, հաշիւները կը նայէին ու կը վերաքննէին, ստացուածները կը գրուէին (executor), քաղքին տնտեսութիւնը կը հոգային ու գանձապետութիւն կ'ընէին: Ուստի եւ զարմանք չէ՝ եթէ այս պաշտօնին մէջ, ինչպէս պիտի տեսնենք, ժամանակաւ մեծամեծ զեղծումներ եղան:

Համարակալութիւնն ալ, ինչպէս քաղքին ուրիշ շատ պաշտօններն, ի սկզբան առանց վճարումնքի էր: Ետքէն սկսաւ աս ալ վարձատրուիլ, բայց շատ քիչ վճարումնքով: Երբ որ հետզհետէ պաշտօնը կարգաւորուեցաւ, վճարքն ալ բարձրացուեցաւ:

Եղիսաբեթուպոլսոյ պաշտօնական արձանագրութեանց մէջ՝ համարակալութեան պաշտօնատէր ընտրելու վրայօք առաջին յիշատակութիւնը կը գտնենք, հազիւ 1745ին սկիզբները նշանակուած՝ այն առթիւ որ քաղաքային խորհրդանոցն եւ սարըստան քովէ քով գալով՝ չորս հոգի համարակալութեան վրայ — մեծաւոր անունով — պաշտօնատէր ընտրեց: Ասոնց յանձնուեցաւ որ քաղքին բոլոր հաշիւները քննեն, ու ճշդիւ նային թէ ինչ է քաղքին մուտքն ու ելքը:

Այս միջոցին — ինչպէս ժամանակակից արձանագրութեննէն յայտնապէս կը տեսնենք — որովհետեւ համարակալները կամ թէ ըսենք, ելեւմտից վերատեսուչները, քաղքին ծերակուտի անդամներէն կարգաւ կ'ընտրուէին. —

1745 Յունուար 10ին — սահմանուեցաւ թէ՝ մինչեւ որ կարգը լմըննայ, նոյն պաշտօնը յաջորդաբար շարունակուի. բնականապէս առանց վճարմունք մ'ունենալու: Երբ կարգը լմըննայ, այն ատեն աղաչաններն ընտեն իրենց մէջէն զանիկայ զոր արժանաւորագոյն կը համարին: Ընտրուած համարակալն՝ իրեն յանձնուած պաշտօնն անպատճառ պէտք էր ընդունիլ: Ցանձն չառնողը՝ 24 հունգարական ֆիորին տուգանք պիտի վճարէր:

Ահաւասիկ արձանագրութեան խօսքերը:

“Anno 1745, ունվարի 10ին.

Խորհուրդ եղաւ Պատուելի դըլնաճըն. Պատուելի Աղաչաններն եւ Պ. Աղաչայ Սարըսդան իւր Աղաչանէրօվն վասն էգզաքդօրութեան համար, օր ունէնան զամենայն քաղքին սէպերն արնէլու. եւ փընտրէլու թէ ինչ ունի քաղաքըն վընիդ.[1] եւ ուրուխ ինչ կի խարճըվի միոստ միոչէ, ինչուան ի մէկ պան: Եւ այս տարի դրան եւ հաստատեցին էգզաքդօրիային վրայ մեծաւոր Պատուելի Աղաչայ խազարն Օհանեանց. Աղաչայ Անկսէնտ մանուկի խըրգուցըն. Ա. Օվանէս Օսգերիչեանց. Ա. խաչիկ քէլեանց:

Այսուհետեւ այնպէս հաստատացին Պատուելի Աղաչաններն, օր ըօընտօվ[2] ըլայ այս էքզաքդօրութիւնը, մինչեւ լմնայ. այս ըօընտս եւ արանձ հախ: Ետեւ, եփոր լմնայ ըօընտը, նայ

---

[1] Մուտք. եկամուտ:

[2] Ըօընտ. Դրանսիլուանիայի հայոց լեզուաւը կը նշանակէ՝ կարգ, յաջորդութիւն:

ինչպէս որ ուզէնան Պատուելի Աղաչաններն ու բղոր Աղաչան ընտրէր Պատուելի ղըլնաճըն էքզաքդօր ըլալու եւ չի կամէնար ըլալու, նայ ճուրում դրաւ Պատուելի ղըլնաճըն 24 մաճրի ճուրում:„

Երկու տարի ետքը, քաղքին արձանագրութեանցը մէջ կը գտնենք Համարակալութեան պաշտօնին "երկուսում հասդատութիւնը„ այսինքն երկրորդ ընտրութիւնը: Նոյն գործքն ու պայմանները կը դրուին համարակալաց առջեւ, ինչ որ դրուած էր 1745ին: Այս միջոցիս համարակալ ընտրուեցան յաջորդ աղաններն, այսինքն Պետրոս Քէլեան, Ամիրայ Խնկանոսեան, Տօնիկ Տիագօնի եւ Թորոս Ըւանի: — "Ամին 1747 Դեկտեմբերի 22ին, եղեւ երկուսում հասդատութիւնն եւ ընտրութիւնն, վասն էքզաքդօրութեան սէպըն, որ առնուն սէպ եւ այլն:„

Ամ ժամանակէն սկսեալ, կանոնաւորեալ կերպով կ'ընտրուէին չորս համարակալներն, երբեմն տարուէ տարի, երբեմն՝ երկու տարի մէյ մը: Բայց ընտրութիւնն երեք տարին երբէք չէր անցներ:

Տասը տարի ետքը, կամ թէ 1757ին, կը գտնենք թէ համարակալութեան ընտրութիւնը հինգ հոգւոյ վրայ կ'իյնայ: Ասոր պատճառն անշուշտ այն էր որ քաղքին հաշուեկալութեան վերաբերեալ գործքերն աւելցան: Համարակալներուն գլխաւորը նախագահ անունը կ'ընդունի: Ընտրելոց առջեւ կը դնէ քաղաքային

թիւնն որ ընտրութեան ժամանակ ըրած երդման համեմատ՝ գլխաւոր գործքերնին ըլլայ, հասարակութեան տնտեսութեանը հոգ տանիլ եւ քաղքին եկամուտները ժողովել: — Այս առթիւ համարակալութեան պաշտօնին քարտուղար մըն ալ — Մանուկ Գրիգորեան — օգնական կը տրուի:

“. . . Նմանապէս եղեւ շնաւոր ընտրութիւն պ. Աղաչայ էգզագգօրնու որ ունենան, այն երդումին քով, որն որ էրֆընցիլին պ. քաղքին եւ հասարակին, զամենայն էգօնոմիան պ. քաղքինը եւ հասարակինը փնտրելու եւ պ. Քաղքին գասան քաղէլու:

Ա. Մարտիրոս Գոշոդանի, բրէզէս էգզագօրիայի:

Ա. Ասվատոր վիգօլեանց, խորհրդակից էգզագդօրիայի:

Ա. Ջատիկ Թորոսեանց.

Ա. Անտոն Նիգօշի խիգուցեանց.

Ա. Լուսիկ Ղազարի.

Ա. Մանուկ Գրիգորի, նօդարիուշ էգզագդօրիայի:„

1759էն սկսեալ, վճարում ալ կը տրուի հասարակութեան կողմանէ համարակալներուն: Հաստատեց, կ'ըսէ սոյն տարւոյն տարեգիրն, էգզագգօրներուն տարեկան վճարք՝ նախագահին 40 հունգարական ֆիորին ու երեք առընթերակացներուն վեցական ոսկի կամ երեսնական ֆիորին: Աս անգամ ընտրուած համարակալներն են՝ Թէոդորոս Շիմիլովցի, նախագահ.

Մարտիրոս Գոշղանի, Մանուկ Շիմիլովցի եւ Յովհ. Մնբէդրեանց:

“Նմանապէս եղեւ շնաւոր ընտրութիւն բոլոր հասարակաւն, Աղաչայ էգզագդօրնու, որ ունէնան զամենայն ցեղ էգօնօմիան փնտրելու, սէպ արնելու ամէնուն մօտէն: Ու Աղաչայ էգզագդօրնուն հասդատեց Պ. հասարակն տարեկան հախ. Ա. էգդագդօրիայի բրէզէսին H. F. 40, եւ երեք ասէսօրին,[1] մէկին 6 ոսկի, այտինքն H. F. 30, տարեկան: Եւ գիտամձվի որ ունոյ վօդոյ ընտրեցին զայս ալ վար գրած աղաչաներն. այտինքն Աղաչայ Դօտէր վարդիկի շիմիլովցոնց, բրէզէս. Աղաչայ Մարտիրոս գոշղանի. Աղաչայ Մանուկ դավիդի շիմիլովցոնց. Աղաչայ օվանէս Ա. խաչգցի սնբէդրեանց:„

Տարի մը ետքը համարակալութեան պաշտօնին մէջ փոփոխութիւն կ'ըլլուի: Փոխանակ մինչեւ հիմակ սովորութիւն եղած չորս համարակալներու, կ'ընտրուի միայն երկուք: Թէոդորոս Վարդիկեանց՝ Նախագահ. ու իրեն օգնական Մարտիրոս Գոշղանեանց: Բայց որպէս զի գործքերնուն մէջ իրենց թեթեւութիւն մ'ըլլայ՝ կ'որոշուի, որ պէտք եղած ատեն, դատաւորն իրենց օգնութեան խաւրէ որ եւ է քաղաքացին: Տարեկան վճարմունքնին յիսնական ֆիորին է:

“. . . Նմանապէս հասդատեց Պ. Մակիսդրադը, բոլոր հասարակօքն եւ գօնֆիրմօզար

---

[1] Assessor. լատ. է, կը նշանակէ՝ աղընթերակաց, խորհրդական:

տրաւ զՊ. Աղաչայ, էքզաքդորներն այսինքն զՊ. Ա. Պոտէր վարդիկեան, բրէզէնս էքզաքդորիայի: Նմանապէս զՊ. Մարտիրոս Գօշօղանեանց էքզաքդօր: Եւ հաստատեց Պ. քաղաքն հախ երկուսին ամսոյ H. F. 100, որ կարավարին իրենց հրամանքներն զՊատուելի քաղքին աղէկը այսինքն պարտքեր հանէլով, պարտքեր վիճարելով եւ այլն. զորն որ Աստուած շնորհաւոր արասցէ:

NB. Վասն իրենց հրամանոցը թեթեւութեանը համար, թէ որ պէտք ըլայ, Պատուելի Աղաչայ Պիրօվը, ընտրուիդ պանէ, այնպէս ատենը զհի որ մէկ քաղքըցին, որ էրթայ աճուդադ անէ Աղաչայ էքզաքդօրնուն:„

1762ին համարակալ կ'ընտրուին՝ Յովհաննէս Ոսկերիչեանց նախագահ. եւ Թորոս Ունանի: Ասոնց օգնական կը տրուին հարիւրոց ժողովքէն՝ Միքայէլ Խսիգուցեան եւ Յովհ. Խայի:

“Աստուծով 1762. ունվարի 5ին: Եղեւ շնաւոր ընտրութիւն Պ. Էլիզաբէդ Քաղքին էքզաքդօրնուն. եւ ունոյ վօդոյ ընտրեցին զՊատուելի Աղաչայ, Օվաննէս ոսկերիչեանց բրէզէս էքզաքդօրիայ եւ զՊ. Աղաչայ Թորոս ունանի: Պատուելի Աղաչայ Սուգաշնուն մէջէն ակիւդովադ[1] կլան երկու Աղաչայ. Ա. Միքայէլ ո. հ. վարդանի Խսիգուցն. Ա. օհան ո. հ. Խայի:„

Յաջորդ տարին — 1763ին — համարակալները միայն տարուան մը համար ընտրուե-

[1] Adjungo. քովը դնել, օգնական տալ:

*ցան։ Այս պաշտօնին Նախագահը կ՚ըլլայ Աղա Թուման Ջատիկեանց, 100 հունգ. ֆլորին տարեկան վճարքով, ու Աղա Թորոս Յունանեան, 30 ֆլորին վճարմունքով։ Իսկ հարիւրոց ժողովոյն մէջէն, իրենց օգնական կը տրուին, անոնք որոնք անցած տարի ալ ընտրուած էին. այսինքն Միք. Խոխգուցեան եւ Յովհ. Խայեան։ Եւ որպէս զի ասոնք բոլորովին ձրի չաշխատին, երկուքին ալ տասնական ֆլորին տարեկան վճարք կը տրուի։ Համարակալներն, իրենց պաշտօնը գրով պիտի ձեռք առնուին, ու գրով պիտի յանձնէին քաղաքային վարչութեան։*

1768*ին համարակալութեան պաշտօնը կը յանձնուի մեր պատմութեանը մէջ մեծ դեր խաղացող Աղաչայ Աստուածատուր Վիգօլեանի։ Իրեն աընթերակաց կը տրուին Մարտիրոս Գոշողանեան եւ Մանուկ Գրիգորեան։ Վճարմունքնին էր* 200 *հունգարական ֆլորին, զոր մէջերնին պիտի բաժնէին։ Պաշտօննին փոխն ի փոխ պիտի կատարէին, եւ մէկը մէկալին համար պատասխանատու պիտի ըլլար։*

“1768 *հոկտեմբերի* 20*ին էլիզաբէդան։ Քաղվելօվ Պատուելի Մակիստրադը եւ Պ. Հասարակը, ընտրեցին նորէնը էկզագդօրներ զՊատուելի Աղաչայ Ասվատուր վիգօլի եւ զՊ. Աղաչայ, Մարտիրոսը գօշօղանի, նաեւ զԱղաչայ, Մանուկը Գրիգորի. եւ հախը պիլայ իրենց հրամանոցը* 200 *մաճրի այսինքն երկու հարուր մճրի, որ ունենան իրենց հրամանքները փայ անէլու։ Այնպիսի գօնդիձիայով, օր ունէնան*

էկզագօրիան վէնդիլօվագ[1] անէնու, եւ այսուհետեւ սէպ տալու մէկը, ինչպէս մէկալը:»

Գիտեն ընթերցողները թէ 1771 Յունուար 11ին, երբ ընդհանուր ժողով մը գումարուեցաւ, որպէս զի քաղքին խանգարեալ դրամական վիճակը քիչ մը տեղը բերեն ու ծախուած երկիրներուն նկատմամբ եղած խառնակութիւնը դադրեցընելու համար ճամբայ մը գտնեն՝ յառաջ բերուեցաւ ի մէջ այլոց, թէ անոր համար ալ այս անբնական վիճակին վերջ տալու է, որպէս զի քաղաքային վարչութիւնը նաեւ համարակալներէն կարենայ հաշիւ պահանջել. որոնք — ինչպէս ըսուեցաւ — մանաւանդ երկիրներուն կնճռեալ վիճակի մէջ ըլլալուն պատճառաւն՝ արգելուած էին կարգաւորեալ հաշիւ ցուցընելու[2]:

Իրօք ալ համարակալք, որ հասարակութեան պաշտօնատէրներուն մէջ ամենազօրներն էին, գլուխնին շատ բարձրացուցին: Շատոնց իրենց պաշտօնն ըստ խղճի չէին կատարեր: Եւ որովհետեւ ամենեւին մէկէ մը վախ չունէին, անոր համար քաղաքային վարչութեան տարիներով հաշիւ չէին ցուցըներ: Ասոր այն պատճառը կու տային, որ երկիրներուն խառնակ վիճակն արգելք կ'ըլլայ: Հասարակութիւնը աչք գոցեց. համբերեց մինչեւ ցժամանակ մը. բայց երբ համբերութեան բաժակն ա՛լ լեցուեցաւ, ընտրեց առժամանակեայ համարակալներ, իրենց

---

[1] Ventilo. քննել, նայիլ, (օրինակի աղագաւ՝ հաշիւ մը):
[2] Տես՝ էջ 375:

յանձնելով որ քաղքին ստացուածները մանրամասնաբար քննեն ու եզրակացութիւնն իրեն ծանուցանեն։ Քննութիւնն երեւան հանեց թէ ամէն բան տեղն ի տեղ չէ։ Ասով յայտնուեցաւ թէ համարակալք բաւական ժամանակէ ի վեր ուղիղ ճամբուն վրայ չէին քալած։

Ասոր վրայ բոլոր հասարակութիւնը ժողովելով, երկու համարակալ ընտրեց, զՂուսիկ Դանիէլեան եւ զՋատիկ Թ. Ջատիկեան։ Առաջնոյն տրուեցաւ 100 հունգարական ֆիորին, իսկ երկրորդին 80 ֆիորին։ Բայց առջեւնին դրուեցան յաջորդ շատ աչքի զարնող ու միանգամայն խոնարհեցուցիչ պայմանները։ Ա. Սնտկի արկղը միշտ ծերագոյն համարակալին քով պիտի կենար։ Արկղը կրկին բանալի ունենալով՝ մէկն առանց մէկալին երբեք իշխանութիւն պիտ'որ չունենար քաղքին արկղին դպչելու։ Բ. Առանց հասարակութեան յայտնի գիտութեանն ու հաւանութեանը՝ համարակալք ամենեւին մարդու մը, ոչ քաղաքացւոյ եւ ոչ մասնաւորի, ստակ պիտի չկարենային տալ, ոչ շահով եւ ոչ առանց շահու։ Կ'ենթադրուի նաեւ որ իրենք իրենց յատուկ գործածութեանը համար անկէ ստակ պիտ'որ չառնուին։ Գ. Համարակալներն՝ ըստ իրենց կարողութեանը միշտ պիտի ջանային եկամուտները ներս առնելու ու պարտքերը վճարելու։ Երբ այնչափ ստակ ըլլար քաղուած արկղին մէջ, որ ինչեւիցէ պարտագիր մը ի վիճակի ըլլային հատուցանելու՝ յառաջուընէ հասարակութեան իմաց

պիտ՚որ տային որ անոր հաւանութեամբն ըլլայ վճարմունքը։ Դ. Ամէն տարւոյն փետրուար մէկին, առանց ուշանալու, հաշիւ պիտի տային հասարակութեան։ Եթէ այս բանս որեւիցէ պատճառի համար չկամենային կամ՝ չկարենային կատարել, սահմանեալ ժամանակէն անդին վճարմունք պիտի չընդունէին։ — Ահա ժողովոյն արձանագրութիւնը։

"1776 die $1^{ma}$ Februar. Քաղվելով պատուելի Մակիսդրադըն եւ Պ. հասարակն, եղավ ընտրութիւն էքզագդօրութեան, եւ հաստատվեցան Պ. հասարակի էքզաքդօրներ Պ. Աղա Լուսիկ Ամիրայի Տանիէլեան, 100 այսինքն հարուր մճըքի սալարիումով[1] եւ Ա. զատիկ Թումանի զատիկեան 80 այսինքն ութսուն մճըքի սալարիումով։ Բայց պի ունենան, ալ վար գրած բուգդէրուն գօրայ կարավարէլու։

$1^{mo}$ Սընտուկը գասայինը միշտ պի կաննի ալ ծեր էքզագդօրին մօտ, զոր Սընտուկըն ունէնալով պաշխայ գօցեր[2] էրկուս, հէտեւապէս էրկու բալինք, մէկը պի կաննի մէկին, եւ մէկալը մէկալին մօտ. անպէս օր մէկը արանց մէկալին չի ունէնայ authoritas մէկ ժամանակ մընալ Պ. Քաղքին գասային մէկ կերպիվ մընալ դըբջելու։

$2^{do}$ Արանց per Expressum,[3] հասարակի

---

[1] Լատիներէն է, կը նշանակէ՝ վարձք, վճարք։

[2] Գոց. Դրանսիլուանիայի հայոց լեզուաւը կը նշանակէ կղպակ։

[3] Յայտնի. բացայայտ։

գիտնալունը, չի կարնան Ա. էքզագդօրները մարդուեալ, օչ քաղաքացու, օչ օգկայ հիինչ բրիվագնու պան, թէյ արծըթէյ եւ թէ պղըն-ծէյ, արանց շահ կամ շահուեալ դուս տալու. եւ օչ իրենց հռամանքներըն ատուկ իրենց սէ-պին վերայ առնէլու։

$3^{tio}$ Կարօղութեանցը գօրայ Ա. էքզագ-դօրներն ճահդ անին[1]. ըզactiv պարտքերըն ինգասադ անէլու, եւ ըզpassiv պարտքերըն դուս վիճարէլու. այսինքն քաղվելով անխըտար պան գասան, որ դուսի հիինչ զաբիս կրնայ վի-ճարվելու, նոյն ժամանակըն իմաց պի անին in-dilate[2] Պ. հասարակին, որ խրէրօվը ըլլայ այն-պիսի վիճարքըն։

$4^{to}$ Տարին լըմըննալօվ այսինքն $1^{ma}$ Fe-bruarij 1777 սէպ տալու կի ճօրօվցրվին.[3] եւ absque ulteriori dilatione[4] սէպ տան, անպէս որ թէօր հիինչ obtingensի[5] համար չի կարնային, չի ուզենային սէպ տալու նայ, տարէկան հախէն դուս superfluum[6] ժամանակի համար մէկ հախ մըն ալ չի պի ունէնան։„

Համարակալաց առջեւ դրուած այս կա-նոնադրութենէն կրնանք դիւրաւ տեսնել ու հետեւցընել, թէ ինչ էին, եւ ինչ տեսակ՝ պակ-սութիւններն, որ համարակալութեան պաշտօնին

---

1 Ետեւէն իյնալ, ջանալ։
2 Շուտով, անյապաղ։
3 Բռնադատել, ստիպել։
4 Առանց ուշանալու. առանց որեւէ յապաղման։
5 Պատահար՝ դէպք, պատճառ։
6 Աւելորդ. մնացած։

*մէջ խել մը տարիներէ ի վեր կը պատահէին։ Քաղաքային վարչութեան աչքը հիմակ — թէպէտ ուշ — ալ բացուեցաւ։ Վերյիշեալ համառօտ կանոնադրութենէն զատ, յօրինեց համարակալաց համար ընդարձակ հրահանգ մը ու զանիկայ առջեւնին դրաւ իբրեւ կանոն։ Ասոր համեմատ պիտի շարժէին։ — Իրենց տրուած հրահանգաց գլխաւոր կէտերը՝ յաջորդներուն մէջ կը բովանդակենք։*

*Թէպէտ համարակալութիւնը — կ՚ըսէ քաղաքային վարչութիւնը, — միշտ պատուաւոր անձանց ձեռքը տրուած էր, այսու ամենայնիւ այս պաշտօնը հիմակ վերանորոգուելով եւ ուրիշ կերպարանքի մտնելով, որպէս զի համարակալք ըստ այսմ կարենան պաշտօննին կատարել ու նոր կանոնադրութեան մէջ ոչ պակասութիւն եւ ոչ չափազանցութիւն մ՚ըլլայ, ուզեց քաղաքաբաշխութիւնն իրենց պաշտաման պատկանեալ կէտերը՝ գրով առջեւնին դնել, որ առանց մէկ բացառութեան մը անոնց համեմատ գործելով՝ հասարակութեան ստացուածքը ձեռուընին ունենան եւ բազմացընեն։*

*Այս համառօտ յառաջաբանն ընելէն ետեւ, յաջորդ կերպով կը շարունակէ վարչութիւնն իր փափաքելի կէտերը։*

*Ա. Նորընտիր համարակալները, հասարակութեան բեռը վրանին առնելով՝ կատարեալ միաբանութեամբ, խաղաղութեամբ եւ մէկ սրտով իրարու հետ ձեռք ձեռքի տալով, ջանան*

*իրենց կարողութեանը համեմատ, գործքերնին կատարել։*

*Բ. Հասարակութեան բոլոր ստացուածներուն, երբեք օրինակի մէջ գրուած կահագիրն ընդունելով, զանոնք՝ իրենց յատուկ ձեռամբ պիտի ստորագրեն. եւ ստացուածքը ձեռուընին առնելէն ետեւ, մէկը մէկալին համար պատասխանատու պիտի ըլլան, համերաշխաւորութեան պարտականութեան տակ։ Երբեք օրինակի մէջ առնուած կահագիրը հասարակութեան քով պիտի մնայ։*

*Գ. Թէ որ անկից ետքն, որեւիցէ տեսակ դրական պարտք մը — եկամուտ մը — տեսնուէր, որ իրենց տուած օրինակաց, դրական պարտուցը մէջ մտած չըլլայ, այն ատեն առանց դատաւորին հրամանին — միայն իրենց յատուկ իշխանութեամբ, միայն իրենց գիտութեամբը — ձեռուընին ստակ պիտի չառնուն. հապա դատաւորին գիտութեամբը՝ սովորեալ անդորրագիրը տալով, արկղի մէջ անցընեն։*

*Դ. Արկղը՝ երկու տեսակ բանալի ունենալով, երկուքն ալ համարակալներուն ձեռքը պիտի տրուի։ Բայց մէկն առանց մէկալին հաւանութեանը, երբեք արկղին պիտի չդպչի։ Թէ որ հանդիպէր, որ մէջերնէն մէկը տունը չգտնուէր, եւ հասարակութիւնը՝ ազատ կամ աւատառութեան չվերաբերող ժառանգութեան բան մը գնահատելով, զանիկայ ծախելու հարկադրէր, տունը գտնուող համարակալը, ծախէ այն բանն իր անունին տակ, եւ դրամն առնե-*

լով՝ քովը պահէ, առանձինն տեղ մը։ Երբ որ հեռաւոր համարակալն ետ դառնայ, անոր հաշիւ տալէն ետեւ, ընդունած դրամը՝ մէկալ ստակներուն հետ խառնեն։ Ըստ այսմ, եթէ որ ներկայ չեղող համարակալի մը ատեն, հասարակութիւնը դրամոց որոշ գումարի մը պէտք ունենայ՝ տունը գտնուող համարակալն առաձինն, արկղին ձեռք պիտի չդպցընէ, հապա — դատաւորին հրամանով — իրեն երդուեալ քաղաքացի մը պիտի խրկուի, որն որ հեռաւորութեան մէջ եղող համարակալին պաշտօնը պիտի լեցընէ։

Ե. Յիշեալ պաշտօնատէրները իշխանութիւն պիտի չունենան, ամենեւին մէկ մարդումըն ալ, ոչ քաղաքացւոյ եւ ո՛չ ալ օտարի մը, ո՛չ արծաթէ եւ ո՛չ ալ պղնձէ ստակ փոխ տալու՝ շահով եւ կամ առանց շահու. առանց հասարակութեան գիտութեանը։ Այս իշխանութիւնն ամէն անգամ, քաղաքաբաշխութիւնը պիտ’որ տայ իրենց, ոչ թէ պարզ խօսքով, այլ գրով։ Ասոր մէջ չի հասկըցուիր ան, որ երբ դատաւորն, իր դատաւորութեան պաշտաման վերաբերող հարկաւորութեան մը համար, համարակալներէն ստակ ուզենար առնելու անգորրագրով, իրեն ստակ չտան. Աս դէպքիս մէջ, առանց հասարակութեան գիտութեանն ալ, պիտի կարենային իրեն ստակ տալ։

Զ. Համարակալք պիտի ջանան, իրենց կարողութեանը համեմատ, ըստ հաշուեգրոց — առանց ազգականութեան եւ կամ բարե-

կամութեան միտ դնելու, նոյն իսկ իրենք եթէ պարտականութիւն ունին — հաշիւները ճշդիւ հաւասարցընելու. եւ զուրիշներն ալ, ըստ պատշաճի յարդորելու. որ պարտքերնին վճարեն: Եթէ որ այնչափ գումար մը ժողովի, որ պարտք մը կարենան հատուցանել, այն ատեն պաշտօնապէս գրով իմացընեն հասարակութեան, ու թէ որ սահմանէ հասարակութիւնն որ վճարուի այն գումարը, պարտականութիւննին է անմիջապէս առանց ուշանալու այն բանն ընել լմնցընել:

Է. Հասարակութեան կամքն է որ համարակալք ամէն տարի փետր. 4ին հաշիւ տան. ուստի եւ ջանան որ առանց ետ մնալու այն հաշիւները պատրաստ ըլլան. վասն զի այլազգ, ըստ արձանագրութեան, յիշեալ օրն իրենց վճարմունքը պիտի դադրի:

Այս կէտերը հաստատած է հասարակութիւնը, յիշեալ պաշտօնատարց համար, զորս անխախտ պահելու են, մինչ եւ որ հասարակութիւնն անոնց վրայ փոփոխութիւն մ՚ընէ: Այս բանս ընդ ծանր պարտաւորութեամբ պատասխանատուութեան կը դրուի իրենց վրայ:

Ահա կանոնադրութեան կէտերն, ըստ բնագրին:

## Instructio.[1]

Anno Domini 1776. Die $4^{ta}$ Februarij հասդատած Պ. Էքզագգօրիանը: Որովհետեւ

---

[1] Հրահանգ:

*ողորմութեամբն Աստուծոյ էքզագդօրիան Պա-
տուելի քաղքինը, ասոր առաջ ալ Պատուոյ
արժանի անձանձ մէյ կարավարվիլէ, այսու ա-
մենայնիվ հիմպիկ երեւելի կերպիւ կարգաւո-
րութեան եւ սէպի տակ մտիլէ. անոր համար որ
Պատուելի, աս տարվան ընտրած էքզագդոր-
ներն անոր գօրայ կարնային կարավարէլու եւ
ոչ* in defectu *եւ ոչ* in Excessu *նոր նօրմայինը
ըլալու,*[1] *կամեցաւ Պատուելի Հասարակըն զկա-
րավարութեանն բունպդէրըն, իրենց հռամա-
նոցըն առաջ տալու գրօվ, որ առանց մէկ* Ex-
ceptio*ի*[2] *մը, անոնց գօրայ ամէն ժամանակ կա-
րավարվելօվ, զհասարակին աղէկը շահեցնուն*[3]
*եւ բազմացնուն: Ութվէլով անոր համար Պա-
տուելի Հասարակին, որ*

1mo *Նոր ընտրեալ Պատուելի Աղաչայ*
Exactor*ներըն զհասարակին բէրը վըրաներըն
առնէլով, զնույնը* in Summa concordia quiete.[4]
*մէկ սըրտօվ, մէկմէկի հետ համգընալօվ ամե-
նայն բանի մէջ վերջ ջանան, կարօղութեանցը
գօրայ տանէլու:*

2do *Ջըռլոր Քաղքին աղէկին արած* Ter-
nionu[5] *մէջի ինվէնդարիումներըն* Super Activis
Bonis,[6] *ատուկ ձեռամբ* subscriptio*ներովն ամ-*

---

[1] Այսինքն. Որպէս զի նոր կանոնադրութեան մէջ ոչ նուազութիւն եւ ոչ աւելորդութիւն ըլլայ:

[2] Բացառութիւն, զարտուղութիւն:

[3] Կը նշանակէ, Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը՝ ստացուածքը գործածեն:

[4] Ամենայն միաբանութեամբ եւ հանդարտութեամբ:

[5] Երեք, եռեակ, երեք հատ:

[6] Այսինքն՝ դրական ստացուածոց վրայ:

պրցընուն․ անոր էտէվանց, օր ձէրվըններըն տր-նուն զՔաղքին աղէկըն․ assumpto uno pro alia insolidum cavendij obligamine,[1] զոր Ternion պի ճնայ Պ. Հասարակին ձէրգըն։

3tio Արանց Պատուելի Աղաչայ Պիրօվին հռամանին, իրենց հռամանքներըն, թէ օր հի ինչ activ պարտքմը այսուհետեւ արաջ գար, որն որ տված Ternioին մէջ activ պարտգէրունը չի կենայ գըրած, propria Authoritate,[2] իրենց միայն առուկ գիտութեամբ չի արնուն ձէրվը-ներըն մէկ պան մըն ալ, հաթէ ան ժամանակին Պատուելի Աղաչայ Պիրօվին գիտնալօվըն Erga solitam quietantiam[3] պի անին incassat.[4]

4to Գասային Սընտուկը ունէնալօվ էրկու divers բալինք, պի տրվին էրկուսն ալ Աղաչայ էքզագօրնուն ամպէս օր, մէկը արանց մէկալին Authoritաշ չի ունէնայ մէկ ժամանակ մըն ալ անոր դըրքչելու, հաթէ, թէ օր հանդըրպէր, օր մէկը տունը չիլար եւ Պատուելի Հասարակէն մէկ սօյ մը allodiatura[5] գին կտրէլօվ պէտք պիլար օր ծախվէր, նոյն ժամանակը մընացած Exactorըն պի ծախէ իրեն անըննին տակը եւ քաղէլօվ զպանը առուկ մօտը պաշխայ․ անոր էտէվանց, որ տուն էկիլէ ընկէրըն, նայ սէպ պիտայ, թէ զծախվածքըն եւ թէ զincassat

[1] Մէկը մէկալին համար համերաշխական պատաս-խանատուութեան պարտականութեանը տակ։

[2] Յատուկ՝ սեպհական իշխանութիւն, հեղինակու-թիւն։

[3] Սովորեալ անդորրագրով։

[4] Մտակ առնուլ, արկղել։

[5] Ազատ՝ ազնուականաց ժառանգութիւն։

պանը, զորն որ սէպ արնէլով, պի խայնին մէ-կալ գասային հետ: Ասոր գօրայ թէ օր in absentia[1] ատպէս մէկ Exactorի մը Պ. Հասարակըն պիտոյութիւն ունէնար խէլի[2] ըսդըկի, նոյն ժամանակըն ալ մէկալ ընկերըն չի դըրջի մէնէնակը սընտկին, հաթէ exmittat[3] պի արվի Պատուելի Աղաչայ Պիրօվին հռամանաւն մէկ էրֆֆընցած Աղաչամը, որն օր supplealuit[4] պի անէ զապսէնսին պարտականութիւնը:

5to Իշխանութիւնն չի պի ունէնան յիշեալ Ա. officiantներըն մարդույեալ, ոչ Քաղաքացու եւ ոչ Extraneuշի[5] պան, թէ պըղընծէ եւ թէ արծըթէ, շահու կամ արանցն շահ գասայէն դուս տալու, արանց Պատուելի Հասարակին գիտնալուն. զոր ֆուգալդաշըն ամէն անգամ գըրով եւ չէ կալաձօվ պի տըվի յիշեալ Աղաչանուն: Դուս ասգից հասգըցվի, թէ օր Պատուելի Աղաչայ Պիրօվըն իուր Պիրօվութեան իշխանութիւնը նալէժիդ[6] անօղ պագսութիւններուն համար, Erga quietantiam,[7] կամէնար պան Exactoriaէն արնէլու. նոյն ժամանակը արանց հասարակին ալ պիտան:

6to Ճահդ պի անին կարօղութեանցը գօրայ, օր տըված տէֆդէրնուն գօրայ, արանց մէկ

---

[1] Ի հեռաւորութեան, ինչպէս նաեւ քիչ մը վար եղող տօղենոը հեռաւոր՝ կը նշանակեն:

[2] Անտարակոյս՝ որոշեալ, շատ մը՝ պիտի նշանակէ:

[3] Խրկել, առաքել:

[4] Տեղ մը՝ պաշտօն մը լեցընել, փոխանակել:

[5] Արտաքին, օտար:

[6] Կարծեմ՝ պատկանող, վերաբերող կը նշանակէ:

[7] Ընկալագրով, անդորրագրով:

distinctioյի[1] մը ազգականութեան կամ ուրիշ բարեկամութեան. թէեւ իրենց հրամանքներըն, թէ որ օպլիկադ[2] կի գտվին նոյն տէֆդէրնուն մէջ, accurate[3] վիճարին, եւ թէ զուրիշներըն suo modo et ordine adigat անին[4] վիճարքի: Եւ թէ որ քաղվէր ամպէս սումամը, որ ըղմէկ նիվօր passivum debitum[5] մը կարնային depurat անէլու,[6] նոյն ժամանակըն իմաց անին պատուելի Հասարակին, եւ Commissionaliter.[7] որն որ գըրօվ պիլայ ամէն անգամ: Թէ որ կըտրըվի, որ վիճարվի նայ, պարտական պիլան indilate զըանը երկպյօվ վէրջ տանէլու:

$7^{mo}$ կամքը հասարակինը ըլլալօվ, որ $4^{ta}$ Febr. տարոց տարի սէպ տան Աղաչայ. Exactorներըն,[8] անոր համար ջանք պի անին, որ արանց մէկ հադրօյ մօրօտաշի[9] մը, հատիր ըլան. alioquin,[10] ըստ բրօդօգօլումին դէնօրինը, $4^{ta}$ Febr. սալարիումը cessat[11] կըլայ:

Զոր բունգդերըն հասդատած պատուելի Հասարակէն, որ անխախդ ամէն անգամ usque ad revocationem Communitatis[12] բըռնին յի-

---

1 Զանազանութիւն, ընտրութիւն:
2 Պարտական, պարտաւորեալ:
3 Ճշդիւ:
4 Ըստ պատշաճի եւ ըստ օրինի ստիպեն:
5 Ժխտական պարտք, իրական պարտք:
6 Վճարել, հատուցանել:
7 Ընդհանուր, հասարակաց հաւանութեամբ:
8 Համարակալ:
9 Եօ միալ, ուշանալ (հունգարերէն է):
10 Ապա թէ ոչ, այլապդ:
11 Վճարումը պիտի դադրի:
12 Մինչեւ որ քաղաքապաշխութիւնը յետս կոչէ:

չեալ officialisներըն.[1] sub gravi animadversione[2] imponat կի արվի[3] իրենց հռամանոցը։

E Confluxu Communitatis[4]

Վարդան Շիմիլովցու. յ. Յ.„

Հանճարեղ միտք ու մեծ շրջահայեցութիւն պարունակող կէտերն անփոփոխ մնացին միշտ. այն տարբերութեամբ միայն, որ համարակալները, հաշիւնին չէ թէ ինչպէս վերը սահմանուած էր, փետրուար 4ին, այլ ամէն տարուոյն սկիզբը պիտի մատուցանէին հասարակութեան։ Այս բանս, որոշուեցաւ տարի մը ետքն, երբ համարակալ ընտրուեցաւ նորէն Զատիկ Թ. Զատիկեան եւ Լուսիկ Բագրուպանեան։

Ահաւասիկ հասարակութեան որոշումն, ըստ արձանագրութեան։

“Anno Dni. 1777 die 27 Jan. եղավ շնորհավոր ընտրութիւն էքզագգօրութեան. վորովըն ընտրըվեցան Պատուելի Աղաչայ Լուսիկ Բագրուպանեան եւ Ա. Զատիկ Թումնի Զատիկեան. sub iis omnibus punctis et conditionibus,[5] որպէս 1776 die 1$^{ma}$ Februarii, sub No. 243, per expressum[6] կայ գըրած, hoc addito, որ cum fine Decembris Anni cur.[7] ունէնան յի-

[1] Պաշտօնատէր։
[2] Ընդ ծանր պարտաւորութեամբ։
[3] Իմբօնադ անել = վրան դնել, յանձնուիլ։
[4] Ի ժողովոյ հասարակութեան։
[5] Այն ամէն կէտերումն ու պայմաններովը։
[6] . . . տակ . . . յայտնապէս։
[7] Վրան աւելցընելով որ առաջիկայ տարւոյն Դեկտեմբերի վերջը։

չեալ Աղաչայ ընտրած էքզագդօրները endilate սէպ տալու: Հախըն պիլայ Աղաչայ էքզագդօրնունը մէկին մէկին 90 մածրի. այսինքն տարեկան գըլօխ:„

## 24.

Յայտնի է որ Եղիսաբեթուպոլիս բոլորովին ազգային գաղթականութիւն մ'ըլլալով, հոն օտարազգին ամենեւին տեղի չունէր: Ասբանս տէրութիւնը գիտէր. ու քաղաքային վարչութեան խնդրելովը հրաման տուած էին թէ Կարոլոս Զ. եւ թէ Մարիամ Թերեզիա, որ Հայերն՝ օտարազգիքը գոհ ընելով՝ իրենց մէջէն կարենան հեռացընել:

Ասոնք են ահա Կարոլոսի 1733ին Եղիսաբեթուպոլսեցւոց տուած առանձնաշնորհութեան կոնդակին, առաջին կէտին խօսքերը. "Եթէ մեր կալուածոց երկրին հպատակներէն մէկն՝ որ հայազգի չէ, այս՝ Հայոց շնորհեալ տեղւոյն վրայ (այսինքն Եղիսաբեթուպոլիս) կը բնակի, ու տուն ունի, այն տեղէն ելլէ երթայ ու մեր Պաշտպալովի կալուածներուն մէկ ուրիշ մասին մէջ դնէ իր բնակութիւնը:„ — Նոյնը՝ գրեթէ կրկնուած կը գտնենք, բայց ուրիշ խօսքերով 25 տարի ետքը Մարիամ Թերեզիայի արտօնագրին մէջ. ուր ըսուելէն ետեւ թէ հասարակութիւնը՝ Պաշտպալովի կալուածները քաղքին մէջ կրնայ առնուլ, կ'աւելցուի. "Ըստ հետեւորդի — հայ չեղող հպատակներն անկէ կալուածատէրութեան ուրիշ տեղերը կարենայ փոխադրել:

Ենթադրելով՝ որ անոնց համապատասխանող երկիրներ պիտի տայ քաղաքը. իսկ վարձակալներն սակով գոհ պիտի ընէ։„

Այս առանձնաշնորհութեան վրայ շատ նախանձախնդիր էին Եղիսաբեթուպոլսեցիք. եւ նոյնը կը գործադրէին. որովհետեւ ամենեւին, ոչ իսկ օտարական ազգային մը կ'ուզէին մէջերնին առնուլ։ Օտարածին արուեստաւոր, գեղացի, գործավար, վարձակալ եւ այլն շատ մը պայմաններով ներս կ'ընդունէին. իսկ կրթեալ, ազնուական, բանէ հասկըցող մարդ, բայց մանաւանդ երկրատէր, ոչ երբէք։ — Գլխաւոր պայմաններէն մէկն էր, որ քաղաքացի ըլլալ ուզողն առուտուր պիտի չընէր։ — Ընդհակառակն սիրով կ'ընդունէին այն օտարածինն, որ այնպիսի արուեստ մը կը վարէր, զոր հայք սովորութիւն չունէին գործածելու, օրինակի աղագաւ դերձակ, կօշկակար, սափրիչ, աղխսագործ եւ այլն։

Թէ՛ օտար ազգայիններն եւ թէ՛ այլազգիները ներս ընդունելու եւ քաղաքացի ընելու նկատմամբ այլեւայլ ժամանակ, այլեւայլ կարգադրութիւններ կը գտնենք Եղիսաբեթուպոլսոյ քաղաքային օրէնսդրութեան մէջ։

Քաղքին ծերակոյտն արդէն 1732ին որոշեց այն ազգայիններուն համար, որոնք առ ժամանակեայ կերպով Եղիսաբեթուպոլիս կուգային բնակելու, թէ նշանակուի, որ ե՛րբ եկած են։ Ասոր համեմատ պիտի որոշուէր ու գրի անցուէր, թէ ամէն մէկը քաղքին ո՛րչափ տուրք

*պէտք է տալ: Եթէ այն ազգային օտարականը՝ վրան դրուած տուրքովը գոհ ըլլար, զի բարի — կ'ըսէ քաղաքապաշխութիւնը — ապա թէ ոչ բարով եկաւ, բարով երթայ: — Գոհ չեղողին ժամանակ կը տրուէր, քաղաքային վարչութեան կողմանէ, ամիս մը, որ քաղքէն ելլէ եւ ուզած տեղն երթայ:*

*Լսենք օրէնսդրութեան խօսքերը՝ տարեգրին բերնէն:*

*“1732 Մայիսի 15 օրն: Այսպէս եղաւ մեր պատուելի դըլնաճին հրամանը. վասն մուսաֆիր էկօղ մարդիգացը, թէ որն երփ կամ ինչ ատեն էկիլըն: Ու պի գրվի զանըները ու համ թէ ինչ ժամանակէ էկիլըն ու անոր գօրայ պի գրվի թէ վօվ ինչ պիտայ մեր քաղքին. ու թէ օր գօնդէնդ ըլլան նա, բարի. ու վօվօր չէ նայ, բարով էկիլէ ու բարօվ էրթայ: Գօնդէնդ չեղօղին դէրմին դրանք ա. ամիս, օր անպատճառ ելէ քաղքէն ու երթայ ուրուխ ուզէնայ:„*

*Այսպէս, օրինակի աղագաւ, Աւագեանին որդին Աստուածատուր Եղիսաբեթուպոլիս գալով 1729ին, ոչ տուրք կու տար եւ ոչ տալիք: Քաղաքն այս բանս առիթ առնելով որոշեց, որ այնուհետեւ ամէն նոր եկողն ոսգի մը տայ քաղքին: Աս օրէնքին հետեւութէամբ Աւագեան՝ դատաւորին վերջիշեալ հարկը վճարելով, ըսուեցաւ որ անկից ետքն ազատութեամբ կրնայ Պաշտպալով բնակիլ:*

*“1732 Հօկտեմբերի 22ին: Ավատուր ավաքինը, ինչպէս օր եկիլ էր ի պաշֆալօմն*

երեք տարօվ արաջ ու օչ տալիք կուտար եւ ոչ խարճ. Նայ այնպէս գտավ պատուելի դընաձն, օր նոր եկողներն ունենան ա. ա. օսգի քաղքին տալու: Նայ գիտացվի օր տվաւ ասվատուրը ա. օսգի Աղաչայ պիրօվ պետրոսին ձեռն. եւ անոր ետեւ կլայ ի պաշֆալօմն կենալու խաղաղութեամբ: Եւ գիտացվի օր այսպէս բըրնըվեցաւ ասվատուրը ավագինը, օր այսուհետեւ հի ուրուխ օր կէնայ նայ, ունէնայ ըսդըրաժ ըլալու, կարքն գայ նայ:„

Ուրիշ օրէնք մըն ալ կը գտնենք, ազգայնոց՝ Եղիսաբեթուպոլիս գալու եւ բնակութիւն հաստատելու վրայօք: Եւ է յաջորդը: Ատեն մը՝ Ազնուական կոչուած փողոցին վերատեսուչ եղող օտարածին ազգային մը — Լուսդիհի — իւր խաթունին միջնորդութեամբը հրաման խնդրեց որ գնած տներուն մէջ կարենայ բնակիլ, իր կնոջը հետ: Քաղաքային վարչութիւնը՝ խորհուրդ ընելով, որոշեց, որ թողուն զիրենք Եղիսաբեթուպոլիս բնակելու, մինչեւ որ ուրիշ քաղաք կամ գեղ տեղ գտնեն: Սակայն այն պայմանաւ, որ փողոցապահն ամէն տարի 10 գերմանական եւ կամ 12 հունգարական ֆիորին տուրք տայ: Եթէ անկից ետքն ուզենայ հաստատապէս քաղաքացի մնալու, պէտք է քաղքին երդում ընէ ու քաղաքացի ըլլայ: Բայց Եղիսաբեթուպոլսոյ քաղաքացի ըլլալէն ետեւ՝ եկեղեցւոյն, ինչպէս նաեւ քաղքին պէտքին համար իր կարողութեանը համեմատ, բան մը պիտ՚որ տայ, ինչպէս ամէն քաղաքացի կու տայ:

Եթէ ինք այս պայմանները յանձն առնու, աղէկ. իսկ եթէ չէ, քաղաքը՝ կայսերական հրամանագրին համեմատ՝ իր տունը կ՚արժեցընէ ու զինք ըստ այնմ գոհ ընելով՝ կրնայ բանը երթալ: — Եւ որովհետեւ որչափ կ՚երեւայ, երկու տարի վարած էր իւր պաշտօնը պէտք եղաւ որ այն երկու տարուան համար ալ քաղաքացիութեան տասնական ֆիորինը վար դնէ: — Ահա այս դէպքին արձանագիրն ըստ բնագրին:

"1735 Մայիսի 20.

Պատուելի Դըլնաճը այսպէս խորհուրդարին վասն լուսդիհին տնէրու: Ինչպէս որ էկիլէ եւ իրեն սէպն, այսինքն պուտէին օտոր պիրօվն. ինչպէս որ եկիլէ իր հրամանոցը պիքան այսինքն ընկերն, Աղաչայ լուսիկին Թորոսին մօտ եւ խընդրըվիլէ, օր արաջ տայ Պ. Դըլնաճը վասն իրենց տներուն սէպն կամ կենալուն:[1] Եղաւ այսպէս հրաման եւ խորհուրդ Պատուելի դըլնաճէն, թէ այնպէս գօնտիձիայի վրայ պի թօղուն զիրենց հրամանքները, որ մինչեւ օզկայ քաղաք կամ գեղ կենայ նայ, ունէնայ տալու քաղքին, տարոց տարի տասը նէմէցի զլօթ այսինքն տասվերկու մաճրի մաճրքի. իւր տանը դաքշայօվըն. եւ անոր հէտեւ թէ օր կամէնար, որ այս մեռ քաղաքը գալու եւ կէնալու նայ, ունէնայ իրեն հրամանքը էրդֆընալու քաղքին քօվ եւ ըլլայ քաղքըցի, ինչպէս մէկ օզկայ քաղքըցի մը. եւ

[1] Ամբողջ պարբերութեան իմաստն է. — Պուտէի (փողոցի) վերակեցուին կինը, Ա. Լուսիկ Թորոսին եկեր ու խնդրեր է. որ իրենց տներուն մէջ բնակելու նկատմամբ, ծերակուտի ժողովքին մէջ առաջարկութիւն ընէ:

անոր հետեւ պիտայ քաղքին թէ ժամի թէ օգկայ պիտվականութեան քաղքի, իրեն հալին գօրայ, ինչպէս մէկ քաղքըցի մը։ Եւ տալեց ու խարճին սէպըն, ունէնայ տալու իրեն հալին գօրայ։ Եւ թէ օր զայս վերոգրեալ բանէրուն հական չիգայ նայ, քաղաքը նիմիդօվադ[1] պի անէ. եւ պի վիճարին իրեն, օրպէս կայ գրման տիպլումին մէջ։ Դարձեալ զայս վերոյ գրեալ 10 զլօթը ունենայ տալու դեկտեմբերի վերջը։ Բայց զայս տարըվէն արաջ, երկու տարին հախ կամ խարճ մնացիլէ. զէ չի տվիլ ինչվաս։ Եւ երկու տարին հախը վիճարեց, որ գիտացվի։„

Գիտենք թէ Կերլայ քաղքին ազգայինները կայսերական կրկին հրովարտակին համեմատ, չէին կրնար Եղիսաբեթուպոլսոյ բնակիչ ըլլալ։ Այն քաղքէն Եղիսաբեթուպոլիս գացողներուն համար, քաղաքային վարչութիւնը՝ հիմնուելով կայսերական պատճէններուն վրայ, օրէնք հանեց, որ ամենեւին հայաքաղաքացի մը, մէկ կամ երկու տարի շարունակաբար Եղիսաբեթուպոլիս չգտնուի։ — Եւ ի դիպուածի, որ հոն տեղացի երիտասարդ մը, հոս աղջիկ մ'առնուր, ընելիքը՝ երեք օրուան մէջ լմընցընելու էր, եւ իւր քաղաքը դառնալու էր։ Որովհետեւ, կ'աւելցընէ օրէնսդրութիւնը, կայսերական հրաման է ու այսպէս գրուած է, մեզի տրուած արտօնագրին մէջ։

---

[1] Այսպէս է արձանագրութեան մէջ։ Անտարակոյս limito լատ. բայը պիտ'որ ըլլայ, որ կը նշանակէ՝ սահմանել, որոշել, կարգի բերել։

Ահա քաղաքային որոշումը։

«1744 Մարտի 8ին էլիզաբէդան։

Խորհուրդ եղաւ Պ. դըընածըն վասն կերլայ քաղքէն էկօղնուն սէպն. այսինքն մեր քաղքին մէջ։ Նայ այնպէս հաստատեցինք. այսինքն Պատուելի դըընածըն ու Ա. Սարըսդան, աղանէրօվն. որ այսուհետեւ ամենեւին չի գովլի մեր քաղքին մէջ այսինքն կէնալու տարօվ կամ էրկուսօվ։ Եւ թէ որ ըլար որ հանդըպէր մէկ կտրիճ մը գար կերլայէն ու ի հօս կընիկ առնուր, նայ վօլնի է[1] առնէլու։ Տարը 3 աւուր վրայ առնու զկնիկը ու էրթայ մեր քաղքէն, իրեն քաղաքըն։ Զէ կայսերական հրաման է, որպէս կու գրէ մեր բըէվիլէկիումն ալ։»

Գալով օտարազգիներուն՝ ասոնք այնպէս դիւրաւ չէին առնուէր քաղաք ու բնիկ քաղաքացի չէին կրնար ամենեւին ըլլալ։ — 1735ին Տէպք անունով մէկն աղերսագիր մատոյց քաղաքային վարչութեան, որ իրեն հրաման տրուի տղաք կրթելու եւ սորվեցընելու. բնականապէս այնպիսի կերպով, որ տղոց վճարելի ստակն ինք առնու. երկրորդ՝ որ ժամանակապէս կարենայ քաղաքացի ըլլալ. երրորդ՝ որ ընդօրինակող ըլլայ քաղքին մէջ. երդմամբ խոստանալով՝ որ գաղտնիքը պիտի պահէ։ Քաղաքը՝ շատ դժուարութիւններ յարուցանելով, յանձն առաւ այս բանս. ու խոստացաւ, որ տարին անցնելէն ետեւ՝ իւր մատուցած ծառայութեանը համեմատ իրեն

[1] Ներեալ է. հրաման կայ։

բան մըն ալ կու տայ։ Սակայն պայման դրաւ. որ ընկեր ըլլալու է քաղ.քին դատաւորին եւ կամ աղային պաշտօնական ճամբորդութեանցը մէջ։ Բաց ասկէ, ինք իրեն ծախքովը պիտի ապրի, ու տան վարձքն ինք պիտ՚որ վճարէ՝ մինչեւ Ս. Գէորգ. այսինքն երկու ամիս։ Այս ժամանակն անցնելէն ետեւ քաղաքն իրեն բնակութիւն պիտի տայ։ — Տեաք՝ իր բանը քաղ.քին հետ յարմարցընելէն ետեւ խնդրեց, որ մայրն ալ կարենայ քաղաք բերել։ Քաղաքն այս բանին ալ զիջաւ։ Սակայն աւելցուց, որ այս հրամանն այնչափ միայն պիտի տեւէ, որչափ ատեն որ քաղաքաբաշխութեան կամքն ըլլայ։

Կը գտնեմ հոս, այս բանս ըստ տարեգրութեան։

"1735 փեդրի 11ին էլիզաբէդ Քաղաքն,

Եկաւ տիեաքը ու խնդրեց զպատուելի քաղաքն, օր զինքը բրեմիդ[1] անին ու թօղուն մեր քաղաքն օր տղաք սորվեցնու ու զտղոցն հախը իրեն մնայ։ Երկուսումն, մնայ մեր քաղաքըն ժամանակաւոր։ Իրեքումն, ըլլայ տիեաք իսգրիդօր[2] մեր քաղ.քին. երդումօվ, օր գրէ ու կարդայ, ինչեւիցէ ու զխորհուրդը սիրտը պահէ երդումին գօրայ, եւ տարին օր լմընայ նայ, իրեն ըսլուժպային[3] գօրայ պիլայ իքմն հախալ ինչեւիցէ։ Ու ինքն ունէնայ էրթալու Պիլօվին եւ

[1] Դներել, ներս ընդունիլ կը նշանակէ՝ կարծեմ։
[2] Գրագիր, դրող, ընդօրինակող. վալաքերէն է։
[3] Կարծեմ վալաքերէն բառ է, կը նշանակէ ծառայութիւն։

կամ աղային հետ ուրեւիցէ ու զբօրօնգան[1] կատարելու։ Բայց գիտացվի, որ ինքն իրեն խարճօմն պիտոր ապրլվի. ու տան կողմանէ ինքը վարձիլէ ինչուանի սէնճօրճ. ու սէնճօրճէն ինտան պիլայ մեր պիրօվին Փըքսը,[2] որ տայ տեղ եւ կամ հախ ուրեւիցէ։ Եւ խնդրեց տիրաքըն որ թօղութիւն տանք, որ զմարն ալ բերէ գառնան, որ կէնայ հետն, նայ տվինք թողութիւն մինչեւ ի Ա. ժամանակն։„

Հայոց՝ օտարազգիներու հետ նոյն յարկի տակ բնակելու վրայօք ալ օրէնքներ կը գտնենք արձանագրութեանց մէջ անցուած։

Ուր որ մէկ բակի մէջ երկու ազգային տանտէր կար, եւ երկիրը կէսուկէս իրենց յատուկ ստացուածն էր, հոն տեղ հայ մարդէ զատ ուրիշ բնակիչ առնելու հրաման չկար. վասն զի արդէն — նախընթաց օրէնքով մը — արգելուած էր, որ երկու տան տէր օտարածնի մը տեղ տայ բնակելու։ Պատճառն անտարակոյս այն էր, որ զօտարականներն՝ ազգայիններէն, որչափ կարելի է, հեռու բռնեն ու անոնց հետ ունեցած մերձաւոր յարաբերութիւնները դժուարացընեն։ — Վերը յիշուած օրէնքին խօսքերն ասոնք են. «3ումն Ամենեւին լօգօշներ ըսլօպօտ չիլայ բըռնելու ոչ մէկն, ոչ մէկալն. ու վըրըն բըռներ ու իմացվի նայ, պիտայ ճուրում դըլնաճին 12 մաճրի ու պիտան դաքշան մէկ ու ամենայն խարճըն եւ գդըրածըն։„

[1] Վալաքերէն է. հրաման, պատուէր կը նշանակէ։
[2] Պաշտօնը, գործքը, պարտականութիւնը։

Այս օրէնք երկու տարի ետքը կերպարանափոխուած ու թեթեւցուած կը գտնենք. այնու՝ որ եթէ տան տէր մ՚որ երկու բնակիչ պահել ուզէր, մէկը հայ ըլլալու էր. եւ մէկալը՝ թէ որ օտարազգի ալ ըլլար, պէտք էր արուեստաւոր ըլլալ, օրինակի աղագաւ կօշկակար, մաշկագործ, դերձակ եւ այլն։ Սակայն այս օտարածին արուեստաւորը սաքսոն կամ հունգարացի ըլլալու էր. որովհետեւ վալաք գեղացի ու մանաւանդ գնչու ամենեւին չէր կրնար ըլլալ, եթէ այն վալաքն ու գնչուն արուեստապէտ ալ ըլլար։ Թէ որ մէկ աղաչան այս օրէնքին հնազանդիլ չուզենար եւ որոշուած բանին հակառակ ընէր, 12 մաճարի ֆիորին տուգանք կը վճարէր։ — Եւ որովհետեւ, ինչպէս առաջիկայ օրէնսդրութենէն կը տեսնուի, քաղքին երկու սափրիչներէն զատ ուրիշ վալաքներ ալ կը գտնուին եղեր Եղիսաբեթուպոլսոյ մէջ, անոր համար, այս մարդիկներուն քաղքէն հեռանալուն վերջին ժամանակակէտը Ապրիլ 24ի դրուեցաւ։ Ուստի եթէ անկից ետքը տանտիրոջ քով վալաք մարդ գտնուէր, խստիւ պիտի պատժուէր։

Այս կարգադրութիւնները յաջորդ խօսքերով անցուած են քաղքին օրէնսդրութեանը մէջ։

«1743 Նոյեմբրի 26ին։

Դարձեալ գիտացվի տըներուն համար, ուրուխ որ էրկու կազտայ[1] մէկ ապպրի[2] մէջ կու

---

[1] Gazda. Հունգ. բառ է, կը նշանակէ տանուտէր։
[2] Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը՝ կը նշանակէ, բակ, գաւիթ։

կէնան ու կիսակէս ունին ըղիւրթը, նայ կայ գրած . . . թէ լօգօշ չի բըռնըվի: Անոր համար գրած է, որ օտար ազք արգիլած է հայեն դուս: Անոր համար արգիլած է, որ ուրուխ 2 կազտայ կայ 1 խուրթի վըրայ, նայ ամենուին օտար ազգի ըսլօպօտ չիլայ տալու ըղիրեն տունը հախօվ, միայն հայի եւ քաղքըցու: Եւ բանը հաստատ մընայ. ինչպէս վերոյ գրեալն կայ ճուրումօվ:„

“1745. Դեկտեմբերի 8ին:

Խորհուրդ եղաւ Պատուելի դըլնաճին երկու Պ. դըլնաճօվըն վասն թէ քաղքին մէջ ըսլօպօտ չիլայ, հիդէյ որ քաղքըցուն որ քաղքին մէջ բըռնէ լօգու[1] 2 ուս: Եւ թէ որ ուզէնայ բըռնէլու 2ն լօգուվ նայ, մէկ տանը մէջ հայ բըռնէ եւ մէկալըն բըռնէ փէշաքար. այսինքն կօշգար, սօպօվ եւ թուքչի եւ այլն: Միայն ըլան մաճառ կամ սաս: Տարը բրօսդ[2] օլախ կամ ծինկան, մագար ծինկանը փէշաքար ալ ըլայ նայ, ըսլօպօտ չիլայ բըռնէլու: Եւ թէ որ մէկնիմէկ Աղաչան չի ուզենար հնազանդէլու. եւ կապին գօնդրայ անէր նայ, այնպիսի Աղաչան եւ կամ քաղքըցին պիտայ ճուրում 12 մաճրի: Պըրպլիարնուն[3] դուս օլախ ափսօլուդ չի գտվի որ բըռնէ: Եւ այս մարդիքըն, օլախներն, տըրվեցաւ դէրմին մինչեւ սընճօրճ. եւ այն անցնելով, ուրուխ որ գըտվի,

---

[1] Lakos կամ lakó. հունգ. բառը՝ կը նշանակէ, բնակիչ. վարձքով բնակող:

[2] Paraszt հունգ. է. գեղացի կը նշանակէ:

[3] Պըրպլիար, borbély բառն է. կը նշանակէ, սափրիչ. ածիլող:

հիօր աղաչին մօտ նայ, պիտայ ըղձուրումն ան-
պատճառ։„

Գիտեն ընթերցողք թէ ինչպէս խստիւ պատուիրուած էր, որ ամէն պաշտօնատէր ու քաղաքացի՝ եկեղեցի երթալու էր։ Չգնացողը՝ պատիժ կ'ընդունէր։ — Այս օրէնքին օտարականի մը վրայ ինչչափ խստիւ գործադրուելուն վրայօք, տարեգրոց մէջ հետաքրքրական դէպք մը կը կարդանք, զոր հարիւրոց ժողովն ուզեց որ արձանագրութեան մէջ առնուի։ Դէպքը յաջորդն է։ 1761 տարւոյն Մայիս ամսուան մէջ, քաղաքաբաշխութիւնը Սիմա սափրիչին ու իր որդւոյն Բէդրային ծանոյց՝ որ քաղքին մէջ իրենց բնակելու թոյլ կու տայ, եթէ որ եկեղեցի երթան, ապա թէ ոչ՝ չէ։ — Քաղքին երկու սափրիչները չուզեցին մտիկ ընել վարչութեան խօսքին. եւ համարելով, որ քաղաքը զիրենք միայն վախցընել կ'ուզէ, պատասխանեցին թէ պատրաստ են քաղքէն ելլելու. սակայն եկեղեցի չեն երթար։ Քաղաքային վարչութիւնն իրօք զիրենք քաղքէն դուրս վռնտեց։ Ասոր վրայ հարիւրոց ժողովքը խորհուրդ ընելով՝ որոշեց որ անկից ետքը՝ զիրենք ամենեւին քաղաք չընդունի, թէպէտ եւ եկեղեցի երթալու խոստում ընեն։ — Նոյնպէս ուրիշներն, որոնք այս բանիս համար քաղքէն դուրս հանուած են, ա՛լ քաղաք վերադառնալու հրաման չունենան։

Անցաւ ասոր վրայ երեք ամիս մը ու Սիմային որդին, Բէդրան աղաչանք մը մատոյց քաղաքաբաշխութեան, որուն մէջ խոնարհու-

թեամբ կը խնդրէ, որ վարչութիւնն ու Հարիւրոց ժողովքը խղճան իր վրայ. ու առնուն ներս որ սափրչութիւն ընէ. որովհետեւ երդմամբ կը խոստանայ որ եկեղեցի պիտի երթայ։ Քաղաքը՝ տեսնելով որ սխալմունքը կը ճանչնայ, մեղայի կու գայ ու ժամ երթալու խոստմունք կու տայ, որոշեց որ նորէն ներս առնու. մանաւանդ որ — կ'ըսէ արձանագրութիւնը, — ուրիշներն ալ զաս տեսնելով՝ լաւ օրինակ պիտի առնուն ու շատոնք եկեղեցի պիտի յաճախեն։ Սակայն որոշումն իրեն ծանուցանելէն յառաջ, քաղաքաբաշխութիւնը յաջորդ երեք պայմանները դրաւ իր առջեւը։ Նախ. ինչպէս որ աղաչանաց թղթին մէջ կը խոստանայ, եկեղեցի պիտի երթայ։ Երկրորդ. միայն իր արուեստը պիտի բանեցընէ. եւ ուրիշ բաներու, մանաւանդ առուտուրի ձեռք պիտի չզարնէ, ինչպէս սամուրենի գնել եւ այլն։ Երրորդ. որ Հայ տղաքն իր արուեստին մէջ սորվեցընէ։ Բայց — կ'աւելցընէ վարչութիւնը, — այս բանն ըրաւ քաքաղքն ու զինք իբրեւ բնակիչ ներս ընդունեցաւ, միայն մինչեւ որ քաղքին կամքն ըլլայ։ Ու չըլլայ թէ ուրիշներն ասկէ օրինակ առնելով՝ համարին թէ զիրենք ալ ներս պիտի առնու. վասն զի այս բանս միայն Բէգրային կը պատկանի, այն պարտաւորութեան համար, զոր ըրած է եկեղեցի երթալու. միայն իր արուեստը շարունակելու եւ ամենեւին առու-տուրի ձեռք չզարնելու։ Եթէ վերոյգրեալ կէտերուն չի հնազանդիր, քաղաքը զինք ան-միջապէս դուրս կ'ընէ։

Ասոնք են աՀա արձանագրութեան խօսքերը։

“1761 Օգոստոսի 12ին էլիզաբէդան։ Գիտացվի, ինչպէս որ Պ. Սուդան կամեցաւ բրօդօգօլուվադ անէլու վասն սիմայ պրօպիարին. Նաեւ որդուն բէդրային դուս Հանելուն Համար։ Ինչպէս որ ասոր առաջ 1761 մայիսի ամսուն ձան տալով Պ. Մակիսդրադը զվերոյ սիման եւ զբէդրան, որ թէ որ կամէնան ժամ երթալու նայ, Պ. քաղաքը ալ ալ բրիմիդ պանէ զիրօնք քաղքին մէջ. ու թէ որ չերթային ժամ նայ, ունենան դուս ելելու եւ ամպէս էղաւ որ ալ Հատիր էին, քաղքէն դուս ելելու, քան թէ ալ շատ ժամ երթալու. եւ ասօր Համար Պ. քաղաքն զիրօնք դուս Հանավ եւ քնացին։ Ասոր Համար կամեցաւ Պ. Սուդան, որ այսու ետքան ամէնեւին նես չարնու զինքը քաղաքը, երթայ կամ չերթայ ժամ։ Նմանապէս մէկալօնքն ալ, որօնք օր այսպիսի բանի Համար դուս Հանածին նայ, ամէնեւին սլօպօտ չիլայ իրենց ալ շատ մեր քաղքին մէջ կենալու, որպէս վերոյ գրեալներն. այնպէս դագալ[1] բրիմիդ չարվին։ Այսպէս Հաստատվեցաւ 1761 որպէս ալ վեր։ Նաեւ այսուՀետեւ ալ, որօնք որ դուս Հանվին, նա դուս մընան. ինչպէս սիման ու բէդրան։„

“Աստուծով 1761 Նոյեմբրի 12 էլիզաբէդան։

Պատճառ գրոյս այս է, ինչպէս որ վերոյ

---

[1] Այսինքն դուքա ալ։

գրեալ տաղումին տվաւ մէկ ինշդանձիամն բէ-դրայ, սիմային որդին, պրպիարն, որին մէջ երեսանկեալ կու խնդրէ պՊ. Մակիսդրադն եւ զՊ. Հասարակն, որ մեղքընան զինքըն ու նես արնուն, որ պրպիարութիւն անէ Պ. քաղքին եւ օպլիկօվադ կլայ ժամ երթալու։ Որովհետեւ ասոր առաջ անոր համար դուս հանած էր քաղքէն, որ ժամ չուզացիլ երթալու, որպէս օր բրօդուգօլօվադ եղիլէ 1761 օգոստոսի 12ին։ Բայց հիմի տեսնելով Պ. քաղաքն որ մեղայ կու գայ եւ զխալատութիւնը[1] կու ճանչնայ եւ օպլիկօվադ կլայ ժամ երթալու. եւ հիմի տես-նելով Պ. քաղաքն, որ մեր ձեռնէ կապելն եւ արձակելն. նայ մենք կապիլինք եւ հիմի կու արձակինք։ Մանաւանդ ալ շատն ասոր համար, որ նայելով մեր գեղացիքն վերան, պի հակվին ու ժամ պի երթան. այսպիսի գօնտիձիայօվ. $1^{ma}$. որ ունենայ որպէս օր օպլիկօվադ եղիլէ իշդանձիային մէջ, ժամ երթալու ու ամէն ցեղ հնազանդութիւն անելու։ $2^{do}$. զփէշան բանի, որն օր ունենայ, եւ օզկայ ցեղ արուտուրնու մէջ չի խարնըվի. որպէս էլդրի գնել եւ այլն։ $3^{tia}$. ունէնայ առնելու հայ տղաք ու սօրվեցնելու զփեշան։ Եւ այսպէս գիտացվի որ այնպէս հաս-դատվեցաւ եւ նես առնվեցաւ որպէս լօգօվ մինչեւ օր Պատուելի քաղքին ուժվի նայ։ Ու չիլայ թէ ասգից էքզէմբլում[2] ըլլայ օզկանուն, թէ որով հետեւ զինքն նես արած է, նայ զօզ-

---

[1] Սխալ, պակասութիւն։

[2] Լատիներէն է, օրինակ կը նշանակէ։

կաներն ալ առնու․ Հապա նմա զէնքն տրած է, ալ շատն օպլիկաձիային եւ փէշային սէպն, որ զփէշան բանեցնու եւ չէ առուտուր քշէ։ Վերոյ գրեալ բունգդէրուն չի հնազանդէր նայ, ինձէ-տիադէ ունէնայ քաղքէն դուս էլէլու։„

Եղած բաներէն կրնանք հետեւցընել թէ որչափ զգուշաւոր եղած են մեր Եղիսաբեթու-պոլսոյ պապերն, որ օտար ազգայիններն իրենց հետ չխառնուելն եւ իրենց մէջը մուտ չգտնեն։ Եւ որպէս զի իրենց այս կամքն ու փափաքը մնա-ցական ըլլայ եւ ապագային համար ալ մէկ յիշատակ մը՝ իրենց յաջորդացն ու թոռներուն, որ իրենք ալ այս ճամբուն վրայէն քալեն, ընդհանուր ժողովք մը գումարեցին 1760ին Ապրիլի 17ին։ Ասոր մէջ ծանրութեամբ խոր-հելէն ու խօսելէն ետեւ թէ արդէն Պաշտպա-լովի կալուածատէրութիւնը գնած ատեննին — երբ պատգամաւորութիւն մը գնաց Մարիամ Թերեզիային, որ առանձնաշնորհութեան կոնդա-կը նորոգէ — հասարակութիւնն առաջարկու-թիւն ըրած էր, որ այն արտօնութեան կոնդակին մէջ դրուի թէ օտարազգի մարդ Եղիսաբեթու-պոլիս չմտնէ։ — Նոյն կոնդակին մէջ դրուեցաւ, կ'ըսէ յիշատակարանն, — որ եթէ օտարածին հայ մը, մանաւանդ Արեւելցի հոս գայ, նախ՝ քաղաքային վարչութեան առջեւն ինք զինք իբրեւ պատուաւոր մարդ ճշմարտել տայ (legitimo). աս ըլլալէն ետեւ առնուի այնպիսին քաղքի մէջ՝ իբրեւ այդրէնածին. եւ թէ՝ անկից ետքը, քաղաքն այնպիսւոյն համար պատասխանատու

պիտի ըլլայ։ Աս այսպէս ըլլալով — կը շարունակէ Ժողովքը — որոշեց հասարակութիւնն, որ այսուհետեւ շրջահայեաց ըլլայ. եւ նայի թէ զով կ'ընդունի իրեն իբրեւ քաղաքացի։

Եւ որովհետեւ հարկ է որ, կոնդակին զօրութեամբը հայ ազգին նկատմամբ շրջահայեաց ըլլանք, ուրեմն այնչափ աւելի հարկ է, որ օտարազգիի մը համար շրջահայեաց ըլլանք։ Անոր համար կ'որոշենք, որ ասկից ետքը՝ օտար մարդ, որ ազգէն որ ըլլայ թող ըլլայ, ոչինչ կերպիւ ու ոչինչ պատճառաւ ներս ընդունինք, իբրեւ քաղաքացի։ Ո՛չ այն միջոցին երբ օտարազգի մը հայ աղջիկ առնու կնութեան, եւ ո՛չ, երբ հայ քաղաքացի մը օտարածին հոգեզաւակ մ'առնու իրեն։ Ո՛չ այն հայ աղջիկն առնողը՝ եւ ո՛չ այն հոգեզաւակը կարենան Եղիսաբեթուպոլսոյ քաղաքացի ըլլալ։ Եթէ որ հայ աղջիկը ժառանգութիւն մ'ունենայ իր ծնողացմէ, զայն պիտ'որ ընդունի. եւ անով ազատ պիտ'որ ըլլայ, այսինքն՝ այն ժառանգութիւնն ազատութեամբ պիտի կարենայ գործածել։ Սակայն եթէ տուն, կամ ագարակ եւ կամ ուրիշ անշարժ բան մը մնայ իրեն իր ծնողքէն, այն տունը կամ ագարակը կամ անշարժ ստացուածքը պիտի արժէցընէ քաղաքն. եւ այն արժէքին համեմատ՝ քաղաքացի մը միայն պիտ'որ կարենայ գնել զանիկայ։ Եթէ հարկ ըլլայ նոյն իսկ որոշուած գնէն վեր։

Նմանապէս եթէ մէկն իրեն հոգեզաւակ մ'առնուր, եւ այն հոգեզաւակին բան մը թողուր

ժառանգութեամբ. անորը պիտ'որ ըլլար այն թողուած բանը: Սակայն տան տեղ, կամ ագարակ մը եւ կամ անշարժական բան մը պիտի չկարենար ձգել այն մարդն օտար հոգեզաւակին, ուրիշ կերպով, եթէ ոչ, որ այն անշարժ բանը՝ նախ Եղիսաբեթուպոլսեցւոյ մը ձեռքն անցնէր: Այս դէպքին մէջ՝ այն ստացուածքը պիտի ծախէր տէրն. որչափով որ կարենար. եւ ստակն առնուր եւ ուզածին պէս հոգեզաւակին տար կամ թողուր: Իսկ եթէ Եղիսաբեթուպոլսեցի գնող մը չգտնուէր, այն ատեն յիշեալ անշարժ տեղը կամ ստացուածքը պիտի արժեցուէր. եւ քաղաքն անոր գինն այն օտարազգի հոգեզաւակին ձեռքը պիտի յանձնէր:

Ասով — կ'աւելցընէ օրէնսդրութիւնը — քաղաքը միշտ պիտի մնայ հայու քաղաք ու հայու կառավարութեան ներքեւ: Եւ թէպէտ առժամանակեայ կերպով այսչափս գրուեցաւ. սակայն ետքէն ասոր վրայ դեռ պիտի խորհինք, որպէս զի այս որոշմունքն աւելի զօրաւոր ու հաստատուն մնայ մեզի եւ մեր յաջորդացը համար:

Կը գնեմ այս ժողովքին արձանագրութիւնն ինչպէս տարեգրին մէջ անցուած է:

"Աստուծոյ ողորմութեամբն 1760 Ապրելի 17. Էլիզաբէդան: Գրեցաւ այս ալ վար գրած գօնշդիդուցեան Մեր հասարակին կամօքն: Որովհետեւ ասոր առաջալ էղիլէ խօսք, մեր հասարակին մէջ ալ, մասնաւոր երփոր մեր ի պաշֆալօվիս տօմինիումին գնվածքին պատճառօմն մեր Պ. հասարակըն խրկիլէ տէբուդա-

դուշներ պէյն, Մեր Թագուհոյն մօտ. որ ժամանակը զՊատուելի Էլիզաբէդ քաղքին բրէվիլէկիումն շնորած է: Այն ժամանակըն ալ քաղվելօվ Պ. Հասարակըն գօնգլուտօվադ արիլըն, թէ գրվի մեր բրէվիլէկիումին մէջ, որ օտար ազք չի մըտնու մեր քաղքին մէջ եւ ըլայ քաղքըցի: Որ բրէվիլէկիումին մէջ տվիլէ մեր Թագուհին, թէ մէկ օտար հայմըն գար հօս մեր քաղաքըն մանաւանդ արեւվելցի, նայ ունենայ Պ. Մակիսդրադին եւ Հասարակին դիմաց լէկիդիմօվադ ըլալու: Եւ գաւդուս[1] ըլայ Պ. Հասարակըն ու ֆէլէլուիդ[2] ունենայ անէլու այնպիսոյն սէպըն. ու այնպէս առնու զայնպիսին նես քաղքցի:

Վասն որոյ զայս տեսնելով Պ. Հասարակըն ուԹվեցաւ օր ազգից ինտան գաւդուս ըլայ Պ. Հառարակըն ու նայի թէ զվօվ կարնու քաղքըցի: Որովհետեւ որ հայ նաձիային վրայ պէտք է որ գաւդուս ըլլայ նայ, անալ ինգապ[3] օտար ազգի: Եւ այնպէս գօնգլուտօվագ արան, որ ազգից ինտան, օտարազք, հի ինչ նաձիայ ըլար նայ, նես չի արնըվի քաղքըցի, ոչ մէկ բրէդէսդուշին[4] տակն: Այսինքն ոչ այն կերպիւն գազուգվոյ օտար ազք մը հայ աղչիկ առնուր. եւ մէկ քաղքըցի մը հոգէ զաւակ արնուր: Ոչ ան հայ աղչիկ արնօղըն. եւ ոչ այն

---

[1] Լատ. է. շըջահայեաց, զգուշաւոր, խելքով. կը նշանակէ:

[2] Felelni հունգ. է. պատասխանել, պատասխանատու ըլլալ կը նշանակէ:

[3] Հունգ. է. annál inkább. կը նշանակէ, մանաւանդ թէ, այնչափ աւելի:

[4] Լատ. է, պատճառանք, պատրուակ կը նշանակէ:

Հոգէ զաւակըն կարենայ քաղքըցի ըլլալու: Թէ որ Հայ աղչիկըն իքմը փայ ունենար իրեն ծընօղացըն մօտէն, նայ պի առնու զփայըն ու ըսլօպօտ պիլայ իրմօնը: Բայց թէ որ տուն, մայեր, կամ օզկայ ֆունտուշ[1] մնար իրեն ծնողացմուն նայ, զայն տունը, մայերըն կամ ֆունտուշն պիլայ էսդիմալուիդ[2] եւ էսդիմաձիային գօրայ, պի դընէ Պ. քաղաքըն զգինը այնպիսոյն. եւ թէ որ գտվէր գընօղ այն իւրթին, մայերին կամ ֆունտուշին, միայն մեր քաղքըցին ըլլայ ու ալ թանկ ալ գտնէր զինքն որպէս էսդիմաձիան ըլլար նայ, վօլնի պի ծախելու ալ թանկ ալ:

Նմանապէս մէկն արնուր Հոգէ զաւակ եւ խնչ որ դէսդօվադ[3] անէր Հոգէ զաւկին, նայ պիլայ իրենը: Տարէ տան տեղ մայեր կամ օզկայ ֆունտուշ չի կարենայ դէսդօվադ անելու, այն օտար ազգէ Հոգէ զաւկին, օզկայ կերպիւ, քանց որ գտվէր մեր քաղքէն քաղքըցի գնօղ. նայ պի ծախէ մեր քաղքըցուն քանօվ կարնայ նայ ու պի առնու զսդակըն: Եւ թէ որ չի գտվէր քաղքըցի գնօղ, նայ, էսդիմալուիդ պի արվի զայն տունը, մայերը կամ ֆունտուշն ու պի դընէ մեր Պ. քաղաքըն զգինը այնպիսի օտար ազգէ եղեալ Հոգէ զաւկին, որ այնպէս մընայ մեր քաղաքըն խսդակ Հայ. եւ Հայի տէրէքձիայի տակ: Եւ թէպէտ ատինդէրիմ այս չափս գրեցաւ. բայց ասոր էտէւանց ալալ խորհուրդ

[1] Երկիր, անշարժ ստացուած:
[2] Արժեցընել, արժէք որոշել տալ՝ բանի մը:
[3] Կտակաւ թողուլ:

*պիլայ այս բանին վրայ եւ անկիանկալուիդ*[1] *պիարվի այս դօնշդիդուձիայիս քօվ, որ հաստատ մընայ մեզի եւ մեր բօսդերիդաշին։ Որ բանը հաստատվեցաւ եւ գրվեցաւ մեր բոլոր հասարակին կամօքն. ի Պիրօվութեան Պ. Աղայ Թումանին Զատիկեանց. եւ ի սուդաշութեան քաղքիս Պ. Աղայ Օհանին տէր ակօբեանց։ Որ բանը օր ալ հաստատ մընայ շուշգրիպօվադ կու ըլլայ հաստատութիւնս մեր Պատուելի Աղայ Պիրօվին եւ Պ. Աղայ սուդաշին շուշգրիպձիայօվը. եւ մեր Պ. քաղքին մոհրօվըն կու ամպրացուցվի։ Թվոյն որպէս այլ վեր։*

*Թուման Զատիկեանց յ. Յ.*

*Պիրօվ էլիզաբէդ քաղքի. իմ հասարակ Պ. Աղնէրօվըն։*

*Օհան Տէր յակոբի.*

*սուդաշ Պատուելի էլիզաբէդ քաղաքին։„*

## 25.

*Ընթերցողք առիթ ունեցած են, մեր պատմութեանն ընթացքին մէջ տեսնելու, թէ Եղիսաբեթուպոլիս քաղաքը՝ գրեթէ փոքրիկ հասարակութեան պէս բան մըն էր, որ կենդրոնացուցած էր իր ձեռքը խել մը արտօնութիւն, առանձնաշնորհութիւն, իշխանութիւն ու զօրութիւն։ Թէպէտ կախում ունէր քաղաքը՝ Դրանսիլուանիոյ իշխաններէն ու Աւստրիոյ կայսրներէն. եւ ի ներքինս, քանի մը բաներու մէջ, եր-*

---

[1] Անտարակոյս adjungo բառը պիտ՚որ ըլլայ, որ վրան աւելցընել, յաւելուլ, վրան դնել կը նշանակէ։

կրին վերին քաղաքային ու զինուորական կառավարներէն. բայց շատ բաներու մէջ ազատ էր ու ինքնիշխան։ Իրեն յատուկ օրէնքներ կը դնէր, օրէնքներ կը վերցնէր, զանոնք ընդ պատժով պահել կու տար, եւ այլն։

Քաղաքային վարչութիւնն ի սկզբան պարզ էր. զանիկայ կը կացուցանէր գլխաւոր դատաւոր մը. որուն օգնական տրուած էին գանձապետ, հարկապահանջ, թղթատարութեան վերատեսուչ, փողոցներու վերակեցու եւ գինեվաճառութեան ու ոգեւոր ըմպելեաց տնօրէն։ Բայց բուն դատաւո՛րն էր քաղքին հոգին ու շունչը։ Իրեն օգնական տրուեցաւ յետոյ երկոտասանից խորհրդանոցը (դընաճ)։ — Ասով իր իշխանութիւնը քիչ մը չափաւորուեցաւ. վասն զի աւանց ասոր յայտնի կամ համընթաց հաւանութեանը՝ մեծագոյն բաներ չէր կրնար որոշել ու վճռել։ Ասոր վրայ աւելցաւ 1757էն ետեւ նաեւ հարիւրոց կամ լաւ եւս քառասնից ժողովն. որն որ ամէն մեծագոյն բաներու մէջ խորհրդի պիտի կանչուէր, եւ երկոտասանից ժողովոյն որոշմունքները պիտի քննէր։ Հարիւրոց ժողովոյն նախագահն էր — ինչպէս ետքէն պիտ'որ տեսնենք — Սուդասը, կամ քաղքին ատենախօսը՝ պաշտպանն ու փաստաբանը, որուն գործքն էր քաղաքային կնճռեալ գործքերը հարթել, յստակել ու քաղաքն ամէն բանի մէջ պաշտպանել։

Նոտարին կամ քարտուղարին պաշտօնն էր ամենէն դժուարինն ու ծանրը. վասն զի իր

գործքն էր, ժողովքներուն արձանագրութիւնները յօրինել, թղթակցութիւնները կատարել, ամէն պաշտօնական գրուածքները պահել ու դիւանատան վրայ հսկել: — Վերջապէս համարակալները՝ քաղաքին եկամուտները կը հոգային, կալուածատէրութեան, մաքսերուն, հարկաց, ծախուած երկիրներուն եւ այլն ստակները կը ժողվէին: — Կար նաեւ Սարըստան: Սակայն այս՝ քաղաքային պաշտօն մը չէր, այլ վաճառականաց ու արհեստաւորաց ընկերութիւններուն նախագահը՝ որ քաղաքային խորհրդոց մէջ — իբրեւ ծերակուտի անդամ — այս երկու վիճակները կը ներկայացընէր:

Ընենք վերին հայեցուած մը ժամանակագրական կարգաւ դատաւորական պաշտօնին վրայ, այնպէս ինչպէս կը գտնենք պաշտօնական գրութեանց մէջ:

Միքայէլ Աբաֆի իշխանը չէ թէ միայն ֆօկարաշի պատճէնովը — 1696ին — հրաման տուած էր Եղիսաբեթուպօլսոյ հայոց որ իրենց մէջէն ազատութեամբ մէկը դատաւոր կարենան ընտրել, հապա նոյն իսկ այս արտօնութեան կոնդակէն եօթը տարի յառաջ Կէռնէսէկի դղեակէն տուած հրամանագրովը՝ հայոց վրայ դատաւոր դրած էր զՆիկողայոս Գրիգորեան. պատուէր տալով բոլոր հայոց որ իրեն, իբրեւ վերին դատաւորին, ու անոր աւընթերակացներուն, Անդրէաս Ձատիկին, Լուսիկ Ձարդարին ու Լուսիկ Վարդերեսին պատշաճ հնազանդութիւնը մատուցանեն. ու անհնա-

զանգներն իրենց անձին սեպհականեն հետեւութիւնն որ իրենց հանդիպի, վասն զի վրանին պիտի դնէ Աբօր հունգարացին:

Կը ներփակեմ հոս այս հրամանագրին հայերէն թարգմանութիւնը:

"Միքայէլ Աբաֆի, ողորմութեամբն Աստուծոյ իշխան Դրանսիլուանիոյ, Տէր հունգարական մասերուն եւ կոմս Սըգուլեց, մեր պատուական հպատակացը՝ բոլոր հայոց, որոնք՝ ուր որ ալ ըլլան ու բնակին մեր երկիրներուն մէջ, ան ամէն սիրելեաց, որ մեր ներկայ գրութիւնը կը կարդան ու կը լսեն, ողջոյն եւ շնորհք բազում:

Մեր ներկայ գրութիւնը ներկայացնող Նիկողայոս Կէրկէլյին դրուեցաւ բոլոր հայոց ընկերութեան վրայ դատաւոր. իրեն օգնական տրուելով Անդրէաս Զաքարիաս, Ղուկաս Զիֆրա եւ Ղուկաս Վարդերես, որպէս զի հարկերն աւելի դիւրութեամբ ու ըստ պատշաճի կարենան քաղել, եւ մեր ուրիշ ամէն հրամաններն ու կարգադրութիւնները գործադրեն: Ուստի բոլոր հայերուն ամենայն ծանրութեամբ կը հրամայենք, որ զՆիկողայոս Կէրկէլյի, իբրեւ իրենց դատաւոր. եւ զԱնդրէաս Զաքարիաս, զՂուկաս Զիֆրա եւ զՂուկաս Վարդերեսն, իբրեւ իրեն քովը դրուած օգնական առաջնորդներ ճանչնան, պատուեն ամէն բանի մէջ իրենց խօսք մտիկ ընեն, եւ վրանին ինկած հարկերն ու տուրքերը անոնց ձեռքը հասցնեն: Վասն զի եթէ այլազգ կը գործէք, Ձեր բաները Ստեփանոս Աբօր պարոնին կը յանձնուին. եւ իւրա-

*քանչիւր ոք իրեն անձին սեպհականէ, ինչ որ իր անհնազանդութեան համար պատահի։ Իսկ ամէն տեղերու, քաղաքներու եւ գիւղերու դատաւորները, երդուեալները, գիւղապետները, արքունական եւ փոխանակի դատաւորներն եւ ուրիշներն ալ՝ մեր վերոյիշեալ հայերը՝ ճանչնալով իբրեւ հայոց ընկերութեան պաշտօնատէրները, խաղաղութեան մէջ թողուն եւ թողուլ տան. եւ ինչ բանի մէջ որ հարկաւորութիւն ունենան, անոնց պարտ ու պատշաճ օգնութիւնը մատուցանեն։*

*Ուրիշ կողմանէ հրամաննիս, տարի մ'անցնելէն ետեւ, զօրութիւնը կը կորսնցընէ։ Կարդացէք, ու տուէք անոնց, որոնց կը պատկանի։*

*Տուեալ ի դղեակն Կէօնէսէկի, յամի Տեառն 1689 ի մէկն Սեպտեմբեր ամսոյ։*

*Մ. Աբաֆի. յ. ֆ., Տ. Կ.*

*Թէ այս թուականէն ետքը մինչեւ 1727, որո՛նք յաջորդած են իրարու դատաւորութեան պաշտօնին մէջ, չենք գիտեր. գոնէ մինչեւ հիմայ։*

*Հայերէն պաշտօնական գրութեանց մէջ, դատաւորին անունին ու պաշտօնին կը հանդիպինք առաջին անգամ, նախորդ դարուն առաջին քառորդէն քիչ մը ետքը։ Այս միջոցին, որչափ կրնանք մակաբերել, դատաւորը չէր ընտրուեր, այլ ծերակուտի անդամներէն, այսինքն ծերերէն մէկն, որուն վրայ որ կարգը գար, պաշտօնը ձեռք կ'առնուր։ — Ատեն անցնելէն ետեւ քաղաքացիք քովէ քով գալով, կ'աղա-*

չէին իրենցմէ մէկուն որ յանձն առնու դատաւորութեան պաշտօնը: Գոնէ այսպէս կը Հասկըցուի 1727 երրորդ տարուոյն դատաւոր ընտրելու ժողովքին մեզի թողուցած ժամանակից արձանագրութենէն. “խնդրեցինք, կ'ըսէ, զԱղաչայ Փիւ պիրով զատիկն[1] որ անցն առնու զքաղքին պիրովութիւնն ալ:„ — Ըստ այսմ՝ զատ էր ընկերութեան ու զատ՝ քաղքին դատաւորը:

Այս արձանագրութենէն կը Հետեւցընենք թէ կարգն ըլլալով, որ դատաւոր ըլլայ, քաղքին խորՀրդին մէջ գտնուող Մարտիրոս Բադրուպանեան եւ քաղաքն յաջորդ տարին շատ լմնցընելու բաներ ունենալով, աղաչեցին Զատիկ Օվանէսեանցին որ յանձն առնու քաղքին դատաւորութիւնն, որպէս զի գործքերը յառաջ երթան: — Այս առթիւ կը գտնենք առաջին Հեղ, որ քաղաքը նաեւ տարեկան վճարք կը խոստանայ դատաւորին: Այս վճարքն էր վեց ոսկի: Բայց պայման կը դրուի դատաւորին որ քաղքին բոլոր Հաշուեգիրքերը նայի, տալիքներն ու տուգանքները քաղէ, ծախքերը վճարէ, եւ այլն:

Ահա քաղքիս ամենէն առաջին՝ բայց միանգամայն ամենէն դժուարիմաց ու կնճռեալ արձանագրութեան խօսքերը:

---

[1] Այս Զատիկին մականունն — ինչպէս քիչ մը ետքը պիտի տեսնենք — Օվանէսեանց էր, զոր Բողմոլեղը Հայերէն ՅովՀաննէս Զօգօրիաշ կ'անուանէ: — Կրնայ ներուիլ, որ սխալմամբ, Օվանէսեանց մականունէն ՅովՀաննէս մկրտութեան անուն մ'ըլլուի. բայց չենք գիտեր, թէ ինչ սկզբամբ Զատիկ մկրտութեան անունէն Զօգօրիաշ մականուն մը կրնայ շինուիլ:

«1727 Հօկտեմբերի 22ին։ Խորհուրդ քաղքինը այսպէս եղաւ որ մարտիրոսն բադրուպան ըլալով մեր դըլնաճին մէջ. եւ եկաւ կարքն արանց գօցգայ,[1] իրեն հրամանոցն պիրօվութեան։ Նայ շատ բաներ ունենալով քաղաքն, քաղքի բան, որն որ այս տարենը մէջ ի թվըն 1728ին պիտոր կցինք. եւ Աստուծոյ կամօքն լմնցնունք, երբ իցէ նայ։ Վասն այսօրիկ զայս տեսնելով մենք, նայ խնդրեցինք զԱղաչայ Ֆիւ պիրով զատիկն որ անցն արնու զքաղքին պիրօվութիւնն ալ, որ բանը արաջ երթայ։ Եւ քաղաքն խօսդացաւ իրեն հրամանոցն Զ օսգի աշխատանքին սէպն։ Եւ զայս Զ օսգին, գիտացվի որ քաղքին խարճէն էլէ. որ գիտացվի։ Եւ գիտացվի, որ թէ քաղաքն որ տայ օսգին նայ, ունէնայ աղաչայ մարտիրոսն (°) զամենայն բանը քաղքին տէֆդէրներն ձեռն առնելու ու քաղելու թէ տալիքն, թէ խարճն, թէ ճուրումներն քաղէ ու սէպ տայ որ գիտացւի, զայս մէկ տարենը։»

Դատաւորն, այս միջոցին դեռ իբրեւ միահեծան տէր, քաղքին ստացուածքը ձեռքն ունէր։ Բայց տարին լմըննալէն ետքը, երբ դատաւորութեան պաշտօնէն կ'ելլէր, հաշիւ պէտք էր տալ հասարակութեան։ Այսպէս կը գտնենք 1730ին ու 1732ին տարեգիրներու մէջ։ — Դարձեալ՝ այն միջոցին որ Խնկանոս Ամիրայի 1739ին վերջը իր պաշտօնը Ղազար Յովհան-

[1] Koczka հունգարերէն բառը կը նշանակէ՝ տապեղուլունք, քուէ։

Նեանցին տուաւ. եւ այս վերջինը դատաւորու-
թեան պաշտօնէն ելաւ 1740 Դեկտ. 30ին։

Ահա արձանագրութիւններն ետեւէ ետեւ.

1. "Ամի Տեառն 1730էն Պատուելի Ա-
ղաչայ Պիրօվ պէտրոսն պիրօվութիւն արաւ
Պատուելի քաղքին մինչեւ 1732ին Հօկ. 24ին.
եւ սէպ տվաւ Պատուելի դընածին, երկու
տարեն։"

2. "Ամի Տեառն 1732 Հօկտեմբերի 24ին,
ըզՊատուելի Աղաչայ Նիգօշն դրանք պիրօվ, որ
այլվի էրկու տարի պիրօվութիւն անէ քաղքին։
Նայ գիտացվի որ սէպն տըվաւ 1733 Նօյեմբրի
ամսուն. եւ գիտացվի որ մնացելէր քաղաքն
պարտք Աղաչայ պիրօվին 23 ու 97 պան, նա
պատուելի աղաներն վիճարեցին քաղքի սդըկէն
որն որ ռատուլը բէրելէր գըր մայի սդակ վա-
ղուցու ռըշդանձիայէն։"

"1739ին Դեկտեմբերի 30ին.

Պատուելի Աղաչայ ամիրան խնկանոսեանցն
Ֆի եւ քաղաքի պիրօվ, տվաւ ըզ39ին սէպն
Պատուելի քաղաքացօցըն ունվարէն մինչեւ
դեկտեմբերի վերջն որն որ էղաւ խարճը. ու
2 Հազար ըզլօթօվ որ տվիլէ գմարան դաքշան
նա էղաւ ճմայ 3414. 78 պան. ու ունացիլէ
ու քաղվիլէ Աղաչին ձեռքն 3605. 17 պան, ու
գիտացվի որ մընաց Աղաչայ ճմիրն քաղքին
190. 39 պան, ու տվաւ զաբիս, որ շաՀն տայ
գլխօվն եփոր պիտվական ըլայ քաղքին։"

"1740 դեկտեմբեր 30.

Պատուելի Աղաչայ Ղազար ՕՀանեանցն

ֆի եւ քաղաքի պիրօվ, տվաւ ըզ740ին սէպըն, ունվարի ամսուն ինչվան ի դեկ. վերջն որն որ էղաւ Պատուելի քաղքին վրայ խարճ Մաճրի 3934, 13 պան։„

Այս արձանագրութիւններէն ան ալ կը հասկընանք միանգամայն որ քաղքին այն ատենուան տարեկան ծախքերը՝ շուրջ 4000, մեր հիմակուան սըրկովը 1333 ֆիորին է եղեր։

Կարոլոսի Զ.ի արտօնութեանց կոնդակէն ետեւ, քաղքի դատաւորի ընտրութեանը՝ բոլոր քաղաքն "այսինքն Աղաներ, Սարըսդայք, Վադահներն եւ այլն. պատուելի քաղաքացիք եւ բօվանդակ ժօղօվուրդն„ մասնակցեցաւ։ — Հետզհետէ ծանրաբեռնութեանց մէկ մասը դատաւորին վրայէն առնուեցաւ ու ծերակուտի անդամոցը վրայ բաժնուեցաւ։ Ասկից զատ սահմանուեցաւ որ դատաւորն, ինչ որ քաղքին տեսչութեան վերաբերեալ բաներ հրամայէ, այն բանին մէջ ամէնքն իրեն հնազանդին։ Նմանապէս ինչ որ ծերակուտի անդամներուն որոշէ ու սահմանէ, այն հաստատուն եւ անշարժ մնայ. եւ չհնազանդողը պատժուի։

Ահա ասոնց նկատմամբ եղած ժողովոյն արձանագիրը։

"Ամի Տեառն 1739 ունվարի 2 էլիզաբէդան.

Կամօքն Աստուծոյ Մեք քաղաքացիքս խընդրեցինք եւ ընտրեցինք զՊատուելի Աղայ Ամիրան լինկանոսեանց օր անծըն արաւ ըզքաղաքի Պիրօվութիւնն։ Եւ գիտացվի օր ի միասին էր

Պատուելի Քաղաքն այսինքն Պ. Աղաներ, Սա-րըսդայք, Վաղակներ եւ այլն. Պատուելի քաղաքացիք եւ բովանդակ ժօղօվուրդն: Պատուելի Աղայ Պիրօֆն այնպիսի գօնտիձիայով արաւ անծն զՊիրօվութիւնն որ քաղաքի պիտվականութեանը վերայ կենան ուրիշ պարտ քալցընօղներ ալ, ինչպէս տալեց վերայ բրէձէբդօրներ, բօշդայ մէշդէր, օրմընուն վերայ դարտ քալցընօղ, ղքաղքին սդըկնուն շահն վիճարօղ որ ունէնայ տարեն գլօխ շահն քալցընօղըն տալու օրին ում զաբիսին գօրայ, այլվի քաղաքին ըսդըկէն եւ այլն: Ինչ որ քաղաքի պիտվականութիւնն կենայ ու հրամայէ Պ. Ա. Պիրօֆն նայ ունենան հասդատելու:

Դարձեալ ինչ որ հասդատվի կամ հասդատէ Պատուելի Աղաչայ Պիրօֆն դընածօվ նայ, ունէնայ հասդատ մնալու. եւ չի հնազանդօղն պի պատժըվի ըստ արժանոյն: Տէր Աստուած տացէ զի եղիցի առողջութեամբ եւ բարի խաղաղութեամբ. Ամէն:„

Այս միջոցին յաջորդ աղաներն էին որ ծերակուտի ժողովքը կը կազմէին:

“Եւ գիտացվի որ այսքան ին Պատուելի Աղայք, Պ. Աղայ Պիրովին քով:

Աղայ Պէտրոս քէլ օվանէսեանց.
Աղայ Վարդան խսիգուցեանց.
Աղայ Նիգօշ խսիգուցեանց.
Աղայ Ջատիկ Օվանէսեանց.
Աղայ Հանգը խնկանոսեանց.
Աղայ Մարտիրոս Բադրուպանենց.

Աղայ Դաւիդ Շօմլեօյցու.

Աղայ Լուսիկ Թորսեանց.

Աղայ Խաչերես Սիմոնենց.

Աղայ Օվանէս Գրէջունի.

Աղայ Լուսիկ Օսգերիչեանց.

Աղայ Նիկօլ Շօմիլեօյցօցն. Նօդարիուս Պատուելի քաղքին:„

Դատաւորին տրուեցաւ երկու պըկար կամ ծառայ, որոնք ընդ պատժով պարտական էին միշտ իր տանը կամ դրանը քով կենալու: Սարըսդին կամ վաճառականաց ու արհեսդաւորաց նախագահին քով կեցող սպասաւորն ալ, դատաւորին անընդմիջական տրամադրութիւնը տակ դրուեցաւ որ ինքն ալ մէկալ քաղաքաբաշխութեան սպասաւորաց պէս դատաւորին ծառայութիւն ընէ: Թէ որ ասոնք պաշտօննուն մէջ պակսութիւն մ'ընէին կամ ծառայել չուզէին՝ մէկ մաճառի ֆիորին պիտի վճարէին եւ կամ տասը գաւազանի հարուած պիտի ուտէին:

“Նոյն — 1737 — Թվըն էլիզաբէդան:

Եւ գիտացվի օր պըրկար դրանք ըզուատուըն ու զթոսոսը մարգարի. այլվի ան գօնտիձիայօվ, օր ունենան ամէնեւին Աղայ Պիրօվին տանը կամ դըրանը վերայէն անպակաս ըլալու, ի ներքոյ պատժոց: Եւ տարեկան հախն մէկին մէկինը պիլայ 16 ական մաճարի ու իրեքգան ճուֆդ կօշիկ. եւ այլն:

Գիտացվի օր զիվօնալ տօպրիձայինը օրն որ Աղայ Սարըսդին մօտ պըրկար է, նայ անպէս հասդատեցինք օր ունէնայ Աղաչայ Պիրօվին մօտ

ծառութիւն անէլու, մէկալ պըրկարնուն պէս, ու ըզգըրաժալ անպէս վօլնի ըլայ[1] ինքն ալ, ըլալու ընտօր մէկալնունք, ու վօրն որ չուզենար հնազանդելու Աղաչայ Պիրօվին կամ Աղաչայ Սարըսդին նայ, անպատճառ ունէնայն Ա. Ա. մաճրի ճուրում տալու կամ 10 լօբադայի դիմանալու։ Տարը զհախը աղաչայ սարըսդինմէ ու նէնայ բօվելու։[2] „

Ատեն անցնելէն ետեւ կը գտնենք որ դարձեալ այն կարգադրութիւնը մնաւ որ ասկէ քանի մը տարի յառաջ կար. այսինքն թէ, քաղաքին դատաւորը զատ ըլլայ գոմբանիայի կամ ընկերութեան դատաւորէն. որովհետեւ — կ՚ըսէ ծերակոյտ ժողովը — մէկ մարդ մը երկու տեսակ դատաւորութիւն չի կրնար կատարել։ Այս միջոցին — 1742 — կ՚որոշուի, որ քաղաքին դատաւորին տարեկան մուտքը, 35 ֆիօրինէն բարձրանայ 100ի։ Իսկ ընկերութեան դատաւորինն ըլլայ տարուէ տարի 80 հունգարական ֆիօրին։ Բաց ասկէ քաղաքային դատաւորին տրուեցաւ օգնական մը — Նիկողայոս Շիմիլովցին —. որ կ՚երեւայ թէ աւելի հսկող կամ թէ քննիչ էր (օգուլադօր) դատաւորին քով։

"1742 ունվարի 2ին։ Գիտացվի որ հասդատեց Քաղաքըն վասն Պիրօվութեան համար. տեսնելով Պատուելի Աղաչաները, օր մէկ աղաչին էրկու Պիրօվութիւն անէլու դիժար է, նայ

[1] Այսինքն. թոյլ տրուի. հրաման ունենայ, ներեալ ըլլայ։

[2] Բովել կամ բոյել Դրանսիլուանիոյ հայոց բարբառովը կը նշանակէ սպանել, — հոս՝ առնուլ, ընդունիլ։

անոր համար գըտան ու հաստատեցին, որ քաղքի պիրօվ պաշխայ աղաչայ ըլայ ու գոմբանիայի պիրօվ պաշխայ, ու իրենց հախըն, քաղքին պիրօվին, մէկ տարեն, 100 մաձրի ու գոմբանիայի Պիրօվին նաեւ 80 մաձրի տարոց տարի։

Մարտ. 30. Պատուելի Աղաղաներն ընտրեցին ըզԱղաչայ Նիկօլըն շիմիլըվցունը օգուլադօր[1] ընկեր Աղաչայ Հանգօյին. զէրայ աը առաջ ընկեր ունէր ըզ Աղաչայ Մանուկը անկսէնտի. նայ ասօր դըրան ըզվերոյ գրեալ աղաչայ Նիկոլն„։

Եւ որովհետեւ ծերակուտի անդամներուն կամ խորհրդականներուն մէջ յառաջ կամ ետքը նստելու նկատմամբ խեղ մը խառնակութիւններ ելած էին, անոր համար որոշուեցաւ 1743ին Ցունուարի 3ին ամէն մէկուն տեղը. ու սահմանուեցաւ, որ այնուհետեւ ժողովք մտնողն ամենէն վարի աստիճանը կենայ կամ նստի. ու ետքէն վեր ելլէ՝ երբ իրմէն ետքը խորհրդական մը ժողովքի գայ։ Այս նոր կարգադրութեան համեմատ յառաջ եկողն աւելի վեր պիտի նստէր։ — Կ'երեւայ թէ յառաջուան կարգն այնպէս էր, որ աւելի տուրք տուողն վեր կը նստէր։ Այս նոր որոշման դէմ ընող Աղաչան մինչեւ 24 հունգ. Ֆլորինի պատիժ կ'ընդունէր։

Ահա որոշումը։

"1743 ունվարի 3ին.

---

[1] Լատ. բառ է, կը նշանակէ, հսկող, վերահսկեաց։

Տեսնելով Պատուելի Աղաչանները. որ շատ թուրլու գօնդրավէրզիաներ[1] եղել է կարք նըստէլուն համար, նայ քաղվելով մէկ տեղ ծեր աղաչանները ու Աղաչայ Սարըսդան իրեն աղաներօվ բօվանդակ, կի հասդատինք ու կու կապինք եւ շարադրինք. որ ճանչնայ վօվ իրեն տեղն ի ներքոյ ճուրումի: Ու ասգից ինտան վօվօր գայ կամ մըտնու դըլնաճըն նայ այլվի եօգի կրատիչը[2] պի կաննի կամ պի նսդի, ու անոր էտեւանց կարքօվ կարքօվ արաջ պի երթայ: Ջէրայ կար ատաթ ալ արաջ ու կայ գըրման այս խորհրդայ թըղթին մէջ, թէ վովօր աւելի տալիք տայ նայ, նայ նստի ալ վեր քանձ մէկ ծեր աղաչամը, նայ անոր համար կարք արինք աղաչանուն մէջ: Ու վօվօր ուղենար ավըրելու, թէ պիրօվ, թէ Աղաչայ, նայ պիտայ ճուրում 24 մաճրի, արանց մէկ պատճարին„:

Ժամանակակից արձանագրութիւնը կը ցուցընէ, թէ ութը տարուան միջոցի մէջ — 1745ին — երրորդ անգամ կ'ըլլէ քուէարկութեան արկղէն, գործունէ ու ճարտար Ամիրայ Խնկանոսեան իբրեւ քաղքի դատաւոր: — Առաջին հեղ ընտրուեցաւ 1737. երկրորդ անգամ 1738ին:

„Մինք էլիզաբէդայ Քաղաքացիքըն պատուելի դըլնաճօվըն խնդրեցինք եւ վօղումօվ գըտանք որ Պատուելի Աղաչայ Ամիրան Խնկա-

---

[1] Լատ. բառ է, կը նշանակէ, վէճ, անմիաբանութիւն, կռիւ:

[2] Հունգարերէն է՝ կը նշանակէ, ատինճան. սանդուղ:

նոյեն քաղքի պիրօվ ըլայ։ Եւ խնդրըվածքով անձըն արաւ. զոր Տէր Աստուած արողջութիւնն պարգեւէ պատուելի Աղաչին, որ արդարութեամբ եւ խոհեմութեամբ կառավարէյ ըզպատուելի քաղաքըն։" — Իր խորհրդականներն են.

Անուանքը Պ. Աղաչայից.

Աղաչայ Պէտրոս քէլ օվանէսեան,

Աղաչայ Մանուկ իսիգուցեան,

Աղաչայ Ղազար Օվանեան,

Աղաչայ Հանգոյ խնկանոսեան,

Աղաչայ Մարտիրոս Բադրուպանի,

Աղաչայ Դաւիթ շիմիլովցու,

Աղաչայ Խաչերես Սիմոնի,

Աղաչայ Լուսիկ Թորոսեան,

Աղաչայ Նիկօլ Շիմիլօվցուն

Աղաչայ Լուսիկ Օսգերիչեն,

Աղաչայ Անկսէնտ Վարդանի Իսիգուցեն.

Աղաչայ Մելքոն կըաշըարի,

Աnարժանս Նօդարիուշ. Օվանէս օսքերիչն, պատուելի քաղքին։"

Նոր ու շատ կարեւոր կանոն մը դրուեցաւ խորհրդանոցին մէջ 1748ին դատաւորաց համար։ Ասոր համեմատ, ինքը դատաւորն, պարտք ունեցողի մը դէմ դատողութիւն պիտի չկարենար ընել։ Այս դէպքին մէջ պէտք էր իրեն պաշտօնն ուրիշի մը յանձնել։

"1748 Մարտի 14 էղաւ Պ. Դըընաճըն խորհուրդ. եւ հաստատութիւն էղավ, որ ինչ պիրօվ որ ըլայ մեր քաղքին մէջ նայ, ինքը իրեն պարտքին սէպն չի կարնայ ըզմէկ քաղա-

քացին ալ արգիլելու ոչ մէկ ցեղմն· զէ պիրօմն չի կարնալ ինքըն իրեն լըմընցընել. ու Պիրօվը ունէնայ օղկայ Պիրօվ դընէլու, ու այնպէս պի արգելվի„:

Երկու տարի ետքն երբ Յովհ. Ոսկերիչեանց, քաղքին քարտուղարն ընտրուեցաւ. դատաւոր, սահմանուեցաւ, որ նախընթաց տարիներուն պէս 100 ֆիորին ըլլայ իր տարեկան վճարմունքը։ Սակայն քիչ մը ետքը, սահմանուեցաւ, որ անկից ետքը — վաղեմի ժամանակէն մնացած սովորութեան մը համեմատ — ա՛լ քաղաքացի փեսաներէն աղուեսենի չառնու, հապա միայն օտարներէն։ Աս օրէնքը դրուեցաւ, չէ թէ միայն ներկայ, այլ նաեւ ապագայ ժամանակի դատաւորներուն համար ալ։ Ուստի եւ առաջիկայ օրէնքին զօրութեամբ դատաւորը թէպէտ պիտի կարենար առնուլ աղուէսի մորթ ընկերութեան մարդիկներէն, սակայն ոչ Եղիսաբեթուպոլսոյ քաղաքացիներէն։

“Գիտացվի որ վերոյ գրեալ ընտրութեան ժամանակն — 1751 Յունուար 2 — հաստատվեցաւ Պատուելի դընաճօվըն, որ ասգից ինտան պիրօմն չի առնու մեր քաղքըցոցը մօտէն փէսանունը, աղվէս, բայց օտարնուն մօտէն պի առնու։ Եւ այսպէս հաստատութիւն էղաւ որ ասգից ինտան օղկայ պիրօվ ալ չի առնուն. եւ այսպէս մընայ։ Եւ ամէն ժամանակ գումբանիայի մարդիգացը մօտէն պի առնու, բայց միայն էլիզաբէդ քաղքըցոցը մօտէն չի առնու„:

Արուեստաւորաց՝ քաղաքային ժողովոյն

մատուցած խնդրուածքին համեմատ, 1756 դեկտ. 28ին, սահմանուեցաւ նախ, որ այնուհետեւ Հայոց ընկերութիւնը զատ դատաւոր չունենայ. այլ քաղաքին դատաւորը միանգամայն ըլլայ ընկերութեան դատաւորն եւ իրեն օգնութիւն տրուած ծերակուտին ձեռնտուութեամբն ընկերութեան վերաբերեալ գործքերն ալ ընէ լմընցընէ: Երկրորդ, որ դատաւորին տարեկան վճարմունքն ըլլայ հարիւր ֆիորինին տեղ՝ հարիւր լէվ կամ 180 հունգ. ֆիորին:

"Աստուծոյ ողորմութեամբն, 1756 դեկտեմբերի 28 Էլիզաբէդան.

Խորհուրդ արաւ Պ. Ա. Պիրօմը հետ Պ. Աղանուն, այն բունգդերուն վերայ, որ Աղաչայ Սարըսդան նես տվաւ Պատուելի Մակխսդրադին մէկ տեղ, հետ Ա. Սարսդին եւ իրեն հրամանոցն Աղաչանուն. եւ հասդատվեցաւ այլ վար գրեալ կերպիւն.

$1^{\text{ma}}$ Որ հիմիկուցէն ալ. շատ ֆիւ Պիրով եւ գումբանիայի Աղաչաներ չի դրվին, հապայ պիլայ Պ. Քադքին Ա. Պիրօմը ֆիու եւ քաղաքի Պիրով ալ եւ պիրիկօվադ պի անէ զգումբանիայի գաուզաներն[1] ալ, հեա Պատուելի Մակխսդրադին:

$2^{\text{do}}$ Պիլայ ասոր ետեւանց Պ. Աղաչայ Պիրովին հախն 100 լէվ այսինքն 180 մաճրի: զէրայ այսպէս հասդատվեցաւ հասարակօվ:„

---

[1] Լատ. է. կը նշանակէ գործք, բան:

## 26.

Այս միջոցին էր — 1757 — որ քաղաքին գործքերը կալուածատէրութեան գնման խնդիրներովը շատ ընդարձակուելով՝ տեսնուեցաւ թէ դատաւորին ամէն բան ընելու ի վիճակի չէ։ Ուստի եւ ընդհանուր ժողով գումարելով մտածուեցաւ որ քառասնից կամ հարիւրոց ժողով մը հաստատուի. այն որ Սարըստէն, Սուդաշէն եւ Նոտարէն զատ 24 անդամ ունենայ։ Հարիւրոց ժողովին մէջէն մէկը պիտ՚որ ըլլար նախագահ. եւ մէկն, ինչպէս որ մինչեւ հիմակ եղած էր՝ Սարըստայ։ Աս ետքինը, քովը վեց խորհրդական պիտ՚որ ունենար ու անոնցմով վաճառականութեան եւ արուեստաւորաց պատկանեալ գործառնութիւնները պիտի հոգար լմնցընէր։ Սարըսդան իշխանութիւն պիտ՚որ ունենար 24 հոգիէն դատաստանի առեն քանի հոգւոյ որ պէտք ըլլար, իրեն կանչելու որ եղած խնդիրը քննեն։ Սակայն, հասարակութեան կամ քաղաքաբաշխութեան վերաբերեալ գործքերուն մէջ՝ առաջին պիտի ըլլար Սուդաշը, կամ 100ոց ժողովքին նախագահն, որ պիտի ընտրուէր հասարակութեան ժողովոյն անդամներէն։ Հարիւրոց ժողովոյն անդամները այնպիսի անձինք պիտի ըլլային, որ ի դիպուածի որ Մակիսդրադի աղաչանները տունը չգտնուէին եւ ծանրակշիռ բան մը հանդիպէր, կարենար դատաւորը զիրենք խորհրդի կանչել՝ իբրեւ

առընթերակաց, որպէս զի այն առաջարկուած խնդիրն աւելի շատ անդամներու ձեռօք քննուի ու վճռուի։ Հարիւրոց ժողովոյն անձինքները պիտ'որ կարենային նաեւ երդումն ընել տալ ու եղած առաջարկութիւններու որոշիչ ըլլալ։ — Սուդաշը պիտի ըլլար միանգամայն քաղքին ատենաբանը, փաստաբանն ու պաշտպանը։ Անանկ՝ որ եթէ տեսնէր թէ տեղէ մը հասարակութեան վնաս կը հանդիպի եւ կամ մէկ անձ մը վտանգաւոր բաներ կ'ընէ. ինք՝ հասարակութեան պիտի կարենար բողոքել ու դատաստան բանալ այն վնասակար բանին, կամ անձին դէմ։ Դարձեալ՝ երբ սարըսդան, առուտուրի, կամ վրաններու եւ կամ ուրիշ բանի մը նկատմամբ հարկաւորութիւն ունենար հարիւրոց ժողովոյն նախագահին, ասիկայ անոր երթալու էր եւ սարսդին աջ դին պիտի նստէր իբրեւ առընթերակաց, սակայն սարսդան պիտ'որ ըլլար ժողովքին նախագահ։ Ընդ հակառակն, երբ որ հարիւրոց ժողովոյն նախագահը ժողովք գումարէր, այն ատեն ինքը — սուդաշը — պիտ'որ նստէր նախագահ ու սարըստան պիտ'որ ըլլար իր աջ դին, իբրեւ առաջակայ եւ հարիւրոց ժողովոյն անդամ։

Այս աւթիւ ընտրութիւնն ինկաւ ձայնից մեծամասնութեամբ Պ. Աղաչայ Յովհան Տէր Յակոբեանին վրայ եւ անուանեցաւ նախագահ կամ սուդաշ։ Նմանապէս ընտրուեցան 100ոց ժողովոյն անդամները։ Սահմանուեցաւ միանգամայն թէ ինչ կարգաւ նստին։ Որոշումն այն

եղաւ, որ անոնք, որոնք որ յառաջագոյն ընտրեալ անդամ էին սարրստին, այն կարգաւ նստին ինչ կարգաւ որ մինչեւ հիմակ նստած էին։ Իսկ նոր ընտրած անդամները՝ յառաջագոյն ընտրուած աղաներէն ետքը նստին դէպ ի աջ ու դէպ ի ձախ, այն կարգաւ, որ վարը պիտի տեսնենք։

Աս բաներուն նկատմամբ եղած արձանագրութիւնը յաջորդն է։

"Աստուծոյ ողորմութեամբն 1757 դեկտեմբերի 23 էլիզաբէդան։

Պատճառ գրոյս այս է, որ ի Փիու եւ Քաղաքիս Պիրօվութեան Աղայ եւ Աղաչայ Անկօէնտի Աղայ Մանուկի խիգուցեանց եւ ի Սարրսդութեան Քաղաքիս Աղաչայ խաչգօյի Սնբէդրեանց խորհուրդ էղաւ երկու տակ Աղաչաներոմն վասն Սուդայի հասդատութեան։ Ջէրայ տեսնելով պատուելի Աղաչաներն, որ ասգից ինտան օր զաւուր Պատուելի քաղքին բանը շատցիլէ եւ կու շատնայ, նայ ուԹվեցաւ պատուելի Աղաչանուն որ Սուդայ հասդատվի. որ սուդան ունոյ վօդոյ հասդատվեցաւ, որ քսանը չորսբէրսօնայէ կաննի, այսինքն Աղաչայ Սուդայէն, Աղաչայ Սարրսդէն եւ Աղաչայ Նօդարիուշէն դուս. որ Սուդային մէջէն պիլայ մէկն բրէզէս[1] այսինքն Սուդաշ։ Նմանապէս պիլայ մէկն ինչպէս որ ինչվաս եղիլէ Սարսդայ. եւ պի ուննենայ քօմը վեց վադահ. որոնցմով կարենայ զՍարրսդութեան գաւզաներն տէձիտալուիդ,[2] նաեւ զշա-

[1] Նախադաս. լատ. է։
[2] Decido. քննել, յուզել, շոկել։

դրաներն տիրիկօվադ անէլու։ Բայց գիտացվի որ Աղաչայ Սալըսդան պի ունենայ փադուլդաշ, այս 24 բէրսօնայէն ամէն անգամ ձէնէլու դատսդնի ժամանակ ինչխըտար սէպէ Թէ պէտք է զգաւզան տէձիտալուիդ անէ, ասոր առաջի ատալԹին գօրայ։ Տարէ Հասարակին բաներուն մօտ պիլայ բրիմուս[1] Աղաչայ Սուդաշն, զորն որ Պատուելի Հասարակն ընտրէ։ Նմանապէս գիտելի է, որ այնպէս Հասդատվեցաւ որ այս Սուդայիս բէրսօնանէրին ունենան այնպիսի երդում տէբօնօվադ[2] անէլու, որ կարենան Պատուելի Աղաչայ Պիրօվին քով ըլալու․ գաղուգվցյ Թէ պատուելի մակիսդրադի աղաչաներն տունը չի գտվէին, ծանտր գաւզաիմն նայ, կարենայ պատուելի Աղաչայ պիրովըն այս բէրսօնանուն այն գաւզային ժամանակն նեա ձէնէլու, որպէս ասէսօր.[3] օր գաւզան ալ շատ բէրսօնաներով տէձիտալուիդ ըլայ։ Նաեւ այս բէրսօնաներին կարենան մեր քաղքին մէջ էրփընձընէլու եւ ուէլադօրիանու ուէկիուներ[4] ըլալու։ Աս ալ գիտացվի, որ Պատուելի Աղաչայ Սուդաշն պիլայ էտձէրշմինդ[5] Պատուելի Քաղքին Տէրէգդօրին ալ, այսինքն, որպէս Փիշգուշ,[6] որ Թէ օր տեսնուր որ Պատուելի Քաղքին կամ Հասարակին մէկ դիհացէմն պաքսուԹիւն կամ զէն կու գայ եւ կամ բէրսօնամն

---

[1] Առաջին։

[2] Depono. դնել, վար դնել։ Երդում դէբօնօվադ անել = երդում ընել։

[3] ԱռընԹերակաց, առաջակայ, խորհրդական։

[4] Առաջարկուած բաներու որոշիչ, վճռող։

[5] Հունգարերէն է, կը նշանակէ միանգամայն։

[6] Արքունեաց, բարձրագոյն եկամուտ։

Հասարակին զէնօքն է նայ, կարենայ դատաստան դնելու Պատուելի Մակիսդրադին դիմաց այն բանին սէպն կամ մէրսօնային վրայ։ Նմանապէս գիտացվի, որ այսպէս ուխտվեցաւ Պատուելի Հասարակին, որ երբօր Աղաչայ Սարըսդան ունենայ իքմն արուտուրի կամ շադրանու կամ օղկայ բանի դաւղայ, նայ ունէնայ Աղաչայ Սուդաշն երթալու Աղաչայ Սարըսդին մօտ. եւ պի նոգի որպէս ասէսօր Աղաչայ Սարսդին աղէկ ձեռացն դիհէն. եւ Աղաչայ Սարսդան պիլայ բրէզէս։ Նմանապէս երբոր Պ. Աղաչայ Սուդաշն քաղէր Պ. Սուդան, բանի սէպն, նայ պի նոգի Աղաչայ Սուդաշն բրէզէս եւ Աղաչայ Սարսդան պի նոգի Ա. սուդաշին աղէկ ձեռացն քով որպէս Սուդայի մէրսօնայ։

Եւ գիտացվի, որ Աստուծոյ ողորմութեամբն եղաւ էլէքձիայ ի վրայ Աղաչայ Սուդաշին. եւ գտվեցաւ ալ շատ վօտումօվ Սուդաշ մեր Պատուելի Քաղաքին, Պատուելի Աղաչայ օհան Տէր ակոբի. զոր տէր աստուած շնաւ որ արասցէ. եւ պաշխէ որ կարենայ ծառութիւն անելու Պատուելի Հասարակին ի փառս տէրութեան իւրոյ եւ ի օգուտ Մեր գօմունիդաշին. ամէն.

Աստուծոյ ողորմութեամբն եղաւ Շնորհաւոր ընտրութիւն երկու տակ Աղաչաներումն վասն Սուդայի Աղաչանու, եւ աստուածով ընտրըլվեցան վօդումօվ պատուելի Հասարակին մէջէն, որոնք հոս, ալ վար կու գտվին գրած։ Նաեւ կարգաւորութիւն, թէ որպէս պի նոգին։ Բայց գիտելի է, որ այն Աղաչաներն, որոնք

եղիլին ասոր առաջ պատուելի Աղաչայ Սարգսին քով հիմնկուցէն ալ պի նստին այն երկայոմն, թէ Պ. Աղաչայ Սուգաշին քով եւ թէ Պ. Աղաչայ Սարգսին քով եւ սի մէկալ Նոր մտնող Սուգայի Աղաչաներն պի նստին մէկալ փողուցու Աղաչանուն ետեւանց այսպէս աղէկ ձեռացն վրայ։

Աջին յետոյն դիհէն.

Ա. Անտօն ո. Հ. Նիկօլի խիգուցեանց.

Ա. Օվանէս խաչգօյի սնբէգրեանց.

Ա. Լուսիկ Սնգովիչեանց.

Ա. Արութիւն Միրզգօյի գաբտէպօվի.

Ա. Ասվատուր Քէլեանց.

Ա. Մանուկ Գրիգորի.

Սօլախոյ յետոյն դիհէն.

Ա. Դոտէրաշ ոսգերիչեանց.

Ա. Մանուկ դաւիդի շիմիլովցունց.

Ա. Մկրտիչ սթեփանի շիմիլովցունց.

Ա. Լուսիկ Ղազարի.

Ա. Գրիգոր Սհակի ագոնց.

Ա. Դոտէր վարդանի խիգուցենց.

Եւ նօդարիուշ Պ. Աղաչայ Սուգաշին նաեւ Պ. Աղաչայ Սարգսին, Աղաչայ Լուսիկ ո. Հ. Ամիրայի լննկանոսեանց։„

Երբ 1757 ին առաջին անգամ ընտրուեցաւ քաղքի եւ ընկերութեան ընդհանուր դատաւոր, ընթերցողաց շատ ծանօթ Անկաէնտ Մանուկի Խիգուցեանց, առաջին գործքն եղաւ յաջողցընել, որ խորհրդականներն, որոնք բաւական գործք կը տեսնէին, գոնէ քիչ մը վճարմունք ունենան։

Ուստի եւ որոշուեցաւ, որ իրենց ալ 15ական Հունգարական ֆիորին տրուի տարուէ տարի։

Ահա տարեգրին խօսքերը.

"Աստուծոյ ողորմութեամբն Ամի Տեառն 1757 ունվարի 2ին.

Կամօքն Աստուծոյ եւ կամեցողին ամենայն բարեաց, եղեւ շնորհաւոր Պիրօվի ընդրութիւնն քաղաքի եւ գումբանիայի։ Քանզի խնդրելով զՊատուելի Ա. անկսէնտը Մանուկի խըրգուցեանց, որ այս տարի անձըն առնու զՊատուելի քաղքին եւ գումբանիային Պիրօվութիւնը եւ կատարէ ըստ կարողութեանն[1] որոնց անունը կան ալ վար նիշանակած։

Պատուելի քաղքին եւ գումբանիային Պիրով

Աղաչայ Անկսէնտ Մկի. խըրգուցենց։
Աղաչայ Ղազար Օհանեանց.
Աղաչայ Մարտիրոս բադրուպանի.
Աղաչայ Լուսիկ Թորոսեանց.
Աղաչայ Նիկօլ Շիմիլօվցու, ըսկէփանի.
Աղաչայ Լուսիկ օսգէրիչեանց.
Աղաչայ Անկսէնտ Վարդանի խըրգուցն.
Աղաչայ Մելքոն Կաշբարի.
Աղաչայ Օվանէս Օսգերիչեանց.
Աղաչայ Նիկօլ Ճերախեանց.
Աղաչայ Պօտէր Վարդիկի.
Աղաչայ Թուման Ջատիկի.

---

[1] Արձանագրութիւնը հոս պակաս է։ Անկէ ամբողջ տող մը դուրս ձգուած կ'երեւայ։ Ըստ իս ըլլալու է — իբր այսպէս. "եւ գտանէ ըստ արդարութեանն„ եւ այլն։ "Եւ գիտացիք թէ դոքայ են Աղայք . . .։

*Աղաչայ խնկանոս Ամիրայեան.*

*Աղաչայ Մարտիրոս գօշօղանի Նօղարիուս Պ. քաղքին։ Եւ մէկալ 13 Պ. Աղաչանուն հախն պիլայ ամէն մէկին տարեն գլօխ 15 մաճարի մաճըրքի։ Որ հասդատութիւնն էղաւ մէկ վօղումով ընդրէկ հասարակինը։„*

*Այն միջոցին որ Խսիգուցեան դատաւորն* 1759*ին պատգամաւորութեամբ Վիէննա կը գտնուէր, քաղքին համար արքունական կալուածատէրութիւնը գնելու եւ կայսերական արտօնութեանց կոնդակը նորոգելու, քաղաքացիք արտօնագրին զօրութեամբ ժողովեցան — Յունուար* 4*ին — եւ զինք լիուլի քուէով, նորէն, երրորդ անգամ՝ դատաւոր ընտրեցին. եւ շնորհաւորութիւններին դատաւորի փոխանորդին ընելէն ետեւ՝ ընտրութիւնն իրեն նամակաւ ծանուցին։ Եւ թէպէտ ուրիշ դատաւորներու պէս երկու տարին լմնցուցած էր — կ'ըսէ արձանագիրն, — այսու ամենայնիւ ուզեց հասարակութիւնն, որ երրորդ տարին ալ ինք ըլլայ՝ ընկերութեան, ինչպէս նաեւ հասարակութեան դատաւոր։ Այս բանս ըրաւ քաղաքային վարչութիւնն անշուշտ անոր համար, վասն զի գիտէր իր արժանիքն, իր մեծ գործունէութիւնն ու ճարտարութիւնը եւ քաղքին յառաջադիմութեան համար ունեցած եռանդը։*

*Տեսնենք աստ նկատմամբ ձեռուընիս եղած արձանագրութիւնը։*

*"Աստուծոյ ողորմութեամբն* 1759 *ունվարի* 4*. էյիզաբէդան։ Պատճառ գրոյս այս է,*

որ մեր բրեվիլէկիումին դէնօրին գօրայ, գալով դերմինը, որ պիրով ընդրութիւն արվի. եւ Հանդիպելով որ Մեր Պատուելի Աղաչայ Պիրոֆն Պէջն կու գտվէր, որպէս տէբուդադուշ Պ. գօմունիդաշին, քաղվեցանք բոլոր Մակխդրադն նաեւ բոլոր ձէնդումվիրադուշն եւ ունոյ վօդոյ գօնֆիրմօվադ առինք Պիրով Մեր գօմբանիային նաեւ Մեր էլիզաբէդ Քաղքին այլվի զվերոգրեալ Պատուելի Աղաչայ Անկսէնտն Աղաչայ Մկի. խնդուցեանց: Թէպէտ իրեն պատուելութիւն ներկայ չէր գտվել. բայց Պատուելի Աղաչայ սուբսդիդուշ[1] պիրովին կրադուլովադ արինք ին բէրսօնայ. եւ Պատուելի Աղաչայ Պիրովին, Պէջն, գրով: Եւ թէպէտ երկու տարին լմնցուցիլէր որպէս առաջ եղեալ Աղաչայ Պիրոֆներն. բայց որովհետեւ ին ագդու[2] կու գտվեր Պէջն որպէս տէբուդադուշ, ութվեցաւ Պատուելի Հասարակին որ զիրեքում տարին ալ քալցընու, զոր տէր աստուած շնաւոր անէ եւ պաշխէ առողջութիւն, նաեւ իմաստութիւն, որ կարավարէ զՄեր փոքրիկ Հասարակութիւնը ի փառս տեառն ամէն:„

Երբ 1760ին, դատաւոր ընտրուեցաւ Աղաչայ Թուման Ջատիկեանց ու անուանեցան իր 12 առընթերակացները՝ Հասարակութիւնն որոշեց, որ անկից ետքը դատաւորն ընդունի իր պաշտօնին համար տարուէ տարի 60 ոսկի կամ 300 հունգարական ֆիորին, իսկ առաջականները

[1] Լատ. է. կը նշանակէ օգնական, քովի եղող:
[2] Գործքի մէջ. լատ. է:

*կամ ծերակուտի անդամները 6 ական ոսկի կամ 30 ական փիորին։*

*Ահա ընտրութիւնն ու որոշումն ըստ ժամանակակից արձանագրութեան։*

*"Աստուծոյ ողորմութեամբն 1760 ունվարի 4 Էլիզաբեդան։ Մեր Թագուհուն Մարիայ Թէրէզիային շնորհաց բրէվիլէկիումին դէնօրին*[1] *գօրայ եղաւ շնաւոր ընտրութիւն վօգումով պատուելի Աղաչայ պիրովին. եւ ընտրեցինք զպատուելի Աղաչայ Թումանըն Ջատիկեանց պիրով պատուելի գօմբանիային. նաեւ պատուելի Էլիզաբեդ Քաղաքին, որ պատուելի Աղաչայ պիրովին քով կու գտվին սէնադօրներ այս այլ վար գրած պատուելի Աղաչաներին։ — պ. Աղաչայ պիրովին հազդատեց պ. Հասարակն տարեկան հախ 60 ոսգի այսինքն 300 մաճրի. նմանապէս պ. Աղաչայ Սէնադօրնուն Մէկին տարեկան հախ 6 ոսգի, այսինքն 30 մաճրի. որ պ. Ա. պիրոմն եւ պ. Ա. Սէնադօրներն ունենան զպ. գումբանիային եւ զպ. Էլիզաբեդ քաղքին աարտն քալցընէլու, կառավարելու ըստ կարողութեան եւ դատելու ըստ արդարութեան զոր տէր Աստուած շնահաւոր արասցէ. ամէն։*

Պատուելի գոմբանիային եւ պ. Էլիզաբեդ Քաղաքին պիրով.

*Աղայ Թուման Ջատիկեանց.*

Աղէկ յետոյը դիմէն կու նայի.

*Աղայ Ղազար Օհանեանց.*

---

[1] *իմաստ, բովանդակութիւն, ձայն. լատ. է։*

Աղայ Լուսիկ ոսկերիչեանց.
Աղայ Օվանէս ոսկերիչեանց.
Աղայ Անկսէնտ Ա. Մանուկի խիգուցենց.
Աղայ խնկանոս Ամիրայի.
Աղայ խնկանոս Հանգըյի:
Սօլախոյ Յեռացն գէՀէՆ չու Նոզէ.
Աղայ Լուսիկ Թորոսեանց.
Աղայ Մելքոն կաշքարեանց.
Աղայ Նիկօլ Ճիրախեանց.
Աղայ Պօտէր Վարդիկեանց.
Աղայ Մարտիրոս Գոշողանի.
Աղայ Անդօն Նիգօշի խիգուցեանց:

Եւ Նօդարիուշ Պ. գումբանիային նաեւ Պ. Էլիզաբէդ քաղքին Մակիսդրադին. Աղայ Ասվատուր վիգօլեանց:

Նմանապէս Աղաչայ Թորոս դիուրիուգեանց ակիուՆդուս Նօդարիուս Պատւելի Մակիսդրադին:„

1762ին դատաւոր ընդրուեցաւ Աղա Մարտիրոս Գոշողանեանց. եւ իրեն իրական քարտուղար — չորրորդ անգամ — Պ. Ա. Աստուածատուր վիգօլեան, իսկ օգնական Նօտար Պ. Ա. Թորոս Ունանեան: Ընտրութիւն եղաւ նաեւ 100ոց ժողովոյն նախագահին եւ իր խորհրդականացը:

Կը դնեմ հոս ժողովքին ընթացքն ըստ արձանագրութեան նաեւ 100ոց ժողովոյն անդամները:

"Աստուծոյ ողորմութեամբ 1762 ունվարի 4 Էլիզաբէդան:

Պատճառ գրոյս այս է, ինչպէս որ Թագուհոյն կրաձիայէն մեր բրէվէլէկիումին դէնօրին գօրայ եղեւ շնորհաւոր Պիրօվի ընդրութիւն մէկ տեղ Պ. Մակիսդրադին, հետ Պատուելի Սուգայի. եւ վօդումով ընդրեցին զՊ. Աղայ Մարտիրոսն գօշօդանեանց գումբանիայի Փիւ եւ Պ. էլէզաբէդ Քաղաքին Պիրօվ. եւ խնդրեցինք որ անցն արնու եւ մէկ տարիմն կարավարէ զՊատուելի գումբանիան նա եւ զՊ. էլիզաբէդ քաղաքն։ Եւ հաստատեց Պ քաղաքն Պ. Ա։ Պիրօվին տարեկան հախ H. F. 300 այսինքն երեք հարուր մաճրի։ Եւ այսպէս պի կարավարէ զՊ. հասարակութիւնն արդարութեամբ, զոր Տէր Աստուած ուժ եւ կարողութիւն պարգեւէ, որ կարենայ կարավարէլու։ Ասոր էտեւանց կու գրվին հօս ավ վար Պ. Մակիսդրադին Աղաչաններն կարգաւ. այսինքն (կը յաջորդեն 12 ծերակուտի անդամները)։

Գիտացվի որ հաստատեց Պ. հասարակն 13 Աղաչին հախ տարեկան մէկին մէկին H. F. 30 այսինքն երեսուն մաճրի. որ բանը աստուած պաշխէ, որ շնորհաւոր ըլայ եւ կարենան Ամենեքեանը հաւատարմութեամբ Պ. հասարակին ի փառս տեառն եւ ի օգուտ հասարակութեան ծառայէլու. Ամէն։

Նմանապէս եղեւ շնաւոր ընտրութիւնն Պ. Աղաչայ Սուգաշի. եւ ընդրեցինք վօդումօվ Սուգաշ Պ. էլիզաբէդ Քաղաքին զՊ. Աղաչայ Լուսիկն Ո. Հ. Ամիրայի։ Եւ պիլան Սուգայի Աղաչաններն. այս ավ վար գրած Աղաչաններն.

Պատուելի Ա. Լուսիկ Ո. Հ. Ամիրայի սուղաշ։

Աստուծով ողջէն յետոյն վրայ.

Աղաչայ խաչգոյ Մնդրեդրեանց.
Աղաչայ Լուսիկ շիմիլովցու.
Աղաչայ ակօբ Մնդրէդրի.
Աղաչայ Ջատիկ Թորոսի.
Աղաչայ Օվանէս խաչգօյի Մնդրէդրենց.
Աղաչայ Մանուկ Դաւիդի.
Աղաչայ Ասվատուր քէլեանց.
Աղաչայ Մանուկ գրիգորի.
Աղաչայ Դօտէր Վարդնի Խսիգուցն.
Աղաչայ Վարդան խասօյի.
Աղաչայ Մանուկ զատիկենց. Խսիգուցն.
Աղաչայ Պետրոս Հանգօյի.
Աղաչայ խաչերեսի սիմոն.
Աղաչայ Տօնիկ Ասվատրի։

Աստուծով ողորմոյ յետոյն վրայ.

Աղաչայ խաչիկ քէլեանց.
Աղաչայ Ուսէփ շիմիլովցու.
Աղաչայ Լուսիկ Բաղրուպանենց.
Աղաչայ Դօտէրաշ ոսգերիչենց.
Աղաչայ Միդգօյի արուԹիւն.
Աղաչայ Լուսիկ Մնգօվիչի.
Աղաչայ Մկրտիչ շիմիլօվցու.
Աղաչայ Լուսիկ Ղազարի օհանեանց.
Աղաչայ Գրիգոր սհակի ագոնց.
Աղաչայ Վարդան եօլպէի.
Աղաչայ գրիգոր Մեղտեսոնց.
Աղաչայ Օհան իսայի.
Աղաչայ Միքայէլ վարդանի իսիգուց.

նօդարիուշ Աղաչայ Սուդաշին Ա. Մանուկ Վարդիկեանց։„

Տեսան ընթերցողք, թէ դատաւորն ի սկզբան, տարուէ տարի միայն 6 ոսկի կամ երեսուն հունգ. ֆլորին վարձք կ'ընդունէր իր պաշտօնին համար։ Բայց ժամանակն ու յարաբերութիւնները փախուելով՝ այն վճարմունքը կամաց կամաց մինչեւ 300 ֆլորինի բարձրացաւ։ Սակայն ասով ալ դատաւորն իր աստիճանին համեմատ չէր կրնար ապրիլ, ուստի եւ կը պարտաւորուէր դատաւորութեան պաշտօնէն զատ, կամ իր երկիրները հոգալ, եւ կամ վաճառականութիւն ընել։ Եւ որովհետեւ իր անձնական գործոցը ետեւէն իյնալովը՝ քաղքէն երբեմն հեռանալու կը հարկադրէր, անոր համար այս միջոցիս օգնական դատաւոր մը ձեռք կ'առնուր իր պաշտօնը։ Երբ քաղաքային հասարակութիւնը տեսաւ, որ դատաւորներն երկայն ատեն իրենց պաշտօնէն հեռու ըլլալու ստիպուած են, սահմանեց որ եթէ դատաւոր մը շաբաթ մը հեռու կենայ իր պաշտօնէն, իւր սեպհական գործոցը համար, այն ատեն օգնական դատաւորը պարտական ըլլայ զինք պաշտօնին մէջ ձրի փոխանակելու։ Իսկ եթէ անոր հեռաւորութիւնը ութ օրէն աւելի տեւէ, այն ժամանակ, բուն դատաւորն իւր վճարմունքէն այնչափ տայ օգնական դատաւորին, որչափ ինք կ'ընդունի ամէն օր։ Բայց թէ որ քաղաքային պաշտօնով մը կը հեռանայ քաղքէն — եւ այս բանս որչափ ատեն ալ տեւէ — պարտական չըլլայ իր

*վճարքէն փոխանակի դատաւորին բան մը տալու։ Որոշուեցաւ ան ալ, որ եթէ օգնական դատաւորը մէկ շաբթէ մ'աւելի ձրի ծառայութիւն ընել չուզենար, այն ատեն պիտի յանձնէր այս վերջինը՝ դատաւորութիւնը երրորդի մը. եւ այսպէս կարգաւ, մէկէն՝ մէկալին պիտ'որ անցնէր դատաւորին պաշտօնը։ Եթէ իրական դատաւորն, ոչ թէ քաղքին, այլ իր անձնական գործոցը համար, Դրանսիլուանիայէն դուրս, նոյն իսկ մէկ օրուան մը համար ալ հեռանար՝ իր երթալու օրէն հաշուելով, իր վճարքը փոխանակի դատաւորին պէտք էր տալ, մինչեւ տուն գալու օրը։ Սակայն այս դէպքին մէջ, փոխանորդ դատաւորը կը պարտաւորէր, իրական դատաւորին քաղքին մէջ պատահած դէպքերուն վրայօք լիուլի տեղեկութիւն տալ, նաեւ քաղքին հաշիններն անոր մէկիկ մէկիկ ներկայացընել։*

*Ահաւասիկ որոշմունքն, ըստ բնագրին։*

«1762 *ունվարի* 7*ին. էլիզաբէդան։*

*Պատճառ գրոյս այս է. ինչպէս որ գօնգլուտովադ*[1] *եղաւ Պ. հասարակէն վասն Պ. Ա. Պիրօվին հախին, որ ասգից ինտան թէ օր ուզենար Պ. Ա. ագդուվալիս*[2] *Պիրօվն երթալու քաղքէն դուս, իրեն բանին սէպն, եւ ուզենար գօնշդիդուդօվադ*[3] *անէլու Պիրօվ նայ պարտական պիլայ այն Աղաչայ գօնշդիդուդուշ Պիրօվն Մէկ շաբադ մը կրադիս*[4] *ծարութիւն անէլու։ Բայց*

1 Concludo. *որոշել, սահմանել։*
2 *Իրական. բուն։*
3 Constituo. *դնել, կարգել, իրեն տեղը նստեցընել։*
4 *Լատ. բառ է. կը նշանակէ ձրի։*

թէ որ ալ շատ ուզենար Ա. ագդուալիս պիրօյն մէկ շաբդէն իրեն ատուկ բանին մօտ կենալու նայ, ունենայ Ա. ագդուալիս Պիրօյն իրեն ատուկ հախէն որն որ կառնու Պատուելի քաղքէն այն Ա. գօնշդիդուդուս պիրօվին հախ տալու անխտար աւուր, ինչխնտար շաբդէն դուս ծառութիւն արիլէ. ինչ որ գար աւուր գլօխ։ Բայց թէ որ երթար Ա. ագդուալիս Պիրօյն քաղքի բանի սէպն. եւ մագար քան ինչ շատ ուշանար քաղքին բանին մօտ նայ, պարտական չի պիլայ Ա. ագդուալիս պիրօյն հախ տալու։ Հապա չի ուզենար Ա. գօնշդիդուդուս Պիրօյն ծառութիւն անէլու մէկ շաբդէն աւելի կրադիս, նայ պի խրկէ զՊիրօվութիւնը օղկայ աղաչի. եւ այսպէս պի երթայ կարքաւ։ Բայց թէ որ երթար Պ. Ա. ագդուալիս պիրօյն երկրէն դուս իրեն բանին մօտ, նայ այն աւուրէն որ կու էլէ ճամբայ եւ կու խրկէ զպիրօվութիւնը օղկային, ունենայ հախն Ա. գօնշդիդուդուս Պիրօվին տալու, մինչեւ որ տուն գայ եւ զՊիրօվութիւնը ադօլ առնու։[1] Աս ալ գիտելի է որ Ա. գօնշդիդուդուս Պիրօվ ունենայ Ա. ագդուվալիս Պիրովին մի ըստ միոջէ զսէպն տալու, թէ առնելն եւ թէ զտալն Պատուելի քաղքին մէջ, ինչ որ նալէժիդ[2] կանէ զԱ. Պիրօվին սէպըն, այնքան ժամանակի որքան որ գօնշդիդուդուս պիրօվ էլիլէ։„

Երբ երեք տարի ետքը նորէն պերճաբան

---

[1] Áltat venni. Հունգարերէն է. կը նշանակէ, ձեռքը, յանձն առնուլ, ընտանձնել։

[2] կարծեմ ծանրանալ, պարտաւորել, կը նշանակէ։

*ու գործոցը մէջ յաջողակ Աւքսենտիոս Մ. Խիզուցեան ընտրուեցաւ դատաւոր՝ այն առաջարկութիւնն ըրաւ, որ ծերակուտի անդամները տարուէ տարի գոնէ ութը ոսկի ընդունին: Քաղաքային վարչութիւնն այս բանաւոր առաջարկութիւնն ընդունեցաւ: Բայց՝ աւելցուց թէ դատաւորն, ինչպէս նաեւ խորհրդականները, հոգ տանին քաղքին նիւթական ու մտաւորական յառաջադիմութիւնը յառաջ տանելու. զանիկայ ըստ կարողութեան կառավարելու եւ ըստ արդարութեան դատելու: Այս առթիւ նոր խորհրդականներ կ'ընտրուին, ու միանգամայն կ'որոշուի իւրաքանչիւրին տեղը:*

"*Աստուածոյ ողորմութեամբն* 1763 *ունվարի* 4 *էլիզաբէդան:*

*Մեր թագուհոյն Մարիայ Թէրէզիային շնորհաց բրէվիլէկիումին գինորին*[1] *գօրայ, եղեւ շնաւոր ընդրութիւնն վօղումով Պ. Աղաչայ Պիրօվին. եւ ընտրեցինք զՊատուելի Աղայ եւ Աղաչայ անկսէնտ Ա. մանուկի Խիզուցեանց Պիրօվ Պ. գումբանիային նաեւ Պատուելի էլիզաբէդ Քաղաքին. որ Պ. Աղաչայ Պիրօվին քօվ կու գտվին Պատուելի Աղաչաներ եւ սէնագօրներ այս ալ վար գրած Պ. Աղաչաներն. որ Պ. Աղաչայ Պիրօվին հաստատեց Պատուելի հասարակն տարեկան հախ* 60 *ոսգի այսինքն երեք հարուր մաճրի: Նմանապէս Պ. Աղաչայ Սէնագօրնուն մէկ տարեկան հախ* 33 *զլօթ, այսինքն*

---

[1] Այսինքն tenor = *որոշումն, ձայն, իմաստ:*

8 ոսգի. որ Պ. Աղաչայ Պիրօֆն եւ Պ. Աղաչայ Սէնադօրներն ունենան զՊ. գումբանիային եւ զՊ. էլիզաբէդ քաղքին տարտն քալցընելու. կառավարելու ըստ կարօղութեան եւ դատելու ըստ արդարութեան. զոր Տէր Աստուած շնաւոր արասցէ. Ամէն:„

Քաղաքաբաշխութիւնը համոզուելով, որ դատաւորին գործքերն իրօք շատ են ու վճարքը քիչ, 60 ֆիորին մըն ալ աւելցուց անոր վրայ եւ ըրաւ 360 ֆիորին: Բայց որպէս զի իր տնային գործքերուն ետեւէն իյնալուն եւ քաղքէն հեռանալուն առջեւ թումբ մը քաշէ, սահմանեց, որ այն օրէն, որ դատաւորն իր անձնական գործոց համար քաղքէն կը հեռանայ, վճարքը՝ զոր իր պաշտօնին համար կ'ընդունի, իրեն փոխանորդ դատաւորին տայ: Բնական է ենթադրելը, որ եթէ պաշտօնապէս, կամ թէ քաղքին վերաբերեալ գործոց համար տեղ մ'երթար, պարտական չէր իրեն փոխանորդին բան մը տալու, ըստ վաղեմի որոշման: Այս դէպքին մէջ փոխանակի դատաւորը պարտական էր, իր ծառայութիւնը քաղքին ձրի մատուցանելու:

Նմանապէս այն մակիսդրադի անդամներուն համար, որոնք քաղքին գործոցը համար մէկ կամ մէկալ տեղ կ'երթան, ու անոնց մէկ քանին ուրիշներէն շատ աւելի ծանրաբեռնութեան տակ ինկած են — եւ սակայն իրենց վճարմունքն ուրիշներէն աւելի չէ — սահմանուեցաւ, որ երբ պատգամաւորութեամբ հեռանան, եւ կամ այն միջոցին որ հասարակութեան գործքին հա-

մար տեղ մը խրկուին, ամէն օր մէյ մէկ Փիորին աւուրչէք ունենան. չհաշուելով այն ծախքերը, զորոնք հասարակութեան համար ըրած են, որ ծախքերն որ քաղքին արկղէն վճարուելու էին։

Ահա որոշմունքներն, ըստ արձանագրին։

“1765 ունվարի 4 էլիզաբէդան։

Աստուծոյ ողորմութեամբն գիտացվի, որ տեսնելով Պ. Հասարակն, որ օր զաւուր Պ. Աղաչայ Պիրօվին բանը շատցիլէ ու ծանրացիլէ եւ կու ծանրանայ, նայ ասոր գօրայ ութվեցաւ Պ. Հասարակին, որ ասոր էտեւանց ունէնայ Աղաչայ Պիրօվն տարէկան հախ 360 մաճրի այսինքն երեք հարուր ու վաթսուն մաճրի։ Որովհետեւ որ կէրթայ տանէն եւ կու տայ զՊիրօվութիւնը օզկային, նայ պէտք է որ իրեն հրամանոցը հախէն աբրօմօրձիօնէ, ինչ որ գար աւուր գլօխ, այն սուբշդիդուդուշ Պիրօվին տայ կամ վճարէ, նայ ասոր համար ավելցվեցաւ հախն որ ասգից ինտան այն աւուրէն, որ կու խրկէ զՊիրովութիւնը օղկային նայ, ունենայ զհախըն տալու այն սուբշդիդուդուշ Պիրօվին։ Բայց թէ օր Աղաչայ Ագդուալիս Պիրօվն էրթար քաղքին կամ հասարակին բանին սէպըն իրեքմն,[1] եւ թողուր սուբսշդիդուդուշ Պիրօվ, նայ այն Պիրօվն պարտական չիլայ զսօլարիումն[2] տալու, այլ թէ այն Աղաչայ Պիրօվն պարտական պիլայ կրադիս ծառութիւն անէլու։ Եւ այսպէս կու հասգցվի, որ

---

[1] Դրանսիլուանիոյ հայոց լեզուաւը կը նշանակէ, տեղ մը։

[2] Մուտք, եկամուտ։

՚թէ օր արտեալն, թէ մաճառք եւ թէ հոս տունը պիրովութիւն չի անէր, նայ զսօլարիումն ունէնայ սուբշդիդուդուշ պիրօվլին տալու. որովհետեւ նարայ կուգայ հախըն որն որ ագդու փունկալուիդ[1] կու անէ:„

“Աստուծոյ ողորմութեամբն 767 Մարտի 23ին էլիզաբէդան: Քաղվելով Պ. հասարակն եւ խորհուրդ անելով վասն Աղաչայ Տէբուդադուշնան, որ կու քալին այս երկըրին մէջ հասարակի բանով, այսինքն Մակիսդրադին Աղաչաներն. ութվեցաւ Պ. Հասարակին, որ որով հետեւ դասմն աղաչայներ, ալ շատ անգամ պէտգէ որ աշխատին. եւ տարեկան հախ մէկն աւելի չի առնուլ քանծ մէկալըն. վասն որոյ ութվեցաւ Պ. Հասարակին. որ որօվ հետեւ դասմըն աղաչաներ տէբուդաձիային պատճարօմն ալ շատ պէտգէ օր աշխատին, նայ հիմպիկուցէն, որ Մակիսդրադի Աղաչան ալ երթար տէբուդադուշ Պատվելի հասարակին բանօմն, նայ պի ունենայ Տիուրնում[2] աւուր մէկ ըղլօթ, զարտ[3] խարճն, որ խարճըն Պ. Հասարակին գասայէն պիլայ:„

Երբ որ 1771ին մեր պատմութեանը մէջ մեծ դեր խաղացող Աստուածատուր Վիգօլեան ընտրուեցաւ դատաւոր, որոշուեցաւ որ պաշտօնը լմնցընող (emeritus) դատաւորն ամենեւին ընտրութեան տակ չիյնայ: Եւ որովհետեւ տես-

---

1 Պաշտօնը կատարել, վարել:
2 Լատ. է. կը նշանակէ աւուրչէք, օրական վարձք:
3 Ի բաց, դուրս առնելով. չհաշուելով:

նուեցաւ թէ հարկ է որ քաղաքային տնտես մ'ալ ունենայ քաղաքն, որուն պաշտօնը պիտի ըլլար, նայիլ քաղքին տնտեսական բաներուն. որով մատակարարութեան բեռը քաղաքապետին վրայէն պիտի առնուէր. անոր համար հասարակութիւնը սահմանեց, որ դատաւորին տարեկան եկամուտէն 160 ֆիորին կտրուելով՝ ըլլայ իր տարեկան վճարքը միայն 200 ֆիորին. նմանապէս քաղքին տնտեսինն ալ 200 ֆիորին:

Այս ժողովքին մէջ, դատաւորին ընտրութեանը նկատմամբ շատ նշանաւոր որոշում մ'եղաւ: Այսինքն թէ, այն ընտրող աղաչաններն, որոնք ժողովքին մէջ իրապէս մաս չեն առեր՝ քուէ չուզուի ու չառնուի. եւ ոչ ալ հեռաւոր աղաչաններուն ներս խրկած քուէներն ընդունելի ըլլան: Ուրիշ խօսքերով՝ քուէարկութեան իրաւունք ունենան միայն անոնք որոնք ընտրութեան ներկայ են: Սահմանուեցաւ դարձեալ թէ — վաղեմի որոշման մը համեմատ — 100ոց ժողովքին նախագահն ալ ամէն տարի քուէարկութեամբ ընտրուի:

Տեսնենք այս որոշմունքներուն արձանագրութիւնը:

“1771 $4^{ta}$ Januarii. Հասարակով հաստատվեցավ, որ բրեվիլէկիումին դէնօրին գօրայ Ամէն տարի նոր էլէգձիայ[1] ըլայ. եւ էմէրիդուս Պիրօվը ան էլէգձիային ամէնեվին վօղումի տակ ջի մըտնու: Եւ որովհետեւ հաստատվեցավ, որ

[1] Ընտրութիւն:

վարոշ կազտայ[1] դըրվի, որ վարոշ կազտան էգօնօմիգում բէրը Աղաչայ Պիրօվին վրայէն կու վերցընույ, բէրը Թէթէփնալօվ, հաղէն ալ, հասարակօվ հաստատվեցավ որ կըտրըվի եւ ըլլայ 200 գլօթ Պիրօվութեան հաղը տարին գըլօղ. եւ վարոշ կազդայինը նմանապէս 200 ըզլօդ: Եւ աս ալ հաստատվեցավ որ դուսի Աղաչանուն մէ վօդում այսայ հէտեւ ջի ուզվի եւ ոչ Ապսէնս[2] Աղաչանուն մէյ խըրկած վօդումալէյ ձէտուլան[3] Ադձէբդօվադ ըլլայ: Նայքայ միայն պարտավորված պիլան վօդում տալույ, որ Աղաչանները օր էլէգձիային նէրկայ կու գըտվին: Ըրմանապէս ալ առաջի հաստատութեան գօրայ հետ Պիրօյ ընդրօղութեան Սուդաշ ալ ամէն տարի վօդումօվ ընդըրվի, նօրէնն ալ հաստատութինը գօնֆիրմօվադ[4] էղավ:„

## 27.

Տեսանք թէ ի սկզբան անդ դատաւորին ընտրութիւնն ինչպիսի նահապետական կերպով կը կատարուէր. թէ՝ ինչպէս ծերք իրենցմէ մէկուն կ'աղաչէին որ յանձն առնու դատաւորական պաշտօնը: Թէպէտ ատեն անցնելէն ետեւ քուէարկութեան տակ ձգուեցաւ այս ընտրութիւնը, սակայն ամենայն պարզութեամբ, միամտութեամբ եւ առանց մէկ հսկողութեան կը կատարուէր այս բանս: Ժամանակ անցնելով, որչափ կ'իմա-

---

[1] Քաղաքային վարչութեան անտես. Հունգ. է։
[2] Հեռաւոր, հեռու գտնուող։
[3] Քուէարկութեան տոմս. քուէ։
[4] Confirmo. Հաստատել, ամրացընել, վերանորոգել։

նանք, այս ընտրութեան մէջ վարպետութիւններ սկսան բանեցընել. որոնց հետեւութիւններն՝ եղան անմիաբանութիւն ու կռիւ։ Գոնէ այս հետեւցընել կու տան ժամանակակից արձանագրութիւններն, ուր կը կարդանք թէ “Պիրօվ ընտրութեանը ժամանակը վան թուրլու թուրլու փաքցիօնուն համար, շատ կլճավաններ պատճառվիլլին։„ Անոր համար, ուպէս զի ասոնց առջեւն առնուի, եւ ինչպէս արձանագրութիւնը կը շարունակէ, Ճշմարտիւ Հոգւոյն սրբոյ օգնութեամբն ըլլայ ընտրութիւնը, որոշուեցաւ որ յաջորդ տարօրինակ կերպով ըլլուի քուէարկութիւնը. — եթէ լաւ հասկըցած ենք արձանագրութիւնը։

Նախ. հին սովորութեան համեմատ բոլոր հասարակութեան անդամները երեք արժանաւոր անձ պիտի ընտրէին քուէարկութեամբ։ Աս ըլլալէն ետեւ, երեք թղթեակ պիտի դրուէր երեք պզտիկ գնդակի մէջ։ Երկու թղթեակ պարապ պիտի ըլլար, իսկ երրորդին վրայ պիտի գտնուէր դատաւորին անունը։ Ասոր վրայ երեք գնդակներն իրարու հետ պիտի խառնուէին ու դատաւորի հետամուտներուն պիտի տրուէին որ անոնցմէ մէկը ընտրէ հատ մը. հետեւաբար երկրորդն ալ ու երրորդն ալ։ Բնական է, թէ որն որ ամենէն շատ քուէն ունենար, այն պիտի ըլլար դատաւորը։

Այս դժուարահասկընալի ու զարմանալի ընտրութեան վրայ այսպէս կը խօսի ժողովքը։ Որովհետեւ կը ճանչնայ հասարակութիւնը թէ

*ընտրութիւնը հոգւոյն սրբոյ լուսաւորութեամբըն եղած է, անոր համար հասարակաց հաւանութեամբ հաստատեց որ այս կերպով եղած ընտրութիւնը ամէն ժամանակի համար անխախտ մնայ. եւ ոչինչ պատճառի համար փոխուի երբէք: Մանաւանդ թէ, ինչպէս հիմակ դրած ամէն կարգադրութիւնները զօրութեան մէջ մնացած են, կ'ուզենք, որ այս ալ իւր հաստատութիւնն ունենայ ցյաւիտեանս:*

*Կը դնեմ հոս, շատ մթին արձանագրութիւնը:*

“Anno 1777 Die 4[ta] Men. Jan. *էլիզաբէդան* sub confluxu Magistratuali et totius Communitatis communi voto[1] *հաստատվեցավ, որ վորով հեաեւ Պիրօվ ընդրութեանը ժամանակը վասն թուրլու թուրլու ֆաքցիօնուն*[2] *համար շատ կլճավաներ*[3] *պատճարվիլին. որ ալէս այսուհետեւ ասօնք վերջացվէին եւ լըման հօգւոյն սրբոյ աջօղութեամբըն արժանաւոր Պիրօվըն ընդրըլվէր, այլ վար գրած կէրպիւըն պիլայ ընտրութիւնը:*

1[mo] *Անոր էտէվանց որ հին ուզուսին*[4] *գօրայ ընդրէկ Մակիստրադըն իրեք արժանի անձը ընտրըլվի վօդումօվ. պի դըրվին իրեք*

---

[1] *Ժողովելով առաջնորդներն եւ բոլոր հասարակութիւնը, ընդհանուր քուէով ....:*
[2] *Խարդախութիւն, կողմնակցութիւն. լատ. է:*
[3] *Այս բառն ուրիշ տեղ ալ յառաջ եկած է. կռիւ կը նշանակէ:*
[4] *Սովորութիւն. լատ. է:*

ծըտուլայ[1] իրեք պիզտի կլօպիշի[2] մէշէն էրկու-
ծըղուլայ պիլայ պարապ. եւ իրեքումին մէջ պի
գտվի Պիրօվ։ Անոր էտէվանց խարնէլօվ ատ
իրեք կշօպիշը մէկ տեղ, պի տըվի յիշեալ երեք
գանդիդադուսնուն.[3] բրօյ էգսդրաքծիօնէ[4] պի
քաշէ առաջին կլօպիշն, գօնսէքվէնդէր[5] էրկու-
սումն ալ. օվօր ալ շատ վօղում ունէնայ. եւ
այնպէս ում գայ զան կլօպիշը որին մէջը կէնայ
Պիրօվի անունը նայ, աստուծօվ նայ Պիրօվ
պիլայ։ Զաս նոր արած հասդատութիւնօվն, որօվ
հետեւ կու ճանչնայ Պատվելի Հասարակութիւնը
թէ հօգւոյն սրբոյ լուսաւորութեամբն Պիրօվ
ընդրութիւնը կի հասդատվի, Communi votumօվ
հասդատվեցաւ, օր զայս կերպիւն էլէքծիօն
մնայ ամէն ժամանակ անխախտ, եւ մէկ ժամա-
նակի մը մէջ ալ չի ավըրվին մէկ պատճառի մը
համար ալ։ Հաթէյ որպէս ընկալ[6] զօր ինչֆասի
հասդատութիւններն ինչվաս ունացիլինք. եւ
կուզինք օր ունենանք ըղվիկօրը ի յաւիտեան,
այնպէս զաս վերոյ Հասդատութիւնն ալ ունէնայ։,,

Այս նոր կարգադրութենէն ետեւ դա-
տաւոր ընդրուեցաւ Մանուկ Չիգիեան. բայց
այնպիսի պայմանով որ այնուհետեւ նաեւ կա-

---

1 Թղթեակ, տոմս, քուէ։

2 Գունդ, գնդակ։

3 Լատ. է կը նշանակէ պաշտօնի մը թիկնածու, հետամուտ։

4 Դուրս քաշելու, հանելու համար։

5 Հետեւաբար, յաջորդապէս։

6 Գերադրական մասնիկ է, ամենա . . . ամենէն։ Անշուշտ անմտադրութեամբ գրուած երկու, ինչվաս կամ ինչֆաս բառերէն մէկը հանելու ըլլանք, իմաստը կ'ըլլայ. Մանաւանդ թէ մինչեւ հիմակ ունեցած հաստատութիւններէն ամենէն աղէկը, ամենազօրաւորը . . . .։

լուածատէրութեան վրայ՝ հսկողութիւնն ինք կատարէ։ Նորոգուեցաւ այն որոշմունքը թէ դատաւորն ունենայ, ըստ սովորութեան 250 գերմանական, կամ 300 հունգ.՝ ֆիօրին վճարմունք. իսկ ծերակուտի անդամները 40 հունգ. կամ 33 գերմանական ֆիօրին եւ 20 քառանդան։ Ալ կրկնուի պայմանադրութիւնը որ թէ դատաւորն ու թէ ծերակուտի անդամները՝ հասարակութեան ու քաղքին հոգատարութիւնն ունենան. ըստ օրինի կառավարին ու ըստ արդարութեան դատեն։

Ահաւասիկ որոշումը.

“Աստուծոյ ողորմութեամբն 1777 ունվարի 4ին Էլիզաբէդան. մեր գթածագունեղ թագուհունմէ շնորհաց բրիվիլէկիումին դէնօրին գօրայ եղաւ շնորհաւոր ընդրութիւն Պիրօվութեան այս Էլիզաբէդ Քաղաքիս մէջ Հօգւոյն սրբոյ շնորհօքըն։ Ընտրըվեցաւ Աղայ եւ Աղաչայ Մանուկ ո. Հ. Ա. դաւիթի ջիգիեան արժանաւոր պատուելի Գումբանիային եւ պատուելի Էլիզաբէդ Քաղաքիս Պիրօվ. որ նաեւ ըզՏօմինիումին ինշբէգձիօն[1] ալ ունէնայ։ Կտրըվեցաւ հախ որպէս ինչֆասալ ըլօթը 250 այսինքըն մաճրի մաճրքի 300. եւ պատուելի Մակիստրադուալնուն ամէն մէկ բէրսօնային տարեկան հախըն պի տրվի ըլօթ 33 եւ 20 ք. այսինքն մաճրի 40։ Պիլան ուրեմն պատուելի Աղաչայ Սէնադօրներըն պատուելի Ա. Պիրովին քով ալ վար գրած կեր-

[1] Հսկողութիւն, տեսչութիւն, վերակացութիւն։

պիւըն, օր Պ. Ա. Պիրօֆի եւ Պ. Ա. Սէնադօրներըն ունէնան զՊատուելի Գումբանիային եւ զՊատուելի Քաղքին պարտըն քալցընելու, ըստ կարողութեան կառավարելու եւ ըստ արդարութեան դատելու. զոր Տէր Աստուած շնորհաւոր արասցէ:„ — —

Գատաւորն, ինչպէս նաեւ ուրիշ ամէն պաշտօնատարք պաշտօնի մտած ատեննին, ամէն կրթեալ ազգաց քով եղած ընդհանուր սովորութեան համեմատ, նախագահին, պաշտօնատարաց եւ ներկայ գտնուող ժողովականաց առջեւ երդում պիտի ընէին:

Երդման ձեւ մը կը գտնենք Եղիսաբեթուպոլսոյ դիւանական գրութեանց մէջ դեռ 1758 էն: Ասոր սկզբնական բնագիրն անտարակոյս լատիներէն եղած պիտ'որ ըլլայ: Բայց որովհետեւ շատ հաւանական է, որ ազգայնոցմէ, ո՛չ ամէն երդուեալ եւ ո՛չ ալ ամէն ժողովքի ներկայ գտնուող առաջակայ լատիներէն լեզուին տեղեակ էր, անոր համար հայերէն կը պատուորէր ընելու երդման ձեւը: — Ըստ այսմ՝

Ա. Գատաւորը — յանուն ամենակարողին Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ երդում ընելով ու Աստուածածնայ եւ ամենայն սրբոց օգնութիւնը խնդրելով — կը խոստանար, որ ամենայն ջանք պիտի ընէ, հասարակութեան ու Եղիսաբեթուպոլիս քաղքին շահն ըստ իր կարողութեանը՝ արդարութեամբ այնպէս յառաջ տանելու, ինչպէս հասարակութեան ու հարիւրոց ժողովոյն մեծագոյն մասը լաւ համարի: Եթէ

տեղ մը իմանամ, կ'ըսէր, որ հասարակութեան վաստակ մը եւ — Աստուած պահէ — տեսնեմ, որ զէն մը կայ, Մակիսդրադին ու Սուդային առջեւ պիտի դնեմ. եւ անոնց հետ խորհուրդ ընելով՝ վաստակը յառաջ տանելու եւ զէնը՝ հեռացընելու պիտի ջանամ: Ո՛չ հարստի, ո՛չ աղքատի, ո՛չ ազգականի եւ ո՛չ բարեկամի պիտի նայիմ: Հասարակութեան խորհրդին ինչպէս նաեւ հարիւրոց ժողովին այն բանն, որն որ գաղտնիք է, պիտի չյայտնեմ: Հասարակութեան ու քաղքին գրութիւնները, զոր հասարակութիւնը ձեռքս կու տայ. ինչպէս են, տուչութեան եւ արտօնութեանց պատճէններն եւ այլն — զորս ունի ընկերութիւնն ու հասարակութիւնը եւ մանաւանդ գաղտնի գրուածքներուն հոգ պիտի տանիմ, որ աղէկ տեղ մը պահուին: Գաղտնի բաներն, առանց հասարակութեան ու հարիւրոց ժողովոյն գիտութեանը, ո՛չ երբեւան պիտի հանիմ եւ ո՛չ մէկու մը պիտի հաղորդեմ: Նոյնպէս Եղիսաբեթուպոլիս քաղքին երկու կնիքներն ա՛յն տեղ միայն պիտի գործածեմ, ուր հասարակութեան վերաբերեալ պաշտօնական բաները կը պահանջէն. եւ ոչ երբէք ուրիշ տեղ: Մէկ խօսքով, ամէն բանի մէջ այնպէս պիտի վարուիմ, որ չըլլայ թէ հասարակութեան վնաս մը հասնի: Եւ կարողութեանս համեմատ շրջահայեաց պիտ'որ ըլլամ, որ ամենայն ինչ հասարակութեան հաւանութեամբն ու արդարութեամբ յառաջ տանիմ: Այսպէս օգնէ ինծի Աստուած եւ իր ամէն սուրբերը:

Բ. Խորհրդականները կամ ծերակուտի անդամները կ'երդնուին, որ ինչ որ դատաւորը, թէ՛ դատաստանի եւ թէ՛ հասարակութեան վարչութեանը վերաբերեալ բան իրենց առջեւը դնէ, սիրով ու հնազանդութեամբ պիտի կատարեն: Պիտի ճգնին, որ ամէն բան արդարութեամբ յառաջ երթայ: Ուր որ տեսնեն թէ շահ մը, կամ վնաս մը պիտի հասնի հասարակութեան, անմիջապէս դատաւորին իմաց պիտի ընեն: Դատաւորին եւ մակիսդրադին հետ միատեղ խորհելով պիտ'որ ջանան որ վնասը հեռացուի եւ շահն ու օգուտը յառաջ իրթայ: Գաղտնի խորհուրդները երբեւան պիտի չհանեն ու չտարածեն: Ո՛չ աղքատի, ո՛չ հարստի եւ ո՛չ բարեկամի ակնառութիւն պիտի ընեն. եւ այլն:

Գ. Քաղաքային վարչութեան քարտուղարը կ'երդնուր որ ինչ որ դատաւորն ու մակիսդրադն իր առջեւը դնէ — թէ՛ դատաստանական պատճէններու եւ թէ՛ խորհրդեան արձանագրութեանց վերաբերեալ բաներ — որ գրէ, ղանոնք ճշդիւ այնպէս — ո՛չ աւելի եւ ո՛չ պակաս — պիտի գրէ: Ինչ գրութիւն որ դատաւորէն ու մակիսդրադէն — իբրեւ երդուեալ քարտուղարի — իր ձեռքը գայ, հաւատարմութեամբ պիտի պահէ: Անոնց բովանդակութիւնը առանց դատաւորին ու հասարակութեան գիտութեանը մէկու մը պիտի չհաղորդէ. եւ ո՛չ ալ անոնց օրինակը մէկու մը պիտի տայ: Մակիսդրադին խորհուրդն — որ ի գաղտնիս — ծածուկ պիտի պահէ: Հասարակութեան ժողովոյն

որոշմունքները, կամ որեւիցէ բան, որ մակիսդրադին անունին տակ պէտք են խրկուիլ, պիտի չխրկէ՝ մինչեւ որ զանոնք հրապարակաւ խորհրդանոցին առջեւ որոշ ու բարձրաձայն չկարդայ։ Ինչ բանի վրայօք իմանայ որ հասարակութեան շահ մը կամ վնաս մը կրնայ բերել, դատաւորին ու հասարակութեան պիտի իմացընէ. եւ այլն։

Գ. Հարիւրոց ժողովոյն նախագահը կամ քաղքին փաստաբանն ու ատենախօսը՝ երդում կ'ընէր, որ հնազանդ պիտի ըլլայ դատաւորին ու խորհրդանոցին։ Պիտի ջանայ, որ հարիւրոց ժողովոյն անդամները սիրով կառավարէ. եւ ինչ որ դատաւորը մակիսդրադին հետ իրեն հրամայեն ու հարիւրոց ժողովոյն անդամներն իրեն առաջարկեն, սիրով ու հնազանդութեամբ պիտի կատարէ։ Ինչ որ հարիւրոց ժողովին՝ առջեւը դնէ քննելու եւ յուզելու, զայն՝ իբրեւ ատենախօս, այնպէս — ոչ աւելի եւ ոչ նուազ — դատաւորին եւ մակիսդրադին առջեւը պիտի դընէ։ . . . Ինչ որ հարիւրոց ժողովն, իրեն առաջարկէ, որ մակիսդրադին յայտնէ սիրով պիտի յայտնէ։ Թէ որ նպաստաւոր ու լաւ բան մը իմանայ, կամ ուրիշն իրեն յայտնէ ուսկից քաղքին օգուտ եւ կամ վնաս մը պիտի հանի՝ հասարակութեան պիտի իմացընէ։ Եւ թէ որ լաւ համարի քաղաքն, որ այն օգուտը փնտռուի ու գէշը հեռացուի, ինք — իբրեւ քաղքին ատենախօսը — սիրով յանձն պիտի առնու դատաստանական ճամբով ալ անոր ետեւէն իյնալ եւ այս ճամբով օգուտն յառաջ տանիլ եւ վնասը

հեռացընել։ Հասարակութեան ժողովոյն մէջ եղած խորհուրդները գաղտնի պիտի պահէ։ Ինչ որ հասարակութիւնը՝ հարիւրոց ժողովոյն հետ որոշելով իրեն տայ որ վերջացընէ, այն բանը սիրով ու հնազանդութեամբ եւ առանց անձնական շահու պիտի ընէ լմնցընէ։ Ամէն ատեն խորհրդանոցն ու հարիւրոց ժողովը պիտի պաշտպանէ ու անոնց դեր պիտի ըլլէ, թէ՛ աղէկի ու թէ գէշի մէջ։

Ե. Հարիւրոց ժողովոյն անդամները, երդում կ՚ընէին, որ դատաւորին եւ հասարակութեան, ինչպէս նաեւ ատենախօսին հնազանդ պիտի ըլլան. մանաւանդ այն բաներուն մէջ որ հասարակաց բարւոյն կը վերաբերին։ Թէ որ բան մը լսեն ուսկից քաղքին նպաստաւոր կամ վնասակար բան մը հետեւի, անմիջապէս հասարակութեան իմաց պիտի ընեն։ Պիտի ջանան որ հասարակութեան օգուտը յառաջ տանին եւ վնասը հեռացընեն։ Գաղտնի բաները՝ գաղտնի պիտի պահեն եւ պիտի չտարածեն։ Ըստ արդարութեան պիտի գործեն։ Հասարակութեան վերաբերեալ բաները՝ գլխաւորաց պիտի իմացընեն։ Ամէն անգամ՝ սիրով եւ հնազանդութեամբ՝ իրենց կարողութեանը համեմատ, դատաւորին, մակիստրատին ու հարիւրոց ժողովոյն պիտի օգնեն. եւ այլն։

Կը գտնեմ հոս այս — համառօտիւ միայն յիշուած — երդմանց բուն ձեւերն ըստ արձանագրութեան։

"Աստուածով այս է ֆորմուլան[1] Պ. Աշաշայ Պերովին երդումնը[2]

Ես (այս անուն) կու էրֆընամ Անուն Ամենակարողին Աստուծոյ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. իրեք անձինք եւ մէկ Աստուած։ Տիրամայր սուրբ Աստուածինն եւ ամենայն սուրբք Աստուծոյ այնպէս ինձի եւ իմ հոգւոյ փրկութեան օգնին. ինչպէս որ ես ճանք պի անիմ, որ զպատւելի գումբանիային եւ զպատւելի էլիզաբէդ քաղքին բանն արդարութեամբ, որքան կարօղութիւնս ըլայ եւ ալ մեծ փայն պատւելի մակիսդրադին եւ Պ. Սուդային ճանչնայ թէ աղէկ է, առաջ պի տանիմ։ Իրեքմն իմանամ, որ Պատւելի գումբանիային կամ Պատւելի էլիզաբէդ Քաղքին վաստակմն, կամ Աստուած մի արասցէ, զինմն վար, նայ Պատւելի Մակիսդրադին նաեւ Պ. Սուդային առաջ պիտամ. եւ հետ իրենց հրամանոցն խորհուրդ անելով, զվաստակն առաջ պի տանիմ եւ զզէնը պի հերեցնում։ Ոչ խօճի, ոչ աղքտի, ոչ ազգականի եւ ոչ բարեկամի գետվեզնիւիդ[3] պի անիմ։ Զխորհուրդն, որն որ կըլայ Պատւելի մակիսդրադին մէջ, որն որ սէգրէդայ[4] է, նաեւ հետ Պատւելի Սուդային, դուս չի պի տարածիմ։ Զպատւելի գումբանիային նաեւ զՊատւելի էլիզաբէդ քաղքին գրերն, որն որ ձեռս կու տայ Պատւելի

---

[1] Լատ. է. ձեւ, կաղապար կը նշանակէ։
[2] 1758 ունվարի 2 էլիզաբէդան։
[3] Kedvezni հունգ. բառն է. կը նշանակէ ներողամտութիւն, զիջումն, շնորհումն ընել։
Գաղտնիք։

Հասարակն, որպէս բրէվիլէկիում Տօնաձիան[1] եւ այլն, ինչ որ Պատուելի գումբանիան կամ պատուելի Քաղաքն ունի, մանաւանդ որոնք օր ալ սէգրէդայ գրերին, պարտ պի ունենամ աղէկ հօգալու. եւ ինչ օր սէգրէդայ բաներ են, նայ առանց Պատուելի Մակիսդրադին նաեւ Պատուելի Սուդային դուս չի պի տամ եւ ոչ գօմունիգալուիդ[2] պի անիմ: Նաեւ Պատուելի էլիզաբէդ քաղքին էրկու. մոհրօվն միայն այնպիսի բաներ պի մոհրիմ, որն որ զՊատուելի քաղաքն նաեւ զՊատուելի քաղաքացիքն գօնձէրնալուիդ[3] կու անէ եւ չէ օգկայ բան: Մեկ խօսօք ամենայն բանին մէջ այնպէս պիլամ, որ պատուելի հասարակին զեն չիհանդիպի. եւ որքան կարօղութիւնս տանի, գաւդուս[4] պիլամ, որ զամենայն բանն պատուելի հասարակին գօնսէնսուսօվն[5] եւ արդարութեամբ առաջ տանիմ: Այսպէս օգնէ ինձի Աստուած եւ ամենայն սուրբք:

Աստուծոյ ողորմութեամբն այս է ֆօրմուլան Պ. Աղաւնունուն. այսինքն Աղաւնոյ Սենատօրնուն[6] երդումնը:

Ես (այս անուն) կու էրֆընամ Անուն Ամենակարողին Աստուծոյ Հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ իրեք անձինք եւ մէկ Աստուած: Տիրամայր սուրբ Աստուածինն եւ ամենայն սուրբք Աստուծոյ այնպէս ինձի եւ իմ հոգւոյ փրկու-

---

1 Պարգեւ. տուչութիւն:
2 Հաղորդել, ըսել:
3 Concerno, հայիլ, վերաբերել:
4 Խոհեմ շրջահայեաց:
5 Հաւանութեամբ, գիտութեամբ:
6 Ծերակուտի անդամ. խորհրդական:

*թեանս օգնին։ Ինչպէս ինչօր առաջ տայ ինձի պատուելի Աղաչայ Պիրոմն թէ դատաստանի եւ թէ հասարակի բան, նայ սիրով եւ հնազանդութեամբ մտիկ պի անիմ. եւ որքան կարօղութիւնս բերէ նա ճանք պի անիմ որ բանը արդարութեամբ առաջ երթայ։ Իրեքէմն իմանամ, որ պատուելի հասարակին շահմն, կամ Աստուած մի արասցէ զենմն գար, նայ պատուելի Աղաչայ Պիրովին իմաց պի անիմ. եւ հետ իրեն հրամանոցն պատուելի մակիստրադին խորհուրդ անելով պշահն ջանք պի անիմ առաջ տանելու եւ զզէնը հէրածնէլու։ Զխորհուրդն, որն որ կլայ պատուելի մակիստրադին միջ, ին սէգրէդոյ[1] պի պահեմ եւ դուս չի պի տարածիմ։ Ոչ խօճի, ոչ աղքատի, ոչ ազգականի եւ ոչ բարեկամի գէովէզիւիդ պի անիմ, այլ զամենայն բանը ճահդ պի անիմ, որ արդարութեամբ եւ պատուելի հասարակին շահոմն առաջ երթայ։ Այնպէս ինձի օգնէ Աստուած եւ ամենայն սուրբք։*

Աստուծոյ ողորմութեամբն այս է ֆօրմուլան Պ. Մակիստրադին Նօտարիուսին երդումնը։

*Ես (այս անուն) կու երփընամ Անուն Ամենակարօղին Աստուծոյ Հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ, երեք անձինք եւ մէկ Աստուած։ Տիրամայր սուրբ Աստուածածինն եւ ամենայն սուրբք Աստուծոյ այնպէս օգնին ինձի եւ իմ հոգոյս փրկութեանը, ինչպէս օր ինձի առաջ տայ Պատուելի Աղաչայ Պիրոմն նաեւ Պատուելի*

[1] Գաղտնի, գաղտնութեան մէջ։

Մակիսդրադն, թէ դատսդնի ագդանուն[1] եւ թէ պատուելի գումբանիային եւ պատուելի էլիզաբէդ քաղքին խորհրդի բրօդուգօլումին[2] մէջ թէ գրեմ, նայ այնպէս պի գրիմ, ոչ աւելի եւ ոչ պակաս։ Նաեւ ինչ գրեր որ ձեռս տայ պ. Աղաչայ Պիրօմն հետ պատուելի Մակիսդրադին, որպէս էրփընցած նօդարիուշի ձեռ նայ, հաւատարմութեամբ պի պահեմ զիրենք։ Մարդու հետ ալ առանց պատուելի Աղաչայ պիրօմին եւ պ. Մակիսդրադի հրամանին գօմունիգալուիդ չիպի անիմ եւ ոչ ին գօբիիս[3] դուս պի տամ։ Նաեւ զպատուելի մակիսդրադին խորհուրդն ին սէգրէդօյ պի պահիմ — || Նայեւ զմակիսդրադի տէձիզիօնուն գօնձէբդներն[4] կամ հի ինչ բանէրու, ինչ օր պատուելի Մակիսդրադին անընօվը էգսբէտօվադ պէտք էյ օր ըլան, էգսբէտօվադ չիպի անիմ, մինչեւ ըպբօլօրներըն բուպլիցէ[5] պ. մակիսդրադին դիմաց, իսդակ եւ բաց չի գարդամ նայ[6] || —։ Եւ ինչ օր իմանայի թէ պատուելի հասարակին շահօմն է, կամ Աստուած մի արասցէ, զէնօմն է, պ. Աղաչայ պիրօմին նաեւ պ Մակիսդրադին իմայ պի անիմ. եւ ջանք պի անիմ կարօղութեանս գօրայ զշահն առաջ

---

1 Դատաստանական գրուածք, մուրհակ, արձանագրութիւն։

2 Արձանագիր, մուրհակ։

3 Եւ ոչ անոնց օրինակները։

4 Երկու խօսքն ալ լատիներէն է. կը նշանակէ՝ որոշմունքներուն խմբագրութիւնը, շարագրութիւնը։

5 Հրապարակաւ։

6 Այս կրկին փակագծին մէջ եղածն ետքի ժամանակը, — գուցէ 1780ին ատեններն — աւելցուած ըլլայ երդման ձեւին մէջ։ — Լուսանցքին վրայ գրուած է. ու թանաքն ալ գիրն ալ, բոլորովին տարբեր է։

տանելու եւ ըղջէնը հերաձնելու եւ զամենայն բանը Պատուելի Աղայ Պիրովին, նաեւ Պատուելի Մակիսդրադին կամացն գօրայ Պատուելի Հասարակին շահօմն առաջ տանելու եւ զամենայն բանը սիրով եւ հնազանդութեամբ կատարելու պի ջանամ։ Այսպէս ինձի օգնէ Աստուած եւ ամենայն սուրբք։

Աստուծոյ ողորմութեամբն։ Այս է ֆօրմուլան Պ. Էլիզաբէթ թագուհւոյ Պ. Աղաչայ Սուդայլին երդումին։

Ես (այս անուն) կու էրֆընամ Անուն Ամենակարողին Աստուծոյ Հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ. երեք անձինք եւ մէկ Աստուած։ Տիրամայր Ս. Աստուածածինն եւ ամենայն սուրբք Աստուծոյ այնպէս օգնին ինձի եւ իմ հոգւոյ փրկութեանս. ինչպէս որ ես հնազանդ պիլամ Պ. Աղաչայ Պիրովին եւ Պատուելի Մակիսդրադին։ Նաեւ ճահդ պի անիմ, որ իմ քով եղեալ Սուդայի եղբարքս սիրով կարավարիմ։ Եւ ինչ հրամայէ ինձի Պատուելի Աղաչայ Պիրոմն հետ Պատուելի Մակիսդրադին, թէ իմ քով եղեալ Սուդայի եղբարքս բրօբօնալուիդ[1] անին, նայ սիրով եւ հնազանդութեամբ պի կատարիմ։ Եւ ինչ որ Պատուելի Սուդան տէձիտալուիդ անէր այս բրօբօզինձիայիս վրայ, զայն Պ. Աղաչայ Պիրովին նաեւ Պ. Մակիսդրադին, որպէս օրադօր[2] Պատուելի Սուդայինը, պի յայտնիմ. ոչ աւելի, ոչ պակաս։ Նմանապէս, թէ որ իրեքմն իմանայի որ պատուելի հասարակին շահմն, կամ Աստուած

[1] Propono. առջեւը դնել. առաջարկել։
[2] Առենախօս, Ճարտարաբան։

մի արասցէ, զէնմն գար, նայ ինմէտիադէ պ. Աղաչայ Պիրովին եւ պատուելի Մակիսդրադին իմաց պի անիմ որ պատուելի Մակիսդրադն, հետ պատուելի Սուդային խորհուրդ անէլով, զչահն առաջ տանի եւ զզէնը հերացնու: Ինչ որ ինծի առաջ տար պատուելի Սուդան, թէ յայտնիմ պ. Մակիսդրադին նա, սիրով պի յայտնիմ: Եւ թէ օր այնպէս պծնումն[1] իմանայի կամ օզկան յայտնէր ինծի, թէ ունի իրեքմն պ. քաղաքն եւ կու կորսըվի կամ կու մըըզվի[2] նայ ունենամ պ. հասարակին առաջ տալու. եւ թէ օր ուժվէր պ. հասարակին, որ զայն պծնումն փնտըըվի նայ ունենամ ես որպէս օրադօր պ. հասարակինը պ. մակիսդրադին դիմաց դատաստնով փնտրելու. եւ այսպէս ունենամ զպ. հասարակին շահը նայէլու եւ զզէնը հերածցընելու: Ջխորհուրդն որն որ կլայ պատուելի հասարակին մէջ, ունենամ ին սէգրէդօյ պահելու եւ չէ դուս տարածելու: Ոչ խօճի, ոչ աղքտի, ոչ ազգականի եւ ոչ բարեկամի գէտվէզուիդ պի անիմ, հապա ինչ ալ գծնգըուտովադ անէ պ. Մակիսդրադն հետ պ. Սուդային եւ առաջ տար ինծի, թէ վերջ տանիմ նայ սիրով եւ հնազանդութեամբ պի կատարիմ առանց մէկ ինդէրէսէձիայիմն. եւ ամէն անգամ պատուելի Մակիսդրադին եւ պ. Սուդային քով պիլամ թէ աղէկի եւ թէ գէշի: Այնպէս ինձի օգնէ Աստուած եւ ամենայն սուրբք:

---

[1] Լաւ բան, բարիք:

[2] Ձեմ գիտեր նշանակութիւնն. անտարակոյս փճանալ, ապականիլ պիտի ըլլայ:

Առաջնոյ ուղղութեանցն այս է ֆօրմուլան Պ. Սարգսյէ Աղաւնուն երդմանը։

Ես (այս անուն) կու երփընամ Անուն Ամենակարողին Հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ. իրեք անձինք եւ Մէկ Աստուած։ Տիրամայր Ս. Աստուածինն եւ ամենայն սուրբք Աստուծոյ այնպէս օգնին ինձի եւ իմ հոգոյ փրկութեան, ինչպէս որ ես հնազանդ պիլամ Պ. Աղաչայ Պիրովին եւ Պ. Մակիսդրադին նաեւ Պ. Աղաչայ Սուդաշին. եւ ինչ որ հրամայէր Պ. Աղաչայ Պիրով եւ Պ. Մակիսդրադն կամ Պ. Աղաչայ Սուդաշն։ Մանաւանդ ինչ օր գօնձէրնալուիդ[1] կու անէ զՊատուելի հասարակն, նայ սիրով եւ հնազանդութեամբ պի կատարիմ։ Թէ օր իրեքմն իմանայի կամ օզկայէն լսէի թէ Պ. հասարակին շահմն կամ Աստուած մի արասցէ զէնմն գար նա ին մէտիադէ Պ. Աղաչայ Պիրովին կամ Պ. Աղաչայ Սուդային իմաց պի անիմ եւ որքան կարողութիւնս տանի ճահդ պի անիմ զշահն հասարակինը առաջ տանելու եւ զզէնը հերացընելու։ Զպատուելի հասարակին խորհուրդն դուս չի պի տարածիմ այլ ին սէգրէդօ պի պահիմ։ Զպատուելի հասարակին շահն ամէն անդամ ջանք պի անիմ առաջ տանելու։ Ոչ խօճի, ոչ աղքատի, ոչ ազգականի եւ ոչ բարեկամի գէտվէզուիդ պի անիմ. այլ որպէս արդարութիւնը բերէ եւ իմ կարողութիւնը ցըցնու, զամենայն բանը ինչ օր զհասարակին գօնձէրնալուիդ կանէ իմ

---

[1] Concerno պատկանիլ, վերաբերիլ։

գլխաւորացն առաջ պիտամ, եւ ամէն անգամ զՊ. Աղաչայ Պիրովին Պ. Մակիսդրադին եւ Պ. Սուգային քով սիրով եւ հնազանդութեամբ պի կաննիմ թէ աղէկի եւ թէ գէշի: Այնպէս ինձի օգնէ Աստուած եւ ամենայն սուրբք:

* * *

Շատ կարեւոր կը համարիմ քաղքին դատաւորներն ի սկզբանէ մինչեւ պատմութեանս հասած շրջանը, ժամանակագրական կարգաւ՝ ժողովքներուն հայերէն արձանագրութիւններէն ընդօրինակելով, ընթերցողաց առջեւ դնել: Այս բանս կ՚ընեմ, մէյ մ՚որ կարդացողը հայեցուածով մը վերէն ի վար կարենայ տեսնել կարգաւ թէ որ ժամանակ ինչ դատաւորներ նստած են Եղիսաբեթուպոլիս քաղաքը: Մէյ մ՚ալ որ թէ՛ դատաւորներուն անձինքը ու թէ՛ մանաւանդ անոնց անունները շատ կը տարբերին ուրիշ տեղ մը տեսնուած անուններէն:

Ես, միայն հայերէն դիւանական գրութիւններն ու պաշտօնական արձանագրութիւնները գործածած եմ: Ուրեմն ասոնց տարբերութիւնն անկէ է, որ այն գրողն անտարակոյս հունգարերէն աղբիւր մը գործածած է, որ զհայ անունները շատ աղաւաղած է:*

---

* Այսպէս օրինակի աղագաւ Բազմավէպը՝ 1737ին Ամիրայ Խնկանոսեանցը՝ Եմէրիկոս Ցանիէլ կը թարգմանէ: — Եմէրիկոս (Imre) հունգարերէն անունին վրայ եւ ո՛չ գաղափար ունէին Դրանսիլուանիոյ հայք, մինչեւ դարուս երկրորդ կէսը: Եւ ապահովապէս կրնանք ըսել թէ այսօրուան օրս ալ ամբողջ Հունգարիոյ ու Դրանսիլուանիոյ ազգայնոց մէջ Իմրէ (Եմէրիկոս) անունով հայ մարդ եւ ոչ

Դատաւորներուն քով կը դնեմ նաեւ քաղքին նոտարները կամ քարտուղարներն. ուր անոնք արձանագրութեանց մէջ նշանակուած են.

Արդ՝ Եղիսաբեթուպոլսոյ հայերէն պաշտօնական գրութեանց մէջ առաջին դատաւորը կը գտնենք

1727 Հոկտ. 22ին զՄարտիրոսն Բաղրուպանի Զատիկեան: 1728 ու 1829ին դատաւոր չկայ նշանակուած: — Ամի Տեառն

1730 Աղաչայ Պետրոսն Պիրօվ:

1731ին Պետրոսն պիրօվութիւն արաւ մինչեւ 1732ին. Հոկտ. 24ին

1732 Հոկտեմբերի 24ին զԱղաչայ Նիգօշն դրանք պիրով որ այլվի երկու տարի պիրօվութիւն անէ քաղքին: — 1733 Նոյեմբերէն մինչեւ 1737 չկայ արձանագրութեանց մէջ դատաւոր:

1737 Ամիրայ Խնկանոսեանց պիրով: — Աղայ Նիկօշ Շիմիլեցոյն նօդարիուս:

1738 Կրկին անգամ խնդրեցինք զՊ. Աղաչայ Ամիրայ Խնկանոսեանց, որ պիրօվութիւն անէ:

---

տասը հոգի կրնաք գտնել: Ուստի Ամիրան՝ Եմերիկոս չէ: — Այսպէս դարձեալ 1751ին — Յովհաննէս Ոսկերիչեանը՝ Բազմավէպը կ'անուանէ Յովհ. Եօդվէշ: Այս Ötvös հունգարերէն բառը ոսկերիչ կը նշանակէ: — Նմանապէս Ղազար Յովհաննեան պատահմամբ Յովհ. Ղազարի փոխուած է: Հունգարերէնն անշուշտ Lázár János է, մինչդեռ János Lázár ըլլալու է, որպէս զի սկզբնական Ղազար Յովհաննեանին համապատասխանէ: Այսպէս ուրիշ անհամար տեղ: Համեմատէ Բազմավէպին 1892 տարւոյն, Հոկտ. Թուոյն 455—456 էջերուն հետ:

1739 Ամիրայ Խնկանոսեանց.

1740 Ղազար Օհանեանց: — Նօդարիուս Անկսէնտ վարդանի խիգուցենց:

1741 յունվար 2* Աղաչայ Ղազար Օհաննինը պիրով: — Նօդարիուշ Անկսէնտ վարդնի խըգուցենց:

1742 Աղաչայ Մանուկ Խիգուցենց: — Նօդարիտուշ քաղքի Անկսէնտ որդի վարդանի խիդուցենց:

1743 Պ. Ա. Հանգըյ Խնկանոսեանց. — 1744 չկայ դատաւոր նշանակուած:

1745 Աղաչայ Ամիրայ Խնկանոսեանց պիրով: — Նօդարիուշ Օվանէս ոսքերիչն:

1746 Աղաչայ Ամիրայ Խնկանոսեանց:

1747 Աղաչայ Լուսիկ Թորոսեանց:

1748 Աղաչայ Լուսիկ Թորոսեանց պիրով: — Նօդարիուշ Ա. Նիկօլ Ճիրախի:

1749 Պ. Աղաչայ Ղազար Օհանեանց պիրով: — Անկսէնտ Մանուկի Խիգուցենց Նօդարիուշ:

1750 Պ. Աղաչայ Ղազար Օհանեանց:

1751 Պ. Աղաչայ Օվանէս ոսդերիչեանց: — Նօդարիուշ Ա. Թուման ղատիկի:

1752 Պ. Աղաչայ Օվանէս ոսդերիչեան: — Նօդարիուշ Ա. Թուման Ջատիկի:

---

* Գիտեն ընթերցողք թէ 1733ին կայսերական հրամանգրովը՝ դատաւորին ընարութիւնը պիտի ըլլար Յունուար 2ին: — Այս բանս Մարիամ Թերեզիայ 1758ին կոնդակովը փոխած ու ամէն տարւոյն Յունուարի 4ին դնել տուած է: Տես էջ 210, 5:

1753 Գ. Աղաչայ Անկսէնտ ո. Հ. վարդանի խիգուցեանց։ — Նօղարիուշ, խնկանոս ո. Հ. Ամիրայի։

1754 Գ. Աղաչայ Անկսէնտ ո. Հ. վարդանի խիգուցենց։ — Նօղարիուշ խնկանոս ո. Հ. Ամիրայի։

1755 Գ. Ա. Մելքոն ո. Հ. կաշքարենց պիրօվ։ — Նօղարիուշ Մարտիրոս գոշօղանի։ — 1756ի դատաւորը ք֊իշատակարաններու մէջ նշանակուած չենք գտներ։

1757 Ա. Անկսէնտ Մանուկի խըրգուցեանց։ — Նօղարիուշ Մարտիրոս գօշօղանի։

1758 Աղաչայ Անկսէն Աղա Մանուկի խիգուցենց։ — Նօղարիուշ Աղաչայ Մարտիրոս Գոշողանի։

1759 Ա. Անկսէնտ Ա. Մանուկի խըրգուցենց։ Նօղարիուս Աղաչայ Ասվատուր վիգօլեանց։ Ակիունդուս Նօղարիուս, Աղաչայ Թորոս Դիւրիւքեանց։

1760 Աղաչայ Թուման Ջատիկեանց. — եւ Նօղարիուշ Ասվատուր վիգօլեանց։

1761 Աղայ եւ Աղաչայ Թուման Ջատիկեանց։ — Նօղարիուշ Աղաչայ Ասվատուր վիգօլեան եւ ակիւնքդուս Նօղարիուշ Աղաչայ Թորոս Դիւրիգեանց։

1762 Աղա Մարտիրոս Գօշօղանեանց։ — Ագդուալիս Նօղարիուշ Գ. Ա. Ասվատուր վիգօլեանց եւ ակիւնդուս Նօղարիուշ Գ. Ա. Թորոսի ունանի։

1763 Աղայ եւ Աղաչայ Անկսէնտ Ա. Մա-

Նուկի խսիգուցենց: — Նօղարիուշ Պ. գումբա-
նիային Նաեւ Պ. Էլիզաբէդ Քագքին Մակիս-
դըրադին Աղաչայ Լուսիկ Ա. Մարտիրոսի բադրու-
պանենց:

1764 Աղայ եւ Աղաչայ Թուման Ջատի-
կեանց: — Նօղարիուշ Աղաչայ Լուսիկ Ամիրայի:

1765 Աղայ եւ Աղաչայ Թուման Ջատի-
կեանց: — Նօղարիուշ Աղաչայ Լուսիկ Ամիրայի:

1766 Աղայ եւ Աղաչայ խնկանոս Ամիրայի
Տանիէլեան: — Նօղարիուշ Աղաչայ Լուսիկ
Ամիրայի Տանիէլեան:

1767 Աղայ եւ Աղաչայ խնկանոս Ամիրայի
Տանիէլեան:

1768 Աղայ եւ Աղաչայ Անտօն Նիգօշի
խսիգուցեանց: — Նօղարիուշ Աղաչայ Մանուկ
դաւիդի ջիգիյ:

1769 Աղայ եւ Աղաչայ Անտօն Նիգօշի
խսիգուցենց: — Նօղարիուշ Սըհակ գրիգորի
Ագոնց:

1770 Աղաչայ Պօտէր վարդիկի ջիգիեանց:
— Նօղարիուշ Սըհակ գրիգորի Ագոնց:

1771 Պ. Ա. Ասվատուր վիգօլի պիրօվ:
— Նօղարիուշ Ղազարի Օհանեանց:

1772 Պ. Աղաչայ Մանուկ ո. Հ. Դաւիդի
ջիգիեան: — Նօղարիուշ Ա. Օհան Թորոսի
դիւրիւգեան:

1773 Պ. Աղայ եւ Աղաչայ խնկանոս Տա-
նիէլեան: — Նօղարիուշ Օհան դիւրիւգեանց:

1774 Պ. Աղա Անկսէնտ Իզեգուցենց: —
Նօղարիուշ Ա. Թորոսի դուրուքեանց:

1775 Պ. Աղաչայ Լուսիկ Ամիրայի Տանիէլեանց: Նօդարիուս Ա. Օհան Թորոսի Դիուրիուգեանց:

1776 Պ. Աղաչայ խնկանոս Ամիրայի Տանիէլեան: — Նօդարիուշ Ա. Օհան Խայի:

1777 Աղայ եւ Աղաչայ Մանուկ ո. Հ. Ա. Դաւիդի ջիգիեան եւ Նօդարիուշ օրտինարիուս Աղաչայ վարդան Մարտիրոսի բաղրուպանի. եւ վիճէ Նօդարիուս Աղաչայ Ջատիկ ո. Հ. Թումնի Ջատիկեանց:

1778 Նոյները:

1779 Աղայ եւ Աղաչայ խնկանոս Ամիրայի Տանիէլեան: — Նօգարիուս Ա. Ջատիկ Թումանի Ջատիկեանց:

## 28.

Թէպէտ օրէնսդիր ժողովոյն կանոններէն, կանոնադրութիւններէն ու օրէնքներէն խնլ մը բան հաղորդած եմ ուրիշ տեղ:[1] Սակայն եթէ միտ դրուած է, անոնք մեծաւ մասամբ մասնաւորաց նկատմամբ եղած ու դրուած օրէնքներ ու կարգադրութիւններ էին, ու վարչութեան հետ միայն անուղղակի կերպով յարաբերութեան մէջ էին: Այսպէս էին, օրինակի աղագաւ, դաւաղան կրելու, եկեղեցի երթալու, գինի խմելու, զգեստ հագնելու եւ այլն կանոնադրութիւնները:

Այս տեղս կ'ուզեմ անանկ օրէնքներ ու

[1] Տես էջ 29—54:

կանոնագրութիւններ յառաջ բերել, որոնք վարչութեան ու հասարակութեան հետ ուղղակի եւ ի մերձուստ յարաբերութիւն ունին: Ուստի եւ խնամակալութեան, կամ լաւ եւս ըսելու համար. վարչութեան պատկանեալ օրէնքներ են:

Ասոնց կարգը կրնանք դասել, ի մէջ այլոց. — 1. Թէ ինչ ըլլալու էր, այն ստակներուն, որ պատժուած անձինքներէն քաղքին արկղը կը մտնէր: — 2. Թէ ինչ օրէնք կայ այն քաղաքացւոյն համար, որ պարտք ունի. եւ վճարել չուզելով՝ խնդիրը դատաստանի առջեւ կ'ելլէ: — Աս կարգի մէջ են. 3. Վարչութեան՝ առողջապահութեան ու հասարակաց ապահովութեանը համար դրած օրէնքները: — 4. Ինչ օրէնքներ ու կանոններ կային առեւտրոյ վրաններուն համար: — 5. Թէ օտարազգի ծառաներն ու գեղացիք, ինչ ճամբայ բռնելու եւ ինչպէս վարուելու էին իրենց տէրերուն եւ ազատ քաղաքացւոց հետ: — 6. Ինչ պայմաններով ու հսկողութեամբ պէտք էին շինուիլ տներն ու ցանկապատերը: — 7. Ինչ օրէնքներ ու սովորութիւններ կային քաղքին մեծ ու պզտիկ կնիքը գործածելու նկատմամբ: — 8. Կանոնագրութիւն այն ծառայից համար, զորոնք իրենց տէրերը վռնտած եւ կամ որոնք իրենց տիրոջմէն փախած են: — 9. Օրէնքներ վարձակալաց ու աւարառուաց համար: — 10. Թէ մսավաճառք երբ, եւ ինչ տեսակ միս կրնային ծախել եւ որչափով. եւ այլն, եւ այլն:

Արդ՝ ասոնց վրայօք եղած օրէնքներն ու

կարգադրութիւնները կ'ուզեմ յառաջ բերել, ժամանակագրական կարգաւ. այնպէս, ինչպէս որ ատոնք, գրուած ու անցուած են պաշտօնապէս քաղաքային ժողովքներուն արձանագրութեանցը մէջ։

Քաղքիս ամենէն հին արձանագրութիւններն աչքէ անցնելով՝ կը գտնենք թէ, արդէն անցած դարուն առաջին կիսուն մէջ. — 1729. — կամ թէ Եղիսաբեթուպոլսոյ հիմնադրութենէն շուրջ յիսուն տարի ետքը, կային խել մը, վարչութեան հետ ուղղակի յարաբերութիւն ունեցող օրէնքներ։

Այսպէս, ի մէջ այլոց, երբ խնդիր ելաւ, թէ ինչ ընէ հասարակութիւնն այն ստըկներուն հետ, որոնք ատեն ատեն կը քաղուէր պահքի եւ ուտիքի համար. — վարչութիւնը կ'որոշէ թէ, այն դրամները կնքուին մինչեւ որ Կերլացւոց ու Ճուրձովցոց իմաց տան. որովհետեւ Եղիսաբեթուպոլսեցիք նախ գիտնալ կ'ուզէին, թէ այս երկու քաղաքները, նմանօրինակ բաներու մէջ ժողովրդեան վրայ տուգանք կը դնե՞ն, որպէս զի իրենք ալ ըստ այնմ ընեն։

Դաշնագրով՝ պարտք կամ փոխ եւ կամ գրաւական առնողն, եթէ ժամանակին վճարել, կամ հատուցանել, կամ ետ տալ չուզէր, ու խնդիրը դատաստանի առջեւ ելլէր, այն ժամանակ պարտապանը՝ դատաստանը կորսնցընելէն ետեւ, ծախքերն ալ վճարելու էր։ Օրէնսդրութիւնը յաջորդ՝ բաւական խելքի պառկող հե-

*տեւանքով կ'եզրակացընէ ըրածն։ Որպէս զի, կ'ըսէ, այս տեսնելով մարդիկ, զգուշանան ու չգտնեն պատճառ ըսելու թէ, թող զիս դատաստանի առջեւ տանի. մինչեւ այն ատեն չեմ հատուցաներ։*

*Նմանապէս, տէրն, որ իր ծառան կամ աղախինը դատաստանի առջեւ տանէր, ու դատաստանն այնպէս գտնէր որ իրաւունքը ստորակարգելոյնն է, տէրը կրելու էր դատաստանին ամէն ծախքերը։*

*Ահա այս օրինաց վրայօք ձեռուընիս ունեցած բնագիրները։*

“1729 *փետ.* 29.

*Խորհուրդ արինք ճուրումի քաղած ըսդըկնու սէպն, որ քաղվեցաւ պաս ու ուտիք սէպն, թէ մեյ քիչմի ժամանակ հօհրի տակ, մինչեւ իմաց անինք Կերլացոցն եւ Ճուրճօվցոցն, թէ ինչպէս որ հետ հասարակաց է եղիլ կապն, նայ այնպէս իմաց անինք, որ տեսնունք թէ նաքալ կուճուրումին ըղէլն թէ չէ. որ անոր գօրայ մինք ալ կարավարվինք. զէ ընտօր որ հասարակօվ եղիլէ կապը, նայ այնպէս կ'ուզինք, որ հասարակըն պատճըվի, ուն որ չի բռնիլ զկապն։*„

“1731. *ունիսի* 1*ին.*

*Գիտացվի, որ այսպէս խորհուրդ արինք, որ վօվ ըսդակ կամ մանօդ արնուր մարդըվէ ու զաքիս*[1] *տայ, թէ Աստուած չիտար որ դատաս-*

---

[1] Ընկալագիր։

դանօվ ըլլար վճարք, նայ ինքը վիճարէ զամենայն խարճն. նայ մինք ալ այնպէս գրտանք, որ վօվ ընտօր կապվի գրով, նայ այնպիսի վրայ մնայ։ Դարձեալ, թէ որ գտվէր ա. անպէս մարդ մը, որ երկու իրեք մաճրի փոխ առնուր ու չուզենար տալու, առանձ դատաստան ու զաբիտն ալ չուզէնար, այլ վի ինքն տայ զդատաստանին խարճը, որ օզկաներն ալ տեսնելով, չի խեվցընուն զմարդիքը, թէ թօղ դատաստան քաշէ զիս, ինչուր ի արժումը չիմ իտալ։»

Կրնանք ենթադրել թէ Եղիսաբեթուպօլսոյ տներն, ի սկզբան անդ, ողորմելի պզտի խրճիթներ եղած պիտ՚որ ըլլան, փայտաշէն ու կաւածեփ։ Ուստի եւ չէ թէ կաւարով կամ կղմինտրով, այլ մսրացորենի կոթունով, յարդով ու եղէգով ծածկուած։ Ժամանակ անցնելով՝ տներն սկսան աւելի կարգաւորեալ շինուիլ ու փայտաշէններն՝ եղան քարաշէն։ Այնուհետեւ ամէն տեղւոյ վրայ ու ամէն տեսակ տուն չէր կրնար շինուիլ։ Տուն շինել ուզողը՝ վարչութեան իմաց տալու էր, եւ վերատեսչութիւնն իւր կողմանէ վերակեցու կամ հսկող մը կը խրկէր, նայելու համար, որ ըստ պատշաճի՞ եւ ըստ օրինի՞ կը շինուի շէնքը։

Որոշում մըն ալ կը գտնենք 1731ին։ Ասոր համեմատ, կ՚արգելուի թէ տներն անկից ետքը յարդով կամ մսրացորենի կոթունով ծածկուին։ Նոր կանոնագրութեան համաձայն, տան վրայ կեցած յարդածածկը փտելէն կամ հովը զանիկայ բանալէն ետեւ, ա՛լ պիտի չնորո-

գուէր, Հապա տախտակով կամ կաւարով պիտի գոցուէր։ Աս կարգադրութիւնը, թէ՛ աղքատի ու թէ՛ հարստի համար պարտաւորիչ էր։ Օրէնքին դէմ ընողը 12 ֆիօրին տուգանք պէտք էր վճարել, իմացուելէն կամ տեսնուելէն անմիջապէս ետքը։

Բայց որովհետեւ գտնուեցան անանկ աղքատ մարդիկ, որ ի վիճակի չէին իրենց տներն անմիջապէս տախտակով ծածկելու՝ խնդրեցին վարչութենէն, որ շնորհուի իրենց, թէ անկից ետքն ալ յարդով կարենան ծածկել տներնին։ Վարչութիւնն ըրաւ իրենց այս շնորհմունքն, բայց այն սեղմամբ, որ Ներկայապէս յարդով ծածկուած տները կարենան մնալ այնպէս, սակայն Նոր շինուելի տներն ամենեւին յարդածածկ չըլլան։

Տասուերկու տարի ետքը — 1743ին Սեպտեմբերի — այս օրէնքը սաստիկ սեղմուեցաւ. ու սահմանուեցաւ, որ մինչեւ 1744 Ապրիլի, կամ շատ շատ Մայիսի վերջերը, ամէն մարդ իրեն տախտակ հոգայ ու անով իր տունը ծածկելու Նայի. որովհետեւ այս բանիս հոգ չընողը հաստատապէս գիտնայ, որ քաղաքային որոշմունք է թէ վարչութենէն խրկուած մարդիկը՝ յարդով ծածկած տներուն վրայի յարդը վար պիտի առնուն ու տանտէրն ալ պիտի պատժեն։

Այս օրէնքին անընդմիջական գործադրութիւնը շատ դժուարութիւններով կապուած էր. եւ ըստ հետեւորդի անմիջապէս գործադրելի չեղաւ. որովհետեւ շատ անանկ խեղճ ու ողոր-

մէջի մարդիկ կային, որոնք իրենց տներն, օրինաց պահանջածին համեմատ որոշեալ ժամանակին տախտակով ծածկելու ի վիճակի չէին: Ուստի եւ վարչութեան աղերսագիր մը մատուցին, խընդրելով որ իրենց տարի մըն ալ ժամանակի միջոց տրուի, որ պատրաստութիւն տեսնեն. ու խնդրած ժամանակն անցնելէն ետեւ, անյապաղ կը կատարէն օրէնքին պահանջածը: Վարչութիւնը նկատելով իրենց աղքատութիւնը՝ զիջաւ այս բանիս. սակայն տարի մը չտուաւ, հապա միայն երեք ամիս, սպառնալով՝ որ եթէ մինչեւ Յուլիսի կէսը — 1744 — տախտակով չծածկեն իրենց տները, գիտնան, որ տանիքը բոլորովին վար պիտի քաշուի ու իրենք խստիւ պիտի պատժուին:

Նոյն տարին, հոգ տարաւ քաղաքային վարչութիւնը նաեւ անոր, որ տուներուն ծխանները պարտ ու պատշաճ ժամանակին մաքրուին: Քաղաքը՝ սարըսգին եւ իւր աղաներուն յանձնեց, որ ատեն ատեն քալեն ու նային, որ ամիսը գոնէ մէկ անգամ մը ծխանները մաքրուին: Ո՛ր տան մէջ որ այս բանիս նկատմամբ անհոգութիւն կամ պակասութիւն մը գտնուէր, տան տէրը՝ 100 ստըկի տուգանք կը վճարէր ՝թէ որ սարըստան պատիժը գործադրելու յապաղէր, ինք պիտի պատժուէր 12 հունգարական ֆիօրինի:

Ասոնց վրայօք եղած օրէնքները յաջորդ կերպով անցուած են քաղաքային վարչութեան արձանագրութեանցը մէջ:

“1735 ունիսի 8.

Վան քաղքին մէջ խուրթէրուն եւ չաթընուն[1] դընէլու սէպն գիտցվի որ այսպէս հաստատեցինք, որ կենան 2 հոգի օգուլաղօր,[2] որ տեսնուն թէ, օրն ինչպէս կու կցէ ու սուսկից կու դնէ զտունը. ու արանց օգուլաղօրնուն ամէնեւին չիլայ սըպօտ, ոչ մէկին ալ: Ու վօվօր չի հնազանդէ ու սէպ չի դներ, նայ այնպիսին պիտայ զճուրումն անպատճառ: Եւ գիտցվի որ, ունէնան պարտականութիւն տալու ա.ա. չիշտակ[3] օգուլաղօրնուն, ամէն մէկն:„

"1731 ուլիսի 20ին Իպաշֆալօմն էղաւ Խորհուրդն, որ այսօրվանէն ամէնեւին ալ շատ ծեղ կամ ժուբ[4] չի դրվի. ու որ տունը որ թէ փոթի, կամ թէ քամի բանայ նայ, բաց մնայ. ու ամէնեւին ծեղ չի դնեն, զարտօր[5] տաղտակ ու շնտել,[6] թէ աղքատ, թէ խօճայ: Ու վօվօր քաշէ[7] գաղտուկ ու գտվէր, նայ անպատճառ 12 մաճարի ճուրում՝ պի տայ, զան օրն, որ օրն գտվի ու իմացվի, անպատճառ:

Դարձեալ էրկուսում էկան քաղաքն ու խնդրեցին որ զհին շէնքն թողունք որ ծածկին, նայ այս տարպայ թողանք, որ զհին շէնքներն

---

[1] Չաթան. Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը կը նշանակէ՝ ցանկ. ցանկապատ:

[2] Վերատեսուչ. Հսկող. Լատ. է:

[3] Վեց, մինչեւ տասը սանդիմի հաւասար:

[4] Վալաքերէն է, կը նշանակէ, եգիպտացորենի կոթուն:

[5] Միայն, պարզապէս:

[6] Zsendely. Հունգարերէն է. փոքրիկ տախտակ, կաւար կը նշանակէ:

[7] Այսինքն՝ ծածկէ:

*ծածկին, տարը նոր շէնքերն ամենուին ըսլօպօտ*[1] *չիլայ ծէղով ծածկէլու:„*

“1743 *Սեպտեմբերի 9ին Ըլիղաբէդան.*

*Վասն տներուն սէպը, ծեղէ ծածկած, որն որ կան քաղքին մէջ նայ, Հաստատեց Պատուելի քաղաքըն, որ ինչվան ի գալ գարնան, աբրելի վերջն, կամ շատ ինչուանի մայիսի վերջն ունէնան ամէն մէկ քաղքըցին, ում տունը օր ծէղօվ է ծածկած նայ, ունէնայ տարտ տախդըկի ու շընտէլի, օր ինչուան ի դէրմինօվադ ժամանակը ծածկէ տախտըկօվ կամ շընտէլօվ. զէրայ չի ունէնայ տարտ նայ, գիտացվի օր, դըրան Պատուելի Աղաչաներն բրիսդավ*[2] *այս բանիս վրայ, օր դէրմինօվադ ժամանակին ունէնան քաշել տալու վար, զծէղէրը ու ավըրէլու: Ու ասոր վըրայ Հաստատեցին եւ դրան զՊատուելի Աղաչայ Սարըսդան վէքիլ. ու թէ օր Աղաչայ Սարըսդան չի Հաստատէր զվերոյ գրեալ բանն նայ, ունենայ 12 մանրի ճուրում տալու:„*

“1744 *Մայիսի բրիմային.*

*Էկան ծէղօվ ծածկած տըներօվ մարդիգըն, տվան ինչդանձիայ նես. եւ խնդրեցին, օր տանք մէք դըլնաճօվ իրենձ կրաձիայ մէկ տարիմըն ալ, օր տարեն վրայ ունէնան Հաստատութիւն տեսնէլու ու ծածկին: Այսոր սէպն տեսնելով Պատուելի դըլնաճըն զիրենց ողորմելութիւնը, տվաւ դէրմին քիշմալ իրենց, այսինքն*

[1] Szabad, Հունգարերէն բառն է, կը նշանակէ՝ ներեալ. թոյլ տուեալ:
[2] Անտարակոյս՝ Հսկող. վերակացու պիտի նշանակէ

*ինչուանի մէտիաշի ամսուն շօգօտօյին, որ ինչուանի այն ժամանակըն ունենան ամէն մէկըն անպատճառ ծածկելու. ու չէնայ գիտնան որ, ամենեւին վար պի քաշին զամէն մէկին տանը ծածուկը։»*

*«1744 Ունվարի 9ին։*

*Գիտացվի որ հասդատեցին Պատուելի Աղաչաներըն, հետ Աղաչայ Սարըսդին, որ ունէնայ քաղքին մէջ քալելու, տըներուն մխանքն նայելու համար. որ բանը հասդատվեցաւ եւ տրվեցաւ Աղաչայ Սարըսդին եւ իւր աղանուն, որ տարտ ունենան եւ քալին ամէն ամսու մէկ անգամը. ու որ տանը մօտ մըխանքը չիլայ զըրբած նայ, պի ճուրումվի այնպէս կազտան[1] 100 պանօվ, ու ճուրումն պիլայ կէս մեծ դընաճին ու կէսն Աղաչայ Սարըսդինը։» —*

*Ընթերցողք՝ պատմութեանս ընթացքին մէջ, առիթ ունեցած են Հայոց, շադրայի կամ տօնավաճառի վրաններուն վրայ կարդալու։[2] — Ինչպէս որ յայտնապէս կ՚երեւայ, մասնաւոր արտօնութիւն մըն էր, տօնավաճառներու ատեն, առեւտրոյ վրաններ կանգնել ու անոնց մէջ ներեալ առեւտրոյ նիւթերը ծախել։ Այս բանս ընելու, ամէն ազգ ու ամէն մէկ մասնաւոր մարդ իրաւունք չունէր։*

*Աբաֆի Ա. եւ Աբաֆի Բ. Դրանսիլուանիոյ իշխաններուն, ինչպէս նաեւ Կարոլոս Զ. Կայսեր ու Մարիամ Թերեզիայ Կայսրուհւոյն արտօնութեանց կոնդակներուն հետեւութեամբ՝ հրաման*

---

[1] Հունգարերէն բառ է, կը նշանակէ՝ տանտէր։
[2] Տես էջ 267, 270—272։

արուեցաւ Եղիսաբեթուպոլսոյ հայոց, որ տէրու-
թեան որ եւ է կողմն ազատութեամբ առուտուր կարենան ընել։ Վրան անունը՝ թէպէտ չի յիշուիր այն արտօնութեանց պատճէններուն մէջ. սակայն կ'ենթադրուի, որ ծախուելու ապրանքը տեղ մը պիտ'որ զետեղուէր՝ հողէ, անձրեւէ, ձիւնէ եւ այլն պահպանելու համար։ Աս բանս, երկրին ընդհանուր սովորութիւնն էր եղած։

Ի մասնաւորի, Միքայէլ Աբաֆի, իր ֆօկարաշի դղեկէն 1696ին հրատարակած առանձնաշնորհութեան պատճէնի ձեռօք հրաման տուաւ Հայոց, որ "իբրեւ վաճառական մարդիկ առուտուր ընեն ըստ կամի։" Այսպէս ըրին իրմէն ետքն եկող իշխաններն ալ։[1] — Բնական է որ Հայք այս առանձնաշնորհութեանց հետեւութեամբն, երկրին այլեւայլ կողմերը կ'երթային, հոն պզտի վրաններ կը կանգնէին եւ իրենց ապրանքներովն առուտուր կ'ընէին։ Սակայն այդրէնածին արուեստաւորներու եւ վաճառականաց խումբերն, որոնք շատ վրէժխնդիր էին, այս իրենց տրուած առանձնաշնորհութեանց վրայ, — ու գուցէ տեղեկութիւն ալ չունէին որ Հայք եւս նոյն արտօնութիւնը կը վայելեն, — շատ հեղ անհանգիստ կ'ընէին զիրենք, ու կանգնած վրաննին, նոյն իսկ Հայոց քակել ու վար առնուլ տալով՝ զիրենք տօնավաճառէն կամ վաճառանոցէն հեռանալու կը ստիպէին։

Աս բանս Հայոց համար շատ անհաճոյ ու

[1] Տես էջ 13. 4. — 81. 7. եւ 212. 6։

իրենց առուտուրն ու վաստակը առաջ տանելու նկատմամբ շատ վնասակար բան մըն էր։ Ուստի եւ — Արաֆի իշխանն իր իշխանութենէն արդէն ինկած ըլլալով — իր ամուսնոյն՝ Կատարինէ Պէգլէնին դիմեցին, այս իրենց դէմ եղած զրկանաց ճար մը հոգալու համար։ Ազնուական իշխանուհին լաւ գիտնալով, որ Հայք քանի մը տարի յառաջ, իրենց շնորհուած արտօնութեան զօրութեամբն, ունին հրաման բովանդակ երկրին մէջ ազատութեամբ առուտուր ընելու, դժութեամբ ընդունեցաւ իրենց աղաչանքն ու 1700ին, Յուլիս 26ին հրամանագիր մը հանեց Պաշտպալովի դղեակէն, իր կալուածներուն մէջ եղող որ եւ է վիճակի մարդու։ Ասոր մէջ առջեւնին դնելէն ետեւ, թէ Պաշտպալովի Հայերը, տօնավաճառներու առթիւ, իրենց վրաններ կանգնելու յարմար տեղ չեն գտներ, որովհետեւ կամ նոյն իսկ իր պաշտօնատէրները կը հրամայեն Հայոց, որ կանգնած վրաննին քակեն, եւ կամ օտարաց կը ներեն, որ զանոնք բռնութեամբ վար առնուն. խստիւ կը հրամայուի՝ որ այնուհետեւ, ուր որ Հայերն իրենց ապրանքովը երթան, պաշտօնատեարք՝ անոնց վրաններ կանգնելու յարմար տեղ ցուցընեն. եւ թէ որ օտարները զիրենք անհանգիստ ընեն ու վրաննին աւրել ուզեն, զանոնք այս անիրաւ բռնութեան դէմ պաշտպանեն։

Ահա այս հրամանագրին հայերէն թարգմանութիւնը։

"Կատարինէ Պէգլէն, իշխանուհի, եւ այլն։

Ամենուն եւ իւրաքանչիւր որ եւ է պաշտօնի մէջ եղող անձանց, որոնց կը պատկանի, եւ յանուանէ մեր ամէն երկիրներուն վերատեսչին ու գործակալին, եւ անոնց հոգաբարձուացը, համարակալացը, խնամակալացը եւ ամէն մեր կալուածատէրութեան մէջ գտնուող դատաւորաց, որ ներկայ գրութիւնը կը տեսնեն, կը կարդան ու կը լսեն, ողջոյն եւ շնորհք բազում:

Ներկայ պատճէնը, մեր Պաշտպալովի կալուածատէրութեան մէջ բնակութիւննին հաստատող Հայոց համար է, որոնց՝ խոնարհութեամբ մեզի դիմելէն կ՚իմանանք, որ մեր երկրատէրութեան մէջ, տօնավաճառներու առթիւ, չեն կրնար իրենց վրանները կանգնելու յարմար տեղ գտնել. որովհետեւ շատերն ի վնաս իրենց փորձառութեանը, տեսած են թէ, երբ որ իրենց համար պատշած տեղւոյ մը վրայ վրան կանգնել ուզած են, զանոնք նոյն իսկ մեր պաշտօնատէրները, ուրիշներուն հաճոյիցը համար, իրենց սեպհական ձեռքովը քակել կու տան, եւ կամ կը ներեն որ օտարները բռնութեամբ զանոնք վար առնուն: Եւ ասանկով ասոնք, յոգնած ու պարտասած՝ տօնավաճառի կ՚երթան. եւ առանց որ եւ է վաստակի մը ետ դառնալու կը ստիպուին: Եւ որովհետեւ ասոնք, մեր սահմանները գտնուելով՝ ատեն ատեն մեզի օգտակար ծառայութիւններ կը մատուցանեն, անոր համար՝ ամէն կարգի ու աստիճանի անձանց, ներկայ ու ապագայ պաշտօնատեարց, որ մեր կալուածներու մէջն են՝ կը պատուիրենք, որ այսուհետեւ, այս

Հայերը, ուր որ ասոնք մեր կալուածատէրութեան մէջ հանդիպած տնավաճառներու այցելութեան ելլեն, մեր պաշտօնատէրները՝ ամէն տեղ, իրենց բաղձացած տեղը, վրաններ շինելու յարմար տեղեր սահմանեն ու տան. իսկ ուր որ օտարականք, անոնց վրանները տակն ու վրայ ընել ուզեն՝ զիրենք պաշտպանեն. ու չըլլայ թէ թողուն որ անոնց վրանները մէկ դի նետուին: Եւս առաւել իրենք, մեր պաշտօնատէրները, զանոնք աւրելու կամ աւրել տալու չյանդգնին:

"Ուրիշ բաներու մէջ կը փափաքինք վերոյգրեալներն ողջունելու:

Տուեալ, մեր Պաշտպալովի դղեակը, յամի Տեառն 1700 յուլիս 26.

Կատարինէ Պէգլէն յ. ձ. Տ. Կ.:„

Առաջիկայ հրամանագրէն այսչափ կ՚իմանանք միայն, որ Հայերուն վրանները՝ օտարականք ու երբեմն նոյն իսկ իշխանուհւոյն պաշտօնատէրները կը քակեն ու քակել կու տան եղեր: Պատճառը՝ հրամանագրին մէջ չկայ:

Շատ հաւանական է, որ տեղացիք տեսնելով Հայոց առուտուրի մէջ ունեցած բնածին ճարտարութիւնը, եւ համոզուելով, որ ասոնք՝ յայսմ մասին զիրենք կը գերազանցեն, մանաւանդ այնու որ Հայք՝ Արեւելքէն ու Եւրոպայի այլեւայլ առաջին կարգի քաղաքներէն շատ մը բոլորովին նոր ու տեղացիներուն համար դեռ օտար ու չտեսնուած առեւտրոյ նիւթեր իրենց վաճառանոցը բերելով՝ գործքերնին ու առուտուրնին յաջողութեամբ յառաջ կը տանին,

գրգռուած ըլլայ իրենց նախանձը, թէ ինչո՞ւ օտարականք, այս բանիս մէջ իրենցմէ յառաջ ըլլան։ Ասոր հետեւութիւնն այն եղաւ, ինչպէս արտադրութիւնը կը ցուցընէ, որ թէ՛ իշխանուհւոյն պաշտօնատէրները եւ թէ՛ արուեստաւորաց խումբերն ու վաճառականաց ընկերութիւնները, վերոյիշեալ կերպով Հայոցմէ վրէժնին առնուլ ու իրենց առուտուրին առջեւը թումբ մը քաշել կ'ուզէին։

Մէկ պատճառն աս. մէկալն ան կրնայ ըլլալ, որ ազգայինք, տօնավաճառներու ատեն, չէ՛ թէ մէկ, այլ շատ տեղ երկերկու վրան ալ կը կանգնեն, ու չէ՛ թէ մէկ, այլ շատ տեսակ ապրանքով առուտուր կ'ընեն եղեր. եւ ասով՝ բնականապէս տէրութեան պաշտօնատէրներն ու վաճառականաց եւ արուեստաւորաց ընկերութիւնները կը զայրացընէին։ — Աս բանիս, այնչափ աւելի պատճառ ունինք հաւատալու, որչափ գիտենք թէ, ասոր նկատմամբ — թէպէտ քիչ մը ետքը — օրէնք տրուած էր Եղիսաբեթուպոլսոյ քաղաքային վարչութեան կողմանէ ազգայնոց. որուն մէջ կը հրամայուի, որ մէկ տնէ կամ մուխէ, մէկ հատ առեւտրոյ վրանէն աւելի չտարուի վաճառանոց. ու մէկ տեսակ ապրանքով միայն առուտուր ըլլուի։ Այն մէկ վրանովն ու մէկ տեսակ ապրանքովը կրնար երթալ վաճառականն երկրին որ եւ է կողմն ու տօնավաճառը եւ առուտուր կրնար ընել. բայց չէ թէ այնպիսի կերպով՝ որ մէկ տեսակ ապրանքով մէկ կամ մէկալ քաղաքն երթալէն ետեւ, Եղիսաբեթու-

պոլիս վերադառնայ. եւ ասկէ ուրիշ տեսակ ապրանքով՝ ուրիշ քաղաք մ'երթայ։

Տեսնենքասոր նկատմամբ եղած օրէնսդրութիւնը։

"1741. Դեկտեմբերի 21. Եւլիզաբէդան

Գիտացվի որ քաղվեցան Պատուելի Աշաչաները ու Պատուելի Սարսդան իրեն աղանէրօվը, վասն շադրանուն[1] համար, որ մէկ մուխէն մէկ շադրայ էլէ. այսինքն մէկ տանէն մէկ շադրայ. ու զան շադրայօվը ըսլօպօտ ըլայ քալէլու էրկըրին մէջ. ու ատուկ վան շադրայօվըն երթայ քաղքէ քաղաք. չի թողու ըզմէկ ապրանքը գլուժը կամ դուրտան ու գայ տուն ու տանէն արնու օզկայ ապրանք, որ երթայ չիկիշվարը կամ Ֆըլկարաշը. Նումայ մէկ խօսօք ան ատուկ ապրանքօվը երթայ, թէ օր ժամանակ ալ ըլար միջոց նայ, նումայ ան ապրանքովը գայ, օզկայօվ ըսլօպօտ չիլայ երթալու։„

Տարակոյս չկայ, որ տնավաճառի վրաններըը կանգնելուն նկատմամբ, պաշտպալով քաղաքը յատուկ օրէնքներ ունեցած պիտ'որ ըլլայ, զոր ընդունած էր, հոն հաստատուելէն անմիջապէս ետքը։ Այս վրանի իրաւունքն՝ ետքէն, վարչութիւնը մասնաւոր քաղաքացւոց շնորհած է որոշ պայմաններով ու վճարքով։ Այս առանձնաշնորհութիւնն, ինչպէս որ կրնար տալ, անանկ ալ կրնար ետ առնուլ։ Այսպէս, օրինակի աղագաւ, արդէն 1731 Յուլիս 20ին օրինադրութեան

[1] Sâtor հունգարերէն բառն է. կը նշանակէ՝ վրան։

մէջ կը գտնենք, ի մէջ այլոց, կարգադրութիւն մը, որուն համեմատ անորդի կամ արիւնակից չունեցող վրանատիրոջ մեռնելէն ետեւ, առեւտրոյ վրանին իրաւունքը կը մնար քաղքին. եւ քաղաքը՝ կրնար զայն պարգեւել արժանագոյնին:

"Շագրանուն կողմանէ եղաւ խորհուրդն այսպէս, որ փօփոր մեռնի ու չունէնայ օրդի կամ արունակից, նայ քաղքին ձեռն կու մնայ. զէ քաղաքն կու տայ զտալէքն ու զխարճն, նայ անոր սէպն ում որ արժան ըլլայ նայ, նարայ տրվի ընսը,[1] թէ որ տայ քաղքին ինչեւիցէ: Վասն այսորիկ հօս գրեցինք որ մնայ հաստատ:„

Վրաններուն նկատմամբ եղած կանոնադրութիւնները հետ զհետէ կարգաւորուեցան ու կոկուեցան: Այսպէս՝ քաղքին մէջի վրանի տեղերուն կողմանէ իրաւունքն, որուն վրայ մէյ մը գրուած էր, ըլլար անիկայ հարուստ կամ աղքատ, պիտի մնար ստացողին. ու մէկն զմէկալը տեղէն չէր կրնար հանել: Եթէ ըլլար անանկ տեղ մը, ուր նորէն սկսէին վրաններ կանգնել, այն ատեն ամէն մէկն, իր աստիճանին համեմատ պիտ'որ կանգնէր հոն վրան մը:

"Շագրանուն գրման տեղրանքն փօփոր ունի տեղ գրման նայ, տեղն մնայ, թէ խօճայ թէ աղքատ. ու չիլայ հանէլու մէկն զմէկալն. տարը թէ որ ըլլայ անպէս տեղմն, որ կցէին նօրէն դնելու, նայ պանէ վով իրեն հալին գօրայ:„

Քանի մը տարի ետքն օրէնք կը դրուի, թէ

---

[1] Անշուշտ, առաջնութիւն կը նշանակէ:

անկից ետքն մէկ տուրք տուող մը երկու վրան չկանգնէ տօնավաճառին մէջ։ Այս օրէնքն ոտքի տակ առնողն, անպատճառ 24 հունգարական ֆիօրին տուգանք կը վճարէր։

"1738 ունվարի 30ին.

Հաստատեցին Պատուելի Աղաչաններն սարըսդօմն ի միայսին վլանի կիւլիշին համար, որ ասգից ինտան ալ շատ չի գտվլի, որ մէկ տալիք տըվօղն ալ ալ ասգից ինտան երկու շադըրայ անէ կիւլիշի, ղէ վօվօր անէ երկու շադըրայ, նայ ունէնայ ճուրում տալու անպատճառ, այսչափ, 24 մաճրի։„

1748ին կերպարանափոխուած կը գտնենք նախընթաց օրէնքները։ Վասն զի թէպէտ կը մնայ 1741ին որոշածը՝ թէ վաճառական մը միայն մէկ տեսակ ապրանքով պիտոր երթայ՝ առուտուր ընելու, սակայն այս արգելքէն դուրս կը հանուին բամպակը, մանգաղը, ծխախոտն ու երկաթը։ Բայց անդին՝ այն Նոր հրամանը կը տրուի, թէ աղաչան կամ աղային ծառան, երեք կամ նոյն իսկ երկու օր յառաջ չկանգնէ իր վրանը. եւ եթէ կանգնէ իւր սեպհական տեղը կանգնէ։ Որովհետեւ եթէ գտնուի այնպիսի մէկն, որ վրան շինելուն մէջ փոփոխութիւն մը մտցընէ ու քաղաքաբաշխութեան ծառաններն այս տեսնելով իրեն հրամայեն որ ըրածն աւրէ ու չ'աւրեր, այնպիսին 12 մաճարի տուգանք պիտ'որ վճարէ։ Իսկ յամառութեանը համար սարըստէն իւր յատուկ պատիժը պիտ'որ ընդունի։

"1748 Դեկտրի, 12ին Եղիզաբեդան.

Հաստատեց Պատուելի Քաղաքըն իրեքումն ալ վասն շադրանուն սէպն, որ օբրիդ ըլլայ,[1] ընտօր վերն գրած է. այսինքն 1741. Եւ ճուրում պիտայ աւըրօղըն 12 մճրի: Բայց բամպակ եւ գօսան[2] եւ դըպագըն ու երկաթն կապ չէ. վան ըսլօպօտ էյ. բայց պի կցվի 1749էն, բրիմայ պի կցվի: Եւ այս ալ գիտացվի եւ կապվի որ մէկնիմէկ Աղաչան կամ Աղաչի մանչը չի անէ շադրայ 3 կամ 2 աւուրօվ արաչ. ու թէ որ անէյ ալ նայ լման[3] տեղին վրայ անէ. զէ գըտվի որ մարդ դընէ խորդութիւնն մէկնիմէկ շադրային վրայ եւ չի աւըրէ, թէ որ գըտնուն վադայհներն նայ այնպիսին պիտայ ճուրում անպատճառ 12 մճրի Պատուելի դըլնաճին: Եւ ինչու որ չի հնազանդիլ վադային նայ, պիտայ Ա. Սարըսդին ալ, իրեն ամպըրութեանը գօրայ: Անոր կու գրվի որ հաստատ ըլլայ:„

Առեւտրի վրաններուն վրայօք 1731ին ու 1738ին դրուած եւ 1746ին եւ 1748ին հաստատուած օրէնքը՝ 1750, Դեկտ. 16ին խստացուեցաւ. եւ ըսուեցաւ որ թէպէտ մինչեւ հիմայ հրամանէն դուրս ոմանք երկերկու առեւտրոյ վրան ունեցած են ու վարչութիւնն աչք գոցած է այս բանին, սակայն այսուհետեւ 1741ին հրամանին դէմ ընողն—այսինքն՝ երկու վրանով քալողը — 24 հունգարական ֆիօրին տուգանք պիտ՚որ վճարէ: — Քաղաքային վարչութիւնն

---

[1] Գուցէ կատարուիլ, գործադրուիլ, կը նշանակէ:

[2] Kasza. եւ ոչ թէ rasra ինչպէս 196 էջին ծանօթութեան մէջ տպագրուած է սխալմամբ: Կը նշանակէ մանգաղ:

[3] Ճիշդ, յատուկ, սեպհական:

այս օրէնքին վրայ հսկելը Սարըսդին ու իր Աղաչաններուն յանձնեց եւ իրենց լիակատար իշխանութիւն տուաւ, թէ ուր որ իմանան, որ մէկն օրէնքին դէմ ընելով՝ երկու վրանի մէջ առուտուր կ'ընէ, անմիջապէս բռնել ու տուգանքն իրեն վճարել տան: Օրէնսդրութիւնն ա՛ն ալ կ'աւելցընէ որ եթէ իմացուի, թէ մէկու մը համար վերատեսուչները նկատմունք ընելով, ըրածին աչք գոցած են, այն ատեն նոյն ինքն Սարըստան կամ Աղաչան կամ անոր ծառան պիտ'որ գանեն իրենց արժանաւոր պատիժը:

Աս օրինադրութեան մէջ ա՛ն ալ կայ որ եթէ Սարըստան եւ կամ իր ծառան որ եւ է քաղաքացւոյ հրամայէր, որ տեղէն ելլէ ու օգնէ զվրանը վար առնելու ու քաղաքացին չհնազանդի, այն ատեն ասիկայ երեք հունգարական ֆիօրին տուգանք վճարէ:

Ահա օրէնսդրութիւնն ըստ արձանագրութեան:

"1750 Դեկտեմբրի 16. Էլիզաբէդան.

Հասդատութիւն էղաւ Պատուէլի դըլնաճըն Ա. Պիրօվինը եւ Պատուելի Աղաչանունը եւ Պատուելի Ա. Սարըսդինը եւ իրեն հրամանոցը Աղաչանունը, ինչպէս կապտիքը այսինքն շադրանուն կողմանէ, որ հասդատած էղիլէ 1741. եւ գօնֆիրմօվադ արած էյ 1746 եւ 1848ին. Նայ հիմիկալ գօնֆիրմօվադ արինք, որ վօվօր ինչվաս քալիլէ կապէն եւ հրամանէն դուս, այսինքն շադրայօվ, Նայ ինչվան ի այսօր պօշ արաւ, ինչվանի հօս զամէնքը: Բայց հիմպիկուցէն ինտան

փօփոխ քալէ վերոյգրեալ 1741ին կապէն դուս. ընտոր որ կու գրէ ի Հօն եւ Համդատիլ է Պ. դըլնածը եւ քաղաքն թէ Աղաչայ եւ թէ օզկայ քաղքըցի եւ կոխէ ըզՀրամանը նայ, պիտայ ճուրում 24 մաճրի. եւ այս ճուրումը պիլայ, կէսն պատուելի դըլնաճինն եւ կէսն Ա. Սարըսդինը Սընակին, այսինքն քաղքին։ Եւ այս կապը եւ Հրամանը տված է պատուելի Ա. Սարըսդին եւ իրեն Հրամանոց աղաչանուն Հէտն, որ ըզվօվ իմանային որ այս կապէս դուս քալիլէ նայ, զարաս, ինմէտիադէ[1] արնու զճուրումն եւ օչ մարդու եալ օվէկիադ[2] չի անէ. զէ իմացուի պատուելի դըլնաճին դիմաց, որ մարդու մօտէ ըզճուրումը չի արիլ եւ ակընճօվ անցուցիլէ. ու սուս կեցիլէ, նայ պիտայ զճուրումն Ա. Սարըսդան կամ այնպիսի աղաչան եւ վադաՀը, որ դուս չիտայ նայ։ Եւ զաս ալ, որ թէ որ Հրամայէր Ա. Սարըսդան կամ վադաՀները քաղաքացոց Հիում, որ էլին վեր, որ ավըրին շադրայ կամ ճուրում արնուն եւ չի Հընազանդօղն պիտայ ճուրում 3 մաճրի։„

## 29.

Պ֊իտեն, ընթերցողք որ մսաՀատութիւնն ու մսավաճառութիւնը ի սկզբանէ Հետէ շնորՀուած էր Պաշտպալովլի. միայն թէ այն պայ֊

---

[1] Առաջինը՝ լեՀերէն, իսկ երկրորդը՝ լատիներէն է. կը նշանակեն՝ անմիջապէս, շուտով։

[2] Չեմ գիտեր թէ ինչ կը նշանակէ, իմաստը գուցէ ան է, որ մարդու մըն ալ աչք չգոցէ, կամ չըլլայ թէ չտեսնելու զարնէ, կամ ներէ։

մնաւ, որ անասնոց լեզուն դղեակը պիտի մնէր (Տես էջ 16)։ Ցորչափ ժամանակ որ քաղաքն այս արուեստին գործածութեան իրաւունքը տէրութենէն վարձու կը բռնէր, իր հաշուին կը բանեցընէր զայն, եւ այս բաւական ժամանակ։ Բայց երբ նոյնը տէրութենէն փրկանաւորեց, տեսնելով որ ասոր հոգատարութիւնը շատ դժուարութիւններ կը պատճառէ, մասնաւորաց վարձու տուաւ. եւ ասով գլխացաւութենէ մ'ազատեցաւ։

Մսահատութեան ու մսավաճառութեան նկատմամբ արդէն 1745ին կը գտնենք խել մը օրէնքներ ու կարգադրութիւններ քաղքին արձանագրութեանցը մէջ։ — Յիշեալ տարին, քաղաքային վարչութիւնը մսահատութեան իրաւունք չորս հոգւոյ կու տայ վարձու՝ մէկ տարուան համար, քառասուն ֆիօրինով։ Եւ աս անոր համար, վասն զի թէպէտ աւելի տուող ալ կար, բայց նկատելով որ ասոնք նախընթաց տարիները շատ կորուստ ըրած են մսահատութեան մէջ, իր կողմանէ շնորհմունք ըրաւ։

Սակայն գիտնալու ենք, որ միայն գուար ու մեծագոյն անասուններ կտրելու իրաւունքը ծախած էր իրենց քաղաքն. ինչու որ փոքրագոյն անասուններ կտրել ու անոնց միսը ծախել ամէն քաղաքացւոյ — բնականապէս որոշեալ օրինաց սահմանին մէջ — հրաման կար։ Այսպէս օրինակի աղագաւ. — 1. Այծու միս ամէն քաղաքացի կրնար ծախել՝ մեծ չափով, ամէն օր իսկ պզտիկ չափով կամ կտորով՝ միայն շաբաթ

օրերը։ Ա՛ն, որ շաբթուան միջոցին մէջ, պզտիկ չափով ծախէր, պատիժ պիտ՚որ վճարէր 50 ստակ։ Աս ստակին կէսը խորհրդանոցին ու կէսը՝ մսավաճառութիւնը վարձու բռնողներունն էր։ 2. Գառնուկի միս հրաման կար ծախելու ամէն քաղաքացւոյ, ամէն օր, թէ՛ պզտիկ ու թէ՛ մեծ չափով. միայն թէ ամէն մէկ գառնի համար մէկ ստակ վճարուելու էր։ 3. Ոչխարի ու խոյի միս ամէնեւին ծախելու հրաման չկար, որեւէ քաղաքացւոյ, եւս առաւել օտարի։

Մսահատներուն համար յաջորդ օրէնքները կային. 1. Ամէն մսավաճառ լաւ ու թարմ միս պէտք էր ծախու հանել։ Ա՛ն որ ասոր մէջ զանցառութիւն ընէր, կտրած դուարին կաշին իրմէն կ՚առնուէր, իբրեւ տուգանք։ 2. Մսահատը՝ առտուանց ծախուելու անասունը՝ իրիկուան պէտք էր մորթել. եւ իրիկուն ծախուելի միսը՝ առտու պէտք էր քերթել. եթէ նոր մորթած անասնոյ կամ տաք միս ծախէր, մէկ հունգարական ֆիօրին պատիժ կը վճարէր։ 3. Շաբաթ օրերն — որ տօնավաճառի օր էր — մէկ փունտ միսը, կէս ստըկով աժան պէտք էին ծախել մսավաճառք։ — Ասոնց համար կը սահմանուի դարձեալ. 4. Որ ծախելու համար միշտ բաւական, մանաւանդ թէ աւելի միս ունենան պատրաստ։ Ասկէ զատ օրէնք կը տրուի մսահատներուն. 5. Որ չըլլայ թէ թողուն գնչուներն — որոնք ընդհանրապէս պիղծ համարուած էին — որ բերեն միսը խանութը. եւ ոչ ալ անասնոյն մորթուելու ատեն մսահատին օգնեն

— ինչպէս որ մինչեւ հիմակ եղած էր, կ՚ըսէ օրէնքը — որովհետեւ եթէ որ եւ է մսահատին քով գնչու մը տեսնուի, մսավաճառը մէկ հունգարական ֆիօրին տուգանք պիտի վճարէ:

Հաստատեց վարչութիւնը, նաեւ խոզի միս ծախելու կերպը: Որովհետեւ որ եւ է քաղաքացւոյ ամէն ատեն հրաման կար խոզի միս ծախելու, անոր համար օտարք, ոչ տնավաճառի եւ ոչ ուրիշ օր կրնային պզտիկ չափով ծախել, հապա միայն մեծ չափով. այսինքն ամբողջ խոզը կամ խոզին ամբողջ գիրուցը (lardo):

Տեսնենք ասոնց նկատմամբ եղած որոշմունքներն ըստ տարեգրին:

“1745 ուլիսի 13ին Ելիզաբէդան.

Եղաւ հաստատութիւնն վասն խասափչոցըն եւ խանութին սէպն.

1ում. Ֆըկըտուիդ[1] արաւ չորս խասափչին 40 մաճարի հախ. խանութին սէպն, մինչեւ տարին: Եւ անունը խասափչոցը կու գրվի. Ա. Խաչիկըն Քելեանց. Դանէլն. եւ Գրիգորին Հանգցին. եւ Լուբուլն Սհակի. եւ իրենք իրենց կամօքն կու կապվին. եւ դէր քաղաքն նայեց վասն թէ ըղանցած տարըսդընուն զէնը օր արիլին նայ, անոր սէպըն թօղաւ 40 մաճրօվ, կար քաղքըցի, օր աւելօք ալ հախ կու տար:

2ում. Ամէն մէկ քաղքըցուն պիլայ ըսլօպօտ ածու միս ծախէլու գօշօվ,[2] ամէն օր. եւ

---

[1] Fogadni հունգարերէն է. կը նշանակէ՝ վարձել, վարձու բռնել:

[2] Կարծեմ, անասնոյն կէսը կը նշանակէ:

շաբաթ օրն չարեկով։[1] Տարը թէ որ գըտվէր մարդ որ շաբթեն մէջ կըտրէր կամ ծախէր չարեկով, նայ պիտայ ճուրում 50 պան։ Եւ զայս ճուրում պիլայ դըլնաճին եւ կէսն խասափչոցըն։

3ում. Գարի միս ըսլօպօտ էյ ծախելու հի որ մէկ քաղքըցուն, թէ շաբթենը մէջ եւ թէ շաբաթ օրն, թէ չարեկով եւ թէ ընդրեկ. տարը պիտայ 1 պան, մէկ գարին սէպն. եւ պանը պիլայ քաղքինը։

4ում. Օչխըրի եւ կամ պէրպիչի[2] միս ըսլօպօտ չի պիլայ ծախէլու քաղաքըն. այսինքն ոչ մէկ քաղքըցու, ան ալ ինգապ[3] օտրին։

5ում. Խասափչին հի որ մէկն ունենայ աղէկ միս անէլու. եւ չի անօղն պիտայ ճուրում զկաշին պան տավրինը։

6ում. Որ խասափչին օր միս ուզենայ ծախէլու նայ, որ միսն օր ծախէր արվատուն նայ, զան միսըն իրիկունը քերթէ. եւ օր միսըն օր իրիկունը ծախելու ուզենայ նայ, զայն արվատուն քերթէյ։ Եւ թէ օր հանդըպէր օչկայ ցեղ նայ, տայ ի ճուրում 1 մճրի. այսինքն օր տաքդաք ծախէր զմիսն։

7ում. Շաբաթ օրն ունենան ½ պանով ալ աժան ծախելու փունդ միսն։ Եւ միս ունենան տեսդուլ.[4] բայց 4 խասափչին գ. տաւար ունէնայ քերթելու. եւ թէ պէտք ըլայ նայ, աւելըքն ալ անէյ. նայ որն որ շաբթենը մէջ կու

---

[1] Անանոյն մէկ չորրորդական մասն է=չորեք։
[2] Հունգարերէն berbécs բառն է. կընշանակէ՝ խոյ։
[3] Մանաւանդ թէ, եւս առաւել. հունգարերէն է։
[4] Բաւական, ըստ բաւականի։

մրտնու եւ մինչեւ իրիկուն ամէնը ½ պանօվ պի ծախվի ալ աժան ֆունդ միսըն։

8ում. Աս ալ հասդատեց Պատուելի դըլնաճըն, որ ծինկան չի գտվի, օր միս բերէ խանութըն. եւ ոչ քերթելուն ժամանակըն ընկերէ խասափչոցըն քերթելու, ինչպէս ինչվաս եղիլէ. զէ հի որ խասափչուն մօտ օր տեսնըվէր նայ, ճուրում 1 մճրի պիլայ անպատճառ։

Սիւն Տատումին հասդատեց Պատուելի Դըլնաճըն վասն խօզըմըսին ծախէլուն սէպըն, այսինքն օտար մարդիգոց կամ քաղքըցոց ֆունդօվ ըսլօպօտ չի պիլայ ծախէլու, օչ պազըի աւուր եւ օչ օզկայ աւուր. միայն ընդըրէկ. տարը մեր քաղքըցոցըն ըսլօպօտ պիլայ ֆունդօվ ծախելու։„ — — —

Ամենէն շատ գործ ունեցած է քաղաքային վարչութիւնը վարձականներուն եւ աւարառուներուն հետ։ Ինչպէս Եւրոպայի ամէն տէրութեանց՝ անանկ ալ ի մասնաւորի Հունգարիոյ մէջ աւարառուներուն վիճակը շատ գէշ էր։ Աւատականներն՝ իրենց տէրերուն գրեթէ ստրուկները, գերիներն եղած էին։ Իսկ վարձականները պէտք էին որոշեալ օրեր իրենց կալուածատէրերուն ձրի ծառայութիւն ընել, եւ չէ թէ միայն ինք վարձականը, այլ նաեւ կինն ու զաւկըները։ Ասոր բնական հետեւութիւնն ան էր, որ թէ մէկն ու թէ մէկալը, այնպէս կը նկատէին իրենց տէրերն, իբրեւ պզտիկ բռնաւոր մը, իբրեւ դահիճ մը։

Թէպէտ ազգայինք միշտ ցուցուցած են, որ

ազատորեար են, սակայն իրենց ստորակարգելոցն ու վարձակալացը հետ երբեք այն խստութեամբ չէին վարուեր, ինչպէս իրենց շրջակայ ազգերը։

Քաղաքային վարչութեան՝ վարձակալներուն համար տուած առաջին կանոններուն կը հանդիպինք Կարոլոսի առանձնաշնորհութեան կոնդակէն վեց դար ետքը, կամ 1739ին, երբ քաղաքն ասոնց համար օրէնքներ կը դնէ թէ ինչպէս պիտ՚որ ըլլայ իրենց վարմունքն ու քաղաքավարութիւնը կալուածատէրներուն հետ։

Այս կանոնադրութեան մէջ կը գտնենք ի մէջ այլոց. 1. Թէ տան տէր, աղա, կամ քաղաքացի մը, որն որ իր վարձակալն ինչեւիցէ պատճառի մը համար վռնտած է՝ արգելեալ է բացարձակապէս որ զայն ծառան կամ վարձակալն՝ ուրիշ աղայ մը իրեն ծառայութեան կամ վարձակալութեան մէջ առնու։ Ասոր դէմ ընող պնդագլուխ աղաչան — կ՚ըսէ օրէնսդրութիւնը — որ քաղքին որոշածն ու հրամայածն ոտքի տակ առնուլ կը յանդգնի 24 հունգարական փիօրին տուգանք պիտի վճարէ։ 2. Ամէն մէկ աւատառու, եթէ տիրոջը տներուն մէջ կը նստի, պարտական է — ինքը միայն — շաբաթն երկու օր իւր տիրոջը ծառայութիւն ընելու։ Թէ որ դուարովը բանի, այն ատեն բաւական է որ շաբաթը մէկ օր ծառայէ իւր կալուածատիրոջը։ Բայց տէրն՝ առաջին, ինչպէս նաեւ երկրորդ դէպքին մէջ, զինք կերակրելու պարտաւորեալ է։ 3. Ամէն մէկ աւատառու վարձակալ, միայն իր տիրոջը հաւանութեամբը կրնար տնէն ելլել։

Վարձակալութիւնը թողած ժամանակը հաշիւ պէտք էր տալ գործած բաներուն վրայօք, եւ թէ որ գործքին կամ վճարմունքին նկատմամբ բանով մը պարտական մնացած ըլլար, իր կալուածատիրոջն, այն մնացածը հատուցանելու, լմընցընելու էր։ 4. Վարձակալն, որ առանց իւր տիրոջը կամաց տներէն ելլէր կամ փախչէր եւ կամ ուրիշ աղայի մը ծառայութեանը մտնէր, զինք ընդունող նոր տէրն երեք հունգ. ֆիօրին տուգանք պիտ'որ վճարէր. իսկ ելած կամ փախած վարձակալը՝ տիրոջը հատուցանելի վարձքէն կամ աշխատութենէն զատ, թէ՛ երեք մարխաշ պիտի տուժէր ու թէ՛ միանգամայն քաղքէն պիտի աքսորուէր։ 5. Այն վարձակալն որ տիրոջմէն փախչելէն ետեւ նորէն ետ դառնար, այնպիսին՝ ա՛լ առաջին տիրոջը հետ ամենեւին գործք, կամ առնելիք տալիք մը չունէր։ 6. Վարձակալին համար՝ իւր տէրը, քաղքին տուրք տալու էր տարուէ տարի մէկ ֆիօրին ու քսան ստակ։ Որոշած հարկը տալ չուզողը՝ կրկինը պիտի տուժէր։ Այս դրամը կրնար տէրն ետքէն իւր վարձակալին վճարել տալ, բայց կրնար նաեւ թողուլ։

Ահաւասիկ այս որոշմունքներն ըստ տարեգրին։

"Ամի տեառն 1738. Եղաւ Հաստատութիւնն ի քաղաքն Էլիզաբէթան վըլասնի մայերնուն համար. այսինքն օլախնուն, որոնք որ կի կենան։ Թէ որ ըլլար մէկ անպէս բան մը, որ քաղաքն կամ մայերճուն աղաչան վարէր կամ

վարէյին, նա անպէս մայրերճին աբսօլուդէ ըսլօպօտ չիլայ օզկայ աղաչի արնէլու զվարած մայերճին։ Ու թէ որ գտվէր մէկ անպէս ամպուր տղաչայ մը, որ հակէր գքաղքին կապը նայ, այնպէսն անպատճառ ունէնայ տալու ճուրում մաճրի 24 մաճրքի։„

„Ամի Տեառն 1739նին, ունիս 20ին էլիզաբէդան, ժըլէրնուն[1] սէպն հաստատիլէ Պատուելի Գըլնաճն, թէ ինչպէս ըլայ նըստելն կամ կէնալն քաղքըցոց մայերնուն մէջ եւ այլն։

1. Ամէն մէկ ժէլէր ունէնայ իւր աղաչին, այսինքն տանը տիրոչն բանէլու մէկ շաբդուն ու ամէն շաբդու. ինչվանի տներուն մէջ չի կէնայ նա, երկու օր, ինքը ժելէրը մէնը, ու թէ որ տաւրօվ բանի ու արպօվ նայ, մէկ օր մը ունէնայ բանելու շաբադը, ու աղաչան տանը տէրը, ուտելվօվ ունէնայ բընէլու ըզժէլէրը։

2. Ամին ժըլէր ունէնայ աղաչին խրէրօմն էլէլու տնէրուն դուս. եփ ուզէնար ելելու նա ունէնայ սէպ նստէլու աղաչին հետ, թէ հախի ու թէ բանելուն, ինչ բանիլէ ու ինչ մնացիլէ բանին կամ տանը հախին, որ ունենայ լմընցընէլու ժըլէրը, թէ տանը հախը, թէ բանելը։ Ու թէ որ գըտվէր այնպէս ժըլէր, որ արանց աղաչին խրէրին էլէր տնէրուն կամ փախչէր օզկայ տեղ կամ օզկայ աղաչի տնէրուն մէջ մըտնուր նա, զանպխսի աղաչան, որն որ բըխմիդանէ ըզարանց խրէրի ելած ժըլէրն նայ, ունէնայ

---

[1] Zsellér հունգ. բառ է, որ կը նշանակէ՝ վարձտու, վարձակալ։

ճուրում տալու 3 մաճրի Պ. դըլնաճին. ու էլած ժըլէրն ալ ունէնայ տանը տիրոջն տալու բանէն ու հախէն դուս 3 մարիաշ, ու համ աքսորած ըլայ այնպիսի ժըլէրն քաղքէն։

Դարձեալ գիտացվի օր որ մրիշդիայնը փախչի ու ալվի դարնայ նա, աղաչին, որին տներուն մէջ կեցած ըլայ նա, ալ շատ բան չունէնայ հետը իքմալ փնտրէլու, այսինքն ժըլէրն։„

"1745 ունիսի 18.

Խորհուրդ էղաւ. եւ հասդատեց Պատուելի դըլնաճըն, վասն թէ հի որ աղաչան եւ կամ քաղքըցին, որ ունէնայ մայէրն տուն եւ ուզէնայ որ բռնէ ժէլէր նայ, ամէն մէկ ժէլէրին սէպըն ունէնայ Աղաչան ժէլէրին սէպըն տալու քաղքին 1.20 պան։ Այս ըսդակըն պի քաղվի նոր տարուն, ամէն տարպայ։ Եւ այս հասդատութիւնը էղաւ հասդատ մնալու սէպն։ Եւ փօփօր չուզենար տալու ըզ 1.20 պանը, նայ տայ ճուրում Պատուելի դըլնաճին 2.40 պան։ Նայեւ այս ըսդակըն ըսըօպօտէյ Աղաչին օր առնու ժէլէրին մօտէն, արանձ պիրովի ալ. եւ ուզէնայ նայ, կըլայ պօշ ալ անէլու։„

Թէ որ ագարակ մ'ունեցող աղաչան կամ քաղաքացին անոր մէջ երկու կամ երեք տուն ունենար, հոն մէկ վարձակալէ մ'աւելի պիտի չկարենար պահել։ Ասիկայ կրնար հունգարացի կամ վալաք ըլլալ։ Բայց աւելորդ տներուն մէջ ազգային կրնար պահել։ — Օտարածին վարձակալը մէկ կովէ մ'աւելի չէր կրնար ունենալ. սակայն եզ, չորս ալ կրնար պահել։ Այծ, ինչ-

պէս նաեւ խող ու հաւ՝ հրաման չկար պահելու։ Կովը՝ յորթ մը կրնար ունենալ։ Աս օրէնքներուն դէմ ընողը՝ 12 հունգ. ֆիօրին տուգանք պիտի վճարէր։

Վերոյգրեալ օրէնքը երեք տարի ետքը նորոգուեցաւ եւ ամրացուեցաւ ու ըսուեցաւ թէ աղաչայ մ՚որ վեց տուն ալ ունենար ու տուրք մը վճարէր՝ մէկ վարձակալ մը միայն կրնար պահել։ Բայց հայ այնչափ կրնար պահել որչափ տուն ունենար։ Ըրածին պատճառն ալ կ՚ուզէ տալ օրէնսդրութիւնն երբ կ՚ըսէ. Շատ տեսակ պատճառներու համար կը փափաքինք որ գէշութիւնը հեռացընենք քաղքէն։ — Շատ տեսակ պատճառներէն մէկն էր այն, որ շատ օտարազգի վարձակալ կը պահէին հայերն. եւ օրինադիր իշխանութիւնը կը վախնար, որ չըլլայ թէ օտարականք ժամանակաւ բազմանալով՝ հայք տկարանան ու բռնած տեղերնին թող տալու ստիպուին։ Աս վտանգաւոր դիրքէն բոլորովին ազատելու համար, վարչութիւնը հրամայեց կալուածատէրներուն որ իրենց վարձակալները քովերնէն հեռացընեն։ Աս բանիս գործադրելու ժամանակակէտը դրաւ 1749 Ապրիլ ամսոյն 24ին։ Այն աւատատէրն որ զվարձակալը չհեռացընէր իր կալուածէն, 12 հունգարական ֆիօրին տուգանք պիտի վճարէր. այսու ամենայնիւ զվարձակալը դարձեալ իր քովէն հեռացընելու էր։

Վարձակալներուն վրայօք եղած այս օրէնքներն ու կարգադրութիւնները՝ յաջորդ կերպով

կը գտնենք անցուած քաղաքային վարչութեան պաշտօնական գրութեանցը մէջ։

“1745 Դեկտեմբեր 8.

Եղաւ խորհուրդ վասն մայերնուն սէպըն այսինքն թէ հի որ մէկ Աղաչան եւ կամ քաղ-քըցին որ ունէնար 1 մայերմն եւ զան մայերին մէջ ունէնար 2 կամ 3 տուն նայ, ըսլօպօտ չիլայ աւելօքըն մայերճի բըռնէլու քանձ մէկըն. տարը մայերն կըլայ թէ օլախ եւ թէ մաճար եւ այլն։ Տարը աւելօք տնէրուն մէջ հայ կըլայ բըռնէլու։ Տարը օտար մարդու ըսլօպօտ չիլայ տալու ըզտունըն։ Նմանապէս զան մայերճին ըսլօպօտ չիլայ որ ունէնայ աւելօք կօվ, քանձ մէմն. տարը եզներ կըլայ 4 ալ բըռնէլու։ Ածըն ըսլօպօտ չէ. եւ օչ խոզ. եւ ոչ հաւ. տարը կօվըն 1 փօրդօվ որ չի կարնայ ասէլու մայերճին թէ փօրդերն զատ մէկ կօվին։ Անոր համար կու գրվի որ մընայ հաստատ. եւ չի հնազանդօղըն այս կապին պի տայ զճուրումն անպատճառ 12 մճրի Պ. դըլ-նաճին։„

“1748 Դեկմբրի. 23 ին.

Գօնֆիրմօվադ էղաւ վասն մայերճօցըն սէպն այսինքն, որ 1745 ի մէջի հաստատած հաս-տատութիւնը կապ մընայ, զայն ճուրումովըն։ Բայց անպէս որ մէկ տալիք տվօղ Աղաչան, մագար ունէնայ նըմայ 6 տուն կամ աւելի պակաս, նայ զան Աղաչան ունէնայ նմայ մէկ ժըլէր բըռնէլու օլախ։ Բայց հայ կըլայ բըռնելու քանի տուն որ ունենայ նայ։ Եւ զայս գօնֆիրմացիան անոր սէպըն հաստատվեցաւ, որ զգէշն հէրըցնունք

քաղքէն շատ Թըրլու պատճառնու սէպըն։ Նու
գէր տըրվեցաւ գէրմին այս մարդիգացն սընճօր-
ճին, օր դուրս հանէ կաղտան ըղմայերճին. եւ թէ
չի հանէնայ, պի ճուրումլի 12 մաճրի. եւ ամէնը
դուս պի հանին զաւելօքն, այսինքն մայերճին։
Եւ այս կապըն բօվանդակ քաղքըցոցը վրայ
հաստատածէյ։„

Կ՚երեւայ թէ Եղիսաբեթուպոլսոյ ազգայ-
ինք շատ հոգ կը տանէին անոր ալ, որ իրենց
վարձականներուն հոգեւոր պիտոյքները հոգա-
ցուին։ Ասոր վրայօք Եղիսաբեթուպոլսոյ տարե-
գրոց մէջ յաջորդ դէպքը կը կարդանք։

Օրին մէկը հայոց եկեղեցպանը քանի
մ՚աղաներու ներկայութեամբը զվալաք քահա-
նան կանչել տուաւ եւ խնդրեց իրմէն որ ազ-
գայնոց քով եղած վալաքներուն հոգեւոր պի-
տոյքներն ալ ա՛յնպէս հոգայ, ինչպէս որ իր
հաւատքն անոնցմէ կը պահանջէ. աւելցընելով
թէ ասոր համար զինք այնպէս պիտի վարձա-
տրեն ինչպէս որ սովորութիւն է իրեն գեղացի-
ներուն մէջ։ Վալաք տէրտէրն այս բանս ա՛յն
կերպով միայն յանձն առնուլ ուզեց, որ հայոց
քով եղած ծառաներուն եւ աղախիններուն
տարուէ տարի մարդ մը՝ ազգայնոց կողմանէ ու
մարդ մը իրեն կողմանէ խրկուի, որպէս զի իրեն
հաւատացեալներէն երեքական բուղրագն[1] առ-
նուն։ — Դատաւորը պատասխանեց թէ՝ այսպէս

[1] Բուղրագն — անշուշտ վալաքերէն է — շատ նուազ արժէք ունեցող փոքր դրամի տեսակ մըն էր։ Ըստ իս երեք չորս սանդիմէ աւելի չէր։

բան չի կրնար ընել որովհետեւ Գրանսիլուանիոյ մէջ ասանկ սովորութիւն չկայ։ Բայց աւելցուց թէ ինչպէս որ ընդհանուր սովորութիւնն է, պիտ՚որ հրամայէ հայազգի տանտէրերուն, որ իրենց վալաք ծառաներն ու աղախինները կիրակի ու տօնի օրերը եկեղեցի խրկեն. եւ ապսպրեն միանգամայն, որ տանին այն նուէրը, զոր սովորութիւն ու պարտք է տալու իրենց քահանային։ Սակայն վալաք եկեղեցականը՝ առանց իր դրած պայմանին ու կապին՝ բան մ՚ընել չուզեց։ Այն ժամանակ խնդրեց իրմէն դատաւորն որ շնորհք ընէ ու գոնէ իր — վալաք — հպատակները խոստովանցընէ ու հաղորդէ. եւ ընէ ինչ որ սովորութիւն է իրենց մէջ։ Ու երբ որ տեսնէ որ մէկն իրեն խօսքին չ՚անսար, այն ժամանակ ծառայ մը խրկէ դատաւորին եւ ինք այս բանիս դարման մը կը հոգայ։ Բայց քահանան այս բանս ամենեւին յանձն առնուլ չուզեց։ — Այս դէպքը պատահեցաւ — կ՚ըսէ տարեգիրը — Աղա Խաչիկին, Աղա Լուսիկ եկեղեցպանին, Աղա Վարդանի ու Պիրովին առջեւը։

“1735 Ապրելի 15.

Օլախ տէր տէրը ձէնէձինք զիմ պօլդը, վասն մեր մայերնուն այսինքն՝ օլախնուն սէպը ու խնդրեցինք զինք, որ հօգայ զմեր մայերնուն օլախներն ալ, ընտօր իրեն հաւատը կու խրատէ. ու պիտանք իրեն հախ ընտօր իրենց գեղացիքը։ Ինքը կասէ թէ պի հոգայ անպէս օր ինչխար մանչ ու աղջիկ կայ հայէրուն մօտ նայ, տարին մէկ անգամը տանք ա. մարդ մը ու ինքն ալ պի

*խրկէ ա. մարդ մը, որ քաղեր իրեգան բուղրաք ու տանք մէկ տեղ: Մենք ասինք թէ, մինք չինք անիլ ատպէս բան, զէ չիգայ այս երկրիս մէջը ատպէս բան. տարը ընտօր ատաթ է նայ, մինք պի ապըսպըրինք մեր մարդիգացը, որ ամէն մարդ վօվօր ունի օլախ ծարայ նայ, տօն աւուրները ժամ էրթայ. ու տանին գաՀանային, ինչ որ իրենց ատաթն է: Նայ ինքը կասէ, թէ ամենեւին չի-պիկէ[1] եփոր ատպէս կապ չանինք: Նայ մինք խնդրըվեցանք, թէ անէ աղէկութիւն ու տայ իրենց սըրբութիւնն ու ինչօր իրենց ատաթն է նայ, Հոգայ ու ոռնօր տեսնու որ անպէսն է նա խրկէ ա. տղամը պիրօվին մօտ, եւեւ պիրօվը պի Հօգայ զանպէսն. նայ ինքն ամենեւին չուզէ: Եղաւ անժումը Աղաչայ եկեղեցքանը լուսիկը, Աղա վարդանը, Աղա խաչիկը ու Պիրօվը:„ — — —*

*Քաղքին կնքոցն ու անոնց որպխութեանը վրայ ուրիշ տեղ խօսելու առիթ ունեցանք:[2] Ինչպէս յայտնի է՝ քաղքին կնիքը միայն պաշտօնական բաներ կնքելու Համար գործածելու Հրաման կար. անկէ դուրս՝ ոչինչ բանի: Քաղքին դատաւորն ինչպէս նաեւ նոտարը՝ պաշտօննին ձեռք առած ատեն պէտք էին խոստանալ որ զայն՝ միայն պաշտօնի վերաբերեալ բաներու մէջ պիտի գործածեն:*

*Քաղքին կնիքը գործածելու նկատմամբ արարողութիւններ ու կարգադրութիւններ կային:*

*Քաղաքացի մը ուրիշ մէկ քաղաքացէ*

---

[1] Այսինքն՝ պէտք չէ, Հարկաւոր չէ:
[2] Տես էջ 272—282:

երդուընցընել կամ դատաստանի առջեւ բերել ուզած ատեն՝ նախ վարչութեան երթալու էր ու հոն մէկ շիշտակ[1] վճարելէն ետեւ՝ քաղքին կնիքը կը հանէր ու անոր զօրութեամբը դատաստանի առջեւ բերել կու տար հակառակորդը։ Հրամանին չհնազանդողն ու չեկողը՝ առաջին անգամ երեք հունգարական ֆիորին տուգանք կը վճարէր, երկրորդ անգամ՝ վեց. եւ սակայն դատաստանի ներկայանալէն ու երդմնէն չէր ազատէր։

Քաղքին փոքրագոյն կնիքը գործածելն այնչափ թանկ չէր։ — Եթէ այս կնքովը մէկն ուրիշ մը դատաստանի կանչել ուզէր, նախ՝ բուդրագ մը պէտք էր վճարել եւ անկէ ետքը միայն կրնար կանչել տալ իր ոսոխը։

Թէ որ աղերսագիր մը կամ եկակոչ մը (citat) կէս թերթի վրայ գրուած ըլլար, աղերսագրին տէրը՝ նախ մարիաշ մը մատուցանելու էր քաղաքային վարչութեան ու աղերսագիրը նոտարէն պիտի կնքուէր։ Ասոր վրայ թուղթն ամբաստանողին ձեռքը պիտ'որ տրուէր որ դատաւորին տանի։ Կնքոյն զօրութեամբ՝ դատաւորն առջեւը պիտ'որ կանչէր ամբաստանեալն ու դատաստան պիտի կտրուէր։

Ահա վերոգրեալ որոշումներն ըստ արձանագրութեան։

“1736 Դեկի 21 Էլիզաբէդ Քաղաքն։ Վասն փէճաթին քաղքինը համար էղաւ

---

[1] Շիշտակը երեք քառանդան — չուրջ վեց սանդիմ — արժէք ունեցող դրամի տեսակ մըն էր։

խորհուրդը այսպէս. որ փօփ կամենայ որ մարդ երֆընցնու նայ, ա. շիշդաքմն ունէնայ վար դընելու ու հանելու փէճաթ, ու զան փեճաթօմն ձէնէ զփօփոր կամենայ քաղքցին. ու զան շիշդաքը պիլայ արընատ քաղքինը: Ու փօփոր չի հնազանդի ան հրամանին ու չի գայ նայ, տայ 3.00 մաճրի այսինքն իրեք մաճրի մաճրքի ճուրում: Արաջը տայ ճուրում, անոր ետեւ այլվի երդֆնայ, ինչեւիցէ. ու ճուրումն դընաճին է. ու երկուսումն չիգայ նայ 6.00 մաճրի ճուրում:

Դարձեալ ալվի օզկայ փէճաթ ալ պիզտիկ որ կայ, այլվի քաղքինը. անպէս է խորհուրդը, որ ուզենայ մէկնի օրն որ ձէնէ դատաստան նայ ա. բուդըրաքմն տայ ու առնու ու ձէնէ. ու բուդըրաքը Աղանուն է:

Դարձեալ թէ որ ըլայ կէս գօլայի վրայ գիրն նայ ա. մարաշ ունէնայ տալու ու զուէլադօրիան[1] ունէնայ փէճաթելու նօդարիշը ու աղան. ու տան տավիճուն ձեռն, որ տանի պիրօվլին. ու պիրօվին աբէռդօվադ[2] պանէ ու պի բացվի դատաստանին դիմաց ու պի գարդան ու պի կտրին զդատաստանը:„

Գինի ու ոգեւոր ըմպելիք ծախելու իրաւունքն՝ ինչպէս ընթերցողք գիտեն, քաղաքը Մարիամ Թերեզիայէն գնեց 16.000 ֆիորինով 1759ին։[3] Ուստի եւ չէ թէ միայն քաղքին այլ նաեւ շրջակայ հինգ գեղերուն — որ Հայոց

[1] Լատ. տեղեկութեան՝ առաջարկութեան գրուածք։
[2] Aperio. բանալ, երեւան հանել։
[3] Տես էջ 183 եւ 213, 9։

ստացուածքն էր — գինեծախութիւնը՝ քաղաքային վաճառութիւնը յանձնեց վերատեսչի մը, որ պօր-պիրով կ'անուանուէր: Ասոր գործքն էր փրկանաւորեալ գինին ու օղին ծախել տալու եւ միշտ հոգ տանելու որ մթերանոցներուն մէջ բաւական գինի, ցքի, գարեջուր եւ ուրիշ ըմպելիներ պատրաստ կենան: Այս ոգեւոր ըմպելեաց վրայօք համարակալութեան հաշիւ տալու էր: Աս աշխատութեան համար քաղաքը կը վճարէր վերատեսչին տարուէ տարի 360 ֆիօրին:

1763ին գինեծախութեան եւ ուրիշ ոգեւոր ըմպելեաց վաճառումն աւելի կարգի մտած կը գտնենք: Գինեծախութեան վերատեսչին — Լուսիկ Ոսկերիչեանցի — հետ քաղաքը մէկ տարուան համար դաշնագրութիւն կ'ընէ, որ քաղքին գինիներն ու ոգեւոր ըմպելիները ծախէ յաջորդ պայմաններով. Նախ. Իրեն 360 ֆիօրինի տեղ միայն 50 կտոր ոսկի կամ 250 հունգարական ֆիօրին կու տայ. ասկից զատ ուրիշ բան չէ — ինչպէս յառաջագոյն կար — ո՛չ օգնական եւ ո՛չ բերք: Եթէ պօր-պիրոմն ասոնց հարկաւորութիւն ունենայ, ինք անձամբ վարձէ ու հոգայ իրեն տրուած վճարմունքէն: Երկրորդ. Գինիները իր ժամանակին պիտ'որ գնէ ու նաեւ գարեջուր եփելուն հոգ պիտի տանի: Երրորդ. Կալուածատէրութեան հինգ գինետուները՝ նաեւ քաղքին գինեծախութեան մթերանոցները՝ գինին, օղին ու գարեջուրը՝ չափով ու հաշուով տայ եւ հաշուով ընդունի: Նմանապէս տօնավաճառի վերակեցուին ու ծախող կանանց՝

ոգեւոր ըմպելիները հաշուով տայ եւ ստակները ժողովելու նայի: Ցքիի պակսութիւն ունեցած ատեն անմիջապէս գնէ. ու շրջահայեաց ըլլայ, որ չըլլայ թէ գինւոյ եւ օղիի պակսութիւն ըլլայ: Քաղաքացիէ մը եւ կամ Մեստիաշէն աւելորդ գինի գնել ուզած ատենը՝ առանց հասարակութեան հաւանութեանը չգնէ: Միով բանիւ, ինչպէս որ իր նախորդն ըրեր կարարեր է այն պաշտօնն, ինքն ալ ընէ՝ հաւատարմութեան երդում ընելով: Ինչ ստակ որ քաղուի՝ համարակալութեան ձեռքը յանձնէ՝ անկէ ընկալագիր առնելով: Հաշուեկալութիւնն ալ հսկէ, որ գեղերուն եւ քաղքին մէջ առանձնականաց ձեռօք ծախուած գինիներուն մէջ պակասութիւն մը չհանդիպի:

Ահաւասիկ որոշումները ժամանակակից արձանագրութեան համեմատ:

“Աստուծոյ ողորմութեամբն 1760 ունվարի 4 էլիզաբէդան:

Նմանապէս ութվեցաւ Պ. Հասարակին, որ ըլլայ Պօր պիրով[1] Պ. Քաղքին, Աղաչայ Մանուկ գրիգորի. եւ ունէնայ զ.քաղ.քին գրչմաներն նաեւ զգեղըանունը ձեռացն տակն զալօտիալ[2] գինսդանը. եւ զռախին ունենայ ծախել տալու. եւթէ օր չի օգդվէր նայ, ունէնայ գնէլու բաւական: Մէկ խօսք, որպէս պօր պիրով, ունէնայ զամենայն տարտն, թէ գինսդնունը եւ ըռախսդնունը քալ-

---

[1] Հունգարերէն է. կը նշանակէ բառ առ բառ՝ գինւոյ դատաւոր. այսինքն՝ գինիներու վերատեսուչ, հսկող:
[2] Allodialis. արտօնացեալ, ազատ:

ցընելու. եւ Պ. Էգզագդօրիային սէպ տալու: Եւ աշխատանքին սէպն կու խոսանայ Պ. քաղաքն իրեն Հրամանոցն տարեկան հախ H. F. 360 այսինքն՝ երեք հարուր վաթսուն մաճրի:„ — Դարձեալ՝

“1763 Մարտի 9 ին էլիզաբէդան:

Պատճառ գրոյս այս է. ինչպէս որ մէկ տեղ ըլալով Պ. Մակիսդրադը ի միասին հետ Պ. Սուդային, կամեցան Պօր պիրով ընտրելու, վօրն որ տարտն ունէնայ գըչմանու. ձան տալով զԱ. լուսիկը խըչիկի ոսգերիչեանց. որն որ ույմիշ եկաւ հետ Պատուելի հասարակին մէկ տարով մը. a 1ma աբրելի հույուս[1] մինչեւ 1764 աբրելի 1ma. որ տարեկան հախը պի ունենայ Պատուելի քաղքէն 50 ոսգի. այսինքն 250 մաճրի եւ օզկայ բան ոչիքմնալ, օչ ատինգգուս, օչ նադուրալի[2]. հապա թէ պիտվական ըլայ իրեն հրամանոցն, նայ պի վարձէ իրեն հրամանոցն հախէն: Եւ ունենայ պօրպիրօվը ատենօվ գինին գնելու, նաեւ փիվայ[3] եւ ըռախի. ու եփելուն ատենը ղամենայն բանը եւ տարտը քալըընելու: Նոյն տօմինիումին հինկ գեղին գըչմաներն, նաեւ Պ. քաղքին գըռչմանուն տարտը ունենայ, նաեւ գինի, ըռախի եւ փիվայ տալու սէպօվ եւ սէպօվ առնելու, զամընները չափելու: Նմանապէս պազարը, վաշար պիրօվին[4] եւ կնտոցն ըռախի սէպօվ տալու եւ

---

[1] Լատիներէն է, կը նշանակէ՝ ներկայ, առաջիկայ:

[2] Երկու բառն ալ լատիներէն է: Առաջինը կը նշանակէ՝ մերձակայ, քովի եղող. երկրորդը՝ բնական բերք, պտուղ:

[3] Լեհերէն է. կը նշանակէ գարեջուր:

[4] Հունգարերէն է. վաճառանոցի՝ տոնավաճառի վերատեսուչ կը նշանակէ:

*սեպօվ զոդակը քաղելու։ Եփօր պաքսութիւն ունենայ ըրախու նայ, ատենօվ գնէյ ու սեմէշ[1] ըլայ, օր զէն իքմը չի հանդըպի, պաքսութիւն ըլալօվը, թէ գինու, թէ ըրախու։ Եփօր ֆէլէշ[2] գինի ուզէնայ գընելու, մէկնիոր քաղքըցուն մօտ, կամ մէտիաշէն նայ, արանց խրէրին հասարակինը չի գընէ։ Այս կի հասգըցվի գեղացոցմուն դուս։ Մէկ խօսօք, օրպէս օր վերջ տարիլէյ բրէտէ-ձէսօրը[3] Ա. պօրպիրօվը, զամէնայն բանը եւ ֆըքըր ունէնայ քալցընելու եւ ասոնց վրայ նաեւ հալալութիւն։ Վասնորոյ ունէնայ զերդումն վար դընէլու Պատուելի հասարակին։ Ինչ օր ըսդակ քաղվի նայ Պատուելի Աղաչայ էքզագդօրնուն ձեռը, էրկայ գվիդանձիայ պիտայ, օր կարնա ալ ալ խոդակ սէպը տալու թէ գընէլունը թէյ վասդըկինը։ Այլվի Պատուելի էքզագդօրիան տալտ ունենայ օր իքմը բրէվարիգաձիօյ[4] չիլայ գեղըանը, գինի կամ ըրախի բընէլօվը, ու կամ հօս քաղքին մէջ, թէյ բրիվադնու մէջ եւ թէ գրչմաճօցը մէջ։»*

---

[1] Աչքը բաց, շրջահայեաց. հունգարերէն է։

[2] Հունգարերէն է. նշանակութիւնն է՝ աւելի, աւելորդ։

[3] Լատ. է նախորդ կը նշանակէ։

[4] Բանի մը մէջ օրինազանցութիւն, պակասութիւն կը նշանակէ. լատիներէն է։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

խմել։ Աղաները ժողովքի երթալու կը ստիպուին։ Այս կարգադրութիւնը կը խստացուի։ Խորհրդականք առանց դատաւորին մասնաւոր հրամանին քաղքէն չեն կրնար հեռանալ։ Հրամանին դէմ ընողին պատիժը։ — Նորագոյն որոշմունք։ Թանկագին զգեստեղէններ շինել ու հագնիլ չ՚ըլլար։ Գլուխը չէփէչ դնողը։ Աղջկանց ինչպէս նաեւ կանանց ոսկի շղթայ, մարգարիտ, ակն՝ պատուական, ժանեկ, ոսկւով եւ մետաքսով բանած կօշիկ, կօճակ, շապիկ եւ այլն գործածելը կ՚արգելուի։ Ասոնց նկատմամբ եղած խիստ օրէնսդրութիւնք։ Վերատեսուչներ կը դրուին օրէնսդրութեան վրայ հսկելու համար։ Ասոնց տրուած լիակատար իշխանութիւնը։ Անուանք այն պատժուածներուն, որոնք վերոյգրեալ օրէնքին դէմ ըրած են։ — Ժողովրդեան հոգեւոր պիտոյքը հոգալու համար կարգադրութիւններ։ Ստեփանոս Ռօշքայ կը հիմնէ շատ մը հոգեւոր եղբայրութիւններ։ Առաջին դպրոց աղջկանց 1730ին։ 27—57։

## 4.

Եղիսաբեթուպոլսեցիք հետամուտ կ՚ըլլան նոր արտօնութիւններ ընդունելու։ Աշուընին դէպ ի Վիէննա կ՚ուղղեն։ Տրանսիլուանիոյ վերին կառավարութեան պատգամաւորութիւն մը կը խրկուի։ Մինաս Պարոնեան առաքելական քարոզիչը կը գործէ ի նպաստ հայոց՝ ի Վիէննա։ Թերիմացութիւն։ Առաքեալը Պաշտպանով կու գայ։ Կայսերական առանձնաշնորհութեան մը ընդունելութեանը համար դրամ գումարելու գաղափարը։ Առաքելոյն համար 158 ոսկի. կոնդակին համար 4000 հունգ. ֆիորին կը ժողովուի։ Մինաս վարդապետն ի Վիէննա։ Ընդունելի արտօնութեանց ստուերագիծն երեք կէտերու մէջ բովանդակուած։ Առանձնաշնորհութեան կոնդակին մէջ դրուելի նոր արտօնութեանց նկատմամբ Վիեննա կը գրուի։ Եղիսաբեթուպոլսեցիք կ՚ընդունին Կարոլոս Զ.էն շատոնց փափաքած կոնդակը։ — Կոնդակին բովանդակութիւնը։ Պաշտպանով այնուհետեւ Եղիսաբեթուպոլիս կոչուի. Տներուն կից դաշտավայրը հասարակութեան տրուի։ Պատուաւոր հայեր — Կերլացիներէն զատ — կարենան իրենց մէջ առնուլ։ Հռոմէական ուղղափառ ընդարձակ եկեղեցի մը շինուի։ Պատշաճ գիտութիւն ունեցող եկեղեցականներ գտնուին։ Որմէ՞ն ունենան կախումն Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք։ Խորհրդարան՝ ընտրեալ դատաւորով ու 12 խորհրդականով։ Դատաստանական ճամբան։ Ազատապէս առուտուր ընել։ Տօնավաճառներ. մաքս։ Անտառներու ազատ գործածութիւն։ Մսահա-

առութեան եւ գինեծախութեան իրաւունք։ Գիւգիւլլէօ գետին վրայ կամուրջ. կամրջատուրք։ Հայք կարենան իրենց թանկագին ապրանքները Պաշտպալովի դղեակը զետեղել։ Հասարակութեան՝ գաւառական արկեղ հատուցանելի տուրքը։ 57—87։

### 5.

Կայսերական արտօնագրին նախագրուած գումարը կը ժողովուի։ Նոր կարգադրութիւններ։ Քաղաքը կը չափուի. փողոցներու կը բաժնուի։ Տան տեղեր մասնաւորաց կը ծախուին։ Ազգայնութեան ոգւոյն դէմ եղած դէպք մը։ Քաղաքային ժողովն իր տհաճութիւնը կը յայտնէ այս պատահարին վրայ։ Քաղաքը վերին կառավարութենէն ձրի աղ կը պահանջէ. ուզածը կ՚առնու։ Եղիսաբեթուպոլիս կ՚ընդունի իրաւունք, ոչ թէ միայն միս կտրելու, այլ նաեւ ոգեւոր ըմպելի, երկաթ ու բամպակ ծախելու։ Վերջին նիւթոց մենավաճառութիւն վարձու կը տրուի։ Վաճառանոցի մաքս։ 87—103։

### 6.

Քաղքին նոր պաշտօնատարութիւնը։ Ոգեւոր ըմպելեաց վրայ վերատեսուչ. դաշտավայրի եւ առուակներու վրայ տնօրէն. գանձապետք։ Քաղքին արտաքին մաքրութեան վրայ հսկող։ Սուրհանդակի վերակացու։ — Սկզբնական գաղափարներ արքունի կալուածատէրութիւնը գնելու։ Առոր նկատմամբ խորհուրդ ու խօսակցութիւն Հերմանշդատի արքունեաց վերատեսչին հետ։ Կաշառք։ Կարոլոս Զ.ին արտօնագրին քանի մը կէտերուն դէմ յարուցուած ընդդիմադրութիւնը յատակելու համար, պատգամաւորութիւն մը կը խրկուի ի Հերմանշդատ։ Առաքման բուն պատճառը։ Մարիամ Թերեզիայի 1200 ոսկի կը խրկէ քաղաքը՝ պատերազմի ծախքին օգնելու համար։ Քաղքին ժողովրդապետն ու դատաւորը Վիեննա կը խրկուին։ Խնկանոսեան ու Յովհաննեան ի Վիեննա։ Դժուարութիւնները հետզհետէ կը հարթուին։ որ գաղափարներ։ Պէգլէն գերդաստանը հայոց դէմ։ Անհիմն պահանջմունք։ Հայք ուժերնին կը կրկնապատկեն։ Կաշառակրծութիւն։ Լքում։ Ազգայինք՝ արքունի կալուածները վարձու կ՚ուզեն առնուլ։ Կայսրուհւոյն սիրտը վաստկելու համար, իրեն դրամական նոր օգնութիւն կը խրկուի։ Կալուածատէրութեան խնդիրն ի լուռ կը դառնայ։ Նամակ արքունեաց դիւանատան վերատեսուչէն առ Եղիսաբեթուպոլեցիս։ Նոր խորհուրդներ ու գաղա-

փարներ։ Հասարակութիւնը կ'որոշէ որ դրամաժողով ընէ։ Հրաման, որ հոգեւոր ընկերութիւնները դրամագլուխնին առանձնականներէն քաշեն։ Պէտք եղած դրամը քաղքին առաջին աղաներուն վրայ կը բաժնուի։ Նախագրութեան արդիւնքը։ Ընդհանուր ժողով կը գումարուի ու կ'որոշուի որ երկու երեսփոխան Վիեննա խրկուի։ Պատգամաւորաց կը յանձնուի, որ օտար բանի ձեռք չզարնեն։ 103—147։

## 7.

Պատգամաւորները քանի մ'էական խնդիրներու վրայ տեղեկութիւն ու լուսաւորութիւն կը խնդրեն քաղաքային ընդհ. ժողովքէն։ Քաղաքային վարչութիւնը գործելու ճամբան կը ցուցընէ։ Հրահանգներ։ Երեսփոխանք կը հանդարտեցուին։ Դրամ. ապխտակ թղթեր։ Նոր որոշմունքներ նախագրութեանց գումարին նկատմամբ։ Իշխանութիւն, թէ մինչեւ ցորչափ կարենայ տրուիլ տէրութեան ատենադպրին։ Ընդհանուր ժողովքը կը գոցուի։ Ստորագրութիւնք։ Երեսփոխանք ճամբայ կ'ելլեն։ Վիեննայ գործելու կը սկսին։ Զանազան անձինքներէ փոխ առնուլ։ Սպասուած դրամները կը հասնին։ Պաշտօնեայք, նաեւ կայսրուհին կը վաստըկուին։ Պատգամաւորաց խումբ մը Վիեննա կ'երթայ։ Մարիամ Թերեզիա Պաշտպանողի կալուածատէրութիւնը պատճէնի մը ձեռօք Եղիսաբեթուպոլսեցւոց կու տայ։ Կոնդակին լեզուն։ 148—167։

## 8.

Պատճառներն, որ փութացուցին արքունի կալուածոց ստացումը։ Կաշառակերութիւն. պարգեւաբաշխութիւն։ Մուտքեր։ Ծախքերն որ եղան կոնդակին նորոգութեան ու կալուածատէրութեան գնմանը համար։ Մատուցուած հաշիւները համարակալութիւնը կը քննէ ու զերեսփոխանները հաշիւներու պարտականութենէն կ'արձակէ։ Հաշիւներուն ուղղութիւնը։ 167—188։

## 9.

Վիեննա գտնուող պատգամաւորաց — վերանորոգելի կոնդակին մէջ առնուելի առանձնաշնորհութեանց նկատմամբ — հրահանգներ կը խրկուին։ Ի՛նչ կը բովանդակեն տրուելի կոնդակին տասը կէտերը։ Ասոնց հայերէն բնագիրը։ Արտօնութեանց նոր կոնդակը կը հրատարակուի։ 188—203։

## 10.

Մարիամ Թերեզիայի կոնդակովը կը շնորհուի Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց, որ հայ չեղող հպատակներն անկէ կարենան հեռացընել։ Հոն գտնուող օտարածին հայոց համար՝ քաղաքային վարչութիւնը պատասխանատու է։ Նոր եկեղեցիներ կրնան կանգնուիլ։ Հայք քաղաքային իրաց մէջ՝ թագաւորական վարչութենէն, տնտեսական բաներու մէջ՝ արքունի գանձապետէն, իսկ պաշտպանութիւն՝ վերին կառավարութենէն կ՚ընդունին։ Հրահանգներ դատաստանական խնդրոց նկատմամբ։ Քաղաքն ընդ միշտ ազատ կը կացուցուի գերդաստանաց, տանց, մահատութեան ու ոգեւոր ըմպելեաց հարկէն։ Դրանսիլուանիոյ ամէն դռնաբաց քաղաքներն, Եղիսաբեթուպոլսոյ հայոց առեւտրոյ նիւթերը — մեծագոյն ապահովութեան համար — ընդունելու պարտական են։ 203—216։

## 11.

Երկու միջանկեալ դէպք։ — Մինաս Խնկանոսեան։ Իր տղայութիւնն, ուսումը. Հռոմ՝ Վենետիկ կ՚երթայ։ Քաղաքն իրեն եկամուտ կը կապէ, որ քաղաքին ծառայութիւն ընէ։ Քաղաքային գործոց համար Հերմանշդատ՝ ետքէն Վիեննա կը խրկուի։ Մինաս Թորոսեանին դէմ — որ Դրանսիլուանիոյ հայոց եպիսկոպոս ըլլալու կը ճգնի — Եղիսաբեթուպոլսոյ հայոց գլուխ կ՚անցնի։ Ընդհանուր ժողովք։ Նամակ Կայսեր խոստովանահօրմէն։ Բողոք Զուալեղեանին քաղաքականութեան դէմ։ Պատճառներն՝ որոնց համար ազգայինք Խնկանոսեանէն ցրտացան։ 217—2.0։

## 12.

Նոր տումարը մտցընելու խնդիրը կը սկսի Եղիսաբեթուպոլսեցւոց մէջ։ Առաջին ժողովք։ Նոր տումարն ընդունելուն պատճառները։ Թէ հասարակութիւնն ու թէ Խնկանոսեան լատին եպիսկոպոսին կը գրեն։ Լռութիւն։ Երկրորդ ժողովք։ 118 անձինք ժողովոյն կը ստորագրեն։ Խնկանոսեանի կարծիքը կ՚ուզեն. ժողովրդապետէն կը մերժուին։ Խիստ պատուէրներ հոգեւոր եղբայրութեանց։ Ազգայինք լատինացւոց եկեղեցին կ՚երթան ու ծննդեան տօնը կը կատարեն։ Խնկանոսեան զռամիկ ժողովուրդը ամպիոնէն կը զգուշացընէ նորոգութեան դէմ։ Ազնուականք՝ Դրանսիլուանիոյ լատին եպիսկոպոսէն քահանայ կը խնդրեն։ Քաղաքային վարչութիւնը՝ հոգեւոր եղբայրութեանց Աւետիս քալելու,

իսկ արուեստաւորաց ընկերութեան պաշտօնատարց գաւազանով պտըտելու կ'արգելէ։ 230—246։

## 13.

Երիտասարդաց ընկերութիւնը Խնկանոսեանին կը դիմէ։ Աղերսագիր առ ժողովրդապետն։ Խնկանոսեան նամակը հաստատութեան կը խրկէ։ Քաղաքային վարչութիւնը՝ երիտասարդաց ընկերութեան եօթը խնդիրներուն պատասխանը կու տայ։ Հաստատութեան պահանջմունքն երիտասարդաց ընկերութենէն։ Լատին եպիսկոպոսը կ'ուզէ, որ անմիաբանութեան վերջ տրուելու համար, երկու կողմնակցութենէն ալ, իրեն պատգամաւորութիւն մը խրկուի։ Երեսփոխանք Ալվինց կը ժողովին։ 246—257։

## 14.

Պատգամաւորք անմիաբանութեան պատճառն եպիսկոպոսին յայտնել չեն ուզեր։ Կերլացւոց միջնորդութիւնն, որ զհաստատութիւնը իւր ժողովրդապետին հետ հաշտեցընէ։ Քաղաքային վարչութեան պահանջմունքը։ Հարիւր ֆիօրինին խնդիրը։ Եկեղեցին՝ տիկնանց բաժնին մէջ սկաւառակ պտըտցընելը։ Քահանայից եկամուտը։ Հարիւր ոսկւոյն ու վրանին խնդիրները։ Երեսփոխանք Եղիսաբեթուպոլիս կը դառնան ու զհաստատութիւնը եղածներուն վրայօք կը տեղեկացընեն։ Քաղաքային վարչութիւնը ժողովրդապետէն հարիւր ոսկւոյն վերատուչութիւնը կը պահանջէ։ Կրկին պատգամաւորութիւն առ Խնկանոսեան։ Ժողովրդապետը հարիւր ոսկին, ինչպէս նաեւ վրանին իրաւանց թուղթը հաստատութեան դարձընելու կը խոստանայ։ Հաշտութիւն։ 257—272

## 15.

Երկրորդ դէպք. կնքագիտութիւն։ Եղիսաբեթուպոլսոյ քաղքին կնիքը։ Ղազարու Յովհաննեանց պիրովութեան ժամանակը քաղքին մէկ կնիքը կը կորսուի։ Քաղաքային վարչութիւնը յայտարարութիւն մը կը հանէ կնքոյն կորսուելուն վրայ։ Ծանուցում։ Ասոր մէջ պարունակուած չորս կէտերն ըստ բնագրին։ 272—282։

## 16.

Եղիսաբեթուպոլսոյ կալուածատէրութեան վարչութիւնը տնտեաններու կը յանձնուի։ Ասոնց պաշտօնն ու պարտաւորութիւնները։ — Մարիամ Թերեզիայի

*առանձնաշնորհութեան կոնդակն ընդդիմադարձութիւն կը գտնէ։ Նամակ առ Կայսրուհին։ Հրաման, որ երկու հոգի Վիեննա երթան։ Կ'որոշուի որ երթան։ Անոնց վարձքը։ Իրենց հրահանգներ կը տրուին։ Պատգամաւորք Վիեննա գործքերնին յաջողութեամբ կը լմնցընեն։ Դրանսիլուանիոյ աւագաժողովն ընդդիմադարձութիւնը ետ կ'առնու։ Այս գործողութիւնն որչափ արժեց Եղիսաբեթուպոլսեցւոց։ Պատգամաւորք հաշիւ կը ցուցընեն քաղաքային վարչութեան։ Ընդդիմադարձութիւնն առ ժամս կը լմննայ։ Տէրութիւնը Պէգլէն գերդաստանը գոհ կ'ընէ։ Քաղաքային հաշուեկալութիւնն՝ զպատգամաւորները հաշիւներու պատասխանատուութենէն կ'արձակէ։ Արձակումն՝ ըստ բնագրին։* 282—303։

## 17.

*Եղիսաբեթուպոլսեցւոց դրամական լաւ վիճակը՝ թէպէտ պատճառ՝ մէկ կողմանէ ազդեցութիւննին ցուցընելու, բայց մէկալ կողմանէ՝ փուշ մեծամեծաց աչքին։ — Մարիամ Թերեզիա, Եղիսաբեթուպոլսեցւոց գործակալին ձեռօք՝ քաղքէն* 25.000 *Ֆիօրին կը խնդրէ։ Տհաճոյ դիրքէն ազատելու համար, երեք՝ ետքէն չորս հազար ոսկի կը խոստացուի։ Այս բանը Պէգլէն ատենադպրին կը ծանուցանեն։ Պայման կը դրուի, որ չորս հազար ոսկւոյն շահը՝ հասարակութեան տրոց մէջ հաշուուի։ Դրամ հոգալու համար քաղաքային վարչութիւնը կ'որոշէ, որ քաղքին այլեւայլ տեղերը աճրդի հանէ։* 303—312։

## 18.

*Քաղաքային վարչութիւնը դաշտավայրը կ'ելլէ երկիրներ ծախելու համար։ Քաղքին արեւմտեան կողմն եղած դաշտին վրայ կը շինուի Դաշտի — Թափայելեան — փողոցը։ Աղաչաներն, որ այս տեղւոյն վրայ, իրենց երկիրներ գնեցին։ Կամրջի — Ուղտեան — փողոց։ Տասնուչորս կտոր երկրէ կազմուած թաղէն, քաղաքը դրամոց բաւական գումար մը կ'ընդունի։ Այս նոր թաղին տանուտէրները։ — Քաղքին հիւսիսային դին եղած երկիրներուն ծախու հանուիլը։ Հին շրջագայութեան տեղը հաւասար կտորներու կը բաժնուի։ Քաղաքը կ'ընդունի այս տեղ ծախուած երկիրներէն* 3550 *կտոր ոսկի։* 312—323։

## 19.

*Վարչութիւնը պարտքերէն քիչ մը թեթեւնալու համար կ'որոշէ, որ քաղքին կենդրոնը տեղեր*

*ծախէ՝ տներ, խանութներ եւ այլն շինելու համար։ Ծախելու պայմանները։ Այս երկիրներուն դիրքը։ Քաղքին վաճառանոցն եղած կրպակներուն ստորագրութիւնը։ Ինչ պայմաններով ծախուած են ատոնք մասնաւորաց։ Շուկային խանութները գնողները։ Արաֆիեան բերդին բակը հաւասար կտորներու կը բաժնուի։ Այս տեղերը կը գնէ չորս աղաչայ՝ հոն տներ շինելու համար։ Երկրակտորներ կը ծախուին Մեծ — Եղիսաբէթ — փողոցին ծայրը։ Այս տեղուանքը երկիրներ գնող աղաները։* 323—336։

## 20.

*Քաղքին համարակալութիւնը՝ այլեւայլ ելքերու պատճառաւ իր հաշիւներուն հաւասարակշռութիւնը չի կրնար պահել։ Պարտքերէն ազատելու համար այլեւայլ հնարքներ կը մտածէ։ Երկիրներ ծախելու նոր գաղափար։ Քաղքին արեւելեան դին եղած դաշտավայրին մէկ մասը կը բաժնուի ու* 35 *տարուան համար նպաստաւոր պայմաններով քաղաքացւոց կը բաշխուի։ Քաղաքային վարչութիւնը ծախած երկիրներով ալ իր նպատակին բոլորովին չի կրնար հասնիլ։ — Նորանոր երկիրներ ծախու կը հանուին՝ անոնց մէկ վեցերորդ մասը միայն վճարելու պայմանաւ։ Միջակ ու աղքատ քաղաքացիք երկրատէր կ՚ըլլան։ Աղաներն ստակ ունենալով, իրական դրամով հոս երկիրներ կը գնեն։ Խնձորեղինաց պարտէզը հաւասար կտորներու կը բաժնուի։ Աղաներն, որոնք հոս իրենց տեղեր գնած են։ Գէօրէօզեանց մատրան շրջակայ երկիրներն աճրդի կը հանուին։ Ո՞ր աղաչաները գնեցին հոստեղի երկիրները։ Ս. Գրիգորի փողոցը քաղքին հիւս. արեւելեան կողմը։ Պայմաններն, որ հոս տեղի երկիրները ծախուեցան։ Երեսուն աղաչայ ամբողջ տեղը կը գնէ։ — Երկիրներուն գնմամբն ու տներուն շինութեամբը, քաղքին պզտիկ քառանկիւնը՝ կ՚ընդարձակի։* 336—352։

## 21.

*Քաղաքացիք՝ գնած երկիրներուն գինը չեն կրնար վճարել։ Քաղաքային վերատեսչութիւնը ժողովրդեան բեռը թեթեւցընել կ՚ուզէ։ Վճարման ժամանակակէտը կ՚երկնցուի։ Տեսակ տեսակ վճարմունքի՝ այլեւայլ պայմաններ։ Կը սահմանուի որ արձանագիր մնած երկիրները՝ ութը տարուան միջոցի մէջ վճարուին։ Իրական դրամով վճարել ուզողները՝ երկրին գնոյն կէսը վճարելով՝ ամբողջ գումարը վճարած կը սեպուին։*

Աս վերջիններէն՝ դաշնագիր ընողին եւ ժամանակին չվճարողին ձեռքէն կ՚առնուի երկիրը. սակայն գնողը գումարին մէկ չորրորդական մասը կը կորսնցընէ: Ընդդիմադրութիւնք: Քաղաքային ժողովքը հաստատուն կը մնայ ըրած որոշմանցը վրայ: Անմիաբանութեան ու խառնակութեան բուն պատճառները: Դանիէլեան քաղաքապետին բռնած ճամբան: Կողմնակցութիւնք՝ խորհրդանոցին մէջ: Կը սահմանուի որ քաղաքապետը՝ հասարակութեան իրաւանցը վերաբերեալ բանի կամ երկիր ու անշարժ ստացուածք ծախելու նկատմամբ՝ առաջարկութիւն չկարենայ ընել. եւ թէ անվաւեր ըլլայ — մանաւանդ գետին ծախելու նկատմամբ — եղած որոշումն, եթէ հասարակութեան ու հարիւրոց ժողովքին անդամներէն գոնէ քսան հոգի մաս չունենան խորհրդին մէջ: 353—364:

## 22.

Քաղաքային վարչութիւնն իմանալով որ ժողովուրդը ծախուած երկիրներուն պատճառաւը կը յուզի՝ շնորհմունքներ ընելու կը փափաքի: Նորոգութիւններ, վճարմունքի նկատմամբ: Գնած երկիրը պահել ուզողը՝ պարտքին կէսը վճարելով՝ ամբողջը վճարուած համարուի: Չուզողը՝ երկիրն ետ տայ: Նոյն իսկ անոնց՝ որ տասը տարի յառաջ երկիր գնած են, վճարուած երկրին գնոյն կէսը կը շնորհուի: Աս որոշմանց նկատմամբ ժողով կը գումարուի ու քսանուհինգ հոգի անոր կը ստորագրեն: — Ոգիներն աւելի կը գրգռին քաղաքային վարչութեան այլեւայլ փոփոխութիւններովն ու ժողովրդեան աղքատութեամբը: Ընդհանուր ժողով 1771ին: Հարիւրոց ժողովոյն գանգատը: Նորանոր որոշմունքներ: Այլեւայլ զիջողութիւններ: 364—378:

## 23.

Անմիաբանութեան ու խռովութեան բուն պատճառը: Հաշուեկալութեան պաշտօնը: Միայն ընտրեալ քաղաքացիք կրնային համարակալ ըլլալ: Առաջին համարակալներն Եղիսաբեթուպոլսոյ մէջ: Հաշուեկալներուն ընտրութիւնը քուէարկութեամբ: Իրենց տարեկան վճարք կը տրուի: Չորս համարակալի տեղ՝ երկու: Համարակալներու օգնական՝ հարիւրոց ժողովէն: Համարակալք պատասխանատու են մէկմէկու համար: — Համարակալաց կասկածելի ճամբան: Քաղաքային վարչութեան հաշիւ չեն մատուցաներ: Առժամանակեայ հաշուեկալներ կ՚ընտրուին: Քննութիւն. անվստահու-

թիւն։ Համարակալաց համար խիստ ու խոնարհեցուցիչ կանոններ։ Հաշուեկալութեան պաշտօնին մէջ վերանորոգութիւն։ Համարակալաց համար նորանոր հրահանգներ։ Այս հրահանգաց բուն բնագիրն, եօթը կէտերու մէջ բովանդակուած։ 379—400։

## 24.

Եղիսաբեթուպոլիս իբրեւ զատ ազգային գաղթականութիւն։ Օտարածինք՝ Եղիսաբեթուպոլսոյ քաղաքացի չեն կրնար ըլլալ։ Ո՛ր կարգի օտարականներ ու ինչ պայմաններով կ՛ընդունուէին քաղաքը։ Ասոր նկատմամբ օրէնքներ։ Մէկ երկու դէպք։ Օրէնք մասնաւորապէս Կերլացւոց համար։ — Օտարք քաղաքային պաշտօնի մէջ դժուարաւ կ՛ընդունուէին։ Օտարազգին՝ հայոց հետ նոյն յարկին տակ չընակիր։ Ներս ընդունուած օտարականներն արուեստաւոր կրնային ըլլալ, բայց ոչ վաճառական ու երկրատէր։ Սիմա ու Բեղրա սափրիչները եկեղեցի չերթալուն համար քաղքէն դուրս կը հանուին։ Զղջալով՝ քաղաքը զիրենք որոշեալ պայմաններով նորէն կ՛ընդունի։ Խիստ օրէնսդրութիւն օտարականներ ներս ընդունելու նկատմամբ։ Ո՛չ օտարազգի՝ հայ աղջիկ կնութեան առնելով՝ Եղիսաբեթուպոլսեցի, եւ ո՛չ ազգայնէ մ՛իբրեւ հոգեզաւակ առնուող օտարածին մը, կրնայ քաղաքացի ըլլալ։ Այս օրէնքներն ըստ բնագրին։ 400—420։

## 25.

Եղիսաբեթուպոլիս իբրեւ փոքրիկ հասարակապետական իշխանութիւն մը։ — Քաղաքային վարչութիւնն իր սկզբնաւորելու ժամանակը։ Երկոտասանից խորհուրդը։ Հարիւրոց ժողովը։ Նօտար, համարակալ, սարըստայ։ Միքայէլ Արաֆի գնիկող. Գրիգորեան դատաւոր կը դնէ Եղիսաբեթուպոլսոյ հայոց ընկերութեան վրայ։ Իշխանական հրամանագրին թարգմանութիւնը։ — Դատաւորական պաշտօնին սկզբնաւորութիւնը։ Դատաւորին տարեկան վճարք կը տրուի։ Դատաւորը թէպէտ անկախ էր, բայց հաշիւ կը պարտաւորի տալու քաղաքային վարչութեան։ Դատաւորին ընտրութեան մէջ մաս կ՛առնու բոլոր ժողովուրդը։ Ամէնք՝ ընդ. պատժով կը պարտաւորին դատաւորին հնազանդելու։ Դատաւորին օգնականներ կը տրուին։ Իր խորհրդականները։ Դատաւորին սպասաւորներ կը տրուին որ միշտ քովը կենան։ Անոր՝ սկզբնական քանուհինգ ֆիօրին վճարքը, հարիւրի կը բարձրանայ։ Կարգադրութիւն՝ թէ խորհրդի

մէջ ծերակուտի անդամներն ինչ կարգաւ նստին։ — Օրէնք որ Դատաւորը վաղեմի սովորութեան համեմատ՝ քաղաքացի փեսաներէն աղուեսենի չառնու, բայց օտարներէն կարենայ առնուլ։Ընկերութեան ու քաղքին դատաւորական պաշտօնն ի մի կը ձուլուի։ 420—436։

## 26.

Շարունակութիւն։ — Քաղքին գործքերն ընդարձակուելով՝ ծերակուտին իբրեւ օգնական կը տրուի քառասնից կամ հարիւրոց ժողովը։ Ասոր պաշտօնն ու գործքը։ Հարիւրոց ժողովոյն նախագահը։ Անդամներն ինչ կարգաւ նստելու են։ Ըսուածներն ըստ բնագրին։ — Ծերակուտի անդամներն ալ տարեկան վճարք կ'ընդունին։ Աւքսենտիոս Խոճգուցեան գտնուելով ի Վիեննա իբրեւ պատգամաւոր, դատաւոր կ'ընտրուի երրորդ անգամ։ Քաղքին դատաւորին, ինչպէս նաեւ իր առաջականներուն վճարքը կը բարձրացուի։ Ծերակուտի ու հարիւրոց ժողովոյն անդամներուն անունները 1760ին ու 1762ին։ Դատաւորին փոխանորդ կը տրուի երբ քաղքէն հեռանալու կը հարկադրի։ Աս վերջինին պարտաւորութիւնը։ Քաղքին ծերակուտի անդամներուն տարեկան վճարմունքը։ Կարգադրութիւն՝ որ եթէ դատաւորն իր սեպհական գործոցը համար քաղքէն հեռանայ՝ իր պաշտօնը լեցընողն ինչ վճարք ընդունի։ Որոշումն՝ թէ ծերակուտի ժողովոյն անդամներն, որ քաղաքային պաշտօնով տեղ մը կը խրկուին՝ քաղքին արկղէն աւուրչէք ընդունին։ Պաշտօնին ժամանակը լմընցընող դատաւորն՝ ընտրութենէն դուրս կը հանուի։ Քաղաքային տնտես կ'ընտրուի։ Ասոր պաշտօնն ու վճարքը։ Ազգաներն՝ որ իրապէս մաս չեն առնուր քաղաքային ժողովին մէջ, քուէի իրաւունքէն կը զրկուին։ Որոշում որ հարիւրոց ժողովոյն նախագահն ամէն տարի քուէարկութեամբ ընտրուի։ 437—458։

## 27.

Շարունակութիւն։ Դատաւորի ընտրութեան մէջ տժգոհութիւն ու անմիաբանութիւն։ Ընտրութեան նոր կերպ։ Կ'ամրացուի ընտրութեան այս կերպը։ — Քաղաքային պաշտօնատեարց երդումը։ Ինչ տեսակ էր դատաւորին, խորհրդականաց, քաղքին քարտուղարին, հարիւրոց ժողովոյն նախագահին ու անդամներուն երդման ձեւը։ Այս երդման ձեւերուն բուն օրինակն ըստ արձանագրին։ — Եղիսաբեթուպոլսոյ դատաւորներն ու քարտուղարները ժամանակագրական կարգաւ

ըստ ժամանակակից արձանագրութեանց, սկզբանէ մինչեւ մեր հասած պատմութեան շրջանը։ 458—480։

## 28.

Քաղաքային վարչութեան օրէնսդրութիւններն ու կանոնադրութիւնները։ — Որոշմունք պահքէն եւ ուտիքէն քաղուած դրամներուն նկատմամբ։ — Պարտատէրն իր դատաստանը կորսնցընելէն ետեւ՝ ծախքերն ալ վճարելու է։ — Եթէ տէրն իր ստորակարգեալը դատաւորի առջեւը կը հանէ, դատաստանի ծախքը պէտք է որ վճարէ, եթէ իրաւունքը հպատակինն է։ — Հսկողութիւն շէնք շինելու նկատմամբ։ Վերատեսուչք։ Տներն յարդով ծածկել չ'ըլլար։ Ջիջումն ասոր նկատմամբ։ Օրէնքը կ'երկընցուի։ Ծխանները պէտք է որ ամիսը գոնէ մէկ անգամ մաքրուին։ Այս օրէնսդրութեանց բնագիրը։ — Առեւտրոյ վրաններուն իրաւունքը։ Հայք ազատութեամբ կրնան առուտուր ընել։ Օտարք՝ հայոց վրանները կը քակեն եւ քակել կու տան։ Կատարինէ իշխանուհին զհայերը կը պաշտպանէ ու պատճէնով մը կը հրամայէ, որ հայոց առեւտրոյ վրաններուն ձեռք չդպցընեն։ Պատճէնին թարգմանութիւնը։ — Պատճառներն որ զօտարները՝ հայոց վրանները տակն ու վրայ ընելու կը գրգռէր։ — Եղիսաբեթուպոլսոյ վարչութեան վրաններու նկատմամբ այլեւայլ ժամանակ տուած այլեւայլ կանոնադրութիւնները։ Մէկ մուխ՝ մէկ վրան մը միայն կրնայ վաճառանոց հանել։ Ասոր նկատմամբ եղած զանազան կարգադրութիւններն ըստ բնագրին։ 480—500։

## 29.

Մսահատութեան իրաւունք։ Քաղաքային վարչութիւնն այս բանս մասնաւորաց վարձու կու տայ։ Միս ծախելուն նկատմամբ կանոնադրութիւններ։ — Մսահատներու համար այլեւայլ օրէնքներ։ Քաղաքացիք ե՞րբ եւ ինչ տեսակ կենդանեաց միս ծախելու իրաւունք ունէին։ — Աւատականութիւն։ Ասոր որպիսութիւնը հայոց մէջ։ Վարձականն՝ որ իր տիրոջմէն ելած կամ վռնտուած է, ուրիշի մը ծառայութեանը մէջ չի կրնար մտնել։ Վարձականը շաբաթը մէկ կամ երկու օր իր տիրոջը ծառայելու է։ Տիրոջը տունն առանց հրամանի չի կրնար թողուլ։ Ուրիշին վարձականն առնողը կը պատժուի։ Վարձատէրն իր ծառային համար տարեկան տուրք տալու է։ Այս օրէնքներն ըստ հայ բնագրին։ Կալուածատէրն՝ որչափ ալ տուն ունենայ՝ մէկ տարա-

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԳ.

# ՀԱՅՔ
# ՅԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼԻՍ
## ԴՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ

---

**ԱՅՍ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ**

**ՍԿԶԲԱՆԷ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿԸ**

*ՔԱՂՈՒԱԾ՝ ԴՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ ԻՇԽԱՆԱՑ ԵՒ ԱՒՍՏՐԻՈՅ ԿԱՅՍԵՐԱՑ ԱՌԱՆՁՆԱՇՆՈՐՀՈՒԹԵԱՆՑ ԿՈՆԴԱԿՆԵՐԷՆ՝ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԷ ՏԱՐԵԳԻՐՆԵՐԷ ԵՒ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ:*

1780—1825.

---

*Հրատարակիչն որեւէ տեսակ թարգմանութիւն իրեն կը վերապահէ:*

---

ՀԱՏՈՐ Բ.



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1899.

# ՀԱՅՔ
# ՅԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼԻՍ
## ԴՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԳ.

ՀԱՅՔ

# ՅԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼԻՍ

ԴՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ

1780–1825.



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1899.

Hayk' hEghisabet'upolis Dransiluaniuy

# ՀԱՅՔ
# ՅԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼԻՍ
## ՏՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ

---

**ԱՅՍ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ**

**ՍԿԶԲԱՆԷ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿԸ**

*ՔԱՂՈՒԱԾ՝ ՏՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ ԻՇԽԱՆԱՑ ԵՒ ԱՒՍ-ՏՐԻՈՅ ԿԱՅՍԵՐԱՑ ԱՌԱՆՁՆԱՇՆՈՐՀՈՒԹԵԱՆՑ ԿՈՆ-ԴԱԿՆԵՐԷՆ՝ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԷ ՏԱՐԵԳԻՐՆԵՐԷ ԵՒ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ:*

**1780—1825.**

---



---

**ՀԱՏՈՐ Բ.**



**ՎԻԵՆՆԱ**

**ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ**

**1899.**

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

---

Պատմութեան ամենէն հաստատուն խարիսխն՝ արձանագրութիւնները — պատմագրին ամենէն ապահով աղբիւրը՝ յիշատակարաններն են: — Ջահեր են անոնք, որոնք իրենց դիւթական լուսաւորութեամբը կը փարատեն հին ժամանակին մթութիւններն ու պայծառ կերպով առջեւնիս կը դնեն, հիներուն — քօղի տակ ծածկուած — պատմութեան մէջ մէկ կտորը: —

Հնութեանց թանգարաններուն մէջ՝ շատ հեղ վերանորոգուած արուեստակերտներու եւ արձանաց կտորներու կը հանդիպինք: — Հին ճարտարարուեստ գործուածներու եւ անդրիներու պակսած կտորները՝ շատ հեղ երեւելի արուեստաւորներ՝ մեծ սրամտութեամբ ամբողջացուցին եւ պակսած կտորներն անոնց յարմարցուցին: Բայց ան ալ հանդիպեցաւ, որ պակսած բուն կտորն ետքէն երեւան ելլելով՝ տեսնուեցաւ թէ — վերանորոգող արուեստաւորն իր ամէն ջանքովն ալ — պակսած արձանն ըստ պատշաճի ամբողջացուցած չէր:

Այսպէս ենք մենք ալ տոհմային պատմութեամբ: Որչափ բան տարբեր գիտէինք. եւ այսօր՝ քանի մ'արձանագրութեանց եւ յիշատակարանաց երեւան ելլելէն

Զ

ետեւ՝ ո՛րչափ ուրիշ աչքով կը տեսնենք ու տարբեր կերպով գիտենք: —

Խուզարկութեանց գիտութիւնն այնպէս է ինչպէս բովագործութիւնը: Որչափ որ մարդ, հողին ծոցը յառաջ երթայ ու փնտռէ, այնչափ աւելի գանձ կը գտնէ: Այսպէս ալ ո՛րչափ աւելի խուզարկութեանց մէջ մտնենք, ո՛րչափ աւելի փնտռենք, այնչափ աւելի անծանօթ, տարբեր տարբեր ու նոր նոր բաներ երեւան կը հանենք:

Այս բանս ըսելու հարկաւոր տեսայ, չէ՛ թէ անոր համար որ, ոմանց գրուածները քննադատութեան տակ ձգեմ կամ սրբագրեմ. չէ. հապա միայն անո՛ր համար, որ խոստովանիմ թէ. մէկ քանի նոր յիշատակարանաց՝ դարաւոր փոշիներու մէջէն երեւան ելլելէն ետեւ, մեր մինչեւ հիմայ գիտցածէն, տարբեր լուսոյ մէջ ու բոլորովին տարբեր աչքով կը տեսնենք Դրանսիլուանիոյ հայոց գաղթականութեան պատմութիւնը:

Եղիսաբեթուպոլսոյ եւ քանի մ'ուրիշ քաղաքներու — դարձեալ զանազան առանձնականաց քով ցիր ու ցան եղած թանկագին գրութիւնները՝ եւ մանաւանդ քաղաքաբաշխութեանս դիւանին մէջ ասդին անդին ցրուած եւ խառն ի խուռն իրարու վրայ դիզուած պաշտօնական արձանագրութիւնները՝ — շատ նոր, անծանօթ ու հազուագիւտ բաներ երեւան հանեցին:

Ա՛ս է պատճառն որ առաջիկայ երկասիրութիւնը՝ մեր ուզածէն աւելի ընդարձակուեցաւ: Մէկ ուղղութեամբ բան մը փնտռած ատեն, անանկ ուրիշ ազգային նիւթերու վերաբերեալ բաներու հանդիպեցանք, զորոնք անտես ընել, աչքէ թողուլ եւ գործքին մէջ չառնուլ չէր ըլլար: — —

Շատ հաւանական է, որ ասոնք՝ ոմանց աչքին առջեւ մնոտի ու փուճ բաներ երեւան: Բայց չենք

*տարակուսիր, որ պատմութեան ու ապագային համար անգին գանձեր պիտի համարուին:*

*Եթէ գուցէ ներկայ ժամանակն ասոնց յարգը չի ճանչնար... պիտի գայ ժամանակի միջոց մը՝ որուն մէջ պիտ'որ ճանչնայ:*

*Վիեննա. 1899. Սեպտեմբեր 10:*

Հ. ԳՐԻԳՈՐ Վ. ԳՈՎՐԻԿԵԱՆ:



ԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼՍՈՅ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԴՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ ԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼԻՍ

### ՀԱՅԱԲՆԱԿ ՔԱՂԱՔԻՆ

### 1.

Մ՝եր պատմութեան ընթացքին մէջ բաւական առիթ ունեցանք տեսնելու Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց վիճակը. իրենց լեզուն, սովորութիւնները, ձեռնարկու եւ գործունեայ ոգին, յաջողակութիւն, եւ այլն։ — Բայց մինչեւ հիմակ ընթերցողք շատ քիչ բան լսեցին ու կարդացին եւ հետեւաբար քիչ բան գիտեն այս քաղքին եկեղեցական վիճակին, յարաբերութեանցն ու նուիրապետութեանը վրայ։ — Ուստի հարկ է որ ամէն բանէն յառաջ մեր մտադրութիւնն առ այս դարձընենք. ու տեսնենք թէ ի՛նչպէս սկզբնաւորեցաւ եւ ի՛նչ կերպով կամաց կամաց զարգացաւ ու յառաջացաւ այս եկեղեցւոյն նուիրապետութիւնը։

Արդէն տեսանք ուրիշ տեղ, թէ ազգայինք՝ քահանայից խմբով մ'եկան Դրանսիլուանիա։ Մանաւանդ թէ քահանայք էին, որ առաջնորդեցին ու բերին զիրենք այս երկիրս։[1] — Երբ

---

[1] Տես՝ Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Վիեննա. Ա. Հատ. 1893, էջ 3։

ժողովուրդն այլեւայլ պատճառներով ցրուելու սկսաւ, եւ զանազան տեղեր ու քաղաքներ մեկնեցան, քահանայք ալ ցրուեցան գացին իրենց հետ:

Քաղքիս կերպարանաւորուելու ժամանակ՝ կային քահանաներ, որոնք աստուածային պաշտամունք կը կատարէին ի պաշտօնէ: Եղիսաբեթուպոլիս տեղաւորուած կը գտնենք արդէն 1658ին զՏէր Յովհաննէս եւ զՏէր Եմանուէլ քահանաները: Ասոնք ունէին իրենց յատուկ ժողովրդապետութիւնը, արտօնութիւններն ու եկամուտները: — Միքայէլ Ապաֆի Ա. ու Ապաֆի Բ. Դրանսիլուանիոյ իշխաններն, իրենց հրամանագիրներուն մէջ այլեւայլ առանձնաշնորհութիւններ կու տան Հայոց քահանայիցը: Ի մասնաւորի Ապաֆի Բ. 1696ին, ֆօկարաշի դղեակէն տուած առանձնաշնորհութեան պատճէնովը, հրաման կու տայ հայոց ազգին, որ "քահանայ մը պահէ՝ ըստ իր կրօնին. — Թէ ազգայնոց հաւատքին ազատութիւնը մնայ անվրդով. — Թէ քահանան եկեղեցական պաշտաման հարկաւոր գինին կարենայ պահել — Թէ տուրք տալէ ազատ ըլլայ".[1] եւ այլն:

Ինչպէս գրեթէ ամէն ժամանակ ու ամէն տեղ, անանկ ալ հոս՝ կը տեսնենք, թէ ի սկզբանէ հետէ, եկեղեցականք ազգին գլուխն անցած՝ ամենէն աւելի եռանդեամբ ու յաջողութեամբ կը գործեն՝ ազգին թէ՛ նիւթական ու թէ՛ բա-

---

1 Տես՝ Հայք Եղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ Հատ. Ա. Վիեննա. 1893, էջ 13, 15:

բոյական յառաջադիմութեանն ու բարօրութեանը համար: Իրե՛նք են, որ կը ճգնին ազգայնոց արտօնութիւններ ընդունելու. իրե՛նք են որ անխոնջ կ'աշխատին, չէ՛ թէ միայն եկեղեցւոյն այլ նաեւ համակրթութեան ասպարէզին մէջ:[1]

Կրնանք ըսել թէ ԺԸ. դարուն սկիզբը՝ Հայ Նուիրապետութիւնն Եղիսաբեթուպոլսոյ մէջ — միշտ առջեւնիս ունենալով ժամանակը — իր կատարեալ զարգացմանը մէջ էր: Կար կանոնաւորեալ վերատեսչութիւն ունեցող եկեղեցի, աշխարհական եկեղեցպանով եւ պատշաճ կարգադրութիւններով ու օրէնսդրութիւններով: — Եկեղեցական առաջնորդութիւնն ունէր իր՝ թէպէտ նուազ, բայց որոշեալ եկամուտները, զոր ըստ մասին քաղաքային վարչութենէն, ըստ մասին ժողովրդենէն ու ըստ մասին եկեղեցւոյ պաշտօնավարութենէն (stola) կ'ընդունէր: Կարոլոս Զ. կայսրը՝ 1733ին կը սահմանէ, որ միա՛յն պատշաճ գիտութիւն ունեցող անձինք առնուին եկեղեցւոյ ծառայութեան մէջ: Նոյնը կը հրամայէ նաեւ Մարիամ Թերեզիա (1758ին). բայց կը պահանջէ միանգամայն, որ քահանային պատշաճ եկամուտ կամ հաս տրուի:

Ըսածնուս վկայ են շատ մը կարգադրութիւններ ու օրէնքներ, զոր ըրած են եկեղեցին ու քաղաքային վարչութիւնը՝ ձեռք ձեռքի տուած:

---

1 Համեմատէ Ա. Հատորին, 60—69. — դարձեալ՝ 114—118 էջերուն հետ:

Կը տեսնենք հոս, թէ արդէն 1718ին գրուած են ժողովրդեան առջեւ շատ կանոնաւորեալ կերպով յօրինուած սահմանադրութիւն, որով առջեւը կ'առնուի քանի մը զեղծումներու կամ սովորութիւններու՝ որոնք մտած են ազգայնոց մէջ ամուսնութեանց առթիւ։ — Աս բանս յայտնապէս եկեղեցին յօրինած՝ բայց քաղաքաբաշխութիւնն իւրացուցած ու հաստատած է։

Ասոնց մէջ՝ կը գտնենք. Ա. Թէ քաղաքացի մը իր որդին նշանած ժամանակը — ըստ հին սովորութեան — փառաւոր խնջոյքներ տալու չէ։ Թէպէտ արգելք չկայ, որ փեսան հարսին տունն երթայ. բայց առանձինն երթալու է. եւ հոն, ո՛չ փեսային եւ ո՛չ հարսին կողմանէ ուրիշ հրաւիրեալներ գտնուին. — երաժշտութիւն չըլլայ. եւ ոչ ալ, վաղեմի սովորութեան համեմատ՝ պարգեւներ տրուին փեսային։ — Բ. Հարսին հայրն ալ՝ սեղան չտայ, ինչպէս որ յառաջագոյն սովորութիւն էր։ Թէպէտ կրնայ օրիորդներ եւ մօտիկ ազգականները հրաւիրել. սակայն՝ ո՛չ հարսնէհայրն եւ ո՛չ հարսնէմայրը գտնուին հոն։ Փեսային կողմանէ չորս կամ վեց երիտասարդ՝ ժամ մը կամ առաւելն երկու՝ կրնան հոն պարել. բայց հարսին պարգեւ մը պիտի չտան. եւ ոչ ալ հարսը՝ տայ կորիճներուն բան մը։ — Գ. Հասարակութիւնը կ'ուզէ, որ ասկէ ետքը հարսանեաց պարգեւները (պէրնայ) վերցուին։ Ուստի եւ կը հրամայէ, որ պսակի՝ միա՛յն հարսնէհայրն ու

հարսնէմայրն երթան. ու հարսին կողմանէ՝ եւ ո՛չ իսկ քահանաներուն թաշկինակ տրուի: — Գ. Պսակի սեղանի երթայ՝ հարսին կողմանէ, հարսին հայրը՝ կամ հօր տեղակալն, տասուերկու երիտասարդ, հարսնէհայրն ու հարսնէմայրը: Իսկ փեսային կողմանէ, վեց զոյգ, եւ փեսային հայրն ու մայրը՝ չհաշուելով քահանաներն ու պիրովը: — Ե. Հարսին հայրը սեղանի գացած ժամանակը, հետը տասը հոգի կրնայ առնուլ. բայց իր տունն՝ ո՛չ սեղան տրուի եւ ո՛չ երաժշտութիւն ըլլուի: Իւրաքանչիւր ոք տուն երթայ: Բնականապէս իր ծառաներն ազատ են, կրնան ուտել: — Զ. Պսակման երկրորդ օրն, եթէ որ փեսան ուզէ — բայց պարտականութիւն չկայ ամենեւին, ու երանի՛ թէ չըլլայ — կրնայ աշխատողներուն համար պզտիկ ճաշ մը պատրաստել: Այս առթիւ կրնայ երաժշտութիւն ալ ըլլալ. սակայն երկայն չտեւէ երաժշտութիւնն. ու ժամանակին ամէն մէկը տուն երթայ: — Է. Հնուց սովորութիւն կար, որ հարսին հայրն, զփեսան՝ հարսին հետ տուն բերած ատեն, ճաշ կու տար, որ հարսանեաց սեղանին պէս մեծ ու փառաւոր էր: Արդ՝ այս անշահ ծախքը վերցընելու համար, կ՚որոշէ հասարակութիւնն, որ հարսին հայրը՝ միայն զփեսան կանչէ սեղանի՝ հարսին հետ: Հոն ուրիշ մարդ ամենեւին չգտնուի, որչափ ալ մօտիկ ազգական ըլլայ: — Ը. Արգելուած է այսուհետեւ հարսին տունը խալած ու խափայեղ շինելու եւ բաշխելու: Շատանան ասկից ետքը՝ հացով

եւ ուրիշ կերակուրներով։ — Թ. Հին սովորութեան համեմատ, հարսանեաց սեղանի առեն դաշնագիրը կը կարդային։ Արդ՝ քաղաքաբաշխութիւնը կը հրամայէ որ այս բանս այսուհետեւ չըլլայ։ Դաշնագրութիւնը՝ գրուի. դատաւորին ու քաղքին քարտուղարը ստորագրեն. եւ ինչպէս որ հարսին ծնողքը կը փափաքի, կրնայ իրեն՝ իբրեւ օժիտ տալ, բաժակ, դգալ, արծաթեղէն եւ այլն. ինչպէս որ ուզէ, եւ ինչափ որ կարողութիւնը ներէ — սակայն այս ընծաները դրուին հարսին արկղին մէջ՝ առանց մէկու մ'ըսելու, եւ մանաւանդ՝ առանց բարձր ձայնով կանչելու։

Կարեւոր կը համարիմ, այս հրամանագրին բնագիրն ընթերցողաց առջեւ դնել՝ այնպէս ինչպէս որ կը գտնենք տարեգրութեանց ժամանակակից մէկ ձեռագրին մէջ։

“De An. 1718. Աստուծոյ ողորմութեամբըն. Նօդայ կապտիքներու վասն հարսանեաց։

1ma։ Ութվեցաւ[1] Պ. Հասարակին, որ ասոր ետեւանց մէկնի որ մեր քաղաքացին նշանէր զիրեն որդին ոզկային[2] դստերն նայ, որպէս ատաթ կար,[3] որ զփեսան տուն կու բերէին եւ մեծ բոմբաշ[4] հարկեր[5] կանէին։ Նայ հիմիկուցէն ալ շատ այս հարկերն չիլան։ Կլայ[6] փեսան եր-

---

1 Լաւ, պատշաճ համարեցաւ։ — Կարծեմ, հաճոյ թուեցաւ-ին համառօտութիւնն է։

2 Ուրիշին, օտարին։

3 Սովորութիւն։

4 Հանդիսաւոր, փառաւոր։ Հունգարերէն է։

5 Սեղան, խնջոյք։

6 Կրնայ, հրաման կայ։

թալու, բայց միայն մէնէնակը[1] հաց ուտելու։ Մարդիկ հօն չի գտվին. եւ ոչ մուզիգայ, եւ նաեւ ոչ պաշխշ տրվի փեսին, ասոր առաջի ատաթին գորայ։

2. Հարսինը հարը հինադրօնք[2] չի անէ ուրպէս ասոր առաջ, հապա հինադրօնքին օրն կլայ ծէնէլու[3] աղչիկներ. ասոր առաջ հաստատած կապին գօրայ. եւ զալ մօտիկի ազգականներն։ Բայց հոն չի կենան փէսին կողմանէ. եւ ոչ Ա. խաշլուին[4] կողմանէ ոզկաններ, քանց[5] որ ատաթին գօրայ փեսին մօտէն պի երթան 4 կամ 6 կտրիչ սհադմն, կամ շատ երկու, խաղալու։[6] Բայց հարսինը պաշխշ չի տանին. եւ ոչ հարսն ըսդրուչներ[7] տայ կտրիճնուն։

3. Որով հետեւ ութվեցաւ Պ. Հասարակին, որ ասկից ինտան պէրնան[8] կտրվի, որ ալ շատ պէրնայ չի տրվի նայ, կութվի որ Աղչ. խաշլուն հետ խաշլումօրն երթան պսակ, ու ալ շատ մարդիկ չի ունէնայ։ Եւ որով հետեւ պէրնայ չի գայ, նայ Ա. խաշլուին ալ, հարսինը մօտէն լալեխ չի տրվի, եւ ոչ Վ. Պ. քահա-

---

1 Մինակ, առանձինն։

2 Անշուշտ՝ խնջոյք, ճաշ—. եւ կամ՝ հանդիսաւոր նշանտուք պիտի նշանակէ։

3 Այսինքն՝ ձէնել. հրաւիրել, կանչել։

4 Այսինքն՝ խաչը բռնող. հարսնեհայր։

5 Բայց եթէ, քան։

6 Խաղալ՝ պարել, կաքաւել կը նշանակէ։

7 Աւանկ գրուած է, գուցէ պարգեւ նշանակէ։

8 Անտարակոյս պարգեւարաշխութիւն, պարգեւ պիտի նշանակէ։ Բայց ուրիշ բան ա կրնայ ըլլալ։

նայիցն։ Զէրայ[1] կու լսվի թէ Վ. Պ. քահանայիցն այս դիդուլուշովն[2], չէ բուբլիձէ[3] հապայ արանձին դասմն աղէկ մարդիք կուզին ըլալու, նայ լալեխ կու տան։ Վասն որոյ ալ շատ չի տրվի։

4. Պսակին օրն, որ հարսն կու առնուն նայ, պի երթայ հարսինը հարը, կամ ով որ հօր տեղ ըլար, ասոր առաջի աթաթին գօրայ վեց ճուփդը, հարկ փեսին մօտ. եւ Ա. խաչուն միայն ընկերոջմովն։ Եւ փեսին կողմանէ պի նսդին սդոլ վեց ճուփդ, եւ օխդնում փեսին հարն։ Էգսձերդոյ օտար մարդիկոցմուն, քահանայիցն եւ Աղչայ. պիրովէն։[4]

5. Հարսին հարը հարկ երթալուն ժամանակն պի ունենայ զիրեն հինկ ճուփդ մարդը. եւ պի երթայ հարկ։ Տարէ[5] ամենեվին իրեն տունը հարկ ըսդոլներ չիլան եւ ոչ մուզիգայ. հապա ամէն մէկը վով իրեն տունը երթայ ուտելու։ Միայն առուկ իրեն ջէլէտն[6] մնայ տունը հաց ուտելու։

6. Պսակին երկուսում օրն փեսան թէոր կամէնայ, բայց պարտականութիւն չէ, եւ երանի թէ չիլար. կլայ իրեն աշխատողացն կտորմն[7]

---

1 Վասն զի, որովհետեւ։

2 Տիտղոս, titulus-ին հունգարական ձեւն է։

3 Հրապարակաւ, յայտնապէս։

4 Կրնայ հաւասարապէս նշանակել, օտար մարդիկներէն... զատ։ Բայց կրնայ նշանակել նաեւ՝ դուրս առնելով օտար մարդիկները, քահանաներն ու դատաւորը։

5 Բայց, սակայն։

6 Cseléd, հունգ. բառ է. ծառայք, աղախնայք կը նշանակէ։

7 Այսինքն, կարճ, պզտիկ, թեթեւ։

ըսդօլ անէլու. եւ մուզիգայեալ կլան ունէնալու։ Բայց ժամանակին վով իրեն տունը երթայ եւ այս տօգինասին,[1] որն կու հասգցվի։

7. Հարսին հարը, ատաթ կար, որ զփեսան հետ հարսինը տուն կու խօթէր, եւ անպէս ըսդըլ կանէր, որ հէչ ալ պակաս չէր քանց[2] հարսնեցն։ Այս անշահ խարճն եւ տարտն[3] վերցընէլու համար, ութվեցաւ Պ. Հասարակին, որ հարսինը հարը, նումայ[4] զփեսան հետ հարսինը ծէնէ այն ըսդօլն։ Եւ թէօր ունէնար որդիք կամ դսդրվիք կարգաց, նայ կլան ըլալու այն ըսդօլն, բայց օզկայ մարդիք չէ. քանինչ մօտիկի ազգականն ըլար. նայ արգելած է, որ այն ըսդօլն չիլան։ Պաշխշ փեսին կամ հարսին չի տրվի։

8. Ասկից ինտան արգիլած է, որ հարսնտանը[5] ալ շատ խալաճ եւ խատայեղ չի անին։ Օգդվին հացով եւ օզկայ ցեղ կերակրընէրով։

9. Ասոր առաջ կար ատաթ, որ գրօրէնք[6] կու գարդային ըսդօլն բուբլիճէ։ Ութվեցաւ Պ. Հասարակին, որ ասկից ինտան ալ շատ չի կարդացվի։ Գրօրէնքն պի գրվի ասոր առաջի ատաթին գորայ։ Պ. Ա. պիրօնն, Ա. Նօդարիուշն

---

1 Ասանկ գրուած է, օտար բառ մը պիտ՚որ ըլլայ։ Նշանակութիւնը չեմ կրնար գտնել։

2 Քան թէ. իմաստն է, որ հարսանեաց սեղանէն ամենեւին նուազ չէր։

3 Հոգ. հոգատարութիւն կը նշանակէ Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւը։

4 Առանձինն, միայն։ Վալաքերէն բառ է։

5 Հարսնտան, — կը նշանակէ՝ Հարսանիք, Հարսանեաց հանդէս, խնճոյք։

6 Դաշինք, դաշնադրութիւն։

շուշգրիպովադ[1] պի անին. եւ ինչ որ կամենար հարսինը ծնողքն պէրնայ տալու, նայ պի դնէ հարսինը սնտուկն. գուբայ,[2] դիգալ եւ այլն. ինչ որ կամքն եւ կարողութիւնն ըլլայ, պիտայ եւ պիգրէ գրօրէնքին մէջ, որ ունէնայ հարսն իրեն սնտուկն: Բայց բուբլիձէ չի կանչէցվի:„

Պատմութենէն գիտենք, թէ մեծանուն Աւքսենտիոս Վրզարեան՝ Դրանսիլուանիոյ Հայոց եպիսկոպոսը՝ ցիր ու ցան եղած ազգայինները ժողովել ու Կերլայ քաղաքն ամփոփել ուզեց. սակայն իր վերահաս մահուամբ այս բանս չկըրցաւ գլուխ հանել. մանաւանդ որ Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք շատ հակառակեցան այս բանիս. ու կայսեր դիմելով՝ խնդրեցին որ զիրենք անհանգիստ չընեն. եւ հաստատուած տեղերնին մնալու իրենց հրաման տրուի: Կայսրն ընդունեցաւ Եղիսաբեթուպոլսեցւոց՝ Աբաֆի իշխանին միջնորդութեամբը մատուցած աղերսագիրը: Բայց ինչպէս պէտք ենք ենթադրել, իրենց առջեւը դրուեցաւ, որ Կերլացիներուն պէս, իրենք իրենց եկեղեցական օրէնքներ ու սահմանադրութիւն մը հաստատեն, որուն համեմատ՝ ուրիշ քաղաքակրթեալ ազգերուն պէս կարենան ապրիլ:

Ուստի այս հրամանին հետեւութեամբ, եկեղեցական ու քաղաքային վարչութիւնը մէկ տեղ ժողովելով, 1718՝ յունուար 3ին, կամայ ակամայ, սահմանադրութիւն մը հաստատեց

---

1 Suscribo, ստորագրել, անունը նշանակել:

2 Բաժակ, գաւաթ, լտ. բառ է:

Կերլայի մէջ սովորութիւն եղած օրինաց ու կանոնաց համեմատ: “Կերլայի պատուաւոր ծերերը՝ մեզի ծանուցին իրենց հաստատութիւնը — կ'ըսէ նոր սահմանադրութիւնն, իր յառաջաբանին մէջ — ուստի պէտք է որ մենք ալ անոնց պէս ընենք: Բազմավիշտ ժամանակի մէջ է, մեր տառապեալ ու այս երկրին ամէն կողմը ցրուած ազգը: Հարկ է, որ հայրենի սովորութիւնները թողունք: Աս ժամանակը՝ մեր նախնեաց ժամանակին պէս չէ: Համբերենք ու ընդունինք Կերլայի հաստատածները: Հաւանինք անոր, ինչ որ մեր կարողութեան համեմատ սահմանեցինք ու գրի անցուցինք, որպէս զի հաստատուն մնայ: — Թէ որ մէկն, այս՝ վարը գրած սահմանադրութիւնն ոչինչ համարի, այնպիսին պատժուի 24 հունգարական ֆիորին տուգանք վճարելով:„

Աս ներածութենէն ետեւ կը սահմանուին նոր կանոնները՝ քանումէկ կէտի մէջ:

Առնչ համեմատ. Ա. Երիտասարդ մը, երբ աղջկան մը հետ նշանուի, պէտք է որ տեղեկացընէ քահանան, որպէս զի ասիկայ, երեք կիրակի հրատարակէ զիրենք եկեղեցւոյ մէջ. ու օրհնէ մատանիները: Մատանեաց օրհնութիւնն, առաջին աստիճանի մարդու համար, երկու հունգարական ֆիօրին է. երկրորդ կարգին համար՝ չորս սմագ,[1] իսկ երրորդ կարգին համար՝ երկու սմագ: Աս օրհնութեան համար,

1 Սմագը՝ 10—12 սանդիմի հաւասար արժէք ունեցող ստակ մըն էր:

հարսին կողմանէ վճարուելու է, առաջին ձեռքին՝ չորս, իսկ երկրորդ ու երրորդ ձեռքին, երկերկու սմագ։ — Նշանածներն եկեղեցիէն դուրս ելլելէն ետեւ, սպասեն դրան քով, մինչեւ որ քահանան գայ. ու վճարելիքը տան։ — Բ. Հարսանեաց օրհնութեանը համար, առաջին աստիճանի երիտասարդը՝ վճարելու է վեց հունգարական ֆիօրին, երկրորդ աստիճանի երիտասարդը՝ չորս, իսկ երրորդինը՝ երկու ֆիօրին։ Թէ որ օրիորդն օտար տեղէ գայ՝ վերոյիշեալ գումարին կէսը վճարուելու է։ — Գ. Խաչ օրհնելը կամ օծելը՝ թէ՛ մեծի ու թէ՛ պզտիկի համար՝ չորս սմագ է։ — Մկրտութեան համար, երեք սմագ պէտք է. սակայն թէ որ կնքահայրն աղքատ է 50 ստակ բաւական է։ — Դ. Մատաղը կամ ուխտը՝ ներեալ է։ Բայց հարկ է որ տան տէրը նուիրմունքը կարգի բերէ ու սեղանի վրայ տեղաւորէ. որ մարդիկ եկեղեցիէն գալուն պէս, սեղանի վրայ գտնեն զան։ Մատաղին տէրը՝ քահանային մէկ հունգարական ֆիօրին վճարելու է։ — Ե. Առաջին կարգի թաղման համար, երկու հունգարական ֆիօրին — երկրորդ կարգին համար, չորս՝ իսկ երրորդ կարգին համար, երկու սմագ պէտք է վճարել։ Եղբայրութեանց երիտասարդներուն՝ որոնք փոսը կը փորեն, վճարելու է առաջին աստիճանի մարդը՝ երեք հորկօշ,[1] երկրորդ աստիճանինը՝ երկու հորկօշ, իսկ երրորդինը՝ մէկ հորկօշ. բայց թաշկինակ տալու հրաման չկայ։ Թէ որ երկրորդ ընկերութիւն

[1] Փոքր ստակի տեսակ մըն է։

մըն ալ գտնուի, այն ատեն թաշկինակն անոր
տրուի։ Եթէ մէկ եղբայրութեան անդամները
տունը չգտնուելով, փոս չկարենան փորել, այն
ատեն մէկալ եղբայրութիւնը կրնայ փոսը փորել։
Բայց այս դէպքին մէջ, ստակն երկու ընկերու-
թեանց մէջ բաժնուի։ Երբ որ եղբարք տունն
են, մէկալ եղբայրութիւնը հոն տեղ ամենեւին
գործ չունի։ — Զ. Քառասունքին համար վճա-
րելու է առաջին կարգի մարդը՝ ութը հունգա-
րական ֆիօրին, երկրորդ կարգինը՝ վեց, իսկ
երրորդ կարգինը՝ չորս ֆիօրին։ — Է. Նշան-
տուքին համար, երիտասարդները վճարեն, եթէ
առաջին կարգի մարդիկ են, վեց ֆիօրին. եթէ
երկրորդ կարգի մարդիկ են, չորս ֆիօրին. իսկ
երրորդ կարգինները՝ երկու ֆիօրին։ Թէ որ
կամօք մէկը կամ մէկալն աւելի տալ ուզենայ,
ազատ է, արգելք չկայ, կրնայ ընել։ — Ը.
Ընկերութիւնն, իր վաղահներովը ծառայու-
թիւն ընէ փեսային, մինչեւ որ պսակէն տուն
գան։ Սուրն՝ իրմէն չառնուն։ — Թրի համար,
ա՛լ այնուհետեւ վճարք չըլլայ։ — Թ. Պսա-
կուելու գացած ժամանակ, փեսան՝ հարսին ձեռք
տալով չտանի զէնք եկեղեցին, հապա տան երի-
տասարդացն՝ իսկ հարսը, տան տիկնաց հետ
երթայ։ Եկեղեցւոյն մէջ, հարսն ու փեսան ա-
թոռի վրայ չնստին։ Հարսին ճակատը չպագնեն,
հապա միայն, “Աստուած շնորհաւոր„ ըսեն։
Իրիկուն, կերակրոյ ատեն, փեսան՝ կանանց հետ
չնստի սեղան, հապա միայն ծառայութիւն ընէ.
վասն զի այսպէս կը վայելէ։ — Ժ. Սեղանին

ներկայ չեղողներն ալ կրնան անոր մասնակից ըլլալ: Բայց, թէ որ սեղանին տէրն երիտասարդաց ձեռօք կ'ուզէ խրկել մէկուն կամ մէկալին բան մը, պէտք է որ իր վիճակին համեմատ՝ չորս, կամ երեք սմագ տայ: Ասոր վրայօք. դուրսը՝ փողոցի վրայ՝ ո՛չ առաջնորդի կամ մեծ մարդու մը, եւ ո՛չ ալ սեղանի վրայ մէկու մը բան մ'ըսեն. բայց տունը կրնան ըսել: Որուն որ կը խրկուի կերակուրն՝ անիկայ տայ վճարքը. — ու պարգեւ ընդունողն որուն որ կ'ուզէ, բաժնէ այն կերակուրներն, որովհետեւ իրեն խրկուած են: — ԺԱ. Այսուհետեւ հրաման չկայ հաց կցօնք ընել, կամ ալիւր մաղել, կամ հինայ խաղցընել: Ամէն մէկն իրեն ալիւրը մաղէ, ու իրեն հացն եփէ՝ իր բարեկամներովը: — ԺԲ. փեսային զգեստն օրհնելու համար, երեք սմագ պէտք է վճարէ հարսնէհայրը. իսկ Նարօտն օրհնելու համար մէկ սմագ: Գաղայ՝ ա՛լ չգտնուի հարսանեաց ատեն: — ԺԳ. Հարսանեաց ժամանակ ուխթը թաշկինակէն աւելի բաժնել արգիլեալ է: Ասոնց մէջէն՝ երեքը, հարսնէհօրն է, մէկը՝ փեսայինն, ու երեքը՝ փեսային հօրը կամ եղբօրը: Ասոնք տան, որոնց որ ուզեն: Մէկ թաշկինակը՝ վաթահին տալու է: Եթէ որ օտար տեղէն գան հարսն առնելու, այն ատեն, հարսանեաց թաշկինակ կրնայ տրուիլ՝ թէ՛ հոս, ու թէ՛ հոն: — ԺԴ. Հարսնիքին՝ 18 զոյգէն աւելի մարդ, ներկայ չըլլայ: Վեց զոյգը կանչէ հարսնէհայրը. վեց զոյգը՝ կանչուի փեսային, ու վեց զոյգը՝ հարսին կողմանէ: Թէ որ հարսն օտար

տեղէն բերեն, այն ատեն, հարսնէհայրը կրնայ ինը զոյգ կանչել ու ինը զոյգ ալ փեսան, որպէս զի ըլլայ 18 զոյգ։ Հինադրօնքին ալ 18 կնիկ մարդէ աւելի չգտնուի։ — **ԺԽ.** Փեսաւորաց սեղանին, հարսնէհայրը՝ վեց զոյգ մարդ կրնայ հետը բերել։ Հարսին հայրը՝ կրնայ, իր ամենէն մօտիկ երկու բարեկամովը գալ։ Բոլոր փեսաւերները կրնան սեղանի նստիլ. որովհետեւ այսպէս կը բերէ պարտքն ու պատիւը։ — **ԺԶ.** Սովորեալ աղուխսենին՝ ան դատաւորն ընդունի, ուսկից որ է օրիորդը. բայց Թաշկինակն ան վաթահին տրուի, ուր որ պսակը կը կատարուի։ — **ԺԷ.** Հարսանեաց ատեն՝ ա՛լ բաժակ գործածելու հրաման չկայ, միայն գաւաթներ։ Ամենուն դիմաց ըլլայ մէյմէկ գաւաթ. ամէն մէկն իրեն քովն եղած բարեկամին առողջութեանը խմէ. գաւաթը միշտ իր դիմացն ըլլայ ու մարդու ալ չտայ։ Ա՛ս կամ ա՛ն եղանակը զարնելու հրամաններ չտրուին. որովհետեւ հարսանեաց տէրն է, զերաժիշտները կանչողն ու վճարողը։ — **ԺԸ.** Փեսան բաղանիք երթալու ժամանակ, տասուերկու մարդ ալ լուացուի։ Ասոնք ըլլան՝ քահանան, հարսնէհայրը, վաթահն ու երիտասարդք։ Աս տասուերկու մարդուն համար հարսնէհայրը, մէկ հունգարական ֆիօրին վճարէ։ Նոյնպէս՝ ածիլուելու գացած ատեն, հետը տասուերկու մարդ առնու. ու հոն ալ հարսնէհայրը՝ մէկ հունգարական ֆիօրինէն աւելի վճարելու պարտական չէ։ — **ԺԹ.** Քահանան՝ հարսանեաց դաշինքը՝ գրի անցընելու է։ — **Ի.** Երիտասարդք՝

*աւետիս քաշած ատեննին, եղանակէն տուն մը երգեն միայն, որպէս զի բանը շատ չերկըննայ։*

*Կը ներկայացընեմ առաջիկայ սահմանադրութեան բուն բնագիրն, այնպէս, ինչպէս որ կը գտնենք Հաստատութեան պատճէնին մէջ։*

*"Ի թվին Ռ Ճ. ԿԷ. Յունուարի Գ օրն։*

*Այս է գիր Հաստատութեան մերոյ, յոր եւ հաստատեցաք, մեք ի պաշֆալօվու եկեղեցբան եւ պիրօվ. եւ երկոտասան երդվեալ ծերքըն։ Եւ զայս գրեցաք վասն Հաստատութեան գիւղիս մերոյ։ Որպէս նախ եւ առաջ իսկ են հաստատեալք կերլայու պատվաւոր ծերքըն. եւ մեզ իսկ են ծանուցեալ զհաստատութիւնս իւրեանց. յորոյ եւ մեզ հաճոյ թուեալ եւ հաւանեալ բանիցն, զոր առ մեզ են ծանուցեալ եւ մեր տեսեալ. զի պարտ է հաճոյանալ, վասն բազմավիշտ ժամանակիս, յորոյ եւ մեք ազգըս Հայոց կամք տարապեալ եւ ցրվեալ ի յերկրիս այսմիկ։ Վասն այսորիկ պարտ է մեզ թողուլ զհայրենական անպիտան սովորութիւնըն. քանզի եւ ժամանակս այլ վշդացեալ է. չէ որպէս ի ժամանակս նախնեացն մերոց։ Եւ վասն այսու պարտ է մեզ ըստ կարողութեան մերոյ հանդուրժել, եւ ըստ կարողութեան հաւանիլ բանիցս յոր եւ հաստատեցաք իսկ, եւ եդաք ի գրի զհաստատեալըն կէրլայու։ Եւ մեզէն իսկ յորչափ է պարգեւեալ իմանալ զհաստատութիւնս մեր ըստ կարողութեան մերոյ, քան զգրեալըն կէրլայու եդաք ի գրի զի հաստատուն մնասցէ. եւ ոչ թէ ոք զգրեալս առ ոչ*

ինչըս համարեցէ․ եւ զի այնպիսին պատիժըս կրեցէ եւ դատեցի տուգանաւ իբր ԻԴ մաճարի։

Այս գրածնուն վրայ ամէնեքեան հաստատուն ըլան։ — Ըսգիսըըն․ այս է սահմանքն վօրնօր կէրլան ալ կայ հաստատած վասն քահանայիցըն հախի, ինչոր կէնայ նայ ամէն բանի կու գրինք։

1․ Առաջի բունդըն այս է, յոր եփօր Ա կտրիճ մը շանվըվի նայ, քահանուն իմաց անէ, օր քահանան ժամին մէջ պատվէր տայ Գ կիրակի ալ առաչ քան զնիշան օրնելն թէ ֆալատիսն հետ ֆալանին կի շանվին. վօվ ինչ գիտէ հասութք կամ չի հասութք, նայ պարտ է օր ասէ. զէ եփօր գիտէնայ ու չասէ հիվօրն նայ, պարտաւոր կի մնայ։ Եւտեւ Գ կիրակին օրհնէ տէր տէրն զնիշաններն։ Ու գիտացվի հախն նիշան օրհնէլու․ Առաջի ձեռք մարդըն ունէնայ տալու Բ մաճարի․ Երկուսում ձէրքըն Դ սմագ․ Գ ում ձէրքըն Բ․ սմագ։ Ու հարսի դիհաց ունէնայ տալ առաջի ձէրքըն Գ սմագ, ու էրկուսում Բ սմագ․ ու Գ ումն ալ ալվի[1] այնպէս։ Դարձեալ նիշանին տէրքերն բօվին դուսը, ընչուր ի ժամէն էլին․ ու վիճարին տէր տէրին ու առնուն զնիշաններն։

2․ Բ ում բունդըն[2] այս է, օր գիտացվի հարսնեց։ Աթու հախի կամ տէր տէրի կամ

1 Անտարակոյս ալլեւս-ին համառօտութիւնն է։ Ալլվի, կամ ալվի Դրանսիլուանիացւոց լեզուաւը կը նշանակէ, դարձեալ, նոյնպէս։

2 Լատ․ punctum բառն է․ կէտ կը նշանակէ։

կըտըրըճնուն այսպէս ըլլայ։ Առաջի ձեռք մարդըն Զ մաճարի. երկուսում ձեռքըն Դ մաճարի Գ ում ձեռքըն Բ մաճարի։ Դարձեալ օր օզկայ[1] տեղէ բերին զաղչիկն նայ ունենան վերոյ գրեալ սումային[2] կէսն առնելու, թէ աթուի հախ. թէ տէր տէրի. թէ կըտըրըճնու. աւելի կամ պակաս բան չիլլայ։

3. Գ ում բունդըն այս է, որ գիտացվի. խաչ օրնէլու կամ օծելու հախն, թէ մեծի թէ պիզտիկի Գ սմագ. կամ թէ տղայ կընունքի գիտացվի հախն Գ սմադ։ Եարը իժով աղքատ ըլլայ կընկըհարը նայ Ծ պան ըլլայ։

4. Դ ում բունդըն այս է, վոր ուխդ կամ մատաղ ըլլայ մատղին տէրը զէղանուշն խօրդէ[3] ու ըսդօլին վրայ դընէ. որ եփօր ժամէն գան մարդիքըն, նայ ըսդօլին վրայ գտնուն։ Դարձեալ գիտացվի; մատղէն տէր տէրի հախն Ա մաճարի։

5. Ե ում բունդըն այս է, վոր մարդ օր մեռնի նայ գիտացվի թաղումի հախն։ Առաջի ձեռք մարդըրվէն Բ մաճարի. Բ ում ձեռք մարդըրվէն Դ սմագ. Գ ում ձեռքէն Բ սմագ։ Դարձեալ կտրըճնուն ալ փոս փօրէլչէքն գիտացվի։ Առաջի ձեռք մարդըրվէն Գ հօրկօշ. Բ ում ձեռքէն Բ հօրկօշ. Գ ում ձեռքէն Ա հօրկօշ։ Ու գիտացվի օր լալեխ չի կէնայ։ Եարը[4] օր հանդպի

---

1 Ուրիշ։

2 Summa = գումար։

3 Շտկել, կարգի դնել, բերել, կարգաւորել կը նշանակէ։

4 Բայց սակայն, կընշանակէ։ Կարծեմ թաթարերէն է։

օր օղկայ պրասդաւաեալ[1] ըլլայ փոս փօրէլու նայ, նացայ տան զլալեխն. կամ թէ օր հանտպէր օր կըտրըձներ տունը չիլային փոս փօրէլու ժամանակ նայ, մէկալ պրասդավանէրուն գան ու փոս փօրին ու զըստակն կէս անին: Եարը օր կտրըձներ ըլլան ան տունը նայ, մէկալ պրասդաւան բան չունի ըսդկին հետ:

6. Զ ում բունդըն այս է օր գիտացվի: Քարասունքի տէր տէր նուն. Առաջի ձէրքըն Ը մաճարի, Բ ումն Զ մաճարի, Գ ումն Դ մաճարի:

7. Է ում բունդըն այս է օր կտրըձներըն շանվըքի բաժին այսբէս առնուն: Առաջի ձէրք կտրըճէն Զ մաճարի, ու Բ ում ձէրքէն Դ մաճարի ու Գ ում՝ ձէրքէն Բ մաճարի ու աւէլի բան հէչ չի կէնայ: Եարը թէ օր իրեն ըրատ կամաւն տայ բան մը ըխդի նայ բարի ու թէ չէ նայ զօրօք չիլայ կամ՝ թէ հարկ. ինչ օր իրեն ըրատ կամաւն տայ նայ, ան առնուն: Դարձեալ պէրպընծայ[2] օր առնուն նայ գիտացվի: Առաջի կտրըճէն Գ մաճարի. ու Բ ումէն Բ մաճարի, ու Գ ումէն Ա մաճարի աւէլի պակաս չի կէնայ:

8. Ը ում բունդըն այս է, վոր վադահներըն պրասդաւայօվ ծառութիւն անին փէսին քով մինչեւ վոր պսակէն տուն գան նայ: Դարձեալ

---

1 Լեհերէն բառով՝ Պրասդովա կը կոչուէր արհեստաւորաց ու վաճառականաց ընկերութիւնը:

2 Ընծայ բառը յայտնի է. բայց թէ պէրպընծայ՝ ինչ կը նշանակէ, չեմ գիտեր: Կռուան մըն ալ չկայ, որ մարդ իմաստ մը կարենայ գտնել կամ հանել:

*զբալըշն[1] չառնուն փէսին մօտէն, օչ հախ կէնայ ալ շատ թրի։*

9. *Թ ում բունդըն այս է օր պսակ էրթալէն, փէսան զհարսը ձեռնէն չի տանի, նումայ փէսան հետ տան տուրացը[2] էրթայ, ու հարսը հետ տան տիկնացը։ Կամ թէ ժամն հարսն ու փեսան աթոռի վրայ չի նստի. օչ պագնին գլօխն. զէ նումայ աստուած ըշնըհաւոր ասին. կամ թէ հարկին իրկուն փէսան ալ շատ կընտոցը ըստօլը չի նստի. նումայ օտընվորութիւն[3] անէ, զէ անպէս է պարտ։*

10. *Ժ ումն գիտացվի օր սեղանըն ըլայ խրկէլու նայ սէղնին տէրը խօրդէ ու խրկէ։ Եարը թէ կամք ունէնայ կտրըճնէրով խրկէլու նայ գիտացվի կտրըճնուն հախն. Դ սմագ առաջի ձերքըն. ու Բ ումն Գ. սմագ։ Եարը թագաւորի[4] չասին. դուսը օրամը, օչ սէղնի ժամանակ օչ հարսնեց, եարը տունը կըլան ասէլու։ Դարձեալ ում օր սէղանը տանին նայ, նայ տայ հախն. ու էտեւ ինքն բաժնէ սէղանըն ում օր ուզէնայ նայ, զէ սէղանըն իրեն է խրկած։*

11. *ԺԱ ում բունդըն այս է գիտացվի. Հաց կցօնք, կամ ալուր մաղել կամ հինայ խաղցնել կամ հինայել ալ շատ չի կէնայ։ Վօվ*

---

1 Pallos հունգ. բառն է, որ զինուորական մեծ սուր կը նշանակէ։

2 Կրնայ հետեւցընել ընթերցողը, թէ տանուտէր-ին յոքնակի սեռականն է։

3 Անտարակոյս՝ ծառայութիւն կը նշանակէ։

4 Թագաւոր՝ Դրանսիլուանիացւոց լեզուաւը, կը նշանակէ պարոն, մեծ մարդ, առաջնորդ, իշխան։

*իրեն ալուրն մաղէ ու վօվ իրեն հացն անէ, իւր բարեկամներովն։*

12. ԺԲ *ում բունդըն այս է, վոր գիտացվի․ փէսին հագուստ օրնէլըէքն Գ․ սմագ խաշլուն վիճարէ․ ու նարօտ առնէլըէքն Ա սմագ։ Դարձեալ գադայ*[1] *ալ շատ չի կէնայ հարսնիքն անպատճառ։*

13. ԺԳ *ում բունդըն այս է, օր գիտացվի․ Ը լալէխէն ալ շատ չիլայ հարսնիքն։ Ու գիտացվի ան Ը լալեխըն Գ․ խաշլուին տան․ Ա մը փէսինը․ Գ․ փէսին հօրը կամ աղբօրը ձէրը տան ու ինքը ում ուզէնայ նայ պի տայ․ ու Ա մը վարդահին տան։ Դարձեալ գիտացվի օր օզկայ տեղէ գան հարսնառ․ թէ ի հօս, թէ ասդից օզկայ տեղ նայ հարսնվորացն ամէնին լալեխ տան ու գօլը գարնուն*[2] *ինչ լալեխ օր տան առաջ նայ անօվ միայ, ալ շատ լալեխ չի տան։*

14. ԺԴ *ում բունդըն այս է օր գիտացվի հինտիկուցէն հարսնիքն ԺԸ ճուփդ մարդըվէն ալ շատ չիլայ։ Ու գիտացվի որ Ջ ճուփդ խաշլուն ձէնէ, Ջ ճուփդ փէսին դիհաց ու Ջ ճուփդ հարսի դիհաց, օր ըլլան ԺԸ ճուփդ։ Կամ թէ օր օզկայ դիհէ բէրին զհարսը նայ գիտացվի օր Թ ճուփդ մարդ ձէնէ խաշլուն ու Թ ճուփդ փէսան․ օր ըլայ ալվի ԺԸ ճուփդ․ կամ թէ հինադրօնքն ալվի ԺԸ կնիկ մարդըվէն ալ շատ*

[1] Ալիւրով ու մեղրով շինուած խմորեղէնի տեսակ մըն է, զոր հիմակ ալ կը շինեն Դրանսիլուանիոյ ազգայինք։

[2] Վալաքերէն բառ է կարծեմ․ կը նշանակէ, ծառայող, ասդին անդին պացող գօլըգար՝ մէկ բառ է։

*չիլան. ու վորն որ հարսնիք ուզէնայ գալու նայ, նայ ըլլայ հինայդրօնքնալ:*

15. ԺԵ *ում բունդըն այս է, որ գիտացվի. օտընվորաց հարկին ունէնայ խաշլուն Չ ձուփդ մարդըվով գալու. կամ հարսի հարն Բ մարդըվով. ալ մօտիկ բարէկմօնն իրեն գվովոր ուզէնայնայ. ու այլն օտընվարաքըն ունէնան նսդէլու զէ այն է պարտ ու պատիհն*[1]*:*

16. ԺԶ *ում բունդըն այս է, որ գիտացվի. աղվեսն ան պիրօմն առնու, ուսգից որ աղչիկն ըլլայ նայ. եարը լալեխն ան վադահը առնու, ուրուխ որ պսակըն ըլլայ նայ:*

17. ԺԷ *ումն գիտացվի որ խաշլուին մօտ Թէմօնօվ*[2] *ալ շատ չէրթան ու խաշլուն ալ, ալ շատ Դ բարէկմէն չի ձէնէ Թէրմօնի վրայ:*

18. ԺԸ *բունդըն այս է. վոր գիտացվի. հինտիկուցէն ալ շատ հարսնիքն գօբօկ*[3] *չի կէնայ. նումայ հարկ է վոր գաւդըներ ըլլան. ու ամէնուն դիմաց մէ մէկ գաւադ դնին ու վօվ իրեն բարէկմին խմէ. նումայ գաւադըն դիմացըն կէնայ. չի տայ մարդու ալ: Կամ Թէ լաւուչու*[4] *սապաշ*[5]

---

1 Այսպէս գրուած է: Եթէ պատիւ բառը չէ, — այն ատեն անտարակոյս՝ պատեհ բառն է:

2 Ամէնեւին չեմ կրնար երեւակայել, թէ ինչ բառ է. ու ինչ կը նշանակէ:

3 Անշուշտ Kupa, հունգարերէն բառը պիտի ըլլայ. որ խմելու աման, մեծ բաժակ կը նշանակէ:

4 Լաւուչի՝ կը նշանակէ երաժիշտ, երաժշտութիւն:

5 Կարծեմ, հունգ. szabás բառն է. հրաման, պատուէր, կանոն կը նշանակէ: Իմաստն ան է, որ երաժիշտներուն հրաման կամ պատուէր չտան, որ այս կամ այն եղանակը զարնեն:

չի տան, զէրայ Հարմնէցը տէրը լաւուչուն կը վիճարէ։

19. ԺԹ բունդըն այս է, որ գիտացվի։ Եփօր փէսան բաղնիք էրթայ նայ. գիտացվի ԺԲ մարդ լըվացվին, տէր տէրօվ, խաչլուօվ, վաղահօվ կտըրըճնէրով այս չափն ըլան։ Ու ԺԲ մարդուն սէպն ունէնայ խաչլուն վիճարէլու Ա մաճարի։ Գարձեալ պրպիեարեալ[1] ալվի ատպէս ԺԲ մարդ ածիլվին. ու ալվի Ա մաճարի վիճարէ խաչլուն։ Եարը աւէլօքն բան չունէնայ խաչլուն վիճարէլու աս խըտարէն։

20. Ի ում բունդըն. Ունէնայ տէր տէրըն զգըօրէնքըն պէրնայ տալու։

21. ԻԱ ումն. գիտացվի օր կտըրըճնէրն աւէտիս քալին նայ. Ա աւէտիս մը ասին. ու Ա գօլինտալթ[2] մը Ա տունըն ալ շատ չասին։» —

## Զ.

Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնն իր «Հին ժամը» շինելէն անմիջապէս ետքը՝ եկեղեցւոյ վերաբերեալ այլեւայլ որոշմունքներ ըրաւ։ — Արդ աւելորդ չենք համարիր զասոնք այս տեղս յառաջ բերելու։

Ա. Կը սահմանուի ի մէջ այլոց որ եկեղեցւոյ զգեստատունը նորէն ծածկուի. ժամին

---

1 Borbély հունգարերէն՝ կամ berbiar (տաճկ. պէրպէր) վալաքերէն բառն է, որ սափրիչ կը նշանակէ։

2 Ասանկ գրուած է։ Ամենեւին չեմ կրնար երեւակայել, թէ ինչ նշանակութիւն ունի։

սիւները կամ ամրութիւնները նորոգուին քաղաքին ծախքովը։

“1730 Ապրիլի 11ին. Հաստատեցինք, որ ըզըսգեստատանը ծածուկըն նորոգվի ու ծածկըվի նորէն. եւ զժամին տօտիկները[1] խորդըվի։[2] Եւ պատվելի եկեղեցպանը վէքիլ[3] անձն արաւ հօքսն[4] քալցընելու քաղքին խարճօվըն։„ —

Բ. Թէ եկեղեցւոյն բոլորտիքն եղած բաներուն, մարդ ձեռք չդպցընէ, որովհետեւ եկեղեցւոյ ստացուածքներն են։

Առաջինկայ կարգադրութիւնն՝ որչափ կըրնանք հետեւցընել, կը ցուցընէ, որ եկեղեցւոյ վերաբերեալ կահ կարասիքն եկեղեցւոյ բակին մէջ կը պահուին եղեր։ Ուստի եւ կը հրամայուի, որ անկէ չէ թէ միայն ամէնէն նուազ արժէք ունեցող բանն ալ չհեռացուի, ընդ պատժով տուգանաց. հապա նաեւ՝ թէ որ մէկը տեսնէ թէ մարդ մ'անկէ բան մը կ'առնու, պարտական է իշխանութեան ծանուցանելու. եթէ չ'ըներ, կը պատժուի։ Իսկ եթէ չտեսնուի ու չիմացուի, պատասխանատու պիտի ըլլայ առաջի Աստուծոյ։

Ահա հրամանագրին բնագիրն, ըստ արձանագրութեան։

“1730. օգոստոսի 25 ի պաշփալըյվն։

---

1 Ոտք, ամրութիւն, սիւն։

2 Խորդել՝ (այսինքն ուղղորդել.) շտկել, կարգի բերել, նորոգել կը նշանակէ։

3 Փոխանորդ, տեղապահ. (այսինքն՝ երկրորդ եկեղեցպանը)։

4 Հօգսն քալցընել կը նշանակէ՝ հոգալ, հոգ տանիլ։

Խորհուրդ եղաւ այսպէս պատուելի Գըլ-նաճէն, եւ հրաման եղաւ որ ինչ կէնայ խուցերուն մէջ կամ ժամի բոլորն, թէ ըսդօլ, թէ աթոռ, թէ հըռլէճ[1], թէ սաբայ,[2] թէ թիան,[3] թէ տախ-տակ կամ թէ ինչ բան, մագար Ա պանի բան, նա ըսլօպօտ չէ օր առնու օչ մարդ ալ, ոչ տէր տէր, ոչ եկեղեցբան, օչ պիրով, ոչ աղա-ներ, ոչ սարըսդաներ եւ ոչ վաղահներն. եւ ոչ ով չունենայ հրաման առնէլու ոչ գիտնալով եւ ոչ չի գիտնալով: Եւ թէ որ մարդ գտվէր հի վօվ որ առնուր ու տանէր իրեն բանին սէպն, հարկ անելու[4], կամ հարսնիքի, կամ այլ ինչ իրաց, նայ այնպիսին անպատճառ ունենայ տա-լու ճուրում Գ. մաճրի: Ու վօվօր տեսնու ու չասէ պիրովին, նայ այնպիսի մարդն ալ ունենայ ճուրում տալու զվերոյ գրեալն: Ու չիմացվէր նայ, պարտական մնայ Աստուծոյ ճուեապ տալու:„

Ժողովրդեան գերեզմանատեղին, ինչպէս ամէն տեղ, անանկ ալ Եղիսաբեթուպոլսոյ մէջ՝ եկեղեցւոյն շրջականերն էին: Եւ որովհետեւ, կ'երեւայ թէ կային անանկ ունեւոր քաղաքա-ցիներ, որոնք կը բաղձային եկեղեցւոյ մէջ թա-ղուիլ, անոր համար՝

Գ. Քաղաքային վարչութիւնն օրէնք մը կը հրատարակէ, որուն համեմատ, ամէն՝ եկե-ղեցւոյ մէջ թաղուիլ ուզողն եկեղեցւոյն գան-

---

1 Կաւար. տախտակեղէն:

2 Բրէչ, երկու բառն ալ վալաքերէն է:

3 Ասանկ գրուած է. թի, թիակ բառն է կարծեմ:

4 Սեղան, խնջոյք տալու:

ձանակը չորս ոսկի վճարելու է կանխիկ։ Կ'որոշուի միանգամայն նաեւ ան, թէ եկած դրամն եկեղեցւոյ պիտոյից գործածուի։

Ահա որոշումն, ըստ արձանագրութեան.

“1738 Ապրիլի 15ին։

Գիտացվի, որ հաստատեցին ի քաղաքն էլիզաբէդը վըլանի[1] ժամին համար, թէ որ գըտվէր, անպէս մէկ մարդ մը, կամ մարդու տիրվըտանքն[2] որ ուզենար կամ՝ ուզենային ժամին մէջ թաղվելու կամ թաղել տալու նայ, ունենայ տալու ժամին 4 օսգի անպատճառ։ Ինչվան ի որ չիտայ նայ, չի պի թաղվի։ Ու այս եկամուտն ժամի պիտվականութեան համար, թէ այր, թէ կին։ Ու վօրօնք որ ազգից ին, ու ալ արաջօվ վօր թաղված է մէջը նայ նաքալտան։„

Գ. Կ'որոշուի, որ ժողովրդապետանոց մը կանգնուի, այնպիսի կերպով մ'որ քաղաքը տայ ծախքը, բայց այն դրամագլխէն, զոր ունի եկեղեցին՝ քաղքին արկղին մէջ։ Պիլովը տան վրայ եղած ծախքերուն վրայօք հաշիւ տայ քաղքին ու եկեղեցւոյն։ — Շինուելի ժողովրդապետանոցին վերակացու ըլլալու յանձն առաւ Տէր Մինաս վարդապետը։ Զրի տեղ պիտ՝ որ տար քաղաքը, նոր փողոցին մէջ։ Իշխանութիւն կը տրուի ժողովրդապետին, այս առթիւ, որ ինչ ծախքեր որ ընէ տան վրայ, հաշիւը քաղքին

---

1 Այսպէս գրուած է. — չեմ գիտեր թէ ինչ կրնայ նշանակել։

2 Անշուշտ՝ ազգականներ, եղբայր. քոյր։

*վերատեսչութեան ներկայացընէ. եւ քաղաքն իրեն նոյնը պիտի հատուցանէ։*

*Ահա ասոր նկատմամբ եղած բնագիրը։*

“1736 *Օգոստոսի* 3*ին էլիզաբէդ քաղաքըն։*

*Խորհուրդ եղաւ վասն բլէպանիայի*[1] *տանը համար, որ արվի այսպէս, օր տայ քաղաքն ըզխարճըն եկեղեցւոյ ըստըկէն եւ կամ եկայմուտէն։ Որ ունէնայ տալու Աղայ Պիրօվ Նիգօշն ըստակն. եւ սէպն տալու, ինչ եւ իցէ։ Եւ Տէր մինաս վարդապետն անձն էառ օր վերոյկեցցյ ըլայ, օր հատըրվի ու արվի տըներն, նօր օրամըն, ուրուխ օր քաղաքն կասէ։ Եւ ինչ օր խարճէ վարդապետն նայ իրեն հրամանքն ալ սէպն պիտայ. օր պի դարձընուն իրեն հրամանոցն ինչ եւ իցէ„ եւ այլն։*

*Ե. Եղիսաբեթուպոլսոյ հայ եկեղեցին ունի իր յատուկ եկեղեցպանը, զոր կ'ընտրէ հասարակութիւնը։ Ասոր պաշտօնն է հոգ տանիլ եկեղեցւոյ բաներուն, եւ եկեղեցական ստացուծոց վրայ հսկել. միով բանիւ՝ վերակացու ըլլալ եկեղեցւոյ։ Ասոր փոխարէն ունի քաղքէն եկամուտ, տարուէ տարի ութը կենդինար աղ։ Հայոց ընկերութեան* (compania) *անդամ է, քաղքին խորհրդին մասնակից է. սակայն այն միջոցին միայն, երբ որ մեծ ու հարկաւոր դէպք մը պէտք ըլլայ որոշելու. բաց ասկէ՝ երբ որ դատաւորէն հրաման ընդունի, որ դըընաճը*

---

1 *Ժողովրդապետութիւն, ժողովրդապետանոց. — լատիներէն է։*

*գայ։ Եկեղեցպանը՝ գլխաւոր դատաւորին հնազանդելու է ամէն բանի մէջ։*

*Աւասիկ ասոնց նկատմամբ եղած որոշմունքներն ըստ բնագրին։*

“*Ամի Տեառն* 1738*նին ունվարի* 4. *էլիզաբէդան։*

1. *կամօքն Աստուծոյ եղեւ ընտրհաւոր ընտրութիւն բովանդակ քաղաքով, քահանայիցմով եւ ժողովրդով, ու ընտրեցինք ըզպատուելի Աղա զատիկն օվանէսեանց, նոյն պատուելի քաղաքիս եւ վերակացու եկեղեցւս պատուելի եկեղեցպան. որ ունենայ զեկեղեցուն տարտն աստուծոյ ողորմութեամբն քալցընելու ու հոգալու ինչեւիցէ եկեղեցուն ըսդըկօմն, եւ այլն։*

2. *Դարձեալ գիտացվի, որ խօսդացան պատուելի գահանայքն եւ պատուելի դըլնաճըն Աղաչայ Եկեղեցբանու տալու աղ* 8 *մաժ.*[1] *որ աղին գինօչն*[2] *հախը պիլայ եկեղեցուն սընտկէն. ու իրեն հրամանքը պիտայ ինչ ունի տալու գըմարան,*[3] *այսինքն աղինը ու ըզըբերելչէքն, ինչպէս մէկ Պ. Աղամը։*

3 *ումն. ունէնայ պատուելի Աղա եկեղեցբանը մընալու միայն գոմբանիայի մէջ հասա-*

---

[1] *Հունգարերէն* mázsa *բառն է, որ կը նշանակէ կենդինար։*

[2] *Այսինքն՝ գնոյն։*

[3] Camera *լատ. բառն է։ — Հոս աղի մթերանոց. կամ պաշտօնարան կը նշանակէ։*

ըակինը ու հնազանդելու պատուելի Աղա Ֆիւ[1] Պիրօվին ամէն կողմանէ, ինչեւիցէ։

4 ումն. պատուելի քաղաքին դընածին մէջ ունենայ ըլլալու միայն եւ մէկ անպէս մեծ գաուզամն[2] ըլլայ քաղաքի պիտվականութեանն սէպ. ու ինչպէս օր ըլլայ Աղա Պիրօվին հրամանը երթայ նայ, ունենայ հնազանդելու ու գալու պատուելի դընածին մէջ։„

Քիչ մը ետքն (1765) եղած որոշման մը համեմատ, կը գտնենք թէ պէտք է որ ինք զինք երդմամբ պարտաւորէ, որ եկեղեցւոյ իրեն յանձնած կահ կարասին կը պահպանէ, եկեղեցւոյ առաջնորդին կամ ժողովրդապետին ամէն բանի մէջ կը հնազանդի։ — Եկեղեցպանին պաշտօնն, ի սկզբան ամէն տարի՝ բայց ետքէն երեք տարիէ երեք տարի կը փոխուէր։ Այսչափ կը տեւէր սովորաբար իր պաշտօնը։ Սակայն կը տեսնենք թէ եղած է դէպք ալ, որուն մէջ եկեղեցպանութեան պաշտօնը — մանաւանդ արդեանց համար — ցկեանս տրուեցաւ։ Ժամանակ անցնելէն ետքն՝ աս պաշտօնն ամենեւին փոփոխութեան տակ չէր իյնար. հապա մէյ մը եկեղեցպան ընտրուողը կը մնար միշտ եկեղեցպան մինչեւ որ մեռնէր։ Աս բանս, այսպէս է այսօր ալ։

Կը դնեմ եկեղեցպանին երդման ձեւն ըստ հին արձանագրութեան։

---

1 Fö հունգարերէն բառն է, կը նշանակէ՝ գլխաւոր, վերին ։

2 Causa դէպք. դիպուած, պատահար ։

"Այս է ֆօրմուլան Պ. Քաղաքին կողմանէ Աղաչայ Եկեղեցինայ երդումինը.

Ես N. N. կու էրֆընամ անուն ամենակարօղին Աստուծոյ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. երեք անձինք եւ մէկ Աստուած. Տիրամայր Սուրբ Աստուածածինն եւ ամենայն սուրբք Աստուծոյ, այնպէս օգնեն ինձի եւ իմ հոգւոյս փրկութեան. ինչպէս որ ամենայն կողմանէ տէբէնտէնձիա[1] պի ունենամ Պ. հասարակէն. եւ ինչ ըսդակ որ տայ ձեռս Պ. հասարակն վասն եկեղեցւոյ շինութեան եւ կամ թէ ինչ ըսդակ օղկայ տեղէ եկեղեցւոյ սէպի վրայ գար ձեռս նայ, զամենոյն գրով պի առնում եւ գրով սէպ պի տամ Պ. հասարակին եւ ամենայն կողմանէ պի ջանամ զՊ. հասարակին եւ Պ. հասարակին եկեղեցւոյն շահն յառաջ տանելու եւ ըզզէնը հէրէձնէլու.[2] այնպէս ինձի օգնէ Աստուած եւ ամենայն սուրբք:„— —

Թէ այս միջոցիս, ինչ վիճակի մէջ էր Եղիսաբեթուպոլսոյ եկեղեցական հայ հասարակութիւնն, աղէկ կրնանք տեսնել, եթէ նոյն իսկ վեր ի վերոյ մը աչքէ անցընենք 1740ին կահագիրը, զոր ըրած է Գոսդալ լատին եպիսկոպոսին փոխանորդն, երբ առաջին անգամ խրկուեցաւ Եղիսաբեթուպոլիս. որպէս զի վերին հրամանին համեմատ հայ եկեղեցւոյն վիճակին վրայ տեղեկութիւն ստանայ, եւ նոյնը վերին իշխանութեան ծանուցանէ:

---

1 Կախում ունենալը, կախումը. հպատակութիւն:

2 Այսինքն՝ հեռացընել:

Այս այցարարութիւնը տարեգրաց մէջ ճշդիւ անցուած է լատիներէն լեզուաւ[1]։ Ժամանակակից հայերէն շատ գէշ թարգմանութիւն մըն ալ ունինք ձեռուընիս, այս այցարարութեան հետեւութեանցը վրայօք։ — Եպիսկոպոսական, կամ մանաւանդ տէրութեան երեսփոխանը ճիշդ տեղեկութիւն կու տայ, ոչ միայն ժողովրդապետին, իր օգնական քահանային, ասոնց եկամուտներուն վրայօք, եւ այլն. այլ նաեւ որոշել կու տայ տեղական եկեղեցական մասնաժողովոյն եւ քաղաքային վերատեսչութեան ձեռօք, թէ կատարած եկեղեցական պաշտամունքներէն, թաղմանէն, ամուսնութեանց օրհնութենէն, տներուն օրհնելչէքէն եւ այլն — ինչ եկամուտ պիտ՛որ ունենան քահանայք։ — Բաց ասկէ՝ կը դնէ առջեւնիս ամենաճիշդ ստորագրութիւն ու կահագիր մը՝ այն ատենի հայ եկեղեցւոյն սպասներուն, զգեստեղէններուն, արծաթեղէններուն վրայօք եւ այլն։

Այցարարութին տուած տեղեկութիւններն ամփոփելով, անոնց մէջէն յաջորդները կրնանք քաղել։

"Եղիսաբեթուպոլիս կաթողիկեայ Հայոց եկեղեցի մը կայ ի պատիւ ամենասուրբ Երրորդութեան, որ 1723ին շինուած է, քարէ, ինչպէս որ լսեցի՝ Հայոց բարերարութեամբը. բայց Պետրոս Քելեանին եւ Նիկողայոս Վարդանին առաջնորդութեամբը կանգնուեցաւ։ Ծածկուած

---

1 Տես Պատահարք եկեղեցական իրաց (Historia Domus) ձեռագիրն. էջ. 37—52։

է կղմինտրով եւ օրհնուած 1725ին Յովհ. Անգղֆի՝ Դրանսիլուանիոյ եպիսկոպոսէն։ Երեք խորան ունի։ Աւագ խորանը Ս. Երրորդութեան, կողմնականներուն մէկը՝ նուիրուած է Վերափոխման Աստուածածնի, մէկալը՝ Գրիգորի Լուսաւորչի։ Կայ բաժնուած կողմնակի աղօթարան մըն ալ ի պատիւ սրբուհւոյն Աննայի։ Զասիկայ Ս. Աննայի եղբայրութիւնը կանգնած է։ Ունի 80 ֆիօրինի հիմնարկութիւն, որուն շահին մէկ մասովը՝ տարուէ տարի երկու պատարագ կը մատուցուի. իսկ մէկալ մասն՝ աղքատաց կը տրուի։ Ասկէ աւելի մեծ հիմնարկութիւն մը դրած է Սրբոյն Գրիգորի եղբայրութիւնը. որովհետեւ ասիկայ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան ձեռքը՝ 1000 ֆիօրինի դրամագլուխ ունի։ Ասոր եկամտէն՝ ժողովրդապետը տարին քառասուն թիւ ու հինգ ձայնաւոր պատարագ ընելու է։ — Բաց ասկէ, ունի եկեղեցին 1000 ֆիօրինի դրամագլուխ մը, որուն շահովը եկեղեցւոյն պիտոյքները կը հոգացուին։ Աս դրամը ամենասուրբ Երրորդութեան եղբայրութեանն է։ Կայ երրորդ եղբայրութիւն մըն ալ՝ տեղւոյն ժողովրդապետէն հիմնուած։ Ասիկայ 700 ֆիօրին դրամագլուխ ունի. շահը՝ եկեղեցւոյ նորոգութիւններուն կը գործածուի։ — Վերոգրեալ խորանները մաքուր եւ լաւ պահուած են։ Զանգակատունը քարէ է, ունի օծուած երեք զանգակ։ Չորրորդ մըն ալ կայ սրբարանին վրայ։ Աւանդատունն ալ քարաշէն է։ Ասոր մէջ տեղաւորուած են եկեղեցւոյն սպասները։„ (Հոս

կարգաւ գրուած են, եկեղեցւոյ արծաթեղէնները, եկեղեցական սպասները, զգեստեղէնները եւ այլն)։

Տեղեկութիւնները կը շարունակուին այսպէս։

“Լերան վրայ, ի պատիւ Քրիստոսի խաչելութեան՝ աղօթատեղի մը կանգնել կու տան Հիմակ Խնկանոսեան եւ Լուսիկ Թորոսեան։ — Տեղւոյս ժողովրդապետն է Մինաս Խնկանոսեան. քառասուն տարեկան է։ Ստորին դասերը, փիլիսոփայութիւնն՝ ինչպէս նաեւ աստուածաբանութիւնը Հռովմ սորված է. երկուքէն ալ վարդապետական աստիճան առած։ Եօթը տարի է որ գովութեամբ ժողովրդապետական պաշտօն կը կատարէ։ Աս տարի Աւագերէց անուանուեցաւ Կուրկենի (Görgény) Ճուրճովի (Gyergyó Szt. Miklos), Սիբվիզի եւ Գեզտի Վաշարհէյլի (Kézdi Vásárhely)։ Ունի քարաշէն տուն մը՝ ժամին կից, երկու սենեակով։ Մինչեւ հիմակ ամենեւին հաստատուն եկամուտ չունէր. երկրին բերքերուն եկամտովը կ’ապրէր, որ 300 ֆիօրին մը կ’ընէր։ Բայց հիմակ կ’ընդունի մկրտութենէն, ամէն եկեղեցական գործառնութենէն ու պաշտամունքներէն։ (Հոս կարգաւ կը շարուին եկեղեցական պաշտամունքներէն ընդունած վճարքը)։ Ասոնց մէջ կը յիշուի ան ալ, որ մինչեւ այն ատեն եղած սովորութեան համեմատ՝ ժողովուրդը տուն օրհնէնքին համար — որ երկու հեղ կը կատարուէր, այսինքն Նոր տարի ու զատկին — որոշեալ բան մը չէր վճարեր. բայց հիմակ՝ հասարակութեան հաւանութեամբն ո-

րոշուեցաւ, թէ որչափ պիտ՚որ վճարէ ամէն մէկ տանտէր՝ ըստ իր կարողութեանը։ — Աս բաներն անոր համար որոշուեցան — կ՚ըսէ տեղեկագրութիւնն — որ չըլլայ թէ՝ մէկ կողմանէ ժողովրդապետը քանի մը հոգւոյ տունը չօրհնելով՝ իր եկամուտը կորուի, մէկալ կողմանէ, որ — ինչպէս սովորաբար ուրիշ տեղ ալ հանդիպած է — հասարակութիւնը չափէն աւելի ծանրաբեռնութեան տակ չմնէ։ — Ժողովրդապետի օգնական է այս տեղս Տէր Մանուէլ Գրիգորի. 44 տարեկան է։ Ունի բնակութեան տեղ մը, փայտէ, ժամին բակին մէջ։ Թէպէտ հաստատուն եկամուտ չունի, բայց ունի ամէն օր կէս հունգարական ֆիորին (50 սանդիմ) պատարագուց։ Բաց ասկէ եկեղեցական պաշտամանց ու գործառնութեանց վճարքին (stola) կէսն իրենն է։„

Թերեւս աւելորդ չ՚ըլլար, եթէ որ այս այցարարական ծանուցման ժամանակակից հայերէն թարգմանութիւնն ընդօրինակելով ընթերցողաց առջեւը դնենք, ա՛յնպէս, ինչպէս որ տարեգրաց արձանագրութեանը մէջ կը գտնենք։ Ինչպէս վերն ալ ըսի, թարգմանութիւնը շատ բարբարոս հայերէնով գրուած է։ Թարգմանիչը՝ կա՛մ հայ չէ, կամ եթէ հայ է, վերջին աստիճանի ծառայամիտ ու լատինամէտ պէտք է որ եղած ըլլայ։

“1740 ունիսի 23ին։ Գոբիայ, դարձուցած[1] լատինականէն հայնակ։

1 Այսինքն՝ թարգմանուած։

Ինվէնդարիումն[1], որն որ արիլէ բադէր գօշդօլն մեր եկեղեցոյն պօնումին[2]:

Վիզիդաձիան[3] գերհարգելի տեառն տեառն օհաննէս գաշգալի Սըրբուհի Կուսյն մարիամու դէյ սալօմն Ապպասին եւ այլն եւ այլն: Եկեղապէդան, ուրուխ ժամըն հայոց գրիստոնէյի ի պատիվ ամենայ սուրբ յերրորդուգնոյ շինայէյ եւ ի տարոյն 1723 խարճով եւ բարերարութեամբ հայերուն լոյսէլով.[4] ալ իժօվ[5] Ա. պետրոս գօբօձին եւ Ա. Նիգօշ վարդանին վէրուցած քարէյ. եւ կըղըմընտրով ծածկած. եւ գերաբարձըը նաեւ գէրհարգելի ո. հ. օհաննէս Անդալֆի դրանսիլվանիաու էպիսկոպոսէն 1725 ուլիսի 29 երեք բէմօվ մեծօվ այսինքն. եւ երկու կողակնիցով օրհնած. որոնց առաջինը զամենասուրբ յերրորդութիւնը. երկուսումը զվերայ փոխեալ Աստուածածինը եւ երեքումը սուրբն գրիգոր վեր գրած հայոց ազգին լուսաւորիչը կու պատվէյ: Ասոնց սրբուհի Աննային չորսումը ատյունկովադ[6] կըլայ. ոչ եւ օծած[7], այն Սրբուհ-

---

1 Կահաւորիր:

2 Ստացուածք:

3 Այցելութիւն, այցարարութիւն. — բոլորն ալ լատիներէն են:

4 Այսպէս գրուած է. թէ ինչպէս կարդալու, եւ ինչ հասկընալու է, չեմ գիտեր:

5 Մանաւանդ թէ, առաւել եւս:

6 Adjungo լատ. է. քովը դնել. կըպցընել. մերձեցընել:

7 Կարծեմ "օծուած ալ չէ" ըսել կ'ուզէ. լատիներէն ոճ է:

ւոյն անվամբ գօնկրէկաձիօյէն[1] ֆունդաձիայօվը[2] խօճացուցած 80 մճրու մքի ամյ ունենալով. որու շահըն տարէկանը երկու դի փայ կարվի, այսինքն պատարաքնու հոն ասէլու եւ աղքատած նաչարութիւնը[3] վէրցընելու։ Նըման նաեւ ալ մեծ բարերարութիւն ունի վեր գրած սուրբն գրիգորի բեմըն. զէրամ հազար մաճարի, մքի. գրգոր լուսավորիչնայ գօնկրէկաձիօյին անվանը տակը էլխսաբէդ գօմունիդաշին տըված կու համրէյ. որու տարեկան շահին համար տեղի բարօքուսը տարին ի բուն քարասուն դիվ եւ հինկ ձայնավոր պատարաք սույն բէմին դիմաց կու ասէյ։ Ունի ասոր դուս զայս եկեղեցին գաբիդալ 1500 մճրու. դուս տված. որու տարէկան շահըն սույն եկեղեցույն պիտուականութեանը աբլիգովադ[4] կըլայ, որ սմ̃. ամենայ սուրբ յերրորդուդնոյ գօնկրէկաձիօյիննէյ։

Կու գըտվի իրեքում գօնկրէկաձիօն ալ նօրէն չերմերանդութեամբ եւ աշխատանօք գերհարգելի տեառն Մինասի խընկանոսեան բլէպանի եւ Արհի տիայ գօնի, տեղիս վերուցած. ունենալով պէնէֆիձիում[5] մաճարի մքի. 700ի, երկու տարեկան մէջ քաղած, նաեւ դուս տված. որու տարէկան շահըն ժամու պի-

1 Եղբայրութիւն, ընկերութիւն։

2 Հիմնարկութիւն։

3 Դրանսիլուանիացւոց հայերէնովը՝ կը նշանակէ, խեղճութիւն, ողորմելութիւն, աղքատութիւն։

4 Applico կամ adplico. լատ. է, գործածուիլ, շահաբերել կը նշանակէ։

5 Բարերարութիւն, օգնութիւն։

տոյութեան կու հանի, որնօր ալ մեծ փայօվ չաթնով կու հուսվի[1]։

Վերոյ գրեալ բէմերն ամէն պիտութեամբ չէպարին եւ հարկաւորութեամբ հօգաձածին։

Ճանկակատունը քարէյ էյ երեք ժանկակ կու բըրնէյ օծած. չօրսում օծածը սանգղուարիումին[2] բարձրութեանը մէջ էյ։

Սագրիստիան[3] քարէյ էյ, ժամին կողը շինած. հատրութիւնն եւ աղէկ. ունի ալ վար գըտվածները.

1$^{mo}$. Արծըթէյ օսգըչըրած, նաեւ փէշայով բանած 11 հատ խաչվընեը։ Առաջինը՝ ունի լոթ $48^{1}/_{2}$. — 2 մը՝ ունի լոթ 52. — 3մը՝ $41^{1}/_{2}$. — 4մը՝ $43^{1}/_{2}$. — 5մը՝ $34^{1}/_{2}$. — 6մը՝ 41. — 7մը՝ $40^{1}/_{2}$. — 8մը $34^{1}/_{2}$. — 9մը՝ $30^{1}/_{2}$. — 10մը՝ 30. — 11մը՝ $18^{1}/_{2}$. — Երկուս ասգից մէշտէղէն կոտրած ին։

NB. Ասգից մէկ մը տարիլէյ Ա. Լուսիկը Թօրոսեան մարիաձէլ. Ֆըկըտուիդ[4] անէլով, թէ մէկ արծըթէյ մօշդըրանձիայ մը պի բէրէյ անոր հավասար։

Մէկ խաչը գրիշտալէյ պղընծէյ խաչօվ։ Կայ դէր մէմալ, հին, ալ մեծ արծըթէյ, ջիգէյին Ֆամիլիայէն ժամին տված ու իրենց ուզածին վրայ ալվի յետ տված, անոր սէպը որ

---

1 Իմաստն է, իրեն մեծ մասովը՝ ցանկով հիւսուած է։

2 Սրբարան։

3 Աւանդատուն. — լատիններէն բառեր են։

4 Ֆըկըտուիդ անել, ուխտել, խոստանալ, խոստում ընել կը նշանակէ. — Հունգարերէն fogadni բայէն է։

ալալ[1] քովը դընելով մէկալնոնց գօրայ անել տան ։ Ունի լոթ արտեալի 42½ ։

Սգիգ, արծընէ՝ օսգըջըրած թէփսըս-գըննէրովը (փակագծի մէջ՝ մաղազմաններովը) նումէրոյ 10ին ։ Զորս ազգից հին խնվէնդարին մէջ չի գան գըման ։

Զիպօրիումներ[2], արծըթէյ՝ օսգըչըրած, նումէրոյ 3.

Մօնշդրանձիայ, արծըթէյ օսգըչըրած. 1.

Բէլիգվարիումներ[3] արծըթէյ օսգըչը-րած 7.

Խընկածուխ[4] արծըթէ, նավիգուլայով[5] (փակագծի մէջ, իւր խնկամանովը) 1.

Լամբաս (քովն օտար գրով՝ փակագծի մէջ. կարթեղ կու գրվի) արծըթէյ. մեծ բէ-մին դիմաց. 1.

Գինոյ եւ ջըրի աման, հետ թեփսընուն, ճուվդ. 1.

Ավէտարան, արծըթէյ կօղէրօվ՝ պատ-վէրքնէրով, մէկ դիհէն գրիստոս խաչած, մէ-կալ դիհէն Աստուածածնայ օսգըչըրած Nr. 1.

Բիքշիշներ[6] սուրբ լիգվօրնու արծըթէյ, Nr. 1.

---

1 Գրանսիլուանիոյ Հայոց բարբառովը կը նշանակէ՝ դեռ, աւելի եւս ։

2 Սրբատուփ, մասնատուփ ։

3 Սրբոց մասունքի աման, տուփ ։

4 Անշուշտ բուռուար պիտի ըլլայ ։

5 Խնկամանին լատիներէն անուանակոչութիւնն է ։

6 Büchse գերմ. կամ Pixis, լատ. տուփ, տիփկ կը նշանակէ ։

Բիգշիշ արծըլթէյ օսգըչըրած. Nr. 1.

Պատքերք Աստուածածնայ մարիամէլի, արծըլթէյ ճվդ. Nr. 1.

Գազուլաներ,[1] խոդով[2] 19.

Վորոնցմուն արաչինը ճերմակ կիլապտանով[3] կապած. խոճայ, դէղինչիբգանէրով[4] զարդարած, ճերմակ գուն ուրարով եւ բազկուրարով։

2[do.] կարմիր ապըշմէյ դէղին կիլապտոնով գործած՝ ուրարով եւ բազկուրարով։

3[tio.] Ապըշմէյ ճերմակ ալվի դէղին կիլապտանով գործած ուրարով եւ բազկուրարով։

4[to.] Ապըշմէյ, օսգու չիչակներով գործած զանազանած արծթէյ ջիբգաներով, ուրարով եւ բազկուրարով։

5[to.] Ապըշմէյ կանանչ արծթէյ չիչակներով գործած, ուրարով եւ բազկուրարով։

6[to.] Գույն ըզգույն արծթով եւ օսգով զանյզանած գործած, ուրարով եւ բազկուրարով։

7[a.] Ապըշմէյ սեւ. օսգով գործած, ուրարով եւ բազկուրարով։ — Մէկալնոնք թուրլու թուրլու գուն, ապըշմէյ, բազկուրարով եւ ուրարով։

Ինչպէս որ ասոնք սինօվը[5] ինվէնդարին մէջ էկեղեցունը կան նշանած, անոնց գորայ մասի ծածուկնէրով։

---

1 Պատարագի զգեստ. (ըստ լատին արարողութեան)։

2 Բոլորը. ամէնը։

3 Արծաթէ կամ ոսկեթել ժապաւէն, ծիր։

4 Ճանեկ. ժանեակ, Հունգարերէն բառ է։

5 Szin. Հունգարերէն բառ է. գոյն կը նշանակէ։

Բլուվիալներ[1]:

1mo. Ճերմակ ապրշմէյ մադէրիայէ արծթէյ պումպով[2] եւ մէշտեղը փէշով ապրշմէյ օսգով գործած:

2do. Կարմիր դըրատօրէյ[3] ժանկարով[4], մէշտեղը խաչ մը արծըթէյ կանկընէրով[5]:

3tio. ապրշմէյ մադէրիայէ, մէշտեղը խաչով:

4to. ապրշմէյ ժանկարի հին, պատրտած մէշտեղը, եւ dto.

5to. հին պատրտած վիօլասին[6], ապրշմէյ խաչով մէշտեղը: Վեր գրած հինգ բրօվիալները հին ինվէնդարին մէջ կու գըտվին գըրած:

6to. սեւ ապրշմէյ, մէշտեղը բէնտուլայ[7], Ճերմակ պումպով ապրշմէյ եւ կիլապտոնով[8]:

Ինֆուլայ, թուրլու չիչակներով ապրշմէյ եւ օսգով գործած ջիբգանէրով զարդարած Nr. 1:

Վարշամակ, կարմիր խատիֆէ, մէշտեղը քրիստոսի պատկերքը ու 12 առաքեալքը·

---

1 Լատ. է. կը նշանակէ շուրջառ:

2 Կը նշանակէ գունտ. գնտակ. — ան ծոպն է, որ լային շուրջառներուն ետեւի գին կախուած կ'ըլլայ:

3 Անտարակոյս ծանրագին նիւթոյ տեսակ մը պիտ'որ ըլլայ:

4 Գորշ գոյն կը նշանակէ Գրանսիլուանիացւոց լեզուովը:

5 Այանկ գրուած է. չեմ գիտեր թէ ինչ կրնայ նշանակել:

6 Մանուշակագոյն. Հունգարերէն է:

7 Պումպին հետ նոյնանշան է. տես 2 ծանօթութիւնը:

8 Արծաթով կամ ոսկւով բանուած, ասղնագործած:

բոլորը դեղին ու ճերմակ կիլապտոնով նաշխած[1] երկուս ին (փակագծի մէջ, որ է վակաս)։

Իրեքումը ճերմակ ապրըշումէ վարշամակ, դեղին չիթգաներով։ Հին ուրարներ, որ է փորուրարներ իրենց բազկուրարներովը, այսինքն բազպաններովը. Nr. 2. — մէկը կանանչ դրագօնէ, մէկալը կարմիր օզգօվ մաղէրիայէ. բազկուրարներն ալ իրենցը՝ անոր գօրայ։

Խաչվըրներ։

Առաջինը ապրըշումէ, կարմիր։

Երկուսումը, ապրըշըմէ, ժանկարի։

Դարուն վրայ ի պատիվ խաչելութեան քրիստոսի, խարճօվը Ա. Հանգօյի խընկանոսեան եւ Ա. Լուսիկի Թօրոսեան Էլիզաբէթ քաղաքացոց՝ գաբօնայ[2]։ Երկու կօղէն, հիմպի կի վերցըվի. ըշդաձիօնները քրիստոսի պիտօր վերցըվին.

Տեղի բլէպանուշ Տէր Մինաս խընկանոսեան, Էլիզաբէդ քաղաքացի, տարեկան 40. լեզու հայնակ, մաճրնակ, դալիաննակ եւ օլախնակ գիտցող։ Զալ վարի համպըռները եւ զֆիլօզօֆիան նաեւ զթէօլօկիան Հըռօմ բրօբօկանդայ կօլէճին մէջ լըմընցուցիլէյ։ Զվարդապետութիւնը երկուսինն ալ արիլէ։ Անկից դարձած, օխդնում տարին ուժէ[3] բլէպանուշի օֆիձիումը[4] գօվելի ունի. եւ այս տարուս մայսի ամսուն

1 Կարուած, բանուած։
2 Աղօթարան, մատուռն։
3 Արդէն, Դրանսիլուանիայի ազգայնոց լեզուովը։
4 Պաշտօն, աստիճան։

Արքի Տիագօնադուսօվ[1] բրէֆէգդուրայով[2] էլիզապէդացոց, կուրկինցոց, ճուրճով սէն միգ-լուշցոց, չուք սիբվիզցոց եւ գեղտի վաշարհէյցոց պաշխըշվելու արժանաւոր եղիլէ։

Ունի զիրեն տունը ժամին բօլօրակին մէջ՝ քարէ, էրկու ձէլայով։ Աղէկը հախ չունացիլ իքմըն ալ. ինչվան բրօվիանդուշէն[3] ապրըվիլէ, որն որ կէլէ քիչ ու շատ, տարու գլօխ 300 մճրի. ուրուխ օր կարնու. կընունքէ, մճրի. 2. քարսունքէ, 12 պան. պըսակէ. — Թէ օր երկու փայնալ տեղացի ըլայ, արաչի ձէռձէն 6, 2 ում ձեռձէն 4, 3 ումէն 2. —

Եւ թէ օր մէկ փայը օտար ըլար նայ, վերի գրածնուն կէսը կի վիճարվի։ Եւ թէ օր կույսը ազգից տարվի օզկայ դի, վերի գըրած ըշդօլան ընդրէկ կի վիճարվի։

Տիշբէնզաձիօյի[4] ապօվ,[5] եփօր

Մատնիք կի օրհնըվին, կամ նըշան, արաչի ձեռքն կի վիճարէ 2. 4, երկուսումը 1. 36, երեքումը 68։

Ասնք կըտըրըճին բաին վրայէն։

Աղչիկանը փային վրայէն, արչի ձերքը. 1. 2, երկուսումը ու երեքումը 68։

Եւ թէ օր կըտրիճը օրբօվարի կընիկ նըշանէ, ինքը վեր գըրածին գօրայ կի վիճարէ. — օրբօվարին օչիքմընալ։

---

1 Աւագ սարկաւագութիւն։

2 Առաջնորդութիւն, վիճակի մը գլխաւորութիւն։

3 Պարէն, պաշար, նպար։

4 Տնօրինել, ազատութիւն շնորհելը. — լատ. է։

5 Առթիւ, ճամբով, պատճառով։

Թաղմանը, արաչի ձեռքը կը վիճարէ 2. 4, երկուսումը 1. 36, երեքումը, 68, զոր հասկըցիր, ծերէ, տղայէ։

Այս խօսքերուն "Հանգիցէ ի խաղաղութիւն„ գէրէծմաննու վրայ մերածնունը 1. 2։

Տուն օրհնելչէքնուն, նոր տարու եւ զատկին, ընտօր որ ինչվան ատալթ եղիլ է, չի կեցիլ իքմըն ալ բէքի[1] գլէրուշին վիճարէլու։ Բայց այս վիզիգաձիային օգաղիօյօվը[2] վիզիգադօրին ինթիքմաձիօյին[3] գօրայ եւ ինդէրբօզիձիայինը[4], Պ. Մակիսդրադը Հետ Սարըստանուն՝ անվամբ բօլոր գօմունիդաշին[5] էլիզաբէդի, ըէզօլվադ[6] արիլէ, թէ ասգից ինտան, ամէն տանէ վիճարվի վար գրածին գօրայ.

Առաչինը, վօրօնք օր ըլան առաչին ձեռձէն 5 միշ. որն որ կանէ մճրի 1.70, երկուսումը 4 միշ. մճըքի 1.36, երեքումը 3 միշ. մճըքի 1.2։

Վօրօնք որ ուժէ յետգի սօրդէ[7] ըլան, իրենց կամացը գօրայ եւ կարեացը իք մը պիտան, եւ օչ ասոնց ալ մօտիկնու չուլում արվի։[8]

Վեր գրածները իրեք բօզիձիօյի[9] մէջ գրածները, ալ քիչ վիճարելու չի պի կարնան. ալ շատ իրենց կամքը պիլայ։

---

1 Որոշ, ստոյգ։

2 Աւթիւը, պատճառաւը. — լատ. է։

3 Intimatio, հրատարակութիւն, ծանուցում։

4 Միջնորդութիւն, մէջը մտնելը։

5 Հասարակութիւն։

6 Որոշել, սահմանել։

7 Տեսակ, կարգ։

8 Ներումն ըլլուի, աչք գոցուի։

9 Դիրք, վիճակ, կարգ։

Ըզվեր գրածները ամէն տուն օրհնէնքի հասցընիր. անպէս որ, նոր տարու առաջինը՝ 5 մրշ. երկուսումը, 4 մրշ՝ երեքումը 3 մրշ վիճարելու պարտական պիլայ: Անխը-տարը զատկին ժամանակն ալ. եւ ատպէս մէկ տարուն մէջ երկու տարպայ վիճարին: Առաջի ձեռքն, 10 մրշ. մ ճըքի. 3. 4, երկուսումը 8 մրշ. մ ճըքի 2. 7, երեքումը 6 մրշ մ ճըքի 2.—

Որ ռէզօլուձիօն[1] բօլոր գօմունիդաշին անընօվը, ինչպէս թէ հասդատ բէրիլին մակիսդրադէն:

Ա. Օհան զատիկի, արչի եկեղեցու Պիրօվ:

Աղաչաները.

Դագայ բարօգիային տանը մէջ ներկայ ըլալով.

| | |
|---|---|
| Խազար Օհանի. | Ցանգըյ խընկանոսի. |
| Պետրոս քէլ. | Մարտիրոս բադրուպան. |
| Նիգօշ Իսըգուց. | Դաւիթ չիգի. |
| Ամիրայ խնկանոսի. | Նիկօլ չիգի. |
| Լուսիկ Թորոսի. | Լուսիկ օսգէրիչի. |
| Խաչերես սիմոնի. | Օվանէս գրէջունի. |

Անկսէնդ վարդանի. Նօդարիուշ:

Սարըբաները:

| | |
|---|---|
| Միքայէլ սիմոնի. | Լուսիկ չիգի. |
| Խաչիկ պետրոսի. | Նիկօլ ճիրախի. |
| Մանուկ Անտէնի վիլակի. | Օվանէս վասիլի. |

---

1 Որոշումն:

Օհան Սըհակի·
Մելքոն Կաշքարի·
Խաչիկ Լուսիկի·
Օվանէս ակոփի.
Օվանէս Թօրոսի·
Դոտէր չիգի·
Անտրիաշ դոտէրի։

Վեր գրածները, անոր դէրմինօվադ[1] կու նըշանվին, օր չիլայ թէ գերհայրգելի Տեառն աշխատանաց պիտուլթիւնները դասմի[2] մը տալով կըտրըլվին. կամ թէ ինքը պօմունիդաշը, ժամանկեն վրայ, ինչպէս օզկայ դիալ շատ քանծ[3] լըմանուլթիւնը ծանտրէնայ:

Այս տեղը դաբէլան է, Տէր Մանուէլ գրիգորի, Հայ Նաձիօյէ, տարեկան 44. բրէզպիդէր[4] տարէկան 19 եկեղեցու ծառաութեամբ այն ժամանկէն էլիզաբէդան Նըսդօղ կամ թէ ագուրված: Ունի կեցօղ տեղ մէկ տուն մը, ժամին ապըրոին բօլօրակին մէջ, փատէ. եւ բրօվիանդ կըտրած խըմըն ալ: Բայց ամէն օր ընդրէկ տարին (դուս հանած մեծ եւ տօն օրէրու վորոնց գօմունիդաշին սէպը պէդգ է որ հանձնէ) Պատարագուց ունի, կէս մ՚ձրի նաեւ Տեառն բլէպանուշը տեղի, զվեր գրած ըշդօլային„ :[5]

1 Termino = որոշել. սահմանել։
2 Մէկ քանի, ինչ ինչ։
3 Քան որչափ։
4 Երէց, քահանայ։
5 Ուրեմն կը նշանակէ. բայց ան եկամուտն է, զոր կ'ընդունի ժողովրդապետ կամ եկեղեցական մը, աստուածային պաշտամանց գործառնութեամբը։

## 3.

Թէպէտ, ինչպէս տեսանք, 1718ին սահմանադրութիւնն որոշած էր, որ գրօրէնքը կամ ամուսնութեան դաշինքն՝ որ ի սկզբան քահանայից ձեռքն էր, քաղքին դատաւորն եւ նոտարն ընեն, ստորագրեն. բայց ետքէն երբ որ քահանայից ազդեցութիւնն աւելցաւ ու զօրութիւնը շատցաւ՝ այս բանը նորէն ձեռուընին առին, որովհետեւ որոշեալ վճարում մ'ունենալով, բնականապէս իրենց եկամուտ մը կը բերէր։ Արդ՝ քաղաքային իշխանութիւնն, այս գրօրէնքը ձեռուըններնէն առաւ 1765ին, ըսելով՝ նախ, թէ ասիկայ դաշինքի եւ դատաւորի վերաբերեալ բան է. երկրորդ՝ թէ չկայ աս բանս քահանայից եկամտին մէջ գրուած, հետեւաբար եկեղեցականաց գործքը չէ, ուստի նորէն դատաւորին եւ նոտարին յանձնեց։ Յաւելուած մ'ալ ըրաւ անոր մէջ քաղաքաբաշխութիւնն, այնու որ որոշեց թէ, թէպէտ այն դաշնագրութիւնը նոտարը գրելու է ըստ ինքեան, բայց ուրիշ մըն ալ կրնայ գրել։ Սակայն դատաւորին պէտք է որ ներկայացընէ, որպէս զի քաղքին կնիքը վրան դնէ եւ օրինաց զօրութիւն ունենայ։ Ասկէ ետքը՝ դաշինքը նոտարին երթայ. բառ առ բառ արձանագիր ըլլուի. եւ դիւանին մէջ պահուի։ Դաշինքը գրելու վճարքն էր 12 պան (նոյնչափ սանդիմ)։ Արձանագրութեան համար, նոտարը կ'առնուր 24 պան. ուր որ անկից յառաջ՝ եկեղեցին, այս բանիս համար երեք մարհաշ կ'ընդունէր։

կղերիկոսունք, հասարակօրէն Հռովմ, Ուրբանեան դպրոցը կ'երթային, եւ հոն ուսմունքնին աւարտելէն ետեւ կը դառնային ու քահանայութիւն կ'ընէին իրենց ծննդեան տեղը: Վաղեմի սովորութեան համեմատ, ինչպէս քանի մ'անգամ տեսանք, ասոնք եթէ կարօտութեան մէջ էին, թէ՛ ճամբու ծախքը հոգալու եւ թէ՛ միանգամայն ուսմունքնին լմընցընելու համար, քաղաքային վարչութենէն օգնութիւն կը խնդրէին: Այս միջոցիս ու այս առթիւ պատահեցաւ, որ Մարկոս Գօշողանեանց աղերսագիր մատոյց, որ իր քեռորդւոյն, Մարկոսին՝ Յովհ. Նորգոյենցին որդւոյն հասարակութիւնը շնորհք ընէ եւ յանձնարարական թուղթ մը տայ. որովհետեւ Եղիսաբեթուպոլսեցի ու պատուաւոր մարդու զաւակ է. եւ միտք ու կամք ունի ձեռնադրուելէն ետեւ ինք զինք Եղիսաբեթուպոլսոյ ծառայութեանը նուիրելու: Քաղաքաբաշխութիւնն, ինչպէս ուրիշ նման դէպքերու մէջ. հիմակ ալ յանձն առաւ այս բանս. եւ որոշեց որ քահանայացուին յանձնարարական թուղթ մը տրուի, այն յաւելուածով թէ, ձեռնադրութիւնն ընդունելէն ետեւ, զինք քաղաքն ընդունելու պատրաստ է: Այս կերպով կ'ըլլար այն միջոցին կղերականաց ապագայ ապահովացուցման կամ տիտղոսին (titulus) գործառնութիւնը:

Ահա այս որոշմունքներուն արձանագրութիւնը:

"Աստուծոյ ողորմութեամբն 1765 ունվարի 22, Ելիզաբէդան:

Պատճառ գրոյս այս է, որ քաղելով եկ. Հասարակն եւ տեսնելով որ մեր ազգին մէջ ատաթ կայ որ գրորէնք կու գրին, որ գրորէնքն, ինչվաս Պ. գահանայքը կու գրէին եւ 3 մարիաշ սօլարիում կու առնէին: Բայց տեսնելով Պ. Հասարակն, որ այն գրօրէնք գիրն Պ. գահանայից շգօլային մէջ չի գայ. եւ գրօրէնքն դատաստանի ծախք ըլլալով, եւ ինչպէս գօնդրակդ[1]. ութվեցաւ Պ. Հասարակին, որ հիմիկուցէն զգրօրէնքն ունենայ գրելու Պ. Քաղքին Նօդարիուշն, եւ կամ օզկան կըլայ գրելու. որն որ պի ունենայ սօլարիում[2], մէկ գրօրէնքն 12 պան: Եւ պի բերէ Պ. Աղաչայ Պիրովին որ սուպագրիպօվադ[3] անէ. եւ զՊ. քաղքին մօհրն դընէ վըրան: Եւ օր ալ հասդատ բան ըլայ Պ. Քաղքին Նօդարիուշն ինբրօդօգօլովաւ[4] պի անէ զգրօրէնքն, որ քաղքին բրօդօգօլումին մէջ տէ վէրպօյ ատ վէրպում[5]. եւ պի ունենայ սօլարիում վասն ինբրօդօգօլաձիային 24 պան: Եւ այսպէս պիլայ բանը հաստատ:

Նմանապէս վերայ տադումին, տուաւ արաջ Պ. Ա. Մարտիրոսն գօշօդանենց վասն իրեն հրամանոցն Նէբօդին. այսինքն Մարգօյին, Օվանէսի Նօրգօյեանց որդուն, թէ աստուծով հրօմ գըտվէլով կու խնդրէ զՊ. Հասարակն, որ անէ իրեն

1 Դաշինք, դաշնագրութիւն:

2 Որոշեալ վճարք, տուրք:

3 Ստորագրել, անունը գրել:

4 Արձանագրութեան մէջ գրել, անցընել:

5 Բոլորը լատիներէն է, հայերէն գրերով, կը նշանակէ բառ առ բառ:

այնչափ բարերարութիւնը եւ տան իրեն մէկ ռէգօմէնտաձիամէ[1], ինչպէս թէ մեր քաղաքացին է ու աղէկ մարդու տղայ է. եւ թէ աստուծով նիաթ[2] ունինք թէ մեր Քաղքին պէտք պիլայ, որ կարենայ նիաթի հասնելու եւ գահանայ օրհնըվելու: Որ բանին մօտ ութվեցաւ Պ. Հասարակին, որ տրվի զռէգօմանտաձիան. եւ Պ. Քաղաքը կու ընդունէ զինքն մեր Քաղքին մէջ„:—

Վաղեմի սովորութեան մը համեմատ կարգուելի երիտասարդները պսակի դրամ՝ այսինքն վճարք մը տալու էին եկեղեցւոյ: Քահանայք՝ ըստ իրենց գիտութեանն ու խղճմտանացը՝ հին սովորութեան համեմատ, ինչպէս վերը տեսանք, երեք դասու կամ կարգի բաժնած էին վճարքներն. եւ կը պահանջէին պսակելիներէն՝ մէկ կամ միւս վճարքն՝ ըստ իրենց գիտութեանը: Թէպէտ, ինչպէս ինք իրմէն կը հասկցուի, շատ հեղ պատահեցաւ, որ քահանայք ըստ բաւականի չճանչնալով փեսային դրամական վիճակը՝ կը դնէին այնպիսի մեծ վճարք քաղաքացւոյ մը վրայ, զոր չէր կրնար վճարել. եւ կամ ընդհակառակն՝ կը դնէին երրորդ կարգի նուազ վճարք մը այնպիսի հարուստ քաղաքացւոյ մը վրայ՝ որ կրնար եւ պէտք էր առաջին կարգի վճարք հատուցանել: Աս բանս շատ անհամաձայնութեան, գանգատներու եւ վէճերու պատճառ տուաւ: Արդ քաղաքաբաշխութիւնն աս բանս կարգի բերել ուզելով՝ օրէնք հանեց,

1 Յանձնարարութիւն, յանձնարարական թուղթ:

2 Դիտաւորութիւն, կամք, բաղձանք:

*թէ այնուհետեւ, փեսան չէ թէ յառաջ քահանային եւ անկէ եկեղեցպանին, այլ նախ ու քանի, ջուխտ մը տարիէ ինչ կը խօսի, ետքէն՝ երիտասարդաց ընկերութեան եւ սարըստային երթայ ու վճարէ քահանային տրուելի վճարքը, հապա՝ նախ պիրովին երթան փեսային ծնողքը: Դատաւորն իրը քննելով՝ նայի թէ ինչ կարգի ու վիճակի մարդ է. ու ետքէն քաղաքաբաշխութեան հետ վճռէ, թէ ո՛ր կարգին մէջ դնելու է, եւ թէ ի՛նչ վճարելու է իր որդին հարսանեաց համար: Պատճառն ալ կու տայ քաղաքային վարչութիւնը. որովհետեւ, կ'ըսէ, աւելի աղէկ կը ճանչնայ պիրովը քաղաքացւոց վիճակը՝ քան թէ եկեղեցականք: Ասոր հետեւաքն ա՛ն է, կ'աւելցընէ օրէնսդրութիւնն՝ որ ո՛չ եկեղեցականաց եւ ո՛չ ալ պսակելոց անիրաւութիւն մը կրնայ հանդիպիլ:*

"*Աստուծոյ ողորմութեամբն,* 1765 *ունվարի* 25 *Էլիզաբէդան:*

*Մեր ատաթին գօրայ, որ կար արաջ եւ հիմիկալ ուզուչի մէջ է. որ պիտոր տան, Նոր գարգըլվածները այսինքն փեսայներն պսակ դրամ Պ. գահանայիցն, Պ. Աղաչայ եկեղեցընայ, Պ. կորճորացն պրասդավային եւ Պ. Աղաչայ Սարըսդին: Եւ այս ատաթըն կար, որ երեք ձեռք դագշովադ*[1] *կ'ըլլային փեսաներն. այսինք առաջին ձեռն վեց մաճրի. երկուսում ձեռն, չորս մաճրի եւ երեքում ձեռն երկու մաճրի: Եւ ըլալով ատաթ*[2]*, որ արաջ կէրթային փեսին*

---

[1] Գնահատութիւն, սակ, վճարք:

[2] Սովորութիւն:

ծընողքն Պ. գահանայիցն մօտ: Պ. գահանայքըն չի գիտնալով թէ որ քաղքըցին ինչ շղանտի[1] մէջ կու գտվի, պէլքի շղանդէ դուս ալ դագշօվադ կըլլային փեսաներն. եւ ինչ օր հանդըպէր, որ տար փեսան Պ. գահանայիցն, նայ անոր գօրայ կարնուր Պ. Աղաչայ եկեղեցբանը, Պ. կորճորացն պրասդավան եւ Պ. Աղաչայ Սարըսդան: Անոր համար ուժվեցաւ Պ. Հասարակին, որ ասորվանէն ինտան[2], որովհետեւ ատաթ կայ, որ պէդգ է որ փէսին ծնողքն էրթայ Պ. Աղաչայ Պիրօվին մօտ. եւ ինսինուվադ[3] ըլլայ, թէ աստուծով հարսնիք ունի անէլու, նայ ուժվեցաւ Պ. հասարակին. որ այն ինսինուվաձիային[4] ժամանակըն դագշօվադ անէ Պ. Աղաչայ Պիրօվն, հետ Պ. Մակիսդրադին, զփեսան, դէ ինչ ձեռք մարդ է. որովհետեւ ալ աղէկ գիտէ զքաղքըցոցըն շտանտը, որ անոր գօրայ վիճարէ, թէ՛ Պ. գահանայիցն, թէ՛ Պ. Աղաչայ եկեղեցբնայ, թէ՛ Պ. կորճվորացն պրասդավային եւ թէ՛ Պ. Աղաչայ Սարըսդին. ու աւելի չէ:„

Եղածներէն կրնանք հետեւցընել, թէ քաղաքային վարչութիւնը կ'ուզէր որ իր վերին ազդեցութիւնն ու հեղինակութիւնը միշտ պահէ նաեւ եկեղեցւոյ առջեւ. չէ՛ թէ անոր համար, որպէս զի անկախ ընէ ինք զինք եկեղեցւոյ իշխա-

---

1 Վիճակ, ստորիճան, կարգ, դաս:

2 Այսուհետեւ, ասկից անդին, այսօրուընէ սկսեալ:

3 Ճանչցընել, ծանօթացընել լատ. insinuo բառն է:

4 Տես նախորդ ծանօթութիւնը:

*նութիւնէն, հապա աւելի անոր համար, որ յարգելի ընէ իր օրէնքներն, ոչ միայն հասարակ ժողովրդեան ու քաղաքացեաց՝ այլ նաեւ եկեղեցական անձանց ու իշխանութեան առջեւ. եւ թէ զգուշացընէ զեկեղեցական առաջնորդութիւնն, որ իր իշխանութեան սահմանը չանցնի. խառնուելով անանկ քաղաքային իրաց մէջ, որոնք թերեւս իրեն վերաբերեալ բաներ չեն։*

*Ըսածնիս աւելի ակներեւ կը տեսնուի յաջորդ դէպքէն։*

*Մեզի ըստ բաւականի ծանօթ խնկանոսեան աւագերէցն ու ժողովրդապետն — որ ստուգիւ շատ բան ըրած էր Եղիսաբէթուպոլսոյ ազգայնոց թէ՛ հոգեւոր եւ թէ՛ քաղաքային բարօրութեանն ու յառաջադիմութեանը համար — որպէս զի մէկ կողմանէ իր ազդեցութիւնն զգացընէ իշխանութեան առջեւ, եւ մէկալ կողմանէ որպէս զի ինք զինք հաւատացելոց առջեւ աւելի սիրելի ընէ, հասարակութեան աղերս մը մատոյց, որուն մէջ կը խնդրէ, թէ որովհետեւ երբեմն անանկ եկեղեցական պատժական խընդիրներ ու դէպքեր կը պատահին, որոնք հարկ է որ սուրբ Աթոռին դիմացն ելլեն եւ հոն շարունակուին ու լմըննան. անոր համար տրուի իրեն քաղաքային վարչութեան կողմանէ վեց խորհրդական, որոնց հետ այն դէպքերուն քըննութիւնն ընէ. եւ այս՝ ըստ մասին եկեղեցական, եւ ըստ մասին աշխարհական անձինքներէ կազմուած խորհուրդն այն խնդիրներն լմընցընէ եւ անոնց որոշումն ընէ։*

Աս բանս անշուշտ, ի բարի հաւատս, անոր համար ըրած էր, ինչպէս ըսինք, որ ունեցած հեղինակութիւնն անխախտ պահէ, եւ ըստ իւր կարծեացն, աւելի եկեղեցւոյ՝ քան թէ աշխարհական ատենին վերաբերեալ բարոյական խնդիրներն երբեւան չելլեն. ու ժողովուրդը՝ յայսմ մասին եկեղեցիէն, եւ ո՛չ թէ քաղաքային իշխանութենէն ունենայ իր կախումը։

Բայց հասարակութիւնն այս բանիս չհաւանեցաւ, թերեւս անոր համար, որ ժողովրդապետն աւելի չզօրանայ։ Մէկալ կողմանէ ալ այնպէս կը համարէր, որ այն տեսակ դէպքերը՝ չէ՛ թէ եկեղեցւոյ վարչութեան, հապա քաղաքային իշխանութեան կը վերաբերին. ու աս վերջինն ունի իր յատուկ դատաւորն ու խորհրդականները։ Ուստի ասոր նկատմամբ լաւ մը խորհրդածելէն ետեւ, ունեցած կարծիքն 1755 դեկտ. 23ին ժողովրդապետին առջեւը դրաւ, ու յայտնեց չէ թէ միայն իրեն, այլ նաեւ զօրացած եղբայրութեանց հիմնադիրներուն, որ զգուշանան եւ ուրիշ բանի չխառնուին, բայց եթէ ինչ որ ընկերութեան կանոններն իրենց առջեւը կը դնեն, եւ ինչ որ օրէնքներն իրենցմէ կը պահանջեն։

Ահա ասոր նկատմամբ ձեռուընիս եղած արձանագրութիւնները։

“1755. Դեկտ. 23 Ելիզաբէդան։

Պատճառ գրոյս այս է, ինչպէս որ առաջ տվաւ[1] Պ. քաղքին գերյարգելի Տէր Մինաս

---

[1] Առաջ տալ, Դրանսիլուանիացւոց լեզուաւ ը՝ առաջարկել, առջեւը դնել կը նշանակէ։

խնկանոսեանց, ագդուալիս[1] բլէպանուսն սոյն քաղքին, թէ հաստատէ Պ. քաղաքն վեց Աղաջայ իրեն գերյարգելութեանը քով, որ հանդիպելով դասմ տարպայ եկեղեցական գրէմինալիս գաւզաներ[2], եւ պէտք է որ սէնդ սէգին[3] դիմաց ֆօյդօդուիդ[4] ըլան. նայ ունենայ զայն վեց աղաչան քովն, որ զայն գաուզաներն տեսնուն եւ տէլիպէրօվադ[5] անին։—Հօս քաղվելով Պատուելի քաղաքն խորհուրդ անելով, այնպէս հաստատեցինք, թէ չի տրվիլ գերյարգելի վարդապետին աղաչաներ, որ գրէմինալիս գաւզաներ տէլիպէրօվադ անին. զէրայ գրէմինալիս գաւզաներն ունին գ.քաղքին Պիրօմն հետ սէնադին[6]։ Եւ չէ թէ աղաչաներ տայինք այլ նաեւ Պ. կորջօրացն պրասդավային ֆունտադօրնուն[7] ալ ինդիմալուիդ[8] կու անինք, որ ունենան սէմէշ[9] ըլլալու, օր աբսօլուդէյ[10], օղկայ բանի մօտ բրօպօվադ[11] չանին խարնըվէլու, քանձնմայ ինչ

---

1 Ճշմարիտ, իրական։

2 Պատժական խնդիրներ, դէպքեր։ Երկու բառն ալ լատիներէն է։

3 Սուրբ աթոռին. հունգարերէն է։

4 Folytatni, հունգ. բառ է. կը նշանակէ՝ շարունակել։

5 Խորհրդածել, լմընցընել, լատ. է։

6 Ծերակոյտ։

7 Հիմնադիր։

8 Ծանուցանել, հրատարակել։

9 Հունգարերէն բառ է. շրջահայեաց. աչքը բաց կը նշանակէ։

10 Լատ. է. ոչ ինչ կերպիւ, բացարձակապէս։

11 Փորձել, փորձ ընել։

որ Պ. պրասդավային կօնդակներն[1] կու գրին։ Թվոյն որպէս ալ վեր„։ — — —

Քաղքիս ժողովրդապետն, ինչպէս տեսանք, ունէր իր յատուկ բնակութեան տեղը։ Սակայն ասիկա երկու խուցով ողորմելի շէնք մ'ըլլալով՝ իր աստիճանին ու պատուոյն համեմատ չէր։ Ուստի եւ քաղաքային վարչութիւնն ու իրեն հետ Սուդան սկսան մտածել, թէ ինչպէս կանգնեն ժողովրդապետանոց մը մեծագործ եկեղեցիով մը, մանաւանդ որ ժողովուրդը բազմանալով Երրորդութեան եկեղեցին բազմութիւնն իր մէջն ընդունելու բաւական չէր։

Աս բանիս ձեռք զարնելու շատ քաջալերութիւն տուաւ մանաւանդ Ստեփ. Պօշնախեանց։ — Երբ քաղաքաբաշխութիւնը տեսաւ թէ որչափ մեծ է այս մարդուն լաւազգացութիւնն ու սէրը քաղքին յառաջադիմութեանը համար (որ մէյ մը 2000 ֆիորին տուաւ՝ տղոց ձրի դպրոց մը կանգնելու — եւ իմացուց միանգամայն, թէ միտք ունի նաեւ եկեղեցւոյ շինութեանը համար բան մ'ընելու։ Բաց ասկէ յանձն առաւ վերակացու ըլլալու եւ հոգ տանելու, ցորչափ կ'ապրի, որ այն եկեղեցին որչափ կարելի է շուտով կանգնուի։ — Մէկալ կողմանէ ալ Պօշնախեան՝ յոյս ունենալով թէ իրեն ազգականներէն ժառանգութիւն մը պիտի ընդունի, եւ այս եկամտին տասանորդին մէկ մասն եկեղեցւոյ շինութեանը պիտի նուիրէ) ուզեց քաղաքը զինք

[1] Կանոն, սահմանադրութիւն։

ցկեանս եկեղեցպան անուանել, եւ բոլոր ստակները, որոնք որ եկեղեցւոյն շինութեանը համար — նոյնպէս դաշնագիրներէն, սկաւառակէ, փեսաներէն եւայլն — ժողոված են, իրեն ձեռքն անցընել, այնու պայմանաւ, որ ինք ու իրեն օգնական եկեղեցպանը, Վարդան Եօլպէյեանց, այս ստակներու վրայօք իւր ժամանակին եկեղեցւոյ ու քաղաքաբաշխութեան հաշիւ ցուցընեն։

Ահա ասոր նկատմամբ եղած արձանագրութիւնը։

«Աստուծոյ ողորմութեամբն 1765 ունվարի 22 Ելիզաբէդան. քաղվելով Պատուելի Հասարակն վասն Աղաչայ Ըսթէփանին ո. Հ. Մարտիրոսի Պօշնախեանց. եւ տեսնելով որ իրեն հրամանքն մեծ պէնէֆիձիում[1] կու անէ պատուելի Հասարակին, գնելով ֆունտաձիա[2] վասն աղքատ տղոց որ կրադիս[3] սորվին շգօլայ[4], երկու հազար մաճրի, այսինքն 2000։ Նմանապէս նիաթ ունենալով Պ. Հասարակն, նոր ժամ ըլէպանիայի անելու, նայ զայս տարտն, այսինքն եկեղեցոյ շինութեան այլվի կրադիս վալօլուիդ[5] կու անէ, որ աշխատի մինչեւ որ ապրի ու զտարտը քալցնու[6] ու վերակացու ըլայ, որ եկեղեցին շին-

1 Բարերարութիւն, բարեգործութիւն։

2 Ձրի։

3 Հիմնարկութիւն։

4 Դպրոց։

5 Vállalni, հունգ. է. վրան առնուլ, յանձն առնուլ կը նշանակէ։

6 Տարտը քալցնել, Դրանսիլուանիայի ազգայնոց լեզուաւը, հոգ տանիլ, ետեւէն ըլալ կը նշանակէ։

վի։ Նմանապէս, այլվի մեծ յոյս ունենալով Աստուծոյ ողորմութեամբն, թէ իրեն հրամանոցն պայանուն[1] ըրինտ եկամուտ ունենայ, նայ զայս եկամուտիս տասանորդն ալ զկէսն բլէպանիային եւ զկէսն Սուրբ Անգօնի Աբբային կարքէն մեր քաղքին մէջ եղեալ ռէզիտէնձիային խոսդացաւ։ Վասն որոյ տեսնելով Պ. Հասարակն, որ այսպիսի պէնէֆիձիումներ կանէ վերոյ գրեալ Պ. Աղաչան հասարակին. ունանիմի վօդոյ[2] ութվեցաւ Պ. Հասարակին, որ ասօրվանէն ինտան, մինչեւ ի մահ Պ. Աղաչա Ըսթէփանը ու Հ. Մարտիրոսի Պօշնախեանց, Պատուելի Քաղքին եկեղեցեան ըլայ, որն որ ունանիմի վօդոյ կու ճանչնանք եւ գօնմիրմադ[3] կու անինք. որովհետեւ ասոր արաջ ունվարի 4ին դէր հաստատիլէյին, նա հիմի գօնմիրմօվադ կու անինք, այնպիսի գօնտիձիօնով[4], որ Պատուելի Քաղաքին պօնումն[5], այսինքն ըսդակն ուսգի որ ցըցնու Պ. Հասարակն թէ արնու վասն եկեղեցոյ շինութեան, նայ գրով պի արնու ձեռն ու սէպ պիտայ[6] Պ. Հասարակին, թէ ուրուխ, ինչ խարճիլ է։ Նմանապէս մեր ատաթին գօրայ որ ունինք որ գըլըօրէնք

---

1 Տեսակ մ'ազգականութիւն է։ Բայց չեմ գիտեր թէ որ աստիճանի։

2 Լատիներէն է. կը նշանակէ, լիուլի քուէով, միաձայն։

3 Հաստատել, ամրացընել։

4 Լատ. բառ է, կը նշանակէ պայման։

5 Ստացուածք կը նշանակէ, լատ. է։

6 Սէպ տալ, Դրանսիլուանիացւոց լեզուաւը, (տճ. հիսապ) հաշիւ տալ, հաշիւ ցուցընել կը նշանակէ։

կու գրինք, նայ հիմիկուցէն գըրօրէնքին մէջ կուզինք, որ երկու Աղաչայ եկեղեցընայ անուննալ գրվի, այսինքն Պ. Աղաչայ Վարդանինը, որպէս Պ. Պլէրին եկեղեցըան, եւ Աղաչայ Ըսթէփանինը որպէս Պ. Քաղաքին եկեղեցընայ անունը։ — Աս ալ հաստատվեցաւ վօղումով, որ ասգիձ ինտան Պ. Աղաչայ Վարդանը Խօլպէյեանց որպէս եկեղեցըան Պ. գլէրինը, պի քաղէ զդապախին ըսդակն, որպէս եկեղեցոյն մէջ կու քաղվի, եկեղեցոյ սէպի վրայ։ Եւ փեսաներն որ կու տան եկեղեցւոյ սէպի վրայ ըսդակ, նայ զայս ըսդակը պի քաղէ Պ. քաղքին եկեղեցըանը այսինքն Պ. Աղաչայ Ըսթէփան ու Հ. Մարտիրոսի Պօշնախեանց։ Ու եթէ մէկն եւ թէ մէկալ եկեղեցըանը ունենան սէպ տալու այս ըսդըկնուն, թէ ուրուխ կամ ինչի վրայ խալճիլին. — եւ ասոր գօրայ ունէնայ մեր Պ. քաղքիս եկեղեցըանը զերդումն դնելու. զոր Տէր Աստուած շնորհաւոր արասցէ, որ կարէնայ ծառայէլու ի փառս տեառն ու ի օգուտ հասարակութեանն. Ամէն։„

Եւ որովհետեւ հասարակութիւնն, ինչպէս նաեւ եկեղեցական վարչութիւնը կ՚ուզէր որ շինուելու եկեղեցին ու ժողովրդապետութիւնը քաղքին կենդրոնը, մեծ հրապարակին մէջ կանգնուի, արեւելեան մեծ շուկային դիմացն՝ ուր որ պարապ տեղ կար. անոր համար աս բանիս վրայ շատ մը խորհելէն ու խօսելէն ետեւ, որոշուեցաւ որ ամենէն յառաջ մեծ տեղ մը գնուի հոն։ Առ այս քաջալերեց զազգայիններըն՝ եպիսկոպոսական ակնարկութիւն կամ խօսք մը։—

Երբ Պօդօյի, Դրանսիլուանիոյ լատին եպիսկոպոսն Եղիսաբեթուպոլիս եկած էր, որ հիմ դնէ եկեղեցւոյ, հասկցուց ակնարկութեամբ անուղղակի կերպով մը հասարակութեան, թէ ժողովրդապետանոցը կանգնելու տե՛ղը նախ որոշեն, եւ ինք եկեղեցւոյ եւ ժողովրդապետանոցին շինութեանը համար սիրով 12.000 ֆիօրին մը կու տայ։ Երբ քաղաքն այս բանս լսեց, առանց յապաղելու որոշեց որ քաղքին կենդրոնն եղած կրկին երկիրները իւրացնէ, գնելով իրենց տէրերէն, այսինքն Աղա Միքայէլէն եւ Սիլվեսդրէն։ Իրօք ալ, քաղաքային ժողովոյն հաւանութեամբն այս երկիրները գնեց հասարակութիւնը 10.500 ֆիօրինի առժամանակեայ կերպով։

Աս առաջին քայլն առնելէն ետեւ անմիջապէս երկու պատգամաւոր խրկուեցաւ լատին եպիսկոպոսին։ Ասոնց այն պատուէրը տրուեցաւ, որ Գերապատիւ Անտոն Պօդօյանին դիմացն ելլելով յայտնեն, թէ թէպէտ հասարակութիւնը միտք ու կամք ունի ժողովրդապետանոց մը շինելու, բայց կարողութիւն չունի. որովհետեւ ստակ չկայ. եւ ծախուելու երկիրները սուղ են։ Սակայն, թէ որ ինք, եպիսկոպոսն, — ինչպէս խոստացած էր — ասոր ճար մը գտնելով, իբրեւ օգնութիւն՝ տայ 10—12.000 ֆիօրին մը, որ հասարակութիւնն այն գումարով գոնէ հարկաւոր երկիրը կարենայ գնել, այն ատեն անմիջապէս ժողովրդապետութիւնը շինելու կը սկսի։

Աս պատահեցաւ 1767 Մարտ 16ին։ — Պատգամաւորներն եպիսկոպոսին ներկայացան.

ու եղածն առջեւը դրին, այնպէս ինչպէս որ Հասարակութեան կողմանէ իրենց յանձնուեցաւ։ Եպիսկոպոսը՝ առաջարկութեան հաւանեցաւ, եւ իր խոստացած օգնութիւնը չըլլացաւ Հայ Հասարակութեան։ Թէպէտ մեզի թողուցած ժամանակակից արձանագրութիւններէն այնպէս կը հասկընանք՝ որ խոստացած ամբողջ գումարը տուաւ։—Եպիսկոպոսէն ընդունած ստակը Հասարակութիւնն առ ժամս բաւական համարելով, գնեց խնդրած երկիրները 10.500 ֆիօրինով, այնպիսի պայմանաւ որ այս գումարին կէսը 1768 յունուար ամսոյն մէջ, իսկ մէկալ կէսն անկից տարի մը ետքն, այսինքն 1769 յունուար ամսոյն մէջ վճարէ։ Ծախողները՝ մինչեւ այն ատեն պիտի կարենային տներուն մէջ բնակիլ. թողլով հոն անշարժական իրերը։

Ամէն ըսածնիս կրնանք աւելի լուսաւոր կերպով հասկընալ, եթէ որ քաղաքային ժողովոյն արձանագրութիւնները — զորոնք ահա ընթերցողաց առջեւը կը դնեմ — աչքէ անցընենք։

"Աստուծոյ ողորմութեամբն 767 մարտի 16 Էլիզաբէդան։ — Պատճառ գրոյս այս է. ինչքէս որ քաղվելով Պաւլելի Մակիսդրադն եւ Գ. Սուդան եւ խորհուրդ անելով վասն բըլէպանիային շինութեան եւ երեւնալով Գ. Հասարակին թէ քիչ ֆունտուշ[1] ունի եկեղեցոյ շինութեան. որովհետեւ որ կուզէ որ զըլէպանիան

1 Fundus լատ. բառը հաւասարապէս կը նշանակէ, թէ՛ անշարժ ստացուած, երկիր, յատակ — ու թէ, ստակ, դրամագլուխ։

բիաձան բերէ եւ դընէ. այսինքն Պ. Աղաչայ Մի-քայէլին եւ իրեն Հրամանոցը աղըըրտացըն, նմանապէս Ա. Սիլվէստըրին եւ իրեն Հրամա-նոցը աղըըրտացըն խուրթերուն վրայ, որ կու գավըն մէկ դիհաց վիձինուշ[1], շանձին[2] օ-րամն. Եւ մէկալ դիհաց ո. հ. Ավաչայ Գիրգորին Նօրսէսեանց բօսդէրիդաշին[3] խուր-թըն, որն որ ծախիլին Աղա Սըհակին ո. հ. Գրիգորի Ագոնց. որ խուրթերուն վրայ ֆէլէշ[4] ըսդակ պէտք ըլալով, կու նայէր հասարակն, թէ արանց անոր մեծ պարդգի տակ կու գավի քաղաքն, եւ ինչ որ խօսդացած է պէնէֆագ-դօրնուն մօտէն, չիպի օգնէ նումայ ֆունտուշին գընելու. եւ չիպի մընար եկեղեցւոյ շինութեան։ Բայց որովհետեւ մեր Գերապայծառ եպիսկո-պոսն Պ. Անգօնիուս Պայդայեան, այն ժամանա-կին երփոր ըզֆունտամէդըն[5] օրհնիլ է եւ ըզ-քարըն դըրիլ է, նայ հասգըցուցիլէ Հասարա-կին թէ նումայ այս վերոյ գրեալ տեղըն րէզօլ-վադ[6] ըլայ հասարակըն ըզըլէպանիան անելու. զէ ըուինտ տեղ է։ Եւ թէ օր րէզօլվադ ըլան նայ պի նայի ֆունտուշ եկեղեցոյ շինութեան մինչեւ 10 կամ 12 հազար ըզլօթ մը։ Այս լըսելով Հասարակն, ռէզօլվադ եղաւ վերոյ գրեալ խուրթերն գընէլու։ Եւ հիպի քաղվելով Պատ-

---

1 Դրացի, լատ. է։

2 Ամբարտակ, թում. գերմ. բառ է։

3 Լատ. է, յաջորդք, սերունդ, ժառանգ կը նշանակէ։

4 Աւելորդ, հունգ. է։

5 Հիմն, հիմնաքար։

6 Resolvo, որոշել, սահմանել կը նշանակէ։

վելի Հասարակն եւ խորհուրդ անելով գօնգլուտալուիդ[1] վրաւ թէ Պատվելի Հասարակն խըրկէ երկու տէբուդադուշ[2] գերայպայծար եպիսկոպոսին մօտ, յայտնին թէ Հասարակն կամք ունի բըլէպանիայ անէլու. տարէ[3] չունի կարօղութիւն որովհետեւ փունտուշն թանկ է։ Ցարէ թէ օր գերապայծար եպիսկոպոսն անէ մէկ ճար մը եւ գըտնու մէկ անպէս փունտուշ մը, օր մագար ըզփունտուշըն կարէնայ գընէլու Հասարակն. այսինքն ընկերէ 10 կամ 12 հազար ըղլօթ ալ ուպէս լըսելինք թէ խոսդաձիլ է, նայ Հասարակն պի ըսկսէ ըզըլէպանիան։ Բայց թէ օր չի գտնուր կամ չի ձըցնուր գերապայծար եպիսկոպոսն այնպիսի փունտուշ, օր կարենանք զժամին փունտուշը գընելու, նայ բանը վար պի մընար[4] ատ ինդէրիմ[5]. մինչեւ կարօղութիւն ունենար Հասարակն։ Բայց որովհետեւ պէտք է, որ Ա. տէբուդադուշներն յայտնեն գերապայծար եպիսկոպոսին, թէ ինչ է եկեղեցոյն փունտուշին գինը — ութվեցաւ որ պազար անէ զփունտուշներն հետ վերոյ գրեալ Աղաչանուն à գօնտիձիօնէ[6], որ թէ օր փունտուշ ցըցնու գերապայծար եպիսկոպոսն, որօվ կարենան զեկեղեցույն փունտուշըն գընելու, նայ պազարն պա-

1 Concludo, փակել, լմնցընել, սահմանել, որոշել։

2 Երեսփոխան, պատգամաւոր։

3 Բայց, սակայն։

4 Վար մնալ, Դրանսիլուանիացւոց լեզուաւը կը նշանակէ՝ ի կախ մնալ, այնպէս թողուլ։

5 Լատ. է, առ այժմ, առ ժամանակեայ։

6 Պայմանաւ։

զար պիլայ, զէրայ Հասարակն կարողութիւն չունի այսպէս թանկ փունտուշ գնելու եւ եկեղեցի անելու: Ասոր գօրայ ըսկսեցինք պազար անելու հետ վերոյգրեալ Աղաչանուն, եւ շատ տիշքուդաձիային[1] էտեւանց ույմիշվեցանք[2], երկու բային տալու ըստակ 10.500 այսինքն տասն հազար ու հինք հարուր. եւ Աղաչայ Անկսէնտին եւ Ա. Սիլվէսդրին փային վրայ խոսդացաւ Պատուելի քաղաքն երկու եուրդ . . . : Գիտացվի օր վերոյ Աղ. ծախողներն կուզէին իրենց հրամանոցն ծախած խուրթերուն վէրայէն զփատէղէնը, այսինքն վերի տներուն ըզդըրները, չարհըներըն[3] եւ չօբբերըն[4], հարըններն[5]. Նայ այնպէս ույմիշվեցանք, որ ոչ մէկ բան մը անկից չի կարենան առնէլու, հապա որպէս օր ատաթ կայ. ըսդօլներ, տապչըներ, ալմարներն[6], որոնք զըտի[7] մէջ չիլան զխտուրդ եւայլն: Նմանապէս թէ մէկ փայն ու թէ մէկալ փայըն պի կարենան կենալու տըներու մէջ դէր երկու տարի, մինչեւ օր իրենց Հրամանոցն տընէր անին եւ այս ըլմընալով ունենան դուս էլէլու:

“Ասուծոյ ողորմութեամբն 767 Հոկտեմբերի 17. Էլիզաբէդան քաղվելով պատ-

---

1 Վէճ, բանակռուութիւն:

2 Որոշեցինք, միաբանեցանք:

3 Ցարկին տախտակները, կը նշանակէ կարծեմ:

4 Կառաց կայանք, գերմ. Schoppen բառն է:

5 Գոմք. ախոռ:

6 Զգեստեղէններ ու ապխտակեղէն պահելու արկղ:

7 Վալաքերէն բառ է, կը նշանակէ, սեմ. պատ. — ասկից եկած է, զիտուրդանել — որմի մէջ դնել, զետեղել, որմնապատ ընել:

վէլի Հասարակն. վասն խորհրդին, որն որ եղի-
լէ ասոր առաջ. տարոյս Մարտի 16ին. վասն
բըլէպանիային կողմանէն, որ գըրած է թէ գե-
րապայծառ եպիսկոպոսն աղէկ ֆունտուշ ցըց-
նուր, որ կարենայինք գօնեայ զժամին ֆունտուշըն
գընէլու ծախօղ Աղաչանուն մօտէն նայ, պի
գընենք։ Եւ որովհետեւ Աստուծոյ ողորմու-
թեամբն վերոյ գերապայծառ եպիսկոպոսն տը-
վիլէ ֆունտուշ ու Հ. գերյարգելի վարդապե-
տին, Տէր Մինասին Խնկանոսեանց պօնումէն[1]
Սումամն, նայ գօնվէնիալուիդ[2] եղաւ Պատուելի
Հասարակն հետ Աղաչայ ծախօղներուն, որ հիմ-
պի այս գալ ունվարի ամսուն ունենանք զկէս
ըստակն քանով որ պաշար արիլենք, տալու. այն-
պիսի գօնտիձիաներով, որ դէր մէկ տարիմն ու-
նէնան մէջվըներն կէնալու, մինչեւ որ տըներ ա-
նին իրենց Հրամանոցը. եւ երբոր էլլին տըներուն
նայ, պի վիճարվի զմնացած կէսն ալ ու գըվիդ[3]
պիլայ։„

Եթէ մտադրութեամբ կարդանք կրկին
արձանագրութիւնները, կը գտնենք թէ ասոնց
մէջ, ոչ միայն ժողովըրդապետանոցին, հապա
մէջ ընդ մէջ նաեւ եկեղեցւոյն կանգնմանն ու
շինութեանը վրայ է խօսքը։ Թէպէտ տեղ մը

---

1 Արձանագրութենէն այնպէս կը հասկըցուի, որ
թէպէտ եպիսկոպոսն տուաւ կամ մանաւանդ ցուցուց օգնու-
թիւն մը, բայց ամէնայ Խնկանոսեան ժողովըրդապետին
տուացուածքէն էր։

2 Convenio, բանի մը նկատմամբ ժողովուիլ, խօսիլ,
միաբանիլ կը նշանակէ։

3 Պարտքէ, պարտաւորութենէ ազատիլ։

մէկը՝ ուրիշ տեղ, մէկալը դուրս ձգուած է արձանագրութեան մէջ։ Ասոր պատճառն անշուշտ ան է, որ միեւնոյն միջոցին խորհրդականաց գաղափարին մէջ հաւասարապէս յղացած ու խորհրդածութեան եւ խօսակցութեան նիւթ եղած էր, թէ՛ մէկին եւ թէ՛ մէկալին շինութիւնը։

Աս բանս այնչափ աւելի իրաւունք ունինք այսպէս ենթադրելու, որչափ ուրիշ տեղ մըն ալ, միեւնոյն նիւթին վրայ ըլլալով խօսքը՝ հոն ալ, եկեղեցւոյն եւ ժողովրդապետութեան շինութիւնը մէկզմէկ կը փոխանակեն։ — Եկեղեցին ու ժողովրդապետանոցը՝ միեւնոյն միջոցին ու իրարու կից պիտի շինուէին. սակայն աս բանս չյաջողեցաւ։ — Շինուեցաւ երկուքն ալ. բայց ո՛չ միեւնոյն ժամանակ եւ ո՛չ ալ քովէ քով։

Երբ Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք, իրենց գլուխն եկած այլեւայլ խառնակութիւններէն քիչ մը հանգչեցան, առաջին գործքերնին եղաւ իրենց համար աստուածային պաշտաման տեղ մը, եկեղեցի մը կանգնել։ Ուստի — ինչպէս ուրիշ տեղ ալ տեսանք[1] — ձեռք ձեռքի տուած ամենայն եռանդեամբ սկսան եկեղեցի մը շինել, հիմակուան վանէ կոչուած հրապարակին մէջ. 1723 ին։ Աստուծոյ օգնութիւնը հետերնին էր. վասն զի քիչ ատենի մէջ (1725) լմնցուցին անոր շինութիւնը։ — Դրանսիլուանիոյ լատին եպիսկոպոսը՝ Պարոն Յովհ. Անդոլֆի կոմս, Սի-

1 Տես Հայք Եղիսաբեթուպոլիս, Ա. Հատոր. էջ 27։

*կիզմունտոս Գօրնիժի՝ երկրին այն ատենի վերին կառավարին ներկայութեամբը զանիկայ օծեց։*

*Աս երկրորդ, քարաշէն եկեղեցին Ս. Երրորդութեան նուիրուեցաւ. եւ Հին Ժամ անունով — թէպէտ շատ ողորմելի ու երեսէ ձգուած վիճակի մէջ — մինչեւ այսօր կանգուն կեցած է։*

*Սակայն այս եկեղեցին, բաց անկէ՝ որ շատ ցած տեղւոյ մը վրայ էր — որովհետեւ շատ հեղ, եւ ի մէջ այլոց 1763ին Գիւգիւլլէօ գետին ալիքներն անոր նոյն իսկ մինչեւ սըրբարանը հասած մտած էին, — չէր ալ համապատասխաներ օր ըստ օրէ բազմացող հաւատացելոց թուոյն։ Անոր համար ազգայինք մտածեցին, որ մէկ կողմանէ ապահով եւ մէկալ կողմանէ մեծագոյն եկեղեցի մը կանգնեն։ Ուստի համոզուելէն ետեւ, որ այսուհետեւ այս եկեղեցին թէ իր ցած դիրքին ու թէ միանգամայն փոքրկութեանը համար բաւական պիտի չըլլայ հաւատացելոց ապագայ պիտոյքը լեցընելու — շատ մը խորհելէ, խօսելէ ու վիճելէ ետեւ — որոշեցին, որ մեծ հրապարակին արեւելեան կողմը՝ քաղքին ամենէն գեղեցիկ ու բարձր կէտին վրայ, Աբաֆիեան դղեկին դիմաց, նոր կաթուղիկէին շինութիւնն սկսին։*

*Իրօք ալ, 1766ին՝ մեծ հանդիսութեամբ անոր հիմը դրուեցաւ Պայդայեան լատին եպիսկոպոսէն։*

*Թէպէտ ասոր վրայ այն ատենի քաղաքային ժողովքներուն մէջ քիչ բան կը գտնենք գրուած, սակայն եկեղեցւոյն պատմութեան՝ կամ*

մանաւանդ տարեգրութեանցը մէջ յաջորդ յիշատակաց արժանի արձանագրութիւնը կը կարդանք ։

«Շնորհօք եւ օգնութեամբ Աստուծոյ։ Ի հայրապետութեան Սրբազան Պապին Երեքտասան Երրորդի Կղէմայ. ի կայսրութեան օգոստափառ Յովսեփայ Երկրորդի եւ թագաւորութեան Մաճարաստանի, եւ ի պետութեան գաւառիս Առաքելեկան թագուհւոյն Մարիա Թերեզիային. եւ ընդ քրտնաջան եւ Առաքելաշնորհ հովուապետութեամբ Գերապայծառ Եպիսկոպոսին Յովսէփ Անդօնի Պօղօսեանց եւ ի Զօրապետութեան Քաջընտիր Անդրէա Հատիքեանց եւ յորժամ լռէր Աւաքէրիցութիւնն, զՔահանայական պաշտօնն կատարէին վերապատուելի Տեառք, Յովհաննէս Քրէջունի լուսիկեանց, Թեոդորոս Մէտիաշցի, Անդօն Բադրուպանեանց. Վարդան Յարութիւնի, Սէրովբէ Մարկոսեան։ Եւ Դատաւորութեան Աղա խընկանոսի Ամիրայեան. եւ ի քաղաքական գրագրութեան լուսիկի Ամիրայեան. Ղազարի Օհանեանց, լուսիկի Թորոսեանց. լուսիկի Ոսկերիչեանց, Նիկօլի Կաշբարեանց. Անկսենտի Մանուկի Խսիգուձեանց, Գոտէրի Վարդիկեանց, Թորոսի Ունանեանց. լուսիկի Բադրուպանեանց եւ եկեղեցպանութեանց վարդանի Եօլպէյեան եւ ստեփաննոսի Պօշնախեան. եւ ի ջատագովութեան Քաղաքական բարւոյն Աղա Մանուկի Ջիգիեանց. եւ ի գրագրութեան Պատուելի Սուդային Պետրոսի Ջիգիեանց. խաչգօյի Սընբէտրեանց եւ այլ պատուական

Քաղաքացւոց զտաճարս զայս ի փառս Ամենակալին Աստուծոյ, ընդ պաշտպանութեամբ սըրբոյն Եղիսաբեթայ. յատուկ ծախիւք Եղիսաբեթ քաղաքս այս Հայոց, ընծայէ, Նուիրէ եւ Մատուցանէ. Յամի Տեառն փրկութեան մերոյ 1766 յամսեանն Յուլիսի 22 օրն. եւ ըստ Հայոց ՌՄԺԵ. որ է Հազարերորդի. Հարիւրերորդի Հնգետասան Երրորդի„:

Կարծես թէ Աստուծոյ մատը կար գործոյս մէջ՝ այնպէս զարմանալի արագութեամբ յառաջացաւ հոյակապ շէնքը: Ամբողջ հիմն ու սրբավայրը լմընցաւ տարւոյ մը մէջ: — Սակայն հարկ եղաւ, որ քանի մը տարի դադրի շինութիւնն, այլ եւ այլ արգելքներու, տեսութեանց տարբերութիւններու եւ ուրիշ՝ մեզի անծանօթ պատճառներու համար: Ի մէջ այլոց, որովհետեւ յատակագիծն արտաքոյ կարգի մեծ առնուած էր, հարկ եղաւ քիչ մը պզտիկցընել:

1777ին՝ քաղաքային վարչութիւնը, քահանայք եւ բոլոր ժողովուրդը, միացեալ զօրութեամբ, Նորէն ձեռք զարկին շինութեան, եւ ա՛յնպէս եռանդեամբ ու յաջողութեամբ շարունակեցին անոր շինութիւնը, որ վեց տարի ետքն, այսինքն 1783ին՝ ի վիճակի եղան, ոսկեզօծ մեծ խաչերը՝ բարձրաբերձ աշտարակներուն գագաթը կանգնելու:

“Յուրախութիւն ամէն ազգայնոց, կ'ըսէ ժամանակակից յիշատակարան մը, հոն կը փայլէր՝ քաղքին կեդրոնը, մայր եկեղեցին„: — “Աս հանդիպեցաւ — ինչպէս եկեղեցւոյս պատմու-

թեանն արձանագրութիւնը մանրամասնաբար առջեւնիս կը դնէ — Հայոց ազգին Դրանսիլուանիա գաղթելուն 129երորդ. Եղիսաբեթուպոլիս գալուն 98երորդ, առաջին առանձնաշնորհութեան կոնդակին 55երորդ. եւ Եղիսաբեթուպոլսոյ երկրակալութիւնը գնելէն եւ այս մասին ընդունած թագաւորական տուչութեան թղթին ընդունելութենէն 25 տարի ետքը։

Կրկին աշտարակաց խաչերուն տակն եղած ահագին գունտերուն մէջ զետեղուած խել մը յիշատակարանաց մէջէն կը քաղենք միայն յաջորդները։

“Այս՝ Ս. Եղիսաբեթի պատուոյն նուիրուած եկեղեցին, որուն շինութեանը համար Մարիամ Թերեզիա թագուհին 6000 ռենական ֆիորին ընծայած՝ եւ ուրիշ հոգեւոր եղբայրութիւններ եւ ընկերութիւններ իրենց կարողութեանը համեմատ առատաձեռնութեամբ նպաստամատոյց եղած են — կանգնուեցաւ՝ Պրաշիանօ տոհմէն սերող Պիոս Զ. սրբազան Պապին, Յովսէփ Բ. հռոմէական կայսեր եւ Դրանսիլուանիոյ իշխանին կառավարութեանը. — արթուն հովուապետին Իգնատիոս կոմս Պաթեանի եպիսկոպոսին, պարոն Սամուէլ Պրուքէնթալ՝ վերին կառավարին, պարոն Փրանկիսկոս Բրայս զօրապետ իշխանին, Յովհ. Մկրտիչ Գարաչոնեան աւագերիցուն եւ ժողովրդապետին, Մարտինոս Բաբօյի, Անտոն Բորումպի, Յովհ. Տօմպի, Յովհ. Ոսկերիչեան, Մարտինոս Ֆորգեան, Անտոն Մուրատ եւ Գրիգոր Պետրոսովիչ հոգաբարձու քահանաներուն —

դարձեալ՝ ազնուական Անտոն Խսիգուց գլխաւոր
դատաւորին, եկեղեցւոյս բարերարին. ինչպէս
նաեւ իր խորհրդականներուն՝ Միքայէլ Տանիէ-
լեանին, Ղուկաս Տանիէլեանին, Մանուկ Չիքիին,
Պետրոս Դէօրէօքին, Գրիգոր Խսիգուցին, Մար-
տինոս Բաղրուպանին, Զաքարիա Զաքարեանին
Միքայէլ Չիքիին, Ղուկաս Էօդվէշին, Յակոբ
Բօբին, Ղուկաս Լէնկյէլին, Անտոն Մարգօնֆի
գլխաւոր քարտուղարին, Դոմինիկոս Սընդբէ-
դրեան օգնական քարտուղարին եւ Յովհաննէս
Մարգօնֆիին կամ Աբրահամին ատենապետու-
թեանն ատենը: — Շէնքին վրայ հսկողներն եղան՝
Էմանուէլ Զօքարիաշ, Պետրոս Խսիգուց, Պետրոս
Չիքի, Յովհ. Գապտէպով, Յարութիւն Գապտէ-
պով, Գրիգոր Ֆօրգ, Միքայէլ Խսիգուց, Թէոդորոս
Տանիէլ, Անտոն Սըհակեան, Յովհաննէս Զաքա-
րիաս, Պօղոս Դանիէլ, Անտոն Խսիգուց, Ստե-
փանոս Կաշբար, Անտոն Ղուկասեան, Թղթա-
տարութեան վերատեսուչ, Գրիգոր Բաղրուպան,
Աստուածատուր Ոսկերիչ, Խաչիկ Վիգոլ, Մար-
տինոս Չիգի, Մարտինոս Մասդիկ, Մանուկ Բօբ,
Տօնիկ Լէնկյէլ, Մարտինոս Քէլ, Անտոն Գապ-
տէպովի: Եկեղեցւոյ եկեղեցպաններն էին, Մար-
տինոս Եօլպէյ կամ Կաշբար եւ Ստեփանոս
Պօշնախ. — տիրացու՝ խաչիկ Էտիլի. — լա-
տիներէն եւ հունգարերէն լեզուներու ուսուցիչ՝
Իգնատիոս Չիրեագ, գերմաներէն կը սորվեցընէր՝
Կարոլոս Գիրշ. իսկ հայերէնը՝ Յովհաննէս Ֆրէն-
գուլ: — Շէնքին ճարտարապետն էր՝ Փրանկիսկոս
Խինդէր՝ Գլուժցին. ատաղձագործը Անտոն Իպէր-

լախ. առաջնորդ. որմնադիրը՝ Յակոբ Մարինի, պղնձագործը՝ Յովհաննէս Շտէլլէր. Նկարիչը՝ Ալբերդոս Զարվաշի։ — Այս միջոցիս Պաշպալովի երկրատէրութեան հոգաբարձութիւն կ'ընէր Գաբրիէլ Շարոշի. իսկ՝ անմահ յիշատակաց արժանի Մխիթարէն հիմնուած Վենետկոյ վանքին — հօտեղի՝ Պետրոս Գոբոց կամ Քելեան քաղաքացիէն եւ խորհրդականէն կանգնուած — վանատան անդամներն էին, Բարսեղ Լաւլովեան՝ մեծաւոր, եւ Փիլիպպոս Գապտէպովեան ու Բարթուղիմէոս Գապտէպովեան։

Այս յիշատակարանը մեր յատուկ ձեռօքը գրեցինք, մեր սերընդոցը համար. եւ մեր կնքովը կնքեցինք. Եղիսաբեթուպոլիս. 1783, Յուլիս 19։„

Մարտինոս Բաքօի յ. ձ. օգնական քահանայ եւ քարտուղար։„

Յովհ. Մկրտիչ Գարաչանի. յ. ձ. աւագերէց եւ ժողովրդապետ Եղիսաբեթուպոլսոյ։„

Դէպ ի Գիւգիւլլէօ գետ նայող խաչին տակի մեծ գնտին մէջ դրուեցան նոյն օրը խեղ մ'ուրիշ յիշատակարաններ։ — Ասոնց մէջէն մէկը կը բովանդակէ Հայոց այս կողմերը գաղթելուն համառօտ պատմութիւնը։ Այս՝ եկեղեցւոյ տան պատմութեանը մէջ (Historia domus) անցուած լատիններէն արձանագրութեան թարգմանութիւնը կըներկայացընեմ հոս ընթերցողաց համար։ — "Մեր նախնիները՝ առաջին հեղ

1654ին գաղթեցին Դրանսիլուանիա. եւ տեղաւորուեցան զանազան քաղաքներ, — Պրաշով, Պիստրից, Գանդա, Ճուրճով, Չիք Սեբվեղ, Չիք Շօմլյեօ, կուրկին: Ասոնց մէջէն մաս մը՝ Կերլայ Հայաքաղաք եւ ուրիշ մը՝ Պաշպալով գաղթեց: Հիմակ երկուքն ալ ազատ, արտօնացեալ քաղաքներ են: Միայն Հայեր կը բնակին հոս: Ասոնք՝ ինչպէս նաեւ Ճուրճովցիք ու Սեբվեղցիք յատուկ հայածէս քահանաներ ունին: Բայց մեր մէջէն շատերն առեւտրոյ պատճառաւ՝ Սիպին, Գլուժ, Այնուտ, Դուրտայ, Տըվա, Մարօշ-Վաշարհէյլ, Սասվարօշ, Սաս-Սէպէշ, Ուտվորհէյլ, Սապէկէն տեղաւորուեցան: Ուրիշները՝ Հունգարիոյ այլեւայլ քաղաքները — Նոկյ-Վարօտ, եւ Արատ. ուրիշները՝ Պանատ — գաղթեցին եւ հոն կալուածներ գնեցին: Այսպէս՝ ի մէջ այլոց ազնուազարմ Ղուկաս Լազար, մեր ազգին սիւնն ու պարծանքը, եւ ազնուական Սահակ Քիշեան, երկուքն ալ ասկից յառաջ մեր քաղքին խորհրդականներն էին:

Ազգային ամէնէն մեծ գաղթականութիւնն — անոր ազնուական մասն ու քահանայք — Մինաս Զիլիֆտար օղլու եպիսկոպոսին առաջնորդութեամբն, 1669ին եկան հոս Մոլտավիայէն: Ասոնք՝ եւտիքականութիւն եւ ուրիշ հերձուածող աղանդներ կը դաւանէին: Բայց Մինաս՝ Աւքսենտիոս Վրզարեան, Հռոմ սորված հայ քահանային աշխատութեամբն 1685ին Բալլավիչինի, առաքելական նուիրակին առջեւ

ուղղափառ հաւատքի դաւանութիւն ըրաւ ու դարձաւ Դրանսիլուանիա. ուր քիչ մը ետքը վախճանեցաւ: — Երկրորդ Լուսաւորչի մը պէս երեւան ելաւ Աւքսենտիոս Վրզարեան. եւ Հայոց փոքրիկ հօտը՝ հաւատքի լուսոյն մէջ սկսաւ զուարճանալ, ու կուրութեան մթութենէն արձակուիլ: — Մինաս եպիսկոպոսին մահուանէն ետեւ Ա. Լէոբոլտոս կայսեր եւ ԺԱ. Իննովկէնտիոս քահանայապետին գթութեամբն, Աւքսենտիոս՝ Ալատինայ եպիսկոպոսի տիտղոսով, Դրանսիլուանիոյ Հայոց առաքելական փոխանորդ անուանուեցաւ: Ինք — ինչպէս Անդրէաս Իլյէշ կ՚ըսէ — երբ լատին եպիսկոպոսն — բողոքականաց իրեն դէմ ըրած դաւաճանութեանց հետեւութեամբն՝ իր աթոռէն ելլելու հարկադրեցաւ — չէ թէ միայն հայ, այլ նաեւ լատին եպիսկոպոսին պաշտօններն ալ կատարեց:„

Եկեղեցւոյն տարեգրոցը մէջ գրուած կը գտնենք թէ աշտարակին գունտերուն մէջ զետեղուած՝ գրուած ըլլան նաեւ յաջորդ կրկին հայ յիշատակարանները:

Առաջինն, որն որ ազգ այնոց Դրանսիլուանիա գաղթելուն վրայօք կը խօսի — յայտնապէս՝ ճուրճովի հայ եկեղեցւոյն մէջ պահուած տարեգրոց յիշատակարաններէն առնուած է, մէկ երկու յաւելուածով եւ կրճատմամբ. այսպէս: “Ցաղագս գալըստեան եւ իջման ազգիս հայոց աստ ի ճուրճով եւ յետոյ ի Դրանզիլվանիայ: Ցամի Տեառն 1654 եւ ի Թուաբերութեանս արամեան ազգիս ռճգ. սկիզբն արար առնել

զընակութիւն աստանօր, Աղպէյն՝ մականուամբ Հըրձ կոչեցեալն եւ եղբայր իւր Վարդիկ։ Եւ զկնի սոցա եկն Մարտիրոսն Գանտրեան. եւ այլք բազումք յաջորդապէս։ Յետ սոցա, զկնի ոչ յոլով ամաց վասն խռովութեան եւ վրդովմանց երկրին Պուղտանաց որ ի պազագաց. Թաթրաց եւ այլոց ազգաց՝ վշտանայր զանազան վշտօք, հարկեցաւ ազգն մեր յիւրաքանչիւր քաղաքէ խոյս տալ եւ դիմել աստ ի Դրանսիլուանիայ։ Որք նախ աստանօր ի Ճուրճով արարին զընակութիւն ընդ ամս յոլովս. ապա աստի ցրուեցան ընդ այլ քաղաքս Դրանզիլվանիոյ։ Եւ ոմանք զկնի դադարման խռովութեանն, դարձան անդրէն յերկիրն Պուղտանաց. եւ ոմանք մնացին աստ ի Ճուրճով մինչեւ ցայսօր։ . . . Ապա մինչ եկն բազմութիւնն հայոց յերկրէն Պուղտանաց՝ եկն ընդ նոսա գերապայծառ եպիսկոպոսն իւրեանց, Մինաս Վարդապետն, Զիլիֆտար օղլու կոչեցեալն եւ այլ բազում՝ քահանայք, որոց անուանք են այսոքիկ. պատուելի Տէր Եղիայն Սէչօվցի, Մընտրուլ անուանեալն. որ էր աւագ քահանայ, ընդ բոլոր երկիրն Պուղտանաց։ Պատուելի տէր Խաչատուրն, Ճըպչըփան կոչեցեալն։ Պատուելի տէր Ալաչն, պատուելի տէր Զատիկն, պատուելի տէր Թորոսն. պատուելի տէր Մինասն Ասցի. պատուելի տէր Խաչատուրն Սուլիման, պատուելի Տէր Վարդանն Ասցի։ (Եւ սա է առաջին ժողովրդապետն տեղւոյս. որպէս ի վերոյ յիշեցաք լատին բարբառով՝ յեօթներորդ պրակն, երկրորդ մատենագրին)։ Պատուելի Տէր Աստուածատուրն

խօճայ Նիգօշեանն, որ աստ ձեռնադրեցաւ ի նոյն վերոյգեալ Մինաս Վարդապետէն։ (Եւ սա այս Տէր Աստուածատուրն, խօճայ Նիգօշեան, է նախկին պապն տոհմին, որ առ այժմ աստ ի քաղաքի մերում մականուամբ բաբայեան, կամ որ նոյն է բաբօյեան յորջորջեալ կոչի։)[1]„

Մէկալ հայերէն յիշատակարանն է յաջորդը։

“Եւ այս էր առաջին օրինակն (այսինքն. Շնորհօք եւ օգնութեամբ Աստուծոյ ի Հայրապ . . . եւ այլն. զոր վերը՝ 62 էջին մէջ արդէն յիշեցինք) զոր կամէաք ի նորաշէն եկեղեցւոյս վիմին յատակս հիմանցն դնելոյն արկանել։ Այլ քանզի յաղագս բազում պատճառաց ի վերայ եկելոց, զսոյն զայս գիր յայնժամ անդր դնել ոչ կարացաք վասն մշտնջենական յիշատակի ընդ այլ նամակս, աստ տեղադրել յարմար եւ պատշաճ երեւեցաւ, նաեւ հայկազեան բարբառով զդոյզն Մատենագիրս. որպէս զի ի դարս դարս ամաց, որք զկնի մեր գալոց են՝ ստուգիւ գիտացեալ ի միտս բերցեն, թէ աստ ուղղափառ հայք բնակեալք են. եւ զծէսս իւրեանց մինչեւ ցայսօր անխափան պահեալք են. եւ յամենատեառնէն պաղատանօք աղաչելով ի

---

1 Փակագծի մէջ առնուած պարբերութիւնները Ճուրճովի արձանագրութեան մէջ չկան. — ու փակագծայ, իսկ որ է փակագծի մէջինը ըսուածները՝ չէ թէ Ճուրճովի, այլ Եղիսաբեթպոլսոյ նկատմամբ ըսուած են։ — Համեմատէ արձանագրութիւնս. “Հանդէս Ամսօրեայի„ 1896 տարւոյն 66, 133 եւ 163 էջերուն մէջ հրատարակուած յիշատակարանաց հետ։

սրտէ ցանկամք, որպէս զի յաջորդք մեր ի Նոյն Հաստատ մնասցեն եւ զառաջնորդս իւրեանց, որք զայս տեղի խաղաղական բնակութեան Հոգւոյ եւ մարմնոյ հանգստեան պատրաստեցին, աղօթիւք յիշատակել մի մոռասցին. եւ առաւել եւս հոգւով չափ գուն գործեսցեն, զի եւս քան զեւս թէ ի հոգեւորս եւ թէ ի մարմնաւորս օր ըստ օրէ յառաջադէմ գնասցեալք, խաղաղութեամբ, միաբանութեամբ եւ միախոհ սրտի մտօք մինչեւ ի կատարած աշխարհի անվրդովք բնակեսցին, ի մեծագոյն փառս Աստուծոյ, ի գովեստ ամենօրհնեալ կուսին Մարիամայ, Հայոց ազգիս յօտար յերկրիս յատուկ հովանաւոր Մօր. ի Պատիւ Սրբոյն Գրիգորի Հայաստանեայց Առաքելաշնորհ լուսաւորչի, որոյ Հայրական գորովագութ բարեխօսութեամբն ի բազմազան դարանակալութեանց այլ ազգի թշնամեաց, ոչ միանգամ զերծեալ. յաղթօղ գտաք: Ցամի փրկչին 1783 եւ ի թուին Հայոց ումլբ„:

Թէ եկեղեցւոյն շինութիւնն որչափի եկած է, չենք գիտեր: Անոր ծախքին հաշիւը կամ գրուած չէ, եւ կամ կորսուած, աներեւոյթ եղած է: Գարաչոնեան աւագերէցն — այն ատենի հայ ժողովրդապետն, եկեղեցւոյն ծախքը կլոր հաշուով 50.000 ֆիորինի կը դնէ. որ քիչ մը քիչ, ու անհաւանական կ'երեւայ: — Թէ Մարիամ Թերեզիա 6000 ֆիորին տուած է՝ զայն գիտենք: Մանաւորք — ինչպէս վարը պիտի տեսնենք — շատ նպաստամատոյց եղած են եկեղեցւոյն շինութեանը:

Եղխաբեթուպոլսեցիք՝ այս միջոցիս, ուր տեղ, ինչ ստակ որ կրցան փրցընել, ժողովել՝ առած ու եկեղեցի կանգնելու գանձանակին մէջ դրած են: — Ասոր վրայօք, ի մէջ այլոց, յաջորդ դէպքը կը գտնենք քաղաքային ժողովոյն մէկ արձանագրութեանը մէջ: Մանուկովիչ խարիպին (աղքատ) քով՝ մեռած ատեն, գտնուեցաւ 102 ֆիօրին, զոր ինք՝ դռնէ դուռ քալելով ժողոված էր: Եւ որովհետեւ, ոչ մօտիկ, ոչ հեռաւոր ազգական ունէր քաղքին մէջ՝ հասարակութիւնն որոշեց, որ այն գումարը եկեղեցւոյ շինութեանը գործածուի. ետքէն գտնուած 17 ֆիօրին եւ 37 քառանդանին հետ:

"1784, 3^tia, 7^bris, ի վերայ ո. հ. Պողոսին Մանուկովիջ խարիպին 102 մճրուն եւ 21 պանին կօղմանէ, զօրըն մէրնէլուն պէս համպրելով գտվիլէ իւր սընկին մէջ. Պ. Մակիսդրադը եւ Հասառակը խորհուրդ արավ. թէ որոյ հետեւ զնոյն հոս քաղքին մէջ տըննէտուն ողորմութեամբ քաղքըղած էղիլէ, նոր եկեղեցու շինութեան մօտ applicoվադ ըլլայ[1], եւ խարճըվի իւր հոգուն համար. որն որ տըրվեցաւ ալ ասօրվանը օրը: — dto. գտվեցաւ եւ էկաւ նես յատուկ երեն ըսդակը, սմայ մաճարի 17, 37, զօրըն այլվի եկեղեցու շինութեան տրվեցաւ„:

Եղխաբեթուպոլսոյ ութը հոգեւոր Եղբայրութիւնները յաջորդ կերպով օգնեցին մայր եկեղեցւոյն շինութեանը:

1 Գործածել:

1. Սուրբ Երրորդութեան Եղբայրութիւնը տուաւ 2120 ֆիօրին։

2. Քրիստոսի չարչարանաց Եղբայրութիւնը տուաւ 1220 ֆիօրին։

3. Ս. Ստեփանոսի Նախավկային Եղբայրութիւնը՝ 5229 ֆիօրին։

4. Ս. Վարդարանի Եղբայրութիւնը՝ 2000 ֆիօրին։

5. Ս. Գրիգորի Լուսաւորչին Եղբայրութիւնը՝ 2670 ֆիօրին։

6. Ս. Յովակիմայ եւ Աննայի Եղբայրութիւնը՝ 103 ֆիօրին։

7. Ս. Միքայելի Եղբայրութիւնը՝ 406 ֆիօրին։

8. Աստուածածնի վերափոխման Եղբայրութիւնը՝ 495 ֆիօրին։

Մասնաւորներէն տուին՝

1. Անդրէաս Տիագօն Իլախի, Ս. Գրիգորի Լուսաւորչին խորանին շինութեանը համար՝ 100 ոսկի։

2. Աստուածատուր Վիգալեան խորհրդականը՝ 1771ին Թողուց, 100 ոսկի։

3. Մարտինոս Չիգիեան խորհրդականը՝ 1781ին, 100 ոսկի։

4. Գրիգոր Գիշեան՝ 100 ոսկի։

5. Ռոզալիա Փօրք այրին՝ 100 ոսկի։

6. Խաղախորդաց ընկերութիւնը՝ 70 հունգարական ֆիօրին։

7. Անտոն Խսիգուցեան 4 ոսկի։

8. Զաքարիա Զաքարեան ժողովեց 45 հունգարական ֆիօրին։

9. Ամիրայ Տանիէլ, թողուց 45 հունգ. ֆիօրին։

Եկեղեցւոյս մէջ գտնուած շատ մը յիշատակարաններուն մէջ կը գտնենք նաեւ կատարեալ վիճակագրութիւն մը այն ատենի (1784) Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց վրայ։ Ասոր համեմատ 1708էն մինչեւ 1751 ծնաւ Եղիսաբեթուպոլսոյ մէջ՝ 1070 տղայ, մեռաւ 1728էն մինչեւ 1751, 491 հոգի, պսակուեցան 174 հոգի։ — Նոր արձանագրութեան մատենին համեմատ, այսինքն, 1752էն մինչեւ 1784 ծնաւ՝ 1360 հոգի, մեռաւ 1742 հոգի, ամուսնացաւ 739 զոյգ։

Եթէ նոր արձանագրութեան թուերն աչքէ անցընենք՝ կը գտնենք թէ — 32 տարուան միջոցին մէջ — միջին հաշուով տարեկան ծնածներուն թիւն էր 45, մեռածներունը՝ 54, իսկ պսակեալոցը 23։ Ասկէ կրնանք իմանալ թէ արդէն ասկէ 112 տարի յառաջ, աչքի զարնելու չափ կը նուազէր ազգայնոց թիւը։ Ինչու որ գրեթէ 20 հարիւրչեայ աւելի էր մեռածներուն թիւը՝ քան ծնածներունը։

Այն միջոցին, այսինքն 1784ին, Եղիսաբեթուպոլսոյ Հայոց թիւն էր, 1682։ — Ասոնց մէջ կար՝ չափահաս էրիկ մարդ՝ 618, տղայ՝ 222. — չափահաս կնիկ՝ 610, անչափահաս աղջիկ՝ 232։ —

Շատ աւելի տխուր պատկեր մը կը դնէ առջեւնիս Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց վիճակն այսօր՝ եթէ որ համեմատենք վերի վիճակագրութեան հետ՝ վերջին 32 տարուան մէջ ծնածներուն ու մեռածներուն թիւը։ Ինչու որ՝ 1864էն մինչեւ 1896 ծնած է Եղիսաբեթուպոլսոյ մէջ 429 տղայ, մեռած է՝ 548 հոգի, պսակուած 147 զոյգ։ Ուսկից կը տեսնենք, թէ տարեկան ծնածներուն միջին թիւն է 13 հոգի, մեռածներունը 17՝ իսկ պսակելոցը՝ 4։ — Եւ որովհետեւ այսօրուան օրս Եղիսաբեթուպոլսոյ մէջ կայ 410 հայ, ըսել է թէ վերջին 112 տարուան միջոցին մէջ՝ ա՛յնչափ նուազած է. հոս ազգայնոց թիւն, որ մնացած է միայն չորսին մէկը։

## 3.

Թղթատարութեան պաշտօնը կամ վերատեսչութիւնն ըստ օրինի տէրութեանն էր, ամէն տեղ։ Ասանկ էր Եղիսաբեթուպոլիս քաղաքին մէջ ալ։ — Ինչպէս պաշտօնական, այնպէս ալ մասնաւոր քաղաքացեաց թղթերն ու ծրարները, այն ատենի սովորութեան համեմատ կ'երթային իրենց որոշուած տեղն, ամենաճիշդ կերպով ու ամենաապահով ճամբով։

Ինչպէս պատմութեանս ընթացքին մէջ առիթ ունեցանք տեսնելու, թղթատարութեան պաշտօնն արդէն նախընթաց դարուն առաջին կիսուն (1735), Եղիսաբեթուպոլսոյ մէջ կար-

գաղրուած էր։[1] Ի սկզբան քաղաքային վարչութեան ձեռքն էր ասոր հսկողութիւնը։ Բայց ետքէն մասնաւորաց յանձնուեցաւ կամ վարձու տրուեցաւ, որոշեալ վճարմունքով ու պայմանադրութիւններով։ — Առեն անցնելով՝ ինչպէս ուրիշ քաղաքներու, սանկ ալ Եդեսաբեթուպոլսոյ մէջ՝ տէրութիւնը ձեռք առաւ այս պաշտօնը, դնելով իւր կողմանէ վերակացու մը թղթատարութեան. Սուրհանդակի գործակատար կամ վերատեսուչ անունով։ Վերատեսչին պաշտօնն էր, նամակներն ու ծրարներն իրենց տեղն ապահովապէս հասցընել՝ ոտանաւոր կամ ձիաւոր սուրհանդակի ձեռօք եւ կամ կառօք. բայց իւր յատուկ ձիերովը։ — Ըստ ընդհանուր սովորութեան՝ ձիերը թէպէտ վերատեսչինն էին, այսու ամենայնիւ տէրութիւնն անուղղակի կերպով կը հոգար զանոնք, իբրեւ թէ իրենն ըլլային. ըստ որում ձիերուն համար կը հոգար խարն ու խոտը. դնելով քաղաքաբաշխութեանց վրայ պարտաւորութիւն, որ կտոր մը երկիր կամ դաշտ տրուի սուրհանդակի վերատեսչին, ուսկից թղթատարութեան ձիերն ունենան իրենց ապրուստը։

Տէրութեան այս կարգադրութիւնը մեծկակ քաղաքներու մէջ աւելի յառաջ գործադրուելու սկսաւ. իսկ փոքրագոյններու մէջ՝ ետքէն։ Այսպէս եղաւ Եդեսաբեթուպոլսոյ նկատմամբ ալ, նախորդ դարուն երկրորդ կի-

[1] Տես Հայք [illegible], Ա. Հատ. էջ 107։

*սուն՝ առաջին մասին մէջ։ — Վերին կառավարութիւնը, հրաման խաւրեց քաղաքային վարչութեան, որ երկիր մը տայ թղթատարութեան պաշտօնատէրին, այնպիսի ընդարձակութեամբ, ուսկից չորս ձի կարող ըլլան կերակրուիլ։ Քաղաքաբաշխութիւնը հրամանն առնելուն պէս խորհուրդ ըրաւ. եւ միաբան հաւանութեամբ հաստատուեցաւ, թէ սուրհանդակութեան վերատեսչին՝ քաղքին հիւսիսային արեւելեան կողմը, Բոտու-ըսբարդ ըսուած տեղը, չորս ձիու ապրելու չափ տեղ մ'որոշէ։ Կտրուած երկրին երկայնութիւնը պիտի ըլլար 120 ձողաչափ իսկ լայնութիւնը՝ 60։ Բայց միանգամայն ան ալ որոշեց քաղաքն, որ թղթատարութեան պաշտօնատէրն, այս երկրին համար գոնէ այնչափ վճարէ՝ որչափ կը վճարեն ուրիշ քաղաքացիք. այսինքն՝ մէկ ձողաչափին համար հինգ Փիօրին, կամ բոլորին համար 150 Փիօրին, միանգամ ընդ միշտ։ Ահա որոշումը։*

*Աստուծոյ ողորմութեամբն.* 1779 *ունիսի* 30*ինը։*

*Նկաւ գերաբարձր կուպէրնիումէն գօմիսիայ[1] վասն փօշդայ մէշդէրին[2] ինդէրդէնձիային.[3] խոտ ձիանուն բրնէլու, չորս ձիու։ Պատուելի Հասարակը տէձիտօվադ[4] արաւ, օր տանք բօշդա*

1 *Ցանձնարարութիւն։*

2 Postmeister *գերմ. բառն է. կը նշանակէ՝ թղթատարութեան վերատեսուչ, վերակացու։*

3 *Հոգատարութիւն, կերակրելը, պահպանութիւն։*

4 *Միաբանիլ, որոշել։*

մէշդէրին բօտու ըսբարդը չորս ձիու 120 խուլաճ երկան, եւ լան 60 խուլաճ։ Եւ գինը պիլայ խուլաճին, որպէս ողկայ քաղքըցու. եւ գինը կըտրըվեցաւ խուլաճինը 5 մաճրի, որ կանէ ամենայն մաճրի 150, մաճրի մաճլըքի։„

Որչափ ձեռուընիս եղած գրութիւնները կը ցուցընեն, հաղորդուեցաւ այս որոշումն կառավարութեան, եւ անոր ձեռօք Թղթատարութեան վերատեսչին։ Ասիկայ հաւանեցաւ այն միջոցին որոշման, բայց ետքէն բանը լաւ կշռելով, գտաւ թէ՝ քաղքին խոստացած երկիրը քիչ է։ Ուստի եւ քաղաքաբաշխութեան գրեց, որ իրեն տուած երկիրը՝ չէ թէ միայն բաւական չէ չորս ձի պահելու, այլ նաեւ շատ հեռու ըլլալով՝ անկէ խոտը քաղաք փոխադրելը շատ դժուարին է. եւ մեծ ծախքով կ'ըլլայ։ Ուստի խնդրեց, որ քաղքին կից Լունգա կոչուած դաշտին մէջ տրուի իրեն կտոր մը երկիր։ Բայց չէ թէ 120 ձողաչափ երկայն ու 60 ձողաչափ լայն հապա գոնէ 20 ձողաչափով մ'աւելի, ու այն ատեն գոհ կ'ըլլայ։

Քաղաքաբաշխութիւնն այս բանս չընդունեցաւ ու պատասխանեց, թէ ամենեւին հիմ չունի ըսածն որովհետեւ նախ. Իր՝ հեռու կարծածը հեռու չէ. ինչու որ ուրիշ քաղաքներուն Թղթատարութեան պաշտօնատէրներուն ընդունած երկիրներն ասկէ աւելի մօտիկ չեն։ Բաց ասկէ՝ քաղաքը նկատմունք ըրաւ ու անանկ երկիր մը փնտռեց ու տուաւ իրեն, որ ջրոյ ողողումներէն բոլորովին ազատ ու ապահով է։

Երկրորդ. Քաղաքը կը ճանչնայ այն երկրին որպիսութիւնն ու լաւութիւնը. որովհետեւ տարուէ տարի տասուերկու մինչեւ տասուիրեք կառք խոտ կը բուսցընէ. եւ ասիկայ չորս ձիու պահպանութեանը համար, չէ թէ միայն բաւական, այլ շատ ալ է: Իսկ ներս փոխադրելուն նկատմամբ յառաջ բերած պատճառն արժէք չունի. որովհետեւ այն խոտը ներս բերելու ծախքն ոչինչ բան է: Մանաւանդ թէ ձիերն անոր համար են, որ զանիկայ ներս բերեն:

Հասարակութիւնն այս պատասխանով չշատացաւ: Որոշեց որ վերին կառավարութեան գրէ եւ մէկալ կողմանէ տեղեկացընէ արքունի գանձարանն, որ թղթատարութեան վերատեսուչը դադրի զքաղաքն անհանգիստ ընելէն: Եւ ան, որ մէջ մը գոհ եղած էր յանձնարարներուն առջեւ՝ իրեն շնորհուած խոտի դաշտովը, եւ այն միջոցին անոնց հետ հաշտութեան բաժակն ալ խմած էր, եւ շնորհակալ եղած էր հասարակութեան. հիմակ ալ հանգիստ ու գոհ ըլլայ: Բաց ասկէ — աւելցուց քաղաքաբաշխութիւնը — որպէս զի այս կերպիւ տրուած ու. ընդունուած խոտի դաշտին համար, սուրհանդակի պաշտօնատիրոջ կողմանէ տարեկան վճարելի տուրքին նկատմամբ ալ հաստատուն գրուածք մ'ունենանք ձեռուընիս, հարկ է՝ որ ասոր վրայօք պարտականութեան թուղթ մը շինուի ապագայ ժամանակին ասկէ յառաջ գալու խնդրոց ու տհաճութեանց առջեւն առնելու համար:

*Ահաւասիկ ժողովոյն արձանագրութիւնը.*

«*Բօշդա մէշդէրին գօսիդի*[1] *տեղին* Convention-*ն*։

Anno Domini 1779, die 12a Mensis Augusti, Sub confluxu totius communitatis,[2] *առաջ ձան տալով*[3] *Պ. Հասարակը զԱ. Անտօնը ո. Հ. Լուսիկի գօրնմի*, qua[4] *այս տեղացի բօշդամէշդէրը, որ էկած գերաբարձր կուպէրնիումին* de dto 16a Juny Anni Praeteriti,[5] item[6] 8a Juny et 22a Juli Anni Currentis,[7] *գօմիսիանուն գօրայ զչորս ձիուն* intertentio*ին խոտի տեղն, զորն, թէպէտ ասոր առաջ դէր Տարոյս յունիսի* 30*ին կըտըրվիլ էր Հասարակով, թէ ինչ տըվի։ Բայց ինքը գօնդէնդ*[8] *չի ըլալով, նորէնը զիուր բաշուշները*[9] *արիլէ. որոյ գօրայ աս Ներկայ* 1779ta 8a Augusti unanimi Communitatis assensu,[10] *որ բօտու ըսբարդը* 60 *խըձ. լանքը եւ* 120 *երկանքը իւր չորս ձիուն աւելի քան պակաս* intertentio-*ի խոտի տեղը տըրվէր*, decidovat *կար*, in cujus conformitate[11] *զարաս* commissarius*ներ*[12] *ալ*

---

1 *Վալաքերէն բառ է. մանգաղով կտրելու տեղ. այսինքն՝ դաշտ կը նշանակէ։*

2 *Ամբողջ հասարակութեան ժողովելովը։*

3 *Կանչել, հրաւիրել։*

4 *Իբրեւ, որպէս, ինչպէս։*

5 *Նախընթաց տարւոյ։*

6 *Նմանապէս, նոյնպէս։*

7 *Առաջիկայ, ներկայ (տարւոյն)։*

8 *Գոհ, հաւան։*

9 *Քայլ, այսինքն սկզբնաւորութիւն, լատ. է։*

10 *Հասարակութեան միաբան հաւանութեամբը։*

11 *Այս բանս կարգի բերելու համար։*

12 *Յանձնակատար։*

ըրըտուիդ[1] արվիլին, որոնք զdecidoվադ տեղը յիշեալ Ա. բօշդամէշդէրին իրեն երկայօվը[2] տվիլին, եւ eatenus[3] իրեն հրամանքը նոյն ժամանակը Content ըլալով հետ գօմիսարիուշնուն, ալտամաշ[4] ալ խմիլէ. շնորհակալ գալով Պ. Հասարակին: Օր ալէս[5] զաս կեուպիւըն իրեն հրամանոցը, ալդօլ տըված[6] բօշդայի սէպի վըայ խօտի տեղին Annuumը[7] վիճարէր եւ մէկ Generalis Conventioի[8] թուխթ մը գրվէր վան ապագայի պիտոյութեան, թէ նոյն տեղէն Annua taxa-ն[9] ինչի մէջ ըլայ, հետեւապէս ինչ իւշով ad evitandas fori hinc evascituras dificultates[10] կի տըրվի բօշդային. որպէս ալ վեր ձան տալով զվերոյ Ա. Անտօնը publice[11] զիրեն հրամանոցը կամքը in sequentibus[12] Պ. Հասարակին գիմաց յայտնեց. թէ նոյն չափած եւ Commissarius նունմէ ալդօլ տված բօշդային սէպին վըայ խոտին տեղովը այլվի Content չէ: Այս պատճառին համար, վարտ զան, որ հէրու

1 Ըրըտուիդ անել, բերել տալ:

2 Ըստ պատշաճի, ըստ օրինի:

3 Այսր նկատմամբ:

4 Հունգ. բառ է. գնման, կամ սակարկութեան համար բան մը խմել:

5 Արդ, ուրեմն:

6 Ցանձնել, տալ:

7 Տարեկան, տարւէ տարի ըլալու:

8 Ընդհանուր սակարկութիւն, միաբանութիւն:

9 Տարեկան վճարք, տուրք, հարկ:

10 Ըսկէ յառաջ գալու դժուարութիւններուն առջեւն առնելու համար:

11 Հրապարակաւ:

12 Յաջորդ կերպով:

է. եւ վէգդուրան[1] խոտինը անկից մեծ խարճով է. դէր թիւը խուլաճնունը քիչ ըլլայ չորս ձիու Intertentioյի։ Հապա տրվէր դէր լունգան 20 խուլաճ ալ, ապայ Content պիլլայ։

Որ Declarationն չի ունենալով մէկ փունտամէնդ[2] մը. 1^mo անոր համար, որ չէ թէ միան անպէս հէրու չէ, որ excedat[3] անէր, օղկայ այս երկրի մէջի բօշդամէշդէրնու խոտի տեղըանք, այլ նաեւ դէր անպէս տեղ նայիլէ Պ. Հասարակը որ տայ, զորն ջուրը ամենեւիմբ մէկ ժամանակ մըն ալ ավըրելու չի կարնայ. հետեւապէս ի ժով մեծ սիկուրութեան[4] մէջ ad evitandas nempe futuras querelas[5] ուղացիլէ ու կուզէ դընելու։ 2° Գիտնալով զcapacitasը[6] նոյն տեղինը առաջմանէ, թէ մինչեւ 12, 13 արպայ խոտ եղած ըլլայ վըրան, կու գայ մէջէն թէ, 6 ամսին չորս ձիուն intertentioյին չէ քիչ, այլ untig[7] բավական ըլլայ. եւ դէր ավէլըքը՝ Վէգդուրան ալ, չէ, ինչպէս կի սէպէ. այլ բագադէլ[8] ըլլայ։ Ուրեմն որոյ հետեւ վերոյ պատճառներըն Ա. Անտօնինը չի ունենալով տեղ, ամէնը զՊ. Հասարակը կամի invictat[9] անելու,

1 Տեղափոխելը, տանիլը։

2 Հիմն, պատճառ։

3 Աւելի ըլալ, գերազանցել։

4 Ապահովութիւն։

5 Այսու ամենայնիւ ապագայ գանգատներուն առաջքին առնելու համար։

6 Կարողութիւն, այսինքն շատութիւն։

7 Զափէն աւելի, հունգ. է։

8 Նուազ, ոչինչ։

9 Անյաղթելի, անպարտելի։

նայ, unanimi Communitatis voto կորըվեցաւ, որ eatenus immediate relatio[1] արվի Գերաբարձր Կուպէրնիումին, որն որ Գամերային[2] ալ զբանը առաջ տար,[3] օր շատ անգամ յիշեալ Ա. Անտօնը դադարի ալ ալ զհասարակութիւնը eatenus molestaդ անելու, հաթէ տըված եւ մէմը գոնդէնդ եղած տեղովը հանգչի եւ գոնդէնդ ըլայ։»

Բայց բանն ասով չվերջացաւ։ — Ասոր նկատմամբ գրութիւններ ու գանգատներ գացին երկու կողմանէ ալ։ Արքունի գանձը՝ բնականապէս միշտ թղթատարութեան վերատեսչին թեր կ'ելլէր, անոր կողմը կը բռնէր. եւ անուղղակի կերպով զքաղաքը կը ստիպէր, որ տայ թղթատարութեան պաշտօնատիրոջ՝ այնչափ երկիր, որչափ ասիկայ կը պահանջէր։

Աս վիճակի մէջ մնաց խնդիրը, հինգ տարիի չափ։ Բայց տժգոհ էր թէ մէկ ու թէ մէկալ կողմը։ Քաղաքն — անոր համար, վասն զի թղթատարութիւնն ու արքունի գանձը զինք շարունակ անհանգիստ կ'ընէին, նորանոր պահանջմունքներով։ — Իսկ թղթատարութեան վերատեսչութիւնն — անոր համար, որովհետեւ բաւական ու պատշաճ երկիր չունէր իր ձիերը կերակրելու։

---

1 Ասոր նկատմամբ անմիջապէս տեղեկութիւն տրուի։

2 Արքունի գանձ։

3 Յառաջ տանիլ, Դրանսիլուանիացւոց լեզուաւը կը նշանակէ՝ հաղորդել, ծանուցանել։

Քաղաքը մտածելով, որ ասոր վերջն ուրիշ բանով չի լմննար, եթէ ոչ խաղաղութեամբ, ուզեց իր կողմանէ զիջողութիւն ընել. եւ 1784 Ագոստ. 13ի ժողովին որոշմամբը հաստատեց դաշինք մը, իր եւ սուրհանդակութեան վերատեսչին մէջ, այնպիսի կերպով մը՝ որ Լունգայի մէջ 114 ձողաչափ երկայն ու 65 ձողաչափ լայն երկիր մ'ընդունի սուրհանդակութեան վերատեսուչն, որչափ ժամանակ որ ինք ու իր յաջորդները թղթատարութեան պաշտօնը վարեն. տալով քաղքին, այս տեղւոյն համար, տարուէ տարի 15 հունգարական ֆիորին: Բաց ասկէ՝ իր տանն ետեւի կողմը վեց ու կէս ձողաչափ տեղւոյ վրայ — ինչպէս ամէն քաղաքացի ունի — ցմիշտ իրաւունք ունենայ. թէպէտ ինք ու իր յաջորդները պաշտօնի մէջ ալ չըլլան: — Եւ որովհետեւ, կ'աւելցընէ ժողովքը, հասարակութիւնը միայն խաղաղութիւն կը փնտռէ. անոր համար ամէն տեսակ անմիաբանութեան եւ խառնակութեան առջեւն առնելու համար՝ կը զիջանի, որ թղթատարութեան վերատեսչին երեք տարիէ ի վեր այս երկրիս ալ վճարելի տուրքը թողու. որպէս զի այն իրաւունքէն՝ զոր կը համարի կամ կ'երեւայ թէ ունի, ցմիշտ հրաժարի՝ չէ թէ միայն իր, այլ նաեւ իր յաջորդացն անուամբը:

Քաղաքապաշտութեան կողմանէ եղած առաջարկութիւնն ընդունուեցաւ. եւ անոր դաշինքի ձեւ տալով՝ ստորագրեցին թէ՛ հասարակութիւնն՝ ու թէ թղթատարութեան վերատեսուչը:

Ահա տարեգիրներուն մեջի թողուցած դաշնագրութեան բնագիրը։

"Ա. Բօշդամէշդէրին կանչի[1] տեղին գօնդրագդը.

Anno 1784, die 13a Augusti, Sub confluxu Magistratuali, առաջի տալով Ա. Անտօն Լուսիկ Թորոսեան բօշդամէշդէրը վասն excindendi in conpetentium Postalem terreni զPretensioն. post ultro citoque factas disputationes, ետքը անոր մօտ հակվեցաւ.[2]

1. Ասոր առաջ, ինչպէս 24ta Juny պատուելի Հասարակութիւնը excindat[3] անելով լունգան, ab una parte Orientem versus... occidentem versus autem partibus ab altera nemes Fundusը[4] ո. հ. Աղա Թումանի Ջատիկեան, վաթսունը հինկ խուլաճ տեղ լանքը, 114 խուլաճ երկանքը, ea conditione,[5] որ մինչեւ թէ ինքը, թէ Posteritasը, Postale Officiumին[6] մէջ ըլայ զվերոյ Assignoվադ[7] արած terrenumը

1 Կանանչ՝ սեռ. կանչի (այսինքն կանանչի = խոտի)։ Ամբողջին իմաստն է, Սուրհանդակութեան վերատեսչին արօտատեղւոյն դաշնագրութիւնը։

2 Ամբողջ տասցուածին իմաստն է. Ա. Լուսիկեան յառաջ բերելով թղթատարութեան համար կտրուելու պատշաճ երկրին պահանջմունքը՝ երկու կողմանէ եղած շատ մը վէճերէ ետեւ բանն անոր կապուեցաւ։

3 Կտրել, բաժնել։

4 Մէկ կողմանէ դէպ ի արեւելք... մէկալ՝ արեւմտեան կողմերէն, արքունական երկիրները. երկու ետքի բառը հունգ. է։

5 Այն պայմանաւ։

6 Ժառանգը՝ թղթատարութեան պաշտօնին մէջ ըլլայ։

7 Նշանած, ցուցուած։

բըռնելով, տարի գլուխ previe per[1] 15 մաճարի մաճառքի զդաքսան deponat[2] անէլու պարտական ըլլայ. ինչպէս

2. Գ. Հասարակութիւնը վերոյ կոռած Terrenumին քօվ տալով տանը ետեվանց, ինչպէս հի որ մէկ Civisի[3] $6\frac{1}{4}$ խուլաճ խոտի տեղ անոր մօտ et in casu eo,[4] օր Posteritasը վերոյ յիշեալ officiumին մէջ ալ չիլար, ամէնը զբուլոր իուշը[5] անխախտ պի ունենայ. եւ այսպէս

$3^{tio}$ Որոյ հետեւ բոլոր Հասարակութիւնը զմէկ միայն խաղաղութիւնը կու ընդունէ. կամենալով այսու հետեւ օր շատ սոյ differentiaները pro perpetuo sopiaլուիդ[6] ըլլայ, զասոր առաջի իրեք տարեկան դաքշան վերոյ գրեալ Ա. բօշդամէշդէրին pro aeterno condoնալուիդ[7] կու անէ. prout[8]

$4^{to}$ et ultimo,[9] զայս խաղաղութեանս պատճառաւն Ա. բօշդամէշդէրը, բոլոր Jusին, ինչ որ ասդից դուս ունենալու պի էրէմնար, pro perenni renuntiալուիդ[10] անելով, sub quovis praetextu,[11] ալ ալ այսուհետեւ, մէկ praetensio

---

1 Տարւէ տարի, ցմիշտ։
2 Վար դնել, վճարել։
3 Քաղաքացի։
4 Եւ ի դիպուածի որ։
5 Իրաւունք։
6 Տարբերութիւնները ցմիշտ վերցուցին։
7 Մշտնջենապէս կը պարգեւէ։
8 Որպէս զի։
9 Վերջապէս։
10 Ցմիշտ հրաժարելով, թող տալով։
11 Որեւէ պատճառանօք, պատրուակաւ։

մը intuitu excisionis amplius sibi terreni format[1] անելու (Sub paena Decretali, toties quoties rependenda)[2] վօլնիգ չիլայ,[3] թէ ինքը, թէ բօսդէրիգաշը։

Զոր բանը Sub dicta Confluxu libera Communitatis et Localis Postae Magistri consensu,[4] այսպէս հաստատելով, manuum stipulatione[5] ամպըրցընելօվ, կու տանք futuro Partium, pro cautela, usualis nostri Sigilli munitione[6] ամպըրցընելով.

Անտօն Պ. Ա. լուսիկի Թօրոսեան
Elisabet քաղքի Postae magister,„

Ասանկով՝ իբր վեց տարի տեւող վէճէ մ'ետեւ, հասարակութեան ու թղթատարութեան, կամ մանաւանդ արքունական գանձուն մէջ եղած անմիաբանութիւնը խաղաղ կերպով վերջացաւ։ — — —

Կարդացինք ու տեսանք կարգադրութիւններ, զորոնք դրաւ եկեղեցին ու քաղաքաբաշ-

---

1 Ասկից ետքը՝ երկրին կտրուելուն նկատմամբ այլ պահանջմունք մը։

2 Սահմանուած հատուցանելի պատժոյն պարտաւորութեանը տակ։

3 Հրաման, թոյլտուութիւն չունենայ։

4 Յիշեալ ազատ հասարակութեան ընդհ. ժողովին՝ եւ տեղւոյս թղթատարութեան վերատեսչին հաւանութեամբը։

5 Ձեռաց երդմամբ, խոստմամբ, այսինքն ստորագրութեամբ։

6 Ապագայ սերնդոց ապահովութեանը համար, մեր սովորեալ կնքոյն ամրացընելով։

խութիւնը ամուսնացելոց նկատմամբ: — Հասարակութեան մտադրութիւնն ուրիշ բաներու վրայ ալ տարածուեցաւ այս միջոցին: — Որբ տղոց ապագայ վիճակն ապահովցընելու համար ալ հարկ էր որ քաղաքը կարգադրութիւն մ'ընէ, օրէնք մը հանէ: Աս բանս ալ իմաստութեամբ կատարեց վարչութիւնը:

Ասոր պատճառ տուած էր դէպք մը, որ պատահեցաւ Սիբվիզ, մեր ըսածէն իբրեւ 35 տարի յառաջ: — Ինչպէս ընթերցողաց ծանօթ է, այս տեղն Եղիսաբեթուպոլսոյ վերին իշխանութեան տակն էր: — Արդ գեղին պիրովը՝ Հայոց ընկերութեան ծանոյց՝ թէ որբ աղջիկ մը կը պահանջէ, որ իր հանգուցեալ հօրեղբօրմէն ու եղբայրներէն իրեն թողուած ժառանգութիւնն՝ ըստ արդարութեան եւ ըստ օրինաց իրեն տրուի: — Պաշպալովի Հայոց ընկերութիւնն, իր առջեւը դրուած խնդրոյն վրայ խորհելէն ետեւ, յաջորդ որոշումն ըրաւ. ու վճռեց թէ. "Մեր նախնիներէն մնացած բարի սովորութիւնն անխախտ պահուի: Ծնողացմէ մնացած ստացուածքն՝ իրենց զաւկըներուն մէջ բաշխուի. վասն զի այսպէս կը պահանջէ իրաւունքն, ու աս է արդարութիւնը:„

Ահա դէպքն ու որոշմունքն՝ ըստ արձանագրութեան: "1743 Օգոստոսի. 23. Պատճառ գրոյս այս է. ինչպէս որ եկաւ Աղաչայ Պետրոսը գիրգորեանց կեցող ջուգ սիրիզը եւ Պիրօվ նոյն կեցող հայերուն. Պատուելի գումբանիային դիմաց դրավ խորդութիւնն վասն իւր

նէքօղային[1] համար, այսինքն իւր աղբօրը դըսդերը, որն որ մերիլէ 1742 մէջ: Նոյն նէքօղանալ ու բախդնալ օ. հ. Տօնիկ Աբրահամենց. ու մնացիլէ իրենցմուն մէկ աղչիկ տղամն, որն որ այս տադումին[2] կու գտվի, նայ տարի ու կէս է. ու կի փնտուէր վերոյ ասացեալ ողորմած հոգի տօնիկին աղբըրտացընմէ, զիւր աղբօրը խաչատրին տված ճեհեզը,[3] որն որ տված էղիլէ դըստերն. ու նմանապէս զպէրնաներն ալ, որն որ ողորմած հոգի հայրը տված էղիլէ նայ, իւր դըսդեր. եւ թէ օր կէնայ էք մը սէրմիայ[4] փայ անէլու նայ ունենան աղբըրտիքն գլըման փայը տալու զայս որբ տղին, ինչպէս մեծ աղբօր նոցա տըղի:

Զայս վերոյ գրեալ բաներուն վրայ:

Խորհուրդ արավ Պատուելի գումբանիան ու գտաւ որ մընայ բանը հասդատ. ինչպէս մեր նախնեացըմէ իսգըզբանէ մնացած բարի ու հասդատ սովորութիւնն, ծընօղաց բարին մնացած ունենան զավկին տալու. զէ այն է արդարութիւնը:„

Որբ տղոց եւ անոնց ստացուածքին նկատմամբ եղած կարգադրութիւններն աւելի եւս կոկուեցան ու կարգադրուեցան քանի մը տարի ետքը. եւ օրէնքով ալ հաստատուեցան, երբ քաղաքն սկսաւ ծանրութեամբ մտածել, թէ ինչպէս որ ամէն ազգ ու քաղաք ունի սովորու-

---

1 Լատ. է. եղբօր որդի, կամ եղբօր դուստր:

2 Լատ. թուական:

3 Օժիտ, պաշտաստական, տաճկ. է:

4 Զարդարանք, հանդերձանք, տաճկ. պիտ՛որ ըլլայ:

թիւն ու օրէնք մը, որուն համեմատ կը վարուի եւ կը գործէ նմանօրինակ դէպքերու մէջ, ասանկ ալ ըլլայ ազգայնոց համար։ — Ուստի 1777 Հոկտ. 28ին, ընդհանուր ժողով մը գումարելով հասարակութիւնը՝ շատ խօսուեցաւ ու վիճուեցաւ այն խնդրոյն վրայ թէ, ինչ ընելու է քաղաքաբաշխութիւնն՝ երբ տան տէր մը մեռնելով՝ տղաք ու ստացուածք մնան. եւ չըլլայ գերդաստանին մէջ մէկն, որուն կառավարութեամբը մեռած տանտիրոջ ստացուածքն ապահով ձեռաց մէջ ըլլայ։

Ինչպէս որ առաջարկութիւնը լաւ, անանկ ալ որոշումն պատշաճ ու ժամանակին համեմատ, իմաստութեամբ լուծուեցաւ՝ զոր հեռատես օրէնսդրութեամբ մը՝ գրի ալ անցուց մասնաժողովը։ —

Ասոր մէջ՝ ըսելէն ետեւ թէ, խոհեմ եւ ընդունելի բան է, մեր մերձակայ ազգերուն առաջնորդաց՝ իրենց ապագայ սերնդեանը վիճակին համար ունեցած այն մտածմունքն, որ ստացուածք ունեցողներուն մահուանէն ետեւ, թէ՛ իրենց տղաքն ու թէ՛ իրենց ստացուածքը խնամակալութեան տակ դրուի, — կ՚աւելցընէ. "Թէպէտ ասոր նկատմամբ քանի մ՚անգամ թագուհիէն ու վերին կառավարութենէն հրամաններ եկած են, բայց մեր հասարակութիւնը ծանր գործքերով զբաղած ըլլալով՝ մինչեւ հիմակ չկրցաւ ասոր վրայօք հաստատուն բան մ՚որոշել։ Յայտնի է որ ասոր պակասութեամբն ամէնէն լաւ գերդաստաններն ալ փճացան եւ օր

ըստ օրէ կը փճանան։ Անոր համար որոշեցինք հիմակ, որ այս բանիս առջեւն առնունք։ Ուստի յառաջատես ըլլալով՝ որ չըլլայ թէ ապագայի մէջ այս կերպով ամէնէն աղէկ տներուն զաւկըները քայքային, հասարակութիւնն ամէնուն հաւանութեամբն որոշեց որ չորս բաժանարար (divisor) դնէ. — երկու հոգի քաղաքաբաշխութեան կողմանէ ու երկու հոգի հարիւրոց ժողովին մէջէն։ — Ասոնց պարտաւորութիւնը պիտի ըլլայ հոգ տանիլ յաջորդներուն.

Ա. Երբ որ մեռնի քաղաքացի մը, որն որ իր առեւտրոյն մէջ անանկ որդի մ’ունենայ, որ չափահաս ըլլալով՝ կարենայ իւր ծնողացմէ իրեն մնացած ստացուածքը պահպանել եւ աւելցընել — եւ կամ ունենայ անանկ վաճառակից մը որ կարենայ իրեն տան կառավարութիւնը յառաջ տանիլ — կամ անանկ եղբայրներ, որոնք՝ իրենց մօրը կառավարութեանը ներքեւ՝ կարողութիւն ու կամք ունենան մէկ սրտով ու մէկ հոգւով առուտուրը յառաջ տանելու — ասանկ՝ ու ասոնց նման մարդիկներուն համար վարչութիւնն ամենեւին հարկաւորութիւն չի տեսներ, ոչ ստացուածոց վրայ ձեռք դնելու, եւ ոչ անոնց կահագիրն առնելու։ Սակայն

Բ. Եթէ որ վերոյիշեալ տան տիրոջ չափահաս զաւակն անկարող ըլլայ իր ծնողացմէ մնացած ստացուածքը կառավարելու, այնպիսւոյն ստացուածքին վրայ քաղաքաբաշխութիւնն հըսկողութիւն (inspection) պիտի ընէ։ Եւ բաժանման պաշտօնարանին գործքը պիտի ըլլայ այն-

պիտոյն ծանուցանել, որ քաղաքաբաշխու-
թեան իշխանութեանը տակ մտնէ: — կամ
եթէ որ հանգուցեալն ունի վաճառակից, որբ-
եւարի, տղաք եւ կամ որեւէ մէկն, որն որ գեր-
դաստանին հանգուցեալ գլխոյն ստացուածքէն
մաս մ'ունենալու յոյս կամ պահանջք մ'ունի՝
այնպիսին տեղեկացընելու է բաժանման պաշ-
տօնարանին: Հոն տեղ գտնուին նաեւ բաժանա-
րարները. եւ իբրեւ առաջին առեան, պիտի որո-
շեն — եթէ մէկ կամ՝ մէկալ կողմն այնպէս
փափաքի — որ ստացուածքը կահագրի առնուի:
Բաժանարար պաշտօնարանն այս տեղն իր պաշ-
տօնը կատարելէն ետեւ գրութիւնները քաղա-
քաբաշխութեան պիտի ներկայացընէ: Ասոր հա-
մեմատ, եթէ որ տանտիրոջ մը ստացուածքը
մեծ վտանգի մէջ ըլլայ (չգտնուելով մէկն որ
հոգ տանի իր որբ մնացած տան եւ ստացուած-
քին) իր մահուանէն անմիջապէս ետքը պաշ-
տօնատէրներէն մէկն, որ այն տան ամէնէն մօտիկ
կը բնակի, պարտական պիտի ըլլայ՝ բանը դա-
տաւորին իմացընելու: Ասիկայ՝ հանգուցելոյն —
դեռ ներկայ գտնուած ժամանակը — թէ
շարժական եւ թէ անշարժ, թէ ներսի ու թէ
դրսի ստացուածքին վրայ ձեռք պիտի դնէ՝
զանոնք կնքելով եւ կահագիր առնելով: — Եւ
այնպէս, թաղմանէն ետեւ կնքուած եւ կահա-
գրուած ստայուածքներուն ցանկը, բաժանա-
րարներուն կողմանէ տեղեկագրի մ'ընկերու-
թեամբ՝ քաղաքաբաշխութեան պիտի ներկայա-
ցուի, որպէս զի ասիկայ, իբրեւ գթած հայր,

որբ մնացած տղոց ստացուածքն — ոսկեղէնն, արծաթեղէնը, մէկ խօսքով՝ ամէն կահ կարասիքը — աճուրդի հանելով, կամ ուրիշ կերպով իրական դրամի փոխելով, յանձնէ քաղաքային վարչութեան. որ պիտի տայ ան գումարին շահը, հարիւրին հինգ, մինչեւ որ տղաքը չափահաս ըլլան։

Օրէնսդրութիւնն այս կերպով կը վերջացընէ խօսքերը. "Եթէ որ մէկը վերոյիշեալ կէտերուն անհնազանդ ըլլայ, կամ հանգուցեալ տանտիրոջ մէկ զաւակը, կամ ով որ ըլլայ թող ըլլայ, աս հրամանին դէմ կենայ, այսպիսին 12 հունգարական ֆիորին տուգանք պիտի վճարէ։ Եւ սակայն կարգադրութիւնն ու օրէնքը՝ վերոյիշեալ կէտերուն համեմատ իրենց զօրութիւնը պիտի ունենան միշտ։"

Կը դնեմ հոս՝ մեր համառօտիւ ըսածին հայերէն բնագիրն, իր բոլոր ընդարձակութեամբը։

"Գօնշդիտուձիօներն տիվիզօրադուս Օֆիձիումինը.[1]

Որչ հետեւ երկրիս մէջ հաստատած ունի ամէն քաղաք եւ նաձիօյ,[2] թէ յինչ կերպիւ պէտք ըլլայ ժաժէլու նոյն ժամանակը եփօր մէկ քաղաքացի կազտայ[3] մը կու մէրնի իւրենց քաղքէն, վըրն որ թէյ տանը տղոցը եւ թէյ մընա-

---

1 Ամբողջ ըսուածը լատիներէն է հայերէն գրերով։ Կը նշանակէ, Բաժանարար պաշտօնարանին կանոնադրութիւնները։

2 Ազգ։

3 Տանուտէր. հունգարերէն է։

ցած աղէկին[1] վրայ չունենալով ամպէս տարտ քալցընող[2] մը, որոյ կարավարութեամբն. Նոյն կազտային աղէկը conservat[3] կարնայ ըլլալու:

Իժօվ[4] աղէկ եւ ընդունած էղիլ էյ, Նոյն Նաձիօնուն արաչնարդաձը իւրենց ապագայ աղէկին համար շաղըշը, որ մահուանը էտէվանց ամպէս կազտայինը, թէյ նացա տղաքը եւ թէյ աղէկը, աղէկ կարավարութեամբըն Tutoratus officiumինը[5] հաստատ մընան: Բայց որոյ հետեւ Նոցա Նըմանը ինչվաս մեր Պատուելի Հասարակութեանը մէջ մէկ հաստատութիւն մըն ալ կօճկած չի կենալով, մագար[6] թէ մեր գըթած թագուհունմէ քանի անգամ մը ասօնց վրայ հրամաններ ալ գալով Guberniumին. զոր հրամանները Comissionaliter[7] մեր Պ. Communitasին ալ communicovat[8] արիլ էյ, օր անօնց վրայ ըզտարտը ունենայ: Ամէնը, որոյ հետեւ մեծ ու ծանտրը բանեօվ ինչվաս ծանտրեցուցած եղիլէյ Պ. Հասարակութիւնը, եւ ամէնը Նոյն հրամաններուն գօրայ չի կարցիլ մէկ հաստատութիւն մըն ալ կօճկելու, եւ այս պատճառաւըն երեւնալով թէյ, շատ աղէկ կազտանունմէյ մընացած տըները inspectio[9] չունենալով ավըրված

1 Ստացուածք:

2 Հոգ տանող, հոգացող:

3 Պահել, պահպանել:

4 Շատ:

5 Խնամակալութեան պաշտօնարան:

6 Թէպէտեւ:

7 Յանձնարարութեամբ, յանձնարարական ճամբով:

8 Յայտնել, ծանուցանել, հաղորդել:

9 Տեսչութիւն, հոգաբարձութիւն:

ըլան, եւ օր ըստ օրէյ ավըրվին: Անոր համար վեր առնելով[1] զհիմիկեն Status ը[2] հասարակութեանը, ամենայն կողմանէ ruminat[3] եւ ալ հէրուկը մտօք գօնձէնդրադ[4] անէլով որ չիլայ թէ ալ խնտանի[5] ժամանակին այսպիսի օրինակօվ ալալ աղէկ տըներ. — եւ կազտանուն տղոցը քայքայմունք գար, այսօրվանը Confluxusին[6] բոլոր հասարակութիւնը, որն որ է ի տարոյն 1777, Die 28ª Mensis Xbris unanimi consensu,[7] զայս Constitution[8] կամեցաւ Պատուելի Հասարակն, որ ընտրըվին չորս Divisorներ, երկուս պատուելի Մակիսդրադէն եւ երկու Պատուելի Սուդայէն: Որպէս որ Աստուծոյվօվ ընտրըված ալ ին, ինչպէս Պատուելի Աղաչայ Վարդան ո. հ. Պօտէրի ջիգինեց. Աղաչայ Օհան եսայի. Ա. Սուդաշը եւ Ա. Տօմինիքն Աղաչայ խաչգօյի. զոր Divisoratus officiantները[9] պի ունենան զպարտավօրված obligation[10] ալ վար յիշեալ puncteրուն[11] գօրայ. որոյ հետեւ Պատուելի հասարակէն կըտրածէյ հախըն ամէն inscriptioի.[12] միայն

1 Ըմբռնել, իւրացընել:
2 Վիճակ, հանգամանք:
3 Որոճել, վրան լաւ մը մտածել, խորհիլ. լատ. է:
4 Ամփոփել, կենդրոնացընել:
5 Ապագայ:
6 Ժողովք, ընդհ. խորհուրդ:
7 Հոկտ. 28ին օրը՝ միացեալ հաւանութեամբ:
8 Սահմանադրութիւն, կանոն:
9 Բաժանարար պաշտօնատէրները:
10 Պարտք, պարտաւորութիւն:
11 Կէտ:
12 Անուանագրութիւն, արձանագրութիւն:

*քաղքին մէջ* 120 *պան, եւ քաղքէն դուս* 180 *պան*, in Sequentis formalibus. Ut[1]

1mo *Մեռնելով քաղքին մէջ կաղտան, որն որ ունի իրեն արուտուրին մէջ կամ ամպէս որդի մը օր* majorennis[2] *իշխելով* 24 *տարեկան կարենայ ծընողացմուն զմընացած աղէկը բռնէլու եւ ավէլցընելու։ Կամ ամպէս օրթըղութեան մէջ եղօղ կաղտան գըտվէր, որ նորայ օրթըղներն զ*Manutention[3] *եւ զկարավարութինը ունենային, թէ տանը եւ թէյ աղէկին վերայ, կամ թէ ամպէս Աղբըրտիք, որոնց բաժնըված ծընօղացմուն մընացած աղէկին վէրայ կամք ունենային (Մօրը կարավարութեանը տակը) մէկ սըրտով զարուտուրը քշելու. — ասօնց եւ դացայ նմանը կաղտանուն մօտ ամէնեվին չէ պէտք պիլայ ոչ* Sequestration[4] *եւ ոչ* Conscription. — *Բայց*

2° *Թէ օր վերոյ յիշեալ* Majorennis 24 *տարեկան մընացած կաղտային որդին* incapax[5] *ըլար զծընողացը աղէկը կարավարելու, ամպէսին վըայեալ* inspection *պիլա Պատուելի Մակիսդրադինը, տարտը ունենալով* Divisoratus Officium*ը, զամպէսին սունչը*[6] *դուս տալու, որ կա-*

---

1 *Յաջորդ կերպով։ Որ. ենթադրելով որ։*

2 *Չափահաս։*

3 *Հոգ, հոգատարութիւն։*

4 *Ապահովացուցում, վրան ձեռք դնելը։*

5 *Անկարող, անատակ, անբաւական։*

6 *Անշուշտ՝ պակասութիւն, տկարութիւն, անատակութիւն։*

*րավարութեանը տակը Գ. Մակխդրադինը, կամ թէ որ յիշեալ օրթըղնուն, օրբօվարոցը կամ մընացած կազտային տղոցմուն կամ վօվալ ըլայ նայ, վըրնոր նոյն մնացած կազտային աղէկին մէջ փայ ունենար փընտրելու, նաքայալ* requirat[1] *անելով զ*Divisoratus officium*ը. ուրուխ արած* requisitio*ին պի երթըվին նոյն տեղն ալ Գատուելի Աղաչայ* Divisor*ները եւ ինչպէս արաջի* forum*ը*[2] *բըրնելով հօն, պի կորին, թէօր կամքըն ըլայ, թէյ մէկ փայինը, կամ մէկալ փայինը, օր* Conscription *վերջ երթա։ Պարտավօրութեանը գօրայ* Divisoratus officium*ը նոյն տեղն ալ տէսդուլ անելով.*[3] *ըզգործգը* referat[4] *պանէ Գատուելի Մակխդրադին։ — Ասոնց գօրայ.*

3tio *որ կազտային մահուանը ետէվանց իրեն աղէկը մեծ* periculum*ի*[5] *մէջ մընար (չի մընալով տարտ քալցընող մնացած որբ տանը եւ աղէկին վըրայ), ամպէսին մահուանը էտէվանց զարաս*[6] et de facta,[7] *Աղաչայ* Divisor*ներուն մէկնիվօրը, վօվ ալ մօտիկ ըլա նոյն կազտային, պարտական պիլայ իմաց անելու Գ. Աղաչայ Գիրօվին, որ դէր ներկայ ըլալով մերած կազտան, նորայ ամենայն աղէկը, թէ նեսի եւ թէ*

---

1 Փնտուել, հարցընել։

2 Ատեան, հրապարակ։

3 Գարտքը կատարել։

4 Ցեղէկացընել, ծանուցանել։

5 Վտանգ, մնաս։

6 Զարաս բառը լեհերէն է. կը նշանակէ՝ անմիջապէս, շուտ մը։

7 Իրօք, գործնականապէս։

դուսի Պատվելի քաղքին մօհրին տակը sequestrat[1] ըլլայ։ Եւ այսպէս.

4[to] Թաղմանը էտէվանց նոյն կազտայինը, sequestrat արած ամէնայն ունենալը conscribat[2] ըլլալով, referat[3] ըլլայ Conscription Աղաչայ Divisorնունմէյ Պատուելի Մակիստրադին, որ ետեւ, ut

5[to] Պատուելի Մակիստրադը ինչպէս գըրած Հայր մընացած ծընօղացմէյ օրբերուն թէյ զապրանքը, թէ օսգեղէնը, արծըթեղէնը, թէ այլ Substitutumներ,[4] ինչ որ ալ որ անօնք ըլլային, լիձիդաձիօյով[5] կամ այլ կերպիւ նաղտ Capital անէյ, զոր Capitalը Պատուելի քաղաքը 100ի/5 օփն պարնու[6] եւ պի բըռնէյ մինչեւ որ pupillaris Statusը, in Majorennem[7] դառնայ նայ։

6[to] Թէ որ վերոյ հասդատած punctէրուն չի հնազանդէր մէկնումէկ քաղաքացին, կամ մընացած կազտային զավկըներուն մէջէն մէկնիվօրը, կամ վօվալ ըլլար նայ, որ դէմ ելէր հրամանին կամ Պ. Ա. Պիրօվինը կամ Աղաչայ Divisorնունը, վերոյ յիշեալ Circumstantiaնուն

---

1 Ապահով։

2 Գրի անցընել։

3 Հաղորդել. տեղեկացընել։

4 Substitutus լատ. բառը, փոխանորդ, տեղապահ կը նշանակէ։ Հոս անտարակոյս՝ ուրիշ ստացուած, կահ կարասի, նշանակութեամբ պիտի ըլլայ։

5 Ածուրդ, աճուրդի հանել։

6 Այսինքն՝ պիտ'որ առնու։

7 Մինչեւ որ չափահասութեան դառնայ, այսինքն չափահաս ըլլայ։

ժամանակին, ամպէսը, եւ նարայ նըմփնը պի պատճըվի ճուրումով 12 մաճարօվ. եւ ամէնը այս վերոյ յիշեալ punctերուն գօրայ պի ունենայ զկարավարութիւնը Divisoratus officiumը վերջացընելու:„

## 5.

Ինչպէս որ քաղաքային ժողովքը հոգ տարաւ, որ չըլլայ թէ անչափահաս տղոց ստացուածքը փճանայ՝ անանկ ալ մասնաւոր քաղաքացիք շատոնց մտածելու սկսան քաղաքային վարչութեան հետ, որ հիմնարկութիւն մը դրուի քաղքին մէջ, այն՝ վաստըկելու անկարող եւ անատակ ազգայիններուն համար, որոնք որ ծերութեան օրերուն մէջ՝ ինչ ընելիքնին չեն գիտեր: Ուստի եւ ըլլայ այսպիսիներուն համար անկելանոց կամ ապաւէն մը, ուր որ կեանքերնուն վերջին օրերն անդորրութեամբ անցընել եւ հանգիստ ապրիլ կարենան:

Այս ազնուական մտածութեան առաջին շարժառիթը տուին երկու ազնուամիտ եղբարք, Գրիգոր եւ Անտոն Խրիգուցեան: Ասոնք՝ աղքատաց ապաւէն մը կանգնելու համար՝ տուն մը շինեցին, որպէս զի անոր մէջ անկարողները ձրի կարենան ապրիլ: Բայց վերապահեցին հոն իրենց համար երկու սենեակ. որ ի հարկաւորութեան, իրենք անոնց վրայ ազատապէս կարենան տրամադրութիւն ընել: Իսկ անկելանոցին մէկալ սենեակները քաղաքաբաշխութեան կարգադրութեանը տակ ձգեցին, որպէս զի վար-

չութիւնն ըստ իր կամացը տեղաւորէ հոն զանոնք, զորոնք ինք յարմարագոյն եւ արժանաւորագոյն կը համարի։

Քաղաքային վարչութիւնն այս հիմնարկութիւնն ընդունեցաւ, իւրացուց եւ իր հեղինակութեամբն ամրացուց։

Ահաւասիկ հիմնարկութեան եւ ամրութեան թղթին հայերէն թարգմանութիւնը։

“Նկատելով հասարակութիւնը — եւ Անտոն ու իր եղբայրը Գրիգոր Խսիգուցեան — մեր ազգին թէ՛ ներկայ ժամանակ ու թէ՛ ապագային մէջ ունենալու աղքատներուն վիճակը՝ — քրիստոնէական սէրէն շարժած, եւ ըստ օրինակի շրջակայ քաղաքաց՝ մտածեցինք, որ մեր կարողութեան համեմատ, որչափ կարելի է, անոնց ողորմելի վիճակը թեթեւցընենք։ Ուստի այս մեր փափաքն իրարու հաղորդելով, միացեալ կամօք, գնեցինք մեր քաղքին մէջ Պուգշա անունով մարդէ մը՝ գետին մը։ Ասիկայ, Պգտի կոչուած փողոցին անկիւնը կեցած է։ Դրացի է ասոր, հիւսիսէն՝ եկեղեցին տանող փողոցը. — մէկալ կողմանէ՝ Խաչիկ Նորգոյի, Չիգիեան երկիրը։ Ծայրը կ'երկըննայ մինչեւ պատուելի ժողովրդապետանոցին կողը։ Արդ այս երկրին վրայ, մեր վաղեմի կամացը համեմատ — որ էր հիւանդանոցի հիմնարկութիւն մը կանգնել, — Անտոն եւ Գրիգոր Խսիգուցեան իրենց սեպհական ծախքովը՝ մինչեւ հիմակ հինգ խուց շինել տուած են, խեղճ աղքատաց համար։ Բայց բաղձացին, որ այս սենեակներուն մէջէն

*երկուքը՝ ցմիշտ իրենց եւ իրենց ժառանգներուն տրամադրութեանը տակը ձգուի, եւ զանոնք առանց վարձքի անոր տան, որուն որ կ՚ուզեն։ Բաց աստի, բաղձացին որ նաեւ անոնց պահպանութիւնն իրենց կարգադրութեանը տակ ըլլայ։ Ուստի այս սենեակները, ինչպէս որ են, առանց փոփոխութեան, իրենց տրամադրութեանը տակ կը ձգենք։ Իսկ մէկալները՝ քաղաքաբաշխութիւնը՝ իւր սեպհական կամացն ու տրամադրութեանը տակ կը պահէ. որպէս զի թէ զասոնք եւ — եթէ ասկից ետքը ուրիշներն ալ, անոնց քով խուցեր կանգնել տալ ուզեն — թէ զանոնք քաղաքաբաշխութիւնը կառավարէ եւ հոգայ։*

*Ասիկայ՝ ապագային գիտութեանը համար, թէ մենք ու թէ վերոյիշեալ երկու աղաեղբայրները, մեզմէ ետքն եկողներուն գիտութեանը համար, մեր քաղքին արձանագրութեանը մէջ գրել փափաքեցանք։ Եւ այս մեր որոշման հաստատութիւնը՝ մեր յաջորդներուն կը թողունք, իբրեւ պարտաւորութիւն։*

Եղիսաբեթուպոլիս, 1769, Դեկտ. 9։

*Քաղաքաբաշխութեան ժողովին որոշմամբը"։*

*Այս եղաւ սկիզբը ու շարժառիթ Գամէլերեան մեծ հիմնարկութեան. — որուն վրայ ետքէն խօսելու առիթ պիտ՚որ ունենանք։ —*

*Շատ հոգ կը տանէր քաղաքային վարչութիւնն, որ չըլլայ թէ մայր եկեղեցւոյն վրայ կանգնուած ժամացուցին բան մը հանդիպի։*

*Եւ որովհետեւ, ինչպէս կը հասկընանք, ժամագործը ծերացած ըլլալով՝ աշտարակն ելլել ու ժամացոյցը լարել չէր կրնար, բնականապէս անիկայ շատ անգամ կը կենար։ Անոր հետեւութեամբը քաղքին մէջ ամէն բան կարգաւ ու ժամանակին չէր երթար։ Ուստի քաղաքային ժողովքն որոշեց, որ կամ Չիկիշվարի եւ կամ Մէտիաշի ժամագործին հետ դաշինք դնէ, որ այնուհետեւ ինք հոգայ քաղքին ժամացոյցը։*

*Ահա արձանագրութեան խօսքերը։*

“Sub confluxu Communitatis 1778. die 26a mensis Februarij *ելէզաբէդան։ Մեր հասարակին պաքսութենովը հէտէվի թէ, որոյ հետեւ մեր քաղքին ուրլօյեարը*[1] *ծերութեանը համար չի կարնալ քաղքին մէջ ուրլօյնուն տարտը ունենալու, ուսգից շատ անգամ բըրնըվելով ուրլօյները վաղնալուէյ չիլայ թէյ կըրակի մէջ ըննին վերջիններըը,*[2] *անոր համար հաղատվեցաւ, թէ զՈւրլօյարը շիկիշվարինը կամ մէտիաշինը Պատուելի Հասարակը վարձէյ, օր կօճկած գօնդրագդին դէնօրին գօրայ պարտականութեանը տեսդուլ անէյ։ Եւ զհախըն պի վիճարէ Պատուելի հասարակը յատուկ գասայէն։*” — —

*Քաղաքաբաշխութիւնը հարկաւոր տեսաւ,* 1779*ին, որ քաղաքացւոց՝ Լունգայի մէջ տուած երկիրներուն վրայօք փոփոխութիւններ ընէ.*

---

1 Ժամագործ. վալաքերէն բառ է։

2 Դրացի։

որովհետեւ տէրութիւնը՝ որեւէ տեսակ երկիր-
ներու համար սկսաւ տուրք պահանջել: Ուստի
եւ յիշեալ տարւոյն յունուար 25ին հրա-
տարակեց ժողովքին ձեռօք, որ "Թէպէտ
1769ին ընդհանուր ժողովքէն որոշուեցաւ, որ
Լունդայի մէջ արժանաւոր անձինքներու, իրենց
արդեանցը համեմատ խոտի եւ մսրացորենի
տեղեր բաժնուին — այն պայմանադրութեամբ,
որ յիսուն տարին անցնելէն ետեւ քաղքին ետ
տրուին, վճարելով նոյն տեղւոյն մէկ ձողաչափ
երկրին համար չորս հունգարական ֆիորին. —
բայց որովհետեւ այս տեղերուն համար յա-
ռաջագոյն ամենեւին տուրք չէր տրուեր, եւ
հիմակ վերին իշխանութենէն նորէն ու նորէն
հրաման գալով, որ ամէն երկիր թէ արքու-
նական, թէ առանձնական՝ տուրք տալու է.
անոր համար հարկ է որ վերին հրամանագրին
համեմատ տուրք տրուի: Ուստի հասարակու-
թիւնն այս բանս խորհրդի նիւթ ընելով՝ պատ-
շաճ կը համարի, որ այն տրուած երկիրները՝
յիսուն տարուան տեղ՝ մշտնջենապէս ծախուած
համարուին — միայն թէ յաջորդ պայմաններով:
Ամէն մէկ ծերակուտի, հարիւրոց ժողովքի ան-
դամ եւ կամ քաղաքացի, որ երկիր ունի
Լունդայի մէջ, եւ տարւէ տարի մէկ ձողա-
չափին համար 4 ֆիորին եւ 50 քարանդան
վճարած է, մնայ իրեն մշտնջենապէս: Միայն
թէ 25 հարիւրչեայ, այսինքն մէկ ֆիորին աւելի
վճարէ. այն տարբերութեամբ, որ որովհետեւ
արդէն 1769ին, երբ այն երկիրները բաժնուե-

ցան, քանի մը երկրատիրոջ շատ գէշ ու ջրոտ երկիր ինկած է. անոր համար, հիմակ այն երկիրներուն տեղ, Էռնէի սահմանին վրայ, իրենց ուրիշ՝ նոյնչափ երկիր տրուի։ Բայց միտ դրուի որ չըլլայ թէ այն երկիրը տրուած ատեն մասնաւոր քաղաքացեաց երկիրներուն դպչուի։

Նոր բաժնուելու երկիրներուն նկատմամբ որոշուեցաւ, որ առաջիկայ գարնան հասարակութիւնն այն տեղերը՝ հաւասար բաժիններ կտրելով, մէկ մասն առնու քաղաքն ու մնացածն՝ ութը կամ վեց կամ չորս չորս ձողաչափի բաժնելով՝ ըստ արժանւոյն այն քաղաքացւոց տրուի, որոնք մինչեւ հիմայ երկիր ունեցած չեն։

Այս որոշմունքէն ետքը սահմանուեցաւ. որ ասկից ետքը պաշտօնի մտնող ծերակուտի ինչպէս նաեւ հարիւրոց ժողովքին Աղաչաներուն նոր երկիրներ չտրուին։ Ամէն մէկն իրեն ունեցած տեղովը շատանայ. եւ իր պաշտօնին զօրութեամբը՝ չունենայ իրաւունք, հասարակութենէն երկիր խնդրելու։ Սակայն անոնց՝ որոնց յառաջուց տրուած չէ, բայց կայ տալու տեղ, տրուի՝ ինչպէս հասարակ քաղաքացւոյ. եւ առով գոհ ըլլան։

Ահա քաղաքաբաշխութեան որոշումն, ըստ արձանագրութեան։

“Anno Dni 1776. die $5^{ta}$ Mensis Januari, էլէզաբէդան։ Sub confluxu Cummunitatis, այսպէս գօնգլուտօվար [1] եղավ վասն Լունգային

1 Որոշել, լմցընել։

ասոր արաջ բաժնած Քաղքըցոցը տեղըանքնուն համար, որ

1° Թէպէտ Anno 1769 հասարակով կօճկըրվիլէր այնպէս, որ վերոյ յիշեալ լունգայի մէջ meritatis բէրսօնանու cuilibet juxta meritum,[1] խոտի եւ գուգուրուծի տեղըանք բաժնըվէին, conditio եօվըն,[2] որ 50 տարին անցնելօվ, ալվի տեղըանքը ետ տային, ուսգից արաջմանէ ծախած էին, վիճարվելօվ նոյն տեղըանքնուն խուլաճըն 4 մճրի.: Բայց որովհետեւ

2do Այս յիշեալ տեղըանքն յիշվելով տօմինիումի մէկ պան մը թագուհուն տալիք չէր տըվէր. եւ հիմպիկ նօրէնը հռաման իգալով, թէ մագար տօմինալիս,[3] զորն որ բրիվագը տիրէր, մագար օշկայ թուրլու տեղըանք, խըդօվ տալեց obnoxiat[4] ըլան, հետեւապէս աս Լունգային տեղըանքն ալ տալեց մէջ vigore Decreti Aulici[5] մըտնուն: Անոր համար Պատուելի Հասարակին այնպէս ութվեցաւ, որ թէ օր ուժէ էկիլէյ, օր տալիք տանք, տըվէր զան 50 տարօվ ծախած եւ oppignorat[6] արած տեղըանքնուն Perpetuitas:[7] Եւ շայս այս Conditioնէրօվըն, օր.

---

1 Արժանաւոր անձինքներու, իրենց արժանեացը համեմատ:

2 Պայման, թէութիւն, պայմանագրութիւն:

3 Ըլլայ տէրունական. ըլլայ...:

4 Դրուիլ՝ բանի մը տակ պարտաւորուիլ = տուրքի տակ ըլլան:

5 Զօրութեամբ արքունական հրամանի:

6 Գրաւի դնել:

7 Մշտատեւութիւն, մշտնջենականութիւն:

1° *Ամէն մէկ դըլնածի, Սուգայի Աղաչան, հետ մէկալ քաղաքացոցըն, որոնք որ ունին Լունգան տեղըանք, մընան զայն կերպիվըն, որպէս առօր առաջ* 1769*ին մէջ բաժնըված էղիլին. ոչ ալ շատ եւ ոչ ալ քիչ. հաթէ գօնդէնդօվադ*[1] *ըլալօվ անխըտարօվը. օր,*

2do *Ամէն մէկ աղաչան, որն որ տեղ կի տիրէ եւ խուլճի* 4 *մճրի.* 50 *տարով վիճարիլէյ, ինչխըտար խուլաճ օր կի տիրէյ, անխըտարը* pro perpetuitato, juxta proportionem[2] 25 *Թրօձէնդ* id est,[3] *մէկ մճրի. վիճարէ. եւ այնպէս ամէն մէկը իրեն տէղօվը գօնդէնդ*[4] *ըլայ.* cum tamen distinctione,[5] *օր*

3tio In primaevo[6] *եփօր բաժնած ին տէղըանքը, ինչպէս* 1769, *նոյն ժամանակը գազու*[7] *էկիլէ զարաս առաջմանէ, դիմացէն մէկ քանի Մակիսդրադուալ Աղաչին մը իժով չըրոտ եւ անշահ տեղ մը։ Անոր համար հասդատվեցավ, որ նոյն Մակիսդրադուալ Աղանուն առվէ էրնեային հօդարին քով օզկայ տեղ. միայն անխըտարը, որպէս առաջ։ Բայց անպէս, որ սըօպօտ*[8] *չի ըլայ* per absolutum,[9] *բըի-*

---

1 Գոհ, խաղաղ։

2 Այնչափ՝ ցմիշտ. — ըստ համեմատութեան, ըստ չափու։

3 Այսինքն։

4 Գոհ, շատացեալ։

5 Այն տարբերութեամբ, այն զանազանութեամբ։

6 Յառաջագոյն, հին ատենները։

7 Խնդիր, խօսք։

8 Հրաման, թոյլտուութիւն. Հունգ. բառ է։

9 Բացարձակապէս, ոչինչ կերպով։

վադի[1] ասոր արաջ բաժնած տեղի դըբջելու։ Հաթէյ արանց բաժնած տեղէյ տըրօվի. եւ անկից ալ ետեւ շատ չի կարնայ մէկ կերպիվ մըն ալ մուդադ[2] ըլալու եւ տեղըանք փոխելու ասկից դուս չի գայ իշխանութիւն մարդուեալ ըղտեղը փօխելու։

4to Վլամն ալ ալ վերոյ յիշեալ լունգան տեղ բաժնէլու համար, հասդատվէցավ, օր մընայ մինչեւ այս տարվան արջի գարնան։ Օր ժամանակը պի էլէյ դուս Պ. Հասարակը եւ արաջմանէյ կըտրելօվ տեղ Պ. Քաղքին սէպին վըրայ, ըղմընացորդըն ըստ արժանավորութեան տըվի ան Քաղաքացոցըն, որոնք ինչվաս չեն արիլ. այսինքն մէկին մէկին 8, 6, 4 խուլաճ։

5to Վլամն այսօր եւ հիմպիկուցէն ինտան Նոր էկօղ Պ. Մակիսդրադին, նաեւ Պ. Սուդային մէջ, Աղաչանու համար ալ հասդատվեցաւ, որ հի երփ նոյն Աղաչաներըն, թէյ Մակիսդրադին եւ թէ Պ. Սուդային մէջ նես մտնուին նայ, ամենեվին չի կարնան մէկ Praetensio[3] մըն ալ ֆօրմալուիդ անէլու ի կօղմանէ յիշեալ լունգայի Տեղըանքնունը. օր ցեղ մը մէկ ժամանակ մը տեղ բաժնըվէր, նայ արնուն, ինչպէս ասոր արաջ Մակիսդրադի եւ Սուդայի մէջի Աղաչաներ։ Հաթէյ վօվ որ տեղ ունէնայ արաջմանէյ բաժնած մինչեւ այսօր, նայ մընայ իրմօվը

---

1 Առանձնական, մասնաւոր։

2 Շարժել, տեղափոխել։

3 Պահանջք, պահանջմունք։

*եւ չի կարնայ* autoritas*ով*[1] *մըն ալ*, titulo officii sui[2] *ավէլօքը փընտրելու Պ. Հասարակէն։ Եւ նացայ, որոնց չի տված արաջմանէյ, եւ կենայ տեղ, նայ ինչպէս Քաղաքացու տրվի. եւ անօվ գօնդէնդ ունենայ ըլլալու* absque ulla ulteriori praetensione։[3] *Եւ այս Հասդըցվի այն կերպի-վըն, որ այս տարվանը էտէվանց, այսինքն,* ab Anno[4] 1776 *էն ինտան, ալ շատ տեղ* per absolutum *չի տրվի եւ օչ բաժնըվի մարդուեալ։* Communi voto[5] *Հասդատվեցաւ։*

E Confluxu Communitatis

**Օհն. ռ. Հ. Եսայի** m. p.

*Նօդար Պ. Մակիսդրադին։„*

*Սակայն պաշտօնատեարք ասով գոհ չէին կրնար ըլլալ։ Որովհետեւ թէպէտ դատաւորին, քաղաքային պաշտօնատէրներուն եւ ընդհանրապէս հասարակութեան ծառայողներուն վճարքն՝ ինչպէս շատ հեղ տեսանք, ժամանակ ժամանակ բարւոքուեցաւ քաղաքաբաշխութեան կողմանէ, բայց միշտ աղքատ վիճակի մէջ էին։ Պարզապէս քաղքին վճարած եկամուտովն դժուարաւ կրնային ապրիլ։ Բաց ասկէ, իրենք ամենեւին երկիր չունէին. եթէ ոչ այն երկիր-ները վորոնք ժառանգութեամբ իրենց ծնողացմէ*

---

1 Հեղինակութեամբ, Ճոխութեամբ։

2 Իր պաշտօնին տիտղոսովը, անուամբը։

3 Առանց ուրիշ պահանջման մը։

4 ...տարիէն սկսեալ։

5 Ընդհանուր, հասարակաց հաւանութեամբ։

ստացած էին. ուր ընդհակառակն՝ հասարակ քաղաքացիք ըստ մասին ստակով, ըստ մասին ձրի, եւ ըստ մասին կէս վճարքով — դարձեալ՝ ըստ մասին անմիջապէս եւ ըստ մասին որոշեալ ժամանակի միջոցի մը մէջ վճարուելի — երկիրներու տէր էին։

Ուստի պաշտօնատարաց մէջ նոր շարժում մըն է սկսաւ, որ իրենք ալ հասարակ քաղաքացւոց պէս երկիր ընդունին։ Իրօք ալ ուզածնին յառաջ տարին եւ 1780 Հոկտ. 30ին, ընդհանուր ժողովքին մէջ — ուր ըստ մեծի մասին պաշտօնատարաց կողմնակից խորհրդականներ ներկայացած էին — նպատակնուն հասան։ Վասն զի հոս որոշուեցաւ ի նպաստ իրենց, որ ա. Ամէն մէկ ծերակուտի անդամի, իբրեւ պաշտօնէի՝ տրուի Լունգայի մէջ, 120 ձողաչափ երկայն ու երեսուն ձողաչափ լայն, այսինքն 3600 քառակուսի ձողաչափ երկիր։ Բ. Այն քաղաքացւոց համար, որոնք իրենց երկիրները կտրելով ուրիշներուն ծախած եւ յետոյ անոնց վրայ տներ շինած՝ եւ զանոնք շրջափակած են, որոշուեցաւ որ, ասոնց ալ այնչափ տրուի, որչափ ուրիշ տան տէրերու։ Աս տրուած երկիրներուն գինն ըլլայ հինգ հունգարական ֆիորին։ Գ. Արդէն երկիր, ագարակ կամ այգի ունեցողները՝ պիտի պահեն այն տեղերն, իբրեւ իրենց սեպհական տեղերը։ Դ. Ինչ տեղ, կամ երկիր որ ծախուած է աճրդով, երդմամբ, զատ զատ եւ գաղտնի, ան տեղւոյն փոխարէն ուրիշ տեղ տրուի Լունգայի մէջ։

Բայց այս՝ կէս մը գաղտնի կերպով ու ձեռքի տակէն եղած որոշման դէմ բողոքեց Հարիւրոց Ժողովը. վասն զի, ըսաւ, այն ժողովքին մէջ քաղաքաբաշխութիւնը մաս չունեցաւ, այնչափ թուով, որչափ որ օրէնքը կը պահանջէր: Ուստի եւ շատ վէճերէ ու կարծեաց տարբերութիւնն իրարու հաղորդելէ ետեւ, Հարիւրոց Ժողովն իր կամքն ու կարծիքը յայտնեց յաջորդներովս.

1. Թէպէտ տրուի, ըսաւ, քաղաքաբաշխութեան անդամներուն եւ Հայ Նոտարին, երկիր, բայց չէ թէ քսան, այլ միայն տասուերկուքական ձողաչափ: 2. Որովհետեւ Հարիւրոց Ժողովոյն գահերէցն ամենեւին եկամուտ մը չունի քաղաքին հասարակութենէն, հապա միայն ծանրաբեռնութիւն. անոր համար իրեն ալ տրուի տասուերկու ձողաչափ: 3. Երկիրներն, որոնք պիտ'որ տրուին, չէ թէ մշտնջենապէս՝ այլ յիսուն տարուան համար տրուին: 4. Որչափ տեղ որ ունի մէկը քաղաքին մէջ, համեմատութեամբ այնչափ երկիր ընդունի Լունգայի մէջ. ձողաչափը՝ չորս Փիորինով: Իսկ ուր որ երկիրները նուազ պտղաբեր են, հոն երեք Փիորինով: 5. Բայց քաղքէն դուրս եղած ագարակներն ու այգիները՝ իբրեւ քաղքի մասն չհամարուին: 6. Թէպէտ տեղւոյ մը վրայ երկու կամ երեք եղբարք ալ բնակին, այն տեղը՝ միշտ իբրեւ մէկ համարուի. ու անոր փոխարէն միակ տեղ մը տրուի Լունգայի մէջ:

Յայտնի է որ այս բանս անկէ յառաջ եկած էր, որ պաշտօնատեարք իրենց շահը

յառաջ տանիլ կ'ուզէին։ Ասիկայ աչքի զարկաւ թէ Հարիւրոց ժողովոյն անդամներուն եւ թէ երդուեալ քաղաքացեաց։ — Աս բանիս բնականապէս բոլորովին աչք գոցել չէին կրնար։ Բայց որպէս զի ոչ մէկ եւ ոչ մէկալ մասին անիրաւութիւն կամ վշտացուցում մ'ըլլայ՝ ընդունուեցաւ 1780ին որոշումը. բայց յաջորդ փոփոխութիւններով ու յաւելուածներով։

Նախ. Քաղաքաբաշխութեան անձինքներուն եւ քարտուղարութեան պաշտաման տրուին երկիրներ, Լունգա կոչուած տեղը՝ երկու թումբերուն մէջ. ասոնք՝ իրենց տրուած երկիրները մէջերնին հաւասարապէս բաժնեն, եւ որչափ տեղ որ իյնայ պաշտօնատէրի մը, անով գոհ ըլլայ. որովհետեւ ասկէ դուրս ու աւելի երկիր չի տրուիր քաղաքաբաշխութեան անդամներու։

Երկրորդ. Հարիւրոց ժողովոյն անդամներուն ալ տրուի տասուերկուքական ձողաչափ տեղ։ Ասոնց գինն, ինչպէս վերն ըսուեցաւ, ըլլայ — մէկ ձողաչափ լայն, բայց 120 ձողաչափ երկայն տեղւոյն — հինգ հունգարական ֆիորին։ Իսկ Բըրըվու Ըրդուլույ կոչուած տեղւոյնը՝ որովհետեւ հոս երկիրներն աւելի տկար ու նուազ պտղաբեր են, երեք հունգարական ֆիորին։

Կը ներփակեմ այս որոշումներուն բնագիր արձանագրութիւնները.

"Anno Dni 1780, die 30ma Xbris. Sub

Confluxu Magistratuali et Totius Communitatis,[1] կարդվեցաւ օր․

1° Ամէն մէկ մակիսդրադուալ բէրսօնայի, ut pote Աթօրի[2], տըվլի լունդան, բօտին աս քօվը[3] 30ական խուլաճ լանքը․ եւ 120 էրկան։

2° Controversio[4] ըլալով վասն զայն խուրթերուն կօղմանէ, օր դաս մը քաղաքացոցը մէջէն խուրենց խուրթերուն մէջէն մէկ բէդիք[5] մը տեղ օզկանուն տըվիլին կամ ծախիլին․ որոց վրայ տուն ալ կու դավի կամ չաթնած[6] է կօճ-կըվեցաւ օր դացայեալ տըվլի օրպէս ընդրէկ Sessioնու։[7]

3tio Գինը խուլաճինը պիլայ 5 մճրի․, որ խուլաճը պիլայ երկանութեան մէջ 120 խուլաճ։

4to Վօվալ ինչխըտար խուրթ, մայր,[8] էգի օր ունենայ, զայն բէրսօնային պի տըվլի այնքան խուրթին տեղըանքը մէմէկի քօվ։

5to Ինչ խուրթ ալ օր ծախած է licitatione mediante seorsim et Sigillatim,[9] պի տըվլի լունդան տեղ։

---

1 Ամբողջ ստացուածը կը նշանակէ․ Ցամի Ցեառն 1780, Հոկտ․ 30ին, քաղաքապաշխութեան եւ բոլոր Հասարակութեան մէկտեղ ժողովելովը։

2 Այսինքն, իբրեւ։ Աթոռ բառը, կը նշանակէ պատիւ, պաշտօն։

3 Կը նշանակէ՝ կամրջին ստդիի դին։ Կէսը Հայերէն է, կէսը՝ վալաքերէն։

4 Հակառակութիւն, վէճ, վիճաբանութիւն, խնդիր։

5 Կտոր, մաս․ կարծեմ վալաքերէն է։

6 Ցանկել, ցանկով պատել։

7 Նիստ, — Հոս՝ երկիր, տեղ։

8 Ագարակ, կալուած․ գերմ․ Meier բառն է։

9 Աճուրդով զատ զատ եւ մաս մաս ծախել։

6to Մէկ խուրթին վրայ մագար երկու կամ երեք Աղբար ալ կամ կաղտայեալ կենայ, մէ մըպի իշվի. եւ մէկ խուրթի տեղ պի տրվի լունգան։„

“Anno Dni 1781° die 3ia Mensis Martii sub Confluxu Magistratuali et totius Communitatis triginta personarum existentibus,[1] ըլալով ասոր արաջ մեծ dissensio[2], ի մէջ Պ. Մակիսդրադին եւ Պ. Սուդային վասն Լունգային տեղըանքնուն բաժնէլուն կողմանէ. մանաւանդ դեռ այսօրվան օրը յայտնելով զկամքը Պ. Սուդան in Sequentibus.[3]

1mo Թէ Մակիսդրադուալ բէրսօնանուն եւ Հայ Նօդարիուշին Աթօրի միայն տասվերկուսգան խուլած տրվի։

2do Որոյ Հետեւ Ա. Սուդաշը մէկ beneficium[4] մըն ալ չունի Պ. քաղքէն, այլ միայն շատ աշխատանքը. տրվի Սուդաշի Աթօրի ալ 12 խալած։

3io Տեղըանքը օր պիտօր տրվի Քաղքըցոց, Jure perenniali չի տրվի, այլ 50 տարօվ։

4to Թէ վօվ ինչխըտար Sessio[5] օր ունենայ, նայ անխըտարը à proportione[6] այնու Լունգան. ու զանոնք մէկմէկի քօվ. ու չէ պաշխայ պաշխայ, խուլածը à 4 մճրի.։ Եւ բըրը-

---

[1] Յամի Տեառն 1781 մարտ 3ին, քաղաքապաշխութեան եւ Հասարակութեան 30 անձանց ժողովելովը։

[2] Երկպառակութիւն, տարաձայնութիւն։

[3] Յաջորդներու մէջ։

[4] Եկամուտ, շնորհք։

[5] Ներքին տեղ, երկիր։

[6] Համեմատութեամբ։

վու ըրդուլույ, որոյ հետեւ ալ խուծածն[1] է տեղը, à 3 մճրով.:

5^to Թէ էգըսգըննու եւ Մայէրնու չի տրվի, այլ միայն Նէսի տան տեղի եւ բաժնած Sessioնու.

Որ հինգ բունգգումի մէջ տըված կամքը Պ. Սուդայինը, օղկայ բանի համար չի եղել, եթէ ոչ, օր ալ մեծ փայը մէչվընուն հասդատութիւնը օր եղել է 30^ma Xbris Anni praeteriti,[2] Հասարակով չին գիտացել: — Զորն տեսնելով, post multas disputationes[3] նոյն Հասդատութիւնը, նորէնը Confirmo վադ[4] եղաւ, hic tamen additionibus.[5]

1° Օր Մակիսդրադուալ բէրսօնանու եւ հայ Նօդարիուշի Աթորի տեղըանքը ըլան շանձին[6] միջօրէ. զորըն իրենց մէջ փայ անին. ու ինչխըտար ալ իգայ նայ գոնդէնդէ ըլլան. որոյ հետեւ ասգից դուս Մակիսդրադուալ բէրսօնանուն Աթորի օղկայ դի չի տըվիլ:

2^do Ա. Սուդաշին Աթորին ալ, օղկայ դի 12 խուլած տեղ տըվի:

3^tio Խուլճին գինը, 120 երկընութիւնը պիլայ Թէպէտ 5 մճրի. բայց փըրըվու ըրդուլինը 3 մաճարով պի տըվի, Jure pertetuo.„[7]

---

1 Տկար, գէշ:

2 Նախընթաց տարւոյն՝ Հոկտ. 30ին:

3 Շատ մը վէճերէ ետեւ:

4 Confirmo, հաստատել, ամրացընել:

5 Այս վերադրութիւններով, այս յաւելուածներով:

6 Գերմ. բառ է, կը նշանակէ՝ թումբ, պատնէշ, փոս:

7 Մշտնջենաւոր իրաւամբ, մշտնջենապէս:

Քաղքին՝ ասանկ քաղաքականութիւնն, եւ իւր պաշտօնատէրներուն հետ ասանկ կծծի ըլլալուն պատճառն ան էր, որ աղքատութեան մէջ էր այս միջոցիս։ Թէպէտ իր վաղեմի պարտքերը համեմատութեամբ նուազած էին, այսու ամենայնիւ հիմակ ալ, թէ օտարաց ու թէ իր քաղաքացեացը շատ պարտք ունէր։ Աս բանս յայտնապէս կը ցուցնէ Սպիտակ մատենին արձանագրութիւնն. որուն 275 էջին մէջ կը գտնենք իր պարտատէրներուն ցանկը եւ պարտքը՝ 46.000 հունգարական ֆիօրին։

Ահա արձանագրութիւնը ։

“Pro memoria.[1]

Աստուծով Պ. Քաղաքը Պարտի Capitale, շահու զաբիսի[2] վրայ.

| | |
|---|---|
| 1° Ա. Դոտէրաշին, ո. հ. Հանգոյի Տանիէլն à 6 p. c. t.[3] սումայ մճրի. . . . . . . | 3600 |
| 2do Պիքան[4] վէնիձին Պ. Ա. Խնկանոսի Տլն. à 6 p. c. t. սմյ. մճրի. | 1000 |
| 3tio ո. հ. Մարտիրոսին Պօշնախի ընկերոջըն, Մայրամին Սիգուլային դըստերը . . . . . . | 400 |
| 4to Տէր Վարդանին ֆօրգի 6 p. c. t. | 600 |
| translatus | 5600 |

1 Յիշատակի համար, առ ի յիշատակ։

2 Դաշնագիր, պարտագիր, փոխանակագիր։

3 a 6 per centum-ին համառօտութիւնն է. որ կը նշանակէ՝ վեց (շահ) առ հարիւր, վեց հարիւրչեայ ։

4 Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւը կը նշանակէ, տիկին, խաթուն։

| | |
|---|---|
| translatus | 5600 |
| 5to տ. Հ. Ա. Ասվատրին Վիգօլի բօսդէրիդաշին . . . . | 700 |
| ddt տ. Հ. Ա. Ասվատրին Վիգօլի բօսդէրիդաշին à 6 p. c. t. . | 500 |
| 6to Տէր Մարտիրոսին դադերը չիգի-ան . . . . . . | 1800 |
| 7mo տ. Հ. Նիկոլին մըժարին . . | 522 |
| 8° Խուվընտին զատիկին Պօղոսի կըն-կանը . . . . . | 100 |
| 9° Մարգըտին բօբոյայի . . . | 200 |
| 10° Պ. Ա. Մանուկին Դավիդի չի-գիան . . . . . . | 1500 |
| 11° Պ. Ա. լուսիկին լէնկէլյեան երեք զաբխսի վրայ . . . | 3400 |
| 12° տ. Հ. Հընգուձին վիտուային[1] Պ. Աննային . . . . | 1000 |
| 13. Պ. Քաղքին բլէպանիային[2] . | 480 |
| Detto. Detto, երկու զաբխսի վրայ | 7825 |
| 14. Պ. Ա. Միքայէլին Պոտէրի չի-գիան . . . . . . | 3000 |
| 15. Ա. գօնզիլիար de Stanen hein à 5 p. c. t. . . . . . | 10000 |
| 16. Պէլիկրատի Capitulum ին[3] . | 1200 |
| 17. տ. Հ. Ակոփշային Փօրգի վի-տուային . . . . . . | 600 |
| translatus | 38427 |

1 Լատ. բառ է. այրի (կին), որբեւարի կը նշանակէ։
2 Ժողովրդապետութիւն։
3 Կանոնիկոսարան, կանոնիկոսաց ժողովք։

| | |
|---|---|
| translatus | 38427 |
| 18. Ա. Դոտէրաշին Հանգոյի Տըն. | 411 |
| 19. Անկսէնտին կօլըրիկ Նիկօլի | 1200 |
| 20. Պ. Ա. Վարդանին բադրուպանի | 400 |
| 21. Պ. քաղքին Udvarbiroվին[1] . | 2600 |
| 22. Սուրբուգծոյը Congregatioին[2] . | 240 |
| 23. Պ. Ա. Վարդանին բադրուպանի. | 375 |
| 24. ո. Հ. Լուսիկին Պօղոսի բօզդէրիդաշին . . . . . | 500 |
| 25. ո. Հ. Ա. ըսթեփանին Դատաւորի ջիգիի բօզդէրիդաշին . . | 1800 |
| 26. Ա. Անտօնին քընճի վարդանի. | 180 |
| Summa | 46133„ |

Որչափ կ'երեւայ, այս միջոցիս Հասարակաց խաղաղութիւնը շատ աղէկ վիճակի մէջ չէր։ — Քաղաքաբաշխութիւնը՝ Հասարակաց ապահովութեանը նկատմամբ, մեր Թուականէն արդէն 30 տարի յառաջ անա՛նկ կարգադրութիւններ դրած էր, որոնք — նկատելով ժամանակն — մեծ յառաջադիմութեան նշան եւ քաղաքակրթութեան յառաջացեալ աստիճան կը ցուցընեն։ Այսպէս օրինակի աղագաւ՝ ի մէջ այլոց՝ կը սահմանուի խորհրդանոցին մէջ, որ վարձէ քաղաքը չորս գիշերապահ, որոնցմէ մէկը միշտ դատաւորին քով գտնուի. երկրորդը՝ վաճառանոցին վրայ հսկէ. իսկ մէկալ երկուքը քաղքին այլեւայլ կողմերը վեր վար պտըտին ու

1 Գործակատար։

2 Խաղախորդաց ընկերութիւն։

հսկողութիւն ընեն, որ անկարգութիւններ չպատահին։ Հրամայեց միանգամայն որ պահանորդաց ձեռքն ըլլայ մէյ մէկ փչելու գործիք, ինչպէս եղջիւր, փող եւ այլն. եւ գիշերուան, ամէն ժամուն՝ երբ աշտարակին ժամացոյցը զարնէ, գործիքնին հնչեցընեն։ Պահապաններէն մէկն որ քուն ըլլար, երկրորդ օրն իբրեւ պատիժ՝ տասուերկու գաւազան պիտի ընդունէր։

Ուրիշ տեղ ալ կը գտնենք, թէ վարչութիւնը, քաղքին ապահովութեանը համար աւելի զօրաւոր միջոցներ բանեցընելու հարկ տեսած է։

Որովհետեւ քաղքին մէջ՝ ժողովրդեան բերանն ասդին անդին շատ լուրեր կը պտըտէին, որոնք բնակչաց հանգստութիւնը կը վրդովէին. անոր համար որոշուեցաւ, որ տանտէր կամ քաղաքացի մը տնէն հեռանալու ատեն, իրեն տեղ՝ մարդ մը թողու տունը, որ չըլլայ թէ բան մը պատահի։ — Որոշուեցաւ նաեւ, որ գիշերները 15 քաղաքացի ձիաւոր գիշերապահութիւն ընելու ելլէ։ Ասոնց մէջէն զանիկայ, որուն վրայօք քաղքին դատաւորը կը համարի թէ մէկալներուն վրայ հսկողութիւն կրնայ ընել, վերակացու դնէ. եւ ինչ որ ասիկայ հրամայէ, մէկալ 14 հոգին, ընդ պատժով երեք ֆիորին տուգանաց՝ իրեն հնազանդելու պարտաւորին։ Աս բաւական չէ, ասոնց օգնութիւն տրուեցաւ դեռ 10 հոգի հետեւակ. որոնք քաղքին մէջ պիտի քալէին։ Ասանկով՝ վերոյգրեալ չորս գիշերապահին հետ, ձիաւոր ու հետեւակ պա-

հանորդաց թիւն եղաւ 29 հոգի։ Ասոնց գործքը պիտ՛որ սկսէր իրիկուան ժամը իննին։ Զիւորները պիտ՛որ ունենային քովերնին սուր ու ատրճանակ. եւ կամ թուր ու հրացան։

Բայց որչափ պարագաներէն կրնանք հետեւցընել, այս նոր կարգադրութիւններն ալ քաղքին ներքին խաղաղութիւնը չհաստատեցին։ Եւ որովհետեւ խռովութիւնները կը շարունակուէին, եւ “Աստուծոյ ու մարդկան օրինաց դէմ՝„ անկարգութիւնները կը շատնային. որպէս զի մէյ մը յստակուի քաղաքն այս անկարգութիւններէն՝ հասարակութիւնն ոստիկանութեան վերատեսուչներ դրաւ, որ այս տեսակ բաներուն դէմ աչուընին բանան։ Ասոնց իշխանութիւն տրուեցաւ, թէ՝ ո՛ր եւ է տեսակ մարդ ըլլայ ան, քաղաքացի կամ օտար, վարձակալ կամ աւատառու, որն որ ինչ եւ իցէ կերպով կասկածելի բանի պատճառ տայ, առանց դատաւորին կանխագէտ հրամանին՝ բռնել, բանտ դնել ու ըստ իրենց գործոյն պատժել կարենան։ Քաղքին ապահովութեանը վրայ հսկող դրաւ վարչութիւնը զԱղաչայ Թորոս Դէօրէօգեանց եւ զԱղ. Մանուկ Շիմիլովեանց։ Ասոնք՝ իրենց օգնութեան կրնային առնուլ ծառայութեան մէջ չեղող քաղաքաբաշխութեան ծառաներն ու պահապանները. եւ ի դիպուածի հարկաւորութեան՝ նաեւ բերդին պահանորդները։ Աւելի հարկաւոր դէպքերու մէջ՝ նոյն իսկ քաղաքացիք մասնակից պէտք էին ըլլալ, կասկածելի մարդիկը բռնելու մէջ։ Վտանգաւոր մարդիկը

բռնած տեղն վերատեսուչներն ալ պատժոյն տուգանքէն մաս կ'ընդունէին։ Սակայն գող բռնած տեղնին, դատաւորին ձեռքը տալու էին զանիկայ։ Այս վերջիններու տուգանքէն իրենց մաս չէր իյնար։

Սակայն այս խիստ միջոցներն ալ իրենց բաղձացուած պտուղը յառաջ չբերին։ Ամէն տեսակ անկարգութիւններն ու գողութիւններն օր քան զօր կը շատնային քաղքին մէջ։ Եւ թէպէտ, որչափ կ'երեւայ, արդարութեան ձեռքն իյնողները խստիւ պատժուեցան. բայց եւ այնպէս չարութիւններն ամենեւին չդադրեցան, այլ ընդ հակառակն աւելցան։ Այն տեղն քաղաքաբաշխութիւնը նկատելով, որ այս տեսակ անձինք պատիժները բանի տեղ չդնելով՝ անկարգութիւններն՝ ի վնաս ապագայ սերնդեան, եւս առաւել պիտի յաճախեն. որպէս զի մէյ մը այս բաներուն առջեւն առնուի ու գէշութիւնները նուազին ու դադրին, յաջորդ շատ ազդու եւ գործնական միջոցը գտաւ։ Որոշեց թէ, որ մարդն որ — քաղաքացիներն ու աւատական գնչուները դուրս հանելով — ինչեւիցէ տեսակ գողութեան մէջ բռնուի, առաջին անգամ իր չարութեանը համեմատ պատժուի, յետոյ քաղքէն դուրս հանուի. այն յայտարարութեամբ, որ եթէ մէյ մ'ալ զինք քաղքին մէջ տեսնելու ըլլան, դարձեալ՝ ա՛յն առաջին պատիժը պիտի ընդունի, եւ նորէն պիտի աքսորուի։ Ու քանի անգամ որ այն բանն ընէ, այնչափ անգամ պատիժը վրան պիտի կրկնուի։

Ահա այս կարգադրութեանց նկատմամբ ժամանակակից տարեգիրներուն խօսքերը։

“Աստուծոյ ողորմութեամբն 1757 դեկի. 19 Ելիզաբեդան։

Խորհուրդ եղաւ Պատուելի հասարակին մէջ, որ հիմիկուցէն ինտան վարձվի Պատուելի քաղքին սէպին վրայ չորս մարդ ըսդրաժ.[1] որ մարդիկն ունենան տարեպտուտ[2] ըսդրաժ ըլլալու Պատուելի քաղքին մէջ։ Որոնց մէջէն մէկն հանապազ պիլայ Պատուելի Պիրօվին մօտ. եւ մէկն պի նստի պազարն. եւ երկուսն ունենան քաղաքն քալէլու, քաղքին մէջ. որոնց պի տրուի տարեկան հախ . . . ։ Որ սդրաժնուն ձեռն պի տրվի մէմէկ փչելու շդրումէնդ,[3] որպէս կօտօշ կամ այլն. որ ունենան ամէն սահդեն քշերն փչելու. այսինքն պազըին ժանկըկին քաշելուն ետեւանց։ Եւ աս ալ գիտաձվի, որ թէ օր այս դրաժնուն մէջէն մէկնիօրը քուն ըլլար նայ, այնպիսոյն երկուսում օրն 12 լօբադայ[4] պի տըրվի։„

“Աստուծոյ ողորմութեամբն 1762. Սեպտեմբերի 2ին Ելիզաբեդան։

Քաղվելով Պատուելի հասարակն մէկտեղ, խորհուրդ եղաւ, լսելով շատ դիհաց մէկ ցեղ,

---

1 Stázsa, պահանորդ, պահապան, գիշերապահ կը նշանակէ, հունգ. է։

2 Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւը կը նշանակէ ամբողջ տարին։

3 Գերմ. բառ է. գործիք կը նշանակէ (հոս երաժշտութեան, փչելու գործիք)։

4 Lapát, հունգարերէն է. կը նշանակէ թի, թիակ։

մէկալ ցեղ խապրտիք։ Այսպէս հաստատեց Պատուելի հասարակն, որ ամէն մէկ քաղքըցին, թէ որ կամենայ տանէն երթալու իրեն արուտուրին սէպն նայ, ամէն մէկ քաղքըցին ու կաղտան ունենայ իրեն տեղն կաղտայ թօղելու, տունը, սուբ բէնայ[1] 24 մաճրի։ Նաեւ աս ալ հաստատվեցաւ, որ այսօրվանէն տասնըհինգկան հոգի, հայ կաղտանէր ձիաւոր ըսդրած ելէլու։ Եւ այն տասնը հինկ հոգուն մէջէն, զորն որ ճանչընայ Ա. Պիրօմն թէ արժան է որ ապրսբըրօէ մէկալ 14 հոգուն նայ, ունէնայ ամէն մէկը հընազանդելու, սուբ բէնա 3 մաճրի։ Նմանապէս հետեւակներն ալ պի քալին ըսդրած, 10 հոգի. եւ չորս ըսդրած պըրօկարները. որ պիլայ ամէն գիշեր ընդրէկ ըսդրածները քաղքին մէջ 29 ըսդրած։ Ամէն մէկ ապրէ պի ելէ ըսդրած, դաս մը ապրի մէջ պիլայ 3 կաղտայ, նայ ա,ս 3 կաղտան պիտան մէկ ըսդրած մը ձիաւոր։ Եւ այս ըսդրածները պի էլին 9 սահդէն, ձիաւոր պիլան. եւ համ 14 հոգին հետեւակներ. ու այս ըսդրածնուն հախն, ձիաւորացն պիլայ 1 միշ. եւ հետեւակնուն հախըն 12 պան։ Եւ այս ձիաւոր ըսդրածներ պի ունենան սաղըդ. բիշդօվ կամ թուր կամ փլինդայ։„[2]

“1765 Ուլիսի 23. Էլիզաբէդան.

Քաղվելով Պատուելի Մակիսդրադըն, նաեւ Պատուելի Սուդան եւ տեսնելով որ մեր Քաղքին մէջ շատ անկարգութիւններ կու լըսվին

---

1 Լատիներէն է. կը նշանակէ՝ ընդ պատժով։

2 Գերմաներէն է, կը նշանակէ հրացան։

*թէ կու գտվի. որ բաներն, դէմ Աստուծոյ եւ մարդկան օրինաց ին: Վասն որոյ, որ այսպիսի անկարքութիւններ խոդիկվին մեր քաղքէն, ութվեցաւ Պատուելի Հասարակին, որ Հասդատինք Տէրէգդօրներ մեր քաղքին, որ այսպէս անկարքութեանց սէմէշ[1] ըլլան: Եւ կու տրվի փագուլդաշ[2] Պ. Հասարակէն Աղաչայ Տէրէգդօրնուն, օր ամէն սօյ մարդ, դէ քաղքըցի, դէ ժելեր, թէ եօպաճ.[3] եւ մէկ խօսօք հի ինչ սօյ մարդ, որին վրայ հի ինչ սօյ սուշբիձիայ[4] ունենան, նայ կարենան ձեռ դընելու վրան. բրնին, արէստ դնին,[5] արանձ Աղաչայ Պիրօվին հրամանին ալ. եւ առէստ դնելով պիտան արաչ Պ. Մակիստրադին, որ շունչին գօրայ դատվի: Եւ ինչ ճուրում որ գար ամպէսնուն մօտէն, նայ այն ճուրումին երկու պանը պիլայ Պատուելի Մակիստրադինը ու մէկ պանը պիլայ Աղաչայ Տէրէգդօրնունը: Որ բանին վրայ հասդատեց Պ. Հասարակն Տէրէգդօր զՊ. Աղաչայ Թօրօսն Դիուրիուգեանց, որպէս Սէնադօր Պ. Հասարակին. Նմանապէս զՊ. Աղաչայ Մանուկն Դաւիթի Շիմիլօվցեանց, որպէս Սուդաշ Պ. Հասարակին: Եւ պի ունենան զֆրայ[6] պրկարներն եւ զհեցդաշներն:[7]*

---

1 Աչքը բաց. հունգարերէն է:

2 Ազատութիւն, հրաման. լատ. է:

3 Jobbágy հունգ. է. ուստառու, ուստառական կը նշանակէ:

4 Կասկած, լատ. է:

5 Բանտարկել, բանտի մէջ դնել:

6 Ազատ, ծառայութեան մէջ չեղող. գերմաներէն է.

7 Երկուքն ալ կը նշանակեն՝ ծառայ, արբանեակ, վարող:

նմանապէս, զօր բան ըլլար նայ, բերդէն Հայ-
տուգ. եւ դեր՝ ալ զօր պէտգ ըլլար նա, քաղ-
քըցիք ալ կարէնան վերցընելու եւ զսուշըփձիօղ
մարդիգըն բըռնելու: Բայց հօս, թէ օր գող
բըռնէին նայ, զայն ունենան Աղաչայ Պիրօվին
տալու. եւ այն ճուրումէն փայ չի պի ունենան
Աղաչայ Տերեգդօրներն, հապա պիլայ ճուրումն
Մակիսդրադինը, որպէս ասոր առաջ:„

“1779, die 19 februarij. Թէ ինչ պատ-
ճառնու համար կամեցիլէ Պատուելի Հասարակը
զայս Constitution[1] անելու. որովհետեւ ինչվաս
շատ սօյ գօղութեան մէջ գտվօղները, մագար
թէ վօվ իրեն արածին գօրայ, ըստ արդարու-
թեան պատճըվիլ ին. այսու ամենայնիւ ամենը
չին դադարիլ իրենց չարութիւնէն. այլ եւս
առաւել կավելնան, անպէս օր թէ օր միայն
պատժօվը մընան, սէպ չի դընելով, օր զավուր
պի ավելնան եւ ապագայի քաղաքացոց մեծ
զէներ պի բերէյին: Ուրեմն օր մէմը դադարին
ատ սօյ ճամբընուն. եւ ավելնալուն տեղը պաք-
սին, օզկայ medium[2] չի գըտաւ Պ. Հասարակը,
եթէ ոչ վօվալ օր գտվի (Քաղքըցոցմուն եւ
քաղքին եօպաճ ծինկաննուն դուս) հի ինչ գո-
ղութեան մէջ նայ, նախ եւ առաջ իրեն խալա-
տութեանը գօրայ պատճըվի. եւ ապա քաղքէն
ալ դուս հանվի. ea cum declaratione,[3] օր թէ
օր ալալ Քաղքին մէջ գտվի նայ, այլվի առաջի

---

1 Սահմանադրութիւն, կանոն:

2 Միջոց, ճամբայ:

3 Եւ այս՝ այն յայտարարութեամբ:

պատիժը տրվի, եւ ամէնը դուս հանվի. et hoc toties quoties.[1] Communi voto.[2] Հաստատւեցաւ։„ — — —

Մսավաճառներն ունէին իրենց յատուկ օրէնքն ու որոշուած կանոնն, որուն համեմատ, սահմանուած էր թէ ինչ տեսակ միս՝ երբ եւ ո՛րչափով պէտք էր տրուիլ։[3] — Ասանկ օրէնք ունէին նաեւ հացագործները։ Վերին կառավարութիւնն ալ՝ քաղաքաբաշխութեան հրաման խրկած էր, որ քննութիւն ընէ եւ հսկէ այս բանիս վրայ։ Թէպէտ քաղաքաբաշխութիւնն իր կողմանէ երկու վերակացու դրաւ՝ այս հրամանին վրայ հսկելու համար. այսու ամենայնիւ որչափ կ՚երեւայ, հրամանը՝ տեսանելի հետեւութիւն մը չունեցաւ։ Օրէնքներն ու կարգադրութիւնները միայն թղթի վրայ էին։ Հացագործք՝ չէ՛ թէ միայն նուազ չափով կը կշռէին հացը, հապա նաեւ պղտիկ ու հում կը շինէին։ Երբ քաղաքը տեսաւ որ ասոր նկատմամբ զեղծումները չեն դադրիր, եւ ասոր հետեւութեամբ նաեւ վերին կառավարութեան հրամանը ոտքի տակ կ՚առնուի, նորէն հրաման հանեց, որ թէ՛ հասարակ հացն ու թէ՛ սպիտակ հացիկները. — միով բանիւ՝ ամէն ցորենէ եփուած բան՝ վերին կառավարութեան

---

1 Լատիներէն ծանօթ ասացուած մըն է։ Նշանակութիւնն ա՛ն է, թէ, ա՛յնչափ անգամ պիտի պատժուի, որչափ անգամ նոյնն ընէ։

2 Հասարակաց հաւանութեամբ։

3 Տես Հայք յԵղիսաբեթուպոլիս, էջ 500—505։

օրինացը տուած չափովն ու համեմատ չինուին։ Ասոր վրայ հսկող դրաւ Նորէն զՋատիկ Թումայեան եւ զԼուսիկ Ոսկերիչեան, իրենց լիակատար իշխանութիւն տալով, որ այնպիսիներուն հացն, որոնք որոշեալ չափին համեմատ եւ ըստ օրինի չեն շիներ, առանց ակնածութեան ու խնայելու, անմիջապէս գրաւեն։

Ահա որոշումն ըստ արձանագրութեան։

"Ասոր առաջ circiter[1] երկու տարով մը, գերաբարձր կուպէրնիումին Ordinatioին[2] գօրայ, վասն ամենայն սօյ հացի inspectioի[3] համար թէպէս Հասարակօվ ordinat էյին Ա. Ջատիկ Թումանի եւ Ա. Լուսիկ Օսգէրիչի. ու թէ ինչ պատճառի համար ալ թօղվիլին, գիտելի է։ Տեսնելով ուրեմն Պ. Մակիսդրադը որ շատ praevaricatioներ[4] կ'ըլլան, եւ այս կերպիւը Գերաբարձր կուպէրնիումին հրամանն ալ in effectum[5] չի երթալ, նօրէնը confirmoվադ-արաւ այլվի զվերոյ յիշեալ Աղաչաները. օր թէ հացը, թէ զէմըլը,[6] թէ սուխալաճը, verbo[7] զամենայնը, ինչօր ցօրենէ կէփվի, Գերաբարձր Կուպէրնիումին Ordinatioին գօրայ inspicialուիդանին, օր չափի գօրայ արվի. ու թէ օր չի անէին իրենց հրամայեած չափին գօրայ, նայ

1 Շուրջ, գրեթէ, լատ. է։
2 Կարգադրութիւն, հրաման։
3 Հսկողութիւն, վերատեսչութիւն։
4 Պատուիրանազանցութիւն, զանցառութիւն։
5 Իրօք, գործնականապէս։
6 Փոքրիկ հաց, հացիկ, գերմ. է։
7 Միով բանիւ, մէկ խօսքով։

plenarie facultoվադ[1] կանէ Պ. Մակիսդրադը զյիշեալ Աղաչանները, or immediate,[2] զամպէսներուն հացը, զէմըլը, սուխալածը եւ այլն. Sine ulla commiseratione et relaxatione, confiscovat[3] անին։ Նմանապէս թէ որ իմացվէին, թէ օրտինացիօին դէմ ալ բանն ծախիլին կամ հում հաց (որ միայն չափը ծեծէ) կանին, դաձանն ալ confiscoվադ պիլայ։ Եւ այսպէս զաս facultasը այնպէս կու տրվի վերոյ յիշեալ Աղաչանուն եւ այն կեռպիւը յանձներն ալ արիլին, որ մէկ միայն Պ. Մակիսդրադէն ունենան զdepententiaն ու չէ մենէնակ պիրովէ։ Elisabet. 20ª Juny 783.„ — —

Գիտենք թէ ինչպէս հետզհետէ՝ ժամանակին եւ պարագաներուն պահանջելովը, քաղքին պաշտօնատեարց վարձքը բարձրացաւ։ 1791ին, հասարակութիւնն ու հարիւրոց ժողովը հարկաւոր տեսաւ, որ իւր պաշտօնատեարց վճարքը լաւցընէ։ Ուստի եւ ամէն բանէն յառաջ՝ ընդհանուր քուէով հաստատուեցաւ.

Նախ. Որ կայսրմէ՝ ամէն մէկ պաշտօնատէրին համար շնորհուած քառամնական փիորինն, ամէն՝ թէ՛ ներկայ ու թէ՛ հեռաւոր պաշտօնատէրին տրուի։

Երկրորդ. Որոշուեցաւ, որ այնուհետեւ քաղաքային եւ տնտեսական գործառնութեանց վրայօք՝ երեքշաբթի, իսկ իրաւական խնդրոց

---

1 Լիակատար իշխանութիւն։

2 Անընդմիջապէս, շուտ մը։

3 Առանց գթութեան ու թուլութեան՝ գրաւեն։

վրայօք՝ ուրբաթ օրերն ըլլան նիստերը։ Ասոնց ներկայ եղող ամէն մէկ քաղաքաբաշխութեան անդամ՝ ամէն անգամուն ընդունի երկ՚երկու ֆիորին։ Բայց եթէ ի դիպուածի որ նիստերը կամ ժողովքներն աւելնան, այն ատեն անոնց համար զատ վճարք պիտի չտրուի։

Երրորդ. Որովհետեւ իրական դատաւորն ամէն մէկ նստի համար՝ չորս չորս ֆիորին կ՚ընդունի, այս վճարքն այն ատեն միայն առնու, երբ վերոյգրեալ օրերը, ժողովոյն իրապէս ներկայ գտնուի։ Վասն զի իր հեռաւորութեանն ատեն, այս որոշուած գումարն՝ իր փոխանորդը պիտի ընդունի։

Չորրորդ. Երբ որ ի պակասութեան առաջակայից, հարկ ըլլայ որ հասարակութենէն անձ մը, անոր տեղը բռնէ, երկու ֆիորինը՝ միայն իրաւական խնդրոց վրայօք եղած խնդիրներու ժամանակն, այսինքն ուրբաթ օրերն ընդունի. եւ չէ՛ թէ երբ խորհուրդը քաղաքային եւ տնտեսական խնդրոց վրայ կ՚ըլլայ. — վասն զի ասոնց համար օրական եկամուտ չկայ։

Հինգերորդ. Եւ որովհետեւ մինչեւ հիմակ պատահած դէպքերէն, պատիժներէն ու արձանագրութիւններէն եկած մուտքերը, միայն իրօք ներկայ եղող խորհրդականներուն, այսուհետեւ ալ այնպէս ըլլայ. դուրս առնելով օրինազանցութեան դէպքերը։

Այս առթիւ սահմանուեցաւ, որ առաջին նոտարն ընդունի չորս հարիւր ֆիորին, զոր մին-

չեւ հիմակ կ՚ընդունէր։ Բայց ամէն յառաջ եկած պատահարներէն, ըստ հին սովորութեան առնու բաժին մը։ Բաց ասկէ, իբրեւ բնակութեան տեղ, յիսուն ֆիորին։ Դարձեալ իրենն ըլլայ՝ բնակութեան վերաբերեալ պարտէզին գործածութիւնը։ — Փոխանակի նոտարին վարձքն որոշուեցաւ, երկու հարիւր ֆիորին։

Ահա առնց նկատմամբ եղած արձանագրութիւնը։

"Sub confluxu Mgstus. et Communitatis, die $2^{a}$ Martii. A. 1791. Հարկաւոր տեսիլէ Հասարակութիւնը եւ respective[1] Պ. Մակխդրադը վասն Salariumնու[2] համար, ընծայած differentia մը[3] առաջ տալու. որ առնք ալ suo ordine[4] հաստատելով հասարակ աղէկը, majori cum promptitudine[5] առաջ քշելու կարենայ։ Որոյ գօրայ. $1^{mum}$ et ante Omnia unanimi Voto[6] հաստատեցանք, որ խնթիքարութեանըմէ applacidat[7] արած, pro quovis Individuo[8] քարսունական մճրին. հիվըրմէն Individuumը Magistratuale, inclusive Praeside,[9]

---

1 Լատ. է, կը նշանակէ՝ յարաբերութեամբ։

2 Վճարք, վարձք, թոշակ։

3 Խտրութիւն։

4 Ըստ օրինի։

5 Մեծագոյն արագութեամբ, ճշտութեամբ յառաջ տանելու համար։

6 Նախ եւ ամէն բանէն յառաջ, միաձայն քուէով։

7 Շնորհել, վրան դնել, տալ։

8 Որ եւ է անձի։

9 Փաղառաքար, մէկտեղ առնելով նախագահն ալ.

Թէ Praesens, Թէ Absens intacte, et illibate[1] ալդօլ արնու։[2]

2do Determino վազ կըլայ, pro Sessionibus et Confluxibus,[3] ինչպէս երեքշաբթին, pro Politico et Oecumenico[4]. եւ ուրբաթը pro Juridico։[5] Որոց աշխատանացը ամէն մէկ Praesens Individuum Magistratuale, 2 Rf. այսինքն երկու, titulo fixi Salarii[6] պի ունենայ։ Բայց թէ որ այսգից դուս Circumstantiis ita exposcentibus confluxusները[7] ավելընային, նա ասոնց համար ընդրէկ recompensation,[8] միայն պիլայ խօնթիքարէն շնորհած fixumը, ինչպէս քարսուն. in hujus confirmitate.

3tio Որոյ հետեւ Պ. Աղաչայ Actualis[9] Պիրովին pro omni Sessione applicidat[10] արած է 4 Rf. այսինքն չորս, նա զաս applicidat salariumնալ միայն ան ատենը պի արնու երփոր վերոյ determinat[11] օրերը, ինչպէս երեքշաբթին եւ ուրբաթը ներկայ գտվի նայ. եւ in absentia[12] Պ. Աղաչայ

1 Թէ ներկայ ու թէ հեռու եղողն՝ ամբողջ ու անվթար։

2 Ընդունի, առնու, հունգ. է։

3 Կ'որոշուի նիստերու եւ ժողովքներու համար։

4 Քաղաքական ու տնտեսական։

5 Իրաւական։

6 Որոշ օրական վճարքի տիտղոսով։

7 Ըստ պարագայից պահանջման ժողովքներն աւելնային։

8 Հատուցումն, փոխարէն։

9 Իրական, ճշմարիտ։

10 Ամէն մէկ նիստի համար շնորհած, վրան տրուած։

11 Որոշ, հաստատուն։

12 Ի հեռաւորութեան։

Պիրովին Succedens Substitutusը[1] զնոյն determinat Salariumը գընտըվելու կարենայ եւ անատենը assessorութեան[2] հախը de pleno cessat[3] ըլայ։

4to Թէօր հանդըպէր, որ in defectu Actualis Assessorum[4] կամ occurrente exceptione Judice[5], օգկայ Individuum, այսինքն Հասարակէն in Supplementum absensis substitoվադ[6] ըլար նայ, այնպէս միայն in Juridicis, այսինքն ուրբադը զabsensին հախը, ինչպէս 2, այսինքն երկու Rfը. պի շնորհըվի։ Բայց sub tractatu Politico et Oeconomico, ինչպէս երեքշաբթի օրը ամէնեւին մէկ հախ մըն ալ չի ունենայ։

5to et Ultimatio[7]։ Ինչպէս ասոր արաջ բոլոր accidentioները[8], ինչպէս Ճուրումները եւ inprotocollatioները[9], et pro congressu Magistratuali[10]. Ճուրումըստանը եւ այլն հատուկ Actualis Assessorնունը էղիլէ, այնպէս այսուետեւալ մնայ, որ accidentiaնուն substitutusը. նաեւ ինչպէս Praesesը եւ Actualisը, զjustam

---

1 Յաջորդող տեղապահը, փոխանորդը։

2 Առաջակայութիւն, ատընթերակցութիւն։

3 Բոլորովին պիտի դադրի։

4 Ի պակասութեան իրական առաջականներու։

5 Կամ հանդիպելի ատենական խնդրոց մէջ։

6 Հեռաւորներուն տեղը լեցընելու համար փոխանորդութիւն ընէր։

7 Եւ վերջապէս։

8 Դիպուած, պատահար։

9 Արձանագիր, արձանագրութիւն։

10 Եւ քաղաքաբաշխութեան ժողովին համար։

ratam[1] գրնտրվելու կարենայ, exceptis casibus Praevaricationum[2].

Eodem sub Confluxu[3] Salariumը նաեւ ordinarius[4] Ա. նօգարիուշինը ասոր առաջի չորս հարուր Rf. varihabiluիդ[5] կ'ըլլայ։ Ասոր քով բոլոր Accidentiaները, juxta Antiquum usum et Consvetudinem[6] ինչպէս ասոր արաջ պի արնու 2do Titulo Quartirij[7] Rf. 50 id. est իսուն կու տըրվի. եւ զունացած պախչան ալ usuat[8] պի անէ։

Salariumները նաեւ վինձէ նօգարիուշնուները[9] ut et Archivariusինը[10] պիլլայ singillatim[11] à 200 Hfոց. id est երկու հարուր մ'ճրի. մ'ճրքի։„

Բայց պաշտօնատէրներուն այս վճարքը — որովհետեւ ինչպէս կ'երեւայ շատ խղճմտանքով չէին կատարեր ամէն անգամ իրենց գործքերը — օրէնքի մը ձեռօք կապուեցաւ կամ կանոնաւորուեցաւ. երբ երկու տարի ետքն, ամէն բանէն յառաջ որոշուեցաւ թէ, թէպէտ իրական դատաւորը 400 ու առաջականները 200ական ֆիորին ընդունին, բայց այնպիսի

---

1 Պատշաճ, իրաւացի մասը։
2 Դուրս առնելով օրինազանցութեան դէպքերը։
3 Հոն, ան ժողովքին մէջ։
4 Իրական, կարգաւորեալ, սովորական։
5 Փոխուիլ։
6 Ըստ հին կիրառութեան եւ սովորութեան։
7 Բնակութեան անուան տակ, տիտղոսով։
8 Գործադրել։
9 Փոխանակի նոտարներուն։
10 Ինչպէս նաեւ դիւանապետին։
11 Մէկիկ մէկիկ, զատ զատ։

կերպով մը, որ կայսրմէն շնորհուած գումարն ալ հասարակութեան արկղին մէջ առնուի. ուսկից ամէն մէկ առաջակայ, այս յաւելուածովը մէկտեղ՝ ընդունի 200 ֆիորին։ Սակայն՝ եթէ որ եւ է առաջական իր պաշտօնէն ութը շաբթէն աւելի դուրս մնար — (այս ութը շաբաթ ազատութիւնը պիտի վայելէին, միայն այն խորհրդականներն, որոնք առ նուազն չորսական ամիս նիստերուն մէջ իրապէս մաս ունեցած են.) այն առաջակայէն՝ ամէն շաբթուան համար իր վճարքէն չորս ֆիորին վար պիտի առնուէր. եւ այս գումարը հասարակաց գանձը պիտի դրուէր՝ իբրեւ դրամագլուխ, պաշտօնատեարց վճարքը լաւացընելու համար։ Իսկ իրական դատաւորին 400 ֆիորին վարձքն՝ այն ատեն միայն ամբողջապէս պիտ՚որ վճարուէր, երբ որ ութը շաբաթ դուրս մնալէն զատ — (միտ դնելու է, որ այս միջոցիս մէջ, թէպէտ սովորաբար ընդունելի չորս ֆիորին վճարքը պիտի ընդունէր, բայց մէկալ չորս ֆիորինը՝ դատաւորին տեղապահին պիտի մնար) ամբողջ տարին անձնապէս իր պաշտօնը կատարած, վարած ըլլար։ Վասն զի եթէ որ ութը շաբթէն աւելի իր պաշտօնէն դուրս մնար, այն ատեն իր փոխանորդը պիտ՚որ ընդունէր՝ ամբողջ շաբաթն ընդունելի ութը ֆիորինը։ Բայց այս միջոցին — ինչպէս ինք իրմէն կը հասկըցուի — առընթերակացութեան վարձքն ամբողջապէս ի կախ պիտի մնար. այսինքն բան մը պիտի չտրուէր։

Ահա ասոր նկատմամբ եղած արձանագրութիւնը։

"Sub confluxu Magistratis et Communitatis 8 Januarij 793. Հարկաւոր տեսիլէ հասարակութիւնն եւ respective Պ. Մակիսդրադը վասն salarium նու համար արաջ տալու որ ասոնք ալ suo ordine[1] հաստատվելով, հասարակ աղէկը majori cum promptitudine[2] յառաջ քըշվելու կարէնայ։ Որդ գօրայ, 1$^{mo}$ et Ante Omnia Unanimi voto[3] հաստատվեցաւ, որ Պ. Աղաչայ, Actualis Պիրովին հախը ըլայ 400 Rf. եւ Assessorնունը 200։ Բայց այնպէս, որ խոնթիքարէն շնորհած summaն, Cassam Allodialem ingrediat[4] ըլայ. ուսդից ամէն Assessorին, cum supplemento[5] ինչպէս ալ վեր 200 Rf. pro fixo salario defigat[6] կու տրվի։ Ան ալ, mindazonáltal[7] այնպէս, որ թէօր այս տարին հի որ մէկ Ա. Assessorը, ութը շաբդէն աւելօքը (զոր ութը շաբդէն absensioին relaxatioն[8] նոյն Ա. Assessorները պի ունենան, որոնք ad minus[9] $^{1}/_{3}$ տարի, այսինքն չորս ամիս sessioներ frequentat[10] արած

1 Ըստ պատշաճի, ըստ օրինի։

2 Մեծագոյն ապահովութեան համար։

3 Ամէն բանէն՝ յառաջ, հասարակաց ձայնիւ, միացեալ հաւանութեամբ։

4 Հասարակաց արկղին մէջ դրուի, զետեղուի։

5 Յաւելուածովը, աւելորդութեամբ։

6 Իբրեւ որոշ վճարք վրան կը դրուի։

7 Սակայն եւ այնպէս, այսու ամենայնիւ, հուն. է՝

8 Հեռաւորութեան (այսինքն ազատութեան) թոյլտուութիւնը։

9 Առ նուազն։

10 Նիստերու մէջ ներկայ գտնուած են։

ըլան) absens հեռէւէր նայ, նոյն Ա. Assessorէն շարդեն գլօխ, 4 Rf. պի քաշվի եւ Allodial Cassaն[1] պի մնայ in Casus confirmitate:[2] Որոյ հետեւ Պ. Ա. Actualis Պիրովին in 400 f. defigat է, ան ալ անատենը de pleno[3] պի վիճարվի, երփոր ութը շարաթ absentioէն դուս (որ ժամանակին մէջ զAssessorութեան հախը, ինչպէս 4 Rf. որպէս մէկալ Assessorները պի արնու թեպէտ, բայց զմէկալ 4 Rf. Supplens[4] Պ. Ա. Interimalis[5] Պիրովին պի մնայ) ընդրէկ տարին զհիվօդօլը[6] personaliter[7] ունենայ եւ քալցընու. որոյհետեւ թէ որ այս ութը շարդէն դուս ավէլըքը absens ըլար, նոյն Interimalis Պ. Ա. Պիրօվը պի արնու ըզընդրէկ շարդին 8 զլօթը, որ ժամանակը ընդրէկ Assessorութեան հախնալ de pleno cessat[8] պիլայ:„

## 6.

Չէ թէ միայն մենք, չէ՛ թէ միայն մեր շրջակաները բնակող օտարազգիք, հապա նաեւ ամէն կրթեալ ժողովուրդ զազգայինս՝ ի բնէ աստուածապաշտ, կրօնասէր ու բարեպաշտ կը համարի: — Եւ աս ստոյգ է: — Թէպէտ եւ

1 Հասարակութեան արկղը:

2 Նմանօրինակ, հաւաստար դէպքի մէջ:

3 Ամբողջապէս, բոլոր:

4 Տեղապահ:

5 Առժամանակեայ:

6 Պաշտօն, հունգ. է:

7 Անձամբ, անձնապէս:

8 Ամբողջապէս պիտ՝ որ դադրի:

մէկալ կողմանէ կը հարկադրինք խոստովանելու եւ ճանչնալու, որ Հայոց բնածին բարեպաշտութիւնը՝ յառաջուանը չէ: — Աս այսպէս ըլլալով ալ՝ չենք կրնար ուրանալ, թէ ազգայինք հիմակ ալ, ամէն բանէն յառաջ Աստուծոյ եւ իրենց հոգւոյն վերաբերեալ պարտականութիւններըկատարելու կը ջանան: — Աս ի սկզբանէ այսպէս էր: Այն կրօնասիրութեան, այն աստուածպաշտութեան հոգին, զոր մեր նախնիներն ընդունած են տասնուհինգ դար յառաջ իրենց պապերէն, յաջորդած է յորդւոց յորդի իրենց թոռներուն, իբրեւ ժառանգութիւն. ու մնացած է մինչեւ այսօր: Թէպէտ ինչպէս ըսինք, այս բարեպաշտութեան յիշատակն իրենց սրտին մէջ նուազեցաւ ու թուլցաւ, այն համեմատութեամբ՝ որ համեմատութեամբ, ժամանակին անցնելովը ու տեղւոյ անջրպետութեամբը՝ Հայրենի երկրէն հեռացան: —

Դրանսիլուանիա գաղթած Հայերն, ի սկզբան կաթուղիկէ եկեղեցւոյ հետ միացած չէին: Պատմութիւնը կը վկայէ, թէ ԺԷ դարուն վերջերն ընդունեցաւ ազգայնոց մէկ մասը կաթողիկեայ հաւատքն իրեն եպիսկոպոսին՝ Մինասին հետ:

Այսու ամենայնիւ, ինչպէս կ'երեւայ՝ մէկալ մասը դեռ լուսաւորչական դաւանութիւնը թողուցած չէր: Սակայն աս բանիս վրայ ինք, ազգն ալ բոլորովին գոհ չէր. որովհետեւ կը տեսնէր նախ՝ թէ Պիստրիցի ազգայինք — Հառ-

մէն դարձած Աւքսենտիոս եպիսկոպոսին առաջ-
նորդութեամբ — իրենց մօտակայ ազգային-
ներուն ընդունեցան կաթուղիկէ կրօնը. — երկ-
րորդ՝ որ շրջակայ ազգերուն շատերը ուղղափառ
հաւատքը կը դաւանէին։ Ուստի նկատելով մէկ
կողմանէ՝ որ կաթուղիկէ եկեղեցւոյ մէջ չեն,
ու մէկալ կողմանէ տեսնելով նաեւ թէ աւ-
ստրիական տէրութիւնը կը փափաքի որ զիրենք
յայսմ մասին ալ մէկալ՝ իրեն հպատակ ազգե-
րուն համեմատ ու միաձայն տեսնէ. — եւ շատ
հաւանական է նաեւ ա՛ն, որ առ այս յայտնա-
պէս եղած է պետութեան կողմանէ, անուղ-
ղակի՝ եւ Դրանսիլուանիոյ վերին իշխանութեան
կողմանէ ուղղակի յորդոր, որ բոպէ մը յառաջ
տէրութեան դաւանած կրօնն ու ասոր հետ
կրթեալ աշխարհի առհասարակ գործածած տու-
մարն ընդունին — ընդհանուր խլրտում մըն է
սկսաւ իրենց մէջ։

Ներլացիք եղան առաջիններն, որ չէ թէ
միայն կաթուղիկէ կրօնն, հապա նաեւ նոր
տումարն ընդունեցան։ Թէ ե՛րբ՝ չենք գիտեր։
Բայց շատ հաւանական է, որ Աւքսենտիոս
Վօղարեանին ատեն (1684—1690)։ — Հոս
էր հայութեան ծուծը. եւ միանգամայն կաթո-
ղիկէ հայ հասարակութեան կենդրոնը։

Թէ իրօք ազգայինք ԺԷ. դարուն վերջերն
(1692) արդէն դարձած էին կաթուղիկէ կրօ-
նին, յայտնապէս կը ցուցնեն ձեռուընիս եղած
մէկ երկու շատ վաւերական ու հաւատարիմ
յիշատակարանները։

Ասոնց մէկուն մէջ կ՚արտայայտեն քահանայք ու առաջնորդք, իրենց ստորագրութեամբը՝ յանուն ազգին թէ ինչ է իրենց հաւատքին էութիւնն ու որպիսութիւնը — իր ամէն պարագաներովը։

Ահաւասիկ, ազգային եկեղեցական եւ աշխարհական առաջնորդաց, Դրանսիլուանիոյ վերին կառավարութեան գրած հաւատոյ դաւանութեան, կամ ինչպէս իրենք կ՚ըսեն յայտարարութեան հայերէն թարգմանութիւնը։

Մեծապատիւ եւ արժանացեալ Տեարք, կառավարիչք եւ վերակացուք Դրանսիլուանիոյ։

Մեծապատուութեանցդ ներքոյ գրեալ ծառաները, խոնարհութեամբ կ՚արտայայտենք, որ այս 1692երորդ տարւոյն Յունիս 15ին — ըստ Հայոց թուականին՝ 1141, Յունիս 5ին — թէ մեր գերապայծառ Աւքսենտիոս Վրզարեան եպիսկոպոսն եւ փառաւորեալ Հռովմէական Սրբազան Պապին տեղապահը, եւ թէ Հայոց քահանաները՝ յանուանէ Յովհաննէս Նաշխուն եւ Անդրէաս Ալաչ, Գլուժի աւագաժողովէն Պիսդրից դառնալով՝ Ձեր մեծապատուութեանցը Գլուժի մէջ, Յունիս մէկին հրատարակած եւ այս խնդրին նկատմամբ՝ արդէն երրորդ անգամ ազգայնոց տուած որոշմունքը մեզի ցուցուցին։ Այս վճռովն ու որոշմունքովը կը բաղձաք գիտնալ թէ ինչ կը նշանակեն եւ ինչպէս հասկնալու է ճուրճովի մեր դաշնագրութեանը մէջ (in Contractu nostro Giorgiovensi) յառաջ

*մերուած հայերէն խօսքերը.* **Մեր հայրենական հաստատումն։**

*Արդ մենք հիմակ, թէպէտ հայերէն գրով, բայց ոսպէս զի մեկնութեան հարկաւորութիւն չըլլայ, լատիներէն լեզուով պատասխան կուտանք թէ վերոյիշեալ բառերուն իմաստն է աս. Մնանք մեր նախնիներուն օրինացը քով։ Այսինքն, պահենք այն պահքի օրերը, մեղէն կերակուրները, տօները, եկեղեցական երգերը. այն հին տօնացոյցը, եկեղեցական հագուստներն եւ քահանաները, որոնք իբրեւ ժառանգութիւն մեր պապերէն մեզի մնացած են։ Մնանք ասոնց մէջ, ամենէն խիստ կերպով։ Ո՛չ տեղը, ո՛չ ժամանակը չստիպեն զմեզ, ասոնց մէջ նոյն իսկ ամենէն պզտիկ փոփոխութիւնն ընելու։ Արդէն այսպէս պահեցինք զասոնք մինչեւ ցայսօր. այսպէս պահեց ու կը պահէ զասոնք մեր Եպիսկոպոսը՝ Գերապ. Աւքսենտիոս Վրզարեան. ու նոյն իսկ Հռովմայ Սրբազան Քահանայապետին հրամանը՝ համարձակութիւն չտուաւ իրեն որ զմեզ որ եւ է կերպով ասոր հակառակն ընելու ստիպէ։*

*Իսկ նկատմամբ հաւատքի ուրիշ կէտերուն, մենք, ամէն Պապական լաւ քրիստոնէից, ուղղափառ Լեհաց, Գերմանացի եւ ուրիշ ամէն քրիստոնեայ ազգերուն հետ մէկտեղ, կը հաւատանք եւ կը դաւանինք զայն, յոր Հռովմէական մայր եկեղեցին կը հաւատայ ու կը դաւանի։ Կը հաւատանք ի մի Աստուած, ի կատարեալ Սուրբ Երրորդութիւնն՝ ի Հայր, յՈրդի*

եւ ի Հոգին Սուրբ։ Կը հաւատանք, որ երեքն ալ մի եւ նոյն բնութիւնն ունին, յանսահմանս միտնջենաւոր են. եւ իրենց՝ մի եւ նոյն յարգանք եւ երկրպագութիւն կը պատկանի։ Կը հաւատանք, որ Աստուծոյ Որդին, ճշմարիտ Աստուած, Կոյս Մարիամ Աստուածածինէն մարմին առնելով՝ ճշմարիտ մարդ եղաւ. ու անանկ կերպով չէ որ աստուածութիւնն եւ կամ մարդկութիւնն իրեն մէջ բաժնուած, եւ կամ մարդկութիւնն աստուածութեան հետ՝ եւ աստուածութիւնը մարդկութեան հետ խառնուած ըլլայ. հապա երկուքն ալ միաւորեցաւ Քրիստոսի անձին վրայ. որ մեզի համար ծնաւ, խաչին վրայ մեռաւ, երրորդ օրն ի մեռելոց յարեաւ, երկինք համբարձաւ, կը նստի Հօր աջ դին, պիտ'որ գայ՝ կենդանիներն ու մեռածները դատելու. եւ որուն թագաւորութիւնը վախճան պիտի չունենայ։ Կը հաւատանք ի Հոգին Սուրբ, որ մի եւ նոյն բնութիւնն, իշխանութիւնն ու տէրութիւնն ունի. որուն այն պատիւն ու երկրպագութիւնը կը պատկանի, որ կը պատկանի Հօր եւ Որդւոյ. եւ որ Հօրն առ Որդին եւ Որդւոյն առ Հայրն ունեցած անսահման եւ միտնջենաւոր սիրոյն առնչութեամբ՝ ամէն ատեն եւ ամէն տեղ, ամէն բան ունի. որ եւ իբր թէ Սուրբ Երրորդութեան ամբողջութիւնն է։

Կը հաւատանք ի մի, սուրբ, Կաթուղիկէ եւ Առաքելական Եկեղեցի։ Կը հաւատանք յեօթն խորհուրդ. հայերէն Եօթն Խորհուրդ Եկեղեցւոյ. եւ կը հաւատանք, որ Յիսուս, մեր Ա-

տուածը հիմնեց ու դրաւ զասոնք Ս. Եկեղեցւոյ համար: — Ասոնց մէջէն՝ առաջին խորհուրդն է Մկրտութիւնը. հայերէն Մկրտութիւն, Կնունք. ու կը հաւատանք որ ասիկայ Ադամէն մեզի անցած մեղքը կը լուանայ ու զմեզ ազատելով սատանային ու մահուան գերութենէն՝ նորէն Աստուծոյ որդիք կ՚ընէ. եւ թէ առանց մկրտութեան չենք կրնար փրկուիլ: Երկրորդ խորհուրդն է Դրոշմը. հայերէն Մեռոն կամ Դրոշմ. եւ կը հաւատանք որ այս խորհուրդը՝ Ս. Միւռոնին օծութեամբն զքրիստոնեայ հոգին՝ սատանային փորձութեանցը դէմ կը զօրացնէ եւ մէկ առանձինն նշանով մը Քրիստոսի զինուոր կ՚ընէ: Երրորդն է աստուածային պաշտամունքն, (liturgia) այսինքն՝ Ս. Պատարագի զոհը. հայերէն Պատարագ. եւ կը հաւատանք, որ երբ քահանան նուիրումներու վրայ Քրիստոսի խօսքերը կ՚ըսէ, անոնք՝ որ յառաջագոյն հաց ու գինի էին, անմիջապէս եւ անմիջնորդութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ճշմարիտ մարմնոյն եւ արեանը կը փոխագրին. ու հացէն եւ գինիէն ուրիշ բան չի մնար՝ բայց եթէ Տեառն մերոյ ճշմարիտ մարմինն ու արիւնը. ա՛ն՝ որ հիմա երկինքն է ու կը նստի Աստուծոյ աջ դին. եւ թէ ա՛յս մարմինն ու արիւնը կ՚ուտենք ու կը խմենք երբ որ կը հաղորդուինք: Չորրորդը՝ Խոստովանութեան խորհուրդը. հայերէն chostovanouthiun[1]. եւ կը հաւատանք, որ մարդ

[1] Այս խորհրդին անունը՝ հայերէն գրով անցուած չէ արձանագրութեան մէջ:

*մկրտութենէ ետեւ գործած մեղքերուն ներումը՝ միայն այն ատեն կ'ընդունի, երբ այս խորհուրդին մէջ զանոնք քահանային կը խոստովանի։ Կը հաւատանք թէ քահանան, խոստովանողին մեղքերը՝ Աստուծմէ ընդունած իշխանութեամբը կը թողու. եւ թէ քահանային ձեռօք՝ այս աշխարհքիս վրայ արձակուած ու թողուած մեղքերը՝ Աստուծոյ առջին երկինքն ալ կ'արձակուին ու կը թողուին։ Հինգերորդը՝ Վերջին Օծումը. հայերէն* Վերջին Օծում*։ — Վեցերորդը՝ Եկեղեցւոյ կարգն. հայերէն* Կարգ Քահանայութեան*. եւ կը հաւատանք որ միայն այս խորհուրդը մասնակից կ'ընէ զքրիստոնեայ հոգին քահանայութեան այն առանձինն նշանին, որուն զօրութեամբն, ինք Ս. Պատարագի զոհը՝ կենդանեաց ու մեռելոց համար կրնայ մատուցանել. եւ խոստովանութեան մէջ մեղքերէն կրնայ արձակել։ Եօթներորդ խորհուրդը՝ Ամուսնութիւն. հայերէն* Պսակ*. եւ կը հաւատանք, որ այս խորհրդին ձեռօք կապուած երկու անձինք — ցորչափ երկուքն ալ կենդանի են — չեն կրնար բաժնուիլ։*

*Այս խորհուրդներէն զատ՝ կը հաւատանք յարքայութիւն՝ բարիներուն, եւ ի դժոխս՝ չարերուն համար։ Կը հաւատանք որ սուրբ պատարագի զոհը, ողորմութիւն, բարեգործութիւն, պահք եւ եկեղեցւոյ աղօթքները՝ չէ թէ միայն կենդանեաց, հապա նաեւ ննջեցելոց փրկաւէտ են։ Բայց ետքիններուն նկատմամբ՝ անոնց միայն, որոնք ներելի մեղաց մէջ մեռնե-*

լով՝ Աստուծոյ արդարադատ պատժոյն առժամանակեայ կերպով միայն ենթարկուած են: Կը հաւատանք որ երկնային սրբոց աղաչանքները, մեզի, այս աշխարհքիս վրայ եղողներուն՝ օգտակար են. եւ ասոր համար՝ զիրենք երկինքն՝ իսկ իրենց մասունքներն, այս աշխարհքիս վրայ կը պատուենք. իրենց պատկերները յարգելով՝ մեր խորաններուն վրայ կը դնենք. եւ Աստուծոյ առջեւ զիրենք արքայութեան մէջ մեզի բարեխօս կը բռնենք:

Կը հաւատանք ի Ս. Խաչն, որուն նշանն զմեզ շատ վտանգներէ կ'ազատէ: Կը հաւատանք ի Ս. Մարիամ՝ Աստուածածինն՝ որ անարատ յղացաւ. որ՝ ի Հոգւոյն Սրբոյ յղացաւ եւ ծնաւ իւր ծնունդն, զԱստուածորդին. որ ինչպէս ծննդենէն առաջ՝ անանկ ալ ծննդենէն ետեւ կոյս մնաց. որ՝ իբրեւ Աստուծոյ ընտրեալը՝ մարմնով եւ հոգւով երկինք վերափոխեցաւ, եւ հոն ամէն հրեշտակներէն ու սուրբերէն վեր դասաւորուելով եւ պսակուելով՝ ամէն արարածոց իբրեւ թագուհին ու տիրուհին կը պատուուի: Ուստի պատշաճապէս կը յարգենք ու կը փառաւորենք զինք, թէպէտ աւելի նուազ յարգութեամբ քան զԱստուած, բայց աւելի մեծ յարգութեամբ քան զբոլոր հրեշտակներն ու սուրբերը: Կը հաւատանք Ս. Գրքին, ժողովներուն եւ սուրբ եկեղեցւոյ օրէնքներուն: Եւ ընդհանրապէս այն ամէն բան՝ որ վերոգրեալներուն հետ կը միաբանի, սիրով եւ կամօք կը պահենք: —

Բայց կը խոստովանինք միանգամայն եւ զայն որ մենք յաջորդները՝ մեր բարի կամօքն եւ միայն անոր համար խոստացանք, որ չըլլայ թէ Հռովմէական Սրբազան Պապին եւ իւր սուրբ եկեղեցւոյն հետ ընդդիմադարձութեան մէջ գանք։ Այսինքն՝ որ մեր քահանայները՝ սկիհին մէջ քանի մը կաթիլ ջուր դնեն։ Դարձեալ՝ որ Աստուծմէ ամենէն աւելի փառաւորուած Հռովմէական Սրբազան Քահանայապետն՝ իբրեւ բոլոր եկեղեցւոյն գլուխը յարգենք, եւ տօնական օրերու աղօթքներուն մէջ զինքը յիշենք։ — Եւ միայն անոր համար խնդրեցինք իրմէն եպիսկոպոս։

Ամէն հոս յառաջ բերուածները կատարեցինք ու կը կատարենք ալ. թէպէտեւ մեր նախնիները չկատարեցին ու չպահեցին։ Ուստի մենք ճշմարտութիւնը կը յայտնենք։

Եւ որպէս զի այս մեր յայտարարութիւնն աւելի մեծ արժէք ունենայ, տուինք առաջիկայ պատճէնը ի Պիսդրից՝ յամի Տեառն 1692 Յունիս 20. իսկ ըստ Հայոց Թուականին 1141 Յունիս 10ին. մենք, հոստեղ ժողվուածներն՝ աղաչելով մեր դատաւորն, որ զասիկայ մեր քահանաներէն եւ մեր երդուեալ ծերերէն երեք երեք ընտրեալ անձի՝ մեր ամենուն անուամբն ստորագրել եւ իրենց յատուկ կնիքովն ամրացնել տալու բարեհաճի։

Ես + Տէր Անդրէաս
Ես + Տէր Յովհաննէս
Ես + Տէր Ադամ

Ես + Յովսէփ, վարդապետ
Ես + Ն[illegible]
Ես + Անդր[illegible]
Ես + Ար[illegible] (Arczas)

Մենք ներքոյ գրեալներն՝ 1692 Աւգոս. 30ին եւ ըստ Հայոց թուաբերութեանն 1141ին, Աւգոստոս 20ին, այս կարգացած եւ մեր հաւատքին միութեանը կէտերուն վրայօք եղած պատճէնին մէջ բովանդակածներն՝ ճշմարտութեան բոլորովին համապատասխանող եւ մեր միաբանութեան հետ, ամէն բանի մէջ համաձայնող կը ճանչնանք։ Ուստի եւ բոլոր հայերուն վերին դատաւորին հետ մէկտեղ վասնկայ կը ստորագրենք, եւ մեր կնիքովն կ'ամրացնենք։ Ի Պիսդրից ըստ վերոյգրեալ թուականի։

Ես + Տէր Պ[illegible]
Սերվիզի ժողովրդապետ։
Ես + Տէր Մ[illegible]
Գէլֆալովի ժողովրդապետ եւ բոլոր հայոց աւագերէցը
Ես + Լ[illegible] դատաւոր

Կարդացի եւ ասոր մէջ բովանդակուածներն ճշմարիտ կը համարիմ։"

Պաշպալովցիք այս միջոցիս կաթուղիկեայ չէին. — կամ նորէն լուսաւորչական դաւանութեան դարձած էին — գոնէ ըստ մասին։

Ասոր վրայօք շատ թանկագին, եւ միանգամայն հետաքրքրական յիշատակարան մ'ունինք ձեռուընիս, որ անշուշտ Աւքս. Վրզարեանին թելադրութեամբը՝ մանաւանդ թէ գործակցութեամբը գրուած է առ Լէոբոլտոս կայսր. երբ

եպիսկոպոսին մտքին մէջ այն գաղափարը յղացաւ որ բոլոր ազգայինները կրնայ ամփոփել տալ: — Աս գրութեան մէջ մանրամասն տեղեկութիւն կը տրուի՝ ազգայնոց Դրանսիլուանիա գաղթելուն. անոնց՝ այն ատենի քաղաքական վիճակին, կաթուղիկէ եկեղեցւոյ հետ միանալու պարագաներուն. եւ մասնաւորապէս Պաշպալովցւոց բռնած դիրքին ու ճամբուն վրայ:

Պատմութիւնը մերը չէ, ժամանակինն է: Չենք կրնար չեղածն՝ եղած ու եղածը՝ չեղած ընել: — Իբրեւ պատմագիր, գուցէ այսօրուան օրս այսպիսի ճշմարտութիւններ, այս կերպով՝ երեւան չէինք հաներ: Բայց որովհետեւ պատմութիւնը՝ պատմութիւն է, ու յիշատակարանը՝ յիշատակարան, հարկ է որ բոլոր արձանագրութիւնն, իր ամբողջութեամբը — գուցէ տեղ տեղ կսկիծ պատճառող քանի մը կէտերովն — արդարախոհութեամբ՝ ընթերցողացս առջեւը դնենք:

Արդ՝ ահա յիշատակարանիս հաւատարիմ թարգմանութիւնը:

"Դարերով յառաջ Մոլտավիայի մէջ հիմնուած եւ տասուերկու ժողովրդապետութեան բաժնուած ազգային եկեղեցին, մինչեւ Լեհաստանի գամէնից քաղքին առնուիլը՝ Մոլտավիայի իշխաններուն տակ մեծ հանգստութիւն կը վայելէր: Բայց յիշեալ քաղքին առնուելէն եւ պատերազմական շարժումները բորբոքելէն ետեւ՝ Հայք՝ որպէս զի մահմետական իշխանութենէն եւ մոլտավական անհանդուրժելի տուրքերէն ազատին, իրենց տեղերէն դուրս ելլելու ստի-

պուեցան։ Այն ապահով յուսով, որ ճնշիչ յարաբերութիւնները հանդարտելէն եւ պատերազմի խշտոցները դադրելէն ետեւ, դարձեալ իրենց տեղը պիտի դառնան, երբ տարիի չափ Սրգոյներուն երկրին եւ Պիսդրիցի լեռնակողմերը պահուըտելով՝ կը թափառէին։ Բայց երբ խռովութիւնները հանդարտելու տեղ՝ աւելի եւս սաստկացան, այս թափառող ժողովրդեան՝ իր երկիրը դառնալու քաղցր յոյսը բոլորովին փճացաւ. եւ ստիպեց զինք որ գրեթէ անասուններու պէս — առանց հոգեւոր հովուի մը — հո՛ն գաղթէ ու իրեն տեղ փնտռէ ուր որ կրնայ։ Այսպէս եկաւ Մոլտավիոյ հայոց մէկ մասը Լեհաստան, մէկալը՝ Դրանսիլուանիա։ Ամենէն մեծագոյն մասը Սրգոյներու երկիրը — Ճուրճով եւ Զիգ — ու քիչերը միայն տեղաւորուեցան Պիսդրից։ Թէպէտ մեր Եպիսկոպոսն, որ — իրեն գործակիցներն՝ զքահանաները — իւր հօտին մխիթարութեանը համար գաղթած ժողովըրդեանը ետեւէն խրկեց՝ իւր եպիսկոպոսութեան ստացուածոց պահպանութեան համար, քիչ մը ժամանակ ալ Սուչավայի մօտ եղող աթոռատեղը մնաց. (որն որ իբրեւ ամրութեան տեղ ամէն հարկաւոր բաներով կատարելապէս սպառազինուած եւ լեհական զինուորներէն բռնուած էր) — սակայն խազախներն ամէն ստացուածներն իրմէն յափշտակելէն ետեւ՝ ցրուած հօտին ետեւէն Ճուրճով գնաց։ Ասանկով նորէն միացաւ հօտն՝ իւր հովուին հետ։ — Եպիսկոպոսին անունն էր Մինաս։

Այս կերպով ուրիշ երկիր տնկուած Հայ Եկեղեցին սկսաւ հոգւոյ եւ մարմնոյ հարկաւոր պիտոյքներու վրայ մտածել: Ուստի տեղաւորութենէն անմիջապէս ետքը, եկեղեցական ու աշխարհական առաջնորդներու դիմեց, այն խոնարհ խնդրուածքով, որ ասոնք՝ նկատելով ներս գաղթած Հայոց խեղճութիւնը, վրանին գթան եւ իբրեւ եկամուտներու, աստուածային պաշտամունքնին կատարելու համար, իրենց մէկ երկու աղօթատեղի շնորհեն: Մէկալ կողմանէ ամէն օրական ապրուստնին հոգալ կարենալու համար՝ աղաչեցին, որ իրենց հրաման տրուի, ազատ առուտուր ընելու: Գերապայծառ Սէպէլէպի, Դրանսիլուանիոյ եպիսկոպոսական տեղապահը՝ խոստացաւ, որ իրենց խնդրուածքը ամենայն սիրով կը կատարէ, եթէ իրենց հաւատքին ճիշդ քննութենէն ետեւ յայտնի երեւնայ որ Հռովմէական կաթուղիկէ կրօնը կը դաւանին: Հայերը, որոնք իրենց, թափառականութեանը մէջ հազիւ թէ մասնակից եղած էին հոգեկան մխիթարութեան՝ այն վառուած բորբոքէն որ րոպէ մը յառաջ աղօթատեղի ունենան, եպիսկոպոսական տեղապահին առջեւ իրենց հերձուածող ըլլալը՝ մեծ շրջահայեցութեամբ ծածկեցին: Եւ որովհետեւ առ այս որոշուած քննութեանն առթիւ՝ Հռովմէական Եկեղեցւոյն հաւատքին յատուկ եւ գլխաւոր ճիւղերուն հետ կատարելապէս համաձայնող բացատրութիւններ գործածեցին, Սէպէլէպի եպիսկոպոսական տեղապահը, զիրենք ճշմարիտ կաթուղիկէականներ համարելով՝ ի-

րենց գործածութեան համար երկու մատուռ տուաւ, մէկը Ճուրճովի՝ մէկալը Չիգի մէջ. պարտադիր առնելով իրենցմէ, նախ՝ որ ասկից ետքն ալ ջերմեռանդ կաթուղիկէ ուղղափառներ պիտի մնան. երկրորդ՝ որ Դրանսիլուանիոյ եպիսկոպոսական տեղապահը միշտ իշխանութիւն պիտի ունենայ, իրենց չպարգեւած՝ հապա միայն գործածութեան համար տրուած երկու աղօթարանն ետ առնելու. եւ վերջապէս երրորդ՝ որ ամէն եկեղեցական կահ կարասին եւ զգեստեղէնները, զորոնք անկից ետքը պիտի ստանան, — ի դիպուածի որ Դրանսիլուանիայէն նորէն Մոլտավիա երթան — հետերնին պիտի չտանին, հապա երկու մատուռներուն պարգեւ պիտի թողուն:

Այսպէս պատահեցաւ, որ հերձուածող հայերն կաթուղիկէ Եկեղեցիներուն մէջ կատարեցին իրենց աստուածային պաշտամունքները: Բայց ասոր համար — ինծի այնպէս կ'երեւայ որ — տեղապահն եւ մէկալ քահանաները կ'արդարանան. որովհետեւ հայոց հաւատքին առանձինն կէտերուն նկատմամբ քննութիւն ըրած ատեն, մէկ կողմանէ, հայերէն լեզուին անտեղեակ էին, միւս կողմանէն ալ արտաքին արարողութիւններուն եւ անոնց վրայօք եղած մեկնութիւններուն եւ դիտողութիւններուն ձեռօք՝ հայոց հաւատքին վրայ պատշաճ տեղեկութիւն չկրցան ունենալ: Բայց ամենէն աւելի զիրենք սխալ Ճամբան բերողն ա՛ն էր, որ տեսան թէ Հայք, Սուրբ Խաչի նշանը կը գործածեն եւ սրբոց յարգութիւն կը մատուցանեն:

Բայց չէ՛ թէ միայն Եկեղեցւոյ կողմանէ սիրով ընդունուեցաններս գաղթողները, հապա նաեւ Դրանսիլուանիոյ կարգերը՝ հայերուն ազատ առուտուր շնորհեցին, այնու պայմանաւ՝ որ կարգերուն նպաստամատոյց ըլլալու համար, տարուէ տարի 100 հունգարական ֆիորին տան։ Սակայն երբ որ երեք տարի անցաւ, կարգերն՝ այս 100 ֆիորինէն զատ, ծախուած ապրանքին երեսներակն ալ պահանջեցին։

Այսպէս հայք, թէ՛ Եկեղեցւոյ եւ թէ՛ քաղաքական իշխանութեան կողմանէ ընդունուելով՝ միայն վերոյգրեալ երեք տեղը (Ճուրճով, Չիգ եւ Պիստրից) կը բնակէին։ Քիչ մը ետքը ճարակող ժանտախտին պատճառաւն՝ աստին անդին ցրուեցան։ Ժանտախտին դադրելէն ետեւ, զիրենք շատ տեղ տեղաւորուած կը գտնենք. Ճուրճովի, Չիգի, Ռէմէգէի, Բէթէլէի, Կէօրկէնի, Գէշֆալովի, Պաթոշի եւ Պիստրիցի մէջ։ — Հայերը հերձուածի մէջ մնացին մինչեւ 1684։

1676ին, Մոլտավիայի Պոթուշան հասարակութեան դատաւորին, Լուսիկ Վէրգիրէսգու վաճառականին որդին, Աւքսենտիոս, որ աւելի մեծ սէր ունէր գիտութեանց քան ապրանքներու. եւ որ մայրենի լեզուին մէջ ինքզինք կատարելապէս կրթելէն ետեւ — լատին գիտութիւնները յատկացնելու նպատակաւ — սաստիկ փութով սորվելու սկսաւ, ծնողաց տունը թողլով՝ Լեմպերկ Քահանայապետական վարժարանը մտաւ։ Բայց հայրն այս որոշման

ամենուին զինջանիլ չուզելով՝ զինքը ճուրճով բերել տուաւ. ուր որ — որովհետեւ ինքն ալ դեռ հերձուածող էր — Հայոց մոլորութեանցը վրայ իմաստութեամբ լռեց։ Որպէս զի հօրն դիտաւորութիւնը — որ զինք ամէն կերպով ճուրճովցի օրիորդի մը հետ ամուսնացնել կ՚ուզէր — պարապի հանէ, ծնողացը տնէն նորէն Լեհաստան փախաւ. եւ ասկէ Մարթէլլի, Լեհական արքունեաց քով գտնուող քահանայապետական նուիրակին խորհուրդովը Հռովմ գնաց։ Ուր հերձուածէն հանդիսական կերպով հրաժարելէն ետեւ՝ տարածման հաւատոյ Ուրբանեան վարժոցին աշակերտեցաւ։ Քանի մը տարի հոն մնալով՝ երբ սրբազան գիտութիւնները կատարելապէս սորվեցաւ, առաջնորդները՝ զերիտասարդ քահանան իբրեւ առաքելական քարոզիչ՝ իր ազգականներն ու բոլոր հայերը դարձնելու համար Դրանսիլուանիա խրկեցին, յանձնելով իրեն որ ամէն ջանք ընէ եւ հայերը բոպէ մը առաջ Հռովմէական Ս. Եկեղեցւոյն հետ միացընէ։

Աւքսենտիոս Վրզարեան, ճուրճով հասնելէն ետեւ՝ ճանչնալով Հայոց մինչեւ հիմա պատրուակած հերձուածոյն պատմութիւնը՝ բանը Սէպէլէպի Դրանսիլուանիոյ եպիսկոպոսական տեղապահին յայտնեց։ Տեղապահը՝ Հայոց գործածութեան համար տրուած երկու աղօթարաններն անմիջապէս ետ առաւ. մանաւանդ թէ Աւքսենտիոս առաքելական քարոզիչին յանձնեց որ զանոնք ետ առնու։

Աւքսենտիոսի առաքելական գործքն իր ծնողացը տնէն սկսաւ. եւ Աստուծոյ այգւոյն մէջ այնպիսի եռանդեամբ գործեց, որ վեց տարուան մէջ, այսինքն 1684էն մինչեւ 1690՝ Դրանսիլուանիոյ այլ եւ այլ տեղերը սփռուած բոլոր հայերը, հանդիսութեամբ Հռովմէական Եկեղեցւոյն հետ միացան։ Ասոր վրայ երկու քահանայ ու եօթը աշխարհական անձինքներէ կազմուած պատգամաւորութեան մը ձեռօք, Լեմպերկի Հայ արքեպիսկոպոսին առջեւը՝ ամենապատիւ Կանթելմոս Հռովմէական Ս. Եկեղեցւոյն Կարդինալին, եւ Լեհ թագաւորական արքունեաց քով գտնուող առաքելական Նուիրակին հրամանաւը, թողլով մինչեւ հիմա ունեցած մոլորութիւններին՝ միութիւնը — որուն համար Իննովկենտիոս ԺԱ. Սրբազան Քահանայապետին աղաչանաց թուղթ գրելով՝ օրհնութիւնը խընդրած, եւ իրին յաջողելուն համար, տարածման հաւատոյ գլուխ եղած Կարդինալներուն ջերմ շնորհակալութիւններն ըրած էին — կատարուած լմնցած հրատարակեցին։

Այս միութիւնը, չէ՛ թէ պարզապէս Աւքսենտիոս Վըզարեանին — միայն անկատար գործիքին եւ անօգուտ ծառային — հապա ամենակարողին գործը, Հռովմայ Եկեղեցւոյն եռանդուն աղօթքներուն արդիւնքը, սուրբ հաւատոյ տարածման արժանեացն եւ մեր ամենագթած Տիրոջ Լէոբոլտոս Ա.ին իշխանութեանը հետեւութիւնն էր։

Իսկ Աւքսենտիոսի, մեր առաքելական քա-

բողչին, մինչեւ միութեան կատարումը, վեց տարուան մէջ կրած վշտերն ու ընդունած զրկանքները՝ մութ քող մը ծածկէ, որպէս զի չըլլայ թէ քրիստոնէական մեծ համբերութեամբ կրած անիրաւութիւններուն մէկ փոքր վարձքն այս աշխարհքիս վրայ ընդունելով արքայութեան մէջ առանց արդիւնքի մնայ։ — Կը ցաւիմ, կը ցաւիմ, մեծապէս կը ցաւիմ, որ Հռովմայ Եկեղեցին՝ Հայոց Եկեղեցւոյն հովուապետութեան հոգերը, առաջնորդաց խորհրդովը[1] Աւքսենտիոսի ուսերուն վրայ դրաւ. եւ Մինաս եպիսկոպոսին — որ ամենապատիւ Բալլավիչինի Կարդինալին առջեւը առաքելական հաւատոյ դաւանութիւնը դնելով՝ մոլորութիւններէն մշտնջենապէս հրաժարեցաւ եւ իբրեւ եռանդուն կաթուղիկէական վախճանեցաւ — յաջորդ անուանեց։ Չըլլայ թէ այս ծանր լուծն՝ իրեն իբրեւ վարձք համարուի, եւ Աստուծոյ դատաստանական աթոռին առջեւը, առեն մը, իբրեւ հնչող պղինձ եւ ղօղանջող ծնծղայ (aes sonans et cymbalum tinniens) ներկայանայ։ —

Դրանսիլուանիոյ կարգերը, զազգայինները Հռովմայ եկեղեցւոյն հետ միանալէն յառաջ, այլ եւ այլ տեսակ տուրքերով չէին ծանրաբեռներ. եւ միայն վճարելու պարտական էին դաշնադրութեամբ հաստատուած ու վրանին

---

1 Տարածման հաւատոյ վարժարանին այն առենի առաջնորդները հասկնալու ենք. որոնք Աւքսենտիոսի — վաղեմի աշակերտին — կարողութիւնները լաւ ճանչցած էին։

դրուած 100 հունգարական ֆիորինը։ Սակայն միութիւնը հաստատուելէն ետեւ՝ ի սկզբան 500, ետքէն 2000. ու այս տարի նորէն 2000 ֆիորին կը պահանջեն իրենցմէ։ Իսկ առանձինն հասարակութիւնները՝ բնակութեան եւ եկամտի տուրքերէն զատ, նաեւ ուրիշ մասնաւոր տուրքերով անհանգիստ կ՚ընեն մեր հայ եղբայրները. ու շարունակ անով կը սպառնան՝ որ եթէ չեն վճարեր, զիրենք երկրէն դուրս կը վռնտեն։ Ասոր վրայ աւելցնենք ան ալ, որ հայոց խստիւ արգելուած է, իրենց վաճառքներն — զոր միութենէն յառաջ կ՚ընէին — օտար երկրէ բերել տալու։ Եթէ ասոր դէմ ընեն, գնած ապրանքներն իրենցմէ կ՚առնուն։ Ինչպէս վերջին ատենները պատահած փորձառութիւնները՝ բաւականապէս կ՚ապացուցանեն։ Պաշտպան ամենեւին չունին. եւ եթէ ի դիպուածի մէկը՝ տեսնելով իրենց դէմ եղած անիրաւութիւնները՝ վրանին գթայ, այս գթութիւնը մերիններուն դրամական մեծ զոհեր կ՚արժէ։ Տեղեր ալ կան, ուր որ ազգային եւ ո՛չ աստուածային պաշտամունքնին համարձակապէս կրնան կատարել. վասն զի միացեալ քահանայները շատ հալածանք կը կրեն։ Եւ ամենէն յաճախ պատահածն ա՛ն է, որ եթէ պարտաւորութիւննին ըստ խղճի կատարելու ջանան, դրամական տուգանքներու կ՚ենթարկուին։ Առաւելն կարգերուն շնորհքը փնտռող եւ իր պարտաւորութիւններն անճիշդ եւ վեր ի վերոյ կատարող քահանան ազատ է այս տհաճութիւններէն։

Այս ամէն նեղութիւնները — Նորէն կ'ըսեմ — միայն Հռովմայ եկեղեցւոյն հետ եղած միութենէն ի վեր կը պատահին։ Այս նեղութիւններուն պատճառաւ արդէն շատերն երկրէն դուրս ելլելու հարկադրեցան։ Եւ եթէ իւր վեհափառութիւնը, Լէոպոլտոս Ա. հզօր պաշտպանութեամբ մը չմատուցանէ սպեղանիք մեր ցաւած վէրքերուն՝ տարակոյս չկայ, որ հոս մնացածներն ալ պիտի հեռանան։ — —

Մարտիրոս Բոդոցքի, միացեալ հայ քահանան, եկեղեցականաց գլուխն ու առաջնորդը՝ եւ շուրջ քսան ազգային գերդաստան, Միքայէլ Աբաֆի, Տրանսիլուանիոյ իշխանէն այն առաջարկութիւնն ընդունեցան 1690ին, որ վերը յիշուած ամէն նեղութիւններէն եւ տհաճութիւններէն կ'ազատին եւ Պաշպալով գեղին մէջ բնակութիւն, հանգիստ ու ամէն իրենց հարկաւոր բաները կը գտնեն, եթէ որ իր ապաւինութեանը տակ մտնեն, եւ իւր պաշտպանութիւնն՝ իբրեւ Տրանսիլուանիոյ իշխան, ուրիշ բաներու մէջ ալ ընդունին ու ճանչնան։ Հայ գերդաստանները, Տրանսիլուանիոյ իշխանին փայլուն խոստումներէն շլացած, եւ մէկալ կողմանէ միութեան հետեւութեամբը յառաջ եկած խեղճութիւններէն ալ դառնացած՝ համոզեցին զԲոդոցքի որ չընդունի ու չճանչնայ Հռովմայ եկեղեցւոյն հետ կատարած միութիւնն. եւ ասոր նշան, սկիհին մէջ — ինչպէս որ այս բանս միութեան պայմանները կը պահանջեն — ջուր չդնեն, հապա միայն գինի։ Աւքսենտիոս

Վորզարեան. առաքելական տեղապահը, Միքայէլ Աբաֆիի հրապուրիչ խոստումներուն վրայ տեղեկութիւն չունենալով — զանհնազանդ Թոդոցքին եւ իրենները լուագոյն ճամբան դարձնելու ուրիշ միջոց չգտնելով — եկեղեցական բարեկարգութիւնը ձեռք առաւ. եւ զանհնազանդ քահանան ու իւր կողմնակիցները — այն հաստատուն յուսով որ շիտակ ճամբան պիտի դառնան — նոյնով պատժեց: Բայց տեսնելով Թոդոցքիի եւ համամիտներուն խստասրտութիւնը՝ զիրենք եկեղեցական ատենին առջեւը բերել տուաւ: Սակայն չներկայացան: Մանաւանդ թէ ծանուցին եպիսկոպոսին՝ որ Տրանսիլուանիոյ իշխանին օգնութեանն ու շնորհացը վրայ վստահացած՝ հաստատուն կամքերնին է հաւատքնին ուրանալ: Իրենց սպառնալիքը՝ քիչ մը ետքը կատարեցին: Եւ 1691ին, իբրեւ ուրացեալք, մտան Թոդոցքի եւ քսան գերդաստանները Պաշպալով. որպէս զի հոն, Միքայէլ Աբաֆի իշխանին շնորհաց ջերմութեամբը տաքնան: Ցաւալի է որ այս հաւատոյ ուրացութիւնը դեռ կը տեւէ: Բայց ասոնց խղճալի օրինակն ամենեւին չմոլորցուց հայոց մեծագոյն մասն, որ ուղղափառ Վորզարեանի վերին իշխանութեանը տակ՝ վերոյիշեալ տեղերը, Հռովմայ եկեղեցւոյն հետ ունեցած միութեանը մէջ անդրդուելի կերպով մնացած է:

Աւքսենտիոս Վորզարեան քահանայապետական համառօտագրով մը եւ հաւատոյ տարածման ընկերութեան կարգադրութեանը հա-

մեմատ, Լեմպերկի մէջ, Լեմպերկի արքեպիսկոպոսէն, 1692ին եպիսկոպոս ձեռնադրուելով՝ Դրանսիլուանիա դարձաւ. եւ այս եկեղեցական վիճակին կառավարութիւնը ձեռքն առաւ: Եւ որովհետեւ Դրանսիլուանիոյ իշխանէն պաշտպանութիւն գտած Պաշպալովի Հայերուն արտօնացեալ գիրքն եւ հասարակաց ծանրաբեռնութենէն ունեցած ազատութիւնը (immunitas) իւր հաւատացեալոցը համար վնասակար խայծ ու հրապոյր մը կը համարէր, անոր համար իբրեւ եկեղեցական հովիւ՝ բարոյական վնասուց արմատաքի բժշկութիւնը գտնելու համար Վեդերանի զօրապետին դիմեց: Բայց Աբաֆիի միջամտութեամբն եպիսկոպոսին բարի փափաքն օդ ելաւ: Եւ այսպէս պատահեցաւ, որ զօրապետը զՎըզարեան իւր աղաչանքովը մէկտեղ Դրանսիլուանիոյ կարգերուն խրկեց, ուր որ եպիսկոպոսն իւր իմաստուն նախատեսութեամբը կը համարէր թէ կատարեալ յաջողութիւն պիտի գտնէ:

Վըզարեան ճանչնալով ժողովրդոց յողդողդութիւնը՝ եպիսկոպոս ձեռնադրուելէն եւ Պաշպալովցւոց հաւատքին ուրացութենէն յառաջ, բոլոր Հայոցմէ — մէջը հասկնալով նաեւ ուրացողները — պարտագիր մ'առաւ, որ եթէ ի դիպուածի իւր հաւատացեալներէն մէկն եպիսկոպոսական իրաւասութենէն ինք զինք դուրս հանել ուզենայ, եկեղեցական պատժէն զատ՝ 600 ոսկի ֆիորին տուգանք վճարելով պատժուի:

Վրզարեան եպիսկոպոսին եւ Պաշպալովի Հայոց մէջի խնդիրը տէրութեան կարգաց առջեւն ելլելով՝ ուղղափառ կաթուղիկէականները եւ երեք մէկալ կարգերն ի սկզբան չկրցան որոշել, որ խնդիրը՝ միայն կաթուղիկէականաց, չէ նէ մէկալներուն առջեւն ալ խորհրդածութեան նիւթ ըլլալու է: Վերջապէս կարգերն որոշեցին, որ եթէ եպիսկոպոսը՝ բոլոր կարգաց առջեւը կարենայ ցուցընել, որ Պաշպալովցիները՝ իրենց հաւատքին ուրացութենէն յառաջ արդէն Հռովմայ եկեղեցւոյն հետ միացած էին, այն ժամանակ՝ խնդրի տակ եղած նիւթին որոշումը՝ միայն ուղղափառաց վերաբերի. իսկ եթէ չէ՝ այն ատեն խնդիրն առանց հաւատքի տարբերութեան, Տրանսիլուանիոյ ամէն կարգերը որոշեն:

Անցած — 1692 — տարի, Գլուժ խըմբուած տէրութեան աւագաժողովին, այս որոշման համեմատ, իրեն յանձնուած գործքը կատարեց, ու 12 հոգիէ կազմուած մասնաժողով մը որոշեց. որ շուտ մը համոզուեցաւ այս — մեր առջեւ արդէն ծանօթ — բանին վրայ, թէ Պաշպալովցիներն ալ առանց բացառութեան, մէկալ Հայերուն պէս հռովմէական ուղղափառ էին: Խնդիրն այն ատեն Տրանսիլուանիոյ կառավարութեան խորհրդին առջեւն ելաւ. որ Նիկողայոս Պէդլէն ատենապետին առաջարկութեանը համեմատ կարեւոր համարուեցաւ, որ ցուցուի թէ արդեօք Հռովմայ եկեղեցւոյն հետ եղած միութիւնը հաւատոյ վերաբերեալ նիւ-

*թերու վրայ է միայն, չէ նէ եկեղեցական խնդիրներէ զատ, նաեւ ուրիշ բաներու վրայ ալ կը տարածուի։*

*Վերին կառավարութեան խորհուրդը, խնդրոյն՝ այս ուղղութեամբ ըլլալիք քննութիւնը կարգադրեց։ Եւ որպէս զի ասոր նկատմամբ ճիշդ տեղեկութիւններ կարենայ ստանալ, շատ մը արժանաւոր մարդիկ խրկեց ամէն հայերուն, որպէս զի այս բանս հետազօտեն։ Խրկուածները համոզուելէն ետեւ՝ որ հայերուն՝ Հռովմայ եկեղեցւոյն հետ ունեցած միութիւնը միայն հաւատոյ վերաբերեալ բաներուն նկատմամբ է. — եւ այս նիւթիս վրայօք ազգայնոց կողմանէ գրի անցուած ու տրուած յայտարարութիւնը, (զոր վերն արդէն տեսանք) վերին կառավարութեան խորհրդին ներկայացընելու համար հետերնին առնելէն ետեւ — իրենց առաքելութեանն արդեանց վրայօք վերին կառավարութեան տուին տեղեկութիւննին։*

*Թէպէտ խնդրոյն որոշումը միօրինակ կը խոստացուի, բայց եւ այնպէս այս նիւթիս մէջ մինչեւ հիմայ բան մը չպատահեցաւ։ Եւ սակայն Պաշպալովցւոց հաւատքին ուրացութեանն եւ ասկէ յառաջ եկած խնդրոյն որոշմանը յապաղելուն համար, վտանգ կայ՝ որ Հռովմայ եկեղեցւոյն հետ եղած լմնցած միութիւնը վախճան չընդունի։*

*Կարգերն ինչպէս կ'երեւայ, որոշում մը պիտի չընեն, մինչեւ որ իւր Վեհափառութիւնը*

խստիւ չի հրամայեր, որ այս բանս բոպէ մը յառաջ ընեն լմնցընեն։

Գլուժ, 1693, Հոկտեմբեր 10։„

Տարակոյս չկայ, որ պաշպալովւոց մէկ մասն այս՝ վրանին եղած ամբաստանութեանց համար պատասխանատուութեան կանչուած՝ բայց նաեւ ուրիշ պատճառներէ — զոր քիչ մը ետքը պիտի տեսնենք — դրդուած, որոշած ըլլայ, որ կաթուղիկէ եկեղեցւոյն ծոցը վերադառնայ։ Սակայն, ինչպէս կ՚երեւայ, մէկալ մասը դեռ միշտ յամառութեամբ դէմ կը կենար։

Ասանկ վիճակի մէջ էին իրերն, երբ 1731ին կէս պաշտօնական շրջաբերական մը — 14 մեծամեծաց ստորագրութեամբ — չէ՛ թէ միայն խորհուրդ կու տար, հապա հրաման խրկեց Հայոց ընկերութեան, որ ամէն մարդ գիտնայ — թէ՛ Պաշպալովցիք, թէ՛ Ճուրճովցիք, թէ՛ Սիբվիզցիք. եւ թէ՛ ուր որ Հայեր գտնուին Դրանսիլուանիոյ իշխանութեան մէջ — թէ լատին եպիսկոպոսին հրամանն է, որ Կերլայ ժողովին, որպէս զի իրենց հաւատքին խնդիրը քննութեան առնուի։ Հոս կարգի բերուի ամէն բան. տումարը նորոգուի. եւ ուրիշ պատշաճ կարգաւորութիւններ ըլլուին. "Միով բանիւ — կ՚ըսէ հրամանագիրն — այնպիսի բաներ հաստատենք միաբանութեամբ, որ ամէն մարդու առջեւ ծիծաղելի չըլլանք։ Մենք, Դրանսիլուանիոյ Հայեր, ինք զինքնիս ուղղափառ անուանելով՝ սուրբ հռոմէական եկեղեցւոյն հրամանները պէտք է որ կատարենք։ Ուստի ամէնքնիս ժողովելով՝

մէկտեղ խորհուրդ ընենք։ Հարկ է որ ամէն մէկը հնազանդի։ Այս հրամանագիրն անոր համար հրատարակեցինք, որ իւրաքանչիւր ոք գիտնայ եւ գոհ ըլլայ։ Այս բանիս չհնազանդողն՝ երկրէս դուրս պիտի ելլէ, ինչպէս վաղեմի հրամաններուն մէջ գրուած է։ Դէմ կեցողը գիտնայ որ պիտի պատժուի։ Առաջին անգամուն քառասուն հունգարական ֆիորին տուգանք պիտի վճարէ։ Երկրորդ անգամ, չէ թէ միայն իր բնակութեան տեղէն, այլ նաեւ տէրութեան երկրէն պիտի աքսորուի։

Ահաւասիկ հրամանագրոյն հայերէն բնագիրը։

Պատճէնին դրսի կողմը գրուած է այսպէս. "Միաբանութիւն վասն հաւատոյ եւ կանոնաց հայոց ազգին, որ ամէն մէկն հական լինին։

Ամի Տեառն 1731 Մարտի 26ին ի պաշֆալօյն։

Գիտէնայ ամէն մէկ եղբարն թէ իպիշֆալօվցի. թէ ճուրճօվու եւ թէ կուրկինու եւ սիբվիզու. ուրեւիցէ. հօս կեցող առտեալն հայք, գիտէնայ որ Հրաման է գերապայծառ եպիսկոպոսէն զէրկէլ կէրկէլնէն, վասն երթալու կեռլան, որ վիզիդօվադ արվի զմեր հայքն. եւ տեսնելու զհայոց կարքն. նայեւ զտօմարն նորոգելու եւ միեաւորելու ընդ նոր տօմարին եւ այլն. շարադրելու եւ կարքադրելու օրինաւոր, որպէս հաճոյ թվի աստուծոյ եւ սուրբ եկեղեցուն։ Նայ ամպէս հասդատվի. որ չիլանք ամէնին ծիծաղ եւ ամէն ազգի. զէ մենք առ-

տալու հայերն զմեզ անվաներով եւ հուշակելով թէ ճշմարիտ ուղափառ ինք եւ ըզսուրբ հռոմայ եկեղեցոյ հրամանը կատարելոց եմք. եւ ամենեքեանս, որպէս հրամայէ սուրբ եկեղեցին[1]: Վասն այնորիկ, մեք ամենեքեանս հաւաքելով ի միասին եւ խորհուրդ արինք, որ պարտ է հնազանդելու ամէն մէկին: Վասն այննորիկ զայս գիրս գրեցինք, որ ամէն մէկն ունէնայ գոնդէնդ ըլալու եւ գրվելու ասդ: Եւ որն օր չի հնազանդի հրամանին եւ գրուս, զանպիսին աքսորվի զայս երկրէս. որպէս կայ այլ վաղուցու գրէրուն մէջ: Եւ դարձեալ ունէնայ պատժըվելու եւ ճուրում տալու խ մաճ. առաչի տարպան. եւ երկուսում ունէնայ աքսորվելու, թէ քաղքէ, թէ երկրէն: Եւ այսոր վրայ ամէն մէկն կու գրվին այլ վար, վասն հաստատութեան եւ հաւատարմութեան բանիս, որ մնայ հաստատ: Բաւ է:

տ. կ. Ես Ղր. քէլի եւ Ֆի Պիրօվ հայոց գօմբանիային.

տ. կ. Ես Վարդան Խսիգուցին.

տ. կ. Ես ամիրայ որդի մէկտէս խաչիկըն.

տ. կ. ես ըսթեփան Նիկօլի. շիմիլօվցի.

տ. կ. jsz Tavite Szómólovci.

տ. կ. ես մարտիրոս լուսիկի.

տ. կ. ես օվանէս գրէչունի.

տ. կ. ես լուսիկ քէլի եկեղեցբան էպէշֆալի.

---

[1] Արձանագրութեան թէ՛ այս պարբերութիւնը, եւ թէ ուրիշ մասերը քիչ մը մութ կը գտնեմ: Կարելի է, հոս կամ հոն բառ մը մոռցուած, դուրս թողուած ըլլայ:

տ: կ. ես զատիկ օվանէսի.
տ. կ. ես նիգօշ խիգոցի.
տ. կ. ես խաչիկ օպքերիչինը.
տ. կ. ես խաչերես սիմոնի.
տ. կ. ես նօրսէսըս սագօյին.
տ. կ. Ես սարըսդան հանգօյ. զիմ ծէրէրօվըն.

Աս շրջաբերական թուղթն ունեցաւ իր բաղձացած հետեւանքը: Եղիսաբեթուպոլիս, իրեն եկեղեցական իրաւասութեան ներքեւն եղող գիւղերովն ընդունեցաւ կաթուղիկէ հաւատքը: Ասոր վրայ փոխեց նաեւ տումարն ու ընդունեցաւ նորը:

Ընթերցողացս արդէն ծանօթ է, թէ Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք ինչ կերպով նախորդ դարուն կէսերը, հին տումարը թողուցած, նորն առած ու անով մնացած են մինչեւ ցայսօր: (Տես Ա. Հատոր, էջ 230—242:)

7.

Թէ՛ պատմութիւնը կը ստուգէ, որ Եղիսաբեթուպոլսոյ ազգային եկեղեցին՝ հեղինակութիւն մ՚ունէր Սիբվիզի եկեղեցւոյն վրայ, եւ թէ՛ տէրութեան հրամանագիրները կ՚ապացուցանեն, որ Եղիսաբեթուպոլսոյ ազգային ընկերութիւնը՝ Դրանսիլուանիոյ ազգայնոց վրայ — Կերլայ քաղաքը դուրս առնելով — վերին իշխանութիւն մ՚ունէր:

Աս բանս կրնանք տեսնել մեր ձեռքն եղած հին արձանագրութիւններէն: Ի մէջ այլոց

Հալլէր կոմս, Դրանսիլուանիոյ վերին կառավարը, Յովհ. Լազարեան, Եղիսաբեթուպոլսոյ գլխաւոր դատաւորին Անցագիր (Salva gvardia) կու տայ, որպէս զի այն ամէն տեղերն, ուր որ իր ստորակարգելոցն այցելութեան ելլէ, ազատ երթեւեկ շնորհեն: Եւ թէ որ տեղ մը իր իշխանութեանը տակն եղող ազգայիններէն մէկը չհնազանդի, կամ իրեն դէմ ելլէ, եւ կամ ուրիշ կերպով մը այն տեղերուն պաշտօնակալաց պէտք ունենայ, ըստ փափաքանաց իրեն օգնութիւն մատուցանեն: — Աւասիկ հրամանագիրը.

"Յովհաննէս Հալլէր կոմս, պարոն Հալլէրշդայնի, կայսերական թագաւորական վեհափառութեան ներքին եւ իրական խորհրդականն ու սենեկապետը — Դրանսիլուանիոյ ժառանգական իշխանութեան, ինչպէս նաեւ անոր հետ միացած երկիրներուն վերին կառավարն. — ամէն գաւառներու, աթոռներու, սիգուլական եւ սաքսոնական վիճակներու, քաղաքներու եւ գիւղաքաղաքներու՝ ամենապատիւ, արժանացեալ արանց. գլխաւոր եւ փոխանակի դատաւորաց, պաշտօնակալաց, գիւղապետաց ու երդուելոց, որոնք այս մեր պատճէնը կը կարդան, ողջոյն շատ եւ մեծարանք:

Հրովարտակս ներկայացընող՝ Սուրբ Եղիսաբեթուպոլսոյ, նաեւ ճուրճով Ս. Նիկողայոսի, Չիգ Սիբվիզի, Գանդայի եւ Կուրկէնի գլխաւոր դատաւորը, պատուական Յովհաննէս Լազար աղան, իր պաշտօնին պարտքը կատարելու

համար, իւր իշխանութեանը ստորակարգեալ վերը գրուած Հայերուն այցելութեան կ'երթայ։ Այս վախճանաւ, ուր տեղ որ երթայ, իրեն ազատ մուտք եւ անցք տրուի։ Եւ ուր իրեն իրաւասութեանը տակն եղողներէն մէկն իրեն դէմ ելլէ, եւ կամ ուրիշ կերպով ու պատճառաւ այդ տեղերուն պաշտօնատարցն օգնութեանը հարկաւորութիւն ունենայ, իր խընդրուածքը կատարեն։ — Պատճէնս կարդացուելէն ետեւ մատուցանողին ետ տրուի։

Տուեալ Սիպին քաղաքը, յամի Տեառն 1741, մայիս 6.

Հալլէր կոմս. յ. ձ.։„

Դրանսիլուանիոյ վերին կառավարութիւնը, 1746ին հրամանագիր մըն ալ կը խրկէ, բոլոր երկրին մէջ, որ եւ է տեղ գտնուող ազգայիններուն, որ իրենց տարեկան տուրքերը ժողվեն ու Պաշպալովի գլխաւոր դատաւորին խրկեն։

Ահա սոր վրայօք եղած կառավարչական հրամանը։

"Սուրբ կայսերական, թագաւորական վեհափառութեան, Աւստրիոյ արքիդքսին, Դրանսիլուանիոյ իշխանին եւ Սըգոյներու կոմսութեան կառավառութիւնը։ — Մեծապատիւ, արժանացեալ, . . . արանց որ եւ է վիճակաց, սաքսոնական եւ սըգոյական աթոռոց, ինչպէս նաեւ քաղաքաց եւ գիւղաքաղաքաց առաջնորդաց ու ստորնագոյն պաշտօնակալաց. եւ ընդհանրապէս այն ամենուն եւ իւրաքանչիւրոց, որոնք

որ եւ իցէ կերպով մեր վեհափառութեան իշխանութեանը ներքեւ են, ողջոյն եւ մեծարանք։

Թէ՛ արդարութիւնն առ հասարակ, թէ՛ իշխանութեան երկրատիրական իրաւունքը, եւ թէ՛ միանգամայն գաւառներուն ընդունած սովորութիւնը կը պահանջէ, որ անոնք, որոնք տէրութեան մէջ առուտուր կ՚ընեն, կը վաստըկին ու կեանքերնին կը պահպանեն, նաեւ ըստ պատշաճի այն տէրութեան ու երկրին ծանրաբեռնութեանցը մէջ ալ չէ թէ միայն մաս ունենան, ու յայսմ մասին զիրար անցընեն, հապա նաեւ ծանրաբեռնութիւնները կրելու մէջ իրարու օգնեն։ Եւ որովհետեւ յայտնի բան է, թէ Հայոց ազգէն շատ վաճառական մարդ, տէրութեան մէջ ասդին անդին քալելով ու քաղաքներն եւ գեղերը պտըտելով՝ երկրին եկամուտէն կ՚ապրին, բայց տեղ մըն ալ հասարակաց տուրք չեն վճարեր, ուր ընդ հակառակն Պաշպալովի հայ ընկերութիւնը պարտական է տարուէ տարի՝ երբեմն աւելի, երբեմն նուազ տուրք վճարելու. — անոր համար Պաշպալովի հայ ընկերութեան դատաւորին իշխանութիւն կը տրուի, թէ ուր տեղ որ մեր երկրին մէջ այս տեսակ շրջուն հայ վաճառականներ գտնէ — Կերլայ հայաքաղքի բնակիչները դուրս առնելով — հասարակաց տուրքերն իրենցմէ ժողվէ, որպէս զի ասով Պաշպալովի ընկերութեան հարկերը թեթեւնան։ Բաց ասկէ՝ կը խնդրուի գաւառներու եւ աթոռներու պաշտօնատէրներէն որ անփոյթ

չըլլան այս բանիս մէջ զանցառութիւն ընողներուն դէմ՝ յիշեալ ընկերութեան դատաւորին օգնութիւն մատուցանելու։ Կը հրամայէ աս բանս կառավարութիւնը՝ ծանրութեամբ եւ իշխանութեամբ։

Տուեալ՝ Դրանսիլուանիոյ իշխանութեան կառավարութեանը կողմանէ Սիպին ազատ եւ թագաւորական քաղաքը։

Յամի Տեառն 1746, Յունիս 22ին.

Կ. Ց. Հալլէր Կառավար. յ. ձ.

կառավարութեան քարտուղար։

Տ. Կ. Ստեփանոս Պօէր.„

Երբ տաճկական-ռուսական պատերազմին պատճառաւը, 1768ին Մոլտավիայի մէջ խռովութիւններ ելան, բնակիչներէն շատերը՝ Դրանսիլուանիոյ այլեւայլ քաղաքներն անցան։ Կային ասոնց մէջ նաեւ 400ի չափ ազգայինք, որոնք Սիբվիզ գալով — իրենց մարմնաւոր ու հոգեւոր պիտոյքները գտնելու համար — քաղաքային վերին իշխանութենէն առաջնորդուած՝ Եղիսաբեթուպոլսոյ եկեղեցական առաջնորդութեան դիմեցին։ Ասիկայ՝ այն ատենի Դրանսիլուանիոյ եպիսկոպոսին Յովսէփ Պայդայեանին գրեց. որ զՅովհ. Քրէչունի Լուսիկեան աւագերէցը՝ քահանայով մը Սիբվիզ խրկեց։

Ահաւասիկ ասոր մանրամասն պատմութիւնը՝ Եղիսաբեթուպոլսոյ մկրտութեանց մայր մատենին Բ. Հատորին ամենէն վերջի — 391 — էջին՝ արձանագրութեանը համեմատ։

“Յամի Տեառն 1768 ի վրդովել խաղաղութեան յերկիրն մոլտավիոյ վասն պատերազմին որ էր ի մէջ տաճկաց՝ եւ մօսգովից. եւ զի ոչ գոյր անդ տեղի Ապաւինի, բազումք ի բնակչաց անտի փախստեայք անցին, ըստ սոցին օրինակի նաեւ Հայք իբր չորեքհարիւր փախուցեալ եկին մտին ի սահմանս գաւառիս մերոյ դրանզիլվանիոյ եւ զտեղի կալան ի գիւղն Սիբվիզզ: Ապայ անտի առաքեցին առ մեզ գիրս խնդրանաց. որով յայտ առնէին զՏարփանս սրտից իւրեանց, եթէ կամին, եւ պատրաստ կան ի լսել խրատուց մերոց թէ ի հոգեւորս, եւ թէ ի մարմնաւորս: Զայս ուրեմն ըստ պարաւանդութեան պաշտօնի մերոյ ընդ գրով արկեալ ծանուցաք գերապայծառ եպիսկոպոսին մերոյ Տեառն Յովսէփայ Պօյդօյեան, զոր խնդութեամբ եւ նորայ ընկալեալ իսկ եւ իսկ հրամայեաց ինձ Տէր Յօհաննէսի գրէչունի լուսիկեան, Քաղաքիս Եղիսաբեթայ բլէպանուչիս, եւ Աւաքէրիցուս, զի առեալ ընդ իս ընկերակից զոմն ի քահանայից փութով առ նոսա գնացից, թերեւս շնորհիւ տեառն ի հերձուածողութենէ առ լուսաճաճանճ եւ քրիստոսաւանդ ուղղափառ հաւատն դարձցին: Վասն որոյ Յամի Տեառն 1769 յուլիսի 5. առեալ ինձ ընկէր զտէր վարդանն յարութիւնի տէր Ասվատրեան չուեցի ի սոյն քաղաքէս՝ եւ եկեալ հասի ի սիբիզն. ուր մնալով իբր զամիս մի եւ ըստ տկարութեան մերոյ ոչ կարացաք զայլ ինչ շահիլ, եթէ ոչ զներքոյ գրեալ եօթն հոգիս. զորոց արդիւնս ի տեառնէ սպասեմք:

"Ես Տէր Յօհաննէս որդի գրէչունի լուսիկեանց, փիլիսոփայութեան եւ աստուածաբանութեան վարդապետ, եւ Առաքելական միսիոնար, գանօնիգուս գերազանցեալ գաբիդուլումին պէլիկրատու, նօդար Առաքելական սուրբ Աթոռոյն Հռոմայ, Աւագէրէց Հայոց գումբանիայի, նաեւ բլէպանուշ Ելիզաբէթ Հայոց Քաղաքի, ի տարւոյն 1769, յուլիսի 16. ընկալայ ի ձեռս իմ զԴաւանութիւն Ուղղափառ հաւատոյն խաչատրի պիննաթեան 46 ամաց, եւ պաղտասարոյ նորին որդւոյ 18 ամաց, եւ էտիլլի կամէնցւոյ իբր 45 ամաց ի Մատուան սիբվիզու Մարիամայ առ ձիւնս կոչեցելոյն. որք նախ խոստովանեալ ապա հաղորդեցան ի ներկայութեան բազում ժողովրդեան:

"Յուլիսի 31, ընկալայ ի ձեռս իմ զԴաւանութիւն Ուղղափառ հաւատոյն Սարգսի Ջատիկի Աւաքեան, եւ կնոջ նորա Մէլիքի դըստեր խաչատրի փօքշանցւոյ, եւ Միքայէլի Ջատիկի Աւաքեան, ի սիբվիզու Հայոց Յեկեղեցին Ամենասուրբ երրորդութեան. որք նախ խոստովանեալ ապա հաղորդեցան ի ներկայութեան բազում ժողովրդեան:

"Օգօստոսի $1^{ma}$ ընկալայ ի ձեռս իմ զդաւանութիւն ուղղափառ հաւատոյն, Եղիսաբեթի կնոջ Սիմոնի բէրսիացւոյ. իբր 70 ամաց. ի սիբվիզու Հայոց Յեկեղեցին Ամենասուրբ երրորդութեան:„

Ուրիշ դէպքերու մէջ ալ՝ Սիբվիզցիք, միշտ, թէ իրենց եկեղեցական ու թէ քաղա-

քական խնդիրներու մէջ Եղիսաբեթուպոլսոյ առաջնորդութեան կը դիմեն, անկէ խորհուրդ ու օգնութիւն ընդունելու համար։

Թէ իրօք որչափ գերագոյն իշխանութիւն ի գործ կը դնէր Եղիսաբեթուպոլսոյ եկեղեցին, Սիբվիզի՝ չէ թէ միայն եկեղեցական այլ նաեւ քաղաքական վարչութեան վրայ. եւ թէ այս վերջինն որչափ կախում ունէր անկէ՝ թէ՛ քաղաքային ու թէ՛ եկեղեցական խնդրոց մէջ, կրնանք տեսնել քանի մ'ուրիշ պաշտօնական գրութիւններէն։

Ասոնց մէկուն մէջ՝ Սիբվիզի դատաւորն ու եկեղեցպանը առջեւնիս կը դնեն այն պատահարներն, որոնք հանդիպեցան հոն երբ — 1774 մարտին, Տէր Անտոն, գեղին ժողովրդապետի տեղապահը վախճանելով՝ մէկ երկու բանի վրայօք հակառակութիւններ ու կռիւներ ելան, մէկ կողմանէ հանգուցելոյն մօրն ու եղբօրն, եւ մէկալ կողմանէ քաղաքային վարչութեան մէջ։

Սիբվիզի ազգայիններն յառաջաբանով մը, աւագերիցուն հայրական սէրն ու աշխատութիւնը գովելէն եւ Աստուծոյ շնորհակալ ըլլալէն ետեւ — որ ունին իրենց համար սրտանց աշխատող առաջնորդ ու մխիթարութիւն մը — ներումն կը խնդրեն, որ անանկ բանի մը վրայօք պիտի տեղեկացընեն զինք, որուն իրենք ամենեւին պատճառ չեն։ Անկէ ետքը՝ մանրամասն կը ստորագրեն Տէր Անտոնին լաւազգածութեան հոգին, միամտութիւնն. իսկ ոլորմած հոգւոյն

մօրն, եղբօրն ու մօրաքրոջն անկարգ ու գէշ բերանը: "Թափորով գացինք մեռելին տունը, կ'ըսէ Նամակը: Երբ Տէր Անտոն Բաղրուպանեան սկսաւ կարգը կատարել, ասոնք մէկ բերան բարձր ձայնիւ կանչելու սկսան, թէ "Ահա եկան դահիճները, որոնք զքահանան սպանեցին. ատ կախարդները, գնչուները„ եւ այլն: Ինչ որ բերաննին եկաւ, ըսին: Մենք լռեցինք:

— Գերյարգելութիւնդ կը զարմանայ, որ թուղթ չգրեցինք, ո՛չ եկեղեցւոյ ստացուածքին եւ ո՛չ մեռած քահանային թողուցածին վրայօք: Կը հարցընէք, թէ որո՛ւն քովն եւ որո՛ւն ձեռքն են կնքուած բաները: Պատասխաննիս աս է "մօրն ու եղբօրը.„ վասն զի իրենք ձեռք դրին ասոնց վրայ: Երբ որ իմացանք թէ եկեղեցւոյն շարականն ալ առին, զոր օտարք պարգեւ բերած էին, քաղցրութեամբ մ'ըսինք որ ետ տան: Իրենք չէ թէ միայն չուզեցին տալ, հապա նաեւ խել մը պարապ ու անկարգ խօսքեր ըսին: Երկու աղաչայ խրկեցինք: Անոնց վրայ յարձակեցան, փայտով զարկին ու մազերը փետեցին: Աս բանիս վրայ շատ վշտանալով հրաման տուաւ վարչութիւնն որ արկղը քննուի. եւ օտար քննիչներու ներկայութեամբը նայելով գտան հոն շարականն ուրիշ գրքերով մէկտեղ: Ասոնց մէջ կար հին աւետարան մըն ալ, որուն վրայ յայտնապէս նշանակուած էր, թէ Սիւվրիզի եկեղեցւոյն է: Իրենք չէ թէ միայն զասոնք ետ տալ չէին ուզեր, հապա մերն ալ կ'առնուին: Ողորմած հոգին եթէ կրցած ըլլար՝ բոլոր աշ-

խարհք իրեն կ՚առնուր։ Աստուած ողորմի իր հոգւոյն եւ իրեն բարերարութիւնը՝ հոգւոյն ի բարին համարուի։ Բայց մայրը, մօրաքոյրն ու եղբայրը, եթէ կարենային, եկեղեցւոյն պատերն ալ կ՚առնուին կը տանէին ու կը փճացընէին։ Այսպէս առանց խղճմտանքի մարդիկ են։ — Ողորմած հոգին մեռնելէն քանի մը ժամ յառաջ կտակ ըրաւ, Տէր Անտոնին ու Տէր Նըմէդի հունգարացի քահանային առջեւ։ Առաջին խօսքն ան էր, որ 100 ֆիորին կը թողու Սիբվիզի եկեղեցւոյն, որ քահանան ամէն տարի պատարագ մատուցանէ իր հոգւոյն համար։ 50 ֆիորին ալ կը թողու եկեղեցւոյն, որ զինք մեծ խորանին առջեւը թաղեն. ուր իրօք ալ թաղուեցաւ։ Այս կտակը գրի անցուցին պիրօշները։ Աս որ եղաւ, մայրը զամէնք դուրս խրկեց. եւ երեքն ալ այնչափ բան ըսին հիւանդին ականջէն վար, թէ ինչո՛ւ կը թողու հիմնարկութիւն Սիբվիզի եկեղեցւոյն, որ այսօր կայ ու վաղը չկայ, ու հիմնարկութիւնն ալ կը կորսուի. լաւագոյն կ՚ըլլար, եթէ որ այն պատարագցուն Կերլայի եկեղեցւոյն թողու։ Նոյնպէս, թէ ինչո՞ւ կը թողու հոս տեղի եկեղեցւոյն 50 ֆիորին. արդէն իր աշխատութեամբն այնչափ բան վաստըկցուցած է անոր։ Բաւական է ան եկեղեցւոյն. ա՛ս տակն ալ Կերլայի թողու. եւ այլն։ Ասոր վրայ քահանան դուրսն եղողները ներս կանչել տուաւ ու ըսաւ թէ ա՛յն երկու կէտերը դուրս հանեն կտակին մէջէն ու Կերլայի եկեղեցւոյն վրայ անցընեն։ Ըսածնուս՝

վկաներ ունինք։ Մենք գանգատ ըրինք վերատեսչութեան. հոն անանկ խորհուրդ տուին, որ մեր ձեռքը պահենք որոշեալ գումար մը՝ մինչեւ որ բանը գերյարգելութիւնդ որոշէ։ Մեր քովն ասանկ բան չէ հանդիպած մինչեւ հիմայ. ու երանի՜ թէ աս ալ չհանդիպէր։ Կը ծանուցանենք, որ պատարագի զգեստով թաղեցինք զողորմած հոգին, ու զգեստներն ալ եկեղեցւոյն էին։ Ան ալ գիտնաք, որ եկեղեցպանն այն 50 ֆիորինը դեռ 1772ին յանձնած էր հանգուցելոյն, բայց երեք խորհրդական վկաներու առջեւ տուած ըլլալուն՝ անդորրագիր չէ առեր։ Գերդաստանը հիմակ ասոր ալ չի հաւատար։ Գոնէ մտածէին թէ պատուելի Ա. Յակոբն իրենց մարդն է. եւ իրենց վնասը չ'ուզեր։ Կը համարին թէ — որովհետեւ իրենք գէշ են — ամէն մարդ գէշ է։ Պատուաւոր մարդու չհաւատացողին, ոչ ոք հաւատք կ'ընծայէ։ Աս ամէն բան գրեցինք որ գիտնաք։ Որովհետեւ կ'ըսեն թէ, գերյարգելութեանդ պիտ'որ գան մեր վրայ գանգատ ընելու։ — Տիրացու Անտոնը կը գանգատի, թէ երբ տիրացու Աստուածատուրը տիրացութենէն ելաւ, ողորմած հոգին զինք բերաւ որ տիրացութիւն ընէ. խօսքն այնպէս էր, որ այն երկու ոսկին՝ գերյարգելութեանդ հրամանին համեմատ ինքը — տիրացու Անտոնը — ընդունի։ Այն միջոցին տէր Անտոնը հիւանդ ըլլալով՝ ստակը չյանձնեց իրեն ու մնաց քովը։ Հիմակ զաս ալ կ'ուրանան։ Նոյնպէս գերյարգելութեանդ հաստատած երրորդ ստակն ալ

չեն ուզեր տալ, որուն համար որ զտղաքը սոր-
վեցուցած է։ Ասիկայ մեզի վերաբերեալ բան
չըլլալով՝ չկրցանք իրենց մէջի անմիաբանու-
թիւնը դադրեցընել. այնչափ միայն ըսինք, որ
գերյարգելութեանդ կը գրենք։ Ինչպէս որ
Հրամանքնիդ կարգադրէք, այնպէս կ՚ընենք։
Մեղք է որ Անտոնին բան մը չտրուի. որովհետեւ
բաւական աշխատած է ողորմած հօգւոյն ատեն.
եւ իրեն տիրացութեան պաշտօնն ալ աղէկ
կատարած է։"

Նամակը կը վերջացուի այն խնդրանօք,
որ իրենց քահանայ մը խրկուի։ Նոյնպէս խոր-
հուրդ կը խնդրեն, որ ինչ ընեն եկեղեցւոյն
տանիքը, որովհետեւ կը բաղձան՝ որ ժամը
ծածկուի, եւ այլն։

Կարեւոր համարեցայ, աս նամակին հա-
մառօտութիւնը մեր լեզուովը դնել. վասն զի
թերեւս ընթերցողներէն շատերը դժուարաւ
պիտի հասկընան անոր բովանդակութիւնը։

Ահա՝ ստուգիւ դժուարին ոճով ու լի
սխալներով գրուած նամակին բնագիրը։

"Գէրարգէլի եւ Մէծարէլի Տէրն Տէրն
օհաննեսի գերջունի լուսիկեան, հայոց Արժա-
նավըր վարդապէտի եւ մեզի պէս անարժանուս
մէծ բադրօնին[1]. կու այտնինք ալ վար գըրած
բունդէրուն մէջ ըզմէր գանկատը. վըրին խնա-
րապէս թօղութին կուզինք գերարգելու-
թեանըմէ։

---

[1] Ապաւէն, պաշտպան։

Առինք մեծ պատւով ըզմեզի խըրկած գերարգելութեանը Թուղթը 27ին մարտի. եւ գարդացինք եւ իմացանք ըզամենայն էութիւնը. եւ կի տեսնունք մինք, որ մեզի պէս մեղավորները ունինք սէր ու միամիտ սըրտանց աշխատող եւ արաչնորդ ու մէկ մըխիթարանք. վըրին ամէն մէկըս գուհինք. եւ Աստուած կու խընդրինք, որ աստուած ապրած պահէ եւ արօղջութեամբ երկան տեանք պարգվէ գերարգելութեանը հայրական ցըցնելուն եւ աշխատանքին։ Հադէ հիմպի, որ այսբէս բան արաչ տըվիլէ որ այսօնցմով մաշեցնունք ըզգերարգելութիւնը, Թօղութիւն կուզինք. զէրամ Աստուած գիտէ ու մարդիգալ, որ մինք պաճարը չինք. օչ գիտացիլինք դէ մէր օ. հօգի գարաղի հանգուցեալ տէր հօրը մարդիքը ատսօս եւ արանց խըճմըտանք մարդիք իլան եւ անիրավ լիզվով։ Զէրամ չի գա բէրան որ ըզհանգուցեալ տէր հօրը միայմըտութիւնը կարնա ասէլու. օչ գրիչ, որ կարնա գըրելու ըզիրէն միամիտ աղէկութիւնը[1]։ Ընտօր մերով օ. հօգին, նա ամպէս ըրինտ կըցէցին իրէն մարը եւ մօրքուրը հետ աղբօրը մէկտեղ որ հընար չի գայ գըրելու գերարգէլութեանը ըզիրէնց աներկայ ժաժմունքը ու շատ փուստա[2] կալաճիքը։ Հադէ դէ տերտերնու հետ ու ալ ասգերու հետ պի վըկայցընունք ըզիրենց գօրձը։ Գընացինք ըրինտ Թաբուրով օ. հօգուն մարմնուն եարվանց. նա բերան գահանաքը վար տանէն ըզ-

1 Լաւ տպղածութիւն. սիրելի ըլլալը։

2 Պարապ, դէշ։

մարմինը. եւ կըցեց տէր անդօնը բադրուպանի կարգ կատարելու. ամպէս կըցեցին մէծ բերան բօրջելու[1], դէ էկիլին հօհէրները[2] վըրօնք որ ըղքանիլին ըղտերտէրը· ու կախըրդները, ձին-կաները[3], խարաղչիք[4]: Մէկ խօսօք· ինչ որ բէր-նին էկիլէ· ինչ դըլնած, ինչ պիրօվ· իսդօվ արաչ բէրիլին ու ծիծաղ եւ օչինչ արիլին բե-րըներօվը: Մենք ամէնը սուս կեցիլինք· իքմալ իրենց չինք ասիլ: Գերարգելութեանը հըրա-մանըն որ կի գըրէ մեզի, դէ կարմընա որ, օչ մէկ գիր մը չինք գըրիլ· օչ ժամին աղէկին հա-մար, օչ տէր հօրը մընացած աղէկին համար· դէ ում մօր է փըճադի տակ եւ ում ձերն է. իմաց անինք քան ինչ թէզ: Տերտերին ունե-նալուն վերա ձեր դըրիլ է մարը եւ աղքարը· ու իրէնց ձերն է: Եւ իմանալով որ ժամի բէրած շարականն ալ արիլին, վըրն որ բէրիլին երկըր-ցիքը, որ շատ պան կաժէ հայի էկէղեցու. վըր շարականը տեր հօրը մարը արանց իշդիրայի[5] արիլէ ժամէն: Ուզելին ըրինտ, որ տան դուս ըղժամինը· ամինըվին չին ուզացիլ. հադէ շատ պարապ կալաճիք ճուապ արիլին: Խըրկիլինք երկու Աղաչայ, որ ուզին ըրինտ· Նա աղաչանուն վերայ վէրցիլին ծեծօվ եւ համ զարկիլին փա-տօվ, համ մազերուն փըտիլին: Վըր բանէրը որ

---

1 Կանչել, պոռալ:

2 Հունգ. է. դահիճ, մորթող, քերթիչ կընշանակէ:

3 Գնչու, հունգ. է:

4 Գող, աւազակ:

5 Հրաման:

արիլին. դիժար պի հավատաք։ Հադէ պի ցըց-նունք։ Ինգվիսիձիաներով նաչարվեցանք[1] որ բերվի թըղթերով սընտուկը վար. եւ օտար սէպի մեծավորի դիմաց նաէցինք ու գըտանք ըզ-շարականը օզկա ժամի թըղթերով[2], վըրնոր ա-տուկ ժամի պիտվական վաղուցու ավէտրընի թուղդ. վըրին վերայ ախօս նիշանած է դէ Սի-բիսու էկէղէցու է. եւ որպէս նաչարվեցանք որ արնունք ըզմէրը. չէդէ դեր տըված իլաին հադէ ըզմէրնալ պահիլին եւ պահած գըտիլինք։ Մէր օ. հ. տերհարը կարցած իլար նա զընդրեկ աշ-խըրիս աղէկը վաստըկած պիլար. վըրին Աստուած օղորմի հօգուն եւ ըզիրէն բարերարութիւնը, աստուած հօգուն հասցընու։ Եւ գերարգէլու-թեանը խըրատը պի բըռնինք, որ չի պի մօռնանք աղօդգով եւ մէր աղքըտութեանը գօրայ օզկայ տուրքովալ ըզօ. հօգին։ Տա մարը եւ մօրքուրը ու աղբարը օ. հօգունը, իրենց վէրայ կաննէր բանը նա, ինչուրի ըզժամին սիտէրն[3] ալ պար-նուին ու պի տանէին. ու ամէն բանը պի փուս-դաէցնուին[4]. զէրամ արանց խըճմըտանք մար-դիք չինք տեսիլ ընտօր տագա ին։ Եբ՚ր մէ-րիլէ օ. հօգին, ախօս[5] ան օրը դէշդամէնդ արիլէ

---

1 Հարկադրեցանք բռնութեամբ։

2 Գիրք, մատեան։

3 Ջիդ. վալաքերէն բառ է. պատ, որմ կը նշանակէ։

4 Puszta հունգ. բառը, ամայի, անշահ երկիր կը նշանակէ։ Ասկէ կազմուած է, փուսդայեցընել հայերէն բառն. որ անտարակոյս, ոչինչ դարձընել՝ փճացընել պիտի նշանակէ։

5 Անմիջապէս, շուտ մը։

տեր անդօնին դիմաձ ու տէր Նըմէդիինը. ու չօրս սահդէնը վէրայ մէրիլէ: Արաչի խօսգը այս էղիլէ դէ 100 ըզլօդ կու Թօղու Ֆնտաձիայ[1] սիբիսի էկէղէցուն տէրտէրի, օր տարօց տարի պատրաք ասվի հօգուն համար. եւ 50 մաճրի ժամին, օր Թաղին զինքը մէծ բէմին դիմաձ. ինչպէս հոն ալ է Թաղած: Ու գըրիլային դէշդամէնդ պի-րօճնէրը: Ատօվ մարը խըրկիլէ դուս զիրօնք տեր-տէրին դիմաձէն ու անխըտար ասիլէ իրեքը. դէ ինչ կի Թօղու Ֆնտաձիայ սիբիսի ժամին կամ դահանաի. զէրամ այսօր կայ եւ վաղը չիգայ ու Ֆնտաձիայն պի կօրսըվի. ալ աղէկ կէրլաի ժամին Թօղու. զէ ան մընացական է. չէ ընտօր սիբիսինի: Եւ ըզ50 մաճրին ալ չի Թօղու, զէրամ տեսդուլ վասդըկիլէ ժամին. կօգդի ան եւ ալ աղէկ ան ալ կէրլաի ժամին Թօղու: Ղատ փըքէլօվ[2] ըզ օ. հոգին. եւ ձան տըվան ըզդէշդամէնդ գըրօղ պիրօճնէրը. ու ասաց իրէնց օ. հօգին դէ հանին ըզէրկու տիշբօզիձիայն[3] ալ ու գըրին կէրլաին. ու այսպէս դատրկեցուցին[4] ըզաղքատ էկըղէցին. վըրին վէրայ կան վըկաներ: Մինք գանկատ ա-նելօվ ըզայս բանը խելքօվ դապլաի Նէմիշնու[5]. խըրատ տըվին օր արգիլինք անխըտար սումայ պան մէր ձէրաձը մարդիքացը մօտ. ինչուրի գե-րարգելութեանը դիմաձ դարնա բանը, զէրամ

---

1 Հիմնարկութիւն:

2 Անշուշտ՝ վրայ տալ պիտի նշանակէ:

3 Կարգադրութիւն, կէտ, որոշում:

4 Զրկել:

5 Ազնուականաց ատեանին, հունգ. է:

*մինք դեր արջի թըղթին մէջ գըրած պիլաինք. բայց մեր մօտ այսպէս բան չի հանդըպիլ. քաշքայ[1] ասալ չի հանդիպած իլար։ Բայց օրթնեալ իլայ հիսուսի սուրբ անունը. եւ իլայ ամէն բանի կամքը հիսուսի. եւ ինչպէս հըրայման է գերարգէլութիւնը, մինք ամպէս պի անինք, Այս ալ կու գըրինք դէ ժամի գասուլաի[2] մէջ թաղիլին եւ շապիքն ալ ժամի եղիլէ. որ գիտնա գերարգելութիւնը։ — Պատ. Աղ. Եկեղձբանը ըզ772ին խօսդաձած 50 մաճրի հախը ատմինիսդրօվադ արիլէ տէրհօրը ու չարիլ գվէդանձիայ[3]. հադէ իրէք դըընաճի աղաչի դիմաձ տըվիլէ. ու հիմպի չին հավատա, ու շատ անհամ կալաճիք զուրուձիլին, գէմ մագար[4], շաղըշէին դէ Պատ. Աղ. ակօբը իրէնց մարդն է, նա չի պի կամէնար ըզիրէնց զէնը. եւ օչ պիլայ մէկ մարդ մը համ շաղըշէլու աղ. ակօբին վէրայ։ Տարը դագ'ա խուծած շաղըշօվ իլալօվ, կի սեպին դէ ամէնքը իրէնց պէսին, զէրամ վօվ հարկէվոր[5] մարդու չի հաւատա, նարա օզկաներն ալ չին կարնա հավատալու։ Գըրէցինք, օր գիտնա գերարգէլութիւնը. զէրամ կասէին, դէ պի երթան բօնօս[6] գերարգելութեանը մօտ։ Տիրացու անդօնը բօնօս կանէ, դէ եբ տիրացու Ասֆատուրը աբ-*

---

1 Երանի թէ՞

2 Պատարագի զգեստ (ըստ լատ. ծիսին)։

3 Անդորրագիր։

4 Գոնէ, գէթ։

5 Պատուաւոր։

6 Հունգ. բառ է, գանգատ, ամբաստանութիւն։

սօլվադ[1] եղիլէ տիրացութեանը եւ զինքը բերիլէ օ. Հօգի տէրհարը, նա ամպէս եղիլէ եւ ընտրըվիլէ որ իրէն տա ըզերկու օսգին։ Ինչպէս որ կէրէփնա գերարգելուն ճուրճօվէն խըրկած թըղդէն դէ անդօնին տըրվի 2 օսգին։ Հիվանտ ըլալօվ տէրհարը, չի տըվիլ. մընացիլէ մօտը. եւ հիմպի զանալ կու պարտըկին[2]. ամպէս ըզխօսդաձած իրեքում պանը, գերարգելուն հասդատածն ալ չուզին տալու, օչ տըղին սէպը, որ սօրվէցուցի, մագար մէկ պան մը։ Մինք, որ մեր ձէրացը կամ յուրիշտիկձիաին[3] տակը չին, չի կարցանք ըզիրենց մէչի գօնֆուսիայն[4] ընտրելու, քանց ասինք դէ պի գըրինք գերարգելութեանը, եւ գերարգելութիւնը պի գըրէ եւ տիշըօնօվադ[5] պանէ, ինչպէս ալ աղէկ հասգընա։ Իրէն ալ մեղք է, չիտան իքմալ նայ, զէրամ տեսդու[6] աշխատանք ունացիլէ, մագար հիվունտութեանը ժամանակը օղ. հօգունը. եւ համ ըզիրէն տիրացութեան պաշտօնը վէրջ տանելու ճահդ արիլէ[7]։ Պի ընտրէ գերարգելութիւնը. ինչ որ ալ զօր կու բօվինք, նա պի խըրկէ գերարգելութիւնը քան ինչ թեղ. զերամ բանի ժամանակ

---

1 Ազատիլ, արձակուիլ։

2 Ուրանալ։

3 Իշխանութիւն, իրաւասութիւն. (jurisdictio)։

4 Անմիաբանութիւն, խառնակութիւն։

5 Կարգադրել, լմընցընել։

6 Դրանսիլուանիայի հայոց լեզուաւը, բաւական՝ կը նշանակէ։

7 Զորս բառին նշանակութիւնն է, կատարելու՝ լմընցընելու ջանք ըրած է։

*կու գա։ Մեծ խընարապէս թօղութիւն կուզինք այս գըրին ալ։ Ջէրամ պարտը չէ դէ գըրինք, դէ ժամին բանի ժամանակը կու գայ. ու մէզի անտի խըրկէ գերարգելութիւնը գահանա. որ բանի կամ աշխատի. հաղէ նըմա խըրատէ եւ ամպէս բէրէ դէ ինչ ընտօր արվի։ Հիմպի ծածուկի ձեպլա ալ[1] կուզինք շինէլու, որ ծածկըվի ժամը։ Եւ մէկ խօսօք ամէնայն կօղմանէ թօղութիւն կուզինք խընարապէս, որ այս շատ գիրովը կի մաշեցնունք զգերարգելութիւնը. վըրին աստուածվէ վարձգը պի արնու գերարգելութիւնը։ Եւ կու մընանք խոնար ծարա ամէնայն ժամ գերարգելութեանը, փըքըր ժօղովուրդ սիբխու. 774, 9ին ապրիլի։ Չերամբ մարտիրօս խաչիկի նօդարիուշ սիբխու փըքըր ծարա գերարգէլութեանը.*

| | |
|---|---|
| Դավիդ Վարդանի | Ակօբ ըղդէխնօի |
| *պիրօվ իմ աղաներօվըս. ծարա գերարգելութեանը։* | *եկըղձըն, իմ ժօղօվուրդօվըս. ծարա փըքըր գերարգելութեանը։* |

Sp. *խոնար ծարաինք, եւ շատ բարի աղէկ կու կամենանք եւ շատ բարեւ կանինք տեր Վարդնին արժանավըր նօդարիուշին[2] եւ ընդրէկ գահանաից գլէրին անարժաներըս։ Մեծ սիրօվ գերարգելի հայր, մինք խըրատ կուզինք իրենց ժաժմունքին համար. զէ դատըսդընօվ կուզինք նաէլու զիրենց լիզվին. եւ գօրծգնե-*

---

[1] Այսանկ գրուած է։ Ինչ ըլլալը՝ չեմ կրնար հանել. Թերեւս ձէլլա (սենեակ, խուց) բառն ըլլայ։

[2] Քարտուղար, Նոտար։

րուն արածը պի ցըցնունք վըկաներով, դէ դագավըրաց[1] հետ, դէ տերտէրնու հետ եւ դէ ալասգի[2] հետ, օր մինք չի պի մնանք խալատ, հաղէ իրէնք ին. ու տեսդուլ[3] դիմաձիլընք իրէնց„:

Նամակին դըսի կողմն, այսպէս գրուած է տիտղոսը.

“Գերարգելի եւ մեծարելի Տէրն Տէրն Օհաննեսի գերջունի լուսինկեան, փիլիսոփայութեան եւ Աստուածաբանութեան Վարդապետի եւ առագելական միսոնարի գանոնիգոսի գերազանցեալ գաբիդուլումին եւ Առաքելական Նօդարի Սրբազան Սուրբ աթոռոյն Հռոմայ եւ վէրակացուի կրօնին սուրբ Անտօնի Աբայի եւ Արժանաւոր Աւաքէրէցի հայոց գոմբանիայի էլխաբէդայ, նաեւ բլէպանուշի սոյն քաղաքիս վերահատուցի մէծաւ յարգութեամբ ի հայոց քաղաքըն Էլխապէդ„:

Եւ որովհետեւ՝ ինչպէս կ’երեւայ, այս նամակին բովանդակութեանը վրայ Եղիսաբեթուպոլսոյ եկեղեցական վարչութիւնը կամ ուղղակի պատասխան տալ չէ ուզած, եւ կամ բովանդակութիւնն անտես ընելով՝ իբրեւ թէ անոնց վրայ տեղեկութիւն առնուլ ուզած չէ եւ կամ նոյն իսկ նամակն ընդունած չէ. — անոր համար, նորէն կը հարցընէ ու կը հրամայէ

---

1 Մեծամեծ, աղա:

2 Այսինքն, այլազգի, օտարական, օտարազգի:

3 Բաւական:

Սիբվիզի առաջնորդութեան թէ ի՛նչ ըրած են քահանային ստացուածքն ու եկեղեցւոյն սպասները։ — Պիրովը՝ յանուն հասարակութեան, վերոյգրեալ նամակը քիչ մը փոփոխութեամբ գրեթէ կը կրկնէ։

"Մենք տէր Անտոնին մահը ծանուցինք. եւ Հրամանոց թղթին երկու կէտին ալ պատասխան տուինք։ Ու որովհետեւ կը հրամայէք որ ժողովք ընենք, մենք անմիջապէս ժողովեցանք ու մտածեցինք՝ թէ ի՛նչպէս ընենք որ աղէկ ըլլայ։ Կը զարմանայ գերյարգելիութիւնդ որ հագուստներուն համար չգրեցինք. ու կը հարցընէ թէ կնքուա՞ծ են. եւ ո՞րուն ձեռքն են։ Գրեցինք թէ մօրն ու եղբօրը ձեռքն են։ — Կը գրէք դարձեալ, թէ եկեղեցւոյն հոգ տանինք. եւ ամէն բաները ժողովենք։ Մենք հոգ տարինք որ հրամանը կատարենք, բայց մեր տեղեկութիւններովը գոհ չեղաք, հապա անոնց (այսինքն հանգուցելոյն հօրն ու եղբօրը) ստերուն մտիկ ըրիք։ Ամէն բան գիտենք։ — Քահանային կտակն երեւան ելաւ։ Ասոր մէջ կը կարգադրէ, որ ունեցածին մէկ մասը՝ հոս տեղի ու մէկալ մասը՝ Կերլայի եկեղեցւոյն տրուի։ Մենք գերյարգելութեանդ իմաց ընել ուզեցինք։ Գացինք դատաստանարան ու խորհուրդ հարցուցինք։ Հոն մեզի պատասխան տուին թէ, որոշ գումար մը քովերնիս պահենք։ Անանկ ըրինք։ Աս բանս Հրամանոց ծանուցինք. իսկ Հրամանքնիդ արգելմունքը վերացուցիք։ Ասով մենք շատ չպակսեցանք։ Կը գրէք թէ ուսկի՛ց առինք այն իշխա-

նութիւնն որ, քահանայի մը տունն երթանք եւ
հոն ձեռք դնենք ստացուածոց վրայ։ Ասոր մենք ա՛ն
պատասխանը կու տանք, թէ ազգականք ուսկի՛ց
առած են այն իշխանութիւնն, որ եկեղեցւոյն
բաներն առնուն ու պահեն։ Մենք հրաման ու-
նինք, որ եկեղեցւոյն բաները ժողովենք. իսկ
իրենք հրաման չունի՞ն զանոնք մեզի յանձնելու։
Քանի մ’անգամ ուզեցինք քաղցրութեամբ, բայց
չտուին. ամէն տեսակ անկարգ խօսքեր ըսին մեր
վրայ։ Այն շարականը զոր ունէր ժամը, յայտնի
է որ եկեղեցւոյն համար բերուած էր։ Թէ
որո՛ւն ստկովը գնուած է, չենք գիտեր. որով-
հետեւ եկեղեցւոյ ստակն ալ հանգուցելոյն
ձեռքն էր։ Բայց որպէս զի կռիւ չըլլայ, գինը
վճարել ուզեցինք. սակայն յանձն չառին։
Ուստի մտածելով որ լաւագոյն է թէ եկեղեցին
պահէ ան մատեանը, քան թէ իրենք — որով-
հետեւ եկեղեցւոյն շատ հարկաւոր է. ու առանց
անոր չի կրնար ըլլալ — տիրացուն խրկեցինք
որ գիրքն ուզէ։ Վրան յարձակեցան ու զինք
ծեծել ուզեցին։ Ասոր վրայ՝ խրկեցինք երկու
աղաչայ, որ քաղցրութեամբ խնդրեն գիրքը։
Զմէկը փետեցին, մէկալին վրայ կացինով յար-
ձակեցան։ Ասոնք դառնալով՝ ժողովքին մէջ
ըսին եղածները։ Այն ատեն խրկեցինք չորս ա-
ղաչայ ու չորս գեղացի, որ գիրքն ուզեն, ու
եթէ տալ չուզեն, արկղը բանան եւ մարդիկ-
ներուն դիմացը նային. թէ որ գտնեն, առնուն։
Ասոնք՝ տեղակալն ալ առին հետերնին։ Գրեանց
արկղին մէջ իրօք գտան շարականն եւ ուրիշ

երեք գիրք, որ եկեղեցւոյն էին. ու պատուական բաներ են: Եթէ նայիլ տուած չըլլայինք՝ կը կորսուէին: Թէ որ Հրամանքնիդ այս գրքերը մեզմէ պահանջէիք, ափ ի բերան կը մնայինք ու պատասխան պիտի չկարենայինք տալ: Եթէ որ օրինաւոր ճամբան քալած չենք, պատրաստ ենք, այս գրաւումին համար պատիժը կրելու. իսկ եթէ որ իրենք ապօրինաւոր ճամբուն վրայէն քալած են, այն ատեն հատուցումն կը պահանջենք: — Կը գրէք, թէ միայն երեք հոգւոյ բանն է աս. եւ թէ վաղեմի վրէժն ուզած ենք առնուլ: Պիտի ցուցընենք Հրամանոցդ՝ որ բոլոր հասարակութեան ու բոլոր գեղին կամօքն եղած է այս բանը: Զան ալ կը գրէք, թէ քանի մը կատակի խօսքեր որ ըսին՝ իրենց սրտի ցաւէն ու կսկըծանքէն ըսին: Կատակի խօսքեր չէին, զորոնք ըսին մեզի դէմ: Կատակի խօսքեր չեն ասոնք. “Կախարդ, գող, պարապ մարդիկ, վալաքներ, գնչուներ, խայտառակներ՝ չէ թէ աղաչաներ: Զորնայ պիրովին գլուխը:„ Ամէն բանի համբերեցինք. բայց հատուցում կ՚ուզենք: Սրտի մեծ ցաւով զան ալ կը կարդանք գերյարգելութեանդ մեզի գրած թղթէն, թէ Ս. Եղբօրդութեան ընկերութեանն ստակը ժողովեցինք. անոր մէկ մասն առինք ու խմեցինք: Զմեզ դատափետողը, գէշ բանի ձեռք զարկած է. կ՚ուզենք այն մարդն, որ ըսած է: Եթէ ըսածը կարենայ ապացուցընել, ամօթը մեր գլուխն իջնայ. իսկ եթէ չկարենայ ցուցընել՝ մենք պիտ՚որ ցուցընենք իրեն, թէ բերնէն ինչ չծամած

խօսքեր հանած է։ — Տիրացուին քով փնտռած խաչելութիւնը գտնուեցաւ՝ այնպէս, ինչպէս որ դրած էր Տէր Անտոն Բաղրուպանեան, տապանակին դրան վրայ։ Կ՚երեւայ թէ բանալու ժամանակ — որովհետեւ տապանակը դառնալով կը բացուի — հոն ինկած էր փակելու ատեն. ու մնաց հոն։ Հիմակ՝ հոն մաքրած ժամանակը, երեւան ելաւ։ Բայց արժէք ունեցող բան մը չէ։

— Եթէ որ մեր Նամակն արժէք չունի գերյարգելութեանդ առջին. չունենայ արժէք իրենց խօսքն ալ։ Կայ արդարութիւն մը։ Արդար եղողը՝ պիտի մնայ արդար. ու պատժոյ արժանի եղողը՝ պիտի պատժուի։ Մենք խոնարհութեամբ կը գրենք Հրամանոցդ, որ դիւրաւ չհաւատաք ամէն խօսքի. եւ մեր վրայ չսրդողիք. որովհետեւ եթէ Աստուած գերյարգելութիւնդ հոս բերէ, այն ատեն ամէն բան յայտնի պիտ՚որ տեսնէք ու պիտ՚որ իմանաք։ Հրամանոցդ՝ մեզի գրած Նամակին վրայ բաւական տրտմութիւն ունեցանք։ Բայց ասիկայ մեզի խրատ ըլլայ„ եւ այլն։

Կը դնեմ այս դժուարիմաց, սխալներով լեցուն եւ դժուարընթեռնլի Նամակին բնագիրը։

"Մեծարելի եւ գերարգելի տէրն տէրն տէր օհաննեսի գերջունեան լուսիկի հայւոց բօմբանիայի Առժանավոր վարդապէտին կու գըրինք խընարապէս։

Ինչպէս որ մարտի ամսուն հանդըպեցավ տէր անդօնին մահը եւ մինք այխօս[1] գերար-

1 Շուտ մը, անընդմիջապէս։

գէլուն Թուղդ գըրեցինք եւ գերարգէլին մէջի վալօս[1] գըրիլէ. եւ երկու բունդի[2] համար օր կատարինք եւ քանիչ Թեղ վալօս գըրինք, կու հրամայէ: Արնէլօվ ըղԹուղդը դըլնած քաղէցինք ու հօն սէսիա[3] արինք գերարգէլուն Թըղդին մէչէն դէ ընտոր անինք օր աղէկ իլայ: Կու գըրէ արջի բունդին մէչ դէ կարմընայ[4] օր տեր հօրը քըրչէրուն[5] սէպը չինք գըրիլ իքմընալ. դէ մօրհի տակ ին, դէ չէ. եւ ում ձերնին: Անօր վալօս գըրեցինք զարաս, դէ մօրը եւ աղբօրը ձերնին: Երկուսում բունդին մէջ կու գըրէ գերարգելին, դէ ունենանք ըզժամին ամէնայն քըրչերը մէկտեղ քաղելու. նա մինք հրամանին ճահդ արիլինք, օր վերչ անինք. եւ տանէլօվ անալ ծանտրուԹիւնը ընկիլէ գերարգէլուն. զէրամ մէր խըրկած ինֆօրմաձիան[6] չէղիլ սէպի գերարգէլուն դիմաձ. հապա նացա սուտէրը եղիլին հավատացօր: Գիտինք ամէնայն էուԹիւնը. չէ սուտէր. վըրնօր ամէն ժամանակ ամպէս պի ցըցնունք աղէկ վըկանէրօվ: Ինչպէս օր մէր մօտ ալ շատ չէր հանդըպի այտպէս բան: Եւ տէր հօրը դէշգամէնդը[7] եղավ արաչի տիշըբօզիձիայն մէր սիրիսի ժամին. երկուսումը

---

1 Պատասխան. հունգ. է:

2 Կէտ:

3 Նիստ, ժողով:

4 Արմընալ. Գրանսիլուայի լեզուաը կը նշանակէ, զարմանալ, ապշիլ:

5 Հագուստ, զգեստ:

6 Տեղեկութիւն:

7 Կտակ:

կերլաի ժամին։ Նա ուզացիլինք գերարգելուն իմաց անելու, որ չասէ մեզի այսօր էտէվանց դէ չի կարցանք թուղդ գըրէլու։ Գընացինք ու դապլաի ասէսօրի[1] խըրատ հարցուցինք. Նա մեզի ան խըրատը տըվին դէ ինչուրի գըրինք եւ վալօս արնունք գերարգելուն մօտէն, Նա իլայ արգիլած անխըտար սումա ըզզակ. եւ ինչ իլայ վալօսը նայ ամպէս մընայ։ Մինք ան կէր-պիվը արգիլէցինք եւ գերարգելուն գըրէցինք. ու ինչ որ արինք ըզխըրկած թուղդը, զարաս արգիլմունքը ապլըվիլէ[2]։ Մինք անօվ չէինք խալտընցիլ ի ժօվ։ Կու գըրէ գերարգելին դէ ուսգից ունացիլինք ան իշխանութիւնը, որ մէկ տէրտէրի տան մը վէրայ էրթանք էկսէգուձիայ։ Մենք կու գըրինք դէ ինքը եւ իրէնք ուսգից ունացիլին իշխանութիւնն, մէկ ժամի մը մէչէ այտուկ ըզժամինը արանց իշդիրայի[3] արնէլու եւ պահէլու։ Մինք ունացիլինք հրաման, որ ըզժամին աղէկը մէկտեղ քաղինք, տա իրէնք չին ունացիլ տալու։ Քանի անգամ ուզիլինք ըրընտութնօվ. ամէնը չին տըվիլ. դէր ինչխա աներկա[4] կալանիք, իսդօվ իրենք կանչիլին ան շարականին համար։ Օր ալ աղէկ իմանա գե-րարգէլին մէր ժամը չունունալօվ, վըրն որ բէրած է ուրախչուխէ[5], չէ կէրլաէն. ան վիլա-

1 Առենական տեղապահ, օգնական։

2 Թողուիլ, արձակուիլ։

3 Անշուշտ՝ հրաման, թոյլտուութիւն պիտի նշանակէ։

4 Անկարգ, անպատշաճ։

5 Ասանկ գրուած է. — կ'երեւայ թէ տեղ մըն է։

կօշ[1] է, օր ժամին սէպին վէրայ է բէրած։ Ում պանէն վիճարած է, չիտինք բէմնի[2]. զէրամ ժամին պանն ալ տէրհօրը ձեռն եղիլէ։ Հաղէ օր չիլա կըռիվ, մինք կուտաինք ըղպանը. չու-զացին արնէլու։ Մինք ամպէս կի սէպինք դէ ալ վօլնի[3] պիլայ ժամը բըռնէլու, քանց իրէնք. զէրամ ժամը արանց անօր չիլայ իլալու մէկ օր մը. ու համ բէրածը ժամին սէպին վէրա է[4]։ Մէր եկսէգուձիայն[5] այս էղիլէ. խըռկէցինք ըղտիրացուն, օր ուզէ. ծէծօվ վէրցիլին վէրան։ Խըռկիլինք երկու աղաչայ, օր ըռինտ ուզին. ըղմէկը փըտիլին, ըղմէկալը կացընօվ գըլօխը եղիլէ օր զարնին[6]։ Էկիլին ու ասիլին դըլնաճը։ Խըռկիլինք չօրս աղաչայ, չօրս գեղաձի օր ուզին ու շատ չի մաշեցնուն։ Զիտան նա հանին սըն-տուկը դուս եւ նաին մարդիքաց դիմաց. ու գըտնուն նա արնուն։ Տարիլին ըղհօտնօտն[7] ալ. ու նարա դիմաց քըռքըռած է ըղթըղթէրօվ սընտուկը. զէրամ արանց խուբէր գըտան ըղշարականը ու դէր շարականի պաճարօվը իրեք թուղդ պահած ժամի, վըռնոր չինք գիտացիլ։ Պիտվական թըղթեր[8] մէջ։ Զի նայած իլայինք,

---

1 Հունգ. բառ է. լուսաւոր, յայտնի՝ կը նշանակէ։

2 Ապահով, ստոյգ։

3 Ազատութիւն, հրաման։

4 Եկեղեցւոյն համար է։

5 Գրաւումն. բանի մը վրայ ձեռք դնելը։

6 Քիչ մնաց, որ կացինը գլուխը զարնեն։

7 Ազնուականաց դասաւոր. Հունգ. է։

8 Թուղթ, Դրանսիլուանիացւոց լեզուովը՝ գիրք, մատեան կը նշանակէ։

կի տանէին։ Գերարգելին սէպ կուգէր, ում խլված պիլաինք. տեսդուլ մեղք արած պիլար, թէ պէլքի օզկան պահիլէ։ Մինք պի քաշինք ըպէկզէգուձիային պատիժը, դէօր արանց ճամբայ քալած իլանք. հադէ որ իրէնք արանց ճամբայ եւ խուծած եւ արանց իշդիրայի պահիլին, արիլին, մինք ալ շադիշֆաձիայ[1] կուգենք որ ունենանք։ — Գրիլէ մէզի գերարգելին դէ նըմայ իրէք հօգու բան էղիլէ. եւ ըզվաղուցու ինատը ուզացիլին հանէլու։ Պի ցըցնունք գերարգէլուն, որ ընդրէկ հասարակի եւ գէղի կամօքը էղիլէ այմէնայն բանը։ Կու գըրէ այն ալ գերարգէլին դէ մասխարայ եւ ավէլի պակաս կալաճիք կանչիլին եւ ասիլին, նա կսքիծնուն եւ մէծ սըրտի ցավէրնուն այսիլին։ Ընտօր մէրավ, դէ մագար չէին ճօղիլ[2], եբօր կըցիլին կախարդ, գող, խարաղչիք, փուսդա մարդիք, օլախնէր, ձինկանէր, չուֆէր[3], չէ աղաչաներ. չօրնա գըլօխը պիրօվինը։ Ամէնը համբիրիլինք, վըրոնց սէպը իսդօվ շադիշֆաձիայ կուգինք։ Այս ալ մէծ սըրտի ցավօվ կու խօսեցնունք գերարգէլուն թըղդին մէչէն, դէ սուրբ երըրդութնայ գօնկրէկաձիային[4] պանը քաղիլինք ու մինք փայ արիլինք ու խըմիլինք։ Վօվ ըզմէզ տավի արիլէ, խուծած տավի արիլէ։ Ըզմարդը արաչ կուգինք. եւ ըզամօթը կու փընտրինք։ Դէօր կարնա ցըցնէլու,

---

1 Հատուցում։ Satisfactio բառն է։

2 Ճօղել — երկընցընել կը նշանակէ։

3 Հունգ. է, խայտառակ, անամօթ կը նշանակէ։

4 Ընկերութիւն, եղբայրութիւն։

պի քաշինք մենք ըղամօթը. եւ դէօր չիկարնա ցըցնելու, պի ցըցնունք մինք իրէն դէ ընտօր կի հանէ կալաճի, արանց ծամած բէրնէն: — Խաչելութեանը օր կի փընտրէր տիրացուին մօտէն, բուխդան ու պէլայ, նա գըտվիլէ ընտօր օր դըրած էղիլէ տէր անդօնը բադրուպանը դապէրնագուլին[1] դըրանը վէրայ: Բանալէնը ընտօր օր ման գալօվ[2] կի քայլէ դապէրնագուլին դուրը, նայ հօն ընկիլէ. ու եբօր փակիլէ նայ, մընացիլէ հօն նես: Հիմպի քըռքըռելէնը գըտվեցավ. տա չէ օր իք մը բէշայօվ բան եղած իլար: Հադէ ինչ ալ օր կու բընտրին տերհօրը մարդիկը, բուխդան ու պէլա կի կըպչին: Հադէ օչ մէր գիրը սէպի չիլայ, ընտօր օր սէպի ալ չէղիլ գերարգելուն դիմաց, օչ իրէնց խօսքը սէպի չիլայ: Հադէ կա արդարութիւն. եւ վօվ իլայ արդար, արդար պի մնայ. վօվ իլայ պաճու, պի պաճվի: Քանց խընարութեամբ կու գըրինք գերարգէլուն օր չի հավատայ ամէն բանը ու օչ սօրտօրութիւն ունենա մէր համար. չէրամ Աստուած բէրէ ըզգերարգէլին, նա ամէն բանը ալ բեմնի պի տեսնու եւ պի իմանայ: Հադէ ունացիլինք գերարգէլուն գըրին գօրայ, օր մէզի գըրիլէ նայ, տէսդուլ տըրտմութիւն: Բայց խըրատ իլայ մէզի: Եւ այսու կու մընանք խընար վորդիք գերարգէլութեանը ա-

---

[1] Տապանակ:

[2] Ման գալ — դառնալ՝ բոլորիլ կը նշանակէ Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը:

մէնայն ժամ ծառաէլու սիրխուս մակխսդրադ։ Ձերամբ մարտիրոս խաչիկի, նօդարիուշ սիրխուս հայօց։

774, 29, Maji.

Պիրօվ դավիդ Վարդանի.
փըքըրը ծառա գերարգելութեանը ամէնայն ժամ։„

Եղիսաբեթուպոլսոյ վերին իշխանութիւնը տեսնուեցաւ Սիբվիզի հասարակութեան վրայ նաեւ այն առթիւ, երբ 1772 Դեկտ. 29ին հանդիպած կռուի մը համար՝ Սիբվիզի Ս. Երրորդութեան եղբայրութիւնը հասարակութենէն տուգանքի մը պատժուեցաւ։ Եղբայրութիւնն Եղիսաբեթուպոլսոյ եկեղեցական վերին իշխանութեան դիմեց. որն որ 1774ին՝ խնդիրը քննութեան առաւ, ու այցելու մը խրկեց Սիբվիզ, որպէս զի ճշմարտութիւնը քննէ ու երեւան հանէ։ Ասիկայ եկեղեցական իրաւանց վրայ յենլով, վերաքննութիւնն իրեն առջեւը բերաւ։ Եւ որպէս զի արդարութեամբ կարենայ դատաստան կտրել, գեղի բնակիչներէն արժանահաւատ վկաներ հարցաքննեց։ Ասոնք խղճմտանքաւոր վկայութեամբ՝ գրեթէ միաբերան յայտնեցին, թէ թէպէտ այն միջոցին որ եղբայրութիւնն իր գործքին համար ժողոված էր, պակսութիւն մը հանդիպեցաւ (որն որ դեռ բոլորովին յայտնի չէ). բայց այն պակսութիւնն եղբայրութեան մէջ հանդիպած ըլլալով՝ աշխարհական ատենի վերաբերեալ բան չէ։ Երկրորդ՝ թէ այսպիսի

պատճառեալ պակսութեան մը համար — ինչպէս որ քաղաքաբաշխութեան արձանագրութենէն ալ կը տեսնուի — զեղբայրութիւնը ամբաստանողը, դատաստանի առջեւ տանողն ու տուգանքը վճարել տուողը, Յակովբ Աղա Ստեխնօյեան եկեղեցպանն եղած է։

Արդ աս ամէն բան արժանահաւատ վկաներէ իմանալով. եւ մէկալ կողմանէ եղբայրութեան կանոններէն գիտնալով, որ եթէ եղբայրութեան մէջ՝ վիճաբանութիւն կամ կռիւ եւ կամ որեւիցէ ուրիշ տեսակ յանցանք կամ պակսութիւն մը գործուի՝ անոր Նախագահին եւ առաջնորդներուն գործքն է, որ դատեն զպատժապարտը. — եւ եթէ պատժուածը ծանրութիւն կամ անիրաւութիւն մը տեսնէ անոր մէջ՝ կրնայ Աւագերիցուն ու նոյն իսկ եպիսկոպոսին բողոքել՝ —

Անոր համար մենք — կ՚ըսէ եկեղեցական վերին ատեանը — տեսնելով որ եղբայրութեան մէջ հանդիպած պակասութեան մը համար քաղաքաբաշխութիւնը եղբայրները տուգանօք պատժած է, որով կանոններուն հրամանն անարգեր, ոտքի տակ առեր եւ եկեղեցական իշխանութեան դէմ գործեր է. — յանցաւոր կը գտնենք նախ՝ եկեղեցպանն որ իր պաշտօնին հակառակ՝ եղբայրներն իրենց դատաստանի շրջանին մէջ չդատելով՝ աշխարհական դատաւորի ձեռք տուեր է. — երկրորդ, դատաւորն՝ իր երկու խորհրդականներովն ու քարտուղարովը։ Որովհետեւ ասոնք բանի տեղ չդնելով

երկու հիմնադիրներուն բողոքն — որոնք խոր-հրդէն ելլելով բաւականապէս ցուցուցին իրենց տհաճութիւնը, այսու ամենայնիւ — վճիռ բե-րելու եւ այս կերպով իրաւանց դէմ եղբայր-ները տուգանօք պատժելու համարձակեցան։

Իրերն այսպէս ըլլալով՝ եկեղեցական վերաքննութիւնն այնպէս կը գտնէ, որ նոյն տուգանքն, որ եկեղեցւոյն է, նորէն եկեղեցւոյն դարձուի։ Ուստի եւ այս դատավճռոյն ուժովը կը պարտաւորէ ու կը հրամայէ, որ վերոգրեալ հինգ պակսութիւն ընողներն, այսինքն. Աղա Յակոբ Սոխնօյեան եկեղեցպանը, Աղա Դաւիթ Վարդանի պիրովը, Աւքսենտիոս Ոսկերիչեան եւ Գրիգոր Վասլովցի խորհրդականներն եւ վեր-ջապէս Մարտիրոս Խաչիկեան քարտուղարն, այն 17 Փիորին եւ 4 ստակ տուգանքն անպատճառ ետ դարձընեն։ Եւ այս գումարը՝ եկեղեցւոյն պէտք եղած զօրաւոր դուռ մը շինելու գոր-ծածեն։

Այսպէս կը գտնէ, կը դատէ, կը հրա-մայէ ու կը պարտաւորէ եկեղեցական սուրբ վերաքննութիւնը։ —

Կը ներկայացընեմ ընթերցողաց այս դա-տավճռոյն հայերէն բնագիրը։

†

Deliberatum[1].

Ճանչնալով Պատուելի վիզիդան[2] զիրեն պարտականութիւնները, որ նախ զԵկեղեցուն

---

1 Խորհրդեամբ յառաջ բերուած վճիռ. դատաստան։

2 Այցելութիւն, քննութիւն։

շահը յառաջ տանի ու քշէ. եւ թէ անոր էտեւանց զեկեղեցական իշխանութեան տակը եղած Եղբայրութեանց իրաւունքը եւ իւշը պահպանէ, ջատագովէ, ու ամենայն ընդդիմութեանց, որոնք որ այսպէս բաներու մէջ հիւմմէ առաջ գային, ու հանդիպէյին, պաշտօնին գօրայ դէմ տայ, ու օգնական ըլլայ: Որ զաս պարտաւորութիւնը վերջ տանէինք ըստ արդարութեան, խոնարհ խնդիրք մեր դիմաց դրվեցաւ, ան եղբարցըմէ եղբայրութեանը ամենասուրբ երրորդութեանը, վօրոնք որ յամի տեառն 1772, դեկտեմբերի 29ին աս տեղացի սիբվիզու հայ մակխտդրադին տէլիպէրադումօվը ճուրումի տակ ձըգված, ծանրէցուցած կի գավին վասն նոյն պըտորութեանը, որ ան ժամանակները հանդիպած էղիլէ պրասդավային մէջ[1]. ուրուխ որ վասն եղբայրութեան շահաւէտութեանը քաղված էղիլին: — Մենք ուրեմն, որ նախ զըանին ճշմարտութիւնը աղէկ փնտրէինք, իմանայինք ու ճանչնայինք. եւ անոր էտեւանց ըստ եկեղեցական իրաւանց, ու հաստատութեանց զդատաստանը կըտրէինք, ձան տըվինք[2] մեր դիմայ շատ կենդանի վկաներ, աս գեղխս մէջ բնակողներ. որոնք խղճմըտանքաւոր վկայութեամբ ամէնքը, գրեթէ միաբերան դաս տըվին, եւ յայտնեցին

1$^{mo}$ Թէ նոյն ժամանակները եղբայրութիւնը վասն իւր շահաւէտութեանը քաղված

---

1 Լեհերէն բառ է — ընկերութիւն, ժողովք կը նշանակէ ։

2 Կանչել, առջեւը բերել ։

էղած ըլլայ։ Ու ասպէս, թէ որ բան մը խալատաւօր (որնօր ինչվաս դէր մեր դիմաց բոլորովիմը յայտնի չէ) հանտըպած ըլլայ, ան խալատութիւնը եղբայրութեանը մէջ վերջ տարած է։

2do Թէ նոյն ճուրումին ժամանակը եղբայրութիւնը ամենասուրբ երրորդութեանը անպէս հաստատ, ու անխախտ էղիլէ, ինչպէս ալ առաջ հի ինչ ժամանակներ։

3tio Թէ մակիսդրադին դիմաց վասն այսպիսի բրէդէնտօվադ[1] խալատութեան զեղբարքը տավի անօղ, եւ զդաքշան[2] վասն մակիսդրադքաղվելունը վիճարօղը, Աղ. Եկէղէցբանը, այսինքն Ա. Ակոբը Սոէխնօյեան էղած ըլլայ. ինչպէս որ իրեն հրամանքն ալ մեր դիմաց դուրս տվիլէ ու Գլնաճին բրօդօգօլումն ալ կի վկայէ։ Զայս ուրեմն բօվանդակը արժանաւոր վկայիցմէ բարեպէս ճանչնալով. ու ուրիշ կողմանէ կոնտակին կարգադրութեան գօրայ, ինչպէս որ 14 ում Punctumը կի ցըցնու, գիտնալօվ, թէ թէ որ կրիւ, կամ ծեծ, կամ ո եւ իցէ խալատութիւն եղբայրութեանը մէջ հանդիպէր նայ, անպէս ժամանակը եղբայրութեան փունտադօրներն, ու բրէֆէգդներն[3] պի դատին զմէղապարտը։ Ու թէ որ այսպիսի դատված կտրիճը ծանտրութիւն իրեն իմանար, կլայ աբբէլօվադ[4] անէլու Տէր Աւագէրէցին դիմաց. ու անկից, թէ որ չի հաւ-

1 Պահանջեալ, կարծեալ։

2 Սակ, գնահատութիւն։

3 Հիմնադիրներն ու առաջնորդները։

4 Բողոքել, բողոք ընել։

*ներ, եպիսկոպոսին դիմաց վազելու։ Մինք ալէս տեսնելով, օր որ կերպիւը, զեղըարքը, վասն եղբայրութեան մէջ էրէվցած խալատութեանը Մակիսդրադը ճուրումէլով, զվերոյիշեցեալ կոնտակին հրամանը անարգիլին, օտից տակ արիլին, ու եկեղեցական իշխանութեան դէմ կաննիլին մեծ անհնազանդութեամբ. Նախ. Ա. Եկէղէցբանը, որն օր ընդդէմ իւր պաշտօնին զեղըարքը, իրենց ֆօրումին[1] մէջ չի դատելով, աշխարհական Պիրօվի ձեռք ձգիլէ. Երկուսումը Ա. Պիրօվը, այսինքն Ա. Դաւիթ Վարդանի, հետ իւր երկու Աղանուն, այսինքն Ա. Անկսէնտի Օսգէրիչի, եւ Ա. Գրիգորի Վասլօվցուն. եւ վերջապէս հետ իւր Նօդարիուշին, այսինքն Ա. Մարտիրոսին Խաչիկի. որոնք սէպ չի բրնէլով[2], եւ չընդունէլով զերկու Ա. Ֆունտադօրնուն, այսինքն Ա. Ուսէփի Ստէխնօյեան եւ Ա. Տօնիկի Սհակի բրօդէսդաձիան, զորն օր իրենց դուս էլէլօվը Գընաճէն, տէսդուլ ցոյց տվիլին[3]. այսու ամենայնիւ Տելիպէրադ կորելու, եւ այս կերպիւը ընդդէմ իրաւանց ճուրումէլու[4] զեղըարքը համարձակիլին։ Ասոր համար կի գտնու Պատուելի վիզիդան, օր Նոյն ճուրումը, որն օր արդարութեամբ է, ու պէտք է օր ըլայ էկէղէցունը, ալվըշ[5] էկէղէցուն դար-*

1 Դատաստանարան, որգոստայ, փորոն։

2 Բանի տեղ չդնել, ոչինչ համարիլ։

3 Ըստ բաւականի ցուցուցին։

4 Տուգանքով պատժել. — վրան դրամական պատիժ դնել։

5 Դարձեալ, Նորէն։

*նայ։ Ու օր դարձըվի, կի պարտաւորցնու ու աս Տէլիպէրադիս ուժօվը կի ճօրօվցնու*[1] *զվերոյասացեալ հինկ խալատաւորը, այսինքն զԱ. էկէղէցբանը, այսինքն զԱ. Ակոբը Ստեփանօյեան. եւ զԱ. Դաւիթը Վարդանի, այսինքն զՊիրօմը, զԱ. Անկսէնտ Օսգէրիչի, եւ զԱ. Գրիգորն Վասլօվցին, եւ վերջապէս զԱ. Մարտիրոսն Խաչիկի Նօյարիուշն, որ զնոյն ճուրումը հետ փնտրած, ու առանց ճամփայ արած խարճէրուն, որն օր* in summa *կանէ* 17. *այսինքն տասնըօխդը մաճըրի* 4 *պան, անպատճառ ունէնան վճարէլու, եւ վար դնէլու։ Որով, վասն մեծ պիտոյութեան եկեղեցունը պի արվի քան ինչ թէզ մէկ հարկեւոր*[2]*, ու անպուր ժամի դուր մը իւր հարկիւոր երկանէրօվը։ — Այսպէս կի գտնու, կի դատէ, կի պարտաւորցնու ու կի ճօրօվցնու վերոյասացեալ սուրբ վիզիդան։*

*Ի ջուգ Սիբվիզն,* 1774*ին,* 19 *Օգոստոսի։„*

*Նախընթաց թղթերուն լուսաւորութիւնն եւ իբրեւ թէ ամբողջացուցիչ մասը կը կացուցանէ յաջորդ՝ պահանջմանց, կամ լաւ եւս գանգատանաց թուղթը. որով գաղափար մը կրնանք կազմել Սիբվիզի այն ատենի յարաբերութեանց վրայ։ Կ'իմանանք միանգամայն թէ որչափ հեղինակութիւն պէտք է որ ունեցած ըլլայ Եղիսաբեթուպոլսոյ եկեղեցական առաջնորդութիւնը՝ Սիբվիզի հասարակութեան վրայ։*

---

1 *Բռնադատել, ստիպել։*

2 *Պարտուպատշաճ, կարգաւորեալ։*

Եկեղեցւոյս տիրացուն շատ խեղճութեան մէջ գտնուելով՝ Եղիսաբեթուպոլսոյ աւագերիցուն, իբրեւ իր առաջնորդին կը գրէ ի մէջ այլոց, թէ ամէն ունեցածը ծախած կերած է. որովհետեւ իրեն ուսուցչի եւ տիրացութեան վճարքը՝ շատոնց ընդունած չէ։ “Հարկ եղաւ, կ՚ըսէ, որ տունս, ձիս եւ ուրիշ բաներս ծախեմ, որ օրական ապրուստս հոգամ։„

Աս ըսելէն ետեւ կը խնդրէ, որ ժողովրդապետը վրան գթալով խրկէ այն 10 փիորինն ու մէկալ 50 փիորինը, զոր խոստացած է, թէ պիտի ընդունի կայսրմէն։ “Տէր Անտոնն առ Աստուած փոխելով, ողորմելի մնացի. որովհետեւ եւ ոչ օրական ապրուստ ունիմ։ Ինչ որ ալ Հրամանքնիդ խոստացաք տէր Անտոնին ձեռօքը, անկէ բան մը տեսած չեմ։ Ունեցածս չունեցածս կերայ. որովհետեւ հոս ամէն բան աւելի թանկ է, քան թէ հոն։ Առաջին հեղ ինծի խոստացաք, որ կայսրմէն յիսուն փիորին պիտի տրուի, եւ երկու ամսուան համար 10 հունգարական փիորին։ Նոյն իսկ աշկերտաց համար՝ ստակ չեն ուզեր տալ, ինչպէս որ կարգադրեցիք։ Եւ ոչ ալ անցած տարուան վճարքս ընդունեցայ։ Ամէն բանէն աւելի անոր կը ցաւիմ, որ տունս փճացուցի, ապրանքս կերայ ու ձիս ծախելով՝ մերկ մնացի։ Ասոր միջոցաւը պիտի կարենայի ապրիլ, ինչպէս ուրիշ աղքատներ կ՚ապրին։ — Կը խնդրեմ, բարեհաճեցէք բանն ա՛յնպէս կարգադրել, որ վերոյիշեալ ստակներն ու քահանային ընդունածին երրորդ մասն ընդունիմ.

որովհետեւ ասիկայ շատ չէ՝ երեք պսակի, եօթը աղայաթաղի, տասը կնունքի, տուն օրհնելչէքներուն եւ տղաքը սորվեցընելուն համար։ Աստուած վկայ է ինծի, որ հաւատարմութեամբ ծառայած եւ միշտ ջանացած եմ որ առիթ չտամ տժգոհութեան։ Վրաս մէկը գանգատ չի կրնար ընել։ Գիշեր ցորեկ ողորմած հոգւոյն քովն էի մինչեւ իր մահը։ Եկեղեցւոյ զգեստեղէնաց հոգ տարած եմ։ Ինչպէս որ զանոնք՝ կահագրով ընդունած եմ՝, անանկ ալ կահագրով տուած եմ։ Ուստի կը խնդրեմ գերյարգելութենէդ, որ գրէք պիրովին, թէ տայ ինծի այն ստակները։

Ան ալ յայտնել կ'ուզեմ Հրամանոցդ, թէ ինչպէս օրին մէկը առտու, երբ վերնատունն ելայ հրեշտակ Տեառնի զանգակը հնչեցընելու. ողորմած հոգի տէր Անտոնին մայրը ժամն եկաւ բոպիկ. եւ ինչ գրքեր որ գտաւ՝ առաւ տարաւ։ Երբ վերնատունէն իջայ, ինք արդէն բակն էր։ Հարցուցի թէ ինչ գրքեր կը տանի. ու տեսայ ի մէջ այլոց մեծ ժամագիրքն ու շարակնոցը։ Ըսի թէ ինչո՞ւ կ'առնու ժամին գրքերը։ Պատասխանեց թէ ինք եկեղեցպանին հետ կը լմընցընէ բանը։ Ասանկով թողուցի։ Բայց եղածն իմացուցի առաջնորդաց։ Ասոր վրայ զիս կանչեցին ու հրամայեցին որ քաղքին ծառային հետ երթամ ու առնում այն մատեանները։ Ըսի, թէ չեմ երթար. որովհետեւ կը վախնամ, որ ինծի բան մը պիտ'որ ըսեն ու ես ալ գէշ բան մը պիտ'որ ընեմ։ Բայց ստիպեցին որ երթամ ծառային հետ. ու թողում որ ինք ուզէ

գրքերը։ Հոն որ հասանք ծառան ուզեց գրքերը։ Այն ատեն քահանային մայրն, ինչ որ եկաւ բերանն՝ ըսաւ, մօրաքոյրն ալ ամէն խայտառակութիւններն ըրաւ։ Եթէ գերյարգելութիւնդ ինծի չի հաւատար, հաւատայ հոն տեղն եղած ուրիշ Հայերուն եւ Հունգարացիներուն։ — Կը յուսայի որ Հրամանքնիդ կու գաք ու ամէն բան աչօք կը տեսնէք։ Կը փափաքէի տուն երթալ. բայց եկեղեցին ու տղաքն առանձինն թողուլ չեմ կրնար։ — Թէ որ ինծի չեն վճարեր, ասկէ կ'երթամ։ — Պատասխան կը սպասեմ։ Աստուածատուր Սիրվիզ գալով, լուր բերաւ թէ, Հրամանքնիդ զինք անոր համար հոս խրկած էք, որ իմ պաշտօնս առնու։ Ստո՞յգ է այս բանս։ Չեմ կարծեր, որ ողորմած հոգին ինծի դէմ բաներ գրած ըլլայ Հրամանոց.„ եւ այլն։

Ահաւասիկ թուղթը։

“Օ. Ե. Յիսուս Քրիստոս. Anno 1774ին յՈւնիսի 1ին Սիբիս Քաղաք։

Գերյարգելի եւ Մեծարելի Տեառն Տեառն Յօհաննէսին Գրէչունի լուսիկեան Արժանաւոր Աւաքէրէցի Հայոց Գումբանիայի. եւ Պատուելի Քահանայիցը սուրբ Աթոռինը. ի տեառնէ սիրով ողջոյն եւ խնդեալ ի տէր։

Մեծաւ խոնարհութեամբ կու խնդրեմ զգերարգելին վասն այս զիմ խնդիրքին թողութիւն շնորհէ։ Աստուած այսպէս սիրելով ըզմեզ օր մեր Հոգեւոր հայրը ար աստուած փոխիլէ. եւ ես մնալով ողորմելի, զէրամ մագար հաշվէ

աւուրական չունիմ. զէ ինչ ալ որ խօսդացիլիս Հըրամանքըդ հետ ռ. Հ. Տէր Անդօնին, նա իքմընա չիմ տեսիլ: Հա թէ խնդրիմ, վերըն աստուծոյ եւ վարը գերարգելութեան, որ մեղ-քընա ըղլիս, զէրամ ես տեսդուլ զէնօվիմ. ու ինչ ալ որ ունացիլիմ նա, կէրիլիմ. զէրամ թանքութիւն էղիլէ: Մինչեւ ասօրայ իհօս ալ թանք է ամէն բանը քանց թէ ի հօտ: Արջի տարպան խօսդացիլիս Հըրամանքըդ, թէ խօն-թիքարէն[1] 50 f. կու գա. եւ բարի օր կու գա. տարը պակասութիւնօվ. եւ 10 մաճրի 2 ամ-սենը. որն որ ասվատուրըն ալ ծարութիւն չի արի: Եւ իրեքում պանը. ռ. Հ. Տէր Անդօնին կելուրէ[2]. եւ ըղտըղոցը հախն ա չուզին ընտօր օր գերարգելութիւնը գըրով թողիլէ, դէ որը ինչ տայ հախ տարեկան. դեր անցաց տարե-կանը հախը չին վիճարիլ: Բայց տեսդուլ ես ըսզլիս կու ցաւիմ, որ ըղտունըս ալ փուստա-ցուցիլիմ ու ան քիչ չարթնա[3] կէրիլիմ, ու ըղձիս ալ ծախիլիմ, եւ մէրկիք մընացիլիմ. որն որ ես մէկ աւուրէն մէկալը ապրիլիմ մեր Քաղ-քին մէջ. ինչպէս որ շատ աղքատ տղաք կապրին, մէկ աղաչին քով եւ մէկալինը: Եւ խնդրիմ ըղգերյարգելութիւնն, որ տէսդուլ անին, որ տան ըսզան վերոյ գրեալ պաները. այսինքն ան 10 մաճրին եւ երեքում պանը: Զէրամ շատ չէ իրեք պսակ դրամ. եւ 7 տըղա թաղէլչէքը

---

1 Կայսր:

2 Եկամուտ:

3 Փոքր վաճառք, ապրանք:

եւ 10 կընունքի. եւ գէրճունիս[1] էտեւ ջուր օրնեացը, Տուն օրնէլըշէք ու ըղտըղաքն օշգօլան[2] սօրվէլըշէքը։ Որն որ ասօնք կի էրէփեան յայտնի, որն որ ես հալալ ծառութիւն արիլիմ ըղո. Հ. Տէր Հայրը. եւ զիմ էտէվանց չի քալի, ինչպէս մէկալ տիրացուին էտէվանց քալիլէ։ Զէ ես ճահդ արիլիմ օր բօնօս[3] չի լըսիմ. ու մինչեւ մահ, քըշեր ու ցօրեկ քօվը էղիլիմ։ Եւ դէ օր չի հաւատայ գերարգելութիւնն, նա հարցմունք անէ դէ հայերուն եւ դէ մաճար ազգին. եւ ատպէս պի հաւատայ հարգելութիւնը։ Եւ ըղժամին քըռչերը գիրի վըրա սէպ արիլիմ եւ ալվը գիրին վըրայէն սէպ տըվիլիմ Պ. Աղ. եկեղեցքանին, որնոր ըրվածը էղիլէ տէր տէրը սէնդ միհայէն եւ 2 սուդայի Աղաչայներ ո. Հ. Տէր Անդօնին թաղմանը էտէվանց զարաս։ Բայց խնդրիմ ըզգերյարգելութիւն օր գըրէ թուղթ Աղ. պիրօվի, օր տա զան պաները, որն որ ինծիկ խօսդացած է. զէրամ ես չիպի քըռքըռված ըլայի ու փուսդացուցած ըլայի ամէն բանէս։ Եւ գըռվուշի[4] 10 մաճրի տանէլըշէքը եւ ըսղիս ալվը տուն բէրէլըշէքը 10 մաճրի տամ նա, ինչ կի մընայ ինծիկ, շաղըշէ հարգելութիւն։

Եւ աս ալ կի հայտնիմ, դէ ինչպէս մէկ արվատու մը ո. Հ. Տէր անտօնի մարը էկիլէ

---

1 Ծնունդ (Քրիստոսի)։ Հունգ. Karácsony բառն է։

2 Դպրոց = Scola։

3 Հունգարերէն է. գանգատ, տժգոհութիւն կը նշանակէ։

4 Կառաց ծախք, վճարք. վալաքերէն է։

*ժամ, երբ ես գընացիլիմ հըրեշդակտեարն քաշիմ. եւ գօրուշը[1] էլլիլիմ ու անկից քաշիլիմ։ Նա ինքը բօբիկ մըտիլէ ու ինչ թըղթեր օր գըտիլէ մէկ մէկի վըրայ, դէ շարական եւ դէ մեծ ժամագիրք էրկուս, եւ ալ ինքը պի գիտէնայ դէ ինչ թուղթ արիլէ։ Եւ ես մինչեւ վար ընչիլիմ գօրուշէն նա, ինքը ուժէ ժամին ազպըրէն[2] դուս էլիլէր։ Եւ ես չուսդ էրթալօվ ու զինքը համնէլօվ կը հարցնում թէ ինչ թուղթ կի տանիս։ Եւ տէսա ըզմեծ ժամագիրքը ու ըզշարականը։ Նա ասեցի թէ ինչ բան ունիս, օր ժամէն կարնուս ըզթըղթերը. զէ ես սէպ պիտոր տամ Աղ. եկեղեցբանի։ Եւ այսբէս ասաց թէ ինքը ճուեապ պիտայ դէ եկեղեցբանի, դէ պիրօվի։ Եւ թօղայ եւ գընացի ու ասէցի մեծաւորացը։ Եւ զիս ձէնէցին դըլնաճը ու խըրկեցին օր ուզիմ ըզթըղթերը. եւ ես ասէցի դէ, ես չիմ էրթա զէրամ պի ասին ինծիկ իք մը եւ ես ալ պի խալտընամ[3] իք մը։ Բայց զիս ճօրօվցուցին օր էրթամ հետ պըրկարին[4] ու թօղում, օր պըրկարը ուզէ. եւ գընացի ու ուզեց պըրկարը։ Եւ էլաւ մարը տէր հօյրը ու ասաց ինչ օր էկաւ բէրնին. եւ հօլքուրըն ալ տէր հօրը, մասխարայ կալաճիք։ Եւ պի հաւատայ հարգելութիւն ըզվըկայները. զէրամ ի հօն պիքաներ էղիլին եւ հայեր ու մաճար*

---

1 *Եկեղեցւոյ վերնատուն։*

2 *Բակ։*

3 *Պակսիլ. պակասութիւն, գէշութիւն մ'ընել։*

4 *Քաղքի ծառայ։*

ասգ։ Եւ ոչ գլխ չի հաւատայ, ոչ զիրենք, հաղէ ըզվըկաները։ Եւ ես բօվիլիմ ըզգերհարգելութիւն դէ ի հօս պի գա, որ իմացած ըլար ալ աղէկ ըզըանը։ Ու ես ալ եկած պիլայի տուն. բայց ըզժամը ու տըղաքը չիմ ուզացիլ թօղէլու։ Եւ դէ որ ինծիկ չի վիճարին նա ես ալ շատ չիմ նըսդի. եւ ըզվալօսը կի բօվիմ քան ինչ թեզօվ հարգելութեան մօտէն։ Եւ աս ալ կի հայտնիմ, դէ ասվատուրը իգալօվ սիբիզը ու ըզայս խապարը բէրիլէ թէ հարգելութիւն անտի զինքը լըըկիլէ, որ ես զիմ պաշտօնէս էլիմ ու ինքը մընա զիմ տեղը. եւ ընդըէք գեղը կի զուրուցէ։ Ինծիկ կուլթֆի դէ[1] ո. հ. Տէր հայրը զիմ սէպը ատուկ ինքը իք մընա բօնօս չի գըրի։ Եւ ասոըայ վալօս[2] կի բօվիմ։

Եւ Այսու կու մնամ փոքըը ծառայ յամենայն ժամ

Անդօն, ո. Հ. ասվատուրի Մէտիշցու. Տիրացու Սիբիզու գուղա Քաղքի։„

## 8.

Մ՚եր պատմութեանն ընթացքին մէջ բաւական առիթ ունեցանք տեսնելու, թէ Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք ինչչափ դժուարութիւններով, մտատանջութիւններով, դրամական զոհողութիւններով՝ սաստիկ ընդդիմութեանց ու հակառակութեանց յաղթելով՝ իբր 125.000 Փիորին տալով, գնեցին տէրու-

---

1 Այս ինքն. կու թուի թէ։

2 Հունգ. բառ է. պատասխան կը նշանակէ։

թեան գանձէն, ոչ միայն հին Պաշտպալով քաղաքը՝ Արափիեան կոչուած դղեակով, այլ նաեւ անոր շրջակայից չորս գեղերը — Հունտորփը, Էրնեան, Ռուտայլն եւ Ցւյփալուն. անոնց վերաբերած գետերով, գետակներով, դաշտերով, ձկնարաններով եւ այլն. տալով անոնց համար, — ինչպէս Մարիամ Թերեզիայի 1758 Օգոստ. 31ին արտօնագրէն տեսանք — 60.000 ֆիորին իրական դրամ։ Մէկալ 65.000 ֆիորինը տրուեցաւ երկիրներն ստանալու համար եղած այլ եւ այլ ծախքերուն։ (Տես Հայք յԵղիսաբեթուպոլիս, Հտր. Ա. էջ 130—188։)

Թէպէտ եղան ետքէն այս գնման դէմ բողոքներ, առ տէրութեան ժողովն եւ առ նոյն ինքն կայսրուհին. սակայն այն միջոցին, ազգայինք ասոր առջեւն ալ առին, այնու՝ որ բողոքն յետս կոչում եղաւ պատգամաւորաց ժողովին մէջ։

Հոս համառօտիւ բաժնիս ծանօթ բաներ են ընթերցողաց։

Ա՛ս վիճակի մէջ մնաց բանը՝ մինչեւ անցեա՛լ դարուն երկրորդ կիսուն առաջին մասն, այսինքն մինչեւ 1771։ — Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք հանդարտութեամբ կը վայելէին՝ ըստ մասին գնած ու ըստ մասին իրենց պարգեւտրուած կալուածատէրութիւնը. երբ 1772ին նորէն երեւան ելաւ Պէգլէն գերդաստանն. եւ բողոքմամբ մը, — զոր մատոյց Գլուժի աւագաժողովոյն — չէ՛ թէ միայն տակն ու վրայ ըրաւ

ամէն բան, հապա նաեւ վտանգի մէջ դրաւ Եղիսաբեթուպոլսեցւոց այնչափ քրտամբ ու զոհողութիւններով ստացած երկիրները՝ ցմիշտ կորսնցընելու։

Խնդիրն անկից սկսաւ, որ Պէգլէնեան գերդաստանին ականջը հասաւ մէկ քանի դժգոհ ու ծոյլ աւատականէ, թէ Հայք ընդունած երկիրներուն հող չեն տանիր. թէ խստութեամբ կը վարուին աւատառուաց հետ. թէ զանոնք վերջին աստիճանի կը ծեծեն ու կը տանջեն. որուն հետեւութեամբ՝ շատերն անկէ փախուստ տալու հարկադրեցան. եւ այլն. եւ այլն։

Աս գանգատները Պէգլէնեանք առիթ առնելով ու յօգուտ գործածել ուզելով, յանուն բոլոր գերդաստանի պաշտօնական գրութեամբ մ'իմացուցին Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան՝ թէ խնդրոյ տակ եղած Պաշպալովի կամ Աբաֆիեան ամբողջ կալուածատէրութիւնը՝ բարձրագոյն ատենին որոշմամբն՝ երկու անգամ իրենց (այսինքն Պէգլէնեան գերդաստանին) տրուեցաւ։ Բայց հասարակութեան կողմանէ առ կայսր բողոք եղաւ։ Հիմակ ինքնակալին որոշումէն կը կախուի այս երկրակալութեան որու՛ն ձեռքը մնալը։ “Ապահով ենք, կ'աւելցընէ ամբաստանող գերդաստանը, թէ վեհափառ կայսրն արդարութիւն պիտի ընէ եւ րոպէ մը յառաջ մեր ձեռքը պիտի յանձնէ նոյն երկիրները։„

Ասոնք լսելէն ետեւ, այսպէս կը շարունակէ բողոքագիրը. “Անոր համար այնպէս

*վարուի հայ հասարակութիւնն այն երկիրներուն հետ եւ ա՛յնպէս հոգայ ամէն բան, որ երբ այն կալուածատէրութիւնը մեր ձեռքն անցնի, ամէն վնաս, ինչ որ անոնց պատահեցաւ հասարակութեան անհոգութեանը պատճառաւ, իրմէն պիտի պահանջուի։ Ու Պէգլէնեան գերդաստանը զանց պիտի չընէ ամէն բան տեղը բերել տալու եւ պատշաճ պահանջմունքներն ընելու։„*

*Երբ — 1772 յունիս 11ին — բողոքագիրը կարդացուեցաւ, գլխաւոր դատաւորին, Աւքսենտիոս Խիգուցի եւ իրեն քով գտնուած խորհրդականներուն առջեւը, Խիգուց պատասխանեց հունգարերէն լեզուաւ՝ թէ “Կը լսեմ ու կը հասկընամ ներկայ գտնուող բոլոր քաղաքաբաշխութեանը հետ մէկ տեղ։„*

*Աս գրութեամբ վերանորոգուեցաւ պատերազմը, որ բաւական ժամանակ աւելի մոխրոյ տակ ծածկուած, քան թէ դադրած էր։*

*Պէգլէնեանք՝ Դրանսիլուանիոյ առաջին գերդաստաններէն ըլլալով եւ ունենալով՝ մանաւանդ այս միջոցին՝ իրենց մէջը երեւելիներ, որոնք տէրութեան մեծամեծ պաշտօններն իրենց ձեռքն ունէին, դիւրին էր իրենց կողմը ձգել պաշտօնեաներն, ու անոնց ձեռօք զկայսրուհին։ Անոր համար նորանոր աղերսագիրներով ու աղաչանքներով անհանգիստ կ'ընէին արքունիքն, որ վերջին ատեններն՝ իրենց որոշուած երկիրները նաեւ կայսրուհին հաստատէ։ Մեծ ոյժ ունէր մանաւանդ, այս միջոցին, Պաւղոս Պէգլէնի Պէգլէն կոմսն, որ կայսրուհւոյն ներքին*

իրական խորհրդականը, Տրանսիլուանիոյ կառավարութեան անդամ ու տէրութեան բարձրագոյն ատենին Նախագահն էր։

Յաջող քայլերը զիրենք այնչափի բերին, որ Հայք սկսան վախնալ, թէ ասոր վերջն ան պիտի ըլլայ, որ կալուածատէրութիւնը ձեռուըներնէն ցմիշտ պիտի ելլէ. մանաւանդ որ լուր ալ առած էին, թէ արդէն Պէդլէնեանք անոնցմէ երկու գեղ, այսինքն Ույֆալուն եւ Ռուտայլը՝ գրեթէ ընդունած են։

Աս բաներուն առջեւն առնելու համար ուրիշ ճամբայ չկար, բայց եթէ շուտ մը ընդհանուր ժողովք գումարելով՝ իրենց վաղեմի սովորութեան համեմատ Մարիամ Թերեզիային պատգամաւորութիւն մը խրկել, որ իրեն ոտքն իյնալով՝ յիշեցընէ թէ մշտնջենապէս գնած երկիրներուն մէջէն երկու մեծկակ գեղ դուրս իյնալով՝ հասարակութեան չէ թէ միայն մեծ ցաւ կը պատճառէ, հապա նաեւ մեծ անիրաւութիւն կ'ըլլայ։ — Լիուլի քուէով պատգամաւոր ընտրուեցաւ Ա. Վարդան ո. հ. Թէոդորոսի Չիգիի որդին, որ արդէն Վիեննա գտնուող Ա. Լուսիկ Ղազարին հետ ձեռք ձեռքի տալով աշխատին որ 1758ին գնած երկիրներն ամբողջ ու անվնաս մնան։ Հասարակութիւնն երեսփոխաններուն խոստացաւ ամսէ ամիս հարիւրական փիորին եւ հագուստի մը համար՝ բարակ չուխայ։ Մէկալ պայմանները մնացին անոնք՝ որոնք տրուած էին 1758ին Վիեննա գացող պատգամաւորաց։ Ասոնց քով վարձուե-

ցաւ ծառայ մըն ալ — Թէոդորոս Գադըրճի — որ քովերնին կենայ եւ ամէն բանի մէջ իրենց ծառայութիւն ընէ։ Ասոր ալ տրուեցաւ վարձք ամսէ ամիս 12 ֆիորին եւ 50 քրայցէր։

Աս ըլլալէն ետեւ Աղ. Վարդան Ճամբայ ելաւ դէպ ի Վիեննա։

Ահա որոշմունքն. ըստ արձանագրութեան։

"Աստուծոյ ողորմութեամբն 1776 մարտի 15. Էլեզարէդան։ Խորհուրդ անէլով պատուելի Հասարակութիւնը ի միասին վասն Տօմինիումին[1] երկու գեղին համար, այսինքն Նօվուլինը եւ րօնտոլայինը, զորն որ այս օրերուս լըսելով Պ. Հասարակըն դէյ Պէգլէնին ֆամիլեան հաշվէյ ուժէյ[2] գընտըված ըլլայ պէջը, Մեր գըթած մօյրըն Մարեայ Թէրէզիային դիմաց զվերոյ հիշեալ երկու գեղըն։ Եւ մեզի մեծ ցաւ էրէվնալով դէյ jure Perenali[3] գընած Տօմինիումին այս էրկու գեղըն դուս կ'ըննի. այլ եւ այլ պատճառնու համար ալ ամենուս կամօքըն ընտրեցինք զՊ. Աղաչայ Վարդանը ողորմած հոգի Աղաչայ դօտերի ջիգի, որ երթայ պէջըն գվայ Տէբուդադուս[4] ու այս էրկու գեղին համար աշխատի որքան կարելի ըլլա նա։ Եւ թէ օր հընար կենայ մեր գըթած Մօյրը դիմաց լալով գընտըվի որ

---

1 Երկիր, կալուածատէրութիւն։

2 Երկու բառը՝ ետեւէ ետեւ կը "նշանակէ՝ գրեթէ, արդէն։

3 Ասանկ գրուած է. անշուշտ perennali ըլլալու է. կը նշանակէ մշտնջենական իրաւամբ։

4 Երկու բառն ալ լատ. է. կը նշանակէ՝ իբրեւ երեսփոխան։

ասօր արաջ ի տարույն, այսինքն 1758ին գընած Տօմինիումը մընայ ինդաքդէյ[1]։ Այսու ասորվան օրը Պ. Ա. Վարդանը բուրջէս անէլօվ[2] դէպի Պէջը եւ Պ. Ա. Լուսիկ, ողորմած հօգի Աղաչայ Խազարի, գվայ Տէբուդադուս խրկած ուժէ հօն ըլալով պի աշխատին, որքան օր ուժը տանի սրտանց։ Որոնց Պ. Հասարակութիւնը իրենց հրամանոցը աշխատանաց համար խօսդացաւ, մէկ աղաչի, ամսեն, հարուր, այսինքն 100 մաճրի եւ ըրինտ հագըսդի բարակ չուխայ հախ։ NB. Ինչ բունգդեր որ 1758ին Պ. Աղաչայ Տէբուդադուշնուն օր գրօվ տրված էղիլէյ Պ. Հասարակըն, նոյն բունգդերն ունենան այս նոր խրկած Ա. Տէբուդադուշներն ալ անխախդ բըռնէլու։ Որ բանը որ շնորհաւոր ըլլայ. եւ աստուած պարգէվէյ օր սըրտերօվըս քալին. եւ բարօվ էրթան ու այլվի բարօվ գան. ամէն։

Վան տղի, օր էրթայ Ա. Տէբուդադուշնուն հետ Պէջըն. գիտացվի օր վարձեց Պ. Հասարակըն ըզդօտէրըն Ակոբի գադըրվի, օր ունէնայ Աղ. Տէբուդադուշնուն սրտանց եւ հալալ ծարութիւն ունէլու։ Որոյ կտրեց Պ. Հասարակըն հախ, իրեն ծառայութեան համար, ամսեն Rf.[3] 12.50։„

Բայց Եղիսաբեթուպօլսեցիք շատ վախնալու բան չունէին. որովհետեւ ինչպէս յարա-

---

1 Ամբողջ, անվթար։

2 Անտարակոյս, ճամբայ ելլելով — պիտի նշանակէ ։

3 Rf. գրերը Florenus Rhenensis = ռենական ֆիօրին-ին — սկզբնական գրերն են։

բերութիւններէն կ'երեւայ, թէ տէրութիւնն ու թէ կայսրուհին իրենց կողմն էր։ Ուստի եւ կէս մը ասոր օգնութեամբն ու կէս մը երեսփոխանաց ճարտարութեամբն ու գործունէութեամբն՝ իրը կատարելապէս յաջողեցաւ այնպիսի կերպով մը, որ Պէգլէնեան գերդաստանին եւ Տրանսիլուանիոյ աւագաժողովոյն բողոքն ու պատճառներն նկատողութեան չառնուեցան արքունեաց առջեւ. եւ ասոր հետեւութեամբն՝ երկիրներն անխախտ ու անվթար մնացին Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան ձեռքն, ինչպէս անկէ յառաջ էին։

*

Երբ քաղաքաբաշխութիւնը կը կռուէր մէկ դիէն Պէգլէնեանց հետ երկրակալութեան համար, մէկալ դիէն իր զօրութիւնն ու ազդեցութիւնը չկորսնցընելու եւ իր հեղինակութիւնն աւելի եւս յայտնի ընելու համար չափազանց ու յանդուգն քայլեր սկսաւ ընել նորանոր բաներ վաստըկելու։ Զասոնք՝ տարեգրոց նայելով, իւր ճարտարութեանն ու իր անձինքներու յաջողակութեանը շնորհիւ, գլուխ ալ տարաւ։

Շարունակ աղերսանքներ կը գրէր. մէյ մը վեհապետին, մէյ մը արքունեաց ատենադպրին, մէյ մը պաշտօնէի խորհրդականին։ — Մէյ մ'ալ ըստ յարմարութեան՝ պատգամաւորներ կը ղրկէր, մարդիկ կը վաստըկցընէր, պարգեւներ կը բաշխէր. ու եթէ հարկը պահանջէր՝

ըստ պարագայից, Նաեւ կաշառք կը կերցընէր, որպէս զի գործքը յաջողի։

Այն միջոցին, որ Պէգլէնեան գերդաստանը կը բողոքէր իր երկիրներուն վերաստացմանը համար առ տէրութեան ժողովն, առ կայսր եւ առ պաշտօնեայս, որ Եղիսաբեթուպոլսոյ Հայերն՝ իրենց դարձընեն այն գերդաստանական երկիրները՝ Եղիսաբեթուպոլսեցիք — բան մը չեղածի պէս — կը խնդրէին տէրութենէն 1. Թէ որովհետեւ երկրատէր, օրինաւոր հասարակութիւն, կարգաւորեալ քաղաք են ու տուրք կու տան, հետեւաբար ուրիշ ազատ երկրատէրներուն պէս, իրենք ալ տուրք տալէն ազատ ըլլան։ Ասոր աշխատած ատեն, անդիէն աղերսանօք կը խնդրէին կայսրմէն 2. Որ իրենց կից եղած Հէվէշ ընդարձակ դաշտավայրը քաղքին յանձնուի. որովհետեւ ըստ բնութեան՝ Եղիսաբեթուպոլսոյ կը վերաբերի։ — Բաց ասկէ՝ իբրեւ թէ իրենց ապագան ապահովցընելու համար՝ կը խնդրէին 3. Իրենց արտօնութեանցը վերանորոգութիւնը՝ ազատ ատենակալութիւն. եւ այլն։

Այս ժամանակներս էր, որ Յովսէփ Բ. ամբողջ պետութեան մէջ ուղեգնացութիւն մ'ընելով՝ Եղիսաբեթուպոլիս ալ եկաւ։ Հասարակութիւնը՝ խնդրած ամէն բաներն աղերսագրով մը կայսեր առջեւ դրաւ։ Եւ որպէս զի խնդրածներն աւելի եւս ապահովութեամբ ձեռք ձգէ, քանի մ'աղերսագիր գրեց արքու-

նեաց ատենադպրին, խնդրելով անոնց մէջ իր պաշտպանութիւնը։

Կարեւոր կը համարիմ, ասոր նկատմամբ գրուած նամակներուն եւ աղերսագիրներուն թարգմանութիւնն՝ ընթերցողաց ներկայացընել։ — Առաջինով պաշտօնէին առջեւը դնելէն ետեւ թէ վաղեմի առանձնաշնորհութեանց համեմատ ազատ երկրատէրութեան համար երբեք տուրք չէին տար, եւ թէ այսօր ալ չեն տար ամէն այսպիսի ազատ երկրատէրութիւնները, — կը խնդրէ իր բարեխօսութիւնն ու պաշտպանութիւնը։ — Նամակը յաջորդն է։

Ամենապատիւ Տէր.

«Մեր երկարատեւ եւ հաւատարիմ ծառայութեանցը համար, բարեհաճեցաւ ի Տէր հանգուցեալ Տիկինն ու իշխանուհին, Մարիամ Թերեզիա 1758ին Տրանսիլուանիայի՝ ըստ մասին, Ֆէհըր՝ եւ ըստ մասին Գիւգիւլլէօ գաւառին վերաբերած Պաշտպալովի երկրատէրութիւնը՝ մեր հասարակութեանը պարգեւել, մշտատեւ եւ աննահանջելի կերպով։ — Անձուկ մտօք առնուած Պաշտպալովին սահմանները մեծաւ մասամբ — ինչպէս պատճէնը կը կարգադրէ — մեր մէջը բաժնեցինք. եւ արքունական տուրքն ըստ գլխոյ կը վճարենք։ Իսկ ազատ ցորենի դաշտերն, արօտները, խոտի դաշտերն եւ այգեստանները, որոնք Պաշտպալովէն հոս գաղթած աւատականներէն ու ձրի ծառայողներէն մնացած են, մինչեւ հիմակ՝ երկրատէրու-

թեան աւատականներուն եւ վարձկաններուն ձեռօք կը բանեցընենք։ Աս ետքիններուն եւ կամ անոնցմէ եկած եկամտին համար տուրք չվճարեցինք. հապա այն եկամուտներէն քաղաքին հասարակութիւնը, պիրովը, մեր պաշտօնատէրներն ու ծառաները վճարեցինք։ Բաց ասկէ՝ անոնցմէ տուինք մեծափառ արքունեաց համար երբեմն պէտք եղած դրամական օգնութիւնները։

Պատահեցաւ, որ 1780ին Գիւգիւլլէօ գաւառին վերատեսուչը, Լատիսլաոս Պօլո, չենք գիտեր ինչ պատճառի համար, արքունական ազատ՝ ժառանգական երկիրներուն, արօտներուն եւ այգեստաններուն ցանկն առաւ. եւ անոնց համար տուրք խնդրեց։ Աս մինչեւ հիմակ անլուր բանն որ իմացանք՝ անմիջապէս Դրանսիլուանիոյ կառավարութեան ու ետքէն մեծափառ կայսեր գրեցինք, որ ասոր դէմ ճար մը հոգան։ Բայց մինչեւ հիմակ հետեւանք մը չտեսանք։ Քանի մ՚օր յառաջ աս նիւթիս համար վերին կառավարութենէն տեղեկութիւն մը գնաց արքունեաց։ Մենք ուշ իմանալով կառավարութեան տեղեկութիւններուն վեր երթալը՝ հազիւ հիմակ կրցանք գրել առ վեհափառ կայսր։ Ասոր մէջ խոնարհաբար կը խնդրենք, թէ որովհետեւ մեր երկրատէրութիւնն արտօնագրով՝ ազատութեամբ ունինք ու կը վայելենք. — եւ որովհետեւ մէկալ կողմանէ Դրանսիլուանիոյ ուրիշ քաղաքներն ալ՝ այս տեսակ երկրակալութեանց համար տուրք չեն վճարեր — թէպէտ իրենց ստացուածքէն

մարդ գլուխ — ինչպէս մենք — տուրք կը վճարեն, — անոր համար բարեհաճի մեր վեհափառ Տէրն, զմեզ ալ մինչեւ հիմակ վայելած ազատութեանց մէջ գթածաբար թող տալու եւ ապահարկութեան մէջ պահելու։

Շատ հիմնովին պատճառներ տուած ենք մեր աղերսագրին մէջ։ Բայց գիտնալով որ այսպէս ալ, այնպէս ալ մեծապատուութեանդ ձեռքերէն պիտի անցնին այն թղթերն, անոր համար զՀրամանքդ անոնց ստորագրութեամբն անհանգիստ չենք ըներ։ Սակայն խոնարհաբար կը խնդրենք, որ Ձեր բնածին գթութեամբը վեհափառ Տիրոջ մատուցած աղերսանքին մէջ նշանակած պատճառները նկատելով՝ իր սիրտը վաստըկիք, որ ուրիշ քաղաքներուն օրինակին համեմատ մենք ալ մեր ժառանգական ու ազատ երկիրները խաղաղութեամբ առանց որեւէ տեսակ տուրքի — ինչպէս մինչեւ հիմակ վայելեցինք, անանկ ասկից ետքն ալ — վայելենք, եւ անոնցմէ տարուէ տարի եկած նուազ եկամուտներն ազատաբար ընդունինք։ — Յանձնելով զմեզ մեծապատուութեանդ գթութեանը՝ ենք ամենայն մեծարանօք խոնարհ ծառայք — Դրանսիլուանիոյ Եղիսաբեթուպոլիս քաղքին հասարակութիւնն ու ծերակոյտը։„

Երկրորդ նամակն — որուն մէջ նոյնպէս ատենադպրին պաշտպանութիւնը կը խնդրուի յաջորդն է.

"Ամենապատիւ կոմս, արքունեաց ատենադպիր. Տէր ու պաշտպան մեր։

Մեզի այցելութիւն ընող վեհափառ կայսեր եւ ժառանգական թագաւորին թէ՛ մեր արտօնութիւնները, եւ թէ՛ մեր տուչութեան թղթերը ներկայացնելով՝ անոնց վերանորոգութիւնը խնդրեցինք։ Կ'աղաչենք, ամենապատիւ Տէր — որովհետեւ զանոնք ասկէ Վիեննա խրկեց իր մեծափառութիւնը — երբ մեր քաղքին խնդիրները յառաջ գան, բարեհաճիք Ձեր զօրաւոր միջնորդութեամբը մեր խնդիրքը յաջողցնելու։ Մենք ալ պիտի չդադրինք բոլոր հասարակութեան հետ մեծապատուութեանդ երջանիկ կենացը համար աղօթելու. որ ենք ու կ'ուզենք ըլլալու ամենապատիւ Տէրութեանդ խոնարհ ծառայք. — Եղիսաբեթուպոլսոյ դատաւորը, խորհրդականք, երդուեալք եւ բոլոր հասարակութիւնը։„

Երրորդ նամակն աւելի ընդարձակ է։ Ասոր մէջ Հայոց վիճակը՝ պատմական կերպով մը պաշտօնէին առջեւը կը դրուի ու իր մասնաւոր պաշտպանութիւնը կը խնդրուի։ — Ահա նամակը։

“Ամենապատիւ կոմս, գթած Տէր ու պաշտպան։

Անցած դարուն դէպ ի վերջերը, Դրանսիլուանիոյ այն ատենի բարեյիշատակ իշխանին եւ տէրութեան կարգաց մասնաւոր հրաւիրելովն ու յորդորելովը, Մոլտավիայէն եւ անոր շրջակայ երկիրներէն մեր ամուսիններովը, տղոցմովն ու քահանաներովը մէկտեղ՝ խմբովին Դրանսիլուանիա անցանք. եւ հոս ի սկզբան ճուրճով՝

յետոյ Բէդէլէի եւ Պիստրիցի, ետքէն Կերլա ու
Պաշտպալով կոչուած, ըստ մասին ազատ արքու-
նական երկրին (pura fiscalitas) եւ ըստ մասին
Միքայէլ Ապաֆի իշխանին յատուկ երկիրներուն
մէջ տեղաւորելով՝ բարեյիշատակ Կարոլոս Զ.
կայսեր մասնաւոր գթութեամբը՝ չէ թէ միայն
Կերլայի, այլ նաեւ մեզի Պաշպալովցւոց այն-
պիսի առանձնաշնորհութիւններ տրուեցան, որ
Տրանսիլուանիոյ մէջ յատկացեալ վաճառա-
կանութեան քաղաք մը կարենանք կանգնել.
որպէս զի հոն մեզի եւ մեր յաջորդացը հան-
գստեանը, հասարակաց յառաջացմանն եւ յա-
նուանէ վաճառականութեան լաւ կերպով կան-
գնուելուն եւ շարունակութեանն աշխատինք։
Աս վախճանաւ բարեյիշատակ Մարիամ Թերեզիա
կայսրուհին եւ Հունգարիոյ ժառանգական թա-
գուհին 1758ին արքունական իշխանութեան
լիութեան զօրութեամբը՝ շնորհեց մեզի եւ մեր
յաջորդներուն Գիւգիւլէօգաւառին մէջ, Պաշտ-
պալով կոչուած տեղւոյն վրայ այնպիսի տեղա-
կան արտօնութիւն եւ ազատ քաղաքային իրաւ-
ասութիւն (jurisdictio), որ ունենանք մենք ալ
իբրեւ կաթոլիկ, առանձին, ազատ եւ վաճա-
ռական քաղաք մը, քաղաքային լիուլի իրաւ-
աբանութեամբ, ազատութեամբ եւ ամէն քա-
ղաքային իրաւունքներով. եւ անուանուի մեր
քաղաքն Եղիսաբեթուպոլիս եւ մեր կնքոյն մէջ
ըլլայ Ս. Եղիսաբեթի պատկերը։ Բաց ասկէ՝
որովհետեւ քաղքին, տեղւոյս քահանայից,
այրիներուն, որբերուն եւ աղքատներուն պահ-

պանութեանը, եւ հասարակաց շինութեանց կանգնուելուն եւ պահպանութեանը համար հարկ էր որ հոգացուին հիմնարկութիւններ՝ անոր համար թէ՛ բուն Եղիսաբեթուպոլիս քաղաքն ու թէ՛ միանգամայն իրեն շրջակայից չորս գեղերը՝ յիշեալ վեհափառ Տիկնոջ գթութենէն մշտնջենապէս գնեցինք մեր պատրաստ ստակովը. որ ըլլայ քաղքին հասարակութեանը համար իբրեւ հիմնարկութիւն (pro publico oppidi fundo)։ Ասոր ալ՝ իբրեւ քաղաքացի, ստացանք մշտնջենական տուչութիւն. եւ հրաման շինելու — եւ կանգնեցինք ալ մեր քաղաքը։ Թէպէտ մեր երկրին օրինացը համեմատ այսպիսի հասարակութեանց արտօնութիւն եւ տուչութեան հաստատութիւնն անհրաժեշտ հարկաւոր չէ. բայց որովհետեւ երկրակալութիւններն, որոնք տրուեցան քաղքին իբրեւ օգնութիւն ու նպաստ, այն միջոցին խնդրոյ տակ էին — որ ետքէն անկէ ազատեցան, ճշմարիտ փոփոխութեամբ — անոր համար այս կալուածներու նկատմամբ՝ մեզի այցելութիւն ընող Վեհափառ կայսեր ոտքն իյնալով՝ իրեն մատուցած աղաչանաց թղթին մէջ խնդրեցինք մեր աւանձնաշնորհութեանց եւ տուչութիւններուն (donatio) վերահաստատութիւնը։ Ընդունեցաւ ալ մեր աղերսագիրն ու Վիեննա խաւրեց։

Արդ՝ խոնարհութեամբ կ՚աղաչենք մեծապատուութեանդ. որ բարեհաճիք մեր խնդիրը Ձեր պաշտպանութեանը թեւերուն ներքեւն առնելով՝ մեզի օգնական ըլլալ։ Մեզի, որ

Հազիւ 50 տարի է, որ դաշտավայրի մը վրայ գեղեցիկ քարաշէն քաղաք մը կանգնեցինք. քանի մը եկեղեցի եւ մատուռ շինեցինք. եւ անոնց մէջ զԱստուած պատուող եւ Թագաւորին ու ժողովրդեան համար աղօթող, թէ՛ աշխարհական ու թէ՛ կրօնաւոր եկեղեցականներ դրինք. զանոնք մեր ծախքովը զարդարեցինք. եւ քրիստոնէական ջերմեռանդութիւնն եւ բարի օրինակ տուող բարոյականութիւն մտցուցինք. ի զարմացումն՝ մեր մէջը բնակող բողոքականներուն եւ ուրիշներուն: Ասկէ զատ վաճառականութիւնն այնչափ բարձրացուցինք, որ միայն երեսնեակէն տարուէ տարի, արքունական եկամուտները . . .[1] ռենական փիորինով աճեցուցինք: Տէրութեան մէջ ուր ալ քալենք, երթանք, մէկու մը ծանրաբեռնութիւն չենք ըլլար. ամէն տեղ՝ մեր իրական դրամովը կը գնենք ու կ'ապրինք. — որ ենք մեծապատութեանդ

ծառայք եւ աղախնայք.

Եղիսաբեթուպոլսոյ գլխաւոր դատաւորը, երդուեալք, ծերք եւ բոլոր հասարակութիւնը:„

Ան ստոյգ է, ու ձեռուընիս եղած արձանագրութիւններէն յայտնապէս կրնանք հետեւցընել, թէ Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք ծանր յարաբերութիւններու մէջ մտած էին:

1 Դրամոց գումարը դնելու համար, պարապ թողուած միջոցն՝ ինչպէս կ'երեւայ — ընդօրինակութեան մէջ անցուած չէ:

Իրենց սիրտը վշտացած էր չէ՛ թէ միայն անոր համար, որ երկիրներուն ստացմամբը զիրենք շարունակ անհանգիստ կ'ընէին. չէ՛ թէ միայն անոր համար որ իրենց ազատ ու արտօնացեալ երկիրներէն կառավարութիւնը տուրք կը պահանջէր՝ հապա նաեւ անոր համար, որ տէրութիւնը զազգն իբրեւ այդրէնածին չէր ճանչնար. ուստի եւ իր զաւկըները պետութեան բարձրագոյն պաշտօններու մէջ չէր առնուր: Քաղաքն աս ամէնը նկատելով ու իրերը կշռելով, որոշած էր նոր քայլեր ընելու եւ նոր բաներու ձեռք զարնելու:

Եւ որպէս զի ինք զինք ամէն բանէն յառաջ նախ ապահովցընէ՝ ուզեց իր վաղեմի արտօնութեանց ու առանձնաշնորհութեանց վերանորոգութիւնը: Ուզեց որ տէրութեան աւագանւոյն մէջ ազգայինք ալ մտնեն իբրեւ խորհրդական: — Որոշածն յառաջ տանելու համար խրկեց պատգամաւորութիւն մը ի Վիեննա՝ յանձին Գրիգորի Խսիգուցեան, Լուսիկի Ղազարեանց եւ Սահակի Գիշեանց: Ասոնք Վիեննա, Յովսէփ Բ. Կայսեր ներկայացան եւ քառորդի մը չափ անոր հետ խօսեցան. — սրտերնին առջեւը բացին, գանգատնին ըրին, եւ ցաւերնին յայտնեցին:

Աս ունկնդրութեան վրայ — ինչպէս ժամանակակից տարեգիրները մեզի կը ծանուցանեն — զատ զատ ու լիուլի տեղեկութիւն կու տան Եղիսաբեթուպոլսոյ քաղաքապետին: Եւ կը յայտնեն թէ յոյս ունին, որ կայսրը՝ հայ ազ-

գին Հայրութիւն պիտի ցուցընէ. ու օտարական-
ներուն՝ Հայոց դէմ ցուցըցած նախապաշարում-
ներէն զիրենք պիտի ազատէ։ Բայց ասկէ զԵղի-
սաբեթուպոլսեցիս՝ իբրեւ այդրէնածին պիտի
ընդունի, պաշտպանէ. եւ այլն։

Գրիգոր Խիգուցեան 1781, Հոկտ. 12ին
Վիեննայէն գրած տեղեկութեանցը մէջ՝ կը
ծանուցանէ քաղաքապետին ու ծերակուտին, ի
մէջ այլոց, թէ փոքրիկ ազգին ողորմելի վիճակը
կայսեր աչքերը դնելով՝ իր պաշտպանութիւնը
խնդրեցին։ “Մեծ յոյս ունինք, կ'աւելցընէ, որ
կայսրը մեր ազգին Հայրութիւն պիտի ցուցընէ,
եւ զմեզ Գրանսիլուանիոյ մէջ գտնուած շրջա-
կայ թշնամի ազգերուն նախապաշարեալ գործ-
քերէն ու հալածանքներէն պիտի պահպանէ։
Ասկից զատ, մեզի՝ իբրեւ այդրէնածին մարդիկ-
ներու օգնութիւն պիտի մատուցանէ։ Կայսրը
քառորդէ մ'աւելի մեր խնդիրքը լսելով եւ
ամէն տեսակ հարցմունքներ ընելով, մեզի շատ
գթութիւն ցուցուց. եւ ըսաւ, թէ ինչպէս որ
Մէտիաշցիք, այնպէս ալ դուք գործակալի մ'առ-
ջեւ հպատակութեան երդում պիտի ընէք։
— Կարծեմ, աղաչայ Լուսիկ եւ աղաչայ Սա-
հակ՝ աւելի ընդարձակ կերպով պիտի ծանու-
ցանեն Ձեզի թէ ինչու համար Պոյանովիչի
ձեռօք — զոր կայսեր ներկայացուցինք —
ընել տուինք ամէն բաները։ Մենք Էնյէտիի
ձեռօք այս բաներու ամենեւին չէինք կրնար
հասնիլ։ Փառք Աստուծոյ, որ այսպէս հանդի-
պեցաւ։ Եթէ աղաչայ Լուսիկն ու Սահակը

չըլլային, Պոլյանովիչ այս բանը յանձն չէր առնուր: Գրեցէք Էնյէտիին, որ ամենեւին բանի մը չխառնուի: Կը յուսանք Աստուծով թէ աղէկ վերջ պիտ'որ ունենայ մեր գործքը: Մենք մեր սովորական աղօթքովը պիտի չմոռնանք ամէն օր խնդրելու, որ Աստուած իր ողորմութիւնը մեր վրայ խրկէ":

Ահա նամակին բնագիրը:

"Ամէնայ պատվէյլի Աղաչայ Պիրով: Նաեւ պատվէյլի Աղաչաներ:

Մինք մէյկալ էյրէկ, որպէս պատ. Աղաչայ լուսիկը խազարեանց, պատ. Աղաչայ սըհակը գիշեանց եւ՝ ես ունաձանք շնըհըք մեր գըղած հօիրըն ըլտգըն ըննէյլու. եւ մեր փըքրիկ հաւ Ազգին ողորմէյլի circumstantioները[1] առաջ տալով եուր Protectian[2] խընդրէյլու: Մեծ հուեւս[3] ունինք Աստուծոյով որ հաերութիւնն ծըձնու մեր ազգին, նաեւ ամէյնաեն աս տէյ-ղացի տուշման Ազգէյրուն Praejudicios-Factia-նուն եւ Persecutiaնուն[4] պահպանէյ: Նաեւ զմեզ, ինչպէյս հատուկ էյրկըրի մարդիգ[5], ի միածին Manuteneat[6] անէյ: Վէյրըյ հիշալ խօնթիքարը Փըրդար սախդէյն ավէյլի, թէյ

---

1 Ցարաբերութիւն, վիճակ, պարագայ:

2 Պաշտպանութիւն, խնամակալութիւն:

3 Այսինքն՝ յոյս: Առաջինկայ դրութեան մէջ, ե գիրը՝ յ-ի զօրութիւն ու արտաբերութիւն ունի:

4 Այսինքն. թշնամի ազգերուն վնասակար, անիրաւ, նախապաշարեալ գործքերէն ու հալածանքներէն պահպանէ:

5 Երկրի մարդ. այդրէնածին կը նշանակէ:

6 Պահպանել, հոգ տանիլ, պաշտպանել:

մեր խնդիրքը լսէյլով եւ թէ զաես կողմանէյ շատ սոե փընտրուքներ[1] անէյլով, գրդութիւնս ձուձիլէ մէյզիկ, ասէյլով. որպէյս Medias ձիքը, ամպէյս դուքալ Commissari[2] դիմաց, այսինքն թէյ ըզHomagium մը[3] վար պի դնիք, ըզJustitian[4]: — Որպէս Պ. Աղաչայ լուսիկը եւ Պ. Աղաչայ սըհակը bővebben[5] Poժումպէյն[6] պի գրին, թէ ինչի Աղաչայ, Պուեանովիչին által[7] անել եւ գրել տըվինք, զըրնոր հետ մէյպի մէկտեղ, խօնթիքարին Praesentuat[8] արիլինք. զըրին Copian[9], Pro Notitiae Statu[10], հօս Acluduat[11] անէյլով, Պատվէյլութեանձըտ կուխըրկինք: Մինք Աղաչայ Enyediin Assistentiaյօվը[12], ասըր մօտ absolute[13] չէինք իգայ: Փառք Աստուծոյ որ սապէյս հանդըպիլէյ. չի էյղած ըլաին Պ. Աղաչայ լուսիկը եւ Պ. Աղաչայ սը-

---

1 Անտարակոյս՝ փնտռել բայէն չինուած գոյական մը պիտի ըլլայ. փնտռուքս = հարցմունք, հարցընելը:

2 Գործակալ, տեսուչ:

3 Հպատակութիւն, ծառայութիւն:

4 Արդարութիւն: — Ամբողջ տասցուածին նշանակութիւնը պիտի ըլլայ, թէ, հաւատարմութեան՝ հպատակութեան երդում պէտք էք ընել:

5 Աւելի ընդարձակ, տեղն ի տեղ. հունգարերէն է:

6 Բրեզպուրկ քաղքին հունգարերէն անուանակոչութիւնն է:

7 Ձեռօք, ի ձեռն. հունգ. է:

8 Praesento, ցուցընել, ներկայացընել:

9 Ընդօրինակութիւն, օրինակ:

10 Իրին, վիճակին որպիսութեանը վրայ տեղեկութիւն առնելու համար:

11 Կցել, ներփակել կը նշակէ:

12 Օգնութիւն, առընթերակայութիւն:

13 Բացարձակապէս, ոչինչ կերպիւ:

Հակը, նայ զաս գըրցքը անձը չէյր արնու Աղաչայ Պուեանօվիչը։ Աօգի կամէյնան[1] գըրէյլու պատվէյլութիւնքըտ Աղաչայ Enyediin օր իք մալ ալ ալ Promoveat[2] չայնէ. որօվ Հէյտեւ ինքը սէյպելօվ խօնթիքարին Systeman, աս տարի չիլայ ըլալու ասըր մօտ, օր ասպէյս Agrariumներ[3] լըսէյ։ Աստուած տըվիլէյ, օր ասէյնը լըսիլէյ. եւ աղէկ վերչալ Աստուծոյով կու Հուսանք օր պի անէյ։ Մինք սօվօրական աղօթքօվըն չի մօրնանք Dietim[4] վէրչ տայնէլու, օր Աստուած ըզիրեն ողորմութիւնը մեր վըրայ ընջեցնու. եւ սաեապէս Հանձնելով զիս սիրութեան պատվէլութեանձըտ եմ, եւ կու մընամ Հանապազ

Ամէյնայ պատվէյլի Աչայ Պիրովին
եւ պատվէյլի Աղաչանուն

Wien, 12do 8bris 1781.

խընար ծրայելու եղբայր.
Գրէէգոր. ոՀ. Նէգօշէ Իօէ(գօ՞–ջ) m. p. „

Աւելի ընդարձակ է Լուսիկ ՕՀանեանցի Թրէսպուրկէն գրած Նամակը։ Ասոր մէջ երեսփոխանը, մեծ սրամտութեամբ մանրամասնաբար կը տեղեկացընէ զդատաւորն ու զքաղաքացիքը խնդրոյն ինչ վիճակի մէջ ըլլալուն վրայօք։

---

1 Բարեհաճեցէք, շնորհք ըրէք։

2 Յառաջ տանիլ, շարժել։

3 Ագարակային, երկրային նշանակութիւն ունի առաջիկայ լատիներէն բառը։ — Ո գիտէ ինչ կ'ուզէ իմանալ ու հասկըցընել։ Գու ցէ Agrium = վայրենի, դաւն, խիստ, բառն ըլլայ։

4 Ամէն օր. զօր Հանապազ։

Կարեւոր կը համարիմ բնագրին բովան-
դակութիւնը համառօտելով յառաջ բերել.
անոր համար, վասն զի շատ բան պարունակող
ու հետաքրքրական տեղեկագրոյն լեզուն, թեր-
եւս քիչերու առջեւ հասկընալի է։

Ամսոյս 10ին (1781 Հոկտ.) կայսեր դի-
մացն ելլելով, չէ՛ թէ միայն մեր հասարակու-
թեան, հապա մանաւանդ բոլոր ազգին անուամբ
աղաչանք մը մատուցինք իր վեհափառութեանը։
Թէպէտ, ինչպէս իմացանք, Թագաւորը շատ
զբաղած էր. եւ ամէն մէկ բարեկամ կ'ըսէր՝ թէ
դժուարաւ պիտ'որ կարենանք ներս մտնել։
Այսու ամենայնիւ, մեզի տեղ տալով՝ քառորդէ
մ'աւելի քովը կեցանք։ Շատ վէճ ըրաւ բանին
վրայ։ Եւ համոզուելու համար, ի նպաստ եւ
ընդդէմ ըսելէն ու լսելէն ետեւ՝ հարցուց թէ
ազատ քաղաքներն ո՞ւր կը գնեն սովորաբար
հաւատարմութեան երդումը։ Ըսինք թէ թա-
գաւորական գործակալին դիմաց։ Այն ատեն
ըսաւ, թէ չ'ուզեր որ Դրանսիլուանիոյ մէջ
ազգայնութիւններ գտնուին։ Ասով գրուածք-
ներն առնելով իրմէն հեռացանք։

Ան խնդրէն, զոր մանաւանդ կը փնտռէր
ու կ'ըսէր, թէ սովորութիւն չէր մինչեւ հիմակ
որ մենք տէրութեան ժողովքին մէջ մաս ունե-
նանք՝ ուրիշ բան չենք կրնար հետեւցընել, եթէ
ոչ ան, որ արդէն ներս մատուցած աղերսագրին
վրայ — որ շատ վեր ի վերոյ բան էր —
տեղեկութիւն ունէր։ Երանի թէ զանիկայ
ներս մատուցած չըլլայինք. որովհետեւ չէ թէ

օգուտ, հապա վնաս պատճառեց մեր հասարակութեան։ Եւ կրնանք վախ ունենալ, որ անոր պատճառաւը՝ հիմակ այս մեր տուածն ալ մէկդի դրուի։ — Ամենուն կարծիքն ա՛ն է, որ մեր խնդիրքն աղէկ վերջ պիտի ունենայ։ Սակայն աղօթք ընելու ենք, որ Աստուած Թագաւորին սիրտը դարձընէ դէպ ի մեր ազգն. որ ասկից ետքն ալ, մեր փոքրիկ ժողովրդեան հովիւն ըլլայ։

Որովհետեւ հին աղերսագրին համար, թէ՛ Արտեալ ու թէ՛ Վիեննա շատ զայրացած էին — իմանալու համար թէ՝ ի՛նչ աղերսագիր էր ա՛յն՝ — օրինակն ուզեցինք ատենադպրէն։ Եւ հաղորդեց մեզի թէ ա՛ն է, զոր անցեալ տարի Աւգոստոսին շինեցինք եւ Էնյէտիին թողուցինք, որ ներս տայ։ Չէ թէ միայն անցած տարուըն աղերսագրին ձեռքովն, հապա այս նորովն ալ — զոր պաշտօնարան տանելով՝ խնդրեցինք ատենադպրէն որ ընդունի — իմացանք թէ տակն ու վրայ եղած են Գրանսիլուանիացիք։ Հիմակուանովն՝ ա՛լ աւելի պիտի այլայլին։ Բայց ճար չունինք. որովհետեւ մենք, մեր ցաւն, եթէ որ առ այն դեղ մը կ՛ուզենք գտնել — պէտք է որ այս կերպով ցուցընենք Թագաւորին։ Հիմակուան աղերսագրին օրինակն, ինչպէսնաեւ գրութիւնները Ա. Գրիգորին թողուցինք, որ Հրամանոցդ խրկէ։ Գործքին պատրաստութեանը համար ժամանակ պէտք եղաւ։ — Էնյէտի գործակատարին այս բանիս անյարմար ըլլալը չէ թէ միայն ես, այլ Դուք ալ պիտի տեսնէք։ Ինք, չէ թէ

միայն այդպիսի բաներու մարդը չէ, հապա անճարակին մէկն է. ամէն բանէ վախցող, եւ կարողութիւն չունեցողին մէկը։ Չեմ կրնար ըմբռնել, թէ հասարակութիւնն, այսպիսի մարդու մը ձեռօք, ինչպէս իր նպատակին պիտի կարենար հասնիլ։ — Եւ որովհետեւ յայտնապէս տեսանք, թէ իրմով գործելը շատ փորձանքաւոր բան է, հարկ եղաւ որ զինք թողունք։ Արքունեաց եւ հունգարական պաշտօնարանին գործքերը խնդրեցինք իր ձեռքէն։ Եւ ոչ ալ գիտէ ողորմելին, թէ ասոնք ուր կը սկսին։ Ուստի եւ հարկ եղաւ որ նորէն Պոսյանովիչին աղաչենք։ Եւ այսպէս ինք գործքի մտնելով՝ մեր խնդրուածքին առաջն առինք։ Հիմակ իրեն յանձնեցինք, որ միշտ հսկէ, աչքը բանայ, եւ ընդ տեսնելը թէ բանն ուր կը հակի, անմիջապէս Ձեզի տեղեկութիւն տայ։ Աղէկ եղաւ որ Էնյէտիին հետ խառնակութիւն չունեցանք։ Կը խնդրեմ, թէ որ ուրիշ անգամ, մէկու մը բան մը կը յանձնէք, աւելորդ գրութիւններով ուրիշի մըն ալ նոյն բանը չյանձնէք. մանաւանդ այնպիսի մարդու մը որ բանէ չի հասկընար։ Որովհետեւ ասանկ երկդիմի ճամբով՝ չէ թէ միայն գործքն աւելի գէշ կ՚ըլլայ, հապա կրնայ նոյն իսկ անձին, այնպիսի բան մը հասնիլ, որ թէ՛ պատիւն ու թէ՛ ազատութիւնը կորսնցընէ։ Կը խնդրեմ ժամանակէ ժամանակ գրեցէք Պոսյանովիչին, որ խնդրոյն վրայ Ձեզի տեղեկութիւն տայ։ Եւ իրեն յանձնեցէք, որ արիութեամբ գործքին հետամուտ ըլլայ։ Աս անգամ իրեն 40 ոսկի, 8 ֆունտ

շաքար եւ 25 փունտ խահուէ տուինք․ հոն բաժ-նելու համար, ուր որ հարկաւոր տեսնէ։

Ահա նամակին բնագիրը։

“Ամենայ Պատուելի Աղայ եւ Աղաչայ Պի-րովին, նաեւ յերկոտասան Պ. Աղայից եւ Հա-սարակին շատ սիրով ողջոյն կու մատուցանիմ !

Մէկալ երէկ, այսինքն ամսոյս 10ին Աս-տուծվով մեր գըտած խօնթիքարին դիմաց բէրսօնալիշ աուտիէնձիայ[1] ունէնալով, չէ միան մեր հասարակին, հաթէյ բօլոր Ազգին անընին տակը ինչդանձիայ[2] եւ շբէձիէս փագդի[3] տվանք նես․ անոր, որ մէկ կէրպ խընդիրք ունի բօլոր ազգըն, եւ բօվանդակին անընին տակը խընդիր-քըն ալ ընդունելի պիլայ։ Թաքավորըն, թէպէտ շատ տարտօվ ու հոգսօվ էր․ նաեւ ամենայն մէկ բարեկամ ան կու ասէր, թէյ դիժար պի մըտնունք նես․ բայց տեղ տալով մեզիկ, աւէլի քան փըրդար սըհաթ խօսք ունացիլինք հետը։ Տիշբուդօվադ[4] արաւ զօր զըանը․ եւ զայս բըօյ էդ գօնդրայ[5] ասածնուն էտէվանց, վորոնց ալդօլ կամէր գաբաձիդալուիդըլալու[6], այնքանը փըն-տրեց թէյ մէկալ ազատ քաղքըները ուրուխ

---

1 Անձնական ունկնդրութիւն, լատիներէն է հայե-րէն գրերով։

2 Աղերսագիր, աղաչանաց թուղթ։

3 Գործքին էութիւնը՝ որպիսութիւնը, — գրու-թիւններ՝ կը նշանկէ։

4 Բանակռիւ, վէճ, վիճաբանութիւն։

5 Ի նպաստ եւ ընդդէմ. լատ. է։

6 Համազուիլ, տեղեակ ըլլալ։

դրիլին զհօմակիումը։ Ճուեապ արինք[1] թէ գրայական գոմիսարին դիմաց։ Վերջը ասաց թէ չուզէյ որ ալ շատ Արտեալին մէջ նաձիօնալ-իզմուշ[2] գտվի։ Եւ այսօվ արնէլօվ զմեր գրեան-քը, բարով մնա արինք իրմէն։

Այս տիշբուդաձիայէն լրենը, որ մանա-վանդ կու փընտրէր եւ կու ասէր թէյ ուզուշի[3] մէջ չինք էղիլ տիէդայ[4] էրթալու. օղկայ բան չինք հանիլ, քանթէյ ուժէյ բրէվէնիալուիդ[5] էղիլէյ ալ արաշի տված Ինշդանձիայէն. զօ-րըս իժով թեթեւ դրած էր վեր։ Եւ ուր է թէյ նես չի տրված ըլար. զէրամ չէ թէյ շահ, այլ թէյ զէն եւ իմբէտիմէնդում[6] պատճարիլէյ հասարակին։ Եւ վախնալույէ թէյ անոր պատ-ճարաւըն զայս մեր տվածըն մէկ քովի չի թողու։ Նիաթներըն Աստուծվով ամէնունը զանէյ թէյ մեր խընդրինքը բարի վերջը հա-նինք։ Բայց աղօթք անէլու պիտվականէյ, որ Աստուած զթաքավորին սիրտը դարձընու առ մեր ազգըն, որ այսու հետեւ ալ հօվիվ ըլայ մեր փոքրիկ էլին[7]։

Վասն վաղուցու ինշդանձիային, վորով յետեւ թէ ի հօս Արտեալը եւ թէյ պէշըն մեծ

1 Ճուեապ անել, կամ Ճուեապ տալ. Հաշիւ ընել կը նշանակէ Դրանսիլուանիացւոց լեզուաւը։ Բայց հոս անշուշտ, պատասխանել, ըսել պիտի նշանակէ. փծ. Ճէվապ։

2 Ազգ, ազգութիւն։

3 Սովորութիւն։

4 Տէրութեան ժողովք, խորհրդանոց, խորհուրդ։

5 Առջեւն առնուլ, յառաջել։

6 Արգելք։

7 Ազգ, ժողովուրդ։

լարմայ էր[1], թէ ինչ սօյ ինշդանձիայ տված է նես, մինք ուզիլինք զնույն ինշդանձիային գօբիան գանձէլլարիայէն[2]. եւ գօմունիգօվադ[3] արիլէյ հետ մեզիկ: Գըտիլինք թէյ զանէյ, օր հէրու օգօսդօսի ամսու հատրիլինք եւ էնյէտիին հէտ-քըն թօղիլինք, օր տայ նես: Ուրեմն չէ միան զհէրուվինը ինշդանձիային մէրիդումը, զէյ այս նօրէնն ալ խընդրելով զգանձէլլարիան օր վեր առնու, գօնֆիրմօվադ[4] արիլինք զխընդիրքըն, թէյ պըղտօրված ըլլան Արտեալցիքը: Նաեւ դէր այս նօրովըն դէր ավէլի պըղտօրվին: Մինք ճար չունինք. զերամ զմեռ ցաւըն այս կերպիվըն պէդքէյ օր ցըցնունք թաքավօրին դիմաց. թէօր կամենանք մեռ խոցին Մըլհան նայելու: Հիմպի-կէն ինշդանձիային գօբիան, նաեւ շըէձիէս փագ-դիյինը թօղիլինք Պ. Ա. գմնդ[5] գրիգորին ձէրգըն, օր Պոլթեանցդ ըստ Սօվորութեանն խրկէյ: Եւ կու սէպիմ թէյ այս բօշդայովըն, մէչէն Պոլթինքդ ալ պի առնուն: Գործգը քիչ մը ժամանակ ուզիլէյ օր հատըրվի, ամպէս օր զամենայն էութինը սգիսբանէյ տէսնու Աթօրը:

---

1 Lárma հունգ. բառ է, խլրտոց, անհանգստութիւն, խռովութիւն, վայնասուն կը նշանակէ:

2 Դիւանատուն, պաշտօնարան:

3 Հաղորդել, տեղեկացնել:

4 Արդիւնք, արժանիք:

5 Չեմ կրնար գտնել թէ ինչ կը նշանակէ այս չորս գիրը: Անտարակոյս համառօտագրութիւն մըն է: Ասկից ետքն եկող Գրիգորին հետ յարաբերութիւն ունեցող բան մը, կամ անոր տիտղոսը կրնայ ըլլալ. որովհետեւ ինչպէս որ քիչ մը ետքը պիտ'որ տեսնենք, նորէն կու գայ Գրիգորէն յառաջ:

*Այս հարութեանը, թէ Ակէնշ[1] էնյէտին տէս-դուլ եղած ըլլար, չէ միան ես, չէյ դէր պոլթիւնքդ ալ, կու սէպիմ թէյ չիպի գտնուն զինքը: Օչ թէյ ինքըն մարդնէյ այսբէս բանէրու. անճըրկըլված մը. բանինմէյ ահըրվօղ. եւ ոչ գաբաձիդաշ[2] ունացօղ մարդըլվօվըն ես չիմ կարնալ տէսնելու թէյ Պ. հասարակը ինչպէս կարնայ իրեն նիաթին հասնէլու. Ճամփան օր օրինավօրէյ:*

*Որով յետեւ հայտնի կու տեսնույինք, թէյ իրմօվըն էրթալու իժով[3] փորցանքավօրէյ, պէտք էղաւ օր թօղունք, զէ Պէլլիգումին գըմարային[4] եւ Մաճարի գանձէլլարիային օբինիօնեըն[5] խնդրիլինք օր ուզէյ թաքավօրը[6]: Այսօնք մագար չիտէյ ողորմէլին թէ ուսգից կու կըցվին: Այսօնց գօրայ ուրեմն պէտք էղաւ օր նօրէնը զՊույանօվիչը խընդրինք: Եւ ամպէս ինքըն բանէլով, զարաչըն արիլինք մեր խընդրըլվաձգինը: Եւ հիմպիկ ալ վրան թօղիլինք, օր անդադար անկաճը օր ըլլայ եւ տեսնու թէյ ինչ դի կու հակվի բանը, օր անօր գօրայ կարնայ ուրուխ օր պիտվական ըլլայ, զինֆօրմաձիօնները[7] տալու: — Թօղութիւնն ուրեմն շնորհին պոլթիւնքտ, օր գըրածին գօրայ Պոլթեանցտ հետ էնյէտիին*

---

1 Գործակալ, գործակատար:

2 Կարողութիւն, ատակութիւն:

3 Շատ, սաստիկ:

4 Պատերազմի պաշտօնարան:

5 Գործք, արձանագրութիւն:

6 Հեգնութեամբ՝ թագաւոր, այս ինք մեծ աղա, կ'անուանուի Էնյէտի, Եղիսաբեթուպոլսոյ գործակալը:

7 Տեղեկութիւն:

այս կողմնէյ չինք ունացիլ խարնաքութիւնն: Օգկայ անգամ խնդրիմ որ Պոլթիւնքտ. թէ օր իքմը մէկնումէկ Մէմրումին[1] վրայ պիզուիդ անին նայ, աւելի գրով զօգկան ալ չի խնդրին. եւ մանաւանդ ամպէսը, օր բանի մարդ չէյ: Ջէրամ այսպիսի երկու ճամփով քալելովըն, չէ միան բանըն տաՀա պէգարը կըլայ պղտորվէլու, չէյ դէր նույն մէմրումին ալ կըլայ Հասնէլու ամպէս պաքսութիւնն, օր թէյ aestimatio էն[2] եւ ազատութենէն իրենը զատվի: Խնդրիմ օր Պոլթիւնքտ ալ գըրին Պույանօվիչին, օր ad tempore in tempus[3], Պոլթեանցտ զբանին էութիւնը իմաց անէյ: Եւ յանձնին իրեն օր մարդնակ կաննի այս մըշդընչէնական բանին վրայ: Այս տարպան որվէց իրեն 40 #[4] եւ 8 գլուխ շաքար, 25 ƒ գափէյ, օգկանուն բաժնելու, ուրուխ օր պիտվականութիւննէյ: Մինք այս բանըն ալ Հիմպի ճոթ տանէլով Աստուծվով 2 ավուր մը վրայ ասգից դէպի տուն բուրչես կու անինք: Քօշդի խարճերըն, ինչեւիցէ, պիտայ սէպ Պ. Ա. գմնդ. գրիգորըն: Այսու յանձնէյլով զիս Պոլթեանտ Սիրույն, կամ եւ անդադար մնամ Պոլթեանցտ.

ծարայ եւ եղբայր գրղէ.[5]

լսկ ո: Հ: ղազարի Օհանեանց m. p.

Posony. die 12ª 8br. 781.

---

1 Մարդ, անձ: Պիզուիդ անել = յանձնել Հունգ. է:

2 Ցարգ, պատիւ, արժէք:

3 Ատեն ատեն, ժամանակէ ժամանակ:

4 Ինչպէս յայտնի է, այս նշանն՝ առեւտրոյ մէջ ոսկի՝ — իսկ ƒ կը նշանակէ ֆունտ:

5 Այսինքն գարագի = սիրելի, անձկալի:

P. S. Տանէն խրկած գրեանքըն Պ. Ա. գմնդ. գրիգորը տանողի տանի„: —

Անկից յառաջ մատուցուած աղերսագրին որպիսութեանն ու նիւթոյն վրայ տեղեկութիւն չունինք. վասն զի չենք գիտեր թէ ուր է եւ ինչ կը պարունակէր: Բայց Յովանեանցին նամակէն եւ ուրիշ պարագաներէն կրնանք հետեւցընել, թէ ազգայնոց այդրէնածնութեանը՝ զինուորաց բնակութիւն ու տեղ չտալու, Նախամոլքի ծառայութենէն ազատ ըլլալու եւ ուրիշ՝ շրջակայ ազգաց հետ հաւասար իրաւունք ստանալու վրայ պէտք է որ եղած ըլլայ: Եւ ա՛ս էր պատճառն, որ թէ՛ Գրանսիլուանիոյ ժողովրդոց եւ թէ՛ Վիեննայի մէջ մեծ խռովութիւն պատճառած էր:

Հայերն իրօք անհանգիստ ու ցաւած էին. եւ ոչ առանց պատճառի: Վասն զի ամէն ծանրաբեռնութիւնները կրելու մէջ հաւասար էին ուրիշ ազգայնութեանց հետ. իսկ պաշտօնի մը հասնիլ, յատուկ երկիր ստանալ, սեպհական ազատութիւննին վայելել չէին կրնար՝ այնպէս, ինչպէս մէկալ շրջակայ ազգերը: Անկից էր որ — ինչպէս կը տեսնենք — շարունակ թէ՛ գաղտնի ու թէ՛ յայտնի նամակներով՝ պաշտօնարաններուն, Գրանսիլուանիոյ վերին կառավարութեան, արքունեաց ատենադպրին եւ նոյն իսկ կայսեր մտադրութիւնն իրենց վրայ կը դարձընէին: Ա՛ս նամակներով՝ երբ մէկ կողմանէ կը բանային իրենց վէրքերը, մէկալ կողմանէ դարման կը փնտռէին իրենց բացած վէրքերուն սպեղանիք մը գտնելու:

Բնական է, որ այսպիսի ճամբաներով ու ասանկ միջոցներով շրջակայ ազգերուն ատելութիւնն իրենց դէմ կը գրգռէին։

## 9.

Աս ըսածներուն վրայ հազիւ թէ երկու տարի անցաւ, գործունեայ, բայց նեղսիրտ ազգայինք ուրիշ աւելի դժուարին բանի մը ձեռք զարկին։ Իրենց՝ շրջակայ ազգայնութիւններէն ունեցած անկախութիւնն ու կայսերական տան ունեցած սէրը՝ մանաւանդ թէ մերձաւորութիւնը ցուցընելու համար, փորձ փորձեցին ուրիշ ազատութիւններ ու երկիրներ ստանալու։ — Մարդ չի գիտեր, թէ ո՛ր բանին աւելի զարմանայ. իրենց համարձակութեա՞ն, մանաւանդ թէ յանդգնութեան, — իրենց՝ առ կայսրն ունեցած վստահութեա՞ն եւ սիրոյն՝ — թէ կայսերական տան՝ առ ազգայինս ցուցըցած գթութեան ու հայրութեանը վրայ։ Գիտէին ապահովապէս, թէ Յովսէփ Բ. ալ իրենց նկատմամբ ա՛յնպէս գթած ու բարերար է, ինչպէս իր հանգուցեալ մայրը։ Ասոր փորձն առին շատ անգամ. բայց մանաւանդ այն միջոցին երբ կայսրն անձամբ Եղիսաբեթուպոլիս գալով, ի մերձուստ տեսաւ ու ճանչցաւ իրենց դիրքը, վիճակն եւ առ կայսերական վեհափառութիւնն ունեցած յարումը, սէրն ու հաւատարմութիւնը։

Եղիսաբեթուպոլսեցիք ամէնիմաստ ու սուր քաղաքականութեամբ մը սրտերնին անոր առ-

ջեւը բացին. եւ համարձակեցան 1785ին աղերսագրով մը, ընդհանրապէս՝ Դրանսիլուանիոյ, եւ մասնաւորապէս՝ իրենց հասարակութեան արդիւնքներն ու արժանիքները կայսեր առջեւը դնել: Աղերսագիրը կը շեշտէ ի մէջ այլոց, թէ Հայք իրենց անխոնջ աշխատութեամբը, Պաշպալովի ամայի ու ողորմելի դաշտն ընդարձակեցին եւ անոր վրայ գեղեցիկ քաղաք մը կանգնեցին. — Թէ Դրանսիլուանիոյ վաճառականութիւնը յառաջացուցին, օտար ձեռակերտներ ներս բերելով՝ եւ ներքինները՝ դուրս տանելով: Դուարի, խոզի, մեղրամոմի, մորթի եւ այլն առուտուր ընելով՝ տէրութեան գանձուն մեծ օգուտ ըրին ու երկիրը հարստացուցին: Խաղաղութեան ատեն բարձրագոյն հրամաններն ու օրէնքները ճշդիւ կատարելով — իսկ պատերազմի ատեն՝ կամաւոր օգնութիւն տալով՝ ընտիր ձիեր ու զգեստաւորուած զինուորներ, դուար եւ բնութեան բերքեր մատուցանելով եւ տէրութեան ուրիշ օգտակար ծառայութիւններ ընելով — Դրանսիլուանիոյ ազգերուն օրինակ եղան. եւն:

Ասոնց զօրութեամբն՝ երեք աղաչանք կ'ուղղեն առ կայսրն.

Ա. Կը խնդրեն՝ թէ, ա՛յն ամէն արտօնութիւններն, որոնք Կարոլոս Զ.էն եւ ետքէն Մարիամ Թերեզիայէն տրուած են Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան, անթերի պահուին. առանց անոնց մէջ բան մ'աւելցընելու, կամ անոնց մէջէն բան մը հանելու: Բայց դուրս հանուի, Մարիամ Թերեզիայի 1758 Նոյեմբ. 28ին

տուած արտօնագրին՝ հինգերորդ կէտին վերջի մասն. ուր որ խառն դատաստանի մասին կ՚ըսուի թէ “Պատժական իրերն՝ որպէս զի աւելի հասուն քննութեան տակ ձգուին, այն դատաւորին ատենակալութեան հետ մէկտեղ խորհելով որոշուին եւ վճռուին„։ Արդ՝ ասիկայ վերցուի իբրեւ անհարկաւոր, շատ ծախքեր, երթեւեկ ու անհանգստութիւն պատճառող բան։ — Ազգին գործառնութեանց մէջ, ի դէպս բողոքման՝ խնդիրն երկրին վերին կառավարին երթայ։ — Իսկ եթէ այս չ՚ուզուիր, այն ատեն որոշեալ միջոցի մը մէջ հաստատելլ մասնաւոր ատենակալութիւն մը դրուի. որպէս զի չըլլայ թէ հայ ազգին վաճառականութեան վերաբերեալ խնդիրները՝ տարիներով երկընցուելով, վնաս ըլլայ թէ՛ առեւտրին յառաջացման եւ թէ՛ արքունական գանձուն։

Եւ որովհետեւ կը պատահի որ հայ հասարակութիւնը՝ վճարմանէ փախչող խարդախ պարտականներէն, վճարքը չի կրնար ժամանակին ընդունիլ. եւ արդարութիւնը՝ հայերուն հետ թէ՛ մէկ կողմանէ սաստիկ անգութ կերպով կը վարուի, եւ թէ՛ մէկալ կողմանէ վարկին յարգը կը փճանայ — որով ամենէն լաւ վաճառական տներն ալ հարկ է որ կործանին, իյնան. վասն զի դատաստանը տարիներով կ՚երկըննայ — անոր համար՝ հրաման տրուի, թէ՛ վերին կառավարութեան, թէ՛ գաւառապետներուն ու թէ՛ դատաստանարաններուն, որ՝ ամէն պարտական, որ կրնայ վճարել — բայց չարակամ յապաղ-

մամբ՝ չի վճարեր. — ընդ գրաւմամբ ստացուածոցն՝ ութ օրուան մէջ վճարէ իր պարտքը։ Աս հրամանը գործադրուի ընդ պատասխանատուութեամբ, այնպէս որ՝ արդարութեան յապաղմամբն յառաջ եկած վնասներն ինք դատաւորն իր յատուկ ստացուածքովը հատուցանէ։

Բ. Կենդանի գոյներով Կայսեր առջեւ կը դրուի — եւ ա՛ս է աղերսագրին մատուցուելուն՝ բուն պատճառը — որ Գիւգիւլլէօ գետին գրեթէ ամէն տարի պատճառած ողողմունքները, Եղիսաբեթուպոլսոյ ստացուածոցը վերջին աստիճանի վնասներ կը հասցընէ։ Աս ամէն բանին, գլխաւոր եւ մի միայն պատճառն է, քաղքին դիմացն եղող Հէվէշ դաշտավայրը։ — Թէպէտ գետին երկայնութեամբը թումբեր կանգնած եւ ամէն միջոց բանեցընելով՝ անոր ողողման առջեւն առնել ուզած են, բայց ի զուր։ Պուխսպաում՝ ճարտարապետը՝ ջրանցքի մը ծրագիրը ներկայացուցած է քաղքին. բայց զանիկայ գործադրելն՝ անհնարին է. վասն զի, վերջին աստիճանի ծախք պատճառելէն զատ՝ նպատակին չի հասցըներ — Մէկ խօսքով՝ բանը հոն կը յանգի, թէ՝ որովհետեւ այս երկիրն ուղղակի կայսեր տրամադրութեան տակն է, հրաման տրուի հայ հասարակութեան, որ այն դաշտավայրը՝ մերձակայ Շարօշ սաքսոնական հասարակութենէն գնէ. տալով անոր օրինաւոր գինը։ Եւ կամ ուրիշ ընդունելի պայմանով մը Հայոց յանձնուի այն երկիրն, որպէս զի քաղաքն ըստ իր յատակագծին՝ անոր վրայ ջրանց մը շինելով՝ Գիւ-

գիւղէցի ապականիչ աւերներէն կարենայ ինք զինք ապահովցընել։ — —

Ան ստոյգ է, որ Գիւգիւլլէօ գետն իր ողողմամբը՝ շատ վնասներ կը հասցընէր քաղքին։ Սակայն եթէ երկրին դիրքըն ու յարաբերութիւնները՝ երկրաչափական աչքով զննելու ըլլանք՝ կը գտնենք թէ ո՛չ այնչափ Հէվէշ դաշտավայրն էր, որ քաղքին վնասներ կը հասցընէր, որչափ գետոյն անկողնին փոքրկութիւնն ու եզերաց ցածութիւնը։ — Հէվէշ դաշտն՝ անընդմիջապէս քաղքին կից է. եւ իրաւցընէ իր սահմանովն՝ ըստ բնութեան՝ քաղքին կը վերաբերի։ Եւ որովհետեւ իր ընդարձակութեամբն ու պտղաբերութեամբը՝ լաւ մշակելի երկիր մը կրնար մատուցանել քաղաքացեաց՝ անոր համար աչք տնկած էր հայ հասարակութիւնն այս երկրին վրայ. բայց չէր կրնար առնուլ։ Ուստի խնդրոյն օրինաւոր ձեւ մը տալով՝ իւրացընել կ'ուզէր զանիկայ։ — Քաղաքն — ինչպէս ետքէն պիտի տեսնենք — թէպէտ իր վախճանին հասաւ. դաշտավայրն ընդունեցաւ. վրան ջրանցք ու ասոր վրայ ջաղացքներ շինեց, այսու ամենայնիւ՝ անկից ետքն ալ, Գիւգիւլլէօ գետին ջուրը յառաջուան պէս թէ՛ զՀէվէշ ու թէ՛ անոր մերձակայ տեղերը կ'ողողէր շարունակ. այնպէս որ քաղքին մէկ բաւական մեծ մասը ջրի տակ կը լողար միշտ։ Ասոր առջեւն առնուեցաւ հազիւ 1892ին, երբ որ քաղքին դիմաց Գիւգիւլլէցի եզերքին բոլոր երկայնութեամբն ահագին հողաբլուր մը կան-

գնելով՝ ողողմանց առջեւը ապահով թումբ մը քաշուեցաւ։

Գ. Կը խնդրէ Հասարակութիւնն իր աղերսագրին մէջ, որ Հայ պատանիներն, ինչպէս ուրիշ ամէն շրջակայ ազգայնութեանց տղաքը՝ տէրութեան բարձրագոյն պաշտօններուն մէջ առնուին, ըստ իրենց կարողութեանն ու ատակութեանը՝ երբ պարապ տեղ ու առիթ պատահի։ — —

Հասարակութեան կողմանէ առ Կայսր մատուցած աղերսագրին որպիսութեանն, ինչպէս նաեւ ոճոյն վրայ լուսաւոր գաղափար մ՚ունենալու համար, հարկ է որ զանիկայ ամբողջապէս թարգմանելով՝ ընթերցողաց առջեւը դնեմ։ — Ահա աղերսագիրը.

‘‘Վեհափառ Կայսր.

Եղիսաբեթուպոլսոյ հաւատարիմ ու հնազանդ հայ հասարակութիւնը կը համարձակի — ներքոյ գրեալներու երկուքին ձեռօք, որոնք առ այս հոս եկած են — 1783ին ներս մատուցած աղերսագիրն, եւ վեհափառութեանդ նախորդներէն գթածաբար իրեն շնորհուած առանձնաշնորհութիւնները՝ սրբազան գահիդ առջեւը դնելու, եւ խոնարհութեամբ պաշտպանութիւնդ խնդրելու։

Վեհափառ Տէր — Զեր հրամանները, կարգադրութիւններն եւ ամենուն լաւութեանը համար դրած օրէնքները — զորոնք մենք՝ իբրեւ

նուիրական բաներ կը յարգենք. ու զորոնք՝
ամէն ատեն ճշդիւ պահպանելու՝ մեր գլխաւոր
պարտքերէն մէկը համարած ենք. — եւ մեծա-
փառութեանդ Նախորդներէն մեզի տրուած եւ
երկու անգամ Նորոգուած առանձնաշնորհու-
թիւնները՝ — թէ, անոնք՝ իրենց էական կէ-
տերուն մէջ, ոչինչ կերպիւ եւ ոչինչ եղանակաւ
փոփոխութիւն կրեն. — Նորէն խնդրելու կը
համարձակինք.

Նախ. Թէ մեր արտօնութիւններն, ամէն
եւ իւրաքանչիւր կէտի մէջ — ի բաց առնելով՝
հինգերորդ կէտին վերջին մասին մէջ, ի պատ-
ժականս եղած խառն դատաստանի նկատմամբ
(mixti fori) եղածն՝ որ իբրեւ անհարկաւոր եւ
միայն շատ ծախքեր եւ անհանգստութիւններ
պատճառող որգոստայ՝ (forum) ի բաց առնուի.
— սակայն վեհափառութեանդ իմաստուն կար-
գադրութեանն ու արդէն ի Նպաստ Դրանսի-
լուանիոյ մեծ իշխանութեան ըրած կարգադրու-
թեանցը համեմատ ամրացուին. որ մեր վա-
ճառականութեանը դիւրութիւն կու տայ:

Երկրորդ. Բարձրագոյն որոշման հետեւու-
թեամբ, ասկից ետքն ալ ինչպէս յառաջագոյն,
ամէն՝ Հայոց ազգին գործառնութեանցը վերա-
բերեալ քաղաքաբաշխութեան վճռոց մէջ —
ի դէպս բողոքման — ընթացքն ուղղակի եր-
կրին վերին կառավարութեան ըլլայ: Իսկ եթէ
Ձեր վեհափառութիւնը զասիկայ շնորհելու
միտեալ չէ, այն ժամանակ մեր խորին աղա-
չանքն ան է, որ բարեհաճի կարգելու, թէ ամէն՝

հայոց ազգին վերաբերեալ — արդէն քիչ անգամ հանդիպող — իրաւանց խնդիրներն, որոնք, բողոքման ճամբով արքունական ատենին առջեւը կ'ելլեն՝ իրենց որոշմունքն ընդունելու համար՝ տարւոյն որոշեալ միջոցի մը մէջ հաստատուելի ատենակալութեան առջեւ դրուին. որ անոնց վրայ առանձինն կերպով խորհուի խօսուի՝ եւ յետոյ որոշուին: Ասիկայ գլխաւորաբար անոր համար՝ որպէս զի չըլլայ թէ իրաւանց խնդիրներուն պատճառաւն, որոնք բարձրագոյն ատենակալութեան առջեւ խմբովին յառաջ կու գան, հայ ազգին վաճառականութեան վերաբերեալ իրաւանց խնդիրները՝ տարիներով երկնցուին, ի մեծագոյն վնաս վաճառականութեան: Որով միանգամայն արքունական գանձուն զգալի վնաս հանդիպի:

Բայց որովհետեւ վեհափառութեանդ մեծաշուք նախորդին տուած առանձնաշնորհութեան պատճէնին Եօթներորդ կէտին զօրութեամբը՝ ապահովցուած ենք, թէ մեր հասարակութիւնն աւելի եւս շնորհմունքներ ընդունի — յաջորդ խօսքերովը. "Կ'ապահովցընենք այս հասարակութիւնն, որ մենք իր վաճառականութիւնն աճեցընելու համար, իրեն պարտուպատշաճ օգնութիւնը կարողաբար պիտի մատուցանենք„. անոր համար չենք տարակուսիր, որ Ձեր վեհափառութիւնն ալ՝ այս հաւատարիմ ու հնազանդ հասարակութեան, նոյն խոստումները նորոգելու պիտի բարեհաճի: — Ուստի մեր աղաչանքն ա՛ն է.

1. Թէ որովհետեւ՝ այս հայ վաճառական հասարակութիւնը, թէպէտ ունեւոր՝ բայց վճարմանէ փախչող, նենգաւոր պարտականներէն, վճարման ժամանակին, ոչ իրենց պահանջմանցը ճիշդ վճարքը, եւ ոչ ալ ի պակասութեան վճարման, արագ արդարութիւն կրնայ գտնել. հապա ընդ հակառակն մէկ կողմանէ սաստիկ անարգ ու բռնաւորական կերպով, մէկալ կողմանէ թէ՛ վաճառականութեան օրինաց հակառակ եւ փոխառութիւնը բոլորովին ապականող ու փճացընող՝ հնարեալ փախուստներով, անհիմն մերժումներով եւ փաստաբանական ոստումներով կը վարուին իրեն հետ. ու դատաստանէ դատաստան կը քաշքըռտուի տարիներով: — Այս՝ երկարատեւ, վնասակար, եւ վաճառականութեան ու վարկին յանչափս ապականիչ երթեւեկութիւնէն ու անհանգստութենէն, իրենց անխոնջ աշխատանքովն ալ, անպատճառ անկման մէջ կ'իյնան. եւ ըստ հետեւորդի, ոչ միայն ներքին, այլ նաեւ անոնց հետ կապակցութեան մէջ եղող արտաքին վաճառականներ ալ կործանելու կը հարկադրին: Ասոր վրայօք դժբախտութեամբ ամենէն տխրալի օրինակներն առջեւնիս կեցած են: Վասն զի վերոյիշեալ պատճառներու համար, նոյն իսկ ամենէն հաստատուն եւ հարուստ վաճառական տներն ինկած փճացած են. եւ որոնք որ դեռ փճացած չեն, պէտք է որ փճանան: — Անոր համար կը խնդրէ այս հաւատարիմ ու հնազանդ հասարակութիւնն, իր պահպանութեանը՝ եւ երկրին ընդ-

հանուր առեւտրոյն յառաջացմանն ու վարկին ապահովութեանն, ինչպէս նաեւ տէրութեան գանձուն օգտին համար, օրինաւոր եւ արդար պաշտպանութիւն. եւ բարձրագոյն հրաման, անոր նկատմամբ, որ վերին կառավարութեան, եւ ասոր ձեռօք վիճակներու եւ քաղաքային դատաստաններու հրամայուի եւ յայտնապէս (patentaliter) անոնց գիտութեանը հասցուի, որ ամէն վաճառական տուն եւ պարտապան, որուն դրական պահանջմունքներն ազատ (liquid)՝ եւ յատուկ ձեռօք գրուած պարտականութեան թղթերը՝ փորձուած են — եւ վաւերական պատասխանատուութեան տակ ինկած չեն — հապա միայն չարակամ յապաղմամբ փախած. ու ձեւացեալ, տաղտկացուցիչ եւ նենգաւոր պարտականներ կը մնան, — եթէ ժամանակին եղած առաջին ծանուցման եւ յայտարարութեան գրութենէն ետեւ, ութը օրուան մէջ չեն հաւասարցըներ իրենց ցուցուած պահանջական հաշիւներն — ըլլան անոնք, որեւիցէ վիճակի ու աստիճանի մարդիկ — նոյն պահանջմունքներն գործադրական ճամբով իրենց վճարել պիտի տրուի: — Այս ամենաբարձր հրամանը՝ պատկանեալ վիճակներն ու քաղաքային ատենակալութիւնները ճշդիւ պահեն. եւ առանց յապաղման գործադրեն. ապա թէ ոչ, իրենք զիրենք, չէ թէ միայն ծանր կշտամբութեան եւ պատասխանատուութեան տակ կը ձգեն, հապա նաեւ ցուցուած արդարութեան յապաղմամբը՝ կողմնակիցներուն հասցուած վնասներն իրենց

ստացուածքէն հատուցանելու պիտի պարտաւորին։

2. Բոլոր Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան վերջի ատրճանի ապականութիւն. — իրեն տներն, ագարակներն, երկիրները, ջաղացքները, կամուրջներն եւ ուրիշ ամէն ունեցածները փճացընելու սպառնացող աղէտք մը կը պատճառէ մերձակայ Գիւգիւլլէօ գետին երագ հոսանքն, իր — գրեթէ ամէն տարի կրկնուող ողողումներովը։ Ու թէպէտ եւ ամէն տեսակ մտքէ անցած միջոցներ բանեցուցինք եւ ամէն կերպ նախահոգ զգուշութիւններ ըրինք. սակայն մեր տներուն եւ ունեցածներուն ազատութիւնն ու պահպանութիւնը չկրցանք ապահովցընել։ Թումբեր կանգնելու համար, մեր անտառները փճացուցինք ու հազարաւոր ֆիորինի ծախքեր ըրինք. այսու ամենայնիւ՝ ամէն գործածած միջոցներն ու գործադրած հնարքներն ապարդիւն ու անօգուտ մնացին։

Ձեր վեհափառութիւնն անձամբ ականատես եղած ու տեսած է այն մեծ վտանգն, որուն ենթարկուած են այս հասարակութեան բնակիչները։ Ծանօթ է վեհափառութեանդ ասոր նկատմամբ շատ հեղ եղած փորձերն, եւ Պուխսպաում երկրաչափ հարիւրապետին՝ ջրանցքի մը պեղումին համար շինած՝ մեծածախ ստուերագիծը։ — Նոյնպէս՝ ամէն մարդու ծանօթ է, որ այս հասարակութեան դժբախտութիւնն ու վերահաս ապականութիւնը՝ յառաջ կու գայ տեղէ մը, որ պզտիկ ու դրացի սաքսո-

նական Շարոշ ըսուած գեղին կը վերաբերի։ Աս տեղը — որ Հէվէշ կը կոչուի — թէ՛ ասկէ յառաջ ու թէ՛ հիմակ բոլորովին աննշանակ դաշտ մըն է. եւ շատ տարիներ, նուազ գնով մը մեր հասարակութեան վարձու տրուած էր։ Բայց հիմակ — այն ատենէն ի վեր, երբ մեր ապահովութեանը եւ մեր դժբախտութենէն խալըսելու համար փորձ ըրած ենք զանիկայ գնելու — մէջը մսրացորեն ցանուած է։

Այսպիսի տխուր եւ շուտ հոգացուելի պարագաներու մէջ կը խնդրէ հաւատարիմ ու հնազանդ հասարակութիւնը՝ վեհափառութեանդ պաշտպանութիւնը։ Եւ ծունր դրած կ'աղաչէ, որ չթողու թէ պետութեան մը այնչափ օգտակար հասարակութիւնն — աննշանակ երկրի մը համար — որ արդէն իսկ արքունական կալուածներու մէջ ինկող եւ անընդմիջապէս վեհափառութեանդ անշրջափակելի տրամադրութեանը ներքեւ դրուած է — իր տներովն եւ ամէն ստացուածներովը փճանայ, լմննայ։ Հապա՝ մէկդի դնելով Պուխսպաում՝ երկրաչափին շինած եւ հասարակութեան վերջին աստիճանի վնասակար ու վտանգաւոր յատակագիծը՝ հրաման տրուի, որ շարոշցիներուն ձեռքն եղած երկիրն՝ առանց կողմնակալութեան գնահատուի եւ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան տրուի. վճարելով գնահատութեան արժէքը եւ հատուցանելով միանգամայն այն երկրին վրայ ծանրաբեռնած պարտքերը։ — Եւ կամ որեւիցէ ուրիշ՝ ընդունելի պայմանով մը, առանց

բանը երկնցընելու, մեր իշխանութեանը յանձնուի այն երկիրն. որպէս զի անկից ետքը Հասարակութիւնն իր յատուկ ծախքերովը՝ իւր ապագայ ապահովութեանը համար Գիւգիւլլէօ գետին ընթացքն ուղղելով, քաղաքն ըստ իր կամացն ու հաճոյիցը անոր վրայ նոր ջրանցք մը պեղել կարենայ: — Վերջապէս.

3. Խոնարհաբար կ'աղաչէ հաւատարիմ ու հնազանդ հասարակութիւնս, որ ասկից ետքը՝ բարձրագոյն սկզբանց ու դիտաւորութեանց համեմատ եւ յօգուտ եւ ի յառաջադիմութիւն բարձրագոյն ծառայութեանց համար կրթութիւն առած հայ ազգին պատանիներն՝ ընդունուած օրինաց ու հրամանաց համեմատ, տէրութեան, քաղաքային, առեւտրական եւ վիճակական պաշտօններու մէջ առնուին, առանց ազգայնութեան նկատման. ինչպէս որ կ'առնուին Տրանսիլուանիոյ ուրիշ ազգութեանց զաւկըները: Եւ իրենց կարողութեանը՝ գիտութեանն ու լաւ յատկութեանցը համեմատ, առաջարկուին՝ պարապութեան մէջ եղած՝ կամ պատահելի պաշտօններու (Aperturen):

Ասոնք են, ահա, ամենագթած կայսր, ամենէն ջերմագին խնդրուածքները՝ հնազանդ ու հաւատարիմ Եղիսաբեթուպոլսոյ հայ հասարակութեան ու ազգին. — որն որ

ա. դարէ մ'ի վեր հոս Տրանսիլուանիոյ մէջ պատուաստուած է.

բ. որ՝ այն անապատ ու ամայի տեղերէն իրեն անխոնջ աշխատութեամբն երկրին իշ-

խանէն գթածաբար օգնութիւն գտնելով՝ ամէնէն գեղեցիկ քաղաքը շինած ու ընդարձակած է։

Գ. Թէ՛ Գրանսիլուանիոյ եւ թէ՛ ժառանգական երկիրներու վաճառականութիւնը՝ ներսի եւ դրսի երկիրներուն ապրանքներն ու ձեռակերտները, մէկ դիէն ներս բերելով, մէկալ դիէն դուրս տանելով — նաեւ մեծ քանակութեամբ՝ ցորենի, ձիու, խոզի, ոչխարի, բրդոյ, մեղրամոմի, ճարպի, կաշւոյ, մաշկի եւ այլն, առուտուր ընելով, ոչ թէ միայն Գրանսիլուանիոյ եւ Հունգարիոյ ազնուական մասին եւ տուրք տուող հասարակ ժողովրդեան՝ այլ նաեւ տէրութեան գանձուն ընդհանուր օգուտները յառաջացուցած՝ բարձրացուցած եւ ընդարձակած է։

Դ. Տէրութեան երկիրներուն մէջ, ներքին՝ ինչպէս նաեւ տաճկական բերքերով առուտուր ընելով, եւ երկրէս ստակ տանող տաճկի ստոըակարգեալները — իր արուեստովը ու լաւ կարգադրուած եւ ըստ օրինի վարուած առեւտրովը — պետութենէն դուրս ըրած եւ ասով ժառանգական երկիրներուն միլիոններ վաստըկցուցած է։

Ե. Գրանսիլուանիոյ առաջին քաղաքներուն, ինչպէս Սիպինի, Պրաշովի եւ Գլուժի հետ — թէպէտ ամենեւին շնորհմունքներ չունի, ուր ընդ հակառակն՝ վերոյիշեալ քաղաքներու շատ ու մեծ առանձնաշնորհութիւններ տրուած են, — տուրք տալու մէջ հաւասար է։ Այսու ամենայնիւ, չէ թէ միայն հարկերն, այլ նաեւ ուրիշ՝ իրեն ծանրաբեռնութիւն պատճառող ամէն

*հասարակաց բեռները, ամենայն հանդարտութեամբ ու սիրով կը կրէ. եւ երջանիկ կը համարի ինք զինք, որ իւր պատսպարանին եւ ամենարդար վեհապետին այսպիսի ծառայութիւններ կրնայ մատուցանել:*

*Դ. Խաղաղութեան ժամանակ՝ սիրով եւ հաճութեամբ կը կատարէ իր պարտքերը. տարածելով՝ առուտուրը, հարստացընելով տէրութեան գանձը եւ ճշդութեամբ կատարելով բարձրագոյն հրամանները:*

*Է. Պատերազմի ատեն, մեծ քանակութեամբ, կամաւոր կանխիկ դրամով, պարգեւ ու տուրք տալով, բանակին պատրաստուած՝ ընտիր ձիեր ու զգեստաւորուած զինուորներ, դուար, եւ բնութեան բերքեր մատուցանելով՝ եւ տէրութեան ուրիշ օգտակար ծառայութիւններ ընելով՝ Դրանսիլուանիոյ ամէն ազգերէն ու հասարակութիւններէն աւելի ինք զինք նշանաւոր ըրած, եւ վեհափառութեանդ հաւատարիմ ծառաներուն եւ ստորակարգեալներուն օրինակ ցուցուցած է:*

*Անոր համար ապահով ենք, թէ մեծափառութիւնդ, մեր խոնարհ առաջարկութիւններն ու աղաչանքը հաճութեամբ կ՚ընդունի ու այն ամէն վշտացուցումն ու ցաւերը, որոնք՝ ըստ մասին մեր գործառնութեանցն եւ ստացուածոցն եւ ըստ մասին մեր ներքին կարգադրութեանցն ու նոյն իսկ ազգին ցաւալի ճնշմանն ու տկարութեանը պատճառ եղած կրնան ըլլալ — իբրեւ տէրութեան հայր՝ հեռացընելու եւ*

զմեզ ասկից ետքն ալ՝ արդար պաշտպանութեանը ներքեւ առնելու պիտի բարեհաճի։

Այս ամենահնազանդ ժողովուրդը՝ կը խնդրէ միանգամայն խոնարհութեամբ, որ ըստ մասին իրեն ու ըստ մասին արքունական գանձուն համար օգտակար աղաչանքը՝ հարցափորձի եւ տեղեկութեան (pro informatione) համար, վերին կառավարութեան չխրկուի. հապա պարզապէս մեծափառութենէդ, իբրեւ մէկ ազատ եւ միայն առկախեալ բան մը՝ գթութեամբ որոշուի։

Վիեննա, 1784 Յուլիս . . .։

Մարկեղղոս[1] Չիգիեան եւ
Դոմինիկոս Սրնբէգրեան.

Յանուն եւ յանձին բոլոր հասարակութեան։ — Իմմանուէլ Չիգիեան դատաւորին — Եւգինէոս, Ղուկաս եւ Պետրոս Դանիէլեան, Անտոն Խսիգուցեան, Մարտինոս Բագրուպանեան, Յովհաննէս Դէօրէօգեան, Գրիգոր Խսիգուցեան, Ջաքարիա Ջաքարիան, Միքայէլ Չիգիեան, Ղուկաս Ոսկէրիչեան, Ղուկաս Լէնկյէլեան՝ ծերակուտի անդամներու — եւ բոլոր երդուեալ ամենահնազանդ քաղաքացեաց եւ հպատակաց անուամբը„։

Աղերսագիրը՝ չէ թէ միայն մեծ խնամքով յօրինուած է, հապա նաեւ յայտնապէս կայսեր

1 Պարտաւորուած եմ, Marcellus-ն այսպէս թարգմանելու։ Թէպէտ եւ աղէկ գիտեմ, եւ քիչ մը ետքը գալի արձանագրութենէն յայտնապէս կը տեսնուի որ այս քահանային մկրտութեան անունը Մարտիրոս է։

առջեւ կը դնէ՝ բաց սրտով ամէն բան, ինչպէս որ ազգայինք կը զգային այն միջոցին։

Մասնաւոր մտադրութեան արժանի բան է, որ այս աղերսագիրն, ուրիշ՝ ամէն թէ՛ ասկէ յառաջ ու թէ՛ ասկէ ետքը գրուած աղերսագիրներուն լեզուովը — լատիներէն — գրուած չէ, այլ գերմաներէն. — ա՛յն սիրական լեզուաւ, զոր Յովսէփ Բ. պաշտօնական լեզուի բարձրացուցած եւ ընդհանուր ընել ուզած էր։

Աղերսագրին մէջ տեսնուած ամենէն զարմանալի բանն ա՛ն է որ — թէպէտ ապացոյց է մեծ վստահութեան, բայց նաեւ մեծ յանդըգնութեան — ազգայինք աղերսագիրը վերջացընելու ատեն, կ'աղաչեն կայսեր, որ չըլլայ թէ բացած վէրքերուն ու խնդրած շնորհմունքներուն նկատմամբ՝ Գրանսիլուանիոյ վերին կառավարութիւնը տեղեկացընէ ու անոր կարծիքը խնդրէ. — այլ իբրեւ վեհապետ եւ ամենակարող տէր՝ անձամբ քննէ խնդիրը, վճռէ ու գործադրել տայ։

Թէ աղերսագիրը Մարտիրոս Չիգիեան քահանային ձեռօք ստորագրուած ու ներս մատուցուած է՝ յայտնի է։ Բայց շատ տարակուսական է, նախ, թէ իրե՛նն ըլլայ նաեւ ոճը եւ այն սուր քաղաքագիտութիւն ցուցընող վսեմ գրութիւնը. երկրորդ՝ այն սաստիկ աչքի զարնող յանդուգն, համարձակ ու գրեթէ ստիպիչ վարմունքը։ — Հայոց ազգը՝ եւս առաւել անոր մէկ անհատ հասարակութիւնն, սանկ բան մ'ընելու կարող չէր։ — Շատ հաւանական է, որ ազգայնոց բերանը դրած, ու զիրենք առած ըլլայ

կայսրն՝ իբրեւ գործի, այն մեծագործ ու փրկաւետ վերանորոգութիւններուն, զորոնք գործադրել կ'ուզէր, ատենակալութեան մէջ եղած զեղծումներուն ու չարաչար գործածութիւններուն դէմ։ —

Աղերսագիրն ունեցաւ ըստ ամենայն ընդարձակութեան՝ իր յաջող ազդեցութիւնը։ Չանցաւ վեց ամիս ու Եղիսաբեթուպոլսոյ Հասարակութիւնն ընդունեցաւ ինքնակալէն, Նոր ու վերահաստատուած առանձնաշնորհութեանց ընդարձակ կոնդակ մը, որ ազգայնոց ամէն ուղածները, կէտ առ կէտ կը շնորհէ. ի զարմանս եւ ի ցասումն Հունգարացւոց եւ շրջակայ Սաքսոններու։

Թէպէտ սա՝ 1785 յունուար 27ին լոյս տեսած ու քիչ մ'ետքը հրատարակուած առանձնաշնորհութեանց կոնդակն ըստ մեծի մասին, հին արտօնութեանց — զորոնք ազգայինք ընդունեցան, ըստ մասին Կարոլոս Զ.էն ու մեծաւ մասամբ Մարիամ Թերեզիայէն — բովանդակութիւնն ու հաստատութիւն են. վասն զի անոնք պարունակուած են առաջիկայ կոնդակին մէջ. այսու ամենայնիւ, յինքեան ամբողջ մը կը կացուցանէ. որովհետեւ Յովսէփ կայսրը՝ զասոնք կը իւրացընէ, ու իր կողմանէ նորէն հրատարակելու կը հրամայէ։ — Բաց ասկէ բոլորովին նոր արտօնութիւններ կ'աւելցուին անոնց վրայ. — արտօնութիւններ, որոնք իբրեւ թէ պատասխան են Եղիսաբեթուպոլսոյ Հասարակութեան առ կայսրն ներկայացուցած աղաչանաց։

⁂

*Առաջիկայ արտօնութեանց կոնդակին ձեռօք, ներածութենէ մ'ետեւ — ուր կ'ըսուի՝ թէ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնը ներկայացընելով կայսեր, իր հանգուցեալ մօրը վաղեմի առանձնաշնորհութեանց պատճէնին մէկ վաւերական օրինակը, կը խնդրէ, որ այն ամէն արտօնութիւնները՝ մէկ երկու կէտ դուրս հանելով — առանց մէկ փոփոխութեան, յաւելուածի ու կրճատման — հաստատուին ու ամրացուին*

*Կը սահմանուի. թէ դուրս հանելով, նախ Մարիամ Թերեզիայի, կրօնի, աստուածպաշտութեան ու եկեղեցական կարգադրութեանց վրայօք ըրած որոշմունքներն —՝ որոնք՝ ինչպէս յայտնի է, Յովսէփ Բ.ի առջեւ ամենեւին արժէք մը չունէին. — երկրորդ՝ դուրս հանելով Դրանսիլուանիոյ իշխանութեան մէջ ատենակալութեան վերաքննութեանը նկատմամբ դրուած նոր կարգադրութիւնները.*

*Նախ. Կը շնորհուի — բառնալով այն կարգադրութիւնն, որուն համեմատ պատժական խնդրոց բանակցութիւններու վերաքննութիւնը՝ Գիւգիւլլէօ գաւառին ատենապետներուն մէկտեղ գալովն որոշուելու եւ վճռուելու էր — Եղիսաբեթուպոլսոյ օրինաւոր դատաւորին եւ իր խորհրդականներուն լիուլի իշխանութիւն ի պատժականս։*

*2. Կը շնորհուի՝ որ քաղաքն ու քաղաքացիք, իրենց գաւառին որեւէ տեսակ իշխանութենէն, թէ՛ ատենական, թէ՛ տնտեսական եւ թէ՛ քաղաքային գործառնութեանց մէջ՝ բոլո-*

րովին ազատ ըլլան. եւ միայն արքունական վերին իշխանութենէն կախում ունենան։

3. Կը սահմանուի թէ ա՛յն՝ առեւտրոյ վերաբերեալ դատաստանական խնդիրներն, որոնք Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց կողմանէ արքունական վերին ատենակալութեան առջեւ կը մատուցուին — մէկդի թող տալով այդրէնածիններուն խնդիրները — որոշեալ ժամանակամիջոցի մը մէջ — այսինքն Աստուածայայտնութեան ատենները — ձեռք առնուին եւ ըստ փափաքանաց ազգայնոց՝ քննուին ու վերջացուին։

4. Որովհետեւ վաճառականական խնդիրները, մանաւանդ պարտքերու նկատմամբ շատ են՝ անոր համար կը հրամայուի, որ անոնց քննութեանը նկատմամբ՝ Եղիսաբեթուպոլսոյ Հայոց մասնաւոր նկատում ըլլուի. եւ իրենց, աս տեսակ խնդիրները շուտ ձեռք առնուին։ — Վերջապէս.

5. Որովհետեւ Հայք ալ ընդունուած են իբրեւ երկրին զաւկըները. անոր համար կը սահմանուի, որ անկից ետքն իրենք ու իրենց որդիքը հրապարակական պաշտօններու մէջ՝ ա՛յնպէս ընդունուին, ինչպէս երկրին ուրիշ զաւկըները։

Չեմ համարիր աւելորդ՝ աս առանձնաշնորհութեան պատճէնին ամբողջ թարգմանութիւնն ընթերցողաց ներկայացընել։ — Կայսեր կոնդակը յաջորդն է.

## 10.

"Մ՛ենք Յովսէփ Բ. ողորմութեամբն Աստուծոյ ընտրեալ կայսր Հռոմայ, առաքելական թագաւոր Գերմանիոյ, Երուսաղէմի, Հունգարիոյ, Պոհեմիայի, Դալմատիայի, Խռուատիստանի, Սլաւոնիայի, Կալիցիայի եւ Լոդոմէրիայի. արքիդուքս Աւստրիոյ. դուքս Պուրկունտիայի, Լոթարինգիայի. մեծ դուքս Ետրուրիայի. մեծ իշխան Դրանսիլուանիոյ, Մորավիայի. դուքս Բրաբանդիայի, Լիմպուրկի, Լուքսեմպուրկի եւ Կեղտրիայի, Վիւրդէմպէրկի, վերին եւ ստորին Սիլեզիայի, Մեդիոլանու, Մանդուայի, Բիաչէնցայի եւ Գուաստալիայի, Օսվէդինիայի եւ Զատորիայի, Կալաբրիայի, Պարիի, Մոնդ Ֆէրրայի եւ Դէշէնի. իշխան Սուեվիայի, Կարոլոսպոլսոյ. կոմս Հապսպուրկի, Ֆլանտրիայի, Դիրոլի, Հանոնիայի, Գիպուրկի, Կորիցիայի եւ Սրգոյից. սահմանակոմս սուրբ հռոմէական կայսրութեան, Պուրկովիայի, վերին եւ ստորին Լուսացիայի, Մուսօբոնդի, Նոմէնի. կոմս Նամուրսի, Վալտէմոնդէ գաւառին, Ալպիմոնդէի, Զուդֆանիայի, Սարվերտի, Սալմի եւ Ֆոլգէնշդայնի. սահմանակոմս տէր Սլաւոնիայի եւ Մեխլինայի. եւայլն. եւայլն:

Մեր ներկայ գրութեամբը, միտքը կը բերենք՝ ծանուցանելով այն ամենուն, որոնց անկ է. թէ մեր արտօնացեալ Եղիսաբեթուպոլիս քաղքին կողմանէ, մեր հպատակներն, այսինքն Էմմանուէլ Չիգիեան իսկական դատաւորն, եւ իր խորհրդականները՝ Լուսիկ եւ Պետրոս Դանիէ-

լեան, Անտոն Խսիգուցեան, Մարտինոս Բադրուպանեան, Յովհաննէս Դէօրէօգեան, Գրիգոր Խսիգուցեան, Զաքարիաս Զաքարեան, Միքայէլ[1] Չիգիեան, Ղուկաս Ոսկերիչեան, Լուսիկ Լէնկէլեան ու մէկալ երդուեալ քաղաքացեաց անուամբը՝ պատուելի Մարկեղղոս Չիգիեան, աշխարհական քահանայ, աստուածաբանութեան վարդապետ եւ առաքելական քարտուղար. եւ սոյն քաղքին խորհրդականը՝ Դոմինիկոս Սընդբէդրեան՝ մեր գերագոյն գահին իբրեւ լիակատար իշխանութեամբ խրկուած պատգամաւորներն, որոնք քանի մը արտօնութեան պատճէններու վաւերացեալ ընդօրինակութիւնը մեր առջեւը դրին. որ նամակները՝ մեր վերոյգրեալ քաղքին քաղաքացեացը մասնաւորաբար տրուած արտօնութեանց եւ առանձնաշնորհութեանց վրայ կը խօսին. եւ զորոնք մեր՝ մեծաշուք յիշատակաց արժանի մայրն իրենց շնորհեց. — եւ յիշեալ Եղիսաբեթուպոլիս քաղքին վերոյգրեալ դատաւորը՝ խորհրդականները եւ մէկալ երդուեալ քաղաքացիները՝ բոլոր հասարակութեան անուամբը՝ խոնարհութեամբ խնդրեցին մեր վեհափառութենէն, որ այն արտօնացեալ պատճէններն եւ այն ամէն բան, որ անոնց մէջ կը պարունակուի — դուրս հանելով՝ զանոնք, որոնք որ հասարակ քաղաքացիութեան, քրիստոնէական թոյլտուութեան, մեզի սիրելի Դրանսիլուանիոյ իշխանութեան մէջ կանգնուած ա-

---

1 Ասանկ գրուած է արտօնագրութեան մէջ: Բայց գիտենք թէ այս անձը Մինաս Չիգիեանն է:

տենակալութեան վերաքննութեանը նկատմամբ ըրած օրինաւոր կարգադրութիւններուն կ'ընդդիմանան. —Նմանապէս դուրս հանելով՝ Հինգերորդ կէտին վերջին յաւելուածը, զոր Գիւգիւլլէօ գաւառին — որուն մէջ կ'իյնայ յիշեալ քաղաքը — խորհրդականները վերաքննելի պատժական խնդրոց նկատմամբ գործածելու պարտական են — վաւերական, օրինաւոր, սիրելի եւ ընդունելի նկատելով՝ եւ զանոնք մեր ներկայ թղթին մէջ բառ առ բառ անցընելով եւ գրելով՝ վերոյիշեալ քաղքին քաղաքացիներուն եւ անոնց յաջորդացը համար, գթածաբար ամրացընելու՝ եւ ամրացածները, թէ՛ մեր կողմանէ պահելու, եւ թէ՛ ձեր կողմանէ, որոնց կը պատշաճի, պահել տալու բարեհաճիք. — որ արտօնութեանց պատճէնին բովանդակութիւնն է յաջորդը.

“Մենք, Մարիամ Թերեզիա, ողորմութեամբն Աստուծոյ՝ կայսրուհի Հռոմայ, թագուհի Գերմանիոյ, Հունգարիոյ, Պոհեմիայի, Դալմատիայի, Խռուազաստանի, Սլաւոնիայի. եւայլն եւայլն.[1]

“Դարուց փորձառութիւնը կը ցուցընէ թէ երկիրներուն եւ իշխանաց փառքն ու չքեղութիւնն այն ատեն միայն արտաքուստ ալ հեռու տեղուանք կը տարածի, երբ որ զհպատակներն իներքս, չէ թէ միայն լաւ կարգաւորուած գործքերը՝ քաղցրաբարոյ ու հեզ կերպով մը իրենց տեղւոյն կը կապեն, հապա երբ ասոնք նաեւ

[1] Տես Հատ. Ա. էջ 164։

ուրիշներն ալ առ այն կը յորդորեն, որ իրենց մէջ բնակութեան տեղ փնտռեն եւ հաստատեն։ Եւ անոր համար ալ մեր մեծաշուք նախորդները միօրինակ հոգ տարած են որ իրենց տէրութիւնն ու իրենց երկիրները, որչափ կարելի է, միշտ աւելի բազմաթիւ բնակիչներով աճեցընեն. որոնց ապրելու եւ կեանքերնին պահպանելու կերպն՝ ըլլայ կարգեալ հասարակաց օգուտը յառաջացընելու։ Ուստի եւ որպէս զի թէ՛ ասոնց անկասկած մնացականութիւնն ապահովուի եւ թէ՛ մէկալ քաղաքացւոց երջանկութիւնն՝ օտար քաղաքացւոց ջանքովն ու փութովն օգտուած ըլլայ՝ անոր համար ասանկ նոր գաղթականութիւններ հաստատեցինք — ըստ իրենց փափաքանացն — իրենց վիճակին համապատասխանող արտօնութիւններով ու առանձնաշնորհութիւններով։ Որմէն յետոյ այն օգուտն ալ յառաջ կու գայ, որ բարեկամեցութեան այս քաղցրութիւնը ուրիշներն ալ դրդելով՝ շատերը օրինաւոր կեանք անցընելու, ծուլութիւնն ու տգեղ անգործութիւնը թող տալու, եւ ճշդութեան կ'առաջնորդէ։ Եւ ասանկով՝ երբ կենաց ընթացքը՝ կա՛մ առեւտրական գործքերով, կա՛մ արուեստական զբաղմամբ եւ կա՛մ որեւիցէ ուրիշ պատուաւոր գործքով մը կ'անցնի — վաճառականութիւնը կը յառաջանայ եւ արուեստները նպաստաւորութիւն կը գտնեն։ Եւ ինչ որ ասոնց մէջ ամենէն աւելի փափաքելին է՝ ժողովրդոց հանգստութիւնը, մահկանացուաց փոյթն ու եռանդուն գործքերն օրհնող

*Աստուծոյ փառքն, ու միանգամայն տիրող իշխանին անունն օր ըստ օրէ կը տարածի։*

*Եւ որովհետեւ մեր Դրանսիլուանիոյ իշխանութեան Գիւգիւլլէօ գաւառին մէջ եղող Եղիսաբեթուպոլսոյ հայաբնակ քաղքին բոլոր քաղաքացիներն ու բնակիչները, գործունեայ ու եռանդուն Աւգոստինոս Խէգուցեան՝ յիշեալ քաղքին օրինաւոր դատաւորին եւ Աստուածատուր Վիգոլեան երեսփոխանին — մեր արքունի դիւանատան առջեւ՝ իբրեւ այս հասարակութեան գործքերը կարգադրելու օրինապէս յանձնառուներու, — ինչպէս նաեւ այս բանիս լիակատար իշխանութիւն ունեցող պատգամաւորաց, այսինքն՝ պատուելի Միքայէլ Դանիէլեան՝ Դրանսիլուանիոյ Ալպա Գարոլինայի մայր եկեղեցւոյն կանոնիկոսին ու Եղիսաբեթուպոլսոյ ժողովրդապետին. դարձեալ՝ ազնուազարմ Յովհաննէս Ղազարոսեանի. գործունեայ ու խնամող երդուեալներուն՝ Մինաս Գասպարեանի, Յովհաննէս Ոսկերիչեանի, Մարտինոս Խէգուցեանի, Մարկոս Բադրուպանեանի, Թէոդորոս Ղուկասեանի, Նիկողայոս Չիգիեանի, Լուսիկ Ոսկերիչեանի, Նիկողայոս Գասպարեանի, Թէոդորոս Չիգիեանի, Թովմաս Ջաքարեանի, Եւգինէոս Դանիէլեանի, Մարկոս Գոշոդանեանի, Յովհաննէս Բօբեան քարտուղարին, Խաչիկ Սընբէդրեան եւ Անտոն Խէգուցեան երեսփոխաններու ձեռօք մեր առջեւ դրին, թէ ողորմած հոգի վեհափառ Կայսրը, Սպանիոյ եւ Լեհաստանի թագաւորն ու Դրանսիլուանիոյ իշխանը՝ Կարոլոս Զերորդ,*

մեր Հայրը, մեր ամենասիրելի Նախորդը՝ Թէպէտ 1733 տարւոյն Օգոստոս 11ին տուած արտօնութեան թղթին համեմատ, զիրենք իբրեւ կաթուղիկեայ Հայեր, վերոյգրեալ քաղքին մէջ հաստատած ու ամրացուցած է. բայց փափաքելով աւելի ապահով ըլլալ իրենց մնացականութեան՝ հպատակութեամբ ու խոնարհութեամբ մեզի դիմեցին որ իրենց նոր արտօնութիւններ ու առանձնաշնորհութիւններ տանք։

Մենք, յառաջ բերուած ու առջեւնիս դրուած եւ մեր կայսերական - թագաւորական սիրտը շարժող ուրիշ պատճառներէ ալ դրդեալ՝ գթածաբար սահմանեցինք, որ նկատմամբ այս աղաչաւորաց ի նշան մեր կայսերական-թագաւորական միտութեան ու բարեհաճութեան՝ այն առանձնաշնորհութիւններով, իրաւունքներով եւ արտօնութիւններով — որ հոս կը յաջորդեն, — Դրանսիլուանիոյ մէջ ապրին ու ապրիլ կարենան։

1. Գթածաբար կը շնորհենք որ այս հայազգի հասարակութիւնը, որովհետեւ Պաշպալովի կալուածատէրութիւնն իր շրջականներն եղող գեղերովը հանդերձ՝ մեր թագաւորական տուչութեամբը՝ մշտնջենաւոր իրաւամբ ստացած է, այն իրաւանց համեմատ զոր այս տուչութեան ձեռօք վաստըկած է, չէ թէ միայն ազատութեամբ կարենայ ապրիլ, այլ նաեւ իր մեծագոյն շահուն համար՝ Պաշպալովի կալուածները քաղքին մէջ առնուլ եւ ըստ հետեւորդի անկից հպատակները՝ կալուածատէրութեան ու-

րիշ տեղերը տեղափոխել կարենայ. — ենթադրելով որ անոնց համապատասխանող երկիրներ պիտի տրուին, իսկ վարձուորներուն ստակ պիտի վճարուի. — ու երկրին վրայ կանգնած շէնքերուն գինն օրինաւոր եւ արդարացի գնահատութեան համեմատ՝ բարձրացընել կարենայ: Եւ հիմակուընէ սկսեալ ապագայ ժամանակին համար՝ ըլլայ բոլորովին արտօնացեալ քաղաք մը, ու լատիներէն լեզուաւ Elisabethopolis, գերմաներէն՝ Elisabethstadt, հունգարերէն՝ Erzsébetváros անուանուի. ինչպէս որ ըստ մասին արդէն ասկից յառաջ ալ կ'անուանուէր. ու իր կնիքին վրայ — ինչպէս մինչեւ հիմակ՝ անանկ ալ ասկից ետքը — Սրբուհի Եղիսաբեթի, Անդրէաս Բ. Երուսաղեմացւոյն որբեւարիին, Հունգարացւոց թագաւորին դստեր պատկերը կարենայ գործածել, որմէ քաղաքն իր անուանակոչութիւնն ընդունած է:

2. Ի դիպուածի որ օտար հայազգի մը՝ իբրեւ բնակիչ ուզէ քաղաք գալ ու բնակութիւնը հոն հաստատել, կը պարտաւորի նախ այն տեղւոյն խորհրդարանին առջեւ ներկայանալ եւ ինք զինք ամէն բանի նկատմամբ իբրեւ պատուաւոր մարդ ճշմարտել: Այսպիսի օտար ազգայնոյ մը համար — քաղաքացի գրուիլն արդէն յառաջուընէ կատարուած ըլլալով — վերոյիշեալ քաղքին խորհրդարանն ու հասարակութիւնը պատասխանատու են:

3. Եւ վասն զի այս հասարակութեան յառաջադիմութիւնն ու երջանկութիւնը գլխաւո-

բաբար Աստուծոյ օրհնութենէն կախում ունի, ըստ հետեւորդի հարկաւոր է որ նախ աստուածային պաշտամունքին եւ կաթուղիկէ սուրբ հաւատքին, — զոր վերոյիշեալ հասարակութիւնն ըստ հայ արարողութեան կը դաւանի — հոգ տարուի։ Անոր համար ալ գթածաբար կը հաւանինք եւ կը շնորհենք, որ այս քաղքին մէջ Աստուծոյ օրհնութեամբը ժողովրդեան թիւը շատնալով՝ շինուածներէն զատ՝ նոր ուղղափառ եկեղեցիներ կանգնուին։ Հոգ տանելու է դարձեալ հասարակութիւնն՝ որ հոգեւոր ծառայութիւնը կատարող՝ պարտուպատշաճ եւ պաշտօնին համապատասխանել կրցող յատկութիւններով եկեղեցական անձինքներ ունենայ․ որոնց քաղաքը կը պարտաւորի ըստ պատշաճի ռոճիկ կապելու։ Եւ որովհետեւ Գրանսիլուանիոյ հռոմէական ուղղափառ լատինածէս եկեղեցական իշխանութենէն կը կախուին ու պիտի կախուին, անոր համար եկեղեցական վարչութեան պարտաւորութիւնն ըլլայ հսկել, որ հոն հայ հռոմէական կաթուղիկէ արարողութիւնն ըստ պատշաճի պահպանուի, եւ արեւելեան հայ հերձուածողք, յանուանէ եւտիքականք ու դիոսկորեանք եւ ուրիշներուն դատապարտեալ մոլորութիւններն այս ազգէն հեռու ըլլան։ Ասկից զատ այս եկեղեցական իշխանութիւնը մեծապէս հոգ տանի՝ որ չըլլայ թէ այս մասնաւոր ու նուազ ճանչցուած աստուածային պաշտամունքը Գրանսիլուանիոյ իշխանութեան մէջ ուղղափառ չեղող Հայերուն կերպով մը ներուի, կամ

վերը յիշուած մոլորութեանց ետեւէն եղողները ներս թողուին եւ կամ անոնց՝ հոն բնակելուն աչք գոցուի. ի բաց առեալ եթէ անոնց մէկը կամ մէկալը առանձինն վաճառականութեան նպատակաւ երկրէն անցնի երթայ. եւ այնպէս հոն առժամանակ մի անցընէ ատենը. կամ հարկաւորութիւնն այնպէս պահանջէ։

4. Եւ որովհետեւ այս տեսակ հասարակութեանց յառաջադիմութիւնը շատ կը զօրացընէ ու կը յառաջացընէ աղէկ կանոններու ու կարգադրութեան հաստատութիւնը, անոր համար գթածաբար կը պատուիրենք որ վերոյիշեալ հասարակութիւնը քաղաքային իրաց մէջ՝ հոն տեղի թագաւորական վարչութենէն, տընտեսական բաներուն մէջ՝ նոյնպէս հոն տեղի գանձապետութենէն կախում ունենայ։ Իսկ իրեն պաշտպանութիւնը՝ իւր ապահովագոյն պահպանութեան համար՝ այն տեղի իշխանութեան մէջ եղող զինուորական վերին կառավարութենէն ընդունի։

5. Յիշեալ քաղաքն ունենայ իր քաղաքային խորհրդարանը. որ կազմուի դատաւորէ մը ու տասուերկու խորհրդականէ, որոնք ընտրուին՝ ըստ օրինի՝ քաղաքացւոց մէջէն, պաշտօնատեարց եւ պատգամաւորաց ձեռօք։ Այս քաղաքային խորհրդարանն ունենայ կաթուղիկեայ ուղղափառ դաւանանք ունեցող քարտուղար մը. որն որ քաղքին շրջանին մէջ յառաջ եկած գրութիւնները պատրաստելու մէջ ատակ, լաւ, արդարասէր ըլլայ. եւ որուն գործքն ու աշխա-

տանքն արդարապէս յարգուի ու ճանչցուի։ Դատաւորին ազատ ընտրութիւնն ըլլայ՝ Ցունուարի 4ին. եւ աչքի առջեւ ըլլուի որ թէ՛ դատաւորութեան եւ թէ՛ խորհրդականութեան պաշտօնին յարմար ու լաւ խղճմտանք ունեցող մարդիկ ու արդարութեան եռանդուն կուսակիցներն ընտրուին։ — Իսկ իրենց մէջ ըլլալի դատաստանական խնդրոց կարգին նկատմամբ կը կարգադրենք որ այսպիսի խնդիրներուն պարտուպատշաճ քննութիւնը՝ որոնք ըլլան թէ՛ քաղաքային, թէ՛ տնտեսական ու թէ՛ պատժական, ամբաստանողները՝ խնդիրն այս քաղքին պաշտօնատարաց՝ իբրեւ առաջին ատենին առջեւը տանին։ Ասկից — եթէ իրին նիւթն այնպէս կը պահանջէ, — որպէս զի անոնք աւելի հասուն կերպով քննութեան տակ ձգուին՝ մեր արքունական ատենին կամ թագաւորական կառավարութեան, իսկ ի տնտեսական մասին՝ մեր արքունական գանձուն վարչութեան տարուելու են։ Վերն ա՛ն ըսինք թէ պատժական խնդիրներն այս քաղքին պաշտօնատարաց առջեւը դրուին. ուստի եւ սուսերի իրաւունքը (jus gladii), որն որ այս հասարակութեան արդէն ասկից յառաջ շնորհուած էր, ասկից ետքն ալ գթածաբար կը շնորհենք, այն եղանակաւորութեամբ՝ որ այս տեսակ պատժական խնդրոց վճիռներուն բանակցութիւնը՝ տէրութեան օրինաց եւ օրինաւոր սովորութեան եւ ընդունուած իրաւանց թելադրութեան համեմատ՝ վերոյիշեալ Գիւգիւլլէօ գաւառին — որուն մէջ այն քաղաքը

կեցած է, — պաշտօնատէրները ժողովին։ Եւ ասոնց մէջէն (այն սովորութեան համեմատ, որ ուրիշ արտօնացեալ քաղաքաց համար ալ նմանօրինակ խնդրոց մէջ կայ,) մեր այն տեղի դատաստանական ատենին կամ արքունական կառավարութեան դիմելու եւ բողոքելու հրաման ըլլայ։ Բայց քիչ մը յառաջ յիշուած խնդրոց մէջ, եթէ անոնց բնութիւնն այնպէս կը բերէ՝ ներեալ է բողոքել առ մեր վեհափառութիւնն։ Իսկ եթէ քաղաքացիներէն մէկը օտարի մը հետ կը պայքարի կամ անոր վրայ ամբաստանութիւն ունի, հարկ է որ անոր դատաստանական ատենին դիմէ. վասն զի ամբաստանողն՝ ամբաստանեալին ատենին պարտական է հետեւիլ։

6. Նմանապէս ազատ է վաճառականութիւնը, զոր այս հասարակութիւնը հիմակ ալ ունի։ Կը շնորհենք իրեն ասկից ետքն ալ, որ թէ՛ ներուած առեւտրի նիւթերովը՝ մեծ ու փոքր չափով (all' in Grosso, all' in Minuta) Դրանսիլուանիոյ իշխանութեան մէջ՝ դռնաբաց քաղաքաց որեւէ տեղերն իրենց սովորեալ կերպովն առուտուր ընեն, եւ թէ՛ անոնցմով՝ որոնք մեր ուրիշ ժառանգեալ երկիրներն ու գաւառները կը տարուին — ու հատուցանելով կայսերական-թագաւորական հարկերն ու մաքսերը, եւ պահելով՝ ըստ իրաւանց պահելիները, առանց որեւէ իրաւանց դէմ եղող եւ բռնադատեալ տուրքի մը, — կարենայ ազատութեամբ վաճառականութիւն ընել։

7. Սակայն համոզեալ ըլլայ այս հասարակութիւնն որ իրեն արուեստակերտներուն կամ ձեռագործներուն ապահովութեան համար մասնաւոր առանձնաշնորհմունքներ ամենագթած կերպով շնորհելու պիտի բարեհաճինք: Բաց աստի, որպէս զի իրենց վաճառականութիւնն աւելի յառաջացում գտնէ, պարտուպատշաճ օգնութիւնը կարողաբար պիտի մատուցանենք:

8. Կը շնորհենք այս հասարակութեան շաբաթական տօնավաճառներ՝ Երեքշաբթի ու Շաբաթ օրերը: — Իսկ մեծ կամ տարեկան տօնավաճառ՝ տարւոյն չորս եղանակներն, այսինքն՝ Մարտի 25ը՝ Աւետման տօնին օրը. Տեառն մերոյ Համբարձման տօնը. Սեպտեմբեր 25ը՝ Սրբոյն Մատթէի առաքելոյն տօնը. Նոյեմբեր 19ը՝ Սրբուհւոյն Եղիսաբեթի օրը: Այս չորս տարեկան տօնավաճառին ամէն մէկուն — ուրիշ տեղեաց համեմատ — երեք օր տեւող դուարի տօնավաճառ մը նախընթանայ: Սակայն անոր միտ դնելու է, որ չըլլայ թէ տարեկան տօնավաճառները՝ դրացի տեղեաց հետ միեւնոյն օրն իյնան կամ հանդիպին:

9. Որովհետեւ գթութեամբ բարեհաճեցանք որ այս հասարակութիւնը, տուրքը՝ զոր գերդաստանաց, տանց, մսահատութեան, ինչպէս նաեւ ոգեւոր ըմպելեաց համար մինչեւ հիմակ կը վճարէր, միանգամ ընդ միշտ փրկանաւորել կարենայ. եւ ըստ հետեւորդի մենք ալ ասոր համար արդէն տասնուվեց հազար ֆիորին ընդունեցանք, եւ յիշեալ հասա-

րակութիւնն այս գումարը իրօք մեր գանձուն վճարած է. անոր համար կը յայտնենք թէ այս հասարակութիւնը տրոց վճարմունքէն ցմիշտ ազատ կը կացուցանենք. վերապահելով՝ գաւառական գանձուն վճարուելի տուրքը. զոր նոյն իսկ քաղաքացիք՝ տէրութեան ուրիշ հարկատու քաղաքացիներուն պէս, մեր հրամանին համեմատ՝ վճարելու պարտական են:

10. Կը հաւանինք ու կը շնորհենք որ այս հասարակութիւնը շատ հեղ յիշուած Եղիսաբեթուպոլիս քաղքին սահմաններէն ներս, այս քաղքին քով անցնող Գիւգիւլլէօ գետին վրայ, երթեւեկութեան մեծագոյն դիւրութեան համար երկու կամուրջ կարենայ շինել. շինածները՝ պահպանել. եւ ծախքերը գոցելու համար վերոգրեալ Գիւգիւլլէօ եւ դրացի գաւառներուն կամրջատուրքի նկատմամբ եղած օրինաց եւ սովորութեան համեմատ՝ անոնց վրայէն անցնող ճանապարհորդներէն — որոնք օրինաց ձեռօք անոնցմէ ազատ չեն, — այսուհետեւ ալ տուրք պահանջել կարենայ. սակայն առանց ուրիշ մաքսերու վնաս հասցընելու. բայց այնպիսի պայմանաւ որ պարտական ըլլայ հասարակութիւնը քաղաքացւոց համար հեշտին ու ճամբորդաց համար՝ անդին անցնելու յարմար կամուրջները լաւ վիճակի մէջ պահել:

11. Կ'ուզենք որ՝ երբ որ հարկն այնպէս պահանջէ — բայց ոչ թէ թշնամւոյն յարձակման հետեւութեամբը, — եթէ քաղքին ազգայիններն իրենց աւելի յարգի առեւտրոյ նիւ-

թերը Տրանսիլուանիոյ՝ բերդերով ու ամրութիւններով պատսպարուած քաղաքներուն մէջ զետեղել եւ մեծագոյն ապահովութեան համար պահել ուզեն, այն քաղաքները զանոնք ներս ընդունին եւ հոն իրենց վաճառքներուն պահպանութեանը համար յարմար տեղ տան։

12. Զինուորաց տեղ տալէն, զինուոր պահելու պարտաւորութենէն, նախամոլք տալէն եւ ասոնց նման ուրիշ ծանրաբեռնութիւններէն այս հասարակութիւնը դուրս կ՚առնունք եւ ազատ կը հրատարակենք։ Վերջապէս՝

13. Տրանսիլուանիայի մէջ ասդին անդին ցրուած Հայերն (ի բաց առեալ Հայաքաղաքացիքը) ուր ալ բնակին, մինչեւ որ երրորդ տեղ մը ժողովելով՝ իրենց համար յատուկ առանձնաշնորհութիւններ չեն վաստըկիր, տուրքերու եւ ուրիշ հասարակաց ծանրաբեռնութեանց համեմատեալ պարտաւորութիւնը կրելու, ինչպէս նաեւ այն տուրքերու նկատմամբ՝ ինչ որ իրենց վրայ դրուած է, այս հասարակութեան վերատեսչութեանը տակ ձգուին։ Սակայն՝ բացառաբար այս քաղքին նպաստաւոր եղած բաներուն մէջ, օգնութիւն մատուցանելու պարտաւորեալ չեն։

Մեր այս ամենագթած բարեհաճութիւնը, վերոյիշեալ շնորհմունքներուն եւ արտօնութիւններուն նկատմամբ՝ Եղիսաբեթուպոլիս բնակող հիմայ եւ ապագայ ժամանակին հռոմէական ուղղափառ սուրբ հաւատքը դաւանող հայ ազգին, չէ թէ միայն գթածաբար կը յայտնենք, այլ

նաեւ Ձեզի՝ մեծապատիւ, յարգելի, արժանացեալ, մեծազգի, վերապատուեալ, բարձրացեալ, ազնուատոհմ, քաջանուն, ինչպէս նաեւ շրջահայեաց արանց. մեր արքունական կառավարութեան, Գրանսիլուանիոյ իշխանութեան ամէն եւ միացեալ կարգացն եւ վիճակաց, գլխաւոր ու փոխանակի գաւառապետաց, դարձեալ՝ ազնուազարմ դատաւորաց, սըգոյական ատենից վերատեսչաց, եւ արքունական դատաւորաց, սաքսոնական քաղաքաց Թագաւորական ատենակալաց, քաղաքապետաց, եւ ամէն որեւիցէ կերպով մեր իշխանութեան ներքեւն եղողներուն կը ծանուցանենք ու կը հրամայենք, որ վերն անուանեալ հայ ժողովուրդը՝ չէ թէ միայն Գրանսիլուանիոյ մէջ մնալու, այլ նաեւ վերը յառաջ բերուած արտօնութիւններն, ինչպէս — ապագայ — ճշմարիտ բնակիչներուն ամբողջապէս վայելելու, ե՛ւ ընդհանուր ե՛ւ առանձինն այն բաներն, որ վերը յիշուած կէտերուն մէջ բովանդակուած են, պահելու թոյլ տանք. Դուք, որ զիրենք առանձնաշնորհութեանց՝ որեւէ կերպով ընդդիմացողներուն դէմ պատսպարելու պարտական էք. զորոնք մենք առանց երկմտութեան յիշեալ Հայոց եւ իրենց յաջորդներուն խոստացած ենք: փոխադարձաբար իրենք ալ մեզի ու մեր վեհափառ տոհմին նկատմամբ միտութիւն, հաւատարմութիւն ու հպատակութիւն խոստացած են. որ թէ՛ մեզի ու թէ՛ Գրանսիլուանիոյ մէկալ սիրելի ժողովրդոց առջեւ սիրելի ու պաշտպանեալ ըլլան:

Որ բանին յիշատակին, ամրութեան ու մնացականութեան համար որոշեցինք, վերը յիշուած հայ ազգին իրաւանցն առաջիկայ հրովարտակը՝ ապագայ ժամանակին ապահովութեանը համար՝ մեր մեծագոյն կախուած կնիքին տակը հրատարակելու եւ շնորհելու. անվնաս թողլով ուրիշին իրաւունքը։

Տուեալ ի քաղաքի մերում, ի Վիեննա Աւստրիոյ. յամի Տեառն 1758, Նոյեմբեր ամսոյն 28երորդ օրը. Մեր կառավարութեան 19երորդ տարին. — Մարիամ Թերեզիա. յ. ձ. Գաբրիէլ Պէդլէն կոմս. յ. ձ. Ալբերդոս Հօմլեօյի տէ Չիք Հօմլեօ յ. ձ.„։

Ուստի մենք, Եղիսաբեթուպոլսոյ օրինաւոր դատաւորին, խորհրդականներուն եւ մէկալ երդուեալ քաղաքացեացը՝ վերոյիշեալ աղաչանքը գթածաբար լսելով եւ բարեհաճութեամբ ընդունելով՝ վերը գրած արտօնութեանց պատճէնը — որ մեր հունգարական-դրանսիլուանիական արքունեաց պաշտօնարանին դիւանին մէջ գտնուած օրինակին հետ համեմատելով՝ ամէն կէտին ու ամէն յաւելուածին հետ ճիշդ եւ համաձայն գտնուեցաւ — մեր ներկայ գրութեամբն՝ առանց մէկ կրճատման, կամ յաւելման, կամ փոփոխութեան. առանց հին հրատարակութեան ժամանակ պատահած ընդդիմադարձութեանց, որոնք ըստ մասին յետս կոչուած են, ու ըստ մասին անկից ետքը յաջորդող մեր կարգադրութեան ու որոշման հետեւութեամբն՝ իրենք իրենցմէ դադրած են. ա-

նոնց բովանդակած ամէն յօդուածներն ու կէ-
տերը — ի բաց առեալ զանոնք, որոնք վերոյի-
շեալ արտօնութեանց 2. 3 եւ 5երորդ կէտե-
րուն մէջ պարունակուած են. եւ որոնք քաղա-
քացիութեան եւ զինման կարգադրութեանց, եւ
որոշուած ատենական վերաքննութեան նկատ-
մամբ՝ մեր տուած որոշմանցը կը հակառակին.
— որ հրամանաց ու որոշմանց արժէքն ամէն
տեղ առանց վնասու եւ առանց հակառակու-
թեան կ'ուզենք որ պահպանուին — կ'ընդու-
նինք, կը շնորհենք ու կ'ամրացընենք: Եւ Եղի-
սաբեթուպոլսոյ բոլոր քաղաքացեացը, անոնց
ժառանգներուն եւ անոնց երկսեռ յաջորդներուն
նկատմամբ մշտնջենապէս իբրեւ վաւերացեալ
եւ օրինաւոր կը հաստատենք՝ որ մենք ու մեր
յաջորդներն, ինչպէս նաեւ ա՛ն ամէնք, որոնց կը
պատկանի, կամ պիտի պատկանի, պահեն: —
Մանաւանդ թէ կը հրամայենք, որ հինգերորդ
կէտին՝ այն յաւելուածն ալ, որուն համեմատ
Գիւգիւլլէօ գաւառին խորհրդականները՝ պատ-
ժական խնդրոց վերաքննութեանը նկատմամբ
ընելու պարտական էին՝ ցմիշտ դուրս հանուած
սեպուի, եւ այս մասին մէջ ալ, կարգաւոր դա-
տաւորին եւ իր խորհրդականներուն. մեր գերա-
գոյն հրամանացը համեմատ լիուլի իշխանութիւն
շնորհուի: — Նկատմամբ մնացածներուն՝ բաց-
որոշապէս կ'ուզենք, որ այն տարեկան տօնավա-
ճառներն, որոնք Աստուածածնայ Աւետման, եւ
Տեառն մերոյ Համբարձման տօնին կ'իյնան՝ միշտ
ամէնէն մօտիկ լուր օրուան դրուին: — Ասկից

*զատ՝ որպէս զի Հայոց փոյթն ու ջանքը՝ Տրանսիլուանիոյ մեծ իշխանութեան մէջ, վաճառականութեան յառաջացմանը ձեռօք աւելի կենդանանայ — միշտ յարմարելով արդէն եղած ու ասկից ետքն ալ ըլլալի երեսնեակի որոշմունքներուն — եւ որպէս զի առեւտրական գործոց, արուեստակերտաց տարածութեան եւ գործարանաց կանգնմանը մէջ աւելի մեծ եռանդով գործեն, — որոշեցինք որ իրենց յաջորդ շնորհմունքներն ընենք։*

1. *Կը պատուիրենք, որ վերոյիշեալ քաղաքն եւ իր քաղաքացիները, գաւառէն — որուն կը վերաբերին — ինչպէս նաեւ ուրիշ ամէն տեսակ իրաւասութեան իշխանութենէն, այնպէս ատենական՝ ինչպէս քաղաքական ու տնտեսական գործառնութեանց մէջ՝ ասկից ետքն ալ բոլորովին ազատ ըլլան. ու միայն մեր արքունական կառավարութենէն կախում ունենան։*

2. *Թէպէտ այն որոշման համեմատ, որն որ Տրանսիլուանիոյ մէջ ատենական վերաքննութեան համար, մեր կողմանէ գթածաբար տրուած է՝ անոնց որեւէ տիտղոսով տրուած ու գործադրուելի խնդիրները՝ սովորեալ բողոքման ձեռօք, ա՛լ՝ չէ թէ մեր թագաւորական կառավարութեան, այլ անընդմիջապէս մեր արքունական ատենակալութեան կ'երթան — այն դատաստանական գործոց նիւթերուն համար՝ որոնք իրենց կողմանէ հոն յառաջ կը մատուցուին, եւ որոնք որ առեւտրին հետ որեւիցէ կերպով յարաբերութեան մէջ են, կամ որոնք որ, անոնց*

նկատմամբ, ինչեւիցէ տեսակ յապաղումն կը բերեն — տարւոյն ընթացքին մէջ Ցայտնութեան ժամանակամիջոցը կ՚որոշենք. որուն մէջ՝ այդրէնածիններուն ուրիշ գործքերը՝ միա՛յն այն ատեն ձեռք առնուին ու վրանին քննութիւն ըլլուի, երբ այս տեսակ նիւթերը լմնցած, վերջացած են:

3. Որոշեցինք՝ որ այս մեր կարգադրութիւնը, մնայուն ատեաններուն եւ տեղական խորհրդանոցներուն նկատմամբ՝ այնչափ ընդարձակենք, որ — որովհետեւ վաճառականաց ձեռօք՝ մանաւանդ պարտքերու համար, սովորաբար շատ դատախազութիւններ կ՚ըլլան, անոր համար — այս՝ արդէն իսկ օրինաց ձեռօք արտօնացեալներուն դատը, ձեռք առնուի եւ անոնց քննութեանը նկատմամբ՝ մասնաւոր նկատում ըլլուի:

4. Որովհետեւ ընդունուած ընդհանուր քաղաքացիութեան ձեռօք, այս քաղքին բնակիչներն ալ, երկրին՝ իբրեւ որդիքն ընդունուեցան, գթածաբար կը հրամայենք, որ եթէ անոնք, եւ անոնց զաւկըներն, իրենք զիրենք հրապարակական պաշտօններու ատակ ընեն, այն պաշտօններուն իրենք ալ ա՛յնպէս ընդունուին, ինչպէս երկրին ուրիշ զաւկըները:

Վերոյիշեալ քաղքին առանձնաշնորհութեան հաստատութիւնը, եւ անոր՝ վերոյիշեալ կերպով — տրուած նոր արտօնութեանց ձեռօք ալ — ցուցուցած ամենագթած բացորոշումնիս, չէ թէ միայն ա՛յս քաղաքացւոց գթածաբար

կ՚արտայայտենք, հապա Ձեզի ալ՝ գերապատիւ, վերապատուեալ, արժանացեալ, մեծազգի, յարգեալ, բարձրացեալ, ազնուատոհմ, քաջանուն, շրջահայեաց արանց — ինչպէս նաեւ մեր Դրանսիլուանիոյ ժառանգեալ իշխանութեան թագաւորական վերին կառավարութեան ամէն կարգացն ու վիճակացը, գաւառաց, գլխաւոր եւ փոխանակի գաւառապետացը՝ քաղաքներու դատաւորացն ու քաղաքապետացը, եւ այն ամենուն՝ որոնք, որեւիցէ կերպով մեր իրաւանց իշխանութեանը տակ ձգուած են՝ կը ծանուցանենք ու կը հրամայենք, որ վերագրեալ քաղքին, թէ հիմակուան եւ թէ ապագայ քաղաքացիներն — ընդհանրապէս եւ առանձինն, ինչ որ վերոյիշեալ կէտերուն մէջ բովանդակուած են, հաստատութեամբ պահէք. եւ զիրենք՝ այս արտօնութեան որեւէ կերպով ընդդիմացողին դէմ՝ պաշտպանէք: Որ բանին յիշատակին եւ պահպանութեանը համար, որոշեցինք, որ այս հաստատութեան թուղթը, պատճէնի ձեւով, յիշեալ քաղքին եւ իր ապագայ քաղաքացեացն ապահովութեանը համար, մեր կախած մեծ կնքովը հրատարակենք ու շնորհենք. անվնաս պահելով ուրիշին իրաւունքը:

Տուեալ Աւստրիոյ Վիեննա քաղաքը. յամի Տեառն 1785, մեր հռոմէական կայսրութեան քսաներորդ եւ ժառանգեալ իշխանութեան հինգերորդ տարւոյն՝ յունուար ամսոյն 27երորդ օրը:

*Յովսէփ. յ. ձ.*

Կարոլոս Բալֆի կոմս, յ. ձ.

Մեծ Այդայիի Յովսէփ Տօնաթ. յ. ձ.„

Եթէ ընթերցողը մտադրութեամբ կարդացած է առաջիկայ արտօնութեանց կոնդակը, կը գտնէ թէ աղաչանաց թղթէն, նշանաւոր կէտ մը դուրս մնացած է։ Եւ այս այն կէտն է, որուն մէջ, Եղիսաբեթուպոլսեցիք կ'աղաչէին կայսեր, որ քաղքին դիմացն եղած ընդարձակ հէվէշ դաշտավայրն իրենց տրուի։ — Ասոր վրայ հոս ամենեւին խօսք չկայ։ — Մարդ կը կարծէ թէ այս կէտը՝ բոլորովին մոռցուած, կամ կամօք թող տրուած է արտօնութեանց պատճէնին մէջէն։ Եւ կամ կայսրն՝ անտես ըրած ու տեղեկութիւն առնուլ ուզած չըլլայ այս բանին վրայօք։ — Իրօք ալ, այս, այսպէս է։ Այս կէտը կոնդակին մէջ ամենեւին շօշափուած չէ։ — Թէ ինչո՞ւ համար. չէր գիտեր Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնը։ Բայց ասոր պատճառը կրնանք գտնել. մանաւանդ եթէ մտածելու ըլլանք, այն պարագան, թէ իրե՛նք էին աղաչողներն, որ այս՝ ըստ մասին իրենց, ու ըստ մասին գանձուն օգտակար աղաչանքը՝ կայսրը, հարցափորձի եւ տեղեկութեան համար, Դրանսիլուանիոյ վերին կառավարութեան առջեւը չդնէ. հապա իբրեւ ինքնակալ տէր, ու պարզապէս իրմէն կախում ունեցող բան, ազատաբար որոշէ։

Ուստի, որչափ որ ուրախացան ընդունած նորանոր արտօնութեանց ստացմանը՝ այնչափ ալ աւելի տխրեցան, այն բանին վրայ որ խնդրած աղաչանքին երկրորդ կէտը դուրս ինկած ու մոռացութեան մէջ մնացած է։ Եւ ասիկայ՝ այն-

չափ աւելի ցաւ պատճառեց իրենց, որչափ, այն միջոցին երբ որ կայսրն 1773ին Պաշպալով եկած էր — ու ազգայինք ցուցըցած էին իրեն այս երկրին գիրքն ու որպիսութիւնը — խոստացած էր, որ բանը կը կարգադրէ, կը լմնցընէ՝ ի նպաստ Հայ Հասարակութեան։

Ազգայինք համարելով որ ձեռքի տակէն խաղ մը խաղացող կայ, եւ կամ պաշտօնեաներուն մէկն՝ այն սաքսոն Հասարակութեան պաշտպան եղած է, մտածեցին որ պատգամաւորութիւն մը խրկեն կայսեր։ — Իրօք (1785) աւգոստոս 22ին, արտաքոյ կարգի ընդհանուր ժողովք մը գումարելով՝ քաղաքաբաշխութիւնը խորհուրդ ըրաւ, թէ նոր հրատարակուած արտօնութեանց դէմ յարուցած ընդդիմադրութեանց՝ յետս կոչումն ընել տալու, եւ թէ մանաւանդ, Շարոշ գեղին ձեռքն եղած հէվէշը, որ եւ է կերպով ձեռք բերելու համար։ Աս ժողովքին մէջ միաձայն որոշուեցաւ որ Վիեննա նորէն երեսփոխաններ խրկուին. որոնք գործքին ետեւէն իյնալով՝ խնդիրն, ի նպաստ քաղքին լմնցընեն։ Աղաչեցին Վ. Տէր Մարտինոս Չիգիեան ձեռնարկու եւ գիտնական քահանային, Լուսիկ Լէնկէլեանին եւ Ամիրայ Դանիէլեանին, որ բարեհաճին յանձն առնելու այս բանս։ Երթան Վիեննա եւ կարողութիւններնուն չափ աշխատին, ու — որչափ ալ արժէ, թող արժէ — այն երկիրը՝ կերպով մը ձեռք բերեն։

Երբ վերոյգրեալ անձինք, յանձն առին պատգամաւորութիւնը՝ Հասարակութիւնը խոս-

տացաւ Չիգիեանին, ստանալէ երկրին մէջէն, ցորչափ կ'ապրի, քառասուն արտավար տեղ, եւ տասը ձողաչափ վառելու փայտ։ Ի դիպուածի որ երեսփոխանք չյաջողցընէին երկրին ստացումն՝ այն ժամանակ, եկեղեցականն — ինչպէս անձամբ յայտնեց — ուրիշ հատուցումն պիտի չուզէր, եթէ ոչ՝ ծախքն որ պիտի ընէ, Վիեննա երթալուն, գալուն՝ եւ հոն ապրելուն համար։ — Մէկալ երկու պատգամաւորին խոստացաւ քաղաքն, ամէն ամիս հարիւրական ֆիորին։ Ասով գոհ եղան երեսփոխանք, եւ խոստացան, որ ուրիշ բանով հասարակութիւնն անհանգիստ չընեն։

Երկրորդ օրն, որոշեց հասարակութիւնն, որ ըստ սովորութեան ծառայ մըն ալ տայ իրենց՝ իբրեւ օգնական։ Աս ծառան Միքայէլ Պապիկն էր։ Ասոր ալ խոստացաւ հասարակութիւնն ամէն ամիս երեսուն հունգարական ֆիորին։ Բայց աւելցուց, որ ետ դառնալէն ետեւ չհամարձակի բանով մը քաղաքաբաշխութիւնն անհանգիստ ընելու։ — Բաց ասկէ՝ պատգամաւորաց սիրով ու սրտանց ծառայութիւն ընէ. եւ բոլոր ուժովը ջանայ, որ չըլլայ թէ անհաճոյ խօսքի կամ կռուոյ մը պատճառ ըլլայ. որովհետեւ լիակատար իշխանութիւն տրուած է երեսփոխանաց, զինք ճամբելու եւ ուրիշ ծառայ մ'առնելու։

Ահաւասիկ ասոր նկատմամբ քաղաքային խորհրդին եւ հարիւրոց ժողովոյն մեզի թողուցած արձանագրութիւնը։

"Աստուծոյ ողորմութեամբն 1785, $22^{da}$ Augusti։ Եղեւ շնորհաւոր ընտրութիւն մեր

Պ. Հաստարակութեանը մէջ, պէջը երթալու ի կողմանէ նոր Privilegiumինը[1] Contradictioին[2] համար, եւ հէվէշ անունով տեղին համար. որն որ, ասօր մեր վէջինը[3] շարըշ Գեղը պիրուիդ[4] կու անէ, մեր գըթած կայսէրին, մեզի բօլոր Comunitaշին գընտըվելու։ Ընտրեցինք խընդըրըվածքով օր անձերըն արնուն զայս աշխատանքը. եւ միամիտ սըրտօվ քալին, որպէս օր կարօղութիւնը տանի, խարճօվալ ըլայ նայ, գընտըվին։ Նախ եւ յարաջ զԳերհարգելի Տէր Մարտիրոսըն Գօտէրի ջիգիան. Պ. Ա. լուսիկըն Վարդանի լէնկէլեան եւ զՊ. Ա. Ամիրան խնկանոսի Տանիէլեան. Որոնք որպէս միամիտ եւ բարեկամ եղբայրք, սիրօվ ընդունելով անձերըն արին մեր ալվար գըրօվածնուս դիմացեն սիրով աշխատելու։ Celebrato Sessio[5]. Praeside Domino Emmanuele Csìki, Judice Primariae. — Assessoribus: D. D. Luca Daniel, Petro Daniel, Zachariae Zakarias, Michaele Csiki, Luca Ötvös, Luca Lengyel, Dominico Szentpéteri, Emerico Daniel, Lazaro Csiki, notario. — Ex centum viratu: Deodato Ötves, Substituto Oratore et

1 Առանձնաշնորհութիւն, արտօնութիւն։

2 Ընդդիմութիւն, ընդդիմադարձութիւն։

3 Դրացի։

4 Հունգ. բառ է. ունենալ, ստանալ կը նշանակէ։

5 Ամբողջ լատիներէնին համառօտ իմաստն է. կատարած նիստ. Աղա Էմմանուէլ Չիգիեան պլխաւոր դատաւորին նախագահութեամբը, Դանիէլեան, Զաքարեան ... խորհրդական Աղաներուն — եւ հարիւրոց ժողովին Ա. Աստուածատուր Ոսկերիչեան փոխանակի ատենախօսին, Ցարութիւն Պապտէպովեանին ... առընթերակացութեամբը։

Paschale Kabdebov, Zachariae Issekutz, Theodoro, Emer. Daniel, Joanne Zakarias, Stephano Gaspár, Antonio Lukács, Joanne Kosotán, Gregorio Patruban, Paschale Szentpéteri, Theodoro Daniel, Antonio Khell.

Որ Ա. Deputatusնուն Պ. Բօլօր Հասարակութիւնն ալ աշխատանացն համար այս մեր սիրելի Եղբայրցըն խօսդացաւ տալու, որպէս օր իրենց հրամանքներն ալ բատ կամօք[1] ալ վար գըրուած կերպիւն օպլիկօվադ[2] էղան: Նախ եւ առաջ վերոյ յիշեալ Գերհարգելին, դէյ օզկայ հախ չուզի. այլ թէ օր զվերոյ յիշեալ հէվէշըն չէ միայն զընդրէկը, այլ գոնեայ զկէսըն մինչ դարըն, իրենց հրամանքները Ա. Deputatusներն զընտըրվին նայ, տըրվի նումայ Գերհարգելուն ad diesvitae[3], 40, Idest քարսուն Jugerum[4] այդ գետնէն. պաշխայ 10 խուլաճ. Idest տասը կըրակի փատ. օզկայ բան չէ: Բայց (որէն Աստուած հէրի անէ) օր չիգընտըրվէյին, ոչ իքմընալ հէվէշէն նայ՝ շատ անգամ յիշեալ գէրհարգէլուն խօսդաձաւ դէյ communitasին սըրտին համար մէկ պան մը չուզի Communitasէն. նումայ զIntertentian[5] ասգից մինչեւ պէջը, հոն ալ մինչեւ տունը գալօվ խաղաղութեամբ տայ

---

1 Կարծեմ՝ յօժարակամ, յօժար կամօք պիտի նշանակէ:

2 Obligo. պարտաւորել, խոստանալ:

3 Ցկեանս, ցորչափ ապրի:

4 Այս ինքն՝ քառասուն արտավար:

5 Պահպանութիւն, ծախք, սնունդ, ապրուստ, կերակուր:

Պ. Communitaշըն զIntertentiան, օգկայ բան չի կամէնայ:

Պ. Ա. Լուսիկին եւ Պ. Ա. Ամիրային խօսդացաւ Պ. Հասարակութիւնը, մէկին մէկին հախ ամսեն գօլօխ, մաճրի 100, Idest հարուր մաճրի. օգկայ բան ապսօլուդէյ չէյ: Որին իրենց հըրամանքներն ալ գօնդէնդ [1] էղան. եւ օպլիկօվադ էղան, որ քան կարողութիւնըն տանի նայ, աշխատէլու սիրօվ, եւ դէ Աստուծվօվ տուն գալօվ պէջէն, նայ օչ մէկ սօյ մը praetextuշի [2] տակ, մէկ խօսօք մագար ընտօր, որն օր հիմպի մարդը չի կարնայ շաղըշելու, դէ իքմը Instantialiter [3] կամէնային ալ ալ ուզելու Communitaշէն, նայ տեղ ունէնայ նոյն ուզվաձքըն: Այլ որպէս հիմպի օր գօնդենդին էղիլ, նայ այն ժամանակն ալ գօնդէնդ իլան եւ զՊ. Communitaշըն molestaluit [4] չի անին: Սէպ տալու մեր Ա. Deputatusներն բօլոր խարճին պարտական պիլան:„

„Anno 1785, die 23 Augusti, Celebrato Sessio, Praeside D. S. D. Michaele Csiki, եւ այլն:

Unanimi voto [5] կըտըրըվեցաւ, որ մէկ տըղայ մը խնաշ [6] արնուն մեր Պ. Ա. Deputaդուշներն հէտվըները. այսինքն զՄիքայէլը Պապիկի: Եւ խօսդացաւ Պ. Հասարակութիւնը ամսեն հախ

1 Գոհ, հաւան:

2 Պատճառանք, պատրուակ:

3 Աղերսելով, աղաչանօք:

4 Թախանձել, նեղել, անհանգիստ ընել:

5 Միաձայն, միաբան քուէով:

6 Ծառայ, տղայ. հունգարերէն է:

Intertentiայօվըն ամենօվն մաճրի 30, օգկայ բան absolute չէյ։ Եւ այս տղան ալ Աստուծվով տուն գալով չի իշխէյ մէկ կերպիւ մըն ալ Instantiայօվըն պէղըէցընելու[1] զՊ. Հասարակութիւնըն. զէ զուրի պիլայ. այլ օգդըվի այսօվը. զէ չի պի գըն՚ըվի իքմըն ալ։ Ինքըն ալ օպիլիկաձիայի տակ կի ձըգվի, օր մեր Պ. Ա. Deputatuշնուն հալալ եւ սըրտանց ծառութիւնն անէլու ջանայ. ընդրէկ ուժօվըն ջանայ, օր չիլայ դէյ անշայ տայ իքմը կըըվի, կամ ավէլի պակաս կալաճոց[2]։ Զէ թէ օր իքմը անէր (զօրն որ չինք գումնի[3]) նայ պի ունենան զայս երեք Պ. Ա. Deputatusներըն facultaշ[4], օգկայ ինաշ վարձէլու եւ դարայ ճամփայ տալու։„

Պատգամաւորք ճամբայ ելան։ Եւ ինչպէս հետեւութիւնը պիտի ցուցընէ, որովհետեւ շատ դժուարին եւ գրեթէ անհնարին էր զպաշտօնեաները վաստըկելու, մանաւանդ զանոնք՝ որոնք որ արդէն նոր արտօնագրին քանի մը կէտերուն համար շատ վշտացած էին Հայոց վրայ. անոր համար՝ առանց միջնորդ մը փնտռելու շիտակ կայսեր դիմեցին։

Ինքնակալն, որ առաջիկայ խնդրին լաւ տեղեակ էր. եւ ինչպէս ըսինք, անձամբ ականատես եղած էր, որ այն Հէվէշ ըսուած երկիրն ըստ բնութեան ու ըստ դրից միայն Եղիսաբե-

---

1 Անհանգիստ ընել, նեղել։

2 Խօսք, զրոյց։

3 Խորհել, մտածել, կարծել։

4 Իշխանութիւն։

*թուպոլսոյ հասարակութեան կրնայ վերաբերիլ։ — Որպէս զի բանն առանց երկնցուելու եւ ընդդիմութեան վերջանայ՝ — (այսպէս պէտք ենք ենթադրել, որովհետեւ ասոր նկատմամբ մասնաւոր գրութիւն մը չունինք ձեռուընիս,) առանց մէկուն գիտութեանն, առանց իր պաշտօնէից մէկուն խորհուրդը կամ կարծիքը հարցընելու, 1785 Նոյ. 4ին, Հէվէշ երկրին անմիջապէս Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան ձեռքն անցընելու վրայօք, յաջորդ՝ կարճառօտ, կտրուկ ու ապշեցուցիչ հրամանագիրը գրեց իր յատուկ ձեռօքը, կտոր մը թղթի վրայ։*

*Վիեննա 1785, Նոյեմբեր 4։*

*"Առանց այս երկրին՝ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնը չի կրնար կանգուն կենալ։ Յատուկ աչօքս, այսպէս գտայ։ Ուստի եւ Հէվէշ երկիրն, անմիջապէս հասարակութեան պէտք է յանձնել. եւ որ եւ է ժամանակ ասոր ընդդիմացող գաւառակոմսութիւնն ու սաքսոնական հասարակութիւնը ճամբելու է։*

*Յովսէփ յ. ձ."*

*Յայտնի է, որ կայսրն, այս բանս՝ իր արիւնոտ բնութեան հետեւելով՝ իր սովորական երագութեամբն ըրած լմընցուցած էր։ Բայց ետքէն — ինչպէս կ'երեւայ — երբ որ քանի մ'օր ետքը, այս բանիս վրայ քիչ մը հանդարտ կերպով մտածեց, վճիռն անփոփոխ պահելով՝ անոր ուրիշ կերպարանք մը տուաւ։ — Ահաւասիկ՝ վերոգրեալ հրամանագրին վրայ*

14 օր ետքն եղած եղանակաւորութեան՝ հայերէն թարգմանութիւնը.

“18 Նոյեմբեր. 1785.

Հէվէշ երկրին, Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան տրուելու նկատմամբ ըրած որոշումս, այնպէս մեկնելու է, որ ես Հէվէշ երկրին՝ Հայոց ձեռքն անցնիլը հարկաւոր կը համարիմ։ Եւ այս հասարակութիւնն՝ իր ըրած առեւտրին համար, ինծի նկատմամբ շատ նշանակալից է։

Այսու ամենայնիւ կ՚ընդունիմ ընդհանրապէս, այն եղանակաւորութիւնները, զորոնք՝ այս վախճանին կատարմանը համար, ըստ մասին Եղիսաբեթուպոլսեցիներն ու ըստ մասին պաշտօնեայս լաւ կը համարին[1]։

Յովսէփ. յ. ձ.„

---

1 Ահաւասիկ կրկին հրամանագիրներուն՝ կայսեր յատուկ ձեռօք գրուած գերմաներէն բնագիրը։ Գոնէ գրին սաստիկ գէշութիւնն ու դժուարաւ ընթեռնլի ըլլալը այս բանը կը ցուցնեն։

„W. den 4ten 9br. 1785.

Ohne diesen Terrain die Ebesfalwer Gemeinde kann nicht bestehen. Ich selbst durch Augenschein babe so befunden; soll also der Terrain Heves derselben alsogleich einzuräumen und der immer darwieder streitende Comitat und sächsische Gemeinde abzuweisen.

Joseph.“

„den 18. 9br. 1785.

Meiner Entschlissung wegen der Uebergabe des Terrain Heves an den Elisabetstädter Markte ist nur dahin Ausdeuten, dass ich den in dem Markt sich befindlichen Armeniern die Ueberkommung des Terrain Heves für nöthig Aussehe; und diese Gemeinde wegen den treibende Handel, mir sehr wichtig.

Բայց հրամանագրին մէջ եղանակաւորութիւն մ'ընող չեղաւ։ — Ասանկ կարճ ճամբով մը՝ եղան Եղիսաբեթուպոլսեցիք տէր իբր ուլթսուն արտավար երկրի, զոր ոչ վարձու առնելու եւ ոչ գնելու ի վիճակի էին սաքսոնական յամառեալ հասարակութենէն։ —

Պատգամաւորք՝ իրենց յանձնուած գործքը յաջողութեամբ լմնցընելով՝ ետ դառնալէն ետեւ հաշիւ տուին հասարակութեան այն 2000 ֆիորինին վրայօք, զոր առ այս վախճան ընդունած էին քաղաքաբաշխութենէն։ — Ասիկայ զիրենք ապագայ ժամանակի համար պարտաւորութենէն ու պատասխանատուութենէն արձակեց։

— Ահա որոշումն ըստ բնագիր արձանագրութեան։

"Sub Confluxu Magistratus[1], et Communitatis Elisabethop. die 20a Febr. An. 1786 Celebrato.

Պ. Ա. Լուսիկի լէնկելեան նաեւ Պ. Ա. Ամիրայի Տանիէլեան Պ. Հասարակութիւնը Comendat[2] անէլով նաղտ պան[3] 2 անգամ in Summa 2000 մաճարի, զորըն մեր գըդած

In übrigen genehmige ich zur Erfüllung dieser Zweck in Gantzen, theils von Elisabetstädter vorge. schlagener, theils von dem Cancellar für billig findende Modalitaeten. Joseph."

1 Կրկին լատիներէն բառերուն նշանակութիւն է, միանալով, մէկտեղ ժողովելով։

2 Յանձնել, տալ։

3 Իրական ստակ, դրամ։

կայսերին դիմաց իւր հասարակին շահապետութեանը հանցնեցին. գովեալ աղաչանները Consummata ըէկաձիօնէ,[1] եւ դարնալով յիշեալ ցերվընները ունեցած սումային in Continenti[2] հարկավըրապէս[3] սէպ տըվան. նոյնպէս de integre Absolvaluit[4] եղան։„

## 11.

Ուրիշ տեղ յիշած ենք, թէ որչափ բան ունեցած է քաղաքային վարչութիւնը Ջատիկեան Յովհաննէսեան գերդաստանին հետ. որ Սամուէլ Բօբ բողոքական հովուին երկիրը սեպհականեց, առանց քաղքին հաւանութեանը[5]։

Զբաղինք քիչ մըն ալ այս խնդրով. որովհետեւ պատահածներն աւելի լուսաւոր կերպով տեսնելէն զատ, նաեւ կ'իմանանք այն ատենի յարաբերութիւնները։

Արդէն 1736ին, քաղաքային ժողովն, երբ վերոյիշեալ երկրին գնումը լսեց, խորհուրդ ըրաւ եւ Ջատիկեանին գնած երկրին իրաւունքին դէմ բողոքեց։ Բայց ետքէն պատահելի անհաճոյ բաներուն առջեւն առնուլ ուզելով, առաջարկեց Ջատիկեանին, որ գնած երկիրը քաղքին յանձնէ. ինք անոր գինը սիրով կը հատուցանէ։ Սակայն Ջատիկեան չհաւա-

---

1 Պատգամաւորութիւնին լմնցընելով՝ կատարելով։

2 Անմիջապէս, շուտ մը։

3 Ըստ պատշաճի, ինչպէս որ պէտք է։

4 Ամբողջէն, բոլորովին արձակուեցան։

5 Տես Ա. Հատ. էջ՝ 92—96։

նեցաւ այս բանիս ու խրոխտանօք պատասխանեց քաղաքային իշխանութեան, թէ երկիրն ամենեւին չի տար, մինչեւ որ քաղաքը զանիկայ ձեռքէն դատաստանով չառնու։ — Քաղաքային վարչութիւնն այս բանին հետեւութիւնը նկատելով՝ խոհեմութիւն համարեցաւ՝ որ ուրիշ առաջարկութիւն մ՚ալ ընէ Զատիկեանին. այսինքն ըսէ, թէ ուրիշ տեղ կու տայ իր երկրին փոխարէն։ Բայց երբ որ ասոր ալ չհաւանեցաւ Զատիկեան, այն ատեն յայտնապէս ըսաւ քաղաքաբաշխութիւնը, թէ գիտէ, որ ինչ ընելու է այնպիսի մարդուն հետ, որ միայն իւր անձը կը փնտռէ ու քաղքին դէմ գործելու կը ջանայ։

Ահա պաշտօնական արձանագրութիւնը։

“1736 Մարտի 14. Պ. դըլնաճը եւ քաղաքն, այսպէս խորհուրդ ըրաւ վասն բօրշօմին իւրթին եւ գէտնըրսդընուն սէպըն. Գօնդրատիգօվադ[1] կ՚անէ քաղաքն Աղաչայ զատիկին մօտէն. եւ կուզին ըզիւրթը օր բօրշօմօյին մօտէն գընիլէյ, կամ կի գընէ. Նայ քաղաքը կուզէ. եւ ըսդակը կի դարձընու քաղաքը Աղաչայ զատիկին։ Եւ աղաչայ զատիկը չուզաց գօնդէն[2] ըլլալու. եւ ասաց թէ չի տալ ինչվան ի դատըստան չեթանք մարդիգաց դիմաց. այսինքն թագաւորաց դիմաց։ Նայ քաղաքը այսպէս կասէ, թէ չի աշխատցընուս զքաղաքը, զէ քըզ հրամանոցը տան տեղ պիտայ քաղաքը. ու չէ նայ, գիտենաս հրամաքըտ Աղաչայ զատիկ, որ քաղաքըն չի

1 Դէմ ըսել, ընդդիմանալ, հակառակիլ. լատ. է։

2 Contentus, լատ. է, գոհ, հաւան։

տալ քու հրամանոցը տեղ, եփոր հրամանքըտ քաղքին գօնդրայ[1] կի կաննիս նայ։„

Այս բանս պատահեցաւ 1736 մարտ 14ին։ — Երբ Զատիկեան տեսաւ թէ քաղաքն իրեն դէմ կը սպառնայ ու հասկըցաւ թէ խաղալ չըլլար իշխանութեան հետ, խոհեմութիւն համարեցաւ բանն խաղաղութեամբ լմնցընել, եւ կերպով մը քաղքին հետ հաշտուիլ։ — Իրօք դաշնագրութեան թուղթ մը կը գտնենք, երկու տարի ետքը՝ 1738 Մայիս 26ին գրուած ու Զատիկեան Յովհաննիսեան գերդաստանէն ստորագրուած։ — Ասոր մէջ ժամանակակից իշխանապետներուն եւ մեծամեծներուն անուններն ու երկրին պատմութիւնը համառօտիւ մը յառաջ բերելէն ետեւ դաշնագրութեան թուղթը կը շարունակուի այսպէս. Հաշտութիւն եղաւ Եղիսաբէթ քաղքին եւ Յովհաննէսեանց Զատիկին մէջ, որ Սամուէլ Բօբին երկիրն առած էր աւատառուներուն տեղւոյն հետ։ — Թէպէտ քաղաքն, իր ժամանակին բողոքած էր այս բանիս դէմ. բայց բանը երկու տարի կախ մնաց։ Ուստի հիմայ (1738 մայ. 26) հաշտութիւն եղաւ քաղքին եւ Աղայ Զատիկին մէջ յաջորդ պայմաններով.

Ա. Յովհաննէսեանց ու իր որդիքն, ունեցած երկիրներուն մէջէն աւատառու տունն, իրեն վերաբերած երկիրներովն — այսինքն՝ ամէն ցորենի եւ լոտի դաշտերը — պիտի յանձնեն քաղքին. իրենց պահելով տեղ մը

[1] Հակառակ, դէմ, ընդդէմ. լատ. է։

միայն, մնրացորենի համար, որ Ղարօշի արքունական ճամբուն կողմն է։ Աս կտորէն դուրս, ինչ երկիրներ որ ունի Յովհաննէսեանց, զամէնը քաղքին կու տայ։ Բաց ասկէ ունի քսան ոսկւոյ պարտագիր մը քաղքին վրայ, զան ալ քաղքին կու տայ։ Ասկէ զատ երկու ձի։ Եւ որովհետեւ Յովհաննէսեանց ծախքեր ունի՝ որպէս զի արքունի գանձէն այն երկիրներն իր վրայ անցընէ ու քաղքին վրայ գրել տայ, անոր համար քաղաքաբաշխութիւնը հրաման կու տայ իրեն, որ եթէ հարկ ըլլայ, երկու կամ երեք հարիւր ֆիորին ծախք ընէ։ Իսկ եթէ աւելի ծախքի նստի այս խնդիրն, այն ատեն աւելին՝ քաղաքն իրեն ետ կը դարձընէ, միայն թէ բանը վերջանայ։ Քաղաքաբաշխութիւնը յանձն կ'առնու ա՛ն ալ, որ յիշեալ (1738) տարւոյն հունձքը Յովհաննէսեանցին մնայ։

Բ. Ո՛չ միայն Ջատիկ Յովհաննէսեանց աղան, այլ նաեւ իր գերդաստանն ու որդիքը կը խոստանան, որ ասկէ ետքն, իբրեւ Եղիսաբեթուպոլսոյ քաղաքացի՝ ամէն բանի մէջ քաղաքային օրինաց պիտի հնազանդին. ու ա՛լ պիտի չըսեն թէ ո՛չ Պիրօն եւ ո՛չ ալ քաղաքացի մը՝ իրենց երկիրն ոտք կրնայ կոխել եւ տուն մտնել։ — Յանձն կ'առնուն, որ Պիրօն իրենց ալ այ́նպէս հրամայէ, ինչպէս որ եւ է քաղաքացւոյ։ — Դաշնագրին մէջ կը խոստացուի ա՛ն ալ, որ աղա Ջատիկն ու իր ժառանգներն, ո՛չ հիմայ եւ ո՛չ ետքէն իրենց ունեցած երկիրներէն օտարի, այսինքն հունգարացի աղ-

նուական մարդու, սաքսոնի կամ վալաքի կտոր մը երկիր պիտի ծախեն։ Բայց ներուեցաւ իրենց, որ Հայ քաղաքացւոյ կարենան ծախել կամ գրաւի դնել։ — Վերջապէս կ՚աւելցուի դաշնագրին մէջ, թէ այս կէտերուն չհնազանդողը, յիսուն ոսկի տուգանք վճարէ քաղքին, ու յիսուն ոսկի եկեղեցւոյն։

Ահաւասիկ դաշնագրութեան բուն օրինակը։

"Ամի Տեառն 1738, մայիսի 26։ Էլիզաբէդան։

Եղեւ ըսգսումն բանին ներքոյ գրեալ բունդէրունը ի Ամի Տեառն 1735ին։ Ի ժամանակին կայսերութեանն Հռօմայու վեց երրորդ գառօլուսի. եւ ճէնէրալութեանն Մէհ երկրիս կրօֆ վալէսին. Տիրապետութեանն եւ կուպէրնադօրութեանն[1] սոյն երկրիս դրանզիլվանոյ կրօֆ Հալէր եայնուշին եւ գամարայի Հօֆգօմօրադութեանն[2] արեւապէնէյին[3] եւ այլոց Պատվավոր գամարալիսդանու[4] ֆուն[5] տիտրիւին եւ վինգլըրին. եւ ատմինիսդրադօրութեանն կայսերական տօմինիյումնու[6], եօհան ֆուն Սէնտրէյի։ Եւ այժմուս ճէնէրալութեանն երկրիս

---

1 Կառավար, կուսակալ, լատ. է։

2 Երկու բառը մէկտեղ կը նշանակէ՝ արքունի գանձուն գանձապետութեանը։

3 Անտարակոյս աղաւաղուած անուն մըն է։

4 Արքունի տան Հազարապետ, խնամակալ։

5 Von գերմ. մասնիկն է, որ անուան մ՚առջեւ պարոնութիւն, ազնուականութիւն կը նշանակէ։

6 Կալուածատէրութիւն, երկրակալութիւն։

բրինձ լուբգօվիձ եւ կուպէրնադօրութեանն վերոյ գրեալ կրօֆ Հալէր եայնուշին եւ գամարայի Հօֆգօմօրադութեանն պարօն ըշմիտլինկի. եւ վերոյ գրեալ գամարալիսդանու տիտրիւին եւ վինկլըրին: Եւ եւս ատմինիսդրադօրութեանն կայսերական տօմինիյումու նօյկ եայնուշին: Եւ պիրօվութեանն ի Ամի Տեառն 1735. Աղա նիգօշի իսըրգուձենց. եւ այժմոյս պիրօվութեանն Աղա ամիրայի խնկանոսենց եւ այլոց պատվելի երդվեալ աղայից:

Որ եւ եղեւ Հաշտելութիւնն ի մէջ Էլիզաբէդ քաղաքացոց եւ ի մէջ Աղա զատիկի օվանէսեայնց, որն օր արիլէր, աղա զատիկը զըօբ շօմուին իւրթը, հետ եօպաճին[1] տանը, ու դուսի իւրթերունը[2]: Որին արնէլուն ժամանակըն զվերոյ գրեալ իւրթերն պատվելի քաղաքն գօնդրատիգօվադ արիլէ. ու մնացիլէ բանը կախ 1735էն մինչեւ 1738նին, մայսի 26ին: Վերոյ գրեալ թըւին գօրա եւ միեաբանութեանն երկոցունցն այսինքն պատվելի քաղքինը եւ Աղա զատիկինը եղեւ այսօր, այսբիսի գօնտիձիայեօվ[3] որ ունենայ տալու Աղա զատիկն օվանէսեանցն եւ իւր որդիքն պատվելի քաղաքին, իւրթերուն մէջէն զեօյպաճին տունը, իրեն իւրթերօվն, վերի ու վարի Հօդալներօվն[4]. այս-

---

1 Աւատառու, աւատական, հունգ. է:
2 Երկիր, գետին:
3 Պայման, պայմանադրութիւն, դաշինք:
4 Սահման, հունգ. է:

ինքն ինչ գերնսդան ունի զան տունը, դուսի ու նեսի, զամէնն ցանի, խօտնոցնու դաշդեր եւ այլն։ Միեայն մէկ տեղմն տվաւ Պ. քաղաքն Աղա զատիկին, եօյպաճին իւրթերուն մէջէն, մէկ տեղմն, գուգուրուծի[1], դէպ ի շարօշին դիհու վարը[2], երկրին Ճամիան[3], որ դէպ ի վարը կերթա նա. ու օզկա պիզտի Ճամփա մը կերթա դէպ ի լունգան, նա ան Ճամփուն վերը, աղէկ ձերաձը վերայ, դէպ ի էկսդընուն[4] դին, չէ դէպ ի ջուրը։ Աս գետնէն դուս, ինչ ունի վերոյ գրեայլ եօպաճին տունը հօդարներ նա զամէնն տվաւ քաղաքին. մէկ խօսօք. ու ըզեօ-պաճնա։ Ու ան ալ գիտացվի, օր վէրի վիձի-նուշը[5] եօպաճինը, միհիլ պուրնէտին է. ու վարինը իւօն ռատը, ի պաշֆալօվին մէջ. այս-ինքն, գեղինը, օլախնուն օրմին[6] մէջ։ — Ու պաշխա ունէր մէկ զարխս[7] մը 20 օսգու, քաղ-քին վրայ. նա զան ալ տվաւ քաղքին։ Ու պաշխա տվիլէր 2 ձի տիտրիւին 18 օսգու տեղ, որն որ գօնդրավէրզիայի[8] մէջ էր, զատ երկու ձին, նա զանոր բըէդէնզիօն[9] ալ վրայ թողաւ

---

1 Մարացորեն, տաճկի ցորեն։

2 Ասանկ գրուած է. գուցէ ձոր, սորոտ կը նշա-նակէ։ Կրնայ ըլլալ նաեւ՝ վարը։

3 Երկրի Ճամբայ՝ Գրանսիլուանիայի Հայոց լեզուաւը կը նշանակէ արքունի Ճամբայ։

4 Այսինքն՝ այգեստան, այգիները։

5 Դրացի, սահմանակից։

6 Փողոց, Ճամբայ։

7 Հաշուէթուղթ, դաշնագիր, պարտագիր։

8 Խնդիր, հակառակութիւն, կռիւ։

9 Պահանջք, պահանջում։

ու մնաց. որ ալ շատ չի փնտրէ[1] իքմալ քաղքէն։ Եւ վերոյ գրեալ եօպաճին իւրթէրուն վրայ գիտացվի որ ունի Աղա զատիկը օվանէսեանցն խարճէլու գըմարան ու հանելու ու տա քաղքին ձեռն։ Թէ պիտվական ըլա որ խարճէ, մէկ, երկուս, երեք կամ չորս Հարուր մաճրի, նա խարճէ։ Ու թէ որ էլէր խարճը ինչվան ի չորս Հարուր մաճրի մաճրքի[2] եւ Պ. քաղաքը պի դարձընու Աղա զատիկին չորս Հարուր մաճրուն ըզմէկ Հարուրը։ Եւ թէ որ չի կրնար աղա զատիկն հանելու զեօպաճին տունը իւրթերօմն, սոյն չորս Հարուր մաճրի մաճրքի խարճօմն, նա ունենա Պատվելի քաղաքին իմաց անելու, որ քաղաքն սէպն արնու, թէ կըլա աւելի խարճէլու թէ չէ։ Կամ թէ կըլա որ արնու քաղաքն աղա զատիկլին միեայն զերեք Հարուր մաճրին։ Եւ դարձեալ գիտացվի որ ունենա Աղա զատիկն աս տարի արնելու զիւրթերուն վինիգը[3] ամինեօմն ու գալ տարի պի ունենա տալու Պատվելի քաղաքին ձէոքն զվերոյգրեալ իւրթերն։

Եւ դարձեալ գիտացվի որ Աղա զատիկն օվանէսեայցն եւ իւր ֆամիլիեայն[4] կապվիլէ[5] հետ սոյն էլիզաբէդ քաղաքացոցս քաղաքացի, մինչեւ վերջն, թէ շահի, թէ զէնի եւ թէ ամէն

---

1 Փնտռել, ուզել, պահանջել կը նշանակէ։

2 Հունգարական ֆիորին։

3 Եկամուտ, շահ։

4 Գերդաստան, տուն։

5 Կապուիլ՝ Տրանսիլուանիայի լեզուով կը նշանակէ դաշինք դնել, դաշնակցիլ։

Թուրլու խարճէրու. մէկ խօսօք, ինչքէս հիվօր[1] քաղաքացին։ Ու չիկարնայ իրեն Հրամանքը, կամ իւր մնացորդը[2] ամենեւին ասէլու թէ, բան չունի Պիրօվ կամ քաղաքացի զիմ նէմիշի[3] իւրթին կամ տըներուն մէջ մտնելու։ Հապա վօլնի[4] ըլա Աղա Պիրօմն, այնպէս հրամայէլու իրենց Հրամանոցն, ինչպէս հիվօր քաղքըցուն։ Եւ եւս դարձեալ, թէ օր ատենօվ աղա զատիկին մնացորդը կամ աղա զատիկն ալ ուզենար, կամ ուզենային իւրեայնց փունտուշնուն[5] մէջէն, թէ դուսի, թէ նեսի հօդընուն ծախելու կամ գրավընելու[6], նա ամենեւին չի կարնան վերայ գրեալ աղա զատիկն կամ իւր մնացգորդն օտրի ծախելու կամ դուսի մարդու, այսինքն նէմիշի, սասի, օլախի եւ այլն։ Հապա քաղաքացու, այսինքն սոյն քաղաքացուս հիվարին ըսլօպօդ[7] ըլա ծախելու կամ կրակվան[8] դընելու. ու զան ալ պատվելի քաղաքին ու աղա Պիրօվին հրամանաւըն կամ գիտնալումն։

Եւ այս վերոյ գրեալ բունդդէրուն չի հնազանդօղն ունենա ճուրում տալու քաղաքին

---

1 Որ եւ է, ամէն մէկ։

2 Այսինքն՝ ժառանգք, որդիք։

3 Nemes հունգ. բառն է, կը նշանակէ, ազատ. ազնուական։

4 Ներեալ, թոյլ տրուած։

5 Երկիր, գետին։

6 Հայերէն բառ է. կը նշանակէ՝ գրաւ, գրաւական դնել։

7 Հունգ. szabad բառն է. կը նշանակէ ներումն, հրաման։

8 Այսինքն՝ գրաւական, գրաւ։

50 օսգի. եւ եկեղեցուն 50 օսգի. արանց միյոյ մագուլայի[1] եւ պատճարի. եւ այլն։

Եւ վասն հասդատութեանն եւ հաւատարմութեանն բանիս եւ ամուութեան, ըսդրակրեցաք[2] մեք, մեր յատուկ ձեռվընէրօվս եւ մօհրերօվս ամուացուցաք։

Գրեցաւ թըվուն ի
վերայ ձեռամբ ղաղարի
օհաննեանց էլիղաբէ- Տ. Կ.
դան Պ. դըլնաճին
տունը։

ես ղատիկ օվանէսի. յ. ձ.
ես օվանէս ղատիկի. յ. ձ.
ես լուսիկ ղատիկի. յ. ձ.„

Ասով ամէն բան կարգի մտաւ։ — Դաշնադրութեան գիրը պահուեցաւ ու գործադրուեցաւ, ցորչափ Ջատիկ Յովհաննէսեանց ապրեցաւ, կամ լաւ եւս, մինչեւ որ իր որդիները աղնուականութեան պատիւ ընդունեցան։ — Այս ժամանակ, Ջատիկին որդին Թուման՝ ոտք ելաւ, ու այն ամէն դաշինքները, զորոնք իր հայրն ու հօրեղբայրներն՝ երկիրներուն ստացմանը նկատմամբ քաղքին հետ ըրած էին, ոչինչ համարեցաւ։

Քաղաքն այս անլուր բանն որ լսեց, պաշտօնական գրութեամբ մը հասկըցուց, որ 1738,

---

1 Նշանակութիւնն է՝ առանց պակսութեան մը, ամբողջապէս։

2 Ստորագրութիւն դրինք, ստորագրեցինք։

մայ. 26ին ստորագրուած դաշինք մ՚ունի ձեռքը՝ որուն զօրութեամբ իր ողորմածհօգի հայրը. 1. Ամէն երկիրները քաղքին թողուց՝ դուրս առնելով այն կտորը միայն, որն որ իր հայրենական յատուկ տեղն էր։ 2. Քաղքին յանձնեց քսան ոսկի պահանջմունքը։ 3. Թէ Տիգրիսին տուած երկու ձիերն, որոնք խնդրոյ տակ էին, եա պիտի չպահանջէ։ 4. Թէ իր ժառանգներովը հնազանդ որդի պիտի ըլլայ քաղքին դատաւորին, եւայլն։

Թուման աս բաներու պատասխան տուաւ թէ ծանօթ է իրեն դաշինքը, զոր հայրն ու հօրեղբայրքը քաղքին հետ ըրած են։ Բայց ինք այն դաշնագրութիւնը չի ճանչնար. անոր պայմանները չ՚ընդունիր։ Նանաւանդ թէ ասկէ ետքն իր երկրատէրութեանը մէջ, իբրեւ ազատ երկրակալ՝ պիտի դնէ մսավաճառ, գինի ծախող եւ ուրիշ ինչ որ ուզէ։ Երկրորդ. Ասկից ետքը քաղքին դատաւորն, ոչ իրեն եւ ոչ իրեն ծառաներուն, իբրեւ ազատ մարդիկներու պիտի կարենայ հրամայել։ Երրորդ. Չէ թէ միայն իրեն պիտի չկարենայ հրամայել քաղքին դատաւորը, հապա նոյն իսկ՝ եթէ օրինազանցութիւն կամ գէշութիւն ընող մարդ մը իրեն դիմէ ու իր տան բակը մտնէ, այն մարդուն քաղաքային իշխանութիւնը ձեռք պիտի չկարենայ դպցնել. եւայլն։

Քաղաքաբաշխութիւնն Աղա Թումանին այս կերպ յանդուգն ընթացքին վրայ վշտանալով, այսպէս պատասխանեց. Որովհետեւ չէք ուզեր

ձեր հօրն ու հօրեղբարցը դաշինքը պահել, գիտցած ըլլաք, որ քաղաքը ձեր արտօնագրին հրատարակութեան ժամանակը կ'ուշացընէ եւ ձեզի շատ վնաս կը հասցընէ։

Աս որ լսեց Թուման աղա՝ քաղաքը դատաստանի կանչեց։ Իսկ քաղաքն արգելեց իրեն, անկէ ետքը՝ դատաւորին եւ քաղաքային ժողովոյն հետ մէկտեղ խորհրդի նստիլ։ Հրամայեց միանգամայն, որ իրեն քովն — իբրեւ քաղքի նոտարի քով — եղած պաշտօնական գրութիւններն ու կնիքը ձեռքէն անմիջապէս առնուին. որովհետեւ ա՛լ քաղաքն՝ զինք ոչ նոտար եւ ոչ քաղքին հնազանդ որդի կը ճանչնայ։ Բաց ասկէ, իրեն առեւտրոյ վրանի իրաւունքն ալ առաւ, ու սպառնաց որ զանիկայ չի դարձըներ, մինչեւ որ չխոստանայ, թէ ողորմած հոգի հօրն ու հօրեղբարցը տուած դաշնագիրն անթերի կը պահէ։ — "Եթէ որ — կ'աւելցընէ քաղաքաբաշխութիւնը, — ձեր ծերացած հայրն ու հօրեղբայրները կրցան պահել այն դաշինքը, դուք ալ կրնաք ու պէտք էք պահել. մանաւանդ որ այն երկիրները՝ հայրենական երկիրներ չեն, հապա ստացածոյ են։ Ուստի ամենեւին պատճառ ու իրաւունք չունիք՝ անոնց վաստակն ու հաստատած դաշինքն ոտքի տակ առնելու։„ Որոշուեցաւ նաեւ որ մինչեւ որ այս խնդիրը պարզուի՝ լմըննայ, Թուման աղա հասարակութենէն դուրս հանուի։

Վշտացած գերդաստանն, որ հիմայ ազնուականութեան պատիւ ալ ունէր ձեռքը, կը

համարէր որ, իբրեւ ազատօրեար, ամէն օրէնքներէն ազատ է. եւ զանոնք թեթեւութեամբ ոտքի տակ կրնայ առնուլ: — Աս բաւական չէ՝ կը կարծէր որ, որովհետեւ իր ազնուականութեան հետեւութեամբը՝ զինուորութենէն ազատ էր, նաեւ զանոնք, որոնք իրեն տունը կամ տանը բակը կ՚ապաւինին, զինուորութեան պարտականութենէն ազատ կրնայ ընել: Իր յանդգնութեամբը մինչեւ իսկ կը համարէր, որ ամէն չարագործ որ իրեն կ՚ապաւինի, օրինաց ձեռքէն պիտի կարենայ ազատիլ:

Աւասիկ այս ամէն ըսուածներն ըստ տարեգրոց, այնպէս, ինչպէս որ ձեռուընիս եղած պաշտօնական գրութիւն մ՚առջեւնիս կը դնէ:

"Բրօդէշդացիայ[1] ընդէմ Աղաչայ Թումանին որդւոյ ռ. Հ. Զատիկին:

Գիտինք, որ Աղաչայ Թումանն Աստուծոյ ողորմութեամբն եւ մեր թագուհոյն կրաձիայէն[2] ունի դիբլոմայ[3] կամ տօնացիայ[4] իրեն հրամանոցն խուրթերուն եւ եօսակներուն[5] վրայ: Որին համար խիստ ուրախ ինք. եւ կու կամինք, որ բարով վայլեցնու իրեն հրամանքն եւ իրեն հրամանոցն բօսդէրիդաշն[6]: Բայց գիտելի է, որ առաջ քանց գըուպլիգաձիան[7] տօնաձիայինը,

---

1 Բողոք, բողոքումն:

2 Ողորմութիւն, գթութիւն, շնորհք:

3 Արքունի հրովարտակ:

4 Ցուցութիւն, պարգեւ:

5 Երկիր, երկրատէրութիւն. հունգ. է:

6 Յաջորդք, ժառանգք:

7 Հրատարակութիւն, ծանուցումն:

իմաց աւիլինք իրեն հրամանոցն, թէ ունինք մէկ գօնդրագդըն[1] իրեն հրամանոցն հօրէն եւ այլ մեծ աղբրտացմուն. այսինքն ռ. հ. Աղաչայ Ջատիկէն օվանէսեանց. եւ իրեն հրամանոցը որդվէն Օվանէսէն զատիկեանց եւ ռ. հ. լուսիկէն զատիկեանց, մեր դընաջին[2] սնտուկն, որ զաբիսին ըսկիսբն էղիլէ 1735. եւ մնացիլէ կախ մինչեւ 1738ին մայիսին 26ին։ Եւ այն ժամանակն դընաչին տանը մէջ խնդրվածքով ույմիշվիլէ[3] ռ. հ. Աղաչայ Ջատիկն, իրեն հրամանոցն որդիքն, հետ պատւելի քաղքին վասն գօնդրօտիքձիային, որ կանէր պատւելի քաղաքն բօբշօմօյին խուրթերուն եւ եօսակնուն սէպն։ Եւ չէր թողուր որ Աղաչայ զատիկն առնու զխուրթերն եւ կամ զեօսակն. զէրայ ալ մօտիկ խուշ[4] ունէր քաղաքն առնելու։ Բայց շատ խնդրվածքին գօրայ սուս կեցաւ քաղաքն ու թօղաւ որ զբանը առաջ տանի, այնպիսի գօնտիձիօնով[5], որ գօնդրագդ տայ Աղաչայ զատիկն հետ իրեն հրամանոցն որդիքացն, այսպէս.

Բրիմայ. Օպլիկօվադ[6] եղան տալու զեօպաձն, որն որ բօգշիմըքէն ունի, իրեն տնովն եւ իրեն տանը ետեւանց ունացած գետնստնէրովն[7],

---

1 Դաշինք, դաշնագիր։

2 Խորհուրդ, խորհրդանոց։

3 Կարծեմ՝ միտքը փոխել, մտածել կը նշանակէ։

4 Իրաւունք։

5 Պայման, թէութիւն։

6 Խոստում, պարտաւորութիւն, յանձնառութիւն։

7 Երկիրներ, կալուածներ։

*վարի եւ վէրի, նաեւ խոտնոցներոմ։ Միայն դուս կու հանէ զայն գետինը, որն օր առուկ կայ գրած գօնդրագդին մէջ։*

*Երկուսումն. Ունացիլին բրէդէնզիայ քաղ-քին մօտ 20 ոսգի, նայ զան ալ կու թողու պատվելի քաղքին։*

*3ումն. Տված էղիլին տիդրիհին 2 ձի, որն որ գօնդրօվէրզիայի մէջ էղիլէ, հետ պատւելի քաղքին. նայ զան ալ բրէդէնտօվադ[1] չի պի անին։*

*4ումն. Ասկից դուս օպլիկօվադ եղիլ է ո. հ. Աղաչայ Ջատիկն եւ իրեն հրամանոցն որդիքն, թէ իրենց հրամանքներն եւ իրենց հրամանոցն բօսդէրիդաշն, ամէն անգամ հնա-զանդ քաղաքացի եւ մեր պիրօվին հրամանին տակն պիլան որպէս հի որ մէկ մեր քաղաքացին։ Ջայս ամէնը կարճ ի կարճոյ առաջ տվինք Աղաչայ Թումանին։ Որն որ լմնալուն պէս պա-տասխան տվաւ իրեն հրամանքն ու ասաց թէ. գիտէ զայն իրեն հրամանոցն հօրն եւ այլ մեծ աղբրտաց տված գօնդրագդն։ Բայց իրեն հրա-մանքն ատ ինդէրիմ[2] չի կաննիլ այն գօնդրագ-դին քով։ Եւ չէ թէ միայն չի կաննիլ, հապա դէր ընդէմ քաղքին կու պարծենայ այսպէս.*

*Բրիմայ. Պի դնէ իրեն հրամանքն, իրեն հրամանոցն իուրթերուն վրայ խասափ, դրչմայ [3],*

1 Պահանջել, խնդրել։
2 Առ այժմ, հիմակ։
3 Հունգ. բառ է. պանդոկ, գինետուն կը նշանակէ։

*եւայլն ուրիշ բաներ, ինչ որ իրեն հրամանոցն սիրտն կամենայ։*

2ունճի. *Ոչ իրեն հրամանոցն, եւ ոչ իրեն հրամանոցն ջէլէտին*[1] *կամ ժէլէրնուն*[2], *ասկից ինպան մեր պատուելի քաղքին պիրոմն չի պի հրամայէ։*

3ունճի. *Չէ թէ միայն իրեն հրամանոցն չի պի հրամայէ մեր քաղքին պիրոմն, հապա մէկ օզկայ*[3] *մարդն ալ, անէր մէկ գէշութիւնմն քաղքին մէջ ու փախչէր իրեն հրամանոցն ազպարն*[4] *նայ, վօլնի չի պիլայ մեր պատուելի քաղքին պիրովլին զայն գէշութիւն անօղն ազպրէն դուս առնելու։*

*Պատուելի քաղաքն զայս պատասխանը լսելով, ասաց իրեն հրամանոցն. Որով հետեւ հրամանքդ Ա. Թումանը, չիս կաննիլ քզ հրամանոցն հօրն եւ այլ մեծ աղբրտացդ տված գօնդրագդին քով եւ ընդդէմ կու գովիս մեր պատուելի քաղքին, նայ, գիտենաս, որ մինք ալ գօնդրատիգալուիդ*[5] *կու անինք քզ հրամանոցն տօնաձիային բուբլիգաձիային ժամանակն։ Որն որ ասաց թէ, չի մեղադրիլ։ Եւ այսպէս եղաւ գօնդրատիգձիան, որ եւ իրեն հրամանքըն ինմէտիադէ*[6] *ձէրդիֆիգալուիդ*[7] *արաւ զպատուելի քաքաղքն* (?) *դատաստան։*

---

1 Ծառայք, աղախնայք։

2 Աւստական, վարձկալ, երկուքն ալ հունգ. են։

3 Ուրիշ՝ Հայերէն է։

4 Բակ, գաւիթ. Հայերէն է։

5 Ընդդիմանալ, հակառակիլ։

6 Անմիջապէս, շուտ մը։

7 Տեղեկացընել, եկակոչ ընել։

Վասն այսորիկ հիմի տեսնելով պատուելի քաղաքն, որ բրօձէսի[1] մէջ կու գտվի հետ աղաչայ Թումանին, բրօդէսդօվադ կանէ, որ իրեն հրամանքն աստրվանէն ինտան, հետ մեր պատուելի պիրովին եւ հետ պատուելի դընաջին մէկ խորհուրդ չիլայ, եւ ոչ դընաջին տունը նստի: Եւ թէ օր իրեն հրամանոցն մօտ թղթեր գտվէր, կամ մոհրն, ինչպէս նօդարիուշի[2] մօտ, նայ ասօր առնվի ձէռնէն: Զէրայ քաղաքն աստրվանէն ինտան, ոչ նօդարիուշ եւ ոչ հնազանդ քաղաքացի կու ճանչնայ զիրեն հրամանքն: Եւ չէ թէ միայն պատուելի դընաջին մէջ ագձէբդօվադ[3] չի անիլ զիրեն հրամանքն, հապա ոչ շադրայի[4] տեղոմն ալ, գումբանիային մէջ չի ընդունիլ, մինչեւ որ իրեն հրամանքն չի կաննի իրեն հրամանոցն ո. հ. հօրն եւ ալ մեծ աղբրտացն կապած եւ հասդատած գօնդրագդին քով. զոր գօնդրագդն կարցիլէ ծերացեալ հայրն եւ այլ մեծ աղբրտիքն տալու խնդիրքով պատուելի դընաջին եւ քաղքին, ինչպէս իրենց ատուկ վաստկած աղէկին: Զէ չի եղիլ զայս իուրթն իրենց հրամանոցն պապենական իուրթն, ինչպէս ասինք, ագվիզիդում[5] իրենց էղիլէ, նայ չի կարնալ աղաչայ Թումանն ու չունի ճամփայ իրեն հօրն ու աղբրտացն վաստկին ու հասդատած գօնդրագդին ընդդէմ կաննելու:

---

1 Դատաստան:

2 Նոտար, քարտուղար:

3 Ընդունիլ:

4 Հունգ. է. վրան, չարժական խանութ կը նշանակէ:

5 Ստացումն:

*Վասն այսորիկ մինչ որ այս ամէն բանը հաստատելի նայ, դուս պիլայ իրեն հրամանքն մեր գօմունիդաշէն[1]։ Այս է պատվելի քաղքին կամքն։ Եւ այսու մնամք պատւելութեանցդ պատրաստական ծառայելու ամենայն ժամ։*

*Թվոյն* 1750 *դէկտեմբերի* 29

*Էլիզաբէդ քաղաքն հայոց։*

+ *Խաչգոյ ըսմթեփանի սմբէդրենց*

*Մեք Սարսդայք երկոտասան Աղաներովս*

*եւ բոլոր քաղաքացիքս։„*

*Ասով՝ քաղաքային վարչութեան ու Ջատիկեան գերդաստանին մէջ թշնամութեան ու հակառակութեան հոգին իր բարձրութեան ծագը հասաւ։ — Երկուքն ալ կը գործէին, միայն անոր համար, որ իրարու դէմ ընեն. իրարու վնասեն։ Քաղաքաբաշխութիւնը չէր ուզեր իր ձեռքն ունեցած վերին իշխանութենէն հրաժարիլ. եւ ամէն բանի մէջ՝ գերդաստանն իր օրինացը հնազանդեցընել կ'ուզէր։ Իսկ գերդաստանն, ամէն օրէնքներէ ինք զինք ազատ կը կարծէր՝ որովհետեւ ազնուականութեան ու ազատութեան տիտղոս ունէր իր ձեռքն. եւ կը համարէր թէ հունգարական մեծ ազատորեարին եւ կալուածատէրներուն պէս օրինաց պահպանութենէն անկախ է։*

*Ինչպէս տեսանք, հակառակութեան բուն պատճառն ա՛ն էր, թէ ինչու համար Ջատիկեան գերդաստանը՝ խուրացուցած է անանկ երկիրներ,*

---

1 *Համարակութիւն։*

որ ըստ իրենց քաղքին կը վերաբերէին, իբրեւ ազատ կալուածատիրոջ: — Եւ որովհետեւ Ջատիկեանց երկիրներն, իրենց մեծ մասովն Հունգարական եկեղեցւոյն դիմացն էին, իսկ մէկալ մասովը այգեստանեայց ստորոտն, ուր որ աղքատ ժողովրդեան տեղ տրուեցաւ գրեթէ ձրի. — քաղաքն սկսաւ վախնալ, մէկ կողմանէ անկէ, որ Ջատիկեան գերդաստանն իր սովորութեանը համեմատ, այն տեղուանքն ալ տարածուիլ կ'ուզէ, եւ մէկալ կողմանէ անկէ, որ այն տեղի ժողովուրդը շատ աղքատ ըլլալով՝ չըլլայ թէ իւր երկիրները ծախու հանելու պարտաւորուի. եւ ասով հետզհետէ անոնք Ջատիկեանց ձեռքն անցնին:

Անոր համար, օրէնք մը հանեց (1763 օգս. 8), որուն հետեւութեամբն, այն՝ “այգեստանեայց ստորոտն եղած երկիրները ծախել, կամ գրաւի դնել չըլլար„. որովհետեւ, կ'ըսէ, գրեթէ ձրի բաշխուած էին: Ինչու որ, անոր տէրերը՝ դռնէ դուռ քալող մարդիկ էին. եւ քաղաքային վարչութիւնն այն միջոցին, որ այն երկիրները բաժնած էր, արգելեց առջի կարգի քաղաքացւոց, Գիւգիւլլէօյի քով երկիր գնել: Այսպէսով՝ միայն այս աղքատներն անոնց գինն աւելցնելով, գրեթէ ձրի ընդունեցան: — Հասարակութիւնը շատ իրաւամբ հետեւցուց, որ եթէ այն, Ջատիկեան գերդաստանին կից ու դրացի աղքատ տան տէրերը նեղի մտնէին, պիտի հարկադրէին զանոնք ծախելու եւ անշուշտ Ջաքարեանք պիտի գնէին:

— Ուստի հրաման հանեց, որ այս աղքատ տանտէրերն իրենց երկիրներն ո՛չ ծախել, ո՛չ փոխել եւ ո՛չ ալ գրաւի դնել կարենան, մինչեւ որ քաղաքաբաշխութիւնը չտայ առ այս իր հաւանութիւնը։ Աս բանս ընելուն պատճառն ալ յայտնապէս կ՚ըսէ. վասն զի հասարակութիւնը կ՚ուզէ, որ Ջատիկեան գերդաստանին ձեռքը թիզ մը երկիր չանցնի քաղքին երկրէն. եւ ազնուականաց երկրին հետ չմիանայ։ Բաց աստի կ՚աւելցընէ ժողովքն իրեն որոշմանը մէջ. Չէ թէ միայն Ջատիկեան գերդաստանին արգելուած է, կից ու շրջակայ տեղերուն մէջ երկիր փոխել, ծախել, գրաւի դնել եւ այլն. հապա նաեւ որ եւ է ուրիշ տեղ բնակող տան տէր մը՝ չկարենայ իր երկիրները Ջատիկեանց ծախել, թէ՛ հոս, ազնուականաց տեղւոյն վրայ եւ թէ՛ աւատականաց բաժնին մէջ։ Բայց ուրիշ քաղաքացւոյ, որ ազնուականի կալուած չունի, կրնայ ծախել, գրաւական դնել, փոխել եւ այլն՝ ըստ իւր կամացը։ — Աս է, կ՚ըսէ ժողովքը, հասարակութեան հաստատ կամքը, եւ կ՚ուզէ, որ այս որոշումն արձանագրութեան մէջ անցուի։

Ո՞վ չի տեսներ, թէ այս օրէնքը մասնաւորապէս Ջատիկեանց դէմ ընելու համար դրած էր քաղաքաբաշխութիւնն, որպէս զի զինք խոնարհեցընէ ու գլուխը ճզմէ։

Ահա ժողովքին յատուկ խօսքերը։

“Աստուծոյ ողորմութեամբն 1763 օգոստոսի 8ին էլէզաբէդան։ Պատճառ գրոյս այս է.

որ քաղվելով Պ. Մակիսդրադըն հետ Պ. Սու-գային. խորհուրդ եղաւ վասն Ռ. Հ. Ա. Ջատիկին բօսդէրիգաշին նէմիշի փունտուշին[1] սէպն. որ որովհետեւ կու գտնի մեր քաղքին մէջ փաճեղան[2] մաճրի ժամին դիմաց. եւ փունտերեւն[3] Նոր բաժնած աղքատ էլին էգուն օրամն, որն որ գօնդրօտիքձիայի տակ է ի կողմանէ հասարակին. որն որ արած է շդագուձիային[4] ժամանակըն, որ փունտերեւին կից տրվեցաւ մեր աղքատ էլին տան տեղըանք էրկանքն: Եւ չէ՛ թէ վիճարած ըլլային, որպէս կու ծախվին մեր քաղքին մէջ իւրթերն. հապա տեսնելով հասարակն որ ողորմելի մարդիգին առնօղները, առաւ ողորմութիւն եւ առգիլեց զալ առաջի քաղքըցիքըն որ գիւգիավէքին[5] մօտ չի կարենան ավելցընելու. հապա նումայ նաքայ ավելցնուն, որոնք տներ չունէին եւ աղքատ մարդիք ըլալով դրնէ դուր կու քալէին: Նայ նաքայ իրենք իրենց մէջ աւելցընելով հաշուվէ պաշխըշ գնտըվեցան զիւթերն: Վասն որոյ կամելով Պ. Հասարակըն զապագայ բանը մտիկ անելու, գօնգլուտօվադ[6] արաւ, թէ այս կազտաներըն,[7]

1 Կէսը հունգ. կէսը լատ. է: Կը նշանակէ, ազնուական, ազնուականաց երկիր, գետին:

2 Ճակատ, անկիւն, երես (Facette):

3 Ետեւի դին, ետեւի մասը:

4 Որոշումն, կանոնադրութիւն, կարգադրութիւն:

5 Գիւգիւլլէօ գետին, վալաքերէն անուակոչութիւնն է:

6 Հետեւցընել, մտածել:

7 Ցանուտէր. հունգ. է:

որոնք վըձինիդադ[1] ունին հետ ռ. Հ. Ա. զատիկին բօսդէրիդաշին նէմիշի փունտուշին, թէ օր գազուգվօյ[2] նաչարվէին[3] եւ կամենային ծախելու, կամ հետ օզկային փոխելու իրենք կամ իրենց բօսդէրիդաշն, նայ աւանց Պ. Հասարակին իմաց չի անելուն, չի կարենան, ոչ իրենք, ոչ իրենց բօսդէրիդաշն ծախելու կամ փոխելու եւ ոչ գրակվան դընելու: Պատճառն այս է, որ գազուգվօյ, թէ օր մէնիորն կամէնար ծախելու, փոխելու կամ գրակվան դնելու նայ, հասարակն գիտենայ բանին մէջէն, որ թէ օր ութվէր Պ. Հասարակին, նայ բէնէս էսդիմաձիօնէ[4], այն ժամանակինը, Պ. քաղաքըն ալ մօտիկ պիլայ գընելու, փոխելու կամ գրակվանելու: Պատճառն այս է, որ Պ. Հասարակըն կ'ուզէ որ ռ. Հ. Ա. Զատիկին բօսդէրիդաշին ձեռըն ոչ մէկ թիզ մը տեղ Պ. քաղքինը, իրենց նէմիշի փունտուշին հետ, չի մէկտեղնայ[5], հապայ քաղքինը, քաղքին մընայ, եւ այսպէս խառնակութիւն չիլայ: Եւ գիտացվի որ ութվեցաւ Պ. Հասարակին, որ չէ թէ միայն նաքայ, որոնք հօս ալ վեր գրեցինք, էգուն օրամին կեցօղին վըձինիդադէ ռ. Հ. Ա. զատիկին բօսդէրիդաշին նէմիշի փունտուշին քով կու կէնան, արգիլածին ոչ ծախելու, ոչ փոխելու եւ ոչ

1 Դրացի, սահմանակից:

2 Ի դիպուածի, պատահմամբ:

3 Աղքատնալ, նեղը մանել:

4 Գնահատութեամբ, արժէքը կարելով:

5 Միանալ, մէկ ըլլալ. Դրանսիլուանիայի Հայոց լեզուն է:

գրակվընելու, արանց Պ. Հասարակին գիտացածին։ Հապայ այնպէս գծնգլուտօվադ արաւ, որ բոլոր բոլորման ինչ կազտաներ կու գտվին վիձինուս օ. Հ. Ա. զատիկին բօսդէրիդաշին փունտուշին, թէ հօս, ուրուխ գուրիան[1] է եւ թէ ժէլէրին տնէրուն եւ եօպաճի տանը քօվ, ամէնին արգիլած պիլան վերայ գրեալ կերպիւըն ոչ ծախելու, ոչ փոխելու եւ ոչ գրակվընելու արանց Պ. Հասարակին գոնսէնսուշին[2]։ Ինդէնձիօնը[3] այս է Պ. Հասարակին, որ ամէնեւին, Պ. քաղքին տեղն նէմիշի ձեռք չի ըննի. այն ինդէնձիօնովը թէ նէմեշիդ ըլլայ։ Բայց օզկայ քաղքըցուն, որն որ նէմիշի փունտուշ չունի, ըսլօպօտ պիլայ, հիոր մէկին ծախելու, փոխելու եւ գրակվանելու, ով իրեն կամացը գօրայ։ Այս է Պ. Հասարակին կամքն. որն որ վասն ալ մեծի հասդատութեան գրվեցաւ Պ. քաղքին բրօդօգօլն, որ մնայ հասդատ։„

Այսպէս շարունակուեցաւ հակառակութեան հոգին երեսուն տարւոյ չափ՝ միշտ մէկը մէկալին դէմ ակռայ ցուցընելով։

Քաղաքային վարչութիւնը շրջահայեաց ըլլալով, չէր կրնար աչք գոցել, որովհետեւ յայտնապէս կը տեսնէր, որ եթէ առանձնականք սկսին կալուածատէրութեան երկիրները յատկացընել, անոնք հետզհետէ ազնուականի երկրի կը փոխուէին. եւ այսպէս քաղաքը՝ կամացկամաց

1 Ազնուականաց տեղ, ներքին քաղաք։

2 Հաւանութիւն, շնորհումն։

3 Միտք, դիտաւորութիւն։

իր երկիրներէն պիտի զրկուէր։ Աս էր պատճառն, որ Հասարակութիւնն այնպէս սաստիկ կը մաքառէր, որ չըլլայ թէ երկիրներն ազնուականաց ձեռքն իյնան՝ այն արքունի երկրակալութենէն, որ ինչպէս գիտենք, ըստ օրինաց միայն իրեն կը վերաբերէր իր ամէն սահմաններովը։

Քաղաքային վարչութիւնն — որչափ գրութիւններէն կ՚իմանանք — չէ՛ թէ միայն զԹուման Ցովհաննէսեանը քարտուղարութեան պաշտօնէն հեռացուց ու զինք հասարակութեան ժողովքէն դուրս հանեց, այլ նաեւ բոլոր գերդաստանը հասարակաց պաշտօնէն զրկեց։ Ասիկայ յայտնապէս կը տեսնուի, ձեռուընիս եղած նամակէ մը։ — Գերդաստանը՝ հասարակութեան գրած մէկ բողոքագրին մէջ դառնապէս կը գանգատի, թէ քաղաքաբաշխութիւնը զինք ամէն տեսակ պաշտօնէ անոր համար միայն զրկած է, որովհետեւ պահանջմունքներ ունի քաղքէն։ — Ասանկ բանի համար կ՚ըսէ, չէ թէ միայն ամբողջ գերդաստան մը, հապա նոյն իսկ առանձական մարդ մը՝ պաշտօնէն չի կրնար զրկուիլ։ Բայց, մենք — կ՚աւելցընէ — ասոր նկատմամբ մեր ցաւն արդէն յայտնեցինք գերաբարձր կառավարութեան։

Աս ըսելէն ետեւ՝ կ՚անցնի պատճառներուն։ Եւ փիլիսոփայական սկզբունքներու վրայ յենլով՝ ցուցընելու կ՚աշխատի, թէ չի կրնար քաղաքաբաշխութիւնը զինք հասարակաց պաշտօններէն զրկել։ Որովհետեւ — կ՚ըսէ ի մէջ այլոց — եթէ քաղքին յառաջ բերած եզրա-

*կացութիւնն ունենար իր ոյժը, պէտք է որ ունենայ ուրիշներուն նկատմամբ ալ, որ քաղքին պարտական են։ Եւ սակայն անոնք զրկուած չեն հրատարակուիր հասարակաց պաշտօններէն։ Որ բանն որ մէկուն արգելեալ է, մէկալին ալ արգելեալ է։ Անոնք ալ այնպէս համարուելու են հասարակութեան առջեւ, ինչպէս Զաքարեան գերդաստանը։ Եւ ամենէն ցաւալին ա՛ն է, որ անոնք իրենց պահանջմունքները, դաշնադրութեամբ արժեցուցին. իսկ մեր գերդաստանն իր դատախազութեան ընթացքը խնդրոյն որոշմանէն կը սպասէ։ Արդ՝ հաւասարութեան սկզբան համեմատ, թէ՛ մենք ու թէ՛ անոնք, հասարակաց պաշտօն վարել չկարենալով՝ խնդիրն ի կախ կը մնայ։ Երբ մենք՝ իբրեւ պարտատէր, հասարակաց պաշտամունքէն կը զրկուինք, — իրենք՝ իբրեւ պարտական, ի՞նչպէս պիտի կարենան այն պաշտօններուն հասնիլ։ — Աս է զոր կը պահանջենք։ — Հասարակութեան պարտական եղողը՝ նուազ իրաւունքով կրնայ պաշտօն վարել՝ քան մենք։ Թէպէտ հասարակութիւնն ասոր նկատմամբ ա՛յն եզրակացութեան եկաւ՝ թէ "Բոլորովին տարբեր բան է՝ իրական պարտականներուն դատաստանին կերպը՝ Զաքարեան գերդաստանին պահանջքէն։ Ասիկայ ստրկի տարբերութեան վրայ ըլլալով՝ մշտնջենաւոր իրաւունք կը կացուցանէ։„ — Սակայն, մեզի կ'երեւայ, որ այս որոշման ձեռօք չենք կրնար հասկընալ, թէ պարտականն աւելի իրաւունք ունենայ պաշտօն վարելու, քան թէ*

պարտատէրը։ Հապա միայն՝ թէ Հասարակութիւնը՝ պարտապանին պարտքն իրաւանց կարճ ճամբով կրնայ ձեռք բերել․․․։

Ասոնք այսպէս ըլլալով՝ Հարկ է որ Հասարակութեան առջեւը յայտնենք՝ թէ քաղաքաբաշխութեան մեծագոյն մասն, եւ յանուանէ Հարիւրոց ժողովին անդամները՝ Հասարակութեան պարտական են։ — Ասոր նկատմամբ վկայ կը կոչենք Հաշուակալները։ Եւ կը խընդրենք, որ մեր ներկայ յայտարարութեանը վրայօք, Հասարակութիւնն իր որոշումն ընելով՝ զանիկայ պաշտօնապէս մեզի Հաղորդէ, որ անոր Համեմատ մենք ալ՝ ի յուեգոյն դիպուածի, մեր խնդիրքը վերին կառավարութեան առջեւը դնել եւ Հոն մեր վիրաց ու ցաւին սպեղանիք մը գտնել կարենանք։

Կը ներփակեմ խրթին բողոքագրին բուն Հայերէն բնագիրը։

“Պատուելի Հասարակ.

Ի կողմանէ բոլոր Ջաքարիաշի ֆամիլիայինը, ութվիլէ Պ․ Հասարակին, անցած տարոյս 1795ին, 5[to] Janr. զայս ի Հօս խոնարՀաբար accludoվադ [1] conclusumը [2] անելու, Sub Litt. A. [3]։ Որոյ մէջէն բացարձակ կու էրէվի, թէ մեր գրեալ ֆամի-

---

1 Քովը դնել, ներփակել։

2 Եզրակացութիւն, որոշումն։

3 A գրին տակ։ Այս թուղթը գրութեան մէջէն Հանուած կ'երեւայ։ Որ ստուգիւ մեծ լուսաւորութիւն կու տար, խնդրոյն որպիսութիւնն աւելի պայծառ տեսնելու։

լիան ամէն սոյ Cardinal officiumնու[1], միայն անոր կորըված է, որոյ հետեւ բէմնի[2] activa praetensio[3] մեր Պ. Հասարակին ընդէմ պի ունէնար: Թէպէտ մեզին գիտելի է զան, թէ այս սոյ պատճառի համար, չէ միայն մէկ ֆամիլիամը, այլ նաեւ ընկ ալ[4] պիզտի Անձ մընալ a Gerendis[5] Cardinalibus officiis արգիլվելու չի կարնալ: Որոյ կողմանէ մինք, զմեր ցաւը Գերաբարձր Կուպէրնիումին առաջ տալով, կը յուսայինք թէ մինչեւ ասօրվան օրը զբաղձալի Resolutiaն[6] ալ պի գընտըվինք: Այսու ամենայնիւ հիմպիկ զնոյնը առաջ բերելու չի կարնալով, անոր ընդէմ մեր խոնարհ reflexioնները[7] ալ վար նիշանածնուն գօրայ առաջ տալու կամինք ինչպէս.

1^mo. Թէ որ վերոյ citat[8] Conclusumը զիրեն ուժը պէտգէ օր ունենայ, մինչեւ ան ատենն ալ, օր Գերաբարձր Կուպէրնիումին հրամանովը moderat[9] ըլլար, նայ ի կողմանէ օզկանուննն ալ, ինչպէս Պ. Ա. Միքայելինը ջիգիեան, Ա. Ունանի Գաբոէպովեան. եւ թէ օր այս վերոյ գրեալ

1 Գլխաւոր պաշտօն:

2 Ստուգիւ, ապահովապէս:

3 Իրական, դրական պահանջք:

4 Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը կը նշանակէ ամենէն, ամենա (գերադրական):

5 Երեք բառին իմաստն է՝ գլխաւոր պաշտօններ կրելէն (արգելուիլ չի կրնար):

6 Լուծումն, մեկնութիւն:

7 Անդրադարձում, պատասխան:

8 Յառաջ բերած, յիշած:

9 Չափաւորել, զսպել:

Աղաչանուն նմանը օգկան ալ կու գալի, նայ դօքմայ[1] զան ուժը պէտգէ որ ունենայ։ Այսինքն որ ինչպէս մենք Zachariana Familiaն, այնպէս նաեւ վերոյ գրեալքն ալ a Cardinalis Officiis praecludat[2] ըլլան։ Որոյ հետեւ quod uni prohibitum est, alteri licere nequet[3]. — Մանաւանդ.

2^do. Որ վերոյ գովեալ Աղաչաներն ալ ի կողմանէ իւրեանց praetensioնունը[4] ամէն անգամ դօքմայ այնպէս Actorներ[5] պէտգ է որ համարվին Պ. Հասարակին, որպէս յատուկ մեր Zachariana Familiaն։ Եւ ինչ որ ալ մեծն է, զիւրեանց praetensiaները contractualiter liquidoվագ[6] ունին։ Բայց մեր Zachariana Familiaն, զeventum litis a decisione Causae[7] յուսալու կ'ըլլան։ Թէ մինք ուրեմն, ինչպէս Zachariana Familia, եւ թէ վերոյ գրեալ Աղաչաները, ab analogia paritatis[8], ad Officia Cardinalia վերոյ citat Պ. Հասարակին conclusumին գօրայ applicoվագ[9] ըլլալու չի կարենալով այս questioն[10]

---

1 Ճշդիւ, ըստ ամենայնի։

2 Զրկել, մերժել, դուրս հանել։

3 Որ բանն որ մէկուն արգելեալ է, մէկալին ընելու հրաման չկայ։ Լատիներէն ծանօթ ասացուած մըն է։

4 Պահանջք, պահանջմունք։

5 Հեղինակ, խնամակալ։

6 Այսինքն, իրենց պահանջները դաշնագրութեամբ հաւաստացուցին, շտկեցին։

7 Դատին ելքը՝ ընթացքը, դէպքին որոշմանէն կրնան յուսալ։

8 Հաւասարութեան, հետեւանքին համեմատ։

9 Կամ adplico պատշաճեցընել, յարմարցընել։

10 Խնդիրն ի կախ կը մնայ։

վեր կու մնայ, զորն որ խնդրենք օր Պ. Հասարակին ալդօլ[1] հաստատվի, եւ մեզիկ authentice[2] դուս տրվի, այսինքն թէ մինք, ինչպէս Familia Zachariana հետ վերոյ գրեալ Աղաչանուն, qua creditores[3], ad Officia Cardinalia, applicoվադ ըլալու չի կարնալով, պի կարենան è contra[4]

3tio. Նոյն Պ. Աղաչաները paria Officia[5] քալցընելու[6], որոնք օր ինչպէս Debitorներ, չէ միայն իշվելու, այլ effective[7] համարվելու կարենան։ Ու զայս ինչ պատճառի համար?

Զաս է ուրեմն, զորն որ Պ. Հասարակին ալդօլ, ինչպէս ալ վեր, հաստատելու կու խընդրինք։ Որոյ գօրայ մեզիկ in omnem Casum[8], զամենայնը վեր կու բըռնինք[9], ինչ օր վեր բըռնելու է նայ։ — Ուստի վօվալ օր մեր Պ. Հասարակին Debitorը իշվելու կարենայ, ալ պէթարը ad Cardinalia Officia gerenda applicoվադ ըլլալու չի կարնալ, քան թէ մինք ինչպէս Zachariana Familiaն, հետ վերոյ գօվեալ Աղաչանուն, ալ վար գրեալ պատճառնուն համար, ինչպէս.

A.) Թէպէտ ասոր կողմանէ Պ. Հասարակը,

1 Ի ձեռն, ձեռօք. հունգ. է։
2 Ի պաշտօնէ, պաշտօնապէս։
3 Պարտատէր։
4 Ընդ հակառակն։
5 Հաւասար, նման պաշտօն։
6 Քալցընել՝ պաշտօն կատարել, վարել կը նշանակէ։
7 Իրապէս, կերպապէս։
8 Ցամենայն դէպս, ամէն առթի մէջ, ամէն կերպով։
9 = Վերապահել։

ղայս ալ վար գրուած Conclusumը անելու Հաճոյացիլէ, ինչպէս։ Longe aliam esse rationem ejusmodi Activorum Debitorum ex eo, quod brevissima Juris via, executione videlicet mediante levi opera desumi possint, quam praetensionis Familiae Zacharianae; siquidem haec eadem in metallibus differentiis consistens, Jus perennale saperet[1]. Այսու ամենայնիւ մեզիկ այնպէս կու երեւի, թէ վերոյ գրեալ Conclusumին ալդօլ ամենեւին զան նշանակվելու չի կարնալ, թէ Debitorը ալ մեծ Jus ունենայ ad gerenda officia publica[2] քան թէ զCreditorը. հաթէ զան միայն, թէ Պ. Հասարակը զDebitorը via breviori Juris proseqvat[3] անելու կարէնայ. ու դօքմայ ասոր համար, որ մէկ Debitor մը, via juris breviori proseqvat ըլլալու կարնայ, նայ, non subsequitur[4], թէ ad gerenda Cardinalia Munia Capax[5] ըլլայ. è contra, որօնք որ զիուրեանց praetensioները Պ. Հասա-

---

1 Ամբողջ լատիներէն ասացուածին իմաստն է՝ Զաքարեան գերդաստանին պահանջմունքէն բոլորովին տարբեր է, իրական պարտուց դատախազութեան կերպը. այնու որ ասոնք դատաստանական ամենէն կարճ ճամբով, դրամամբ, դիւրին կերպով կրնան բարձցուիլ։ Վասն զի դրամական տարբերութեանց վրայ ըլլալով՝ մշտնջենաւոր իրաւանց կերպարանք կ՚առնուն։

2 Այսինքն, աւելի իրաւունք ունենայ Հրապարակական պաշտօններ վարելու։

3 Պարտականէն, իրաւանց կարճ ճամբով՝ պարտքը կրնայ առնուլ։

4 Չի հետեւիր։

5 Ի վիճակի ըլլայ գլխաւոր պաշտօններ կրելու։

րակին ընդէմ active ունին, նայ նոյն Cardinalia Officiumնուն դուս ըննին. huic accedit[1]

B.) Թէ Creditorը ելփալ օր Պ. Հասարակին ընդէմ զpraetensioն առաջ քշելու կամենար, նայ, զան Պ. Մակիստրադին դիմաց in via Juris promoveat[2] անէլու չի պարտավորվիլ. այլ ալ պէթարը coram Tabula Regia[3]։ Ալէս in Gremio, nec per se Judicem agere potest, nec per se Judicem quaerere debet[4]; e contra alia Debitoris est ratio[5]. որոյ Հետեւ, թէ օր անպէսը ad Cardinalia Officia applicat[6] ըլալու, per omne inconcessum et negatum[7] կարէնար, նայ, tam per se Judicem agere posset, quam per se in Gremio alium querere; et quidem Faventem deberet[8]. Ուստի Major stat ratio[9], օր մէկ Creditor մը in Gremio[10] Հասարակութեանը ըլլալով, ad Cardinalia officia, applicoվադ ըլալու կարենայ, քան թէ Հի որ մէկ Gremialis Debitorը.

Ջասոնք այս կեռպիւը ըլլալով, կու պատկանի մեզիկ, օր զան Պ. Հասարակին յայտնինք,

---

1 Աւելցընենք վրան ան ալ։ Ասկէ կը Հետեւի։

2 Իրաւանց ճամբով յառաջ տանելու։

3 Վերին, արքունեաց ատենին առջեւ։

4 Ո՛չ անձամբ դատաւոր կրնայ ըլլալ եւ ո՛չ անձամբ դատաւորը պէտք է փնտռել։

5 Բոլորովին տարբեր է պարտապանին վիճակը։

6 Գլխաւոր պաշտօններու մէջ մտնել։

7 Ընդհանրապէս ուզելով չուզելով։

8 Եւ նպաստաւոր կերպով մը։

9 Աւելի խելքի պառկող բան է։

10 Խորհուրդ, ատեան։

ինչ որ մարդ ալ ուրանալու չի կարնալ. այս-ինքն թէ, potior Pars Individuorum Magistratualium et respective Centum Viratus[1] Պ. Հասարակին պարտական ըլլան, որոյ կողմանէ provocat[2] կըլլանք խոնարհաբար Ա. Էկզաքդօրնուն[3] վերայ: Եւ այսպէս կու խնդրինք, որ այս ներկայ declaratioին[4] կողմանէ Պ. Հասարակը զիրեն Conclusumը (exceptis excipiendis[5]) կօձկելով[6], մեզիկ authentice manu Notariali[7] զնոյնը դուս տալու հաճոյանայ: Որոյ գօրայ մենք ալ in sequiori casu[8], զմեր խոնարհ խնդիրքը Գերաբարձր Կուպէրնիումին առաջ տալու եւ ի հօն մեր խոցին զքարի մըլհամը[9] գընտըվէլու կարենանք. մընալով

Պ. Հասարակին

Խոնարհ անդամք
Familia Zachariana.„*

---

1 Հարիւրոց ժողովք:
2 Վկայութեան կոչել:
3 Հարկապահանջ, հաշուեկալ:
4 Յայտարարութիւն, ծանուցում:
5 Հանելով հանելիները. լատ. ծանօթ ասացուածն է:
6 Բանի մը կապել, լմցընել:
7 Պաշտօնական ճամբով, Նոտարի ձեռօք:
8 Ի յոռեգոյն դիպուածի:
9 Սպեղանիք. տաճկերէն է:

* Անտարակոյս ընթերցողին աչքի զարնող բան մը պիտի երեւայ, որ միեւնոյն մարդուն կամ մանաւանդ գերդաստանին անունը՝ մէյ մը Զաթիկեան, մէյ մը Յովհաննէսեան, մէյ մ'ալ Զաքարեան է: — Մեկնութիւնն սա է. Դրանսիլուանիոյ Հայոց մէջ, — գոնէ ի սկզբան՝ — մականուն չկար, հապա միայն մկրտութեան անուն: Որդիք՝ իրենց հօրն անուամբը կը կոչուէին: Այսպէս՝ առաջիկայ դէպքին մէջ, Աղա Զաթիկ, Յովհաննէսին որդին՝ ի սկզբան

Աս էր Զաքարեան գերդաստանին վերջին յարձակումը։ — Ասոր վրայ գերդաստանն ալ քաղաքն ալ ձանձրացան փուճ պատերազմէն. մանաւանդ որ գերդաստանին ծերագոյններն ու ծերակուտին հին անդամները վախճանեցան։ — Քաղաքն ուզելով չուզելով հաւանեցաւ, որ Զաքարեան գերդաստանին ձեռքը միան այն ազնուականի երկիրները, զորոնք քաղքէն դուրս Բոտուս Բարդ ըսուած տեղն ունէր։ Բայց քաղքին մէջ նոր երկիր ու տուն պիտի չգնէր ու չունենար։

Երբ մարդիկը փոխուեցան, փոխուեցան նաեւ գաղափարներն ու ամէն բան խաղաղցաւ։ Թշնամութեան ոգիները կամաց կամաց նուազեցան ու հետզհետէ բոլորովին դադրեցան։

---

Զատիկ Յովհաննէսի կը կոչուէր. ասքէն ոտացաւ Յովհաննէսեան մականունը։ Ասոր որդին, Թուման՝ Զատիկեան Յովհաննէսեան (Զատիկի որդւոյն՝ Յովհաննէսին) կոչուեցաւ։ — Երբ գերդաստանն ազնուականութեան անուն ստացաւ, Վիեննայի արքունեաց դիւանատունը — մեզի անծանօթ պատճառի համար — Զատիկ անունէն ըրաւ, մեծաւոր անուն մը, Zacharias։ Եւ այսպէս, 1752էն ետքը՝ Զատիկները կամ Յովհաննէսեաններն՝ եղան ազնուական Զաքարեաններ (ինչպէս իրենք զիրենք կ՚անուանեն. Familia Zachariana)։ Ուստի Զատիկեան, Յովհաննէսեան եւ Զաքարեան, միեւնոյն գերդաստանին անուանակոչութիւնն է։ — —

Անուանց սաանկ փոխուելուն շատ կենդանի օրինակներ ունինք։ Գալ (գայլ) գերդաստանին մէկ ճիւղն առաւ Ագոնց (ագի ունեցող), մէկալը՝ Ֆորք (որ միեւնոյն նշանակութիւնն ունի) անունը։ Ֆորքէն եղաւ ետքէն Wolff։ — Այսօրուան օրս, Akonz, Fark ու Wolft գերդաստաններն եւ ոչ մայրենուն ծայրէն կրնան անցընել, թէ ատեն մը միեւնոյն հայազգի պապն (Գալ) ունեցած ըլլան։

## 12.

Զանցաւ երկու տարի վերը յիշուած առանձնաշնորհութեան պատճէնին վրայ՝ Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք Յովսէփ Կայսեր դիմելով, երկրորդ արտօնութեան թուղթ մըն ալ ընդունեցան 1786 դեկտ. 27ին, — որով Եղիսաբեթուպոլիս՝ ամէն ուրիշ ազատ թագաւորական քաղաքաց կարգն ընդունուեցաւ ու անցաւ։

Աս առանձնաշնորհութեան պատճէնին մէջ գովութեամբ յիշուելէն ետեւ Եղիսաբեթուպոլսեցւոց ու իրենց պապերուն հաւատարմութիւնն ու հաւատարիմ ծառայութիւնը, զոր ըրին տէրութեան, երբ ասիկայ հարկաւորութիւն ունէր իրենց նիւթական օգնութեանը — կը նորոգուին այն ամէն իրաւունքներն, արտօնութիւններն ու առանձնաշնորհութիւնները, զորոնք ընդունեցաւ քաղաքը կայսեր պապերէն։

Ասկից զատ՝ կը տրուի Եղիսաբեթուպոլսոյ 1. Հաւասար իրաւունք ամէն հունգարական ազատ թագաւորական քաղաքաց պէս։ Կը շնորհուի որ տէրութեան աւագաժողովին կանչուի՝ արքունական պատճէնի ձեռօք եւ հոն պատշաճ նիստ ու քուէ ունենայ։ — 2. Որ Կալուածատէրութեան մէջ՝ Դրանսիլուանիոյ օրինաւոր իշխանէն զատ՝ ուրիշ տէր չճանչնայ։ — 3. Որ քաղաքացիները՝ ճշմարիտ ու անտարակուսելի ազնուականներ համարուին։ — Որ երեսնեակ վճարելէն ազատ ըլլան. իսկ հասարակ քաղաքացիներն՝ ունենալով ձեռուընին քաղքին

անցագիրն՝ ամէն մաքսի եւ տրոց վճարմանէն ազատ ըլլան: 4. Թէ ամէն օտար, որ Եղիսաբեթուպոլսոյ մէջ երկիր ունի, — ըլլայ ազատ քաղաքացի կամ ազնուական՝ քաղքին տուրք տալու է: — 5. Թէ արտօնացեալ ըլլայ զինուորաց տեղ ու բնակութիւն տալէն եւ նախամոլքի ծառայութենէն: — 6. Թէ քաղաքն ազատութեամբ կարենայ իր դատաւորն եւ պաշտօնատէրներն ընտրել. եւ ասոնք՝ օրինաց սահմանին մէջ կարենան դատաստան ընել: Բայց թող տալու են որ ուզողները — խնդիրն աւելի ծանր կերպով քննելու համար — բարձրագոյն ատենին կարենան դիմել: — Կը տրուի դարձեալ քաղքին լիակատար իշխանութիւն 7. որ իրեն սահմանին մէջ բռնուած չարագործները կարենայ կառափնատել եւ կախաղան հանել: — 8. Որ անժառանգ մնացողներուն թէ՛ շարժական եւ թէ՛ անշարժ ստացուածները քաղքին անցնին: — 9. Որ քաղաքացեաց տներն ու երկիրներն անմատչելի ըլլան. եւ այլն:

Տեսնենք այս կայսերական պատճէնին հայերէն թարգմանութիւնը.

"Մենք Յովսէփ Երկրորդ, ողորմութեամբն Աստուծոյ՝ միշտ գերագոյն եւ ընտրեալ ժառանգական Հռոմէական կայսր, թագաւոր Գերմանիոյ, Հունգարիոյ, Պոհեմիայի, Դալմատիայի, Խռուաղաստանի, Սլաւոնիայի, Կալիցիայի եւ Լոդոմէրիայի. եւն. եւն.(Տես էջ 260:)

"Ինչպէս որ մեր խնամոտ հոգատարութեանը կը վերաբերի, որ բարձրագոյն իշխա-

նութենէն մեզի յանձնուած երկիրներուն եւ գաւառաց լաւութիւնը յառաջացընենք, բարօրութիւնն աճեցընենք եւ հասարակաց բարւոյն հետ մէկտեղ մասնաւորաց ստացուածքն ու եկամուտն օր քան զօր շատցընենք. անանկ ալ կը ճանչնանք իբրեւ պարտաւորութիւն, թէ մեր մտադրութիւնն առ այն դարձնենք, որ մեր Դրանսիլուանիոյ սիրելի եւ ժառանգական Մեծ Իշխանութեան բնակիչներուն օգտակար՝ եւ տէրութեան ու առանձնականաց շահաւէտ ըլլանք. աւելի մեծ առեւտրական վաճառանոցներ բանալով եւ վաճառականութիւնը յառաջացընելով։

"Ուստի, որովհետեւ մեր Եղիսաբեթուպոլսոյ արտօնացեալ քաղքին կողմանէ, մեր հպատակներն — անոր օրինաւոր դատաւորն ու խորհրդականները — Պետրոս Դանիէլեան՝ դատաւորի փոխանորդ, Անտոն Խիգուցեան, Ղուկաս Դանիէլեան, Մանուկ Չիգիեան, Յովհաննէս Դէօրէօքեան, Գրիգոր Խիգուցեան, Մարտինոս Բագրուպանեան, Զաքարիա Զաքարեան, Մինաս Չիգիեան, Ղուկաս Ոսկերիչեան եւ մէկալ Ղուկաս Իլախեան ու Դոմինիկոս Սընբէգրեան, իրենց՝ ու մնացած երդուեալ քաղաքացւոց ու բնակչաց անուամբն աղաչանք ուղղեցին մեր Մեծափառութեանն, որ վերոյիշեալ քաղաքն՝ ազատ թագաւորական առեւտրական քաղաքաց կարգը բարձրացընենք. եւ զանիկայ՝ մեր Հունգարիոյ եւ Դրանսիլուանիոյ մեծ իշխանութեան, այս կարգի քաղաքներուն աստիճանն ընդունինք ու դասենք. — Մենք՝ գթածաբար նկատելով

յիշեալ քաղքին բնակչաց հաւատարմութիւնն եւ այն հաւատարիմ ծառայութիւնը զորոնք մեզի եւ մեր արքունական տան ըրած են, տեւական հաւատարմութեամբ ու փութով. — ասկից զատ մտքերնուս մէջ լաւ մնացած է, այն պատրաստակամ ու գովութեան արժանի ջանքը՝ զոր հասարակաց բարւոյն յառաջացմանը համար, թէ ուրիշ անգամ, թէ ամենէն վերջին պատերազմի առթիւ, մեր բանակին համար պէտք եղած ձիերն անյապաղ մատուցանելով՝ ցուցուցին. — ու այսպէս, թէ ասոնցմով, եւ թէ իրենց հաւատարմութեան ուրիշ ցոյցերովը վկայեցին, մեր ու մեր նախնեացն առջեւ՝ որ մեր պետութեանն ու երկրին օգտակար քաղաքացիներն ու եռանդուն յառաջացուցիչներն են: — Եւ որովհետեւ կը յուսանք, որ ասկից ետքն ալ մեր հաւատարիմ եւ փութաջան հպատակները պիտի ըլլան՝ անոր համար կայսերական-թագաւորական իշխանական կթութիւնն ու լաւազգածութիւնը դրդեցին, որ իրենց ամենախոնարհ աղաչանքը կատարենք: Ուստի մեր բարեգթութեան մասնակից կ'ընենք այս քաղքին քաղաքացիներն. որով իրենց սերունդներն ալ պիտի տեսնեն, թէ իրենց հաւատարիմ ծառայութիւնը՝ մեր Մեծափառութիւնը ճանչցաւ եւ վարձատրեց: Եւ որպէս զի ապագայ ժամանակին մէջ, իրենց թոռներն ալ քաջալերուին մեր Վեհափառութեանն եւ մեր արքունական տան՝ ինչպէս նաեւ իրենց տէրութեան ու երկրին եւ հասարակաց գործառնութեանց նկատմամբ ար-

ժանիքներ փաստկիլ ջանալու՝ — որոշեցինք, որ Գիւգիւլլէօ գաւառին մէջ եղած այս արտօնացեալ քաղաքն՝ որ լատիներէն լեզուաւ Elisabethopolis, գերմաներէն Elisabethstadt եւ Հունգարերէն Erzsébetváros կ'անուանուի, մեր կայսերական-թագաւորական իշխանութեան զօրութեամբն ու հեղինակութեան լիութեամբն՝ ամէն ստորեւ նշանակուելի իրաւունքով, առանձնաշնորհութեամբ եւ արտօնութեամբ ճոխացընելով՝ ազատ թագաւորական առեւտրական քաղքի բարձրացընենք։ — Եւ մեր Հունգարիոյ եւ Դրանսիլուանիոյ իշխանութեան մէջ եղած նման քաղաքներուն — եւ մեր կալուածատէրութեան աստիճանին եւ կարգին մէջ կ'ընդունինք, կը դնենք, կը հաշուենք ու կը ներփակենք, — մեր ունեցած ճիշդ տեղեկութեանց համեմատ, հասուն խորհրդով՝ գթածաբար զիջանելով՝ որ

"Նախ. Այս Եղիսաբեթուպոլիս քաղաքը հիմակուընէ սկսեալ, այն ամէն հասարակաց եւ մասնաւոր առաւելութիւններն, իրաւունքներն, արտօնութիւններն ու առանձնաշնորհութիւններն, որով մեր Հունգարիոյ տէրութեան եւ Դրանսիլուանիոյ իշխանութեան ուրիշ ազատ թագաւորական քաղաքներն — ըստ մասին՝ երկրին օրինացը համեմատ, ըստ մասին՝ մէկալ ազատ արքունական վաճառականութեան քաղաքներն ընդհանուր կանոնաց համեմատ ունին ու զանոնք կը վայելեն եւ անոնցմով կ'ապրին — ունենայ, վայելէ եւ ապրի։ Եւ ըն-

դունուած սովորութեան համեմատ, տէրութեան աւագաժողովին մէջ՝ օրինաց յօդուածներուն մէջ առնուի. եւ անկից ետքն՝ ամէն ժամանակ տէրութեան ընդհանուր ժողովքներուն կանչուի՝ սովորեալ արքունական պատճէնի ձեռօք. ու հոն՝ պատկանեալ քուէով եւ նիստով տեղ ունենայ: Դարձեալ՝ իր թագաւորական կալուածատէրութեանը մէջ, Դրանսիլուանիոյ օրինաւոր իշխանէն զատ ուրիշ մը չճանչնայ իրեն երկրի տէր: Իր երկրատէրութենէն՝ որ եւ է տեսակ դաշնադրութեամբ չկարենայ բաժնուիլ. եւ զանիկայ չկարենայ օտարացընել. եւ ոչ ալ գրաւի դնել:

"Երկրորդ. Քաղաքային ժողովքը — կամ ուրիշ խօսքով՝ քաղքին ամէն քաղաքացիներն — երկրին օրինացը մռաց համեմատ, ճշմարիտ եւ աներկբայելի Ազնուական նկատուին: Ուստի մէկալ ազնուականաց յատկացեալ արտօնութիւններէն զատ — դուրս առնելով, այն իրաւունքներն, որոնք անձին սեպհական պիտոյից համար ուրիշ ժառանգական երկիրներէն ու գաւառներէն կը բերուին — ճշմարիտ ազնուականներուն վերաբերեալ երեսնեակի արտօնութեամբ ալ կարենայ ապրիլ: Իսկ առանձնական քաղաքացիներն ուրիշ՝ ազատ արքունական քաղաքաց բնակիչներուն պէս, քաղքին սովորեալ անցագիրն ունենալով՝ մաքսի եւ տրոց վճարքէն — բայց ոչ երեսնեակէն — ազատ ըլլան: Նոյնպէս, քաղաքային իշխանութենէն օրինաւոր կերպով տրուած եւ քաղքին

գործածութեանը մէջ եղած կնքով կնքուած եւ քաղաքացի ճամբորդներուն տրուած անցագիրներն՝ ամէն տեղ օրինաւոր եւ ընդունելի ըլլան։

"Երրորդ. Հրապարակական տուրքերն եւ կամ ուրիշ որ եւ իցէ հասարակաց ծանրաբեռնութիւնները՝ միայն մէկալ ազատ թագաւորական քաղաքաց սովորութեանը համեմատ պարտաւորեալ է հատուցանելու եւ կրելու։ Ըստ հետեւորդի՝ ընդհանուրք եւ առանձնականք — վերաբերին անոնք՝ որ եւ իցէ կարգի եւ աստիճանի — որոնք որ հոն քաղաքացւոյ երկիր եւ կամ արտաքին եկամուտներ ունին — չնկատելով իրենց ազնուականութեան՝ զինուորական կամ արքունի գանձէն ունեցած առանձնաշնորհութիւններն, — իրենց երկրակալութեան եւ ուրիշ արտաքին եւ աշխարհական եկամուտներուն համար, պարտական են ի նպաստ քաղ.քին տուրք վճարելու եւ ուրիշ հասարակաց ծանրաբեռնութիւնները կրելու։ Նմանապէս պարտական են, այս տեսակ կալուածատէրութիւններն իրենց արտաքին եկամտին նկատմամբ քաղաքային իրաւունքն ալ ճանչնալու։ Բայց ընդ հակառակն անվթար եւ անվնաս պահուելու է այն սովորութիւնը՝ որ մեր նախորդներէն ստացած եւ մեզմէ 1785երորդ տարւոյ յունուար 27ին, մեր ուրիշ մէկ պատճէնին զօրութեամբն իրենց տրուած ու ամրացուած առանձնաշնորհութեանց վրայ կը խօսի։ Ուր անոնք, իբրեւ շարունակ վաճառականութեամբ զբաղող մարդիկ, զինուորաց տեղ

ու բնակութիւն տալէն եւ նախամոլքի ծառայութեննէն եւ ուրիշ ասոնց նման ծանրաբեռնութիւններ կրելէ դուրս հանուած են, ուստի եւ ազատ կը համարուին։ — Որ բանին մէջ զիրենք ասկից ետքն ալ պահել կ՚ուզենք։

“Չորրորդ. Նկատմամբ քաղքին տարածութեանն — ամբողջ երկրակալութիւնը, զոր բնակիչք՝ քաղքին սահմանին մէջ մինչեւ հիմակ ունեցած են — դուրս առնելով միայն այն արքունական կալուածը (curia), որ յիշեալ քաղքին հասարակութեանը տրուեցաւ, ազնուականութեան իրաւամբ մեր անմահ յիշատակաց արժանի նախորդներէն — ճշմարիտ եւ վաղեմի սահմաններու եւ արահետներու մէջ. զանոնք՝ իրենց որ եւ է անունով անուանուած ամէն եկամուտներովը, շահերովը, տոկոսներովը, ռոճիկներովը, հասերովը, պտուղներովն՝ երկրակալութեան — քաղքին դրսի կամ ներսի կողմը — որ եւ է տեղւոյ վրայ, բայց քաղքին սահմանին մէջ — կանգնուած կամ կանգնուելու մաքսատուններովը, գինետուններովը, մսահատութիւններովը, գարեջրի եւ օղիի գործատուններովը, աղիւսի եւ կղմինտրի գործարաններովը, վաճառանոցի եւ տօնավաճառի եկամուտներովն — այն պարտ ու պատշաճ վճարմամբ՝ զոր ան քաղաքացիք պարտական են վճարելու, որոնք թէպէտ քաղքին բնակչացը չվերաբերին՝ բայց քաղքին սահմանին մէջ տեղաւորուած են, տեղավաճառանոցներ եւ օթեւաններ կանգնելով — աս տեսակ քաղաքներուն վերաբերած ամէն

իրաւունքներն ու արտօնութիւններն իրենց կը շնորհենք ու կու տանք։

“Հինգերորդ. Կը շնորհենք, որ այս ազատ թագաւորական քաղքին հասարակութիւնը՝ դատաւորին եւ ուրիշ պաշտօնատարաց ընտրութեանը մէջ, ուրիշ արքունական ազատ քաղաքներուն համեմատ կարենայ գործել։ Եւ այս կերպով ընտրուած եւ ամրացուած անձինքներն, այն քաղաքաբաշխութեան վերաբերեալ խնդրոց վրայօք՝ որոնք ազատ թագաւորական քաղաքներուն ատենակալութեանը կը վերաբերին՝ ընդհանուր գործածութեան եւ տէրութեան օրինացը համապատասխանող կերպով դատաստան ընեն։ Բայց պիտի շնորհեն, որ դատախազութիւն ընողները — մեր նախընթաց որոշմունքներուն համեմատ — որպէս զի խնդիրն աւելի ծանր կերպով վերաքննուի, Դրանսիլուանիոյ արքունական վերին ատենակալութեան կարենան բողոք ընել, ուր որ ամբողջ խնդիրը դրուելու է, իր ամէն պարագաներովը։

“Վեցերորդ. Դարձեալ՝ կու տանք այս ազատ թագաւորական քաղքին սրոյ իրաւունք, եւ այն իրաւասական իշխանութիւնը, զոր մեր միւս բոլոր թագաւորական ազատ քաղաքներն ըստ սովորութեան կը բանեցընեն՝ ան ամէն չարագործներուն վրայ, զորոնք իրենց քաղքին սահմանին մէջ կը բռնեն։ Կու տանք իշխանութիւն նախատանաց սիւնի կամ կախաղանի կանգնման։ Կու տանք նոյնպէս իշխանութիւն,

*որ ի վիճակի ըլլայ իր անձինքներն եւ քաղաքացի երկրատէրները՝ պատշաճ եւ քաղաքաբաշխութեան իրաւանցը շրջանին վերաբերող գործառնութեանց մէջ դատելու, ա՛յն պայմանաւ՝ որ ընդհանուր օրէնքներն աչքի առջեւն ունենայ, որոնք այս կէտիս նկատմամբ ուրիշ ազատ թագաւորական քաղաքներուն համար գրուած են ու պիտի գրուին։*

*“Եօթներորդ. Կու տանք նոյնպէս այս քաղաքին պաշտպանութեան* (patronatus) *իրաւունք, որուն զօրութեամբ, ուրիշ քաղաքաց սովորութեանը համեմատ՝ կարենայ իրեն քահանայ ընտրել։ Բայց այն բացորոշ պարտաւորութեամբ, որ քաղաքն այն քահանային եւ իր օգնականներուն պարտական է պարտ ու պատշաճ հոգատարութիւնն ընելու. ինչպէս, որ այս բանս ուրիշ առանձնաշնորհութեանց պատճէններուն ձեռօք ալ սրբացուցուած է։*

*“Ութերորդ. Եւ որովհետեւ քաղաքն ամրապատ չէ, եւ հիմակուան յարաբերութիւնները նկատելով, ասոր հարկաւորութիւն ալ պիտի չըլլայ՝ — կը շնորհենք որ անիկայ գեղերով շրջապատուի։ Քաղաքն՝ իր ապահովութեանն ու պաշտպանութեանը համար, ա՛յնչափ արքանեակ, կամ հասարակ բացատրութեամբ՝ ծառայ պահէ, որչափ որ հարկաւոր է։ Նմանապէս ունենայ թմբկահարներ, որոնք՝ հրատարակութիւնները ծանուցանեն, կամ հրկիզութեան ատեն քաղաքացիները մտադիր ընեն։ Աս ծառաներն, որոնք քաղաքաբաշխութեան*

ձեռօք ընտրուած առաջնորդի մը տակ պիտի ըլլան, իրենց վերաբերած զէնքերովը զինաւորուած՝ պարտական են գիշերները, նմանապէս ատենակալութեան ատեն եւ տօնավաճառներու ժամանակ, ուրիշ ազատ թագաւորական քաղաքներու մէջ ընդունուած սովորութեան համեմատ՝ չարութիւն ընել ուզող եւ խառնակութիւն պատճառող մարդիկներուն վրայ ձեռք դնել. գողութեան եւ որ եւ է յանցանաց առջեւն առնելու համար, քաղաքին մէջ շրջագայիլ եւ պահակապանութիւն ընել։

"Իններորդ. Կը շնորհենք այս քաղաքին նաեւ՝ որ ամէն անժառանգ մնացող քաղաքացւոց ստացուածքն — ըլլան անոնք անձնական կամ երկիր, եւ քաղաքացւոց ստացուածքէն մնացած ժառանգութիւն — քաղաքին արկղակալութեանն անցնին։ Եւ ասանկ անտէր ստացուածքները քաղաքին իշխանութեանը տակ կարենան առնուիլ. եւ քաղաքին հասարակաց օգտին գործածուիլ։

"Ժառանգ չունեցող, կամ առանց կտակի վախճանող ազնուականներն, ինչպէս նաեւ քաղաքային երկրատէրութեան սահմանին մէջ բնակող եւ տուրք տուող առանձնականներուն շարժական ստացուածքները — դարձեալ՝ քաղաքին եւ իր շրջանին մէջ եղող մշտատեւ շարժական եւ անշարժ ստացուածքներն՝ որոնք անանկ ազնուականներու կամ ազատ մասնաւորաց ստացուածքը կը կացուցանեն, որոնց վրայօք ստուգիւ ապացուցուած է, որ ուղիղ ճամբով

որ ի վիճակի ըլլայ իր անձինքներն եւ քաղաքացի երկրատէրները՝ պատշաճ եւ քաղաքաբաշխութեան իրաւանցը շրջանին վերաբերող գործառնութեանց մէջ դատելու, այն պայմանաւ՝ որ ընդհանուր օրէնքներն աչքի առջեւն ունենայ, որոնք այս կէտիս նկատմամբ ուրիշ ազատ թագաւորական քաղաքներուն համար գրուած են ու պիտի գրուին։

“Եօթներորդ. Կու տանք նոյնպէս այս քաղքին պաշտպանութեան (patronatus) իրաւունք, որուն զօրութեամբ, ուրիշ քաղաքաց սովորութեանը համեմատ՝ կարենայ իրեն քահանայ ընտրել։ Բայց այն բացորոշ պարտաւորութեամբ, որ քաղաքն այն քահանային եւ իր օգնականներուն պարտական է պարտ ու պատշաճ հոգատարութիւնն ընելու. ինչպէս, որ այս բանս ուրիշ առանձնաշնորհութեանց պատճէններուն ձեռօք ալ սրբացուցուած է։

“Ութերորդ. Եւ որովհետեւ քաղաքն ամրապատ չէ, եւ հիմակուան յարաբերութիւնները նկատելով, ասոր հարկաւորութիւն ալ պիտի չըլլայ՝ — կը շնորհենք որ անիկայ գեղերով շրջապատուի։ Քաղաքն՝ իր ապահովութեանն ու պաշտպանութեանը համար, այնչափ արքանեակ, կամ հասարակ բացատրութեամբ՝ ծառայ պահէ, որչափ որ հարկաւոր է։ Նմանապէս ունենայ թմբկահարներ, որոնք՝ հրատարակութիւնները ծանուցանեն, կամ հրկիզութեան ատեն քաղաքացիները մօտադիր ընեն։ Աս ծառաներն, որոնք քաղաքաբաշխութեան

ձեռօք ընտրուած առաջնորդի մը տակ պիտի ըլլան, իրենց վերաբերած զէնքերովը զինուարուած՝ պարտական են գիշերները, նմանապէս ատենակալութեան ատեն եւ տօնավաճառներու ժամանակ, ուրիշ ազատ թագաւորական քաղաքներու մէջ ընդունուած սովորութեան համեմատ՝ չարութիւն ընել ուզող եւ խառնակութիւն պատճառող մարդիկներուն վրայ ձեռք դնել. գողութեան եւ որ եւ է յանցանաց առջեւն առնելու համար, քաղքին մէջ շրջագայիլ եւ պահակապանութիւն ընել:

"Իններորդ. Կը շնորհենք այս քաղքին նաեւ՝ որ ամէն անժառանգ մնացող քաղաքացւոց ստացուածքն — ըլլան անոնք անձնական կամ երկիր, եւ քաղաքացւոց ստացուածքէն մնացած ժառանգութիւն — քաղքին արկղակալութեանն անցնին: Եւ սանկ անտէր ստացուածքները քաղքին իշխանութեանը տակ կարենան առնուիլ. եւ քաղքին հասարակաց օգտին գործածուիլ:

"Ժառանգ չունեցող, կամ առանց կտակի վախճանող ազնուականներն, ինչպէս նաեւ քաղաքային երկրատէրութեան սահմանին մէջ բնակող եւ տուրք չտուող առանձնականներուն շարժական ստացուածքները — դարձեալ՝ քաղքին եւ իր շրջանին մէջ եղող միշտատեւ շարժական եւ անշարժ ստացուածքներն՝ որոնք անա՛նկ ազնուականներու կամ ազատ մասնաւորաց ստացուածքը կը կացուցանեն, որոնց վրայօք ստուգիւ ապացուցուած է, որ ուղիղ ճամբով

ստացած չեն եւ քրէական յանցանք ըրած են՝ — արքունի գանձարանին անցնին. եւ այս տեսակ քաղաքացւոյ ժառանգութիւններն անմիջապէս Թագաւորական գանձուն տրուին։ Այսու ամենայնիւ անոնք, որոնք այս բանս դատաստանի առջեւ կը հանեն, քաղաքային օրինաց համեմատ, կարենան զանոնք նորէն ընդունիլ։

"Տասներորդ. Կը շնորհենք այս քաղքին, որ իր շրջակայ տեղերուն հասարակաց օգտին եւ շահուն համար — մեր ուրիշ արտօնութեանց պատճէններուն համեմատ — ամէն շաբաթ՝ երկու շաբաթական, եւ տարուէ տարի՝ չորս տարեկան տօնավաճառ կարենայ ունենալ. այն ամէն իրաւունքներով եւ արտօնութիւններով, որոնցմով ուրիշ ազատ Թագաւորական քաղքներն ճոխացեալ են. եւ այն ամէն եկամուտներովն ու հասերովն ապրի, որ սովորաբար շաբաթական եւ տարեկան տօնավաճառներէն ըստ օրինաց կը քաղուի. — եւ ուրիշ ամէն այսպիսի քաղքներու մէջ՝ ըստ սովորութեան ընդունուած եկամուտներն ու շահերն՝ ինքն ալ կարենայ ընդունիլ, վայելել եւ ունենալ։

"Տասնումէկերորդ. Յիշեալ քաղաքացիները՝ վերը յառաջ բերուած առանձնաշնորհութիւններով ու ազատութիւններով, որոնք ուրիշ ազատ Թագաւորական քաղաքներուն հետ ալ հաւասար են, եւ տէրութեան օրինացն ու կարգադրութեանցը մէջ բովանդակուած ար-

տօնութիւններով բոլորովին հանգիստ, ապա-
հով ու անվրդով կարենան ապրիլ. եւ զանոնք
վայելել, գործադրել ու գործածել. որպէս զի
աս կերպով ամէն արգելք ու ամէն տեսակ
անմիաբանութեան տրուելու առիթը հեռացուի։
Կ'ուզենք, որ բնակչաց տներն — ըլլան անոնք
քաղքին մէջ, կամ անկէ դուրս, բայց քաղա-
քային սահմանին մէջ — ամէն ազատութիւնն
ու առանձնաշնորհութիւնը — առանց քաղքին
հաւանութեանն ու փնասուն — ապահովեալ,
անմատչելի եւ արգելեալ ըլլան։ Մանաւանդ
թէ յայտնապէս կը կարգադրենք, որ եթէ ան-
շարժ ստացուածք մը ժառանգութեամբ, կամ
որ եւ իցէ տիտղոսով՝ եկեղեցւոյ, օտարի կամ
դրսի մարդու մը վրայ անցուած ըլլայ — այն-
պիսի մարդն, այն ստացուածքը տարւոյ մը միջոցի
մէջ, (եթէ, որ այս միջոցին քաղաքացւոյ իրաւանց
եւ եկամտից, ինչպէս նաեւ ծանրաբեռնու-
թեանց ալ մասնակից եղած չէ՛) քաղաքացւոց
ծախելու պարտական է. ապա թէ ոչ՝ քաղա-
քային ծերակոյտն իրաւունք ունի, որ յա-
ռաջուընէ արժէքը կտրելով եւ երկրատիրոջ
վճարած գումարը հատուցանելով, զանոնք իրեն
առնու։

"Տասնուերկուերորդ. Եւ որպէս զի ինքնիշ-
խանութիւնն եւ քաղաքային իրաւանց իշխա-
նութիւնն անփնաս պահուի եւ չվրդովուի կամ
անհանգիստ չըլլուի՝ յայտնապէս կ'ուզենք ու
կը հրամայենք, որ թէ՛ զինուորական եւ թէ՛
արքունական գանձուն պաշտօնատէրները, քաղ-

*քին՝ եւ անոր սահմանին մէջ, քաղաքացեաց վրայ իրաւանց իշխանութիւն բանեցընելու եւ կամ ուրիշ իրաւասական գործառնութեանց մէջ, իրենց դէմ ոտք կոխելու եւ այսպիսի գործքերու մէջ խառնուելու չհամարձակին։ — Թէ քաղաքային, թէ տնտեսական հասարակաց կարգադրութեանը վրայօք եղած վերին հսկողութիւնը — ինչպէս ուրիշ ազատ քաղաքներուն մէջ, անանկ ալ հոս — մեր թագաւորական յանձնակատարին կամ անոր տեղապահին կառավարութեանը տակ՝ գաւառապետին փոխանորդին կը յանձնենք։*

*“Տասնուերեքերորդ․ Որովհետեւ արդարները դէշ՝ եւ անմեղները մեղաւոր չեն կրնար նկատուիլ․ եւ այսպէս իրենց գործքերն ու ստացուածքները չեն կրնար վրդովուիլ ու կարճուիլ, հոգ տանիլ կ՚ուզենք որ վերոյիշեալ քաղքին բնակիչներն ու քաղաքացիներն ուրիշներուն պարտուցը համար՝ իրենց անձինքներու կամ ստացուածքներու մէջ, ոչ ինչ կերպով եւ ո՛չ տեղ մը բռնաբարուին կամ բանտարկուին։ — Ասիկայ կ՚ընենք, այն յայտնի ծանուցմամբ, որ այս զիջումներն, իրաւունքներն ու առանձնաշնորհութիւնները — ուրիշներուն չէ՛ հապա — միա՛յն մեր ճշմարիտ ստորակարգեալներուն, մեր՝ վերոյիշեալ քաղքին հիմակուան եւ ապագայ քաղաքացիներուն ծառայութիւն ընելու եւ նպաստ ըլլալու համար է։*

*“Տասնուչորսերորդ․ Բայց ա՛յն ամէն բան, որ յառաջ բերուեցաւ, ա՛յն մասնաւոր պայ-*

մանաւ միայն կը կարգադրենք, որ յիշեալ քաղաքացիներն, որոնք արդէն ուրիշ կողմանէ՝ մեր ամէն վերին որոշմանցը համեմատ՝ տէրութեան հարազատ զաւկըներու կարգին ու ընկերութեան մարմնոյն մէջ առնուած ու անտարակուսելի հայրենակիցներ ճանչցուած են՝ իրենք զիրենք ամէն բանի մէջ, ուրիշ ազատ թագաւորական քաղաքներուն համաձայնցընեն, եւ անշնորհակալութեան եւ անհաւատարմութեան կնքոյն ախտէն — այս՝ եւ ուրիշ ընդհանուր առանձնաշնորհութիւններն եւ արտօնութիւնները կորսնցընելու, ջնջուելու եւ ուրիշ կրելու օրինաւոր պատիժներ ընդունելու վախէն — շարունակ զգուշանան. եւ բարերարութիւնն ու իրենց նկատմամբ ունեցած բարեզգածութեան այս ոչ հասարակ նշանը՝ թէ՛ մեր Մեծափառութեան, թէ՛ մեր օրինաւոր յաջորդներուն եւ ժառանգներուն կատարեալ հաւատարմութեամբ, հաստատութեամբ եւ անստգիւտ վարմունքով արժանի ընելու ջանան: — Մանաւանդ թէ կը կրկնենք ու կը յանձնենք, կ'ընդունինք եւ ասկից ետքն ալ վրանիս կ'առնունք վերոյիշեալ կերպով յայտարարած առանձինն ու ընդհանուր կէտերն, ուրիշներուն իրաւունքը պահելով:

" Ուստի եւ Ձեզի՝ ամենապատիւ, մեծարեալ, արժանացեալ, ազնուական, մեծաշուք, ազնուազարմ, քաջազգի, իմաստուն եւ որ եւ է կարգի ու աստիճանի անձանց՝ առանձինն եւ իւրաքանչիւրոց, իշխանութեանց, պաշտօնատեարց, որոնք

մեր երկրատէրութեանը մէջ են, կը յայտնենք, կը հրատարակենք, կը հրամայենք ու կը կարգադրենք, որ հիմակուընէ պարտական էք, այս քաղաքն՝ իբրեւ ազատ արքունական քաղաք նկատելու եւ ճանչնալու. — որ այն ամէն առանձնաշնորհութիւններով, ազատութիւններով եւ օգուտներով ապրի, եւ զանոնք ունենայ, զորոնք ունին ու կը վայելեն ուրիշ նմանօրինակ քաղաքներն, եւ զինք այս իրաւանցը մէջ պաշտպանելու եւ պահպանելու պարտական էք:

"Որ բանին մշտնջենական յիշատակին եւ վաւերականութեանը համար, որոշեցինք, որ մեր յատուկ մեծ կնքովն ամրացած պատճէնը, մեր յիշեալ ազատ թագաւորական առեւտրական քաղքին, Եղիսաբեթուպոլսի քաղաքացիներուն եւ բնակիչներուն տանք ու շնորհենք. որ իրենց՝ իրենց յաջորդացն ու ժառանգացը նկատմամբ ալ մշտնջենաւորապէս վաւեր եւ օրինաւոր ըլլայ. եւ որ հարկաւոր է իրաւանց ապագայ ապահովութեանը համար:

"Տուեալ մեր Աւստրիոյ արքիդքսական քաղքին, Վիեննայի մէջ. յամի Տեառն 1786. դեկտեմբեր 27ին, մեր հռոմէական իշխանութեան 22երորդ՝ իսկ մեր ժառանգեալ թագաւորութեանը 7երորդ տարին:

Յովսէփ յ. ձ.

Կարոլոս Բալֆի կոմս յ. ձ.

Յովսէփ Տօնաթ յ. ձ.

Հաւատարմութիւնն ու հաւատարիմ ծառայութիւնը՝ զոր մատուցին Եղիսաբեթուպոլսեցիք եւ ընդհանրապէս Տրանսիլուանիոյ ազգայինք ժամանակ ժամանակ ու այլեւայլ առթիւ Տէրութեան ու արքունեաց, ըստ բաւականի տեսանք։ — Ասոր նկատմամբ մանաւորապէս բարձրացընել ուզեցին ձայներնին Հայերն, այն միջոցին, երբ — ինչպէս քիչ մը ետքը պիտի տեսնենք — սըգդյական ազգն ու Տրանսիլուանիոյ ազատ թագաւորական քաղաքները բուռն յարձակմամբ Հայոց վրայ դիմեցին, իրենց վրայ զանազան յանցանքներ դնելով ու Տէրութեան առջեւ զիրենք այլեւայլ կերպով վար զարնելով ու նուաստացընելով։ — Արթնցաւ Հայոց անձնասիրութեան ու սնապարծութեան հոգին եւ տասնուերկու կէտի մէջ ամփոփուած յիշատակարան մը մատուցին Վիեննայի արքունեաց, Տրանսիլուանիոյ վերին կառավարութեան, բայց բուն՝ Գլուժի աւագաժողովոյն (Diaeta) եւ մանաւանդ հունգարական ազգին։

Այս յիշատակարանին մէջ, առանց բանն սքօղելու յայտնապէս յառաջ կը բերեն իրենց արդիւնքները։ — Եւ որովհետեւ դրութիւնն ինչպէս ըսինք, Հունգարացւոց դէմ ուղղուած էր, անով կը սկսի, թէ. ա. գեղացւոց յեղափոխութեան ատեն (1695—1705) ազգայինք՝ ձեռուընին սուր առած՝ ամենայն հպատակութեամբ ու բոլոր զօրութեամբ անոնց դէմ պատերազմեցան։ Թէ ազգայնոցմէ եւ ոչ մէկն ապստամբաց կողմն անցաւ։ Թէ շատերն արքու-

նեաց բանակին մէջ ծառայելով եւ շատերն ալ բանակին պարէն մատուցանելով՝ հոն կորսուած, փճացած են։ Բ. Թէ, թէպէտ այն միջոցին ազգայինք քիչուոր էին, բայց եւ այնպէս, կայսերական զօրաց հազարապետին եւ Դրանսիլուանիոյ կառավարին խօսքին, հազար ոսկի տուին բանակին օգնութեան համար, զոր երբեք չտեսան։ Գ. Թէ բոլոր ազգայինք, կաթուղիկէ եկեղեցին դառնալով՝ արտօնութիւն ընդունեցան, որ միշտ Դրանսիլուանիոյ մէջ կարենան մնալ։ Դ. Թէ տաճկական պատերազմին ատեն, տէրութիւնն սաստիկ պէտք ունենալով, արքունական կալուածներուն համար հարիւր հազար ֆիորին տուին, որ մեծ օգնութիւն եղաւ արքունական տան։ Թէ այն պատերազմներուն առթիւ՝ Կերլայ քաղքին դղեակը փճանալով՝ Վալլիս զօրապետին եւ Լոպքովիչ իշխանին ապահովիչ խօսքերուն վրայ 15.000 ֆիորինէն աւելի, նորոգութեան ծախք ըրին բերդին վրայ։ Թէպէտ այն միջոցին խոստացուեցաւ իրենց, որ պատերազմը դադրելէն ետեւ եղած ծախքերը պիտի հատուցուին, բայց քառանդան մը չտեսան։ Թէպէտ ան ալ ստոյգ է, որ Հայերն ըրած ծախքերնին չուզեցին։ — Ե. Թէ շլեզիական ու եօթնամեայ պատերազմներուն ատեն, երկու քաղաքները՝ 2500 ոսկի պարգեւ ըրին Մարիամ Թերեզիային. ուր որ հունգարական քաղաքներն եւ ոչ դանկ մը տուին։ Թէ, ատեն ատեն, բաւական զինուոր, ձի, հագուստ եւ ուրիշ բաներ տուին բանակին։ — Այս

պատերազմներուն առթիւ, Կերլայ քաղաքը 1000 ոսկի, իսկ նոր ազնուականները շատ պարգեւներ ըրին տէրութեան։ Գ. Երբ հարկ եղաւ որ բոլոր երկիրը կայսրուհւոյն փոխ ստակ տայ. որ միջոցին 112.000 գերմանական ֆիորին քաղուեցաւ, երկու քաղաքն այս գումարէն 40.000 ֆիորին տուաւ։ Որ ստակն իրենց երբեք չհատուցուեցաւ։ Է. Կայսրուհւոյն հրամանին համեմատ ազգայիններէն շատերն, եզ գնելով՝ բանակը տարին, որ չըլլայ թէ պակասութիւն ըլլայ։ Եւ չէ թէ միայն դուար, հապա նաեւ ձի, խոզի միս եւ ուրիշ պարէնի վերաբերեալ շատ բաներ տարին. — ու չգտնուեցաւ ազգայիններէն մէկն, որ բանակին մէջ զանցառութիւն մ'ըրած եւ կամ Բրուսիայւոց տարած ըլլայ բան մը։ Շատերը՝ բանակէն վնասով դարձան, աղքատցան. որովհետեւ իրենց ստակը բանակը, մնագործներուն քովը մնաց։ Ը. Դրանսիլուանիոյ — Տաճկի հարկատու — իշխանաց ատեն, սովորութիւն կար, որ շատերն ոչինչ արժանիքի համար, ազնուականութիւն եւ երկրատէրութիւն ընդունեցան, ըստ մասին տիտղոսով ու ըստ մասին մշտնջենաւորապէս։ Աս երկիրները՝ հիմակ ալ ձեռուընին ըլլալով՝ մեծ ազատութիւններ կը վայելեն։ Հայերն ալ, արքունի գանձուն օգնութիւն ընել ուզելով, ամէն մէկ երկրատէր երկ'երկու հազար ֆիորին՝ եւ ատենադպրին շատ պարգեւներ ըրին. որով բաւական գումար մը մնաց է թագուհւոյն արկղին մէջ։ Թէպէտ ասով շատերն ազնուականութեան բարձրացան եւ

զինանշան (armalis) ալ ընդունեցան, որ անանկ մը տրուած է (tenor) թէ ամէն արտօնութիւններով՝ ապահարկ ազատութիւնները վայելեն, գործածեն, եւ անոնցմով ապրին, այնպէս, ինչպէս ուրիշ ճշմարիտ ու անտարակուսելի ազնուականները։ Բայց զինանշանին իմաստին հակառակ, հայ ազնուականները՝ միայն իբրեւ պատուով ազնուականներ կը համարուին եւ շատ մ'արտօնութիւններէն ամենեւին շահ մը չունին. անանկ որ՝ Մարիամ Թերեզիայի եւ կայսերաց տուած ազնուականութիւնն, Աբաֆիէն եւ ուրիշ իշխաններէն առնուած ազնուականութենէն տարբեր չեն։ — Կան այսօր ալ անանկ օտարազգի ազնուականներ, որոնք տուրք չեն տար. եւ պատերազմի ատեն, ո՛չ իրապէս եւ ո՛չ դրամով օգնութիւն մը մատուցած են բանակին։ Իսկ Հայոցմէ — որ թէպէտ երկրատէրութիւնը 60.000 ֆիորինով գնած են — հարկ ու տուրք կը պահանջեն։ — Բայց ամենէն մեծ ամօթն ա՛ն է, որ կամուրջներէն, եւ ուր որ կամուրջ ալ չկայ, տուրք եւ երեսնեակ պէտք է որ տան։ Թ. Օտարազգիները, երկրին գրեթէ ամենեւին ստակ չեն բերած. իսկ այս երկու քաղքին վաճառականներն՝ եզ, ձի, կով, այծ, սեկ, մոմ, ոչխար, գառնենի եւ ուրիշ սաքսոնական ձեռագործներ օտար երկիր տանելով շատ ստակ ներս կը մտցընեն։ Թէպէտ եւ դուրս ալ կը տանին, բայց տարածը բերածին տասներորդ մասը չ'ըներ. ու տարածնին ալ արքունական երկիրները կը տանին եւ ո՛չ թէ օտար

երկիր։ Աս առուտուրով թէ Գրանսիլուանիոյ եւ թէ Հունգարիոյ մեծ եկամուտ կը բերեն։ Նոյնպէս այն քիչ շահը զոր կ'ընեն, երկրին մէջ կը ծախսեն. որովհետեւ ամէն բան իրական դրամով կը գնեն։ Անոր համար թէ Հունգարացիք, թէ Վալաքները, թէ ազնուականք ու թէ մեծամեծք յայտնապէս կ'ըսեն, որ եթէ Հայերն ստակ չբերէին՝ եւ ոչ արքունական տուրքերը պիտի կարենայինք վճարել եւ պիտի փճանայինք։ ժ. Մեծ օգնութիւն է երկրիս ուղղափառաց, որ բոլոր ազգայինք ուղղափառ են. որովհետեւ Հունգարացւոց եկեղեցիներուն շատ օգնութիւն կը մատուցանեն։ — Իրերն ասանկ վիճակի մէջ ըլլալով չենք կարծեր, կ'ըսեն, որ Գրանսիլուանիոյ մէջ, ըլլայ մարդ մը, որ խղճմտանքով կարենայ ըսել, թէ Հայոցմէ ամենեւին օգուտ չունի, եւ թէ նոյն իսկ ամենէն նուազ վնասը բերած ըլլան երկրին։ ժա. Գեղացւոց ապստամբութեանն ատեն՝ զՎօզարեան բռնեցին, Միքայէլ Միքէշին հետ։ Եւ որովհետեւ ասիկայ անոնց կողմն անցաւ, ազատեցին եւ զԱւքսենտիոս երեք տարի Մունգաչի մէջ պահեցին, որ ապստամբաց կողմն անցնի։ Միայն խաղաղութիւն ըլլալէն ետեւ կրցաւ անկէ ազատիլ։ ժբ. Ան երկիրներուն համար, որ հայ ազնուականներուն կամ քաղաքներունն է, ըստ իրաւանց տուրք պէտք չէր առնուիլ։ Եթէ այս երկիրները Հունգարացւոց ազնուականներուն ձեռքն ըլլային, հարկ պիտի չվճարէին. ինչպէս որ իրօք ալ չեն վճարեր. իսկ Հայք կը վճարեն. եւ այլն եւ այլն։

Կը յաւելում ընթերցողաց համար յի-շատակարանին հայերէն բնագիրը։

"Արդիւնաւոր գործքեր, զորոնք մեր Հայոց ազգըն կայսերական տանը օգնութեան էղիլին։

1. Նախ. Գուրուցշակին ժամանակը ամե-նեքեան հայերը սաղըթօվ ծառութիւն արիլին ընդէմ գուրուցշակին. եւ ամէնէվին հէչ մէկ հայ մը, ռէպէլիշ[1] չի դարձիլ։ Շատօնք էղիլին բիվօտախին[2] հէծէլին մէջ եւ շատօնք պրխդի-ցան, երբ եղիլէ օբսխտիցյին[3] տակն ալ. շատօնք հետ թագուհուն հէծէլին[4] ընկերութիւն տվիլ-ին[5]. եւ կօրիլին շատօնք։

2. Ան առենալ մագար թէ քիչ էղիլին հայերը, նայ տվիլին խօնթիքարին հէծէլին կէնարալին ու կուպէրնիումին խըրէրօվը[6] 1000 օսգի փոխ, խօնթիքարին, որն որ ասօր ալ չի վիճարած։

3. Ընդըրէկ հայ ազգը, որօնք ինչուրի ան-ժումը շիզմադիք էղիլին, եւ ամէն մէկը դար-ձիլին ուղափար, եւ ուղափար դարնալով գըն-տըվիլին խօնթիքարէն բրիվիլէկիում, որ ին բէրբէգում[7] մեան արտեալին մէջ. ուրուխ հիմ-պիկ ընդըրէկ հայ ազգը արտեալը ուղափար է։

1 Ապստամբ, յեղափոխական։

2 Ասանկ գրուած է. չեմ գիտեր ինչ կը նշանակէ։

3 Պաշարման, փակուած ատեն։

4 Հեծել, Գրանսիլուանիոյ Հայոց լեզուաւ՝ զօրք, զինուորներ, բանակ կը նշանակէ։

5 Ընկերութիւն տալ = օգնութիւն ընել։

6 Կառավարութեան յորդորելովը։

7 Ցմիշտ, մշտնջենապէս։

4. Թուրքին հէծէլութեանը ատենը պէտք էղիլէ, որ համպրինք 100.000 ըղլօթ տօմինիումին սէպը, որն որ մեծ ընկերութիւն էղիլէ աուստրիային տանը։ Նըմանապէս Թուրքին հէծելութեանը ժամանակը մեր հայոց քաղաքը բերդը ավեր ըլալով ին ռէբառաձիօնէմ ալ շատ խարճիլինք քանց 15. հազար ըղլօթը, կէնէրալ վալխսին եւ բրինձ լօբգօվիչին ասէգուրացիային[1] էտէվանց, թէ խաղաղութիւն ըլալով, պի դարձվի Հայոց Քաղաքին. որն որ ասօր ալ չի դարձուցած, եւ ոչ ուզած է։

5. Առջի հեծելութեանը, հետ Բրուսին, Պավարին եւ այլոց ժամանակը, աս էրկու Քաղաքը տվիլին 2500 = օսգի. շըօնդէ[2] պաշխիլինք Թագուհուն. մագար[3] մէկալ քաղաքները մէկ պան մը չին տըվիլ։

6. Նըմանապէս թէ գաղան[4], թէ ձի, թէ հագուստ, հետ երկրին notabiliter[5] տվիլինք։

7. Աս հեծելութեանը ատենը հետ բրուսին, ռատ[6] կամաւօվ պաշխիլէ Հայոց Քաղաքը 1000. օսգի. Նըմանապէս Նոր Նէմիշները[7]։ Եւ ալ վաղուցու հայերն ալ distingvat[8] էղիլին այլ ազգէ նայ, տվիլին ընկերութիւն, գաղան ու

---

1 Ապահովութիւն, վրայ տալ։
2 Ինքնակամ, յօժարութեամբ։
3 Թէպէտ, ուր որ։
4 Զինուոր. հունգ. է։
5 Զգալի, տեսանելի կերպով, բաւական։
6 Ազատութեամբ, սիրով։
7 Ազնուական. հունգ. է։
8 Տարբերիլ, զանազանել։

սղակ եւ ձի։ Նըմանապէս ընդրէկ էրկըրէն ուզէլով ըսղակ փոխ շահու թագուհին, տվիլէ ընդրէկ էրկիրը 112.000 . նէմէցի ըղըօթ. օր սումայէն 40 . հազարը քիչ պակաս երկու քաղաքը տըվիլէ. որն օր ասօր ալ չիվիճարած։

8. Թագուհուն հրամանին եւ տէգրէդին էտէվանց, շատոնք, եղը գնիլին եւ քըշիլին արմատան[1], օր պաքսութիւն չիլայ հէծէլին։ Չէ թէ Նըմայ տավար, հաթէ ձի, խօզի միս եւ այլ ուտէլվեղէն, որոնցմէ օր պաքսութիւն չի ունենայ։ Եւ ամենեւին չի գտվիլ մէկ հայ մը, օր praevaricatio[2] արած ըլայ ընդրէկ հէծէլութեանը տակը. կամ բրուսին տարած ըլայ իքմը։ Եւ այս տավար եւ այլն քշէլօվ դապըրը[3], շատոնք զէնօվ զարդըլվիլին. եւ աղքըտցիլին, կօրսըվելօվ շատոնց սղակը դապըրը, խասափչըցը[4] մօտ։

9. Ատաթ կէցիլէ օզկայ, արտեալի բըրինձէրու ատեն, որոնք թուրքին դըրիպուդար[5] եղիլին, օր ըղշատօք հի ինչ ազգի մէջէ, մանավանդ օլախնուն մէջէն, իժօվ[6] քիչ մէրիդումի[7] սէպը նէմիշիդ արիլին զիրենք. եւ եօսակ[8] ալ partim inscriptio, partim jure perennali[9]. եւ հիմպիկ

---

1 Բանակ, զօրք։

2 Զանցառութիւն, պատուիրազանցութիւն։

3 Բանակ, զօրք. հունգ. tábor բառն է։

4 Խասափչի՝ մսագործ. տաճկ. է։

5 Հարկատու։

6 Շատ։

7 Արժանիք, արդիւնք։

8 Երկիր, կալուածատէրութիւն. հունգ. է։

9 Ըստ մասին վրանին գրելով՝ անցընելով, ու ըստ մասին մշտնջենապէս իրենց պարգեւելով։

*ալ ձեռվընէրը ունին*, et in magna libertate vivunt[1]. *Մինք եւս շատօնք ուզէնալով զթագուհուն էրարիումը ընկէրէլու*[2], *տվինք ամէն կազտայ էրկէրկու հազար ըզլօթ թագուհուն. եւ գանձըլարիային շատ օգկայ խարճեր եւ այնպէս նօդապիլիս սումայ գնացինք թագուհուն գասան. եւ ամպէս զշատօնք, ինչքէս* Hereditaria Princeps[3] *նէմէշիդ արինք*[4]. *եւ տվինք իրենց արմալիշ*[5]: *Որին դէնօրը*[6] *այնպէս է, որ* omnibus privilegys immunitatibus gaudeant, utantur et fruantur, quibus alii veri et indubitati Nobiles utuntur, fruuntur et gaudent.[7] *Բայց հիմպիկ, ինչպէս, ուսդինց էկինք բանը, որ հայ նէմիշնէրը ընդէմ արմալիշին* tenor*ին, նըմայ* honorarius[8] *նէմիշ իշվին. եւ օգկայ* immunitas*նուն*[9], *որ կայ արմալիշնուն մէջ նայ, ամէնեւին շահ չունենան: Եւ այսպէս ալ, ոչինչ պիլային խօնթիքարէն եւ Մարիայ Թէրէզիաէն արած նէմիշնէրը, քանծ Աբբաֆիէն եւ այլ բրինձէրումէ արած նէմիշ-*

---

1 *Մեծ ազատութիւններով կ'ապրին:*

2 *Արքունական գանձուն օգնութիւն ընելու:*

3 *Ժառանգական իշխան:*

4 *Նէմէշիդ անել = ազնուականութեան բարձրացնել. կէսը հունգարերէն, կէսը հայերէն է:*

5 *Զինանշան, ազնուականութեան թուղթ:*

6 *Իմաստ, բովանդակութիւն:*

7 *Որ ամէն ապահարկ առանձնաշնորհութիւնները վայելեն, գործածեն ու անոնցմով ապրին. ինչպէս ուրիշ ճշմարիտ ու անտարակուսելի ազնուականները կը վայելեն, կը գործածեն ու անոնցմով կ'ապրին:*

8 *Միայն, պարզապէս պատուոյ, պատուով:*

9 *Ազատութիւն, ապահարկ ըլլալը:*

ները։ — Եւ կան իժօվ շատ ասօր ալ ունիուս Sessionis[1] նէմիշներ, որոնք տալիք չին ի տալ․ եւ ոչ այլ հեծելութեանը առնը, օչ սաղըթօվ, օչ ըսդըկօվ չին ընկէրիլ զթագուհին։ Եւ որոնք օր ավիլին նայ, իժօվ քիչ։ Բայց մեր մօտէն, թէ աս էրկու քաղքէն, մագար թէ զեօսակը[2]... գընտըվիլինք, նայ տալիք կ'ուզին․ եւ բրիվագուս նէմիշնուն մօտէն ալ․ եւ այլ, որն որ ալ մեծ ամօթօվ կըննի, ամէն բօտերու[3] մօտ եւ ուրուխ բօտ ալ չիգայ, նա տամղանուն մօտ էկիլէ հրաման որ տանք, կամ բուդրաք։[4]

10․ Աս էրկըրին մէջ, օզկայ ազգ, մայ հէչ պան չի բերիլ․ հա թէ այս երկու քաղաքին պազըրկնները, որոնք օր թէ եզը, թէ կով, թէ ձի, թէ ածը, թէ սաղդիան, մոմ, օչխար, էլթրի, եւ նմանապէս սասէրուն մանուֆագդուրայ[5] ապրանքը դուս չի հանին. եւ իժով շատ պան կու բէրին․ խորդօր դուս ալ կու տանին։ Տարը տասնում փայն ալ դուս չին տանիլ․ եւ ան ալ թագուհուն էրկրնուն մէջ կու տանին․ եւ ամէնեւին օզկայ երկիր չին տանիլ։ Եւ աս արուատուրը անէլօվ պի էրեւնայ թէ արտեալին գամէրաէն եւ թէ մաճըքինը, թէ ինչխար վի-

---

1 Մէյ մէկ տեղ, առանձին տեղեր։

2 Պարապ թողուած է ձեռագրին մէջ այս տեղն. անշուշտ այն պատճառաւ՝ որ եւքէն երկիրներուն (160·000 ֆիորին) գինը մէջն անցընեն, զոր մոռցած կ'երեւան։

3 Կամուրջ։

4 Սորկի փոքր տեսակ մը պիտ'որ ըլլայ։

5 Ձեռակերտ, ձեռագործ։

նիթ[1] կու բերին թագուհուն էրարիումին։ Եւ նմանապէս ինչ որ քիչ շահ կանէ նայ, երկրին մէջ կու խարճէ. զէրամ զամէն բանը ըսդըկօվ կու գնինք։ Այնպէս որ բուպլիձէ[2], երկրիս թէ մաճար, թէ օլախ եւ շատ նէմիշներ ալ, եւ թագաւորաքն ալ կասին թէ. թէ որ հայերը պան չի բերէին երկըրին մէջ նայ, օչ տալիքը թագուհունը պի կարնային վըճարելու. եւ պի փուսդաէին[3]։

11. Ընդրէկ[4] հայ ազգը եւս ուղափար ըլալօվ, մեծ շահօվն է երկրին մէջ կեցող ուղափարացը. զորոնք, երբ ժամերը իրենցը, եւ զիրենք նօդապիլիս սումաեօվ կու ընկէրինք, չի պի գտվի եւս այնպէս մարդ արտեալին մէջ խղճմըտանաբար վօվօր ուզէնայ ասէլու թէ հայ ազգէն քան ինչ քիչ զեն ունէնայ։ — Եւ գուրուցշակին ժամանակը զագսէնտ եպիսկոպոսը գուրուցները բըռնէլօվ հետ միգէշ միհային. ուրուխ միգէշ միհայը գուրուց դարձիլ է. եւ զագսէնտ վարդապետը երեք տարի փակ բըռնիլին մունգաչը, որ գուրուց դարնայ. մինչեւ որ խաղաղութիւն դարնալօվ խալըսիլէ։

12. Որ եւսակը որ հայ նէմիշները կամ քաղաքը կու բըռնէ, որն որ իւրէ merito,[5] տալիք

1 Եկամուտ, վաստակ։

2 Յայտնապէս, Հրապարակաւ, ամէնքը։

3 Փուսդայել, Դրանսիլուանիացւոց լեզուաւը, փճացընել, ոչնչացընել կը նշանակէ։

4 Բոլոր, ամբողջ։

5 Այսինքն jure merito = արժանեաց իրաւամբ. կէսը հայերէն՝ կէսը լատիներէն գրով։

չիպիկէ օր տայ․ նայ թէ օր մաճար թագաւո-րաքը բըռնէին, նայ տալքը չիպի տային․ ինչպէս օր չէին իտաեալ։ Եւ այնպէս իքմալ զէն չունի թագուհին, կամ թէ էրարիումը„։

## 13.

Ազգայինք՝ չընդունուեցան Գրանսիլուա-նիոյ մէջ իբրեւ հայազգի․ եւ ընդունուած երեք ազգերէն զատ՝ ուրիշ ազգայնութիւն մը չկազ-մեցին ու չկրցան կազմել։ Հապա ընդունուեցան պարզապէս իբրեւ ստորակարգեալ, իբրեւ հպա-տակ ու պաշտպանեալ վաճառական մարդիկ։

Թէպէտեւ Հայերը՝ Գրանսիլուանիա գալէն շուրջ յիսուն տարի ետքն — ինչպէս պիտ'որ տես-նենք — մաս ունեցան տէրութեան աւագաժողո-վին մէջ եւ հոն իրենց քուէն ալ գործածեցին․ այսու ամենայնիւ դեռ այդրէնածին կամ իբրեւ տէրութեան զաւկըներ չէին ճանչցուեր։ Շատ ժամանակ անցաւ, ու շատ աշխատութեան պէտք ունեցան, մինչեւ որ այդրէնածին եղան եւ հաւասար իրաւունք ստացան ուրիշ հպատակաց պէս։ — Եւ ո՞վ կրնայ ըսել, թէ այս բանս ըստ ինքեան նպաստաւոր եղած ըլլայ իրենց։

Ան ստոյգ է, թէ աղէկ բան մը չէր, որ ազգայինք ամէն բանի մէջ հաւասար իրաւունք չունէին մէկալ հպատակ ազգաց հետ, — թէեւ գիտենք պատմութեանս ընթացքէն թէ ո՛րչափ առանձնաշնորհութիւններ ունէին։ — Բայց մէ-կալ կողմանէ, օգտակար բան մը չեղաւ ան ալ, երբ ընդունեցան հաւասարութիւն եւ նման

իրաւունք ամէն ազգայնութեանց հետ։ Վասն զի ասով. Նախ՝ իրենց մէջ եղած հոծ միութիւնը քակուեցաւ. Երկրորդ՝ կորսնցուցին շատ մը յատուկ իրաւունքներ ու արտօնութիւններ, զոր ունէին իբրեւ օտարածին։

Սակայն ուզեցին ու ստացան։

Թէ ազգայինք տէրութեան աւագաժողովին մէջ, — որ այն միջոցին՝ միայն երբեմն երբեմն կը գումարուէր — մաս ունեցան, արդէն Նախորդ դարուն առաջին կիսուն մէջ (1725), յայտնի կը տեսնուի կառավարութեան այն հրաւիրագրէն, զոր խրկեց Սիկիսմունտոս Գօրնիժ Հայոց ընկերութեան։ — Ասոր մէջ կը հրաւիրէ զազգայինները, որ ժողովք գումարելով՝ բանէ հասկցող մարդ մը խրկեն աւագաժողովին, որ թէ Հայոց ընկերութեան բաները գիտնայ եւ թէ միանգամայն անոր գործառնութեանցը վրայ ժողովին հարկաւոր տեղեկութիւնները տալէն զատ, նաեւ Հայոց կամքը, ցաւերն ու վշտերն ամփոփ ու պայծառ կերպով աւագաժողովոյն առջեւը դնէ, որ ժամանակ չկորսնցընեն։

Ահա կառավարութեան, Հայոց ընկերութեան գրած հրաւիրագրին թարգմանութիւնը.

"Սուրբ, կայսերական եւ թագաւորական ուղղափառ Վեհափառութեան — Դրանսիլուանիոյ իշխանին, մեր ամենագթած տիրոջ անուամբը։

"Մեզի սիրելի ու հաւատարիմ եղողներուն՝ շնորհք եւ վեհափառական ողջոյն ու գթութեան առատութիւն։ — Մեր մեծափառ Տէրը, խնամք ունենալով ժառանգական իշխանութեան

վրայ, մեր՝ իրեն առջեւը դրած խոնարհ աղա-
չանքը ոչ միայն անտես չըրաւ, հապա նաեւ իր
գթած ողորմութեամբն երկիրը քաջալերել ու
մխիթարել ուզելով՝ մինչեւ հիմակ եղած սովո-
րութեան ու կերպին համեմատ, ապրիլ 9ին,
հոս Գլուժը՝ ընդհանուր ժողովք հրատարակել
եւ վիճակները գթածաբար յայն կանչել տուաւ:
— Այս ժողովքին ամենապատիւ Գէօնիկսէկ
կոմս, ընդհանուր հրամանատարը, լիազօր իշխա-
նութեամբ թագաւորական գործակատար ա-
նուանեց: Գթածաբար շնորհելով, որ տրոց
ոլքանութենէն եւ ուրիշ որոշմունքներէն զատ,
նաեւ օրէնսդրութիւններն — որոնք տէրու-
թեան ժողովլին առթիւն ըստ սովորութեան կ՚ըլ-
լային՝ — հիմակ ալ շարունակուին: — Անոր
համար Հրամանքներդ — կառավարական իշխա-
նութեան հեղինակութեամբն — ըստ օրինին,
ընկերութեան ժողովք գումարեցէք, բանէ
հասկըցող ու ընկերութեան գործքերը գիտցող
անձ մը ընտրեցէք ու իրեն պարտուպատշաճ
հրահանգները տուէք: Երեսփոխանն՝ ընկերու-
թեան հիմն ունեցող ցաւերն ու վշտերը պայծառ
կերպով եւ այնպէս պատրաստէ, որ հոս պարապ
բաներով ատեն չանցընենք: Առաքեալն անյապաղ
Ապրիլ 9ին հոս ըլլայ, որպէս զի գործքի սկսինք:

"Տուեալ Դրանսիլուանիոյ վերին կառա-
վարութեան կողմանէ. — Ի Գլաուզէնպուրկ.
1725 Մարտ 15ին:

Կ. Սիկիսմունտուս Գորնիժ. յ. ձ.

Ս. Գուշէրց յ. ձ.:„

Յայտնի է որ այս արտաքոյ կարգի դէպք եւ շնորհք մըն էր։ Վասն զի ասկից ետքը չպատահեցաւ այն բանն՝ որ ազգայինք կարգաւորեալ աւագաժողովոյն մէջ մաս ունենան եւ օրէնսդիր իշխանութեան անդամներ ըլլան։ Այս բանիս ետքէն հասան շատ աղաչանքներէ ետեւ երբ այդրէնածնութիւնն ստացան։

Այդրէնածին կամ երկրի բնիկ զաւկըներ ըլլալու նկատմամբ առաջին քայլն առին երկու դաշնակից հայ քաղաքներն՝ երբ իրարու ձեռք ձեռքի տալով, մէջերնին միաբանեցան թէ ինչ կերպով այդրէնածնութեան հասնին։

Ձեռուընիս հասած մէկ գրութենէն կը տեսնենք՝ թէ արդէն նախորդ դարուն երկրորդ կիսուն առաջին մասին մէջ շատ աշխատեցան Հայք, այս բանս ձեռք ձգելու ոչ միայն անով՝ որ ուղղափառութիւնն ընդունեցան, այլ նաեւ անով՝ որ իրենց գործակալներու եւ պատգամաւորներու ձեռօք ամէն քար շարժեցին, իրենց բարեկամներ վաստըկեցան ու դրամական մեծ զոհողութիւններ ըրին։

Կերլայ հայաքաղքին ու Եղիսաբեթուպոլսոյ մէջ 1768ին, միաբանութիւն մը կազմուեցաւ, այդրէնածին ըլլալու նպատակաւ։ Ասոր վախճանն էր, որ միացեալ զօրութեամբ աշխատին ու որ եւ է կերպով, ճամբով ու միջոցներով այս բանս ձեռք ձգեն։ — Եւ որովհետեւ գլխաւոր ու մի միակ յոյսերնին արքունիքն էր, ուսկից ամէն շնորհքներն ու արտօնութիւններուն աղբիւրը կը յուսային, անոր համար ամէն

բանէն յառաջ որոշեցին, որ 1. Երկու քաղաքն ալ Վիեննայի մէջ գոնէ մէյ մէկ երեսփոխան դնէ իր յատուկ ծախքովը: 2. Հասարակաց ծախուց նկատմամբ, որուն անպատճառ հարկաւորութիւն կար, — վասն զի ըստ իրենց հաշուին, հարկ էր որ չէ՛ թէ միայն Վիեննայի արքունիքն, այլ նաեւ պաշտօնեաներն ու Դրանսիլուանիոյ պաշտօնարանները վաստըկին՝ — երկու քաղաքները յաջորդ կերպով միաբանեցան. Ա. Որոշ գումար մը քովէ քով պիտի բերուէր, այն ամէն ծախքերուն համար, որոնք հարկաւոր էին բնիկ ըլլալն ընդունելու: Այս գումարէն, Ներլայ քաղաքը պիտ'որ վճարէր նախ 10 հարիւրչեայ մը: Իսկ մնացած ծախքը՝ երկու քաղաքները հաւասարապէս մէջերնին պիտի բաժնէին: Կամ ուրիշ խօսքերով — ինչպէս միաբանութեան թուղթը կ'ըսէ — եթէ 1000 ֆիորին վճարելիք ըլլար՝ նախ Ներլայ քաղաքը պիտի տար 100 ֆիորին եւ մէկալ 900 ֆիորինը երկու քաղաքները հաւասարապէս պիտի վճարէին: Բ. Դրանսիլուանիոյ մէջ ըլլալու ծախքերն, երկու քաղաքները հաւասարապէս մէջերնին պիտի բաժնէին: — 3. Վիեննա գտնուող երկու պատգամաւորներն — եթէ հարկ ըլլար — պիտի առնուին մէկ կամ երկու գործակալ: Ասոնց վճարքը պիտ'որ տար հասարակաց արկղը: — 4. Ամէն՝ թէ Վիեննայի ու թէ Դրանսիլուանիոյ մէջ այս պատճառաւ տրուելու պարգեւները՝ միայն երկու կողման խորհրդովը պիտի որոշուէին: Մէկ երեսփոխանն, առանց

մէկալին, չէ՛ թէ միայն ծախք մը պիտի չկարենար ընել, պարգեւ մը պիտի չկարենար տալ, հապա նոյն իսկ խօստանալ չէր կրնար: 5. Եթէ կարենար հայ ազգը բնիկ ըլլալն ընդունիլ, այն ատեն ինչ պայմաններով որ ծախքերն եղան երկու քաղքին մէջ, նոյն պայմաններով անոնք պիտի հատուցուէին: 6. Թէ որ եւրոպէն ուրիշ բանի ալ հարկաւորութիւն ունենար ազգն — ինչպէս ինք իրմէն կը հասկըցուի — երկու քաղաքները խորհուրդ ընելով՝ պիտի գրէին իրենց երեսփոխաններուն:

Դաշինքն անխախտ մնալու համար, երկու քաղքին առաջին պաշտօնատէրներն ու խորհրդականները՝ անուններն ստորագրեցին:

Ահա միաբանութեան հայերէն բնագիրը:

«Ողորմութեամբն Աստուծոյ 1768 Մայսի 24ին ի Քաղաքն Հաեոց: Եղեւ միաբանութիւն ի մէջ երկու Քաղաքիս, այսինքն ի Քաղաքին Հաեոց, եւ Եղիզապէդացոց վասն Խնտիկէնադուշութեան[1] կամ օչխի[2] տղաք դարնալու, զոր միաբանութեանը մէջ ալ վարի գրած բունգդէրուն[3] գօրայ միաբանվէցանք. որպէս պիլայ ալ վար գրած:

1^mo Պի ունէնայ Պ. Հայոց Քաղաքն երկու տէբուդադուշ Պէշն, իրենց հրամանուցը ատուկ

---

1 Այդրէնածին, բնիկ:

2 Ճշդիւ աստնկ գրուած է: Ո՛ գիտէ ինչ կ՚ուզէ նշանակել: Կրնայ ըլլալ, որ աշխարհի տղաք, երկրի զաւակ, բնիկ նշանակութիւնն ունենայ:

3 Կէտ, յօդուած:

խարճօվը. թէ հախսրըն եւ թէ քօսդըն[1] պիլայ պ. Հայոց քաղքին գասսաէն:

2do Նմանապէս պ. Էլիզապէդ քաղաքն պի ունենայ երկու տէբուդադուշ պէչըն. պ. Էլիզապէդ քաղքին ատուկ խարճօվը. թէ հախսի եւ թէ քօսդի կողմանէ պիլայ Էլիզապէդ քաղքին գասսայէն:

3io Վասն ըսդըկի պիտվականութեանն վերոյ գրեալ ինտիկէնադուշութեանն սէպը, թէ գըրդածագունեղ Թագուհուն պաշխըշ տալու, թէ ուրիշ Թագավորաց պէչն, թէ այս երկըրին մէջ այսինքն երկըրին մէջ ի հոս արտեալը, երկըրին կամ այլ Թագաորաց պաշխըշ տալու պիլայ այսպէս.

4to Ամենայն ինչ սումմայ[2] ըսդակ որ խարճըվի վերայ ինտիկէնադուսութեան սէպը, նայ պի արվի մէկ սումմայ. եւ այն ընդըրէկ սումմաէն, արաչ պի վիճարէ պ. Հայոց քաղաքն հարըրէն տասը. եւ դուս վիճարէլով զտասնորդը, մէկալ մընացած ամենայն սումման պի վիճարվի կիսակէս. այսինքն կէսը պ. Հայոց քաղաքը, եւ կէսը պ. Էլիզապէդ քաղաքը: Բայց օր ալ աղէկ հասգըցվի, ամէն Հազար մաճրուն մէչէն, պի վիճարէ պ. Հայոց քաղաքը արաչ ըզհարուր մաճրին եւ զինը հարուրը կիսակէս. այսինքն չորս հարուր ու խուն մաճրին պ. Հայոց քաղաքը եւ չորս հարուր ու խուն մաճրին պ. Էլիզապէդ քաղաքը: Եւ այսպէս ամենայն

1 Կերակուր, սնունդ. գերմ. բառ. է:

2 Գումար, բովանդակութիւն. լատ. է:

սումման ինչ օր խարճըվի, նա պի արվի ռէբարձիայ[1] վերոյ գրեալ հազար մաճրուն, ռէբարձիային կեռպիւը:

5^to վասն ի հօս արտեալին խարճերըն տէբուդադուշնու կողմանէ թէ հախերըն, թէ գօսդը, թէ այլ խարճերըն ամինեօմն, պիլայ ընդրէկ մասսաէն:

6^to վերոյ գրեալ տէբուդադուշներըն պէշն մէկ տեղ խորհուրդ անէլով պի արնուն մէկ․ կամ պէդգ ըլլայ նայ էրկու ակէնշ[2]․ եւ այս ակէնշնուն հախը պիլայ ընդրէկ մասսայէն:

7^mo Ամենայն պաշխըշները որնոր տըրվի պէշն վերոյ ինտիկէնադուշութեան սէպը, նայ ամենայն ժամանակ էրկու փաեին խորհուրդօմն ալ ըլլայ, թէ խօսդանալը, եւ թէ տալը: Ամինեվին մէկ փաեր արանծ մէկալին չի կարնայ ոչ խօսդանալու եւ ոչ տալու: Նմանապէս արտեալն տէբուդադուշներըն ալ նույն կեռպիւը պիլայ:

8^vo Ըսդ վերոյ ասացեալ, կամ հիշեալ ինտիկէնան ողորմութեամբըն Աստուծոյ եւ մեր գըդածադունեղ թագուհուն գըդութեամբըն կարնայ Հայ ազգը մերը գընտըրվէլու նայ, խարճը ինչպէս էղաւ էրկու քաղքին մէջ միաբանութիւնը իրենց, գօնտիձիանէրօվը[3] պիլայ խարճըն, միայն վերոյ գրեալ ինտիկէնադուշութեանը սէպը:

---

1 Repartitio լատ. բառն է = բաժանումն, բաժնելը:

2 Գործակալ, գործակատար:

3 Պայման, պայմանադրութիւն:

9no Ալ ալ թէ որ ասոր էտէվանց պէդգ ըլլար մեր Հայոց ազգին այսինքն վերոյ գրեալ երկու Քաղքին խորհուրդ անէլով մէկ տեղ եւ ումիշֆէլով[1] պի գրվի թուղթ Ա. տէքուդադուշնուն պէչն, որ կաննին բանին վորայ[2], որ վերոյ գրեալ Հասդատութիւնը մընայ անխաղթ եւ անփոփոխելի առաջի ամենայն պատվայօրաց։ Եւ վասն ալ մեծ հասդատութեան եւ ամպըրութեան միաբանութեան գըրույս, ամպըրցուցաք երկու Քաղքիս ատուկ մօհերօմը նաեւ Հասարակի շուշգրիբձիայոմը[3]։ — Թիվըն եւ ամիսըն որպէս ի վերոյ։

L. S. Magistratus et Communitas
Priv. Oppidi Armenopoleos.

L. S. Magistratus et Communitas
Priv. Oppidi Elisabethopolis

Խչկ. Նիգուլի յեզպՖին յ. ձ.
Պիրօվ Հայոց Քաղքիս։

Խնկանոս Ո. Հ. Թօտէրի. յ. ձ.
աղայ Հայոց Քաղաքի։

Խաչիկ Նովագի յ. ձ.
աղայ Հայոց Քաղաքի։

Դօտէր Ո. Հ. Գրիգորի շիմաեան յ. ձ.
աղայ Հայոց Քաղաքիս։

Մկրտիչ Գովրիկեան յ. ձ.
բօդ սուդաշ Հայոց Քաղաքի։

---

1 Խորհիլ, մտածել, խորհուրդ ընել։
2 Երեւէ լինալ, աշխատիլ։
3 Ստորագրութիւն։

Ղազար Ռ. Հ. Բլէչինլարեան յ. ձ.
բօդ սուդաշ Հայոց Քաղաքի։

Ղազար Օհաննեանց յ. ձ.
տէբուդադուշ էլիզապէդ Քաղաքին, եւ ըլէնիբօդէնձիարիուշ[1] վերոյ գրեալ հաստատութեանը։

Մարտիրոս Գօշօղեանց յ. ձ.
տէբուդադուշ էլիզապէդ Քաղաքին եւ ըլէնիբօդէնձիարիուշ վերոյ գրեալ հաստատութեանը։

Ասվատուր քէլին յ. ձ.
ինդէրիմալիս սուդաշ եւ տէբուդադուշ էլիզապէդ Քաղաքին։

Այդրէնածին եւ օրէնսդիր ժողովին անդամ ըլլալու համար նախ եւ յառաջ երկու քաղաքներուն հասարակութիւններն աղաչանաց թուղթ մ'ուղղեցին առ տէրութեան աւագաժողովն։ Ասոր մէջ աղերսանօք կը խնդրեն որ երկու քաղաքներուն բնակիչներն ընդունուին իբրեւ բնիկ։ — Ցառաջ կը բերեն, ի մէջ այլոց, թէ որչափ օգնութիւն մատուցած է Հայոց ազգը՝ ամէն ժամանակ տէրութեան. թէ Ապաֆիներն ամէն գթութիւն ցուցուցին իրենց նախնեացը. — թէ Աւստրիայի կայսրներն երկրին ժառանգ ըրին զիրենք՝ երբ արտօնութեանց պատճէնները ձեռօք իրենց երկրակալութիւն շնորհեցին։ Բայց մանաւանդ ըրաւ զայս Յովսէփ Բ. երբ երկու քաղաքներն ազատ թագաւորական քաղաքաց կարգն անցուց. եւ այլն. եւ այլն։

---

[1] Գործակալ, գործակատար՝ լի իշխանութեամբ։

Մատուցուած աղաչանաց թղթին հայերէն թարգմանութիւնն է յաջորդը։

“Մեծապատիւ Պարոն. Իրական Ներքին խորհրդական. Նախագահ Տէր։ — Մեծարեալ եւ արժանաւոր կարգեր ու Վիճակներ։ — Մեծապատիւ եւ արժանացեալ Պաշտպանք եւ Տեարք։

“Հաստատապէս կը հաւատանք, որ այս ազնուական երկրին գումարուած մեծապատիւ կարգերուն եւ անոր ամէն արժանացեալ անդամներուն առջեւ ծանօթ բան է ու աղէկ գիտեն, թէ 130 տարուընէ աւելի է, որ մեր նախնիներն այս երկիրն եկան տեղաւորուեցան. եւ թէ իրենց՝ հոս գաղթելէն ետեւ ժրութեամբ ու բոլոր զօրութեամբ ջանացին հասարակաց օգուտն ու երկրին երջանկութիւնը յառաջացընելու եւ օրինաւոր ու ազատ առուտուրին ձեռօք բարձրացընելու։ Ասկից յառաջ եկաւ թէ՛ դրամի շատութիւն եւ թէ՛ միանգամայն ան՝ որ օտար տեղերն այս երկրին առաւելութիւնները ճանչցան։

“Մեր նախնիներուն՝ հասարակաց օգտին ու երջանկութեանը փոյթը, հոգն եւ աշխատութիւնը՝ շատ օգտակար, մանաւանդ թէ կարեւոր համարեցան այս երկրին թէ՛ վաղեմի եւ թէ՛ առաջիկայ դարուն մէջ երջանկապէս տիրող իշխանապետները։ Աստի, ո՛չ միայն մեր նախնիներուն, հապա նաեւ մեզի ալ առանձինն գթութիւն ու սէր մը ցուցուցին, երբ անմահ յիշատակաց արժանի Աբաֆի Ա. իշխանն, անցած դարուն դէպ ի վերջերը՝ մեր վաճառական

*նախնիները, մեծ բազմութեամբ դրացի երկիրներէն հոս կանչեց։ Նոյն միտութենէն մղուած՝ նաեւ Միքայէլ Աբաֆի Բ. ոչ միայն հրաման տուաւ որ Պաշպալով կոչուած տեղւոյն վրայ բնակին եւ 1796 փետր. 7ին հրամանագրովը՝ զիրենք իր մասնաւոր պաշտպանութեանը տակն առաւ, հապա նաեւ 1712ին անմահ յիշատակաց արժանի Կարոլոս կայսեր հովանաւորութեանը յանձնեց։*

*"Նմանօրինակ արքունական գթութիւն ցուցուցին մշտնջենաւոր յիշատակաց արժանի Կարոլոս Զ., Մարիամ Թերեզիա եւ Յովսէփ Բ. մեծափառ կայսրներն ու իշխանապետներն, երբ մասնաւոր եւ մէկ քանի արտօնացեալ՝ մանաւանդ անշարժական երկրակալութիւններու վրայօք տուած առանձնաշնորհութեանց թղթեր պարգեւեցին մեր նախնիներուն, որով զմեզ ալ այս ազնուական երկրին ժառանգ ընելու բարեհաճեցան։ — Բայց այս բանս ըրաւ մանաւանդ Յովսէփ Բ. (1785 եւ 1786ին) որ՝ որպէս զի վաճառականութիւնն ըստ պատշաճի յառաջ տարուի, մեր երկու քաղաքներն արքունական քաղաքներուն կարգը բարձրացուց. եւ ասոր վրայօք գթածաբար առանձնաշնորհութեան թղթեր ալ պարգեւեց։*

*"Թէ այս վեհապետներուն՝ մեզի ցուցուցած լաւազգածութիւնն ապարդիւն ու անպտուղ չմնաց, հապա ասով քաջալերուեցանք առաւտուրն աւելի եւս յառաջացընելու եւ ընդհանուր կարօտութեանց մէջ տէրութեան պէտք*

եղած օգնութիւնները մատուցանելու՝ յայտնապէս ցուցուցինք ամէն ժամանակ, երբ կամ պատերազմի, կամ ուրիշ ատեն, որ եւ իցէ կերպով տէրութեան օգնութեան հասնելու — եւ կամ պետութեան մէջ յարուցած վնասակար կողմնակցութիւնները հանդարտեցընելու, անոնց վրայ հսկելու եւ — իշխանութեան ձեռք տալու ջանացինք: Աս բաներն ընելու անփոյթ չեղանք նոյն իսկ մեր կենաց վտանգովը: Ասոնց վկայ կրնան ըլլալ՝ Գիւգիւլլէօի, Սոլնոքի եւ մանաւանդ Գլուժի վիճակներուն, ինչպէս նաեւ տէրութեան ուրիշ դիւաններուն արձանագրութիւնները:

“Աս այսպէս ըլլալով ալ՝ մինչեւ հիմակ առանց քաղաքացւոյ իրաւունքի մնացինք. եւ տէրութեան հասարակաց խորհրդին մէջ ներկայացանք, առանց ասոր վրայօք եղած օրէնքի կամ յօդուածի, պարզապէս՝ իշխանական եւ թագաւորական առանձնաշնորհութեանց եւ տուչութեանց շնորհիւը: Թէպէտ, ինչպէս ամէն ուրիշ հայրենակից, անանկ ալ մենք հասարակաց բարւոյն յառաջացմանն աշխատեցանք:

“Եւ որովհետեւ յայտնի ու շատ օրինակներով փորձուած է, երկրիս արժանապատիւ կարգերուն այն գովութեան արժանի միտութիւնը՝ մանաւանդ այն օտարներուն նկատմամբ, որոնք հասարակաց օգտին արժանաւոր ծառայութիւններ մատուցած են — զանոնք իրենց կարգն ընդունելով եւ քաղաքացիութեան իրաւունքով վարձատրել բարեհաճելով. — անոր

համար մենք ալ՝ մեծապատուութեանց եւ արժանաւոր կարգացդ՝ ուրիշներուն շնորհած այս գթութեանը վրայ վստահացած՝ — որովհետեւ ընդունուած սահմանադրութեան ԽԱ. գլխոյն՝ առաջին յօդուածին համեմատ, արդէն Աստուծոյ ողորմութեամբն, արքունի շնորհիւ երկիրներ ալ ստացած ենք. — ուստի յառաջ բերուած երկրին օրինաց հարազատ մտաց եւ միանգամայն արժանապատիւ վիճակաց եւ ազնուամեծար կարգաց աւագաժողովոյն 1761ին որոշման — եւ մեծափառ Լէոպոլտոս կայսեր առանձնաշնորհութեան կոնդակին համեմատ՝

"Կը խնդրենք խոնարհութեամբ, որ — որովհետեւ կալուածատէրութիւն եւ ժառանգութիւններ ունեցող եւ ըստ մեծի մասին քաղաքացի բնակիչներ ենք — բարեհաճին զմեզ ալ, ինչպէս ուրիշ՝ հայրենեաց մէջ տեղաւորեալ եւ երկիրներ ունեցող մարդիկներ, իրենց մէջն առնուլ եւ զմեզ իբրեւ բնիկ հունգարացի ընդունիլ, (որովհետեւ այս երկրին մէջ՝ զատ ազգայնութիւն մը կազմելու կամք չունինք.) որ ազգին մէջ որ մինչեւ հիմակ ապրեցանք, անոր սովորութեանցը նմանելու ջանացինք եւ անոր օրէնքներն առհասարակ մեզի յատկացուցինք: — Նոյնպէս կը խնդրենք, որ Յովսէփ Բ. Վեհափառ կայսրմէն մեզի շնորհած արտօնութեան վեցերորդ կէտն, առաջին աւագաժողովին մէջ նորէն հրատարակեն եւ այս ամէն բան օրինաց մէջ առնուն: Որպէս զի մենք ալ, այն քաղաքացւոյ իրաւամբ, որով մեր երկրին մէջ եղող ազատ

թագաւորական քաղաքներն եւ երկրին այդրէնածինները կ'ապրին — Ձեր մեծապատուութեանցը գթած պաշտպանութեանը ներքեւ — կարենանք ապրիլ:

“Պատրաստ ենք, գթած եւ ամենապատիւ Տեարք, ինչպէս վերոյիշեալ հասարակաց օրինաց, անանկ ալ այս ազնուական երկրին 1761ին տուած որոշման համեմատ մեր վեհափառ իշխանապետին հաւատարիմ ծառայութեանն եւ երկրին ամէն օրինացը պահպանութեանը համար, մեր արեան նոյն իսկ վերջին կաթիլը թափել: — Մեր հաւատարմութեան երդումն ընելու. նաեւ պատշաճ վճարքը (taxa) — եթէ Ձեր Մեծապատուութիւնն եւ ամենապատիւ կարգերը զանիկայ չեն շնորհեր (որուն համար մասնաւորաբար կ'աղաչենք) — սիրով հատուցանելու պատրաստ ենք. — զոր խոնարհաբար խնդրելով, ենք մշտատեւ սիրով եւ շնորհակալութեամբ

Մեծապատուութեանդ եւ արժանապատիւ կարգաց՝ Խոնարհ Ծառայք

Գրանսիլուանիոյ մէջ բնակող երկու քաղաքաց հայ բնակիչներն առհասարակ:„

Վերոյիշեալ աղերսագիրն եւ մանաւանդ անկից յառաջ, այս նիւթիս նկատմամբ եղած յաջող քայլերն, ունեցան իրենց արդիւնաւոր հետեւութիւնը: Որովհետեւ կը գտնենք թէ 1790ին, թէ Կերլացիք ու թէ Եղիսաբեթուպոլսեցիք ճանչցուեցան տէրութեան կարգերէն

իբրեւ բնիկ եւ օրէնսդիր ժողովին իբրեւ կարգաւորեալ անդամներ։

Ազգայինք առաջին անգամ ներկայացան օրէնսդիր ժողովին՝ 1790 Յունիս 6ին, երբ արքունի հրամանաւ աւագաժողովը Պուտաբէշդ հանդիսութեամբ բացուեցաւ։ — Ասոր մէջ մաս ունենալու համար Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնն ալ, իր կողմանէ երկու երեսփոխան խրկեց՝ "հասարակաց շահը յառաջ տանելու եւ հայ ազգին ցաւերը բժշկելու համար„։ Ուստի՝ հաստատեցինք եւ միաբանեցանք կ'ըսէ, ժողովն որ ամենուն հաւանութեամբն երկու արժանաւոր անձ խրկենք աւագաժողովը։ — Հասարակութիւնն որոշեց նաեւ, որ ասոնց ամսէ ամիս 100 հունգ. ֆիորին վճարելէն զատ, թէ՛ հոն երթալու, թէ՛ ետ դառնալու եւ թէ՛ միանգամայն հոն ապրելու ծախքը հոգայ։

„Anno 1790 die 27 Maii, sub confluxu Magistratu et Communitatis... Պատուելի Հասարակութիւնը վեր առնելով[1], թէ ինչ կերպիվ Altma[2] decisione վասն Diaeta-ին celebratio-ին համար...[3] դըրած է pro publicis Regni negotiis pertractandis[4] 6 ում օրը գալ ամսուս Junij։ Որոյ գօրայ կամէնալով իւր ժամանակին նաեւ զՀասարակութեան շահապե-

1 Վեր առնել = խորհիլ, մտածել։

2 Altissimaին համառօտութիւնն է. կը նշանակէ վերին իշխանութեամբ, բարձրագոյն որոշմամբ։

3 Բառ մը կայ, որ ամենեւին չի կարդացուիր։

4 Տէրութեան հասարակաց գործքերուն վրայ խորհելու համար։

տութիւնն ալ առաջ տանելու եւ բոլոր մեր ազգին ցաւերըն լավցընելու, հաստատեց communi omnia consensu, թէ e gremio[1] մեր Հասարակութեանը, երկու արժանաւոր անձինք, ինչպէս զՊատուելի Աղաչայ Ամիրայ Տանիէլին նաեւ...[2] Բեշդը ablegoվագ[3] ըլլան cum Solito Solario.[4] այսինքն ամէն ամսու 100 մաճրի. այսինքն հարուր։ Ասոր քով, թէ երթալուն եւ թէ ետ դարնալուն եւ ի հոն ուշանալուն ժամանակին խարճերըն հատուկէն applacidat[5] կըլլան, վերոյ գովեալ Ա. Տէրուդադուշնուն„ ։

Բայց ինչպէս որ ասկէ յառաջ՝ անանկ ալ ասկէ ետքը շատ խնդիրներ ու մեծ դժուարութիւններ ելան, ազգայնոց կողմանէ հատուցանելի սակագնոյն, զինուորաց բնակութիւն տալուն եւ սայլորդութիւն ընելու նկատմամբ։ Որով եւ ի սկզբան չներուեցաւ Հայոց, որ պարտաւորեալ հաւատարմութեան երդումն ընեն։ —

Թէպէտ՝ ինչպէս ուրիշ տեղ տեսանք, Յովսէփ Բ. կայսրն, իր՝ 1786 դեկտ. 27ին տուած առանձնաշնորհութեան կոնդակաւն Եղիսաբեթուպոլսոյ ազգայիններն ուրիշ ազատ թագաւորական քաղաքաց հետ հաւասար ըրաւ, որուն հետեւութեամբը նաեւ տէրութեան աւա-

---

1 Ամենուն հաւանութեամբը, թէ մեր հասարակութեան ժողովքէն։

2 Պակսած անուան տեղ թողուած է։

3 Խրկել։

4 Սովորեալ վճարմամբ։

5 Տրուիլ, շնորհուիլ։

գաժողովին մէջ ազատապէս կրնային մտնել եւ հոն ձայն ունենալ. (տես էջ 327 Ա. կէտն.) այսու ամենայնիւ ազգայնոց սեւեռեալ գաղափարն այն էր՝ (անշուշտ մեզի՝ ցայժմ անծանօթ ու անըմբռնելի պատճառներու համար որ հունգարական ազգին ու Գլուժի աւագաժողովոյն հաւանութեանն ըլլայ այս բանս։ — Ա՛ս էր իրենց բոլոր ջանքն ու աշխատութիւնը։ Ա՛ս բանն ընդունելու համար էր, որ նաեւ 2000 ոսկի խոստացան հունգարական լեզուին զարգացման ու յառաջացմանը համար։ — Աս պատճառաւ գրեցին միանգամայն Եղիսաբեթուպոլսեցիք իրենց գործքին համար Հունգարիա գտնուող դատաւորին, որ գաւառակոմսութիւններէն հանէ ան վկայականներն, որոնք կ՚ապացուցանէին թէ Հայերն իրենց առուտուրովն որչափ շահաւոր են տէրութեան։ — Կը սահմանէ Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութիւնն, ի մէջ այլոց. "որ մեր դրած փափաքանացը ալ բեռնի բաշօվ[1] հասնելու կարենայինք Պ. Ա. Actualis Պիրովի, ինչպէս Պ. Ա. Լուսիկին Լէնկէլեան թուղթ մը գըրովի ea cum dispositione[2], որ հոն երջանկութեան մեր ազգինը, մաճըքի վարմէտիանուն[3] Testimoniumներ[4] հանէ, որոնց ալդօլ[5] մեր ազգին ան երկըրին մէջ ունացած արուտուրօվըն

1 Ապահով քայլով։
2 Այն հանգամանօք, կարգադրութեամբ։
3 Vármegye = գաւառ. հունգ. է։
4 Վկայական թուղթ, վկայութիւն։
5 Ի ձեռն, ձեռօք. հունգ. է։

թէ ինչ շահապէտ ըլլայ մեր ազգը, authentice[1] ցըցնուն գովեալ Vármegyիաները։„

Կերլացիք ալ այս գաղափարին տէր էին։ Ուստի իրենք ալ անգործ չմնացին։ — Ասոնք աւելի հեռատես ըլլալով՝ այն ալ ըրին, որ նախապատրաստութիւններ տեսնելու եւ բանը հարթելու համար Գլուժ խրկեցին իրենց քաղաքապետն ու հարիւրոց ժողովին նախագահը։ Երեսփոխանք՝ հոն ամէն բան շրջահայեցութեամբ քննեցին։ Կառավարին երթալով, անոր միտքն իմացան եւ աւագաժողովին անդամներէն շատերուն երակները քննելով՝ իրենց տեղեկութիւններն ու դիտողութիւնները գրի անցուցին ու քաղաքաբաշխութեան խրկեցին։ — Աս առաջին քայլերն առնելէն ետեւ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան իմացուցին իրենց ըրածները նամակի մը ձեռօք։ — Տեղեկագրին մէջ կը ծանուցանեն, թէ կառավարին երթալով անոր առջեւը դրին ազգայնոց ցաւերը. թէ՝ իրմէն այն պատասխանն ընդունեցան, որ ներկայացընեն իրենց առանձնաշնորհութեանց կոնդակներն աւագաժողովին. եւ թէ ինք իր կողմանէ ամէն բան պիտի ընէ որ իրերը կարգի գան։ Կը ծանուցանեն դարձեալ, որ թէպէտ շատերը՝ շատ կերպով կը խօսին, այսու ամենայնիւ որչափ կ'երեւայ՝ աւագաժողովը Հոկտ. 12ին պիտի բացուի։ Կը վերջացընեն թղթերնին այն խնդրուածքով, որ Եղիսաբեթուպոլսոյ կողմանէ խրկուելու

1 Վաւերաբար, հաւատարմապէս։

պատգամաւորներն ամէնէն ուշ մինչեւ նոյն ամսոյն 8ը հոն ըլլան. որպէս զի մէկտեղ գործելով՝ ինչ որ յանուն ազգին կրնան ընել, ընեն պատրաստեն ու աւագաժողովին ներկայացընեն։

— Թէպէտ եւ — կ'աւելցընեն Հայաքաղքի պատգամաւորները — Հրամանքներդ կը ծանուցանէք թէ Թագադրութեան միջոցին՝ Վիեննա կամ Բրէսպուրկ կը խաւրէք երեսփոխան մը, ինչպէս մենք ալ ըրինք։ Սակայն դժուարաւ կը կարծենք, որ հոն բան մը կարենան ընել. այն կողմանէ մանաւանդ՝ որ բնիկ ըլլալն ընդունելու համար շատ ժամանակ ու շատ պատրաստութիւն պէտք է։ Իրերն այս վիճակի մէջ ըլլալով, կը կարծենք, որ ամէնէն աղէկ կ'ըլլայ, եթէ որ հոս սկսինք ընելիքնիս։ Գուցէ Աստուած կը շնորհէ, որ կարգաւորեալ կերպով գործելով եւ պաշտպաններ գտնելով՝ գործքերնիս լաւ վերջ մը ունենայ։

Ասոնք ըսելէն ետեւ խորհուրդ կու տան Եղիսաբեթուպոլսոյ պատգամաւորներուն, որ առանձնաշնորհութեան պատճէններուն, երկրակալութեան տուչութեան թղթերուն եւ ուրիշ ասոնց վերաբերեալ գրուածներուն կամ բնագիրներն եւ կամ ընդօրինակութիւնները հետերնին բերելու չմոռնան։

Ահա թէ Կերլայի հասարակութեան ու թէ իր երեսփոխաններուն Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութեան գրած նամակներուն բնագիրը։

+ "1790, 7ma Augs. Կերլան.

Ամէնայ Պատուելի Ա. եւ Աղաչայ Ջատիկին եւ Պ. Ա. Լազարին բազում սիրով ողջոյն կու կամէնանք:

Պատուելութեանցդ գիրըն էրէկ անգանը սիրով առիլինք. որին մէչէն իմանալով թէ Ultima hujus, Diaetaն պի ըսգըսվի[1] գլուծը, ուրուխ մինք ալ պի ներկայեանանք մէր ամէնայն Privilegiumնէրովն[2]. եւ հետ պատուելեացդ Պ. Ա. Deputatusնուն ամէնայն ուժօվըն մըրը, մէկ հաւգընալու[3] ճահդ պի անինք[4]: Եւ այսօվ կու մնանք միշտ պատուելութեանցդ.

բարեկամ Եղբայրք ծառայէլու
Մակխդըրադ եւ գօմունիդաշ
Հայոց քաղաքին:„

"Պատուելի Մակխդըրադին եւ պատուելի Հասարակին սիրով ողջոյն!

Պ. մէր հասարակը տէբուդօվադ անէլով զմեզ հօս գլուծը Գ. Երպ. կուպէրնադօրին մօտ, վասն մէր քաղաքին յիմպիկեն պիտոհութեանցը եւ ցաւէրուն կողմանէն թէ խրատ մը հարցընունք եւ բամ մը իմանանք. մանավանդ թէ ինչ ըլա պատճառը օր զմեզ այս յիմպիկեն գալ տիեղայի, ինչըէս իմացիլինք, ցան չին տալ[5]:

---

1 Այս ամսոյն վերջը տէրութեան ժողովը պիտ'որ սկսի, պիտի բացուի:

2 Արտօնութիւն, առանձնաշնորհութեան թուղթ:

3 Einverstehen գերմ. բային բառական թարգմանութիւնն է. միաբանիլ, մէկ տեղ գործել կը նշանակէ:

4 Ջանալ, աշխատիլ:

5 Ձայն տալ, գրաբար բայն է. = կանչել, հրաւիրել:

Ուրուխ մինք ասօրվանը օրը էղիլինք կուպէրնադօրին մօտ, որին այտնելով զմեր ցաւը, ընդրէկ մեր փոքրը Հայ ազգին անընօվը, ասաց թէ տիէղային ազիզըը տանք զմեր բրիվիլէկիումները, ինչդանձիայի քով[1] նեւս. եւ ան ատենը, ինքն ալի ըեն կողմանէն պի կաննի, որ ինչպէս ալ աղէկ ըլլայ խօրթըվի: Մագար[2] թէ շատոնք, շատ սօյ կու զուրուցին, ասոր Համար[3], Հօս Diaetaն 12a Xbris կու կցվի: Եւ որով Հետեւ ժամանակը կարճ է, օղկայ ճար չունինք, քան թէ մէմը Հօս պէտք է, որ զգօլխընեւրս ճիկինք[4]: Նա կու խընդրինք զՊատվելութիւնքդ, որ էրկու Աղաչայ Պատվելութիւնքդ ալ տէբուդօվադանին, եւ ալ անգան 8va Xbr. Հօս գլուժը գտվին: Մեր մօտէն ալ նոյն տիէղային Հօս պիլան: Եւ ասբէս մէկ Հասգընալով այս փոքրիկ ազգը ինչոր ըլլա տալու նեւս, Հատրին, որ կարնան նեւս տալու Diaetaին կցվացգին[5]: Խորդն որ գրիլին Պատվելութիւնքդ մեր Պ. քաղաքին, թէ պէջը կամ բօժուպը գօրօնաձիային[6] ժամանակը Deputo վադ անին մէկ Աղայմը, որովՀետեւ Պատվելութիւնքդ ալ արիլին զՊ. Ա. գիրգօրը: Մինք ալ pro omni eventu[7] արիլինք զՊ. Ա. Խաչիկը կօրօվէյի. գիտէնալով որ մաճարք է: Բայց թէ

---

1 Աղաչանաց, աղերսանաց թղթով:

2 Թէպէտ:

3 Ասոր վրայօք, նկատմամբ:

4 Գլուխնիս խոնարՀեցընենք:

5 Սկսուածք բառին աղաւաղած ձեւն է:

6 Թագադրութիւն:

7 Ամէն դիպուածի Համար, յամենայն դէպս:

գնացած պիլա, թէ չէ, հաստատ չենք։ Գնացած ալ ըլլա, դիժար կու հաւատանք, թէ բամ մը կցին. զէ այս բանիս, որ Indigena դառնանք ալ շատ ժամանակ եւ ալ մեծ հարրութիւն կ'ուզէ։ Եւ Պ. Ա. գիրգորը գիտիմ որ շատ չի ուշանայ։ Եւ աս ալ մեզի կութվի, թէ աղէկ պիլայ, որ հօս սգըսինք զքանը. պէլքիմ Աստուած, պիտայ որ աղէկ երկայօվ աղէկ բադրօնէրով[1], աղէկ վերջ մը պի հանինք։ Եւ այսօվ կու մնանք Պատվելութեանցդ

պատրաստ ծարայելու եղբարք.

Խաչակ Նիգոլի յնգպՖին յ. ձ.

Deputat եւ պիրով Հայոց քաղաքին։

Գրէչուն զրէչունեանց յ. ձ.

սուդաչ։

P. S. Privilegiumները, թէ վաղուցունը, թէ յիմպիկենը, Joszágին Donatiaները statutiaյեօվը[2] մէկտեղ in Copiis[3] պէտքին բէրէլու կամ in originali.[4] Ան վաղուցու Regalը[5], որով ցենած է տիէղաի, թէ որ Պատվելութեանցտ ալքիումը գտվէր։ Մէկ խօսօք ինչ ալ օր գտվին ամպէսթղթեր, օր աս բանին մօտ շահէ, պէտքին բէրէլու։„

---

1 Patronus = խնամակալ, պաշտպան։

2 Երկրատէրութեան տուչութիւններն՝ անոնց հաստատութեամբը։

3 Ընդօրինակութեամբ։

4 Բնագրով։

5 Արքունական հրովարտակ՝ տէրութեան ժողովին ներկայանալու։

Երկու քաղաքաց պատգամաւորներն առջեւնին եղած կնճռեալ խնդիրները, թէ կառավարին ու թէ միանգամայն աւագաժողովին հետ շտկելու համար, տարիի մը չափ գործեցին Գլուժ։ Թէ ինչ արդիւնքով՝ չենք գիտեր։ Բայց ինչպէս կ'երեւայ՝ երկու քաղաքաց մէջ միաբանութիւնն ու զիրար գտնելը դժուարին էր։ — Կարծիքները տարբեր, տեսութիւններն այլեւայլ էին։

Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութիւնը 1791ին, իր երեսփոխաններուն կը պատուիրէ որ ամէն բանի մէջ շրջահայեցութեամբ ու զգուշութեամբ գործեն։ Իրենց կը ծանուցանէ ի մէջ այլոց, թէ Հայաքաղաքացիք կ'ուզեն իմանալ որ ինչ եկած է իրենց (Եղիսաբեթուպոլսեցւոց) կայսրմէն։ Կրնաք հաղորդել — կ'ըսէ. — բայց աւագաժողովին բացարձակապէս չըլլայ թէ յայտնէք։ — Խոստացուած 2000 ոսկւոյն նկատմամբ, զոր ազգն ըրած է, այնպէս մ'ընելու է, որ ազգին ծանրաբեռնութեամբ չըլլայ. եւ ինչ որ կը խոստացուի, խոստացուի միանգամ ընդ միշտ։ —

Ափսոս, որ քաղքիս պաշտօնական գրութիւններն ըստ մեծի մասին կորսուած ու ցիրուցան եղած են։ Նամակներ ու գրութիւններ կը պակսին, որոնց գոյութիւնը պէտք ենք ենթադրել։ Բայց աներեւոյթ եղած են։ — Յուլիս 18ին Եղիսաբեթուպոլսոյ երեսփոխաններէն խրկուած միջանկեալ տեղեկագրութիւն մը կը պակսի։ Բայց կեցած է անոր պատասխանը։ —

Ասոր մէջէն կ՚իմանանք, թէ որովհետեւ պատգամաւորները տարակուսանաց մէջ են այդրէնածնութեան վճարմունքին նկատմամբ, քաղաքաբաշխութիւնն իրենց կը յայտնէ, որ նկատելով մէկ կողմանէ կայսերաց՝ իրենց շնորհած արտօնութիւններն եւ մէկալ կողմանէ տէրութեան ժողովին պատասխանն — ուսկից յայտնապէս կը տեսնուի թէ Եղիսաբեթուպոլսեցիք ճոխացած են այդրէնածնութեան ամէն շնորհքներովը, — պէտք է որ ջանանք, կ՚ըսէ, բոլոր ուժով՝ մեր առանձնաշնորհութիւնները պահելու եւ անոնց մէջ հաստատ մնալու։ Սակագին (taxa) վճարելով այնպէս պիտի երեւայ, իբր թէ մեր խնդրուածքին մինչեւ հիմակ անարժան էինք։ Իսկ մէկալ առաջարկութեան նկատմամբ, թէ վճարքին տեղ յիսուն տարի 500ական ֆիորին վճարենք՝ մենք զատ, ու Կերլացիք զատ՝ ընդունելու բան չէ։ Վասն զի ասիկայ մեր սերնդոցն ու ապագային համար պատուաւոր բան մը չէ։ Աւելի յարմար կը տեսնենք, որ տրուելու գումարը միանգամով հատուցանենք։ Մասդիկեանը՝ մեզի հետ խորհուրդ ըրած ատեն, յայտնեց թէ դուք Ռոլին հետ խօսելով, երբ իր օգնութիւնը խնդրեցիք, ըսած ըլլայ, որ կարգաց առջեւը զազգն ամէնեւին պիտի չծանրաբեռնեն, հապա կայսերական հրամանագրին համեմատ, տէրութեան միայն գթութիւնը պիտի խնդրեն։ — Երկիրն, ինչ կերպով որ ալ ուզէ ազգայինները ծանրաբեռնել՝ հաստատութիւնը կայսեր կամացը վրայ ըլլալով՝

թէ որ խոստացուած նուէրը զատ յօդուածի մէջ չառնուն ու չընդունին իբրեւ Հայոցմէ մատուցուած մշտնջենական ծառայութիւն, ինչ որ ալ բարեհաճին Կերլացիք խոստանալ, թէ որ այն բանը մեր ծանրաբեռնութեամբն ըլլայ, ամենեւին չենք ընդունիր: Ու կը յայտնենք թէ այդրէնածնութեան համար վճարելի տակն ամենեւին չենք տար, հապա կայսեր ոտքը կ'իյնանք:

Տեղեկագրէս յայտնապէս կրնանք տեսնել, թէ Կերլացւոց ու Եղիսաբեթուպոլսեցւոց մէջ միութեան կապը քակուելու սկսաւ: Մէկին տեսութիւնը մէկալին տեսութենէն տարբեր ըլլալով՝ ընթացքնին ալ, գործքերնին ալ տարբեր տարբեր սկսաւ ըլլալ:

Աւասիկ քաղաքաբաշխութեան թղթերուն բնագիրները:

"Պատուելի Ա. Deputatusներ: Սիրելի եղբայրք!

Այսօրվանը օրը առնելով Ա. Պատուէլի (Կերլայի) Deputatusնունմէ մէկ բարեւագիր մը, զորն ի հօս, in Accluso[1] պատվելութեանցդ pro directione[2] ալդօլ[3] կու խրկինք, ea cum declaratione[4], որ in omnibus պատվելութիւնքդ conformat ըլլան[5]: Նումայ ուրուխ կու իշէ, որ

---

1 Ներփակելով:

2 Առ ի ուղղութիւն:

3 Հոդ, Ձեզի. հունգարերէն է:

4 Այն որոշ յայտարարութեամբ:

5 Որ ամէն բանի մէջ . . . ըստ այնմ գործէք, ընէք:

իմացնունք, թէ մինք ալ գիտէնանք, զան, թէ ինչ էկած ըլլայ խօնթիքարութեանը մէ, Diaetaին[1], absolute օչ ըրեքմըն ալ իշմունք չի անին պատվելութիւնքտ: Եւ ինչ որ նալէճիդ կու անէ զoblatum ը[2], մեր natioինը, նայ այնպէս խօսդացվի, որ cum onere natioինը[3] չըննի: Եւ այնպէս, որ ինչ ալ որ խօսդացվի նայ, semel pro semper[4] կու տանք: De caetero[5] այնցընէլով պատվելութեանցտ խոհէմութեանը վրայ կամք ու կու մնամք.

Պատվելութեանցտ Elisabeth. die 9na Julij 1791.

սիրելի եղբայրք

Magistratus Elisabeth.„

"21a Julij 791.

Ամենայ պատվէլի Աղաչաներ. սիրելի եղբայրք. սիրով ողջոյն:

Զddo 18 hujus[6], մեզիկ սիրով գըրածը, ալ զօր սիրով խօսեցնէլով միամիտ[7], զէ հասգըցիլինք զկամքը պատվելութեանցդ եւ տէսնէլով վերջապէս, թէ էրկումռութեամբ պատվէլութիւնքըտ պի կամէնային կօճկէլու ի կօղմանէ դաքսայինը Indigenatusինը: Մինք անոր գօրայ նօրէնը պատվէլութեանցտ սիրով կու յայտնինք,

---

1 Տէրութեան ժողով, ատագաժողով:

2 Պարգեւ, նուիրումն:

3 Ազգին ծանրութեամբը, ծանրաբեռնութեամբը:

4 Միանգամ ընդ միշտ:

5 Ուրիշ կողմանէ:

6 Զտուեալն, զգրեալն ամսոյս 18ին:

7 Չի կրնար կարդացուիլ. թերեւս ըլլայ մի առ մի:

որ թարթելով մեզիկ մեր գըրդաց խօնթիքար-
նուն եւ ալ իժօվ թագուհուն բրիվիլէկիումին
վրայ, օզկայ դիհաց հինպիկ նոր էկած հիմպիկեն
խօնթիքարէն բոլոր տիէդային rescriptumինը[1],
ուսգից կի էրէվի թէ մինք բոլոր էրկըրի տղոց
շնորհքներօմը լըման զորդարվածինք. պէդք է
որ զան ամենայն ուժօմը ամպուր պահինք եւ
ջանանք անոնց տակը մընալու։ Զէ օզկայ դիհաց
աս դաքշայ վիճարելօմը կի հեռէվի թէ ինչվաս
ալ անարժան էղիլինք։ Եւ ինչ որ դէր Նալէճիդ-
կանէ[2] զմէկալ projectumը[3], որ դաքշային տեղը
50 տարի, 500 մաճրի միայն մինք, պաշխայ
Ա. կերլացօցըմէ տանք, անպէս չինք կարնայ
ընդունէլու ապագայի պատվոյ համար. որ ալ
հատիր ինք մէկու մը, ինչ որ պարտավորինք
տեսդուլ անէլու[4]։ Բայց ուրուխ որ Ա. Մարտի-
րոսը Մասդիկը, հէտ մեզիկ մէկ տեղ խորհուրդ-
անելով յայտնեց, թէ Պատվելութիւնքտ թա-
քաւոր րօլին մօտ ալ աշխատիլին խնդրելով
զգըդութիւնը, եւ սասծ ըլլայ թէ Պատվելու-
թիւնքտ ամինեւիմը զասդը statusնուն դիմաց մէկ
կերպիւ մըն ալ չի ծանտրեցնուն, այլ գդաց
խօնթիքարին rescriptumին գօրայ, միայն զուէրը
էրկրին խնդրին։ Զէ թէ որ մէկ կերպիւ մըն ալ
ուզէնայ էրկիրը զասդը ծանտրէցնէլու, որդյ-
հետեւ pro Sanctione[5] խօնթիքարին կամացը

1 Արքունական պատասխան։
2 Նկատմամբ, ինչ որ կը հայի . . .։
3 Առաջարկութիւն, ծրագիր։
4 Գոհ ընել, պարտքը կատարել, հատուցում ընել։
5 Սրբացուցում, վճիռ, հաստատութիւն։

վրայ է, նայ թէ որ մեր մէ զխօսղացած oblatumը, pro dono[1]... պաշխայ Articulusի[2] տակ in perennem nationi gloriam Serviturum[3] չի ընդունին, ինչ ալ ութֆի Պ. Ա. Կերլացոցը խօսդանալու, թէ որ ըլայ ծանրութեամբ մեզիկ, զնոյնը մինք ալ չի ընդունելով, զդաքշան ալ Indigenatusինը կի յայտնինք, թէ per absolutum[4] չուզինք վիճարելու, կամենալով ատոր համար ոտքը ըննելու խօնթիքարինը...:„

## 14.

Քանի մ'օր ետքը քաղաքաբաշխութիւնը՝ պատգամաւորաց — Յուլիս 22ին նամակովը — խնդրած լիազօր իշխանութիւնը կը ղրկէ, ու կը հրամայէ անոնց որ ինչ որ որոշած, ու զիրենք անոր վրայօք վերջին նամակին մէջ տեղեկացուցած է, հաստատուն պահեն եւ գլուխ հանելու ջանան: Հասարակութիւնն ու իրեն հետ բոլոր ազգն, այնչափ ժամանակէ ի վեր կը սպասէ որ իր հաւատարիմ ծառայութեանը համար բնիկ ըլլալը ձրի շնորհուի: Աս շնորհմունքին համար 2000 ոսկւոյ նուիրումն ընելով՝ կ'ուզէ որ օրինաց մէջ անցուի այս բանս ապագայ յիշատակին համար: Եթէ երկիրն այս բանս ընդունի — կ'ըսէ — մեզի մեծ ուրախութեան պատճառ

1 Իբրեւ պարգեւ խոստացած. (դրամին գումարը կը պակսի արձանագրութեան մէջ:)

2 Օրէնք, յօդուած, որոշումն:

3 Ազգին շարունակ մատուցած գովելի ծառայութեանցը համար:

4 Բացարձակապէս, ոչինչ կերպով:

կ'ըլլայ. եւ ապագայի համար գովելի բան։ Այլազգ՝ խոստումը չենք կրնար ընել։ Նկատմամբ սակագնոյն (taxa) — կը շարունակէ հրահանգը, — կը յայտնենք որ եթէ երկիրն զմեզ ատով ծանրաբեռնել ուզէ՝ կայսեր կը դիմենք։ Եւ բաց անկէ որ բեռը չենք ընդունիր՝ կը յայտնենք նորէն, որ յիսուն տարուան միջոցի մէջ 500ական ֆիորին վճարելու բեռը — եթէ որ ուրիշ տիտղոսով երկրի զաւկըներ կամ բնիկ տեղացի չենք կրնար ըլլալ՝ չենք ընդունիր։ Աւելի պատրաստ ենք մեր առանձնաշնորհութեանց մէջ մնալու, քան այդ փորձանքաւոր եւ մեր յաջորդներուն համար վնասակար բանին մէջ մտնելու։ Ուստի եւ այս՝ — մեր կորստեան վտանգովն — ոչինչ համարելի առաջարկութեան վրայ եւ ոչ ալ կ'ուզենք որ խօսք ըլլայ։ Մեզի աւելի պատիւ ընելու համար, խոստացած 12.000 ֆիորինի նուէրը հիմակ ալ կը հաստատենք։ Ասկէ աւելի — մեր արտօնութեանց կոնդակներուն հակառակ — բան՝ ո՛չ կը խոստանանք եւ ո՛չ ալ կ'ընդունինք։ — Գործքին մէջ յապաղում չըլլալու համար, իշխանութիւն կու տանք ձեզի, որ 600 ֆիորին ալ փոխ կարենաք առնուլ։ Սակայն ինչ որ ըլլայ՝ քաղաքաբաշխութիւնն ամէն բանի վրայ՝ միշտ յառաջուընէ տեղեկացուցէք, որպէս զի հասարակաց լաւութիւնը՝ հասարակութեան ընդհանուր կամօքն ըլլայ։

Ահա հրահանգին բնագիրը։

"Պատուէլի Ազէյ. Deputatusներ, սիրելի եղբայրք. սիրով ողջոյն։

*Գարդալով զՊատվելութեանցդ գրածը* dto.[1] 22ª M. et a. e. *երկու միտ ենք, թէ զՀասարակին* de 21ª hujus[2] *գրածը արած ըլան։ Եւ հուսալով թէ ամէնը ինչվաս պէտք եղիլէ որ արնուն, նա ինչ որ նալէճիդ կու անէ զՊատվելութեանցդ հիմպիկեն գրածը կի խրկինք* Plenipotentia*ն*[3], ea tamen cum restrictione,[4] *որ տարդ ունենան պատվելութիւնքդ զբոլոր Հասարակին, մէկ միտք եւ կամօք կօճկած*, de citato dato 21ª hujus *ուզածը վերջ տանելու*[5]*։ Այսինքն, ինչ որ նալէճիդ կու անէ զ*oblatum*ը*[6], *որ որպէս որ Հասարակը կի բօյի, ասխըտար ժամանակէ, հալալ էրկըրին ծարայութեանը համար, զպաշխըշ* Indigenatus*ին* realitas*ին* usus*ը*[7], *այնպէս մինք ալ, պաշխըշին համար, զնոյն* oblatum*ը անէլօվ, դէր նոր վասն նոր հաւատարմութեան, որն որ մեր փոքրիկ ազգին կամինք, ապադայի քիչ մը գովելի անընի, մինչեւ ալ մեծ պատվով դարնայ, նիշանի համար*, articulus[8] *գնտըվինք։ Եւ թէ որ ընդունէ սիրով էրկիրը, նայ պի խնտանք։ Օզկայ կողմանէ օչ զ*oblatum*ն ալ չուզինք տալու*,

---

1 De dato*ին համառօտութիւնն է. կը նշանակէ՝ ի... կամ* (22)*ին։*

2 *Այս ամսոյն։*

3 *Լիազօր իշխանութիւն։*

4 *Սակայն այն սեղմամբ։*

5 *Ամսոյս* 21*ին միակամ որոշածն եւ ուզածը գլուխ հանելու (հոգ ունենան)։*

6 *Նուէր, խոստումն։ — Ամբողջ արձանագրութիւնն աղէկ չի հասկցուիր, մթին է։*

7 *Բնիկ ըլլալուն իրական գործածութիւնը։*

8 *Օրէնք, յօդուած։*

թէ որ նոր articulus զի պաշխէ երկիրը։ Վասն Taxaին[1] համար, հիմպիկ ալ կի այտնինք պատվելութեանցտ, որ թէ որ անօվը ուզէնայ երկիրը զմեզ ծանտրէցնելու, չի ընդունելով pro Benigna relatione[2], տոգը ըննէլու խօնթիքարինը կամինք։ Եւ զարտ զաս բէրը, որ չինք ընդունի, նօրէնը կի յայտնինք պատվելութեանցտ, որ զ50 տարեկան Projectumով[3] դուս տըված, à 500 մճրի. articulariter մեր ազգին վրայ ընչնելու բէրը, որ տարոց տարի վիճարինք, ինչպէս թէ օզկայ titulu-շօվ չի պի կարնանք երկըրի տղաք եւ լըման հաւատացեալք դառնալու, զան ալ այնպէս չինք ընդունի. ու ըստ գրած պատվելութեանցտ, ալ հատիրինք, որպէս ինչվաս Privilegiumնուն քով մնալու, եւ ախօս ատ փորցանքաւոր եւ մեր Posteritasին[4], վով ալ ինչ սէրտէ մտգին մէջ, ընկ մեծ կօրըսդեան զէնօվը։ Եւ աս պատճառաւըն ընկալ ոչինչ համարած Projectumը, չուզինք որ ալ ալ մազար իշմունք ըլայ[5]։ Այլ մեծ մեր պատվոյ համար զoblatusը, ինչ որ Պատվելութեանցտ, այսինքն զ12.000 աւելի պակաս անցնիլինք, ալ վեր conditioնուն գօրայ[6], զնոյնը հիմպիկ ալ ամպըրցընելով, օզկայ բան օչ կի խօստանանք, օչ կի ընդունինք, ինչ որ Privilegiumնուն ընդէմ ըլայ։ Որպէս որ Պատվելու-

1 Սակ, վճարք, սակագին։
2 Բարերար, գթած տեղեկութեան նպատակաւ։
3 Ցատակագիծ, ծրագիր, առաջարկութիւն։
4 Ժառանգ, զաւակներ, յաջորդք։
5 Եւ ոչ ալ յիշատակութիւն ըլլայ։
6 Պայմաններուն, թէութիւններուն համեմատ։

*թիւնքս այտնիլին, թէ պի իմացնուն. Նայ օր չիլայ մէկ հադրօմօրոտաշ*[1] *մը* expressu*շի եւ պանի, Նախ եւ առաջ* faculto*վադ կանինք* vigore praesentium[2], *օր դէր վեց հարուր հի ում մօտէն փոխ կարնան առնելու, զպաքսութիւնը Հասարակինը լըմընցընելու. եւ զՀասարակութիւնը ամէն կօղմանէ հիինչ կերպիվ ալ ըլայ, առաչմէ* informat *անելու*[3], *վասն օր զան Հասարակ աղէկը, հասարակ կամօքը կարնայ ըլալու: Մնալով Պատվելութեանցս միշտ.* Elisabeth, die 25 July A. 1791.

*սիրելի եղբայրք*

*Comunitas Elisabet:*

Martinus Patruban *m. p.*
Interimalis Iudex[4].

Michael Csiky *m. p.*
Assessor[5].

Martinus Fark *m. p.*
orator[6].

Nicolaus Zakarias *m. p.*
Elisab. Notar.„

**Ամենայ Պատվելի Աղա եւ Աղաչայ Անդօնի խսիգուձեան, հետ եուր Պ. Ա.** Con-Deputatus-**նուն տացի արժանաւոր պատվով.**

Ex off. **Գլուժը:„**

---

1 Եա Միալը, յապաղու Մ. Հունգ. է:

2 Ներկայ գրութեանս զօրութեամբն իշխանութիւն կու տանք:

3 Տեղեկացընել, տեղեկութիւն տալ:

4 Առժամանակեայ դատաւոր, դատաւորի փոխանորդ:

5 Առաջակայ, առընթերակաց:

6 Ատենախօս, պաշտպան:

Ինչպէս քիչ մը ետքը տեսնելու առիթ պիտ՚որ ունենանք, տէրութեան կարգերն ու ազգայինք չկրցան զիրար գտնել: — Հայերն, իրենց վաղեմի արտօնութեանցը վրայ յենլով, կը համարէին, որ բնիկ ըլլալով՝ ազատ թագաւորական քաղաքաց կարգը բարձրանալով եւ տէրութեան աւագաժողովին մէջ ալ տեղ ունենալով՝ կրնան վայելել նաեւ այն ապահարկութիւններն, ազատութիւններն եւ արտօնութիւնները, զորոնք ատեն ատեն Աւստրիոյ կայսրներէն ընդունած էին: — Ճիշդ ասոր հակառակ, տէրութեան կարգերը կը համարէին որ ազգայինք ալ, ուրիշ ամէն ազատ թագաւորական քաղաքաց պէս, ընդհանուր սովորութեան համեմատ իրենք զիրենք հասարակաց ծանրաբեռնութիւններէն դուրս չեն կրնար հանել. — սովորական սակը՝ պէտք է որ հատուցանեն. զինուոր պահեն, նախամոլքի ծառայութիւն ընեն. տուրք տան եւ այլն: Մինչեւ որ ասոնք չգործադրուին՝ — կ՚ըսէին կարգերը — Հայք, սովորեալ երդման չեն կրնար ընդունուիլ:

Այս վիճակին մէջ էին իրերն, երբ 1794ին, Սեպտ. 8ին, Կերլայի ու Եղիսաբեթուպոլսոյ պատգամաւորներն աւագաժողովին երթալով՝ ըստ սովորութեան նախագահին ներկայացան ու իրենց ընծայութեան թղթերն անոր մատուցին: Խնդրած տեղեկութիւններն ընդունելէն ետեւ, հաղորդեցին իրենց խորհրդածութիւններն ու յառաջ բերին իրենց պատճառները: Բաց ասկէ ուրիշ մեծամեծաց ու հեղինակութիւն ունեցող

անձինքները երեւալով՝ խնդրեցին անոնց օգնութիւնն ու պաշտպանութիւնը։ Ինչպէս գրած տեղեկութիւններէն կ՚երեւայ, ոչ ոք թողուց զիրենք առանց մխիթարութեան ու քաջալերութեան։ — Ապահովապէս չենք գիտեր, կ՚ըսեն Եղիսաբեթուպոլսոյ երեսփոխաններն, որ կառավարութիւնը մեր յատակագիծը. շիտակ կայսեր պիտի խրկէ՛, չէ նէ՝ նախ Կարգերուն պիտի հաղորդէ։ Այնչափս իմացանք, որ Կարգերն ամենեւին բան մը չեն գիտեր անոր վրայօք, թէ կայսրը՝ 1792ին հրամանագրովն խնդրած է, որ մեր կրկին ծանրաբեռնութիւններուն նկատմամբ կառավարութիւնը յատակագիծ մը շինէ։ Թէպէտ լսեցինք, որ կառավարութեան գործքն ըլլալով ծրագիրը շինել, յատակագիծն առանց Կարգերուն հաղորդելու՝ շիտակ կայսեր պիտի խրկէ։

Երեսփոխանները կը ծանուցանեն քաղաքաբաշխութեան նաեւ, որ աւագաժողովին մէջ, պատգամաւորաց ցանկը կարդացուելով՝ իրենք անոր մէջ անցուած չէին։ "Թէպէտ աւագաժողովոյն նախագահն ըստ կարգի զմեզ յառաջ բերաւ., ըսելով թէ հրամանին համեմատ երկու քաղաքներուն պատգամաւորները ժողով ներկայացան ու երդում ընել կ՚ուզեն։ Այսու ամենայնիւ այնպէս եղաւ որոշումն — որն որ արձանագրութեան մէջ ալ անցաւ — թէ արքունական գործակալին գործն ըլլալով՝ աւագաժողովը բանալ, երբ որ արքունական առաջարկութիւնները լմնան՝ մեր խնդիրը ձեռք պիտի առնուի։ Քանի մը նիստ արքունական առաջար-

կութիւնները կարդալով եւ նոր օրէնքներուն ու ամբողջացուցիչ հրամանագրին հրատարակութեամբն անցաւ։ Նախագահը մեզի խոստացաւ, որ այս շաբթուն մէջ մեր երդումը պիտի ընդունի։ — Ասոր ձեւին նկատմամբ արդէն տունը գտնուած ատեննիս, տարակոյս ունենալով որ չըլլայ թէ այնպիսի բան մ'ըլլայ, որով ձեռուընիս կապուի եւ մեր գործքը չկարենանք յառաջ տանիլ՝ անոր որպիսութեանը վրայ տեղեկութիւն առինք։ Կը յայտնենք Հրամանոցդ, թէ ուրիշ երդում պիտի չընենք, եթէ ոչ՝ միութեան երդումը. որով՝ եթէ մեր գործքը հոս չյաջողի, կայսեր ոտքն իյնալու չենք արգելուիր։ Մանաւանդ, որ Նախ. մեր բանը ծանրաբեռնութիւններէն ազատելու ընթացքին մէջ է։ Երկրորդ. որ Հասարակութիւնն իր ընծայութեան թղթին մէջ այս բանս իրեն վերապահած է, երբ որ ըսած է թէ "անվթար պահելով իր Վեհափառութիւններէն տրուած առանձնաշնորհութիւնները"։ Այս սահմանաւորութիւնը խօսքով Նախագահին ալ ըսինք։

"Անտարակոյս մտուընիդ կու գայ, որ 1791ին, Հասարակութեան անուամբն աղերսագիր մը գրեցինք Կարդերուն։ Ասոր մէջ ան ըսուեցաւ որ, թէ որ զմեզ այդրէնածին ընեն, մեր երախտագիտութիւնը ցուցընելու համար 2000 ոսկի կու տանք, հունգարական լեզուին յառաջացման ու մշակութեանը համար։ Արդ բաղձանքնիս կատարեցին։ Մէկ երկու հոգւոյ երթալով, ի մէջ այլոց հարցմունք ըրին մեզի,

թէ խոստացուած 2000 ոսկին բերի՞նք Հետերնիս։ Մենք պատասխան չկարենալով տալ, կատակով մ'ըսինք թէ. Ա՛ն դրամը, դեռ փողերանոցին մէջն է։ Ուզեցինք այս բանս Ձեզի Հաղորդել, անոր Համար որ զմեզ տեղեկացընէք, թէ ինչ ընելու ենք. որովՀետեւ մեզի տրուած Հրահանգաց մէջ ասոր վրայ խօսք չկայ։ Կրնայ ըլլալ որ երդման կանչուած ատեն խոստացուած 2000 ոսկին ուզեն։ Մենք ասոր նկատմամբ Ձեզմէ յանձնարարութիւն չունենալով՝ ուրիշ պատասխան պիտի չկարենանք տալ, եթէ ոչ՝ որ այս բանիս վրայ իշխանութիւն չունենալով՝ բանը քաղաքաբաշխութեան պիտի ծանուցանենք։ — Ուստի շնորհք ըրէք, յաջորդներուն միտ դրէք։ 1. Հասարակութիւնն այս իր խոստումն ըրած է թղթով, որ Կարգերուն ձեռքն է, եւ արձանագրութեան մէջ ալ անցուած է։ 2. Այս խոստումէն եղաւ պարտաւորութիւն։ 3. Եթէ որ Հասարակութիւնն այս բանս չկատարէ, կրնայ ըլլալ որ Կարգերն — որոնք անանկ ալ մեզի շատ Հակառակ են — զմեզ բոլորովին փճացընեն. եւ ասանկով անոնց ջանքն ալ, որոնք սըրտանց մեր գործքին ետեւէն ինկած են՝ պարապի ելլէ։ 4. Հասարակութիւնը մեր ազատութիւններուն նկատմամբ՝ գաւառական գործակատարին շինած ծրագրին դիտողութիւններուն Համեմատ, այն խոստումն յաջորդ խօսքերով կը Հաստատէ. Մեզմէ տրուելու 2000 կայսերական ոսկիէն զատ՝ 1500 ոսկի ալ կը նուիրենք ծանրաբեռնութիւններէն ազատելու Համար։ Թէ-

պէտ աղաչանաց թղթին մէջ այն պայմանը գրուած է, որ ա՛ն թէութեամբ կը խոստանանք, որ կարգերն զմեզ մեր առանձնաշնորհութիւններուն մէջ պահեն։ Մենք առոր նկատմամբ ափ ի բերան պիտի չկենանք։ Բայց մեր յայտարարութիւնն, եւ ա՛ն՝ թէ իրերը Ձեզի պիտի հաղորդենք, արդեօք տեղի պիտի ունենա՞ն։ Ան ստոյգ է, թէ մեր բանը հիմակ պիտի որոշուի կա՛մ ի լաւն եւ կա՛մ ի չարն։ Ո՛րն ալ որ ըլլայ, յաւիտեան անոր մէջ պիտի մնանք։ Այս բանս անո՛ր համար առջեւնիդ կը դնենք, որ յամենայն դիպուածս պատրաստ ըլլանք։ Բայց նաեւ անո՛ր համար որ հիմակ ըլլալով յարմար ժամանակը, թէ որ բանն այնչափի գայ՝ չքաշուինք ու ետ չկենանք. որ չըլլայ թէ յարմար առիթը փախցուցած ըլլալու ցաւերը յաւիտեանս կրելու ստիպուինք։ Կրնայ ըլլալ, որ այս մեր խոստմանը վրայ խօսք չըլլայ, զոր մենք ալ կը բաղձայինք։ Բայց ամէն բանի պատրաստ ըլլալն աղէկ է„։

Եւ որովհետեւ պատգամաւորներն իրենց նամակին վերջը կը խնդրին քաղաքաբաշխութենէն որ ճեպընթաց սուրհանդակով պատասխան տայ, հասարակութիւնն առաջին թղթատարաւ անոնց պէտք եղած տեղեկութիւնները կու տայ։ — "Գրութիւննիդ ընդունելով կ'ուզենք մանաւանդ նուիրման նկատմամբ Ձեզի հաղորդել թէ ինչ կերպով ընելու էք։ Թագաւորական ազատ քաղաքաց կարգն անցուած ըլլալուն եւ այդրէնածնութիւն ընդունելուն համար, որպէս զի մեր երախտագիտութիւնը

ցուցընենք, Հունգարական լեզուին յառաջացմանն ու մշակութեանը համար 2000 ոսկի խոստացանք: Երկրորդ՝ արքունական գործակալին դիտողութիւնները՝ քաղաքաբաշխութեան հաղորդելով՝ խոստացած էինք 2000 ոսկիէն զատ, 1500 մըն ալ՝ հասարակաց ծանրաբեռնութիւններէն ազատ ըլլալու համար: — Լաւ պիտի գիտնաք, թէ այն 2000 ոսկին 1791ին, թէպէտ Հունգարական լեզուին մշակութեան եւ յառաջացմանը համար տալու խոստացած էինք. բայց այն պայմանաւ, որ մեզի տրուած ամէն առանձնաշնորհութիւններն անվթար պահուին: Կը կարծենք, թէ մէկալ 1500 ոսկւոյն վրայ եւ ոչ յիշատակութիւն պիտի ըլլայ, որովհետեւ Կարգերուն խոստացուած չէ, հապա գործակալութեան դիտողութեանը վրայ՝ կառավարութեան: Ուստի հասարակութիւնը Ձեզի կը յայտնէ, որ ի դիպուածի թէ երդում ընելու ժամանակ, զձեզ ստիպեն, կամ որ եւ իցէ կերպով սեղմեն, որ ըրած խոստումնիս նորոգենք. Ձեզի իշխանութիւն կու տանք՝ որ 2000 ոսկւոյն նկատմամբ Կարգերուն յայտնէք, թէ գրով կ'ուզէք պատասխան տալ: Եւ պատասխանն ա՛ն պիտի ըլլայ, որ մեր հասարակութիւնը չէ՛ թէ 2000 միայն՝ հապա 3500 ոսկի խոստացած է. զոր հիմակ ալ կը նորոգէ, բայց այն ապահովացուցմամբ, որ՝ որովհետեւ արդէն ծանօթ օրինաց համեմատ պէտք պիտի ըլլայ որ նոր արտօնագիր ընդունինք, ուստի հին առանձնաշնորհութիւններուն կէտերն իրենց ամբողջութեանը մէջ

մեան։ Ընդ հակառակն, թէ որ երդում ընելու ատենը չյիշեն այս խոստումն, այն ատեն հասարակութիւնն իրեն կը վերապահէ, որ առանց իր գիտութեանը բան մը չընէք։ Եւ Ձեզի իշխանութիւն չի տար, որ երդում ընելէն ետքն առանց քաղաքաբաշխութեան գիտութեանն այս ծանրաբեռնութեան նկատմամբ բան մ՚ընէք. որպէս զի չըլլայ թէ երջանկութիւնը գտնելու փափաքած ատեն, մշտնջենական լուծը վզերնիս անցընենք։ Ուստի երբ ալ հասարակութեան գործքը ձեռք առնուի, ինչ որ գիտնաք ու տեղեկանաք, անմիջապէս մանրամասն ամէն բան մեզի ծանուցանելու բարեհաճեցէք։ — Պարգեւներուն կողմանէ, որովհետեւ յայտնի է թէ անիւն ալ առանց օծուելու չի քալեր, անոր համար ուր որ կերլացիներուն հետ՝ կը տեսնէք պարգեւի հարկաւորութիւնը, իշխանութիւն կու տանք Ձեզի, զայն բաշխելու. զոր հասարակութիւնն ալ իւր ժամանակին պիտի հաստատէ։„

Կը ներկայացընեմ մատուցուած երկու տեղեկագրութիւններուն հայերէն բնագիրները։

"794. $18^{a}$ $9^{bris.}$ Գլուժը։

Ամենայ Պատուելի Մակիսդրատ. Պատուելի Հասարակ։

Ասօր շաբաթը է, օր Աստուծվօվ ի հօս հասիլինք արվատուն 8ին. հանէլօվ, հետ կերլայի Պ. Ա. Deputatնուն, ըստ պարտավօրութեան, Statuum Praesidentին[1] մօտ գնացիլինք,

---

[1] Վիճակաց՝ Կարգաց նախագահին։

insinuat[1] էղիլինք ու զcredentialisը[2] ձէրդը տա-լով, զմեզ բանը impense commendat[3] արիլինք։ Թէ ի կողմանէ երդումինը վօրին վար դընէլուն համար խընդրըվիլինք, օր էրկան չի ուշացվի, թէ planumին[4] համար, վօրն օր quoad duor. onerum aequius conditionibus fiendam relationem ուժէ Referendaյի մէչ է[5], զմեր reflexio-ները[6] եւ ponderans[7] պատճառները արաչ տվի-լինք։ Praesidensէն դուս մէկալ թաքավօրտացը մօտալ, ըզվօրօնք իմացիլինք օղկային Inviatio-յէն[8], թէ ալ մեծ influxus[9] ունին մեր բանին մէչ, ալ իժօվ in projectando plano[10], քալի-լինք, խնդրըվիլինք եւ զմեր բանը nervose[11] եւ ամպուր պատճառնէրօվ քըրէլօվ, օչ մէկին մօ-տէն արանց Consolatioյի[12] եւ affidatioյի[13] չինք էկի։ Մէկ միայն զաս բէմնի չիտինք, թէ ըզplanumը Guberniumը շիտակ խօնթիքարին վեր կի խրկէ, կամ արաջմէ հետ Statusնուն communicat պի

---

1 Ներկայացանք, ինք զինքնիս ծանուցինք։

2 Ընծայութիւն, ընծայական թուղթ։

3 Շատ, սաստիկ ջերմութեամբ յանձնեցինք։

4 Յատակագիծ, ծրագիր։

5 Կրկին ծանրաբեռնութեանց նկատմամբ, աւելի արդար թէութիւններով ըլլալի աղերսն, արդէն ընթացքի մէջ է։

6 Խորհրդածութիւն։

7 Հիմնովին, ծանրակշիռ։

8 Ճամբով, ձեռօք։

9 Ազդեցութիւն, հեղինակութիւն։

10 Ընելի՝ սկսելի յատակագծին մէջ։

11 Ջղոտ, ազդու։

12 Մխիթարութիւն, սփոփութիւն։

13 Քաջալերութիւն։

անէ[1]։ Զէ անխըտարը իմացիլինք եւ հասկըցի-լինք, դէ Statusները absosute բան մըն ալ չի-տին անոր կողմանէ, դէ խօնթիքարը mediante Rescripto de 26 May 792, quoad nostri immunitationem a duobus oneribus R. Gubernio planum elaborandum demandaverit[2]. Խորդն որ[3] մէկի մը մէ իմացիլինք, դէ Guberniumը, իրեն բանը ըլալով ասոր կողմանէ ըզplanumը անէ-լու, արանց անոր, որ communicat անէր հետ Statusնուն, խօնթիքարին վեր պի խրկէ։

Մինչեւ օր ալ ավէլօքը իմանանք, դէր ի հօս, զասօնք Պատվելութեանցըտ pro notitia[4] իմաց կու անինք։ Անցած չօրօքշաբդին կըցվէլօվ Diaetaն, գարդացվելօվ Cathalogusը, մինք դէր գըրված չէյինք, հաթէ, Statuum Praesidensը, ըզմեր արաջ տվիլէ, SS. et Ordinibus[5]. դէ ըստ հրամանին, մեր էրկու քաղքէն Deputatusները ներկայեացիլին եւ articulusին[6] գօրայ կուզինք էրգումօվը հետ իրենց միավօրվէլու։ Վօրին վե-րայ զան էղիլէյ Conclusumը[7], զօրն որ Prothocolumնալ մըտիլէ, դէ վօրյհէտեւ ըզDiaetaն

---

1 Կարգաց պիտ՚որ հաղորդէ։

2 Թէ կայսրը՝ 1792, մայիս 26ին հրամանագրովը՝ մեր կրկին ծանրաբեռնութեան ազատութեանը նկատմամբ, ար-քունական կառավարութենէն խնդրած է որ յատակագիծ մը յօրինէ։

3 Թէպէտ եւ։

4 Տեղեկութեան համար, առ ի գիտութիւն։

5 Վիճակաց ու Կարգաց։

6 Օրէնք։

7 Որոշում, եզրակացութիւն։

Regius Commissariusը aperiat կանէ[1]. Նայ անժումը կի կըցվի: Կըցվէլօվ եւ Regia Propositioնուն արաջ արնէլուն էտէվանց[2] ըզմեր երդումը նես պի արնուն[3]: Դէր ինչվաս չինք էրդֆընցի[4]. զէ աս մէկքանի Diaetalis Sessioն Regia Propositioնուն խօսեցնէլօվը[5], նոր Articulusնուն եւ Suppletorium Rescriptumին publicatioյօվը[6] անցիլէ: Ջան ունինք Statuum Praesidensին մօտէն խօստացած[7], դէ աս շաբդուն մէկնիվօր օրը արաջ պի ձէնվինք, որ ըզէրդումը վար դընինք: Նա աստր համար ինչվաս պատվելութեանցըտ չինք գրի. շաղըշիլինք դէ զարաս պի էրդֆընցնուն ըզմեզ. եւ ալ բէքնի բան պի կարէնանք պատվելութեանցըտ գրէլու: — Երդումին Formula[8]յին կողմանէ, դէր մեր տունը ըլալուն վողդը ունէնալօվ scrupulus[9] դէ չիլայ դէ անսօյը ըլայ, որ ձեր ձերվըները անօվը կապվելօվ, ըզմեր բանը ալ ինտան promoveat[10] անէլու չի կարնանք, ամենայն կէրպիվ ըզէութիւնն անորը իմացիլինք. եւ ալ բարեկամ

---

1 Տէրութեան ժողովքն՝ արքունական գործակալը կը բանայ, կը սկսի:

2 Արքունական առաջարկութեանց լմնալէն ետեւ:

3 Մեր երդումը պիտ՚որ ընդունին:

4 Մինչեւ հիմակ դեռ երդում չըրինք:

5 Արքունական առաջարկութիւնները կարդալովն...:

6 Օրէնքներուն եւ ամբողջացուցիչ հրամանագրին հրատարակութեամբն ...:

7 Նախագահը մեզի խոստացաւ:

8 Ձեւ, օրինակ:

9 Տարակոյս, կասկած:

10 Շարժել, յառաջ տանիլ:

թաքաւորտացը հետ ալ communicat արիլինք[1]: Ուստի պատվելութեանցըտ կու հայտնինք դէ մինք օղկայ էրդում վար չի պիտօր դընինք քանծ ըզunionis Juramentumը[2]: Վորին վար դընէլօվը թէ օք մեր բանը ի հօս աղէկ չի էլէր, խօնթիքարի վօդգը ըննէլու չինք արգիլվի: Անոր համար ալ ալ ի ժօվ[3], որ $1^{mo}$ Մեր բանը վասն onus նունմէ խալըսէլունը in cursu է[4]: $2^{do}$ Մէզիկ տված Craedentionalisին մէջ պատվելի Հասարակութիւնը, զաս իրեն reservat արիլէ in verbis: Salvis favoribus reductionem nonnullorum Onerum a SScrum Suae Matte exorandis[5]. Զայս Clausulaն[6], Statuum Praesidens ին ալ խօսգով ալ արաջ տվիլինք, pro sui notitia. Այսքէս զաս difficultasը[7] հէտ վերցըվելով, հիմպիկ ըզէրդումին վար դընէլը ամէն օր կի բօվինք. զորն ըստըր դընինք, ըզՊատվելութիւնքըտ de omnibus informat[8] պի անինք:

---

1 Ըսինք, հաղորդեցինք:

2 Քան՝ միութեան երդումը:

3 Մանաւանդ որ:

4 Ընթացքին մէջ է:

5 Ամբողջ ասացուածին թարգմանութիւնն է. Հասարակութիւնն այս բանս իրեն վերապահած է, երբ որ ըսած է. "Անվթար պահելով, քանի մը ծանրաբեռնութիւններէ ազատութիւնը. որոնց վրայօք իր Վեհափառութեանն աղաչանաց թուղթ մը մատուցած ենք:

6 Սահմանաւորութիւն, պայման, եղանակաւորութիւն:

7 Դժուարութիւն, արգելք:

8 Ամէն բանի կողմանէ զձեզ պիտի տեղեկացընենք, ձեզի հրահանգ պիտի տանք:

Regius Commissarius*ը* aperiat *կանէ*[1]. *Նայ անժումը կի կըցվի։ Կըցվէլօվ եւ* Regia Propositio*նուն առաջ արնէլուն էտէվանց*[2] *ըզմէր երդումը նես պի արնուն*[3]*։ Դէր ինչվաս չինք էրդֆընցի*[4]. *զէ աս մէկքանի* Diaetalis Sessio*ն* Regia Propositio*նուն խօսեցնէլօվը*[5], *նոր* Articulus*նուն եւ* Suppletorium Rescriptum*ին* publicatio*յօվը*[6] *անցիլէ։ Ջան ունինք* Statuum Praesidens*ին մօտէն խօստացած*[7], *դէ աս շաբդուն մէկնիվօր օրը առաջ պի ձէնվինք, որ ըզէրդումը վար դընինք։ Նա ասոր համար ինչվաս պատվելութեանցըտ չինք գրի. շաղըշիլինք դէ զարաս պի էրդֆընցնուն ըզմեզ. եւ ալ բէճնի բան պի կարէնանք պատվելութեանցըտ գրէլու։ — Էրդումին* Formula[8]*յին կողմանէ, դէր մեր տունը ըլալուն վողդը ունէնալօվ* scrupulus[9] *դէ չիլայ դէ անսօյը ըլայ, որ ձեր ձերվըները անօվը կապվելօվ, ըզմեր բանը ալ ինտան* promoveat[10] *անէլու չի կարնանք, ամենայն կէրպիվ ըզէութիւնն անորը իմացիլինք. եւ ալ բարեկամ*

---

1 *Տէրութեան ժողովքն՝ արքունական գործակալը կը բանայ, կը սկսի։*

2 *Արքունական առաջարկութեանց լմնալէն ետեւ։*

3 *Մեր երդումը պիտ՚որ ընդունին։*

4 *Մինչեւ հիմակ դեռ երդում չըրինք։*

5 *Արքունական առաջարկութիւնները կարդալովն...։*

6 *Օրէնքներուն եւ ամբողջացուցիչ հրամանագրին հրատարակութեամբն...։*

7 *Նախագահը մեզի խոստացաւ։*

8 *Ձեւ, օրինակ։*

9 *Տարակոյս, կասկած։*

10 *Շարժել, յառաջ տանիլ։*

թագաւորացը հետ ալ communicat արիլինք[1]։ Ուստի պատվելութեանցըտ կու հայտնինք դէ մինք օղկայ երդում վար չի պիտոր դընինք քանծ ըզunionis Juramentumը[2]։ Վորին վար դընէլովը թէ օք մեր բանը ի հօս աղէկ չի էլէր, խօնթի-քարի վօդգը ըննէլու չինք արգիլվի։ Անոր հա-մար ալ ալ ի ժօվ[3], որ $1^{mo}$ Մեր բանը վասն onus նունմէ խալըսէլունը in cursu է[4]։ $2^{do}$ Մէ-զիկ տված Craedentionalisին մէջ պատվելի հասարակութիւնը, զաս իրեն reservat արիլէ in verbis: Salvis favoribus reductionem non-nullorum Onerum a SScrum Suae Matte exo-randis[5]. Ձայս Clausulaն[6], Statuum Praesi-dens ին ալ խօսգով ալ արաջ տվիլինք, pro sui notitia. Այսպէս զաս difficultasը[7] հէտ վերցը-վելով, հիմպիկ ըզէրդումին վար դընէլը ամէն օր կի բօվինք. զորն ընտըր դընինք, ըզպատվե-լութիւնքըտ de omnibus informat[8] պի անինք։

---

1 Ըսինք, հաղորդեցինք։

2 Քան՝ միութեան երդումը։

3 Մանաւանդ որ։

4 Ընթացքին մէջ է։

5 Ամբողջ ստացուածին թարգմանութիւնն է. Հա-սարակութիւնն այս բանս իրեն վերապահած է, երբ որ ըսած է. "Ընվթար պահելով, քանի մը ծանրաբեռնու-թիւններէ ազատութիւնը. որոնց վրայօք իր Վեհափառու-թեանն աղաչանաց թուղթ մը մատուցած ենք։

6 Սահմանաւորութիւն, պայման, եղանակաւորու-թիւն։

7 Դժուարութիւն, արգելք։

8 Ամէն բանի կողմանէ զձեզ պիտի տեղեկացընենք, ձեզի հրահանգ պիտի տանք։

Միտը պի գայ Պատվելութեանցըդ, դէ 791ին. Diaetaին ժամանակը, Պատվելի Հասարակութեան անվամբը տված էր մէկ Instantia մը Statusնուն, դէ անէլօվ ըղմէզ Indigenat Statusները, մինք ալ in contestationem nostrae gratitudinis, pro promotione et cultivatione Linguae Hungaricae[1] 2000 օսգի կի խոսդանանք։ Քալելօվ մէկ էրկու թագավորի մը մօտ. inter caetere[2] Հարցմունքսը արիլին, դէ ըղ2/m. օսգին բէրիլինք, զորն որ խօսդացիլինք նայ?։ Օղկայ բան չինք պատասխանի, Հաթէ կալաքէնը իշխիլինք ասէլու inter privatos parietes[3], még a Müntzhausznál vagyon az a pénz[4]. Անոր Համար Պատվելութեանցըդ զայս բանը իմացընէլու ուղացիլինք։ Եւ Inviatio[5] կուզինք, դէ ինչ անինք? չի կենալով մեր տված Instructioյին մէջ ասոր կողմանէ իշմունք։ Ջէ կըլայ, ընտօր օր բէճնի կի գումնինք[6], որ էրդումին վար դընէլուն ժամանակը ըղխօսդացած 2/m. օսգին ուզին։ Մինք չի ունէնալով ասոր կողմանէ Պատվելութեանցըդ մօտէն Commissio, օղկայ պատասխան չի պի կարէնանք տալու, Հաթէ ասոր վրայ facultoվադ[7] չիլալօվ, Պատվելու-

---

1 Մեր երախտագիտութիւնն ապացուցանելու Համար, Հունգարական լեզուին յառաջացման ու մշակութեանը Համար...։

2 Ի մէջ այլոց։

3 Ազատ որմերու մէջ. = մեր մէջը, բարեկամաբար։

4 Դրամը՝ դեռ փողերանոցին մէջն է։ — Հունգ. է։

5 Հրահանգ, տեղեկութիւն։

6 Ինչպէս որ ապահովապէս կը գուշակենք։

7 Իշխանութիւն, կարողութիւն, Հրաման։

թեանցըտ referat[1] պի անինք։ Չի խընային Պատվելութիւնքըտ զաս բանը վեր անէլու[2]. 1mo պատվելի Հասարակը զայս խօսդումը Instantiaյօվ[3]. զորն որ Statusնուն ձէրգն է. եւ Diaetale Prothocollumին[4] մէջնես մտիլէ, արիլին։ 2° Զայս Instantiaյով արած խօսդումէն, Հիմպիկ պարտավօրութիւն դարձիլէ։ 3° Թէօր այս խօսդումին չի կաննի Հասարակը, վախնալույ է, որ Statusները, որոնք որ մէզիկ արանց անոր ընդէմ ին[5], ըզմեզ totaliter[6] չի թաղին. եւ այս կերպիվը նացայ ջանքն ալ, վորոնք օր մեր քով սըրտանց կի բանին ու պի բանին, in irritum abeat[7]. 4° պատվելի Հասարակը, in Suis super Provincialis Commissariatus elaborato, quoad nostram immunitationem plano, de promptis Reflexionibus, զայս խօսդումը confirmat կանէ, in verbis: Praeter Summam bis mille Aureor. Imperialium antecedenter sponte nostra oblatam, mille adhuc et quingentos Aureos pro onerum redemptione etcr. Pnumerandos quam humillime offerimus[8]. — Խորգն է, օր ան Instantio-

---

1 Հաղորդել, տեղեկացնել։

2 Աս բանն աչքին առջեւն ունենալու։

3 Աղաչանաց թուղթ, աղերսանք։

4 Տէրութեան ժողովներու արձանագրութիւն։

5 Այսպէս ալ մեզի հակառակ են։

6 Բոլորովին, ամբողջապէս։

7 Ի զուր ըլլայ, փճանայ։

8 Ամբողջ ըսուածքին իմաստն է. Հասարակութիւնը գաւառական գործակատարութեան՝ մեր ազատութեանցը նկատմամբ յօրինած յատակագծին վրայ բացատրած պատասխանւոյն մէջ, այս խոստումը՝ յաջորդ խօսքերով կը

*յին մէջ, ընտըր գիտինք, դէ կայ զան* conditio*ն*[1] *դրած, թէ* ea lege[2] *կի խօսդանանք, օր ըզմեզ մեր* Immunitas*ներուն*[3] *մէչ* Status*ները* manutenealuit[4] *անինք։ Մինք ասոր կողմանէյ ալ սուսդ չի պի կենանք։ Բայց աճափ տեղ պի ունէնայ զաս մեր* declaratio*ն. եւ զան դէ պատվելութեանցըտ* referat *պի անինք?*

*Այս մեր բանը հիմպիկ վերջապէս պիտօր հատըրվի. ալ աղէկ, ալ խուծած դի ըննի։ Ուրուխ օր ըննի, ի հօն ի յաւիտեան ամպէս պի մնայ։ Մինք զաս անոր համար պատվելութեանցըտ դիմաց կը փըրինք, օր* in omni casu[5] *հատիր ըլանք։ Բայց անոր համար ալ, օր հիմպիկ ըլալով* tempus acceptabile[6], *թէ օր ասխըտարի մօտ իգայ, պատվելութիւնքըտ չի քաշվին. օր չիլադէ ըզքարի սհադը* negligat *անէլով*[7], *զանոր դուդը*[8] *յաւիտեանս տալու ծօրօվցըվինք*[9]*։ Կըլայ դէ այս խօսդումին սէպը չի անին իշմունք, զորն մինք ալ պի փափաքէյինք։*

---

*Հաստատէ. Ցառաջուընէ խոստացած* 2000 *կայսերական ոսկիէն զատ, խոնարհաբար դեռ* 1500 *կը նուիրենք՝ ծանրաբեռնութիւններէն ազատելու համար։*

1 *Պայման, թէութիւն։*

2 *Այնպիսի օրինօք, պայմանաւ։*

3 *Ազատութիւն, ապահարկութիւն։*

4 *Պահեն, պահպանեն։*

5 *Ամէն դիպուածի մէջ։*

6 *Ընդունելի, յարմար ժամանակ։*

7 *Անփոյթ ընելով, անհոգ ըլլալով։*

8 *Անտարակոյս՝ ցաւ, վիշտ պիտի նշանակէ։ Անշուշտ թուրք բառն է։*

9 *Ստիպուիլ, բռնադատուիլ։*

Բայց աղէկ է, որ երկու կողմանէ ալ հատիր ըլանք: Ըզպատուելութեանցըտ պատասխանը թէզօվ պի բօվլինք. զէ Urgens է[1]. եւ դէր express օվ[2]: — Հանցնէլօվ ըզմեզ, կու մնանք

Պատուելի Ա. Պիրովին. Պ. Մակիստրատին եւ Պատուելի Հասարակին

ծառայակիցք եղբայրք„:

Ահա պատասխանը.

“Ամենայ Պատուելի Ա. եւ Աղաչաներ!

Սիրելի եղբայրք.!

Պատուելութեանցըտ de 18ᵃ M. et a. c. գրած բարեւագիրըն 22ᵈᵒ առինք: Եւ որպէս փափաքանօք բօյլինք, այնպէս ասօրվանը Sessio ին, coram confluente Sufficienti Numero Communitate սիրով խօսէցուցինք[3]: Ջօրին էութիւնը բավականապէս իմանալով, կամէցինք Պատուելութեանցըտ պատասխանելու. եւ թէ ինչ կերպիւ կարավարվին inviatio անելու[4]. Ut reliqua taceamus[5], միայն oblatumնուն կօղմանէյ, զորոնք 1791ին Diaetaին, եւ subseque[6] գերաբարձր կուպէրնիումին pr. Deputatos Nostros[7] արած ինք, կամինք զուրուձելու:

---

1 Ստիպողական:

2 Շուտով, ճեպընթաց թղթատարով:

3 Այսօրուան նիստին մէջ, պատշաճ թուով ներկայ եղող Հասարակութեան առջեւը կարդացինք:

4 Ո՛ր ճամբով երթան, ինչ կերպով ընեն:

5 Մէկալներուն վրայ լռելով:

6 Անոր վրայ, անկից ետքը:

7 Մեր երեսփոխաններուն ձեռօք:

կու գրին Պատվելութիւնքըտ. $1^{mo}$ Թէ, որպէս գիտելի է, եւ Diaetale Protocolumնալ կու ցըցնու, նայ Հասարակին անվամբը, որոյհետեւ in Numerum Regni Civium adaptat[1] էղիլինք, եւ indigenatum[2] գընտըվիլինք, in contestationem Nostrae Gratitudinis, pro promotione et cultivatione linguae hungaricae 2/m[3] օսգի խօսդացիլինք: 2° J. Comissariatus reflexioներըն Հասարակին comunicat ըլալօվ, praeter Summam bis mille Aureorum, pro Onerum redemptione, mille adhuc et quingenti oblati fuerint[4].

Պ. Աղաչաներ! Որպէս օր Պատվելութիւնքտ, ալ կու գըրին, գիտին աղէկ, թէ նոյն 2000 օսգին. $24^{ta}$ July 1791 Statusնուն տված instantiaյօվըն, թէպէտ in Promotionem et cultivationem Linguae Hungaricae convertendos obtulerimus, այսու ամենայնիվ, salvis cunctis favoribus Privilegialiter Nobis concessis[5]

---

1 Թագաւորական քաղաքաց կարգն ընդունուեցանք։

2 Այդրէնածին, բնիկ ըլալը։

3 Ի վկայութիւն մեր շնորհակալութեանը, Հունգարերէն լեզուին յառաջացման ու մշակութեանը համար 2000…։

4 Կայսերական գործակալութեան դիտողութիւնները հասարակութեան հաղորդուած ըլալով՝ 2000 ոսկիէն զատ, 1500 մըն ալ նուիրեցինք, ծանրաբեռնութիւններէն ազատելու համար։

5 Թէպէտ հունգ. լեզուին յառաջադիմութեան ու մշակութեան գործածելու համար խոստացած ենք. այսու ամենայնիւ անվթար պահելով մեզի տրուած առանձնաշնորհութեանց կէտերուն ամբողջութիւնը։

խօսդացիլինք: Մէկալ 1500 օսգուն վրայ կի հաւատամք թէ մագար իշմունք չի պի աննն. որօյհետեւ Status նուն offerat[1] չէյ, այլ J. Commissariatus ին reflexio ին[2] վրայ. գերաքարձր կուպէրնիումին: Անոր համար, hac occasione[3], միայն զան կամէցիլէյ Հասարակը պատվելութեանցըտ այտնէլու, թէ in casu[4], թէ օր occasione depositionis Juramenti[5], ճիճմէին, կամ quoquomodo[6] ճօրօվցընուին, որ արած խօսդումնները նօրէնն ալ ամպըրցընունք, նայ hoc inquam casu facultoվադ կըլան[7] պատվելութինքըտ, որ այն կերպիվ արած խօսդումնուն կողմանէյ կարավարվին, որ թէ օր ըզ2000 օսգին distincte[8] ուզին, այտնին պատվելութինքըտ Status նուն թէ, գրօվ կամին ֆէլէլութ անելու: Որ ֆէլէլէդը[9] ան պիլայ, թէ մեր Հասարակը, չէյ միայն 2000#[10] այլ 3500 խօսդացիլէյ. զըրն հիմպիկ ալ ultro offerat[11] կանինք.

---

1 Նուիրել, տալ, ընծայել:

2 Արքունական գործակատարութեան խորհրդածութեանը, դիտողութեանը վրայ:

3 Այս առթիւ, պատճառաւ:

4 Ի դիպուածի:

5 Երդում ընելու առթիւ:

6 Որպիսի կերպիւ, ինչպէս որ ալ:

7 Ցիշեալ առթին (այսինքն դէպքին) մէջ՝ ձեզի իշխանութիւն կը տրուի:

8 Ցայտնապէս, որոշ:

9 Felelet, հունգ. բառն է. կը նշանակէ, պատասխան: Ֆէլէլութ անել — պատասխանել. պատասխանի տանել:

10 Աւստր. կայսերական ոսկւոյն նշանն է:

11 Սիրով, ինքնակամ կը նուիրենք:

hac tamen sub Cautela, որ որոյհետեւ արանց անոր Secundum conditi Articulum պէտք պիլայ, որ նոր Privilegium հանինք, նայ Puncta antiquarum Privilegialium, Signanter: $1^{am}$ et $12^{am}$ Salvum permaneat[1]; ab adverso[2], թէ որ Juramentum depositioին[3] ժամանակը իքմըն ալ իշմունք չիլար այս oblatumնուն վրայ, նայ reservat[4] կու անէյ հասարակը զան իրեն, որ absque Scitu suo[5], իքմըն ալ չի անին պատվելութիւնքըտ: Եւ օչ facultas կու տայ պատվելութեանցըտ, post consummatum jam Juramenti depositionem[6], այս Onusնուն կողմանէյ, արանց հասարակին իքմը անէլու կարէնան: Օր չիլայ թէյ, երփոր զերջանկութիւնը կու փափաքինք եւ կու քալինք գընտըվէլու, զհաւիտենական ճուկը[7] վըզերս անցընունք: Ուրեմն եփալ որ արաջ արնըվէր հասարակին բանը, այս Onusնուն կողմանէ, իմանալով պատվելութիւնքըտ միուս միոչէյ[8], զհասարակը informat

---

1 Ամբողջ ասացուածքին իմաստն է. Սակայն այս բանս այն թէութեամբ, որ՝ որովհետեւ հաստատուած օրինաց յօդուածին համեմատ, հարկ պիտի ըլլայ, որ նոր առանձնաշնորհութեան կոնդակ ընդունինք, ուստի հին արտօնութեանց կոնդակներուն կէտերն՝ եւ յանուանէ Ա. ու ԺԲ. անփոփոխ մնան:

2 Ընդ հակառակն:

3 Երդում ընելու ատեն:

4 Վերապահել:

5 Առանց իր գիտութեանը:

6 Երդումն ընելէն, կատարելէն ետքը:

7 Լուծ, ծանրութիւն, բեռն:

8 Մի ըստ միոջէ:

անէլու չի ծանօրէնան: — Վասն պաշխըշնուն կօղմանէյ, որըյհետեւ գիտէլըյէյ օր կըփչանն[1] ալ արանց քսած չի վաղիլ, նայ Պատվելութիւնքս ալ, ուրուխ պիտոյ տէսնուն հետ Ա. Կէրլացոցը մէկտեղ, թէ պիտվականէյ, նայ facultoվագ կըլան տալու: Ջօրոնք իրեն ժամանակին Հասարակն ալ acceptovat[2] պի անէյ: ... Կամք որպէս միշտ. Պատվելութեանցս.

Elisb. die $24^{ta}$ $9^{bris}$ A. 1794. Ծարայելու եղբայրք. Մակիսդրադ եւ Հասարակ Էլիզաբէդ քաղաքիս.

Վարդան բաղրուպանենց. m. p.
Ֆիւ պիրօվ.[3]

Antonius Lukáts, m. p.
Int. Orator.

Միգլուշ զօգօրիաշ. m. p.
Vic-Notrs[4] ."

Ափսոս, որ այս նիւթին վերաբերեալ շատ մը կարեւոր արձանագրութիւններ ու պաշտօնական նամակներ կորսուած, աներեւոյթ եղած են: — Աս պատճառաւ չենք կրնար ըսել, թէ ինչ վախճան ունեցաւ, ազգայնոց՝ երդման եւ մանաւանդ ծանրաբեռնութիւններէն ազատելու նպատակաւ հունգարական լեզուին յառաջացմանն ու մշակութեանը համար խոստացած 2000

---

1 Կարծեմ՝ սայլ, կառք կը նշանակէ:

2 Ընդունիլ, ճանչնալ:

3 Հունգ. է. կը նշանակէ՝ առաջին, գլխաւոր դատաւոր:

4 Այս ինքն Vice-Notarius = քարտուղարի փոխանորդ:

եւ 1500 ոսկիներուն խնդիրը։ — Թէպէտ, ինչպէս յաջորդ յօդուածին մէջ յառաջ բերելի դէպքերէն ու պարագաներէն պիտի տեսնենք՝ — որովհետեւ թէ կառավարութիւնն եւ թէ Կարգերն ու Վիճակները, ամենեւին չուզեցին զիջանիլ, որ Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք ազատ ըլլան, ի մասնաւորի՝ զինուորաց բնակութիւն տալու եւ սայլորդութեան ծանրաբեռնութենէն, — Հայերն ալ պնդած մնացին իրենց դրած պայմաններուն մէջ. ու 3500 ոսկւոյն խոստումն ալ՝ ինչպէս կը կարծենք, մնաց խոստում ու միայն թղթի վրայ։

## 15.

Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք՝ յենլով իրենց շնորհուած ազատութեանց ու արտօնութեանց հրամանագիրներուն վրայ, կը պահանջէին որ քանի մը հասարակաց ծանրաբեռնութիւններէն, ի մէջ այլոց — իբրեւ արքունական կալուածոց երկրատէր ու ազատ ազնուականք՝ — տուրք վճարելէ, դարձեալ՝ զինուորաց տուն ու տեղ տալէ (quartier)․ ինչպէս նաեւ նախամոլքի ծառայութենէն (Vorspann) ազատ ըլլան։

Մանաւանդ այս երկու վերջին արտօնութեան նկատմամբ շատ բան ունեցած է տէրութիւնն ու աւագաժողովն Եղիսապեթուպոլսեցւոց հետ։ Աս բաներուն վրայօք խիստ բանակռուի մէջ էին Եղիսաբեթուպոլսեցիք տէրութեան հետ։ Ասոնց նկատմամբ բազմաթիւ նամակներ

գացած են Աւստրիոյ կայսեր, Դրանսիլուանիոյ վերին կառավարութեան եւ տէրութեան աւագաժողովոյն։ — Բայց աստ պատճառաւ Հայք, նաեւ շրջակայ ազգերուն — մանաւանդ Հունգարացւոց վաղեմի ժամանակէն արծարծած ատելութիւնն՝ ինչպէս պիտ'որ տեսնենք. — աւելի եւս իրենց դէմ գրգռեցին։

Զինուոր չպահելու արտօնութիւնն, ինչպէս պատմութիւնը կը վկայէ, ուրիշ ազգայնութիւններն ալ կը վայելէին Աւստրիոյ պետութեան մէջ։ — Լէոբոլտոս Ա. արդէն 1700ին. Դրանսիլուանիոյ Ալվինց գեղը գտնուող Պուլկարներուն, այս արտօնութիւնը շնորհած էր. աւելցընելով արտօնագրին մէջ թէ, իր շնորհմունքին դէմ ոչ ոք կարենայ բողոքել ու դէմ դնել։ Ահաւասիկ կայսերական հրամանագրին խօսքերը. “Այս մեր կայսերական թագաւորական որոշմանը դէմ, ո՛չ գաւառական, ո՛չ զինուորական իշխանութիւնն եւ ո՛չ ուրիշ մը, թէ՛ ուղղակի եւ թէ՛ անուղղակի ընդդիմանալու համարձակի։ Աստ վրայօք, մեր Դրանսիլուանիոյ վերին զինուորական զօրապետին հարկաւոր կարգադրութիւնները տուած ենք. որպէս զի զիրենք (զՊուլկարները) յիշեալ ազատութեանը մէջ պաշտպանէ„։

Ճշդիւ նոյն ազատութիւնը կը վայելէին միշտ ազգայինք ալ։ — Այս բանս կը տեսնենք յայտնապէս Կարոլոս Զ.ի 1733ին եւ Մարիամ Թերեզիայի 1758ին տուած առանձնաշնորհութեանց կոնդակներէն։

Առաջնոյն մէջ այս ազատութիւնները գրի անցուած են յաջորդ խօսքերով. “Զինուորաց բնակութեան տեղեր եւ բեռնակառք տալու. եւ ուրիշ ասանկ ծանրաբեռնութիւններ մատուցանելու նկատմամբ՝ արժանի համարեցանք, որ ասոնցմէ — դուրս առնելով ամենածանր հարկաւորութեան դէպքերն՝ — այս քաղաքը (Եղիսաբեթուպոլիս) բոլորովին ազատ ու արտօնացեալ ընենք„:

Իսկ Մարիամ Թերեզիա կայսրուհին իր արտօնութեան հրամանագրին մէջ այսպէս կ՚ըսէ. “Զինուորաց տեղ տալէն, զինուոր պահելու պարտաւորութենէն, դարձեալ՝ նախամոլք տալէն եւ ասոնց նման ծանրաբեռնութիւններէն այս հասարակութիւնը դուրս կ՚առնունք, եւ ազատ կը հրատարակենք„[1]:

Աս ազատութիւններուն մէջ կ՚ամրացընէ զԵղիսաբեթուպոլսեցիները՝ նաեւ Յովսէփ Բ. իր 1785ին եւ 1786ին տուած առանձնաշնորհութեանց պատճէններուն մէջ, երբ — գրեթէ մի եւ նոյն խօսքերով — կ՚ըսէ. “Անոնք (Եղիսաբեթուպոլսեցիք) իբրեւ շարունակ վաճառականութեամբ զբաղող մարդիկ, զինուորաց տեղ տալէն ու նախամոլքի ծառայութենէն եւ ուրիշ ասոնց նման ծանրաբեռնութիւններ կրելէ դուրս հանուած են. ուստի եւ ազատ կը համարուին:

---

1 Համեմատէ, Կարոլոս Զ.ին 1733 Ապ. 11ին, եւ Մարիամ Թերեզիա 1758 Նոյեմբ. 28ին տուած արտօնագիրները: — Տես՝ Հայք յԵղիսաբեթուպոլիս. Ա. Հատոր. էջ 85 եւ 214:

Որուն մէջ զիրենք ասկից ետքն ալ պահել կ՚ուզենք[1] „:

Բայց ազգային այս արտօնութիւնները չկրցան միշտ վայելել: Ժամանակները փոխուեցան: — Եւ որովհետեւ յարաբերութիւններն այնպէս պահանջեցին, որ Դրանսիլուանիոյ քաղաքաց ու հասարակութեանց մէջէն շարունակ զինուորներ անցնին՝ փոխադրուին, պէտք էր որ ամէն քաղաք, ամէն գեղ, ամէն աւան — թէպէտ քիչ ատենի համար եւ անցողակի կերպով — զինուոր ընդունէր իր տունը: Բաց ասկէ զինուորաց բեռերն ու կահ կարասիքն իր տեղէն առաջին գեղը կամ քաղաքը փոխադրէր:

Աս հասարակաց պարտաւորութենէն, ինչպէս լսինք Հայերն ազատ էին: Ազատ ալ կը մնային աւելի երկայն ժամանակ՝ գուցէ նաեւ ցմիշտ, եթէ շրջակայ Հունգարացւոց նախանձն ու նեղսրտութիւնը չգրգռէր տէրութեան աւագաժողովն, որ Դրանսիլուանիոյ կառավարութեանն այս բանս դադրեցընել տայ:

Հայք՝ կը վախնային զինուորներէն ու նոյն իսկ զինուոր տեսնելէն, ինչպէս կրակէն: — Առ այս ունէին իրենց յատուկ պատճառները: Բայց այս պատճառներն, ա՛լ չէին արժեր. կորսնցուցած էին իրենց յառաջուան զօրութիւնը:

Ասոր նկատմամբ, թէպէտ խել մը տեղեկութիւն ու նամակ գացած է Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութենէն Վիեննայի գործա-

---

1 Տես էջ 329—330:

կալին, թէպէտ աղերսագիրներ գրուած են պաշտօնեաներուն եւ նոյն իսկ կայսեր. բայց ասոնք առանց հետեւութեան մնացին։ — Կայսեր գրուած աղաչանաց թղթերը՝ Գրանսիլուանիոյ վերին կառավարութեան՝ եւ ասկից տէրութեան աւագաժողովին կ'երթային. որպէս զի ասոնք իրենց կարծիքն արքունեաց ներկայացընեն։

Կրնանք ենթադրել թէ ասոնք ինչ տեղեկութիւններ կու տային կայսեր։ — Անցաւ այսպէս քանի մը տարի։ — Երբ Եղիսաբեթուպոլսեցիք, տեսան թէ ամէն աղաչանք անօգուտ է, այն ատեն — առանց բանը լաւ մը կշռելու — շիտակ Գլուժի աւագաժողովոյն դիմեցին։ — Իրենց աղերսագրին մէջ, պատգամաւորաց ժողովոյն առջեւը դրին, թէ՝ իբրեւ թագաւորական ազատ ու առեւտրական քաղաք, հարկ է որ զինուոր պահելէն ու նախամոլք տալէ ազատ ըլլուին. որովհետեւ իբրեւ ազատ վաճառականք, տարւոյն մեծ մասը տունը չըլլալով՝ տներնին պարապ են. եւ միայն իրենց տղաքն ու կանայքը գտնուելով հոն, անպատշաճ բան է, որ իրենց բնակութեան տեղերը՝ զինուորները բռնեն։

Բայց աւագաժողովը չէ՛ թէ միայն խուլ եղաւ այս խօսքերուն, հապա աղերսագիրը հունգարական քաղաքներուն խրկեց, որպէս զի ուսումնասիրեն եւ ըստ այսմ իրենց կարծիքն ու տեղեկութիւններն աւագաժողովոյն մատուցանեն։

Սըգոյական քաղաքները շատ նեղացան այս բանիս վրայ. ու սաստիկ թշնամանիչ եւ զՀայերը վար զարնող տեղեկութիւն ու աղերսագիր

մը գրեցին Գլուժի աւագաժողովոյն։ Ասոր մէջ անպատշաճ կը համարին եւ ապօրինաւոր կը հրատարակեն, որ Հայք ազատ ըլլան, ա՛յն հասարակաց ծանրաբեռնութիւններէն՝ որուն տակ ենթարկուած է ամէն արքունական ազատ քաղաք։ Թէ բոլորովին անտեղի է իրենց պահանջմունքը։ Թող հնազանդին տէրութեան օրինացը։ Իրենց համար զատ իրաւունքներ չկորզեն։ Թող իրենց վրայ դրուած օրինաւոր տուրքերը վճարեն... եւայլն։

Ահա գրութեան հայերէն թարգմանութիւնը։

“Սըգդյ ազգին խորհրդածութիւնները՝ Կերլայ ու Եղիսաբեթուպոլիս քաղաքներուն աղաչանացը վրայ։

“Կերլայի ու Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեանց երեսփոխաններուն՝ նորերս մեծապատիւ Վիճակներուն մատուցած աղերսագրէն կ'իմանանք, որ կը խնդրեն եղեր թէ մինչեւ որ իրենց արտօնութիւնը հասնի իր Վեհափառութենէն, ընդունուի իրենց երդումն, եւ առնուին մեծապատիւ Կարգաց մէջ։ — Իրենց մէկ ուրիշ աղաչանքն ալ ա՛ն է, որ կեանքերնին վաճառականութիւն ըլլալով՝ զինուոր պահելէն ազատ ըլլան եւ նախամոլք չտան։ — Առաջնոյն նկատմամբ, արդէն իրենց պատասխան տրուեցաւ. եւ աւելի վայելուչ կ'ըլլար, թէ որ ըստ այնմ ընէին եւ զանիկայ պահէին։

“Նկատմամբ երկրորդին. ինչպէս կ'երեւայ նպատակնին ա՛ն է, որ ուրիշ արտօնացեալ քա-

ղաքներուն վրայ առաւելութիւն մ՚ունենան. եւ արքունեաց առջեւ ուրիշներէն աւելի ըլլան։ Աս բանս ամենեւին ներելի չէ։ Ինչու որ եթէ մէյ մը նկատենք — ոչ այնչափ շատ առենէ ի վեր հանդիպած — տաճկական պատերազմը՝ կը գտնենք, թէ ինչպիսի՜ ծանր նախամոլք ու փոխանորդութիւն պէտք եղաւ որ բոլոր երկիրը տայ դէպ ի Պանադ, Վալաքիա ու Մոլտաւիա։ Այնպէս որ մեր աղքատ ժողովրդէն շատերը կորսուեցան իրենց դուարովը եւ ունեցածովը։ Թէպէտ Սըգոյները՝ թէ՛ ըստ արտօնութեանց եւ թէ՛ ըստ օրինաց այսպիսի բեռնակրութիւններէն ազատ են. սակայն եւ այնպէս, այն բաներուն ամենէն ծանր մասը վրանին առին։

“Եթէ վերոյգրեալ քաղաքները՝ զինուորաց բնակութիւն տալէն եւ նախամոլքէ ազատ ըլլան, յայտնի է որ այս ծառայութիւնն երկրիս ուրիշ ժողովրդոցը վրայ պիտի ծանրանայ։ Անոր համար, որչափ եւ դրամի մեծ գումար տալու ալ ըլլան, աս բաներէն զիրենք ազատ ընել խոհեմ՝ բան չենք համարիր. եւ Սըգոյ ազգն այս բանս ամենեւին տեսնել ու ներել չի կրնար։ Անոր համար այս ալաչաւոր քաղաքներն ալ, աւանց որ եւ է բացառութեան, իրենք զիրենք մէկալ ամէն քաղաքաց տրուած օրինացը համակերպեն։

“Մեր որոշումն այս կերպով բացայայտելէն ետեւ, Սըգոյներուն երկիրները բնակող Հայոց դէմ պատշաճ դարման ընելու համար, կը համարձակինք մեծապատիւ Վիճակներուն յաջորդները ծանուցանելու։

"Վերոյգրեալ կրկին քաղաքներուն հասարակութիւններն, իրենց քաղաքային իրաւունքներն ընդունեցան գաւառական վիճակներուն եւ ոչ թէ Սըգըյներուն երկրին համար: Սակայն ան վիճակներէն զատ՝ մեր երկրին մէջ ալ, եւ ի մասնաւորի ճուրճովի (Gyergyó Szt. Miklos) մէջ բազմութեամբ գաղթելով, երկրակալութիւններ գնեցին, եւ իրենք իրենց մասնաւոր քաղաքաբաշխութիւն մըն ալ կազմեցին. որով այնպէս մը կ'երեւայ. իբրեւ թէ սըգըյական վերին իրաւունքը ճանչնալ չեն ուզեր: — Ասկից զատ, ամէն՝ Չիգ Սըգի, Սիբվիզի, Հարօմսըգի, Գէզտի Վաշարհէլյի, Սըգ Ուտվօրհէլյի, Ուտվօրհէլյի, Գէրէսդուրի, Մարուշ Սըգի, Մարուշ Վաշարհէլյի մէջ վաճառականութիւն ընելու համար տեղաւորուողներն ալ այնպէս կը վարուին, իբրեւ թէ վերոյիշեալ կրկին քաղաքներուն քաղաքաբաշխութեանը մէջ առնուած հասարակութեան վերաբերէին: Ուստի — հասարակաց տուրքը չվճարելու համար — մինչեւ ցայսօր, այն տեղերն, ուր որ կը բնակին, իրենք զիրենք արձանագրած (conscribo) ու անցուցած չեն: Արքունական ճամբաները շինելու, շտկելու երթալ չեն ուզեր. թէպէտ եւ իրենց յաճախ ճամբորդութիւններովն ու դուարներու խումբերովն ամենէն աւելի իրե՛նք են ճամբաներն աւրողները: Փոխանորդութիւն (vectura) չեն ըներ. թէպէտ եւ մեր երկրին ամէն բերքերովը չափէն աւելի առուտուր կ'ընեն: — Բայց մանաւանդ Չիգ Սիբվիզի եւ ճուրճով Ս. Միքլուշի Հայոց յանդըգնու-

թիւնն այնչափի հասած է՝ որ իրենց քաղաքաբաշխութիւն մ'ալ կազմելով, յատուկ կնիք մը շինած են, առանց — առ այն հարկաւոր — ազատութիւնն ունենալու, այսպիսի վերնագրով. SIGILLVM. ARMENORVM. GYERGYO. SZT. MIKLOSIENSIS. MAGISTRATVS. (կնիք Հայոց քաղաքաբաշխութեան ճուրճով Ս. Միգլուշի։)

" Աթոռներէն պատշաճ կախումն ունենալու տեղ, անոնց հետ շարունակ հակառակութեան մէջ են. եւ անոնց արգելք կ'ըլլան՝ իրենց պարտաւորութիւնը կատարելու։ — Բայց մանաւանդ իրենց խնդիրներովը՝ մինչեւ բարձրագոյն Տիրոջ հասած են։ Եւ այնպէս հասկըցուցած են բանն, որ իբրեւ թէ անկէ յառաջ արդէն արտօնութիւններ ունեցած ըլլան։ Ուստի եւ խնդրած են որ անոնց մէջ մնան։ — Առանց մեր գիտնալուն իր Վեհափառութեանն աղերսագիր մը մատուցած են։ Իր Մեծափառութիւնն ալ՝ բարեհաճեցաւ առանց մեր կարծիքը լսելու, վաճառականութեան վերաբերեալ բաներու մէջ՝ թագաւորական հրամանագրի (rescriptum) մը ձեռօք իրենց մասնաւոր ատեան մը (forum) շնորհելու. — բաց ասկէ — անցած 1794 տարւոյն մէջ — որ իրենց մէջէն՝ տրոց, առանձինն վերատեսուչ մը (collector) անուանեն։ Ասով այնչափի հասած են, որ ուղղիչներուն (rectificator) հետ նոյն իսկ խօսքի մտնել չեն ուզեր։ — Ամէն՝ իրենց դէմ եղած դատախազութիւն ու գանգատ՝ վաճառականութենէն յառաջ եկած հա-

մարելով՝ աւելի ծանրաբեռնութեան եւ անկարգութեան պատճառ կ'ըլլան։

“Ուստի չընդունելով՝ վերոյգրեալ երկու քաղաքներուն հասարակութեանց մինչեւ հիմակ գործածել ուզած արտօնութիւնները՝ զորոնք այդրէնածնութեան (indigenat) ձեռօք արդէն կորսնցուցին — եթէ իրօք ունեցած են այնպիսի բան մը. — կ'ուզենք որ այն Հայերն, որոնք այս երկու հասարակութեանց մէջ չեն բնակիր՝ այնպէս նկատուին, ինչպէս մէկալ ամէն մարդիկներն, որ այն աթոռանիստ իշխանութեան մէջ են. իրենց չափաւորեալ արտօնութիւններովը։ Անոր համար կը խնդրենք մեծապատիւ Վիճակներէն ու Կարգերէն, որ բարեհաճին այնպիսի օրէնքներ ու կարգադրութիւններ դնել, որ մեր Սրգոյներուն երկիրներուն մէջ բնակող Հայերն իրենք իրենց զատ իրաւունքներ ու արտօնութիւններ չպահանջեն. հապա կախում ունենան բնակած իշխանութեան գահուն պաշտօնատէրներէն եւ օրէնքներէն։ Իրենց վրայ դրուած տուրքերը հոն վճարեն. սայլորդութիւն ընեն. եւ ուրիշ հասարակաց ծառայութիւնները հոն կատարեն։

“Որոնց նկատմամբ մեծապատիւ Կարգացն ու Վիճակացը վերջին որոշմանն սպասելով՝ կը մնանք

“Սրգոյ ազգին պատգամաւորներն առ հասարակ”։

Ճշմարտութիւններ կան առաջիկայ գրութեան մէջ։

Ան սոյգ է՝ որ ասանկ բաներու աւիթ կու տային ազգայինք. որոնք այլեւայլ ճամբաներով ու միջոցներով հասարակաց խաղաղութիւնն ու միօրինակութեան ոգին կը խառնակէին։ — Հայք՝ շատ կը վշտացընէին զօտարազգիները մանաւանդ անով՝ որ չէ թէ միայն շարունակ տէրութեան կարգացն ու Գրանսիլուանիոյ կառավարութեանը կը գրէին՝ հապա նաեւ անով, որ Վիեննայի պաշտօնարաններուն եւ արքունեաց հետ գաղտնի նամակագրութեանց մէջ էին։ —

Սըգոյներուն վերոյիշեալ գրութիւնը՝ գրեթէ ոչինչ է համեմատութեամբ այն զրպարտութեանց, զոր հրատարակեցին ազատ թագաւորական քաղաքաց երեսփոխաններն առ հասարակ՝ Հայոց երկու քաղաքներուն դէմ։ Ասոր մէջ բուռն յարձակմամբ կը դիմեն ազգայնոց վրայ ու կ'ամբաստանեն զերենք իբր թէ՝ տէրութեան օրէնքներն ոտքի տակ կ'առնուն. հասարակաց ծանրաբեռնութիւնները հաւասարապէս կրել չեն ուզեր. տուրք չեն տար. առանձինն արտօնութիւններ կ'ուզեն. իրենց առեւտրովն աւելի վնաս կ'ընեն քան թէ օգուտ. հասարակաց խաղաղութիւնը կը վրդովեն. եւ այլն։

Աւասիկ հունգարական ազատ քաղաքաց պատգամաւորներուն՝ տէրութեան կարգացը մատուցած տեղեկագրութիւնն ու ազերսագիրը։

"Մեծարեալ ու գերապատիւ Վիճակներ ու կարգեր։

"Սամօշույվարի եւ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեանց, մեծապատիւ կարգաց՝ Նորերս

մատուցած աղաչանաց թղթէն, զոր մեր խոնարհ խնդրուածքովն աւագաժողովը մեզի — իբրեւ ազատ ու արտօնացեալ քաղաքաց երեսփոխաններուն — հաղորդել բարեհաճեցաւ, կը հասկընանք, որ երկու աղաչաւոր հասարակութիւնն, օրինաւոր պայմաններով՝ թագաւորական քաղաքաց կարգն ընդունուիլն եւ 1792ին աւագաժողովին, 61 երորդ յօդուածին ձեռօք, օրինապէս ընդունուած պյդրէնածին ըլլալը՝ փոխել կ'ուզեն։ Որովհետեւ կը խնդրեն թէ զինուորաց բնակութեան տեղ, եւ նախամոլք տալու ծանրաբեռնութենէն — որն որ ուրիշ ազատ թագաւորական քաղաքներուն վրայ մեծապէս կը ծանրանայ — ազատ ըլլան։ Բայց ասկից աւելի մեծն ան է, որ յիշեալ ծանրաբեռնութենէն բոլորովին ազատիլ կարենալու համար, իր Մեծափառութենէն առ այս արտօնացեալ պատճէնի մը հանիլը կը սպասեն։

"Աս բաւական չէ. կ'ուզեն որ — մինչեւ այն ատեն — իրենցմէ անուանուած գործակատարներուն՝ տէրութեան աւագաժողովին մէջ՝ տեղ ու քուէի ազատութիւն շնորհուի։ Եւ որպէս զի այս արտօնութիւնները կարենան ձեռք բերել, մեծապատիւ Վիճակներուն առջեւ կը դնեն գլխաւորաբար զան, որ տէրութեան մեծ օգուտ կ'ընեն — ինչպէս որ իրենք կ'ըսեն — վաճառականութիւնը մեծապէս յառաջացընելով։

"Բայց թէ՝ յիշեալ երկու հասարակութեանց առաջարկած բաղձանքին, տեղի ամենեւին չի

կրնար տրուիլ, ծառայեն մեր — ստորեւ նշանակած եւ մեզմէ խոնարհաբար մեծապատիւ Վիճակներուն առջեւը դրուած — պատճառները։

"1. Ամէն Թագաւորական ազատ ու արտօնացեալ քաղաքներուն պարտաւորութիւնը, մանաւանդ թէ յատկութիւնն ան է, որ ընդունուած սահմանադրութեան (Approbata Constitutio) Գ. Մասին 81 յօդուածին համեմատ — ի նշան՝ տէրութեան գլխուն ունեցած հաւատարմութեան՝ — ուրիշ տեղերու, գաւառներու եւ երկիրներու օրինակին պէս, որ եւ է ժամանակի մէջ, պարագայից համեմատ, թէ՛ ինք վեհապետը կարենայ անոնց մէջ բնակիլ, եւ թէ՛ իր վճարուած զինուորներն ու ամէն պաշտօնատէրները կարենան անոնց մէջ տեղաւորուիլ։ Վերոյիշեալ օրէնքէն զատ, նաեւ 1625ին. Մայիս 1ին, տէրութեան աւագաժողովին կարգադրութիւնն ալ զայս կը պահանջէ։ Ինչպէս որ իրօք, այսօր՝ մեր տէրութեան մէջ, ամէն արքունական ազատ, պարըսպապատ եւ արտօնացեալ քաղաք, այս ծանրաբեռնութիւնները կը կրէ. հասկընալով աստ մէջ, նաեւ նախամոլք տալու ծառայութիւնն. որուն իրօք ենթարկուած է։ Ասկից եղաւ

"2. Որ մեծապատիւ Վիճակաց եւ Կարգաց ձեռօք որոշուած՝ իր Մեծափառութենէն ամրացուած եւ 1792ի, 61 յօդուածին համեմատ իբրեւ օրէնք հրատարակուած, երկու աղաչաւոր քաղաքներուն այն ատենի պատգամաւորներն ալ՝ այնպիսի՛ կերպով հաւանեցան, մանաւանդ թէ միաբանեցան ազատ քաղաքացը կարգն ընդու-

նուելու, որ մէկալ հունգարական քաղաքներուն հետ, ամէն բանի մէջ՝ ծանրաբեռնութիւնները հաւասարապէս կրեն. եւ մէկալ կողմանէ ալ հաւասար իրաւունք ու ազատութիւն ունենան. պահելով առջի կէտին մէջ յառաջ բերուած երկրին օրէնքները, որուն զօրութեամբը, ինչպէս որ այդրէնածնութեան կամ տէրութեան զաւակացը կարգն ընդունուելով՝ երեք ազգաց հետ ի մի ձուլուեցան, անանկ ալ թագաւորական քաղաքաց կարգն անցնելով՝ միացուեցան անոնց հետ առանց մէկ զանազանութեան, թէ ի նպաստս թէ ի ծանրութիւնս։ — Ուստի

"3. Այսպիսի օրինաւոր միութեան քակման դէմ մատուցած խնդրուածքնին, այնչափ աւելի չի կրնար ընդունուիլ, որչափ ասոր հետեւութեամբ, թէ առաւելութիւնները (beneficium) եւ թէ ծանրաբեռնութիւնները կրելու նկատմամբ, օրինաց մտքին համեմատ, հաւասար եղող քաղաքներուն մէջ տարբերութիւն եւ անմիաբանութիւն եւ ասկէ պատճառած օրէնքներու առաջարկութիւններ կրնան յառաջ բերուիլ. որոնց տեղի չի կրնար տրուիլ, նոյն իսկ լաւ կարգաւորուած հասարակութեան մէջ. թող թէ տէրութեան մը մէջ՝ ուր որ նմանօրինակ բաներուն առջեւն առնուելու համար, հաճեցան մեծապատիւ Վիճակները 1792ին այս նիւթիս մէջ որոշումն ընել։

"Աս բանս՝ առանց մեծ պատճառի մը, ու միայն նեղսիրտ աղաչաւորաց խնդրուածքին համար ամենեւին փոփոխութիւն չի կրնար կրել.

մանաւանդ որ որոշումը մեծափառ վեհապետին
հաւանութեամբը պարտաւորիչ օրէնք եղաւ։ —
Ասոնցմէ, մենք, ազատ քաղաքաց պատուիրակ-
ներս՝ ետ կենալ չենք կրնար։ Որովհետեւ ինչ-
պէս որ մենք զմեզ եւ մեր քաղաքներուն ամէն
անդամներն, անանկ ալ աղաչաւոր հասարակու-
թիւններն, անոնց ճշդիւ պահպանութեանը (ա-
ռանց իրենց՝ ասոր հակառակ եղած իրաւունք-
ները ճանչնալու) պարտաւոր կը համարինք. յի-
շեցընելով աղաչաւորաց, մեծապատիւ վիճակ-
ներուն այս նիւթիս նկատմամբ բերած որոշումն
ալ, — որ 1791ին տէրութեան ժողովոյն ար-
ձանագրութեանը 611 եւ 612 էջերուն մէջ
կը գտնուի. — որուն համեմատ սպառնալիք
եղաւ, որ զգուշանան ասկից ետքն ասանկ բանե-
րու ետեւէն իյնալու եւ մէկալ քաղաքներէն
տարբեր ըլլալ ուզելու. վասն զի իրենց արտօնու-
թիւնն եւ առանձնաշնորհութիւնները կը կոր-
սնցընեն։

"Իսկ զինուորաց տեղ չտալու եւ նախամոլք
չտանելու նկատմամբ ըրած աղաչանքնին օրինաց
հակառակ եւ վնասակար գտնուելով՝ այս բա-
ներս իրենց չշնորհուեցաւ. հապա ըսուեցաւ որ
նոյն ծանրաբեռնութիւններն իրենք ալ կրելու
պարտական են ուրիշներուն պէս։ Անոր համար

"4. Չի կրնար ըլլալ, որ արդէն մէյ մը որո-
շուած խնդիրներուն — միայն վերոյիշեալ պատ-
ճառներուն համար — վերանորոգուիլն, իրենց՝
պարապ ժամանակ կորսնցընող անհանգիստ հոգ-
ւոյն չտրուի։ — Աղաչաւորները՝ նախընթաց

տէրութեան ժողովոյն որոշմանը համեմատ չկըր-ցան իրենց նպատակին հասնիլ։ Եւ եթէ մեծա-պատիւ Կարգերն ու Վիճակներն այս նորոգուած խնդիրքը նորագոյն քննութեան տակ ձգելու բարեհաճին ալ, յիշեալ քաղաքներն իրենց նպա-տակին հասնելու ամենեւին յոյս չունենան. վասն զի նկատմունք չ'ըլլուիր, ոչ իրենց վաճառակա-նական վիճակին, ոչ — ինչպէս իրենք կը հա-մարին — իրենց՝ մեր երկրին բերած օգուտին, եւ ոչ անոր՝ որ վերը յիշուած ծանրաբեռնու-թիւններուն ենթարկուելովն՝ իրենց անկումը կը փութացընեն։ Որովհետեւ — թող տալով զայն՝ թէ այսպիսի պարագաներու մէջ, ինք իրմէն կը հետեւի՝ որ կամեցողին չիք ինչ ան-կարելի՝

"Ա. Աղաչաւոր հասարակութիւններն՝ իրենք իրենց կամօքն ուզեցին, որ թագաւորական քա-ղաքներուն կարգն անցնին։ Գիտէին իրենց վի-ճակը. պէտք էին յառաջուընէ գիտնալ նաեւ զայն, որ եթէ աղաչանքնին ընդունուի՝ արքու-նական քաղաքներուն չէ՛ թէ միայն շնորհմունք-ներուն այլ նաեւ ծանրաբեռնութիւններուն պէտք են մասնակցիլ։ — Գործքը՝ դժուարու-թիւններով կը քալէ։ Ո՛վ որ կը վայելէ հանգըս-տութիւնը, հարկ է որ զգայ նաեւ անհանգըս-տութիւնը։ — (Qui sentit commodum, debet sentire etiam incommodum).

"Բ. Նկատելով երկու հասարակութեանց անհատները՝ կը գտնենք թէ անոնց քիչ մասը միայն դուարով ու խանութի ապրանքներով ա-

ռուտուր կ՚ընէ։ Ասոնք ալ ունին իրենց հոգատար խնամակալներն ու ծառաները, որոնք անոնց տեղ վաճառականութիւն կ՚ընեն։ Իրենց մեծագոյն մասն արուեստաւոր է։ — Ասանկ է հունգարաբնակ քաղաքներուն մէջ ալ։ Բնակիչները՝ դուարով եւ ապրանքով առուտուր կ՚ընեն. եւ անոնց մէջ այլեւայլ տեսակ արուեստաւորներն, իրենց արուեստակերտները՝ տէրութեան զանազան կողմերուն վաճառանոցները կը տանին եւ զանոնք տեղէ տեղ փոխադրելով կը վաստըկին։ Տարւոյն մեծագոյն մասը տնէն դուրս կ՚անցընեն, ինչպէս աղաչաւոր բնակիչները, սակայն եւ այնպէս ուրիշ պարտաւորութիւններէն զատ, կը կատարեն նաեւ զինուորաց բնակութիւն տալու եւ սայլորդութիւն ընելու պարտականութիւնը։ Ուստի աղաչաւոր հասարակութիւններն իրենց վաճառական ըլլալը յառաջ բերելով, այս պարտականութենէն ազատ չեն կրնար ըլլուիլ. եւ ոչ ալ իրենց վիճակը լաւագունացընել, թեթեւցընել ու նախադաս ընել — քան մէկալ քաղաքներն — առանց օրինաւոր միութիւնը քակելու եւ հունգարական ազատ թագաւորական քաղաքները վշտացընելու. Թէեւ այս բեռերը հաւասարապէս կրելով՝ քանի մը բանի մէջ նեղութիւն ալ կրեն։ Վասն զի ճշդիւ այնպէս կը կրեն նաեւ հունգարական քաղաքներն, որոնք ոչ թէ միայն վաճառական ու արուեստաւոր են, ինչպէս աղաչաւորները, հապա ասկէ զատ նաեւ երկրագործ, այգեգործ, բովագործ եւ ըստ այսմ, շատ մ՚ուրիշ ծանր գործքեր կատարող մարդիկ։ Աս

ամէն բան, աւելի պատճառ կրնայ ըլլալ յիշեալ ծանրաբեռնութիւններէն ազատ ըլլալու։

“4. Թէպէտ չի կրնար ուրացուիլ, որ առեւտրին լաւ կերպով յառաջացումը՝ երկրին երջանկութեանը վրայ ազդեցութիւն ունի։ Եւ սակայն — չէ՞ թէ միայն երկու հասարակութիւնները, հապա — երեք ազգաց վաճառականնե՛րն ալ երկրին երջանկութեանը պատճառ են։ — Բայց ճշմարիտ է նաեւ ա՛ն, որ երկու հասարակութեան վաճառականները՝ շատ տեսակ նորելուկ եւ աւելի աչքը շլացընող քան թէ հարկաւոր ապրանքներ մտցընելով մեր երկրին մէջ, եւ ասով ստակը դուրս տանելով՝ քանի մը նկատմամբ, տէրութեան աւելի վնաս կ'ըլլեն, քան թէ օգուտ։ Բաց ասկէ, առանց որոշ գնահատութեան՝ վերջին աստիճանի թանկ գնով կու տան իրենց ապրանքներն. որով բարձրագոյն աստիճանի ու հասարակ կարգի քաղաքացիները տկարացընելով՝ իրենք զիրենք կը հարստացընեն։ — Եւ այսպէս՝ տէրութեան համար օգտակար կարծած առուտուրնին, ընդդէմ օրինաց ըլլալով, խնդիրքնին չի կրնար ընդունուիլ։ — Մանաւանդ, որ

“5. Տէրութեան օրէնքներն ու քաղաքային կարգադրութիւնները՝ միա՛յն հասարակաց պաշտօն կրող քաղաքային պաշտօնատէրները կ'ըլլեն ազատ հասարակաց ծանրաբեռնութիւններէն։ Ընդ հակառակն հասարակ քաղաքացւոց կարգը՝ ծանրաբեռնութիւններու տակ կը ձգեն։ Ասոնցմէ ոչ ոք կրնայ ինք զինք ազատ ընել, ո՛չ վաճա-

ռական եւ ոչ ալ ուրիշ վիճակ ու աստիճան ունեցող քաղաքացի։ — Ասկից աւելի իրաւունք չեն կրնար ունենալ աղաչաւոր հասարակութիւններն. որոնք եթէ առանձինն առանձինն զինուորաց բնակութեան տեղ տալ եւ սայլորդութիւն ընել չեն ուզեր, դիւրաւ կրնան բնակելի զինուորաց համար զինուորանոց մը, եւ անձնական նախամոլքին տեղ՝ փրկանաւորութիւն կանգնել. որով առուտուր ընելուն մէջ եղած արգելքներուն առջեւը կ՚առնուն։ Թէպէտ մէկալ կողմանէ՝ զինուոր պահելուն մէջ ամենեւին չենք տեսներ առուտուրը յառաջացընելու արգելք մը։

“6. Աղաչաւոր հասարակութեանց քաղաքները վազուն ջրի քով են. առողջ ու գեղեցիկ տեղ կանգնուած։ Ամէն տեսակ պարէնի վերաբերեալ բաներով լեցուն են իրենց վաճառանոցները։ Հոն շատ յարմար տեղեր կան, թէ զինուորանոց շինելու, թէ զինուորները մասնաւորաց տներու մէջ տեղաւորելու. որովհետեւ երկու քաղքին մէջ ալ մեծկակ սենեակներով տեղեր կը գտնուին, որոնց մէջ՝ եթէ զինուորանոց շինելու համար ծախք ընելու կը մեղքընան, նոյն ինքն տան տէրերն, առանց մեծ դժուարութեան ու նեղութեան դիւրաւ կրնան զինուորաց տեղ տալ, երբ պարագաներն այնպէս պահանջեն։ — Բաց ասկէ,

“7. Տէրութեան օրէնքներուն եւ անոնց վրայ հիմնուած կանոնադրութիւններուն վախճանն ան է, որ տուրք տուող ժողովուրդ կամ հասարակութիւն մը՝ մէկալին բեռը չկրէ. կամ

ըսենք՝ մէկը, մէկալին վրայ չծանրանայ։ Եւ սակայն կը ծանրանային դրացի տեղերուն եւ քաղաքներուն վրայ, եթէ որ աղաչաւոր հասարակութիւնները նախամոլք տալէն ազատ ըլլային. նոյնպէս ուրիշ քաղաքներն՝ եթէ որ վնուորաց բնակութիւն տալէն քաշուէին, ինչպէս իրենց հաւասար աղաչաւոր հասարակութիւններն ընել կ՚ուզեն։ Մէկ խօսքով, եթէ աղաչաւոր հասարակութեանց աղաչանքին տեղ տրուի, այն ատեն անոնց վիճակն ու դիրքը մէկալ քաղաքներուն բնակչացը, վիճակէն ու դիրքէն — օրինաց մտաց հակառակ — լաւագոյն, նախապատիւ ու տարբեր պիտի ըլլար. վերը յառաջ բերուած տէրութեան օրինաց յայտնի մտաց ու հաւասարութեան իրաւունքին հակառակ։ — Անոր համար.

“8. Օրինաց եւ մեծապատիւ Վիճակաց բերած որոշմանը հակառակ — եւ ըստ հետեւորդի յանդիմանութեան արժանի — են աղաչաւոր հասարակութեանց թախանձող թղթին մէջ բացատրուած այն խնդրմունքներն՝ որոնց համեմատ, յիշեալ ծանրաբեռնութիւններէն ազատ ըլլալ կարենալու համար, վեհափառ Իշխանապետին դիմած են։ Ուսկից — ինչպէս կ՚ըսեն — թէպէտ հրամաններ ալ (rescriptum) գացած են արքունական կառավարութեան, որպէս զի ասոր նկատմամբ ծրագիրներ (planum) յօրինուին. այսու ամենայնիւ կատարելապէս համոզուած ենք, թէ մինչեւ որ այս բաները մեծապատիւ Վիճակաց ու Կարգաց հաղորդուին, ամենապատիւ

վերատեսչութեան խորհուրդը՝ իր իմաստու-
թեամբը նկատում պիտի ընէ տէրութեան օրէնք-
ներուն, եւ յանուանէ Եռեակ օրինաց՝ Երկրորդ
մասին, ԺԱ. յօդուածին. որուն համեմատ, ուրիշ-
ներուն վիշտ պատճառող արտօնութիւնները չեն
կրնար կանգուն մնալ: Նկատում պիտի ընէ մա-
նաւանդ ընդունուած սահմանադրութեան Եր-
կրորդ մասին. Ը. գլխուն, Ը. որդ յօդուածին,
որ կը համարի, թէ աս ճամբով առանձնա-
շնորհութիւններ ընդունողը՝ ունեցածն ալ՝
կը կորսնցընէ եւ անզօր կ՚ընէ: — Ուստի կը
համարինք, թէ զանոնք նկատելով, ամենապա-
տիւ խորհուրդը՝ օրինաց հակառակ չի գործեր.
այլ ընդ հակառակն թախանձողները՝ մեծապա-
տիւ Կարգերուն եւ Վիճակներուն որոշումն — որ
վերոյիշեալ արձանագրութեան 612 էջին մէջ
է, եւ որուն ընթերցումը խոնարհաբար կը խըն-
դրենք — գործադրել պիտի հրամայէ. — Բաց
ասկէ զվեհափառ Իշխանապետը (եթէ հարկ ըլ-
լայ) խոնարհաբար կը տեղեկացընէ, որ — Վի-
ճակներուն եւ Կարգերուն այս նիւթին նկատ-
մամբ, տէրութեան սահմանադրութեան ու օր-
էնքներուն որոշածին համեմատ — աղաչաւ-
որաց խնդիրքը չի կրնար ընդունիլ:

“Ուստի՝ յառաջ բերուած պատճառներուն
համար, աղաչաւոր հասարակութեանց՝ տէրու-
թեան օրէնքներուն հետ չմիաբանող աղաչանքին
դէմ բողոքելով եւ իրենց թախանձանաց կեր-
պին մէջ բացատրուած շարժումներուն — որոնց
համեմատ՝ ուրիշ թագաւորական ազատ եւ ար-

տօնացեալ քաղաքներուն վիշտ ու ցաւ եւ ծանրաբեռնութիւն ըլլալով՝ զինուոր պահելու եւ նախամոլք տալու պարտաւորութենէն ազատ ըլլալու համար, վեհափառ Իշխանապետէն առանձնաշնորհութեան պատճէն փաստըկելու կը ճգնին. — միանգամայն վերն սկսած ճամբով փաստըկելէ արտօնութեան դէմ ալ — զոր ընդունելու յոյս չունենան — առաջիկայովս ընդդէմ բողոքելն եւ ընդդիմանալը մեզէ վերապահելով՝ խոնարհութեամբ կը խնդրենք, որ մեծապատիւ Կարգերն ու Վիճակներն, բարեհաճին աղաչաւոր հասարակութիւններուն՝ քաղաքային եւ հասարակաց օրինաց հաւասարութիւնը քակելու համար նորոգած այս պահանջմունքն անպատշաճ եւ ապօրինաւոր յայտարարել. եւ իրենց երեսփոխաններուն՝ տէրութեան աւագաժողովին մէջ տեղ չտալ, մինչեւ որ յիշուած ԿԱ. օրդ յօդուածին հրամայածին եւ անոր մէջ յիշուած տէրութեան օրինացը համեմատ՝ արտօնութեանց պատճէնը վեհափառ Թագաւորէն չընդունին եւ հրատարակութեան համար ալ զանիկայ բարձագոյն Վիճակաց եւ Կարգաց առջեւը չդնեն: — Եւ մինչեւ որ աս ըլլայ, այնպիսի արդար որոշում մ'ընեն, որ աղաչաւորները թէ զինուորաց տեղ տալու եւ թէ նախամոլք տանելու ծանրաբեռնութիւնն, ուրիշ քաղաքներուն պէս, առանց բացառութեան եւ անյապաղ կատարեն ու գործադրեն: Եւ ասկից ետքը նմանօրինակ ապօրինաւոր ու տարօրինակ աղաչանքներով ոչ վեհափառ Իշխանապետն եւ ոչ

մեծապատիւ կարգերն ու վիճակներն — ընդ ծանրութեամբ վրանին դրուելի պատժոյն — որուն՝ մինչեւ հիմակ ալ արժանի եղան — անօգուտ տեղ անհանգիստ ընելու չհամարձակին։

"Մեծապատիւ կարգաց ու վիճակաց
խոնարհ ծառայք
ազատ թագաւորական արտօնացեալ քաղաքներուն երեսփոխաններն առ հասարակ։"

Եղիսաբեթուպոլսեցիք լուռ չկեցան ու անպատասխանի չմնացին իրենց դէմ եղած ամբաստանութիւններուն։ Ասոնց արդէն շատոնց պատասխան տուած էին, ըսելով թէ իրենց վրայ դրուած քսութիւններն անհիմն բաներ են։ — Թէ իրենք՝ ամէն օրէնք պահեցին ու կը պահեն. — թէ իրենք զիրենք ամէն տեսակ տուրք տակ ենթարկեցին ու կ՚ենթարկեն։ —

Բայց իրբ մէկ կողմանէ կը շեշտէին իրենց զանազան գրութեանցը մէջ, թէ ո՛րչափ օգնութիւն մատուցած են, ա՛յն ժամանակ, որ տէրութիւնը նեղ մտնելով՝ իրենց բարոյական ու նիւթական օգնութեանը պէտք ունեցած է. կը խնդրէին ու կը պահանջէին մէկալ կողմանէ եւ իրաւամբ՝ ազատութիւն ա՛յն բաներէն, զորոնք ատեն ատեն ստացած են Աւստրիոյ կայսրներէն։

Ասանկ գրութիւն մը կը դնէ առջեւնիս ի մէջ այլոց, պաշտօնական յիշատակարան մը, զոր Եղիսաբեթուպոլսեցիք Տրանսիլուանիոյ վերին կառավարութեան գրեցին 1765ին։ — Ասկից պայծառ կը տեսնենք, չէ՛ թէ միայն զան,

որ թէ տէրութեան աւագաժողովն ու թէ Հունգարացւոց ազգն ինչ կարծիք ու գաղափար ունէր ազգայնոց վրայ, հապա նաեւ զա՛ն, թէ ինչպէս Հայք ջրել ու անհիմն ցուցընել կ՚ուզեն, իրենց վրայ քսուած ամբաստանութիւններն ու օրինազանցութիւնները։

Ահա յիշատակարանին թարգմանութիւնը։

«Մեծապատիւ կոմս, ամենապատիւ կառավարութիւն։

«Տէրութեան ժողովոյն ամենապատիւ նախագահը՝ մեր հասարակութեանց տրուած առանձնաշնորհութիւններուն վրայօք տեղեկութիւններ տալով, մեծապատիւ կարգաց մէջէն քանի մը հոգի ու ետքէն գրեթէ ամէնքը միաբան անոնց դէմ բողոքեցին (contradico)։ Բողոքեցին, ի մէջ այլոց՝ անոր համար, որ արքունական ամենապատիւ դիւանատունը, իրին մեծագոյն նկարագիր տալու համար, արտօնութեանց թղթին մէջ Հայ, նշանակալից բառը գործածած էր. եւ թէ Պաշպալովի երկիրները մեզի տրուեցան՝ իբրեւ ոչ-այդրէնածիններու։ Ան ալ ըսուեցաւ, որ զինուորական բնակութիւն տալէն մենք զմեզ դուրս հանեցինք. — Թէ մեզի թող տրուեցաւ, որ երկու մաքսատուն կամուրջ շինենք. եւայլն։ — Եւ սակայն ծանօթ բան է, որ ատոնցմէ յառաջ՝ արդէն 1733ին եւ 1746ին մեզի տրուած առանձնաշնորհութիւններն ընդդիմութիւն չգտան. թէպէտ եւ այն միջոցին ալ գթածաբար մեզի շնորհուած արտօնութեան կոնդակներուն մէջ այս բաներն արձանագրուած

էին (inscribo)։ Այն առեն Պաշպալովին մէկ կէսը յանձնուեցաւ մեզի, այնպիսի ընդարձակութեամբ (extension), որ ա՛ն երկիրներն, որոնք որ արքունիքին մնացած կէս մասէն պիտի ընդունէինք, զանոնք ալ յիշեալ առանձնաշնորհութեան զօրութեամբ կարենանք վայելել։ Այն Կարոլոսեան առանձնաշնորհութեան մէջ, անոր վրայօք ալ ապահովցուեցանք, որ արքունեաց ձեռքը մնացած երկիրն ալ իր Մեծափառութիւնը մեր հասարակութեան կը շնորհէ։ Եթէ մեծապատիւ Կարգերն, այս բաներն այն միջոցին յարուցած ըլլային, նուազագոյն վնասով կրնայինք հրաժարիլ այս գթածաբար մեզի շնորհուած երախտիքէն։ Բայց հրատարակուած առանձնաշնորհութեանց ձեռօք ընդունած ապահովութեամբ՝ գրեթէ ամէն տան տէր, մեծ ծախքեր ընելով, շէնքեր շինել տուած է։ Իր Վեհափառութեան մեզի յանձնած արքունական երկիրներուն վրայ փոխ ստակ առած ենք. եւ ասոնց դէմ ալ մեծապատիւ Կարգերը չբողոքեցին, անոնց չընդդիմացան։ Մեր ամէն ըրածն, առանձնաշնորհութեանց զօրութեամբն, ի բարի հաւատս ըրինք։ —

“Ի նպաստ տէրութեան յառաջադիմութեանը՝ վաճառականութիւնը յառաջացուցինք։ Երկրին՝ անօգուտ ծառաներ չեղանք. ու այսօր ալ չենք։ Երբ պէտք եղաւ որ երկիրը զինուոր տայ, մեր աղքատ հասարակութիւնը 28 նորընտրեալներ (tiro) տուաւ։ Մեր հարկաւոր պարէնն ու ըմպելիքն իրական դրամով կը գնենք։ Շատ

տեղեր շարունակ տուրք կը վճարենք: փոխարինութիւն միշտ կը հատուցանենք: Դուար եւ ուրիշ անասուններ, մեղրամոմ, գառնի մորթ, եւ ուրիշ այլեւայլ տեսակ Դրանսիլուանիայի ապրանք ու նիւթ, ըստ մեծի մասին օտար երկիրներ կը տանինք կը սփռենք: Եթէ Դրանսիլուանիայի եւ Հունգարիայի երեսնեակները միայն, զոր այս երկրին մէջ կը թողունք — ի նկատի առնենք — մեծ գումարի կը բարձրանայ:

“Մենք՝ այս երկրին օրինացը դէմ, երբեք լսած ու պահանջած չենք թէ, իբրեւ ընդունուած ազգ համարուինք ու ճանչցուինք: Այնպիսի ազատութիւն ու առանձնաշնորհութիւններ ուզած չենք, որուն համեմատ՝ հասարակաց ծանրաբեռնութիւններէն ազատ ըլլանք. — եւ կամ որ ուրիշ ազգայնութիւններուն կոնակէն ապրող պարապ մարդիկ ըլլանք: Եթէ որ զինուորաց բնակութիւն տալէն, իբրեւ վաճառական մարդիկ (որոնք՝ մեր տներն ու աւելի թանկագին բաները, սովոր ենք մեզմէ հեռու թողուլ), գթածաբար ազատ (immunis) հրատարակուեցանք, ասոր օրինակներ պակաս չեն: Շատ երկիրներ քալեցինք, բայց տեղ մը չգտանք, ուր վաճառականք զինուորաց բնակութեան տեղ պէտք է որ տան: Իշխանապետին գթութենէն կախում ունի, որ այս բաներուս մէջ ալ ազատութիւն տայ, կամ չտայ. որովհետեւ իշխանութիւն ունի, մեր ընկերութեան գթածաբար արտօնութիւն շնորհելու: — Ասկէ առանց վերջին աստիճանի մեծ վնասու եւ մանաւանդ մե-

*ծապատիւ կառավարութեան հաւանութեանը չենք կրնար հրաժարիլ։ Ուստի խոնարհաբար կը խնդրենք. մեծապատիւ արքունական կառավարութենէն, որ սանկ մեծ վտանգի մէջ, զմեզ իր գթած պաշտպանութեանը տակ առնելու բարեհաճի։*

*"Խոնարհաբար սպասելով մեծապատիւ կառավարութեան գթութեան՝ կը մնանք, խոնարհ ծառայք,*

Աւքսէնտիոս Վիզոլեան. յ. ձ.

Յովհաննէս Յովհանեան. յ. ձ."

*Ազատ թագաւորական քաղաքաց երեսփոխաններուն, շատ տեղ յիշած աղերսագիրը — զոր գրած են ազգայինք՝ կայսեր, զինուորաց բնակութեան տեղ չտալու եւ Նախամոլքի ծառայութենէն ազատելու նկատմամբ՝ — չունինք։ Բայց անոր պատասխանը կեցած է։ Ասիկայ՝ չէ թէ ազգայնոց, այլ Դրանսիլուանիոյ վերին կառավարութեան վերատեսչութեան խորհրդին գացած է. այն իմաստով՝ որ վերը յիշուած է։ Իսկ երկու քաղաքներուն՝ արքունական դիւանատնէն յաջորդ պատասխանն եկած է։*

*"Նկատմամբ խնդրած աղերսանքին, որ ազատութիւն գտնէք, զինուորաց տեղ տալու եւ Նախամոլքի ծառայութենէն, հրաման գացած է Դրանսիլուանիոյ թագաւորական վերին կառավարութեան, որ ասոր վրայօք կայսեր առաջարկութիւն մ'ընէ. — ու խնդիրը՝ մինչեւ ցբարձրագոյն որոշումն, առկախեալ վիճակի մէջ մնայ։*

“Տրանսիլուանիոյ արքունական խորհրդին դիւանատունէն։ Վիեննա 1792 յուլիս 22.

Լատիզլաւոս Զէտէօ, յ. ձ.
արքունի քարտուղար։„

Շատ հաւանական է, որ Վիեննայի արքունիքն — ինչպէս վերն ալ ըսուեցաւ — կ'ուզէր Հայերը գոհացընել եւ զիրենք այս գրեթէ անտնօրինելի պարտաւորութենէն ազատ ընել։ Սակայն ասանկ պարագաներու մէջ անկարելի էր։ — Ինչպէս տեսանք, բոլոր շրջակայ ազգերն ու նոյն իսկ Տրանսիլուանիոյ վերին կառավարութիւնն եւ տէրութեան աւագաժողովն այս բանիս մէջ տարօրինակ բան մը կը տեսնէր. եւ եզականութիւն մը։ Ուստի եւ չէր ուզեր ու չէր կրնար խելք հասցընել անոր, որ միայն Հայք ազատ ըլլան անանկ ընդհանուր ու հասարակաց ծանրաբեռնութենէն — զոր ամէնքը հաւասարապէս կը կրեն — պարզապէս անոր համար, վասն զի վաճառական մարդիկ են ու տեղէ տեղ եւ քաղաքէ քաղաք պտըտելու կը հարկադրին։

Եւ սակայն խնդիրն իրօք անկախ վիճակի մէջ մնաց՝ գրեթէ քսան տարի։ — Բայց փոխուեցաւ 1810ին, երբ տէրութեան աւագաժողովյն հասարակաց գործառնութեանց մասնաժողովը՝ երկու քաղաքաց զինուոր պահելու եւ նախամոլք տալու խնդիրը՝ նորէն քննութեան տակ առաւ։ Ասոր մէջ՝ յուլիս 26ին, յառաջ բերուեցաւ ու կարդացուեցաւ ի մէջ

*այլոց՝ Դրանսիլուանիոյ ազատ թագաւորական քաղաքաց երեսփոխաններուն — մեզի ազգէն ծանօթ — գրութիւնը։ Մասնաժողովն պաննպաստ կարծիք մը տուաւ Հայոց դէմ։ “Դրանսիլուանիոյ մեծ իշխանութեանը մէջ, ըսաւ, չորս արտօնացեալ քաղաք կայ. Գլուժ, Վաշարհէլյ, Կերլայ ու Եղիսաբեթուպոլիս։ — Ժողովին կարծիքն ան է, որ երկու առաջիններին՝ հին ատենէ ի վեր գործած վարչութեան կերպն ասկից ետքն ալ մնայ։ Իսկ երկու, վերջի ատեններն, այդրէնածնութիւն ընդունած առեւտրական քաղաքներուն՝ հասարակաց ծանրաբեռնութենէն ազատ ըլլալը, վաղեմի աւագաժողովներուն արձանագրութեանցը համեմատ, Կարգաց եւ Վիճակաց ընելի որոշումէն կախում ունի։*

*“Այս բանիս նկատմամբ, գաւառաց եւ ի մասնաւորի Ներքին Սոլնոք եւ Գիշ Գիւգիւլլէօ գաւառներուն երեսփոխաններն այն կարծիքն ունին, թէ որովհետեւ երկու քաղաքներն* 1791*ին աւագաժողովին ԿԱ. յօդուածին հրամայածին հակառակ, իրենց համար պարտաւորիչ եղած առանձնաշնորհութիւնը մինչեւ հիմակ ծանուցանել եւ հրատարակել չեն ուզած — ուստի եւ այն յօդուածին նպաստն իրենք փճացուցած, կործանած են — անոր համար այս քաղաքներուն ապահարկութիւնը* (immunitas) *չեն կրնար ճանչնալ եւ ընդունիլ։ Մանաւանդ թէ, այն ազատութեան դէմ ալ, զոր մինչեւ հիմակ վայելեցին՝ կը բողոքեն։ Եւ կարեւոր կը համարին, որ այն գաւառներուն մէջ*

բնակող եւ անոր պարտականութիւնները վրանին առնուլ չուզող քաղաքացիները, նորէն գաւառական վարչութեան տակ դրուին եւ անոնց մէջ ամփոփուին: Եղիսաբեթուպոլիս՝ Գիւգիւլլէօ գաւառին հետ միանայ. իսկ Կերլայ՝ Տոպոգայ գաւառին նախադուռը (praetorium) համարուի:„

Ասոր վրայ տարի մը ետքը (1811 սեպտ. 14) տէրութեան աւագաժողովոյն մէջ նորէն խօսք ըլլալով Կերլայ ու Եղիսաբեթուպոլիս քաղաքներուն՝ զինուորաց տեղ տալու եւ նախամոլք կրելու առկախեալ մնացած խնդրոյն վրայ՝ ժողովն ազգայնոց դէմ շատ աննպաստ վճիռ մը բերաւ: Սահմանեց որ թէ մէկ ու թէ մէկալ քաղաքն իր պարտաւորութիւնը կատարէ: — Զինուորաց տեղ տալու նկատմամբ սահմանեց, որ վեց տարուան միջոցի մէջ զինուորանոց կանգնեն իրենց քաղաքներուն մէջ. որպէս զի անոնց մէջ՝ այնչափ զինուոր պահեն, որչափ համեմատութիւնը կը բերէ: Եւ սակայն այս ժամանակամիջոցին մէջ ալ, պէտք են զինուոր պահել. եւ կամ իւրաքանչիւր քաղաք տէրութեան 15.000 ռենական ֆիորին վճարէ տարուէ տարի, զինուորաց պահպանութեանը համար: — Իսկ նկատմամբ փոխանորդութեան՝ որոշեց, որ թէ Կերլայի ու թէ Եղիսաբեթուպոլսոյ բնակիչներն անյապաղ զանիկայ ի գործ դնեն:

Ահաւասիկ ժողովոյն հինգերորդ յօդուածին արձանագրութիւնը:

“Որովհետեւ Կարգերն որոշեցին, որ յիշեալ երկու քաղաքները, զինուոր պահելու հա-

*մար զինուորանոց չինեն. ու նախամոլք տալու տեղ փոխարինութիւն* (cambiatura) *ընեն. — խնդիր ելաւ, թէ՝ Արդեօք — մինչեւ որ զինուորանոցները կանգնուին — այնտեղի քաղաքները պարտաւորուա՞ծ են, զինուորներն իրենց տներն ընդունելու. եւ մինչեւ որ փոխարինութիւնն ընեն, պարտակա՞ն են, իրենց յատուկ ձիերը նախամոլքի տալու. — Յաջորդ վճիռը բերուեցաւ:*

*"Ասոր նկատմամբ եղած խորհրդածութիւններէն ու կարծիքներէն ետքը, Կարգերն այնպէս կը համարին, որ եթէ երկու քաղաքները, զինուորանոց չինելն՝ որոշ ժամանակի մը չեն կապեր — մինչեւ այն ատեն զինուոր պահելէն ազատ ըլլալով — Կարգերուն՝ ասոնց նկատմամբ ըրած որոշումն ապարդիւն եւ առանց հետեւութեան պիտի ըլլայ: Անոր համար կ'որոշուի՝ որ թէ Հայաքաղքի ու թէ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւններն, իրենք զիրենք պարտաւորեն, իրենց քաղաքներուն մէջ՝ զինուորանոցները՝ վեց տարուան միջոցին մէջ շինել, լմնցընելու: Անանկ որ վեց տարին անցնելէն ետեւ, ըստ չափու համեմատութեան, այն քաղաքներու մէջ դրուելի զինուորները, կարենան հոն տեղաւորուիլ: Իսկ եթէ այս ժամանակամիջոցին մէջ զինուորանոցները չկանգնուին, վեց տարին անցնելէն ետեւ, պարտական ըլլան քաղաքացիները՝ հոն տեղաւորելի զինուորներն իրենց տներն ընդունելու: — Այս վեց տարուան միջոցին մէջ ալ, յիշեալ ծանրաբեռնութենէն*

ազատ ըլլալ չկարենալով, երկու քաղաքները մէկտեղ, տարուէ տարի 30.000 ռենական ֆիորին վճարեն. եւ այս գումարը զինուորաց պիտոյքը լեցընելու պիտի գործածուի։[1]

"Իսկ Նախամոլք տալու նկատմամբ, տէրութեան ժողովոյն առաջիկայ տարուան Մայիս 27ին տուած որոշմանը համեմատ, երկու քաղաքաց հասարակութիւնը՝ փոխարինութիւնն առանց որ եւ է յապաղման կարգադրելու պարտական է։

"Դրանսիլուանիոյ մեծ իշխանութեան եւ իրեն հետ միացած երկիրներուն եռագնեայ Վիճակաց ընդհանուր ժողովոյն արձանագրութենէն։ — Գլուժ. 1811 սեպտ. 18.

կը հրատարակէ
Միքայէլ Սալա, յ. ծ.
քարտուղարի տեղապահ։„

Երբ Եղիսաբեթուպոլսեցիք, խնդրին տակէն ելլելու համար, ամէն քար կը շարժէին ու ամէն միջոց կը բանեցընէին, որպէս զի բանն երկընցընեն եւ ազգին նուազ վնաս ընեն. անդիէն Կերլացիք, առանց դիմեցին, որ տան իրենց կարծիքն այս խնդրոյն նկատմամբ. որովհետեւ իրենք ալ —ինչպէս պատմութեան ընթացքէն տեսանք—

———

1 Ընլուր եւ մարդուս անհաւատալի կու գայ այս թէութիւնը։ Եւ սակայն բառ առ բառ առոնք են արձանագրութեան խօսքերը։ Azon hat esztendök alatt is pedig ezen terehtöl mentek nem lehetvén, a két vàrosok együtt esztendönként 30·000 az az harmincz ezer Rforintokat vàlto czedulàban értve fizessenek . . . եւայլն։

մի եւ նոյն վիճակի մէջ էին. եւ արքունիքէն նոյն հրամանագիրն ընդունած էին։

Ուստի ընդհանուր ժողով գումարելով, այս նիւթիս նկատմամբ ըրած որոշմունքնին հաղորդեցին Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութեան՝ 1822 Օգոստ. 9ին։

Ահա իրենց ժողովոյն արձանագրութեան բովանդակութիւնը։

"Մեծարգոյ քաղաքային խորհուրդ.

"Ձմեռուայ բնակութիւն տալու եւ նախնամուլ կրելու նկատմամբ ծանօթ խնդիրը՝ մեր երկու հասարակութեանցը վրայ հաւասարապէս կը ծանրանայ։ Արքունական վարչութեան՝ Յունիս 24ին տուած հրամանն ընդունելով — զոր ինչպէս կը կարծենք, Ձեր մեծարգոյ քաղաքային խորհուրդն ալ ընդունած պիտի ըլլայ — այսօրուան օրս, ընտրեալ հասարակութեան առջեւը դրինք, անոր վրայ խորհեցանք, եւ որոշեցինք որ, Ձեր հասարակութեանը հաղորդենք — որովհետեւ՝ երկու ծանրաբեռնութիւնը, հաւասար է երկու հասարակութեանց համար ալ — թէ նորին Վեհափառութեան տուած հրամանին վրայօք, ինչ կարծիքի մէջ է Ձեր մեծարգոյ քաղաքային խորհուրդն ու քաղաքաբաշխութիւնը. եւ թէ մեզի՝ ու մեր թոռներուն պահպանութեանը (existentia) համար, ինչ ճամբայ բռնելով եւ ինչ միջոցներ բանեցընելով՝ կրնանք մենք մեզի օգնել։

"Մեր ընդհանուր խորհրդին մէջ յաջորդներուն որոշեցինք.

"Ա․ Որ Վեհափառ աւստրիական Հաբս-պուրկեան տան իշխանապետաց եւ ի մասնաւորի Յովսէփ Բ․ կայսրմէն 1786ին, արքունական ազատ քաղաքաց կարգն ընդունուած ըլլալու նկատմամբ ստացած առանձնաշնորհութիւններէն ետ չկենանք։

"Բ․ Որ անգամ մըն ալ դիմենք, մեր խոնարհ խնդրուածքովն առ Վեհափառ կայսրն․ եւ կրկնենք, որ 1791ին, տէրութեան աւագաժողովոյն առթիւն, երկու ծանրաբեռնութիւնները փոխարինելու նկատմամբ ըրած յայտարարութիւննիս կը կատարենք․ միանգամ ընդ միշտ այն 2000 ոսկի գումարն իբրեւ դրամագլուխ վճարելով։

"Գ․ Որ այս գումարը՝ չէ թէ քաղաքացիներն — որոնց մեծ մասն աղքատացած է — հապա քաղաքային արկղը վճարէ։ Վերջապէս

"Դ․ Թէ որովհետեւ երկու ծանրաբեռնութեանց խնդրոյն նկատմամբ ընելու յայտարարութիւննիս, պէտք է, որ մինչեւ Աւգոստոսի վերջին օրը վեր խրկուի, անոր համար գրենք մեծապատիւ արքունական կառավարութեան, որ բարեհաճի մեզի հրաման տալու, որ այս բանին պատասխան տալը մինչեւ Նոյեմբեր ու Դեկտեմբեր ամիսներն — որ միջոցին հասարակութեան անդամներն աւելի մեծ թուով ժողոված կ'ըլլան — կարենանք ուշացընել։

"Ասոնց նկատմամբ, իբրեւ գաղափար առաջարկած որոշմունքնիս, պատշաճ համարեցանք մեծարգոյ քաղաքաբաշխութեանդ հա-

ղորդել՝ այնպիսի մտերմական աղաչանքով, որ մեծ. քաղաքային խորհուրդդ, հասարակութեան հետ խորհելով, յիշեալ երկու ծանրաբեռնութեանց խնդրոյն մէջ իր կարծիքն ու պատճառները րոպէ մը յառաջ մեզի հաղորդելու բարեհաճի: Բնական է, որ այս բանիս մէջ միացեալ զօրութեամբ գործելու ենք. ինչպէս որ մինչեւ հիմակ ըրինք:

"Այլուստ՝ ենք մտերմական սիրով մեծարգոյ քաղաքային խորհրդոյդ՝

"Կերլա Հայաքաղաք. 1822 Աւգոստ. 13ին ըրած խորհրդին մէջ. Երախտապարտ ծառաներ ու բարեկամներ

Խաչիկ Գարաչոնեան յ. ձ. գլխաւոր դատաւոր:

Ըմէրիկոս Պէնքէօ յ. ձ. առաջին քարտուղար:

Սակայն երկու քաղաքներուն քաղաքացիներն ի սկզբանէ հետէ անմիաբանութեան ու կարծեաց տարբերութեան մէջ էին: Ուստի ինչպէս շատ անգամ, անանկ ալ հիմակ, չկրցան զիրար գտնել ու մէջերնին որոշել, որ մէկ ընթացք բռնեն ու մէկ ճամբու վրայէն քալելով՝ միակերպ շարժին ու գործեն: Թէպէտ արտաքուստ, տէրութեան ժողովոյն եւ կառավարութեան առջեւն այնպէս մը կը ցուցընէին որ մէկտեղ կը գործեն. բայց ծածուկ իրարու դէմ կ'ընէին: Քիչ մը ետքն իրարմէ բոլորովին բաժնուեցան: Այն առաջարկութիւնները՝ զոր Կերլացիք ըրին, Եղիսաբեթուպոլսեցիք չընդունեցան. եւ ինչ որ Եղիսաբեթուպոլսեցիք կը փա-

փաքէին, Կերլացիք չուզեցին։ Ասոր վախճանն եղաւ անջատում։

Ուստի Կերլացիք զատ, ու Եղիսաբեթուպոլսեցիք զատ շարունակեցին իրենց գործունէութիւնն այս խնդրին մէջ։ — Առաջիններն իրենց վախճանին հասան։ Բայց ո՛չ նոյնպէս Եղիսաբեթուպոլսեցիք։ Ասոնք թէպէտ խնդրին տակէն ելլելու համար, ամէն քար շարժելով՝ շարունակ աշխատեցան. բայց ի զուր։

Ինչպէս ետքէն պիտ' որ տեսնենք, խնդիրն անով լմնցաւ, որ պահանջուած զօրանոցը պարտ ու պատշաճ կերպով կանգնեցին լմնցուցին եւ ասով տէրութեան հետ հաշտուեցան։

## 16.

Երբ մէկ դիէն Պէդլէն գերդաստանն, Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան վրայ դիմելով՝ զինք պատասխանատուութեան կը կանչէր անոր համար, որ իբր թէ իւր սեպհական երկիրները կը նուաստացընէր ու կ'աւրէր. մէկալ դիէն՝ ոտք կոխեցին գեղացիներն, Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութեանը դէմ, ու կառավարութեան առջեւը զինք ամբաստանեցին, թէ զիրենք երկրակալութեան գեղերուն մէջ անա՛նկ բաժնեց, որ իրենց ապրուստին համար բաւական երկիր չունենալով՝ կը ստիպուին ուրիշ տեղեր երթալ. թէ հոն մնացածներուն ձեռքէն արօրադիր երկիրներն ու խոտի դաշտերն առաւ. թէ իրենց ձեռքն եղած անտառ-

ներուն վրայ ձեռք դրաւ. թէ ծառայութեան օրերն աւելցուց, սակերը բարձրացուց, եւ այլն եւ այլն։

Կառավարութիւնը հրաման խրկեց, որ ամբաստանողներուն գանգատները քննուին։ — Խրկուած քննիչներուն առջեւը ներկայացան քաղաքաբաշխութեան կողմանէ Ղազար Չիգիեան, Նիկողայոս Ջաքարեան, Գրիգոր Դանիէլեան եւ Յարութիւն Սէնդբըրդէրեան. եւ եղած ամբաստանութեանց դէմ զհասարակութիւնը պաշտպանելով — ինչպէս պիտ'որ տեսնենք — գեղացւոց ըսածներն անհիմն ցուցուցին։

Թէ տէրութիւնը, Պաշպալովի երկրակալութիւնն իրեն վերաբերեալ գեղերովը մէկտեղ, ի՛նչ պայմաններով պարգեւած, տուած է Հայ հասարակութեան՝ 1758ին տուչութեան կամ փոխանցութեան ատեն, գրի անցուած չէ։ Ուստի ասոր նկատմամբ չկայ առջեւնիս հաստատուն բան մը։ Այն ստոյգ է, թէ գեղացի աւատականներուն մեծագոյն մասն ուրիշ տեղ գացած է. վասն զի Մարիամ Թերեզիայի առանձնաշնորհութեան թղթին զօրութեամբը Հայոց հասարակութեան իշխանութիւն տրուելով, որ գեղացիներն երկրակալութեան ուրիշ տեղերը կարենայ փոխադրել — այս բանն իրօք գործադրեց։

Այն աւատականներն որ փոխադրութեան ատեն Պաշպալով մնացին, բնակութեան նոր տեղեր ընդունեցան, թէպէտ ուրիշ տեղ։ — Ասոր պատճառն ան էր, որ Հայ հասարակութիւնը բազմանալով եւ քաղքին աւելի

մօտիկ տեղերուն հարկաւորութիւն ունենալով՝ արտօնութեան հետեւութեամբը, ներքին կալուածները՝ քաղաքին հետ միացուց· եւ անոնց փոխարէն՝ հոն բնակող գեղացիներուն աւելի դուրս՝ Պաշպալով գեղին մէջ՝ ներքին տեղեր տուաւ՝ այն երկիրներէն, կամ թէ ըսենք, անոնց կալուածներէն՝ որոնց տէրերն ուրիշ գեղերը դրած, փոխադրած էր։

Բայց կային անանկ աւատական բնակիչներ ալ, որոնք երեք որդի ունէին։ Ասոնց տղաքը՝ մինչեւ որ չափահաս եղան, իրենց հօրը հետ ներքին երկիրներուն մէջ կը նստէին։ Երբ տեսան ասոնք՝ որ փոխադրութեան պատճառաւը դեռ պարապ ներքին տեղեր կան, երեք եղբարք երեք տեղ գացին բնակելու, նոյն ատեննուան Եղիսաբեթուպոլսոյ վերատեսչին թոյլտուութեամբը։ Բայց արտաքին երկիրները մնացին մէկ։ Հօրերնուն վախճանելէն ետեւ՝ արտաքին երկիրները բաժնուելով երեք եղբարց մէջ, արօրի կամ գործելու երկիրն — ինչպէս ինք իրմէն կ'ենթադրուի — քիչցաւ։ — Ասկէ զատ կային նաեւ անտառներէ կտրուած տեղեր (Rodeland)· գեղացիք զասոնք ալ առին գործածեցին։ Արդ՝ հայ հասարակութիւնն եղածներն իմանալով — ինչպէս կ'երեւայ — այս տեսակ արօրադիր եւ խոտի երկիրներն ետ ուզեց։

Երբ ներքին տեղեաց վրայ բնակող աւատականները քննիչներուն առջեւը, քաղաքաբաշխութենէն արտաքին երկիրներ կը պահանջէին· հայ հասարակութիւնը պատասխանեց թէ՝

Անոր համար չփոխադրեց աւատականներն ուրիշ գեղերը, որ տան տեղւոյ կամ ներքին երկրին վերաբերեալ արտաքին տեղերն ալ գործածեն եւ երեք տանուտէր՝ երեք զատ զատ երկիր ունենայ. հապա անոր համար, որ հասարակութիւնը ներքին տեղեաց (fundus) վերաբերեալ արտաքին տեղերուն հարկաւորութիւն ունէր. որ իրաւացի եւ խելքի պառկող պատճառ մըն է:

Քննիչներն աս որ լսեցին՝ իրենք իրենցմէ դատաստան ու վճիռ տալ չկարենալով, հարկաւոր տեսան խնդիրն իշխանութեան առջեւը դնել: — Ուսկից յաջորդ հրահանգներն ընդունեցան.

"Պատուական Տեարք:

"Պաշպալովի գեղացի հասարակութեան եւ հոնտեղի հայ քաղաքաբաշխութեան մէջ եղած անմիաբանութեան վրայօք մեզի հաղորդուած տեղեկութիւններէն ըստ բաւականի կը տեսնենք թէ հայ հասարակութիւնն իր արտօնագրութեան եւ 1758ին ձրի ծառայութեան օրինաց զօրութեամբն՝ այն ամբաստանողներուն, որոնք յիշուած կալուածատէրութեան մէջ գրի անցուած են, իր երկրատէրութեան մէջ ուրիշ տեղեր տուած է: Ուստի հարկ է գանգատողներուն հասկցընել, որ արտօնութեան հետեւութեամբն, որովհետեւ պարապ մնացած բնակութեան տեղերէն դուրս հանուած բնակիչներն այն կալուածատէրութեան արտաքին տեղերը փոխադրուելով՝ քաղաքաբաշխութիւնը

զիրենք գոհ ըրած է իր ժամանակին. ա՛լ ամբաստանեալ Հայերն երկրորդ անգամ երկիր տալու պարտական չեն. ու չենք ա՛լ կրնար զիրենք առ այս ստիպել: Ասիկա իրեն չէ՛ թէ դիւրութիւն, այլ ճշմարտապէս մեծ վնաս կը պատճառէ: Անոր համար ամբաստանողք — ինչպէս հայ հասարակութիւնն իր պատասխանին մէջ յայտնապէս կ'ըսէ — կամ այն առանց հրամանի ստացած տեղերուն համար շաբթէ շաբաթ օր մը ծառայութիւն ընեն, եւ ըրած ամբաստանութիւննին ետ առնուն, եւ կամ, եթէ այս ընել չեն ուզեր՝ ապատաբար անկից ելլեն հեռանան:

“Բաց աստի՝ ամբաստանեալ հասարակութիւնն ետ կը պահանջէ անանկ երկիրներ, զորոնք գեղացիները՝ հետզհետէ անտառները կտրելով շինած ստացած են: Ասոր մէջ անիրաւութիւն մը չենք տեսներ. վասն զի չնկատելով, թէ Հայերը՝ զամբաստանողները ձրի ծառայութեան արտաքին երկիրներուն (apertinentia) նկատմամբ գոհ ըրած են, աւատականներուն ձեռքը մնացած է դեռ անտառներէ կտրուած շատ մը երկիր: Աս երկիրներուն գնահատութիւնն ըստ օրինի ըլլալէն ետեւ՝ կամ ամբաստանեալներուն տրուին եւ կամ անանկ ամբաստանողներուն՝ որոնք ամենեւին արտաքին երկիր չունին:„

Աս կարգադրութեան հետեւութեամբ, քննիչները Պաշպալով անցան, եւ հոն ամբաստանողներն, ինչպէս նաեւ ամբաստանեալ հայ

հասարակութիւնը, առջեւնին կանչելով՝ եղած հրամանն անոնց կարդացին ու մեկնեցին։

Գործակատարք՝ 1758ին, ձրի ծառայութեան օրինացը համեմատ, բնակիչներէն առնուած երկիրներուն՝ նորէն կալուածատիրոջ ետ տրուելուն գործադրութիւնն սկսելէն յառաջ՝ փնտռեցին ու գտան այն բնակիչներուն ցանկն, որոնք անկէ դուրս ելած չըլլալով՝ ունեցած երկիրնին պահած էին։

Ասոր համեմատ "Պաշպալովի աւատականներուն ցանկը„ վերնագրով — արձանագրութեան մէջ անցուած էին հին աւատականներուն թէ անունները, թէ իրենց երկիրներուն տարածութիւնն եւ թէ միանգամայն ա՛ն՝ որ քանի՛ քոռ ցորեն, քանի՛ կառք խոտ կը բերեն ասոնք տարուէ տարի։ Բաց ասկէ՝ թէ աւատականը քանի՛ օր պարտաւորեալ է իւր տիրոջն, այսինքն քաղքին ծառայութիւն ընելու։ — Դարձեալ՝ կը համեմատուի, այս անուանց ցանկին մէջ՝ երկիրներուն տարբերութիւնը, զոր ունէին գեղացիք հին ժամանակ եւ ազգայնոց դէմ ամբաստանութիւն ըրած միջոցին (1790)։ Որմէ յայտնապէս տեսնուեցաւ, թէ հիմակ աւելի երկիր ունէին ձեռուընին, քան յառաջագոյն։

Կային անանկ աւատականներ ալ, որոնք ցանկին մէջ անցուած չէին. եւ սակայն արօրադիր երկիրներ ու խոտի դաշտեր ունէին։ Ասոնք՝ իրենց ունեցած երկրին մեծութեանը համեմատ, երկրատիրոջ՝ կանոնաւորեալ եւ կամ անկանոն ծառայութիւն կը մատուցանէին։ — Ինչպէս

վերիններէն ոմանք, անանկ ալ առնցմէ մէկ քանին ծառայութիւն ընելու տեղ՝ սակ կամ տուրք կը վճարէր։ — Կային անանկներ ալ, որոնք թէ՛ սակ կը վճարէին ու թէ՛ ծառայութիւն կ՚ընէին։

Քաղաքապաշտութեան երեսփոխանները՝ քննիչներուն հասկըցուցին, որ երկրատէրութեան վերաբերեալ ամէն արքունական ազատ երկիրները — ու զանոնք ալ որոնք դուրս գաղթած աւատականներէն մնացած են — իր քաղաքացւոցը մէջ բաժնած է։ — Ու թէ որ գեղացիներէն երկիրներ ալ առած են, զանոնք ետ չեն կրնար տալ. ինչու որ արձանագրութեան համեմատ՝ աւատականները շատ աւելի արօրադիր երկիր ունին այսօր՝ քան որչափ պէտք էին ունենալ ձրի ծառայութեան համեմատ։ Մանաւանդ ընդ հակառակն կը պահանջեն, որ, ինչ երկիր որ պատշաճէն աւելի ունին, իրենցմէ առնուի։ Աս երկիրներուն գինն, եթէ անտառներէն կտրուած առնուած են, ըստ գնահատութեան, ինչպէս որ իշխանութիւնն որոշէ, վճարելու պատրաստ են։ Նմանապէս Լունգա կոչուած դաշտին վրայ եղած տեղերն ալ չեն կրնար թողուլ. որովհետեւ զասոնք՝ քաղքին բնակիչներուն չէ՛ թէ բաշխած՝ այլ ծախած են։ Ամէն մէկ տան տէր, ձողաչափ տեղւոյ մը համար՝ ոսկի մը վճարած է։ Բաց ասկէ, լաւացուցումներ ալ ըրած են անոնց մէջ. որովհետեւ հոնտեղ գտնուող ուռենւոյ թուփերը կտրած, երկիրը պարարտացուցած ու թումբերով եւ փոսերով ջուրը մէջէն հանած

են։ Բայց եթէ այս ամէնը չունենայ արժէք մը, Հայ Հասարակութիւնն՝ իբրեւ կալուածատէր՝ իշխանութիւն ունի այս կամ այն տեղն իրեն յատուկ գործածութեանը համար պահելու․ եւ աւատականներուն ուրիշ անոնց նման երկիր տալու։ Ուստի՝ սիրով կու տայ Հայ Հասարակութիւնն ամէն մէկ աւատական գերդաստանի՝ ձրի ծառայութեան փոխարէն՝ խոտի պատշաճ տեղ, ուր ամէն տարի կրնայ խոտ կտրել — մէյ մը Տուբը Հուլը Հէլ Միք կոչուած տեղը, դէպ ի Հունտորֆի ձորավայրը․ մէյ մ'ալ դէպ ի վարի կողմերը՝ Լա Տումպրովա եղած տեղը։ Եւ զասոնք անմիջապէս ձեռուընին կը յանձնէ։

Սակայն աւատականներն այս առաջարկութիւնը չընդունեցան․ եւ ըսին քննիչներուն թէ "Ամենեւին ուրիշ երկիր չեն ուզեր․ հապա միայն զանոնք, ա՛յն տեղ ու ա՛յն արահետներուն մէջ՝ զորոնք առկէ յառաջ ունէին։ Թէպէտ Հայ Հասարակութիւնն, ըսին, իր յատուկ երկիրներուն՝ ուրիշ գեղերը գաղթած բնակիչներուն վրայ ըստ կամի տրամադրութիւն կրնայ ընել․ բայց իրենցն՝ իրենց դարձուի։ Իրենք ի վիճակի են այսօր ալ անոնց արահետներն ու սահմանները ցուցընելու։ 1758ին կատարուած ձրի ծառայութիւնն (urbarium) իրենց նկատմամբ վնասակար կը համարին․ ինչու որ անոր մէջ իրենց ցանելու երկիրներն այնչափ չեն, որչափ անկէ յառաջ ունէին։ Ասկից զատ՝ վերի կողմերն ունին աւելի արօրի եւ խոտի դաշտեր․ կը պահանջեն, որ անոնք՝ ձրի ծառայութեան

մէջ անցած չըլլալով՝ իրենց միան։ Վերջապէս՝ տէրութիւնը զիրենք ունեցած երկիրներուն մէջ անհանգիստ չընէ. վասն զի բազմացած են ու առանց ասոնց չեն կրնար ապրիլ։„

Աւատականք՝ Լունգայի մէջ եղած տեղերն ալ ետ պահանջեցին. յաջորդ պատճառները բերելով. 1. Լունգայէն զատ՝ չկայ տեղ մը, որ երկու անգամ կարենայ հնձուիլ. 2. Ամէն մարդ գիտէ, թէ ջրերուն քովն եղած դաշտերն, ամէն տեղ աւելի լաւերն են սովորաբար։ 3. Հայերն, ուրիշ ասոնց նման երկիր չեն կրնար տալ. որովհետեւ այն տեղէն զատ՝ կալուածատէրութեան մէջ ոչ դաշտ եւ ոչ խոտի տեղ կայ ասոնց նման։ — Իսկ այն տեղը՝ զոր հայ հասարակութիւնն իրենց կ՚ուզէ տալ, թէ կալուածատէրութեան ծայրն է, ու թէ ջրերն այն տեղւոյն վրայ եկած ատեն, առանց մեծ վնասի եւ առանց մեծ ծախքի չեն կրնար պահպանել։

Քննիչները՝ թէ ամբաստանողներուն եւ թէ ամբաստանեալներուն յառաջ բերած պատճառներն աւելի լուսաւոր կերպով հասկընալու համար, հարկաւոր համարեցան, ամբողջ երկիրները մէյ մը աչքէ անցընել։

Երկու օրուան քննութենէ ետեւ, գտան որ Պաշպալովի վարի կողմերն եղած դաշտավայրը, յինքեան առեալ, բոլորովին գէշ ու ջրային է։ Իսկ ուր որ հիմակ ամբաստանողներն երկիրներ ունին, եւ անոնց կից եղածները՝ զորոնք Հայերը կ՚ուզեն տալ առածներուն տեղ՝ ամենէն գէշերն են։

Անոր համար պատշաճ համարեցան, որ երկիրներուն կէսն, այս գէշ տեղերէն, իսկ մէկալ կէսը Էոննայի ճամբուն քով եղած երկիրներէն կտրուի ու տրուի։ Եթէ ասոնք բաւական չըլլան, այն ատեն այնչափ յառաջ երթան մինչեւ որ փոխարինութիւնն ըստ արդարութեան տեղը բերուի. միտ դնելով գլխաւորաբար անոր, որ մէկ մասը ցորենի, մէկալը մորացորենի կարենայ գործածուիլ։

Գալով Պաշպալովի վերին դաշտավայրին — որ Հունտորֆի եւ Սաս Սէնդ Իվանի վարի կողմն է — ասիկա աւելի լաւ եւ մեծ է քան թէ վարինը։ Գեղացիներն այս տեղերը լաւ երկիրներ ունին։ Ասկէ զատ լերան անդիի դին Հունտորֆի կողմն՝ Տուբը տեղմէ հէյ միք կոչուած տեղը, շատ մը՝ անտառներէ կտրած արօտատեղիներ կան։ — Այս տեղերով աւատականներն ըստ բաւականի գոհ կրնան ըլլալ. մանաւանդ եթէ անտառներէ կտրած երկիրներն իրենցմէ չառնուին։ —

Ըստ այսմ յայտնի ըլլալով որ գեղացիք — չհաշուելով անտառներէ շահած արօտատեղիները — այսօր ալ շատ աւելի երկիր ունին քան 1758ին. — եթէ վարի կողմերը մէկ երկու տեղ տրուի իրենց եւ հիմակ ունեցած երկիրներուն մէջ այնպէս ապահովցուին, որ անոնք իրենցմէ չառնուին ուստի եւ ազատապէս կարենան զանոնք գործածել ու պարարտացնել. (զոր մինչեւ հիմակ ընելու չհամարձակեցան, փորձառութիւնը ցուցընելով թէ

այսօր մէկուն վաղը մէկալին երկիրը կ՚առնուէր.) այն ատեն անոնցմէ կրնան ապրիլ. եւ չեն կրնար պատճառ ունենալ այս մասին գանգատ ընելու։

Գեղացիները յառաջագոյն չէ թէ միայն Լոնգայի այլ նաեւ ուրիշ տեղեր ունէին լաւ խոտի դաշտեր, զորոնք Հասարակութիւնն, առած բաժնած ու ծախած է։ — Տարակոյս չկայ, որ քաղաքն իբրեւ երկրատէր ազատութիւն ունէր այս բանս ընելու։ Ուստի քննիչները պատշած համարեցան, որ գեղացիներուն խոտի դաշտավայր մը տրուի, այնպիսի տեղ մը, զոր ամէն տարի գոնէ անգամ մը կարենան հնձել։ Հասարակութիւնն, ինչպէս լսինք, այս բանիս հաւանեցաւ եւ առաջարկեց Տուբը Հուլը հէլ միք անուն խոտի դաշտավայրը։ Գործակատարներն այս երկիրը քննելով՝ լաւ տեղ մը համարեցան։ Ասոր մէկ ձորադաշտը մինչեւ Հունտորֆի սահմանները կ՚երկըննայ. ու անտառներով շրջապատած է։ Աս տեղն եթէ երկու կողմանէ թմբերով շրջապատուի, դիւրաւ կրնան խոտի լաւ դաշտեր վաստըկիլ։ Ասիկա վերը նշանակուած երկրին տեղ՝ փոխարինութիւն կրնայ ըլլալ։

Թէպէտ հայ հասարակութիւնը ցուցուց վարի բաժնին մէջ տեղ մը իբրեւ խոտի դաշտ, որ Տումպրավա կը կոչուի։ Բայց այս տեղն երբեք մէկու մը չէր, արօտատեղի է. արջառն արածելու ալ անյարմար է, եւս առաւել, որ մէկն անկէ խոտ կարենայ հնձել։ Ըստ այսմ

գործակատարներն այս երկիրն իբրեւ անգործածելի մաս առին։ —

Գեղացւոց ուրիշ մէկ ամբաստանութիւնն ա՛ն էր, որ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնը՝ բռնեց, գրաւեց իրենց անտառները։

Այս ամբաստանութեան դէմ կը խօսէին ձրի ծառայութեան օրէնքներն ու օտար գեղացիներուն վկայութիւնները։ — Պաշպալովի շրջակայքը հասարակաց անտառներ կան եղեր։ Բայց որովհետեւ յայտնի է թէ, երբ որ անտառը գեղինն էր, հազիւ թէ հո՛ն վառելու փայտ կրնար գտնուիլ։ Իսկ երբ հայ հասարակութիւնն, իբրեւ երկրատէր՝ իր ձեռացը տակն առաւ, անո՛նցմէ լաւ անտառներ չինեց։

Քննիչներուն կարծիքն ա՛ն էր, որ եթէ անտառները գեղացւոց հոգատարութեանն ու ազատ գործածութեանը տակ մնան, կրնայ ըլլալ որ անո՛նք քիչ ատենի մէջ բոլորովին փճանան։ Այն անտառներն, ինչպէս մինչեւ հիմակ էր՝ անանկ ալ ասկից ետքն երկրատիրոջ իշխանութեան եւ հովանաւորութեանը տակ մնալու են։ Սակայն այնպիսի կերպով, որ կալուածատէրն անո՛նցմէ ամէն ծուխի համար որոշեալ օր մը, այնչափ փայտ տայ, որչափով մէկ վառարան մը կարենայ տաքցուիլ։ Հրաման չըլլայ, որ գեղացիք առանց երկրատիրոջ առ այս կարգադրած մարդուն հրամանին ու գիտութեանն — եւ որոշեալ օրերէն զատ — այն անտառներն երթան եւ հո՛ն փայտ ջարդեն։

Հինգերորդ ամբաստանութիւն։ Հայերն եւ ոչ ստակով թոյլ կու տան, որ գեղացիներն իրենց ոչխարները Պաշպալովի սահմաններն ազատապէս արածեն։

Ինչպէս մէկալ ամբաստանութիւններն, անանկ ալ աս՝ հաղորդուեցաւ Հայ հասարակութեան երեսփոխաններուն։ Անոնք ան պատասխանը տուին. թէ ամբաստանողներուն ըսածն սուտ է։ Քաղաքաբաշխութիւնը չի թողուր, որ գեղացիք իրենց ոչխարներն այնտեղի դաշտերուն վրայ արածեն։ Բայց այս բանս չէ՛ թէ իրենց վնաս ընելու, հապա դուարներուն շատութեանը համար ըրած են։ Եթէ այն տեղերը հրաման ըլլար ոչխար արածելու, այն ատեն, իրե՛նք, երկրատէրները կ'արածէին իրենց ոչխարները։ Սակայն ասոր հետեւութիւնն ան կ'ըլլար, որ ոչխարները շատնալով՝ դուարներուն արածուելու տեղ չէր մնար։

Հայ հասարակութեան աս պատասխանին վրայ, քննիչներն արօտականներն աչքէ անցուցին ու տեսնելով անոնց չափաւորեալ տարածութիւն ու դուարներուն բազմութիւնը, պատշաճ համարեցան, որ ուրիշ քաղաքներու համեմատ, անոնց վրայ ո՛չ Հայ հասարակութիւնն եւ ո՛չ գեղացիներն ոչխար արածեն, որպէս զի թէ՛ Հայք ու թէ՛ գեղացիք իրենց դուարներուն համար յարմարագոյն ու ընդարձակագոյն արօտաստաններ ունենան։

Վեցերորդ ամբաստանութիւն։ Հայք թէ՛ ծառայութեան օրերը շատցուցին, ու թէ՛ սակը

բարձրացուցին. եւ մէկ տան տեղւոյ վրայ բնակող երկու եղբայրներն ալ ծառայութիւն ընելու ստիպեցին։

Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնը չուրացաւ այս բանս։ Եւ ցուցուց, որ իրենց երկիրներուն համար աւելի ծառայութիւն ընող աւատականներէն. 1. Ստեփան Լէօրինց, Միհախլա եւ Բավէլ, մէկ տեղւոյ համար, ութը օր. — 2. Սիւչ Եուօն եւ Միհախլա, տեղւոյ մը համար՝ տասը օր. — 3. Միքայէլ եւ Ստեփան Շանքու մէկ ժառանգութեան համար՝ ութը օր կը ծառայեն։ — 4. Թէոդորոս Շանքու, երկրի մը համար կը ծառայէ չորս օր. իսկ Վասիլիա՝ կու տայ 20 ֆիորին եւ քաղքին կը կորէ, երեք ձողաչափ փայտ։

Քննիչներն այնպէս գտան, թէ ձրի ծառայութեան օրինաց համեմատ՝ շաբթէ շաբաթ, 4 օր ծառայութիւն ընելու պարտական եղողներուն մատուցած աւելի ծառայութիւնը, հայ հասարակութիւնը փոխարինէ. եւ կամ օրական ծառայութիւնը՝ իրական ստակի վրայ առնելով՝ զանիկա ետ դարձընէ։

Ճշմարիտ է, թէ հայ հասարակութիւնն աւատականներուն սակն աւելցուցած է։ Ձրի ծառայութեան օրինաց համեմատ 6 ռենական ֆիորին սակէն աւելի վճարեցին. 1. Թէոդորոս գէրգըս, որ թէպէտ անկէ յառաջ երկու օր ծառայութիւն կ'ընէր —, 1787ին հինգ ռեն. ֆիորին վճարեց։ Այս գումարը՝ 1788ին եւ 1789ին. 10 ռեն. ֆիորինի բարձրացաւ. 1790ին՝

15ի։ Աս տարի ալ, այնչափ է։ — 2. Անդր. Լէօրինց, մինչեւ՝ 1787ը. 6 ռեն. ֆիորին կը վճարէր. այն ատեն բարձրացաւ 8 ֆիորինի. 1789ին՝ 10ի—1790ին՝ 15ի։ — 3. Յովհ. Լէօրինց, ամէն տարի 9 ֆիորին կը վճարէ. եւ 15 օր որմնադրութիւն կ՚ընէ։ — 4. Դանիէլ Գատար, կու տար մինչեւ 1787ը՝ 6 ֆիորին, անկից ետքը՝ 1787, 1788 եւ 1789ին՝ 8 ֆիորին. 1790ին՝ 15. — 1791ին ալ այնչափ կը պահանջեն։

Թէպէտ որոշուած սակերէն վեր եղած վճարմունքը Հայերը դարձընելու էին, բայց այս բանս իրենց թողուեցաւ. որովհետեւ հայ հասարակութիւնն ըսաւ թէ վեց ֆիորին սակ վճարուած ատեն, Պաշպալովի երկիրներն այնպէս չէին, ինչպէս հիմակ. եւ տեղերն այնչափ եկամուտ չէին բերեր ինչպէս հիմակ։ Հիմակ աւելի դիւրին է Պաշպալովի մէջ 15 ֆիորին վաստըկիլ՝ քան այն միջոցին՝ 6 ֆիորին։„ —

Ընթերցողն այս քննութենէն դիւրաւ կրնայ տեսնել. Նախ. թէ ինչ էր գեղացի աւատականներուն գանգատին պատճառը. Երկրորդ՝ թէ որչափ ստոյգ էին անոնց ամբաստանութիւններն. եւ Երրորդ՝ թէ ինչ էր քննիչներուն կարծիքն այս բաներուն նկատմամբ։

Թէպէտ տեսանք մէկ կողմանէ, որ գեղացւոց մէկ երկու գանգատներն անհիմն էին. իրենց պահանջմունքն՝ անիրաւ. վասն զի հետզհետէ իրենց տեղեր գրաւած էին անտառներէն. եւ անոնցմէ արօրադիր երկիրներ ու

*բարձրացուցին. եւ մէկ տան տեղւոյ վրայ բնակող երկու եղբայրներն ալ ծառայութիւն ընելու ստիպեցին։*

*Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնը չուրացաւ այս բանս։ Եւ ցուցուց, որ իրենց երկիրներուն համար աւելի ծառայութիւն ընող աւատականներէն. 1. Ստեփան Լէօրինց, Միհաիլա եւ Բալէլ, մէկ տեղւոյ համար, ութը օր. — 2. Սիւչ Եուօն եւ Միհաիլա, տեղւոյ մը համար՝ տասը օր. — 3. Միքայէլ եւ Ստեփան Չանքու մէկ ժառանգութեան համար՝ ութը օր կը ծառայեն։ — 4. Թէոդորոս Չանքու, երկրի մը համար կը ծառայէ չորս օր. իսկ Վասիլիա՝ կու տայ 20 ֆիորին եւ քաղքին կը կորէ, երեք ձողաչափ փայտ։*

*Քննիչներն այնպէս գտան, թէ ձրի ծառայութեան օրինաց համեմատ՝ շաբթէ շաբաթ, 4 օր ծառայութիւն ընելու պարտական եղողներուն մատուցած աւելի ծառայութիւնը, հայ հասարակութիւնը փոխարինէ. եւ կամ օրական ծառայութիւնը՝ իրական ստակի վրայ առնելով՝ զանիկա ետ դարձընէ։*

*Ճշմարիտ է, թէ հայ հասարակութիւնն աւատականներուն սակն աւելցուցած է։ Ձրի ծառայութեան օրինաց համեմատ 6 ռենական ֆիորին սակէն աւելի վճարեցին. 1. Թէոդորոս Գէրգըլս, որ թէպէտ անկէ յառաջ երկու օր ծառայութիւն կ'ընէր —, 1787ին հինգ ռեն. ֆիորին վճարեց։ Աս գումարը՝ 1788ին եւ 1789ին. 10 ռեն. ֆիորինի բարձրացաւ. 1790ին՝*

15ի։ Աս տարի ալ, այնչափ է։ — 2. Անդր. Լէօրինց, մինչեւ՝ 1787ը. 6 ռեն. ֆիորին կը վճարէր. այն ատեն բարձրացաւ 8 ֆիորինի. 1789ին՝ 10ի—1790ին՝ 15ի։ — 3. Յովհ. Լէօրինց, ամէն տարի 9 ֆիորին կը վճարէ. եւ 15 օր որմնադրութիւն կ'ընէ։ — 4. Դանիէլ Գատար, կու տար մինչեւ 1787ը՝ 6 ֆիորին, անկից ետքը՝ 1787, 1788 եւ 1789ին՝ 8 ֆիորին. 1790ին՝ 15. — 1791ին ալ այնչափ կը պահանջեն։

Թէպէտ որոշուած սակերէն վեր եղած վճարմունքը Հայերը դարձընելու էին, բայց այս բանս իրենց թողուեցաւ. որովհետեւ հայ հասարակութիւնն ըսաւ թէ վեց ֆիորին սակ վճարուած ատեն, Պաշպալովի երկիրներն այնպէս չէին, ինչպէս հիմակ. եւ տեղերն այնչափ եկամուտ չէին բերեր ինչպէս հիմակ։ Հիմակ աւելի դիւրին է Պաշպալովի մէջ 15 ֆիորին վաստըկիլ՝ քան այն միջոցին՝ 6 ֆիորին։„ —

Ընթերցողն այս քննութենէն դիւրաւ կրնայ տեսնել. Նախ. թէ ինչ էր գեղացի աւատականներուն գանգատին պատճառը. Երկրորդ՝ թէ որչափ ստոյգ էին անոնց ամբաստանութիւններն. եւ Երրորդ՝ թէ ինչ էր քննիչներուն կարծիքն այս բաներուն նկատմամբ։

Թէպէտ տեսանք մէկ կողմանէ, որ գեղացւոց մէկ երկու գանգատներն անհիմն էին. իրենց պահանջմունքն՝ անիրաւ. վասն զի հետզհետէ իրենց տեղեր գրաւած էին անտառներէն. եւ անոնցմէ արօրադիր երկիրներ ու

խոտի դաշտեր շինած էին։ Բայց մէկալ կողմանէ չենք կրնար չտեսնել նաեւ զան թէ ազգայինք, բոլորովին ըստ խղճի ու ըստ արդարութեան չվարուեցան աւատականաց հետ, այն միջոցին երբ — ինչպէս ամբաստանութեան մէկ (վեցերորդ) կէտէն տեսնուեցաւ, որ թէ՛ ծառայութեան օրերն աւելցուցին եւ թէ՛ միանգամայն վճարքները բարձրացուցին։ — Իրերն այսպէս ըլլալով ալ չենք կրնար ուրանալ, որ Հայք զՊաշպալով գեղը քաղաքի բարձրացընելով, վաճառականութիւնն ու հաղորդակցութիւնն ընդարձակելով, տարեկան ու շաբաթական տօնավաճառներ մտցընելով, արուեստներ բանեցընելով, վաճառանոցներ կանգնելով՝ — քաղքին եւ իր շրջականներուն ուրիշ դիրք ու բարձրութիւն տուած եւ ստակ վաստըկիլը դիւրացուցած էին։ —

Քննութեան եզրակացութիւնը՝ քննիչք անմիջապէս գաւառապետական իշխանութեան ներկայացուցին։

Ասիկա համոզուելով, որ իրաւունքն ստուգիւ ազգայնոցն է, յաջորդ հրամանագիրը խըրկեց աւատականներուն։

“Ամբաստանողներուն խնդիրքը հիմնովին փնտռելու եւ ըստ արդարութեան քննելու համար խրկուած քննիչներուն տեղեկութիւններէն անտարակուսելի կերպով իմացանք, որ Ույ ֆալուի գեղացի բնակիչներն, իրենց երկիրներն՝ այնպիսի անտառային տեղերէն առած, շինած են, որոնք հին ժամանակներէ, — եւ ի մասնաւորի, երբ, 1758ին, Ույ ֆալու իր սահմաններուն —

Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան, իբրեւ իրական եւ ճշմարիտ կալուածատիրոջ ձեռքը տրուեցաւ: — Ասոր վրայօք եղած պատճէնին եւ փոխանցութեան համեմատ, անիկա, գեղացի աւատականներէն ալ, երկրատիրոջ կալուածը, անտառը՝ անուանուեցաւ: Ուստի չի կրնար ըլլալ, որ այն տեղի բնակիչներն ու եկեղեցին, անանկ տեղերը — որ մասնաւորապէս կալուածատիրոջ երկիրը, ձկնարանն ու անտառը կոչուեցան — մտնեն. զանոնք՝ առանց երկրատիրոջ մասնաւոր հրամանին կտրտեն. իրենց առնուն եւ տներու եւ ծուխերու վերաբերեալ տեղեր ու երկիրներ համարին. — պատճառ բերելով՝ որ այն տեղերն իրենց ձեռաց աշխատութեամբը վաստըկած են: Եւ կամ խաղաղութեամբ անոնց մէջ ապրելով եւ զանոնք գործածելով՝ նախագրաւութիւն եղած ըլլայ: — Վասն զի նկատմամբ առաջինին. եթէ երկիր կտրել, առնուլն, անանկ անտառներէն ալ եղած ըլլային, որոնք վերոյիշեալ տուչութեան ատեն — երբ երկիրները Հայոց յանձնուեցան — ներքին ժառանգութեան կամ տներուն մնացած ըլլային ալ, երկրատիրոջ երկրին վրայ՝ անտառներ կտրտելով՝ անոր աւելի վնաս, քան թէ օգուտ ըրած են: Մանաւանդ երկրորդ, որ արքունական տեղերուն մէջ անտառներ կտրել փրցընելով՝ եւ զանոնք ներքին տեղերու միացընելով՝ տեսանելի վնաս ըրած են կալուածատիրոջ:

Ուստի որովհետեւ, ուրիշին աճեցընել, առանց հրամանի, ուրիշ բանով չ՚ըլլար, եթէ

ոչ ողորմութեամբ եւ միայն երկրատիրոջ կամօքն. անոր համար ալ՝ այն ամէն տեղերը՝ բնակիչներն առանց յապաղման եւ առանց ընդդիմութեան, անմիջապէս իրենց օրինաւոր տիրոջը դարձընեն: Հոս՝ ժամանակի անցումը չ'արժեր. որովհետեւ մեր օրէնքները՝ երկրատիրոջ երկրին վրայ բնակող գեղացւոյն, կալուածատիրոջ դէմ, ամենեւին ժամանակի անցումն եւ նախագրաւութիւն չեն ճանչնար:

"Տուեալ, ի Մարդոնֆալվա, Փէհըր գաւառին աթոռանիստ տեղը. յամի Տեառն 1792. Ապրիլ 17.

Տ. Կ.

գրի առած է
Յովսէփ Վիշոլյի յ. ծ.
Նոտարի փոխանորդ:"

Բայց ասոր գործադրութիւնը շատ դիւրին չէր: — Երբ քաղաքաբաշխութիւնը խնդրեց, որ վճիռը գործադրուի եւ գործակատարք նոր կտրուած երկիրներն իրեն յանձնեն, գեղացիք ոտք ելան ու չուզեցին հրամանին հնազանդիլ: — Աւատականներու բազմութիւն մը բողոքեց այս վճռոյն դէմ. եւ խուռն բազմութեամբ Սիպին դիմեց, իր ցաւին սպեղանիք գտնելու համար: Թէպէտ վարչութիւնը գեղացւոց հասկըցուց, որ այս ճամբով վախճաննուն չեն կրնար հասնիլ. բայց օգուտ չունեցաւ: Իշխանութիւնը տեսնելով որ գաղղիական յեղափոխութեան մէկ արձագանգը մինչեւ Դրանսիլուանիոյ գեղերն ալ հասաւ՝ յանձնեց աւատականաց, որ իրենցմէ մէկ քանի հոգի խրկեն ու ցաւերնին

յայտնեն։ Բայց անոնք չերեւցան։ Այն ատեն գաւառական իշխանութիւնը, նորէն երկու գործակատար խրկեց որ հրամանը գործադրեն. բայց անոնք ալ բան մը չկրցան ընել։ Գաւառապետն ասոր վրայ իրենց առաջնորդն առջեւը կանչել տուաւ եւ հասկըցուց, որ եթէ չեն հնազանդիր հրամանին, գիտնան որ խնդիրը գէշ վախճան մը պիտի ունենայ։ Աս սպառնալիքէն գեղացիք վախնալով բանն անուշի կապեցին. եւ խնդրեցին որ զիրենք ու իրենց գերդաստանները բոլորովին չփճացընեն։ — Երկու տարի անցնելէն ետքը՝ խնդիրն անոր պաշտեցուցին, որ վճիռն իր բոլոր ընդարձակութեամբը չգործադրուի գեղացւոց վրայ. հապա քաղքին սահմաններուն վրայ, 150—180 քոռ ցորեն եւ նոյնչափ կառք խոտ բերող դաշտ կտրեն գեղացւոց երկիրներէն ու Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութեանը տան։

Համառօտիւ պատմածնիս, տեսնենք այն մանրամասն տեղեկութիւններէն, զոր գաւառական գործակատարները պաշտօնապէս գրեցին վերին իշխանութեան։

" Ամենապատիւ Գաւառապետ. մեծարգոյ Տեարք։

" Ամենապատիւ Գաւառապետութիւնը բարեհաճեցաւ, Մարտ 25ին (1794) հրամայել որ Եղիսաբեթուպոլսոյ երկրատէր քաղաքաբաշխութեան ու Սաս Ուչ Ֆալուի եւ Ռուսայլի տուրք վճարող հասարակութեան մէջ սահմաններուն վրայ եղած անտառներուն կրճա-

տումներու նկատմամբ, արդէն երկու տարիէ ի վեր առկախեալ հակառակութիւնները շտկենք, վերջացընենք. եւ կալուածատէր հասարակութեան ցորենեղէնի եւ խոտի դաշտերուն խնդիրն ըստ արդարութեան կարգադրենք: —

“Ինչպէս յայտնի է Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնն այն ամէն տեղերը՝ զորոնք դրացի Գիւգիւլլէօ գաւառին, ինչպէս նաեւ այս գաւառին մէջ Սաս Ույ Փալուի եւ Ռուտայլի մէջ ունի, արքունական գանձէն ընդունած է 1758ին: Այսպէս կը գտնենք Յովհան. Նօկյ եւ Յովսէփ Պօչգոր այն ատենի արքունական քարտուղարներուն ստորագրութեամբն եղած պատճէնին մէջ: Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնն այս երկիրները, ճշդիւ այն իրաւամբ ընդունած՝ առած է, իր իշխանութեանը տակ, որ իրաւամբ որ զանոնք իր նախորդ կալուածատէրներն — եւ ամենէն վերջը հանգուցեալ Միքայէլ Ապաֆի իշխանն — առած, գործածած են: Փոխանցութեան մէջ, ամէն գեղացւոյ համար, որոշուած են, ներքին տեղւոյն համապատասխան արտաքին երկիրներ ալ: Նոյնպէս որոշուած են եկեղեցիներուն համար, որոշեալ չափով արօրադիր երկիրներ ու խոտի դաշտեր:

“Երկրատէր հասարակութիւնը տեսնելով որ իր կալուածատէրութեան գործակալներուն անհոգութեամբն ու անհաւատարմութեամբը՝ գեղացիք եւ սաքսոնական եկեղեցւոյն մարդիկն անտառները կտրտելով՝ երկրատիրոջ ալ չդիմանալի վնասովը, շատ մը գործածուելի երկիր-

ներ իրենց սեպհականեցին, — աղաչանաց թըղթով մը խնդրեց (1792ին) մեծապատիւ գաւառապետութենէն, որ շնորհք ընէ եւ երկու գործակալ խրկէ յիշեալ երկիրներն. որպէս զի անոնք կորած անտառներուն տեղերը փնտռեն եւ ըստ արդարութեան իր օրինաւոր տիրոջը դարձընեն։ — Ամենապատիւ գաւառապետութիւնը, յիշեալ տարւոյ փետր. 14ին երկու գործակատար խրկեց։ — Ասոնց՝ հաւատարմութեամբ կատարած գործքին վրայ, գաւառապետը հրաման խրկեց գեղացւոց, որ անտառներէ շինած երկիրներն անմիջապէս իր օրինաւոր տիրոջ, Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան վերադարձընեն։ (Տես վճիռն՝ էջ 452—54)

“Աս օրինաւոր վճռոյն համեմատ, ուզեց երկրատէր քաղաքաբաշխութիւնն, որ նոր տուչութեան մէջ նշանակուած երկիրներն ըստ օրինի իրեն վրայ անցուին։ Սակայն Ոյ Ֆալուի գեղացի հասարակութիւնն վճռոյն դէմ գլուխ վերցուց եւ ուզեց վերատեսչութեան խորհրդին դիմել։ Աս բանն իրենց շնորհուեցաւ։ Այն ատեն կարծած ցաւին ճար գտնելու համար բոլոր գեղացիները խմբովին, Սիպին (Hermannstadt), իրենց պէս մարդու մը դիմեցին։ Վերին կառավարութեան խորհուրդն, այս ամէն բաներուն լուռ կեցաւ։ Արգելք չըրաւ իրենց խումբ խումբ ժողովելուն. եւ չարգելեց իրենց վայնասունները։ Բայց մըտադիր ըրաւ, յունիս 28ին հրատարակած յայտարարութեամբն, որ եթէ կ՚ուզեն խնդրած բողոքնին վաւերացընել, զանիկա 15 օրուան մէջ

ի գործ դնեն։ Սակայն, որովհետեւ Սաս Ույ Ֆալուի հասարակութիւնը՝ խնդրուած մանաւանդ թէ հրամայուած բողոքը 15 օրուան միջոցին մէջ չէ թէ միայն չգործադրեց մինչեւ ցայսօր, հապա, ի մեծ վնաս երկրատիրոջ՝ անտառներէն կտրած երկիրները գործածելը շարունակեց։ Ամենապատիւ Գաւառապետը, երկրատէր քաղաքաբաշխութեան նորագոյն աղաչանացը լսելով, 1793 Նոյեմբ. 9ին, Հրամանագրովն որոշեց, որ յիշեալ երկու գեղերուն (Սաս Ույ Ֆալուի եւ Ռուտայլի) սահմանաց մէջի երկիրներուն նկատմամբ եղած անմիաբանութիւնը վերջնականապէս լմընցընելու համար, երկու նոր գործակատար խըրկուի։ Ասոնք — Նոյ. 13ին — յիշեալ գեղերն երթալով, հոն՝ իրենց գալուն նպատակը ծանուցին։ Եւ որպէս զի ընելիքնին վճռոյն մտաց համեմատ կարենան կատարել, ամենէն յառաջ 1758ին տուչութեան թղթին ցանկին համեմատ, հերկելի ու խոտի դաշտերը, տրոց ցանկին — եւ 1792ին, խնդրոյ տակ եղած երկիրներուն վճռուած նոր թղթին հետ համեմատեցին։

“Երբ որ տեսանք — այնպէս կը շարունակեն գործակատարք իրենց տեղեկութիւնները — թէ այս վճռոյն գործադրութեամբը, թէ՛ գեղացիներուն շատ վնաս պիտի հասնի ու թէ՛ միանգամայն արքունական գանձը քիչ կրճատում պիտի չկրէ՝ ուզեցինք կալուածատէր հասարակութիւնը համոզել, որ այն երկիրներն առնուլն գեղացիներէն, չէ՛ թէ վճռոյն ճիշդ մտաց համեմատ, հապա այնպիսի կերպով մը,

որ անոնց տեղ Երկրատիրոջ տրուին ուրիշ արօրալիր եւ խոտի տեղեր. որով թէ արքունական գանձն եւ թէ գեղի բնակիչները նուազ վնաս զգան։

“Երկրատէր քաղաքաբաշխութիւնն՝ առաջարկութիւնն իւրացուց։ Եւ տեսնելով մէկ կողմանէ որ խնդիրն իր՝ ու իրե՛ն ծառայող գեղացիներուն մէջն է. եւ նկատելով մէկալ կողմանէ, որ բնակիչներն, իրենց քրտամբ վաստըկած եկամտէն բոլորովին պիտի զըկուին, ուզեց միայն որ — երբ գեղացիներն այնչափ տարածուեցան իր երկիրներուն մէջ — ինքն ալ, իբրեւ երկրատէր, իր յատուկ կալուածներէն մաս մ'ընդունի։ — Ուստի հրաժարեցաւ այն բանէն, որ անտառներէն վաստըկած երկիրներն ամբողջապէս իրեն դարձուին. ու շատացաւ անով, որ թէ Ուչ Գալուի եւ թէ Ռուտայլի սահմաններուն վրայ 150—180 քառ. ցորեն բուսցընող արօրի եւ նոյնչափ կառք խոտ բերող խոտի երկիր կտրուի տրուի հայ հասարակութեան։

“Քաղաքաբաշխութեան այս զիջողութիւնն եւ գեղացի բնակիչներուն համար ստուգիւ օգտակար ու նպաստաւոր առաջարկութիւնը Սաս Ուչ Գալուի բնակիչներուն մեկնեցինք։ Եւ աւելցուցինք, որ եթէ այս որոշումը յօժարութեամբ չընդունին, վճռոյն համեմատ, երկիրներն իրենցմէ բոլորովին պիտի առնուին։ Սակայն գեղացիներն ոչ ասոր հնազանդիլ ու ոչ անոր հաւանիլ ուզեցին։ Այնպէս որ երկրատէր հասարակութիւնն ստիպուեցաւ սկսած գործքը կիսկատար թողուլ։

"Այն ատեն գաւառապետն այս անհնազանդ բնակիչներուն ծերերէն երկու հոգի իր առջեւը բերել տուաւ. եւ ասոնց ձեռօք բոլոր գեղացի հասարակութեան հասկըցուց, որ եթէ յանդըգնութեամբ, այն որոշման դէմ շարունակեն անհնազանդութիւնն, այն բանն իրենց ապագային համար մեծ դժբախտութեան պատճառ պիտի ըլլայ, որովհետեւ իշխանութեան զօրութեամբ զիրենք պիտի հնազանդեցընեն: — Գեղացիք սարսափեցան ու հնազանդութիւն խոստացան:

"Այս որ եղաւ, Սաս Ոյ Ֆալուի, գիւղապետին, Միքայէլ Գոլչարին տունն իջանք. ու հոն կանչեցինք Եղիսաբեթուպոլսոյ երկրատէր քաղաքաբաշխութեան երկու գործակալներն ու գեղին ծերերը: Ասոնց առջեւը մեկնեցինք գաւառապետութեան եւ վերատեսչութեան վերոյիշեալ որոշումն. աւելցընելով՝ որ հունգարական օրինաց մտաց համեմատ, ինչպէս որ, որ եւ է տեսակ երկիր, գեղացւոյ սեպհական ստացուածքը չի կրնար ըլլալ, — անանկ ալ՝ այն երկիրը՝ զոր ինք առանց հրամանի կ'աճեցընէ, իր օրինաւոր տիրոջը կ'աճեցընէ: Մանաւանդ որ 1791ին, Նոր օրինաց ԻԷ. յօդուածին համեմատ, եօթը տարի այն առած երկիրները բանեցընելով՝ ըրած գործքին ու աշխատութեան վարձքն ընդունած է: — Ասոր վրայ, յորդորեցինք զգեղացի հասարակութիւնն, որ երկրատիրոջմէն ներումն խնդրէ — իսկ երկրատէր հասարակութիւնն որ ողորմած ըլլայ գեղացի հասարակութեան հետ:

"Գեղացիք զիջան։ Բայց խնդրեցին երկրատէր հասարակութենէն, որ նկատելով զայն, թէ տուչութեան ժամանակէն ի վեր որչափ բազմացած են՝ — չառնուին իրենց ձեռքն եղած երկիրները, վերն ըսուած վճռոյն համեմատ. հապա քաղաքաբաշխութիւնն իր գործածութեանը համար, գեղացւոց երկիրներուն սահմաններէն, այնչափ արօրի ու խոտի երկիր առնու, որչափ որ իրենք օրական վարձքով կրնան մշակել. սակայն նկատում ըլլուի՝ իրենց կենաց պահպանութեանը։ Եւ այն երկիրները՝ զոր իրենց ծնողքը գործածեցին, մնան իրենց ձեռքն. որպէս զի ցորենեղէն մշակեն ու դուար արածեն։

"Աս խորհրդին, թէպէտ ի սկզբան երկրատէր հասարակութեան գործակալները զիջանիլ չուզեցին՝ սակայն վրայ տալով — եւ քաղաքային վարչութեան հաւանութեամբը — միաբանեցան, որ առնուած երկիրներն անկից ետքն ալ գեղացի բնակիչներուն ձեռքը մնան, — մինչեւ որ երկրատէր հասարակութեան կամքն ըլլայ։ — Բայց արօրի երկիրներէն, 150—180 քոռ ցորեն բերող, եւ նոյնչափ կառք խոտ բուսցընող երկիր, բաժնուի, առնուի գեղացւոց ձեռքէն։

"Ասոր համեմատ՝ Նոյ. 28ին դաշտերն ելանք։ — Քովերնիս առինք գեղին առաջնորդներէն զգիւղապետն՝ զՄիքայէլ Գոլչար. եւ ծերերէն՝ զՄարտինոս Օլջօշ, զՄիքայէլ Վէրէշ, զԱնդրէաս Փէհըր, զՅովհ. Բաուլինի, զՅովհ. Շուլլէր, զՅովհ. Մոլնար, զՄիք. Աչ. կրտսեր,

զՄիք. Հայտու, զՑոլՀ. Նէյվատար, զԳէորգ Տորոպոնդ, զՎասիլ Լուբշա եւ զՑակոմբ Լուբշա։ Աոնցմով՝ իբրեւ գեղի հասարակութեան երեսփոխաններուն, երկրատէր քաղքին գործակատարներուն եւ տեղւոյն վարձակալին Յակոմբ Կորովէին հետ բաժանելի տեղերն ելանք. եւ Եղխաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութեան համար, կտրեցինք յաջորդ արօրի եւ խոտի դաշտերը։

"1. Գեղին դէպ ի արեւելք եղող սահմանին վրայ. Լա Տօս կոչուած տեղը. լերան գագաթը, դէպ ի արեւելք մինչեւ անտառին ծայրը. կտրեցինք՝ շուրջ 46 քոռ ցորենեղէն հասցընող եւ 20 կառք խոտ բերող երկիր։ Աս տեղը լերան վրայ ըլլալուն պարարտ չէ։ Բայց ասոր տեղ.

"2. Գեղին հարաւային դին. ա) Լունգա լա Եուրօս ըսուած տեղը — որ մինչեւ վերջին ատենները ցանուած էր — ու առուակին եւ դէպ ի վեր գացող ճամբուն մէջ եղող երկրէն՝ կտրեցինք 330 ձողաչափ երկայն. 40 ձողաչափ լայն եւ 18 քոռի չափ ցորեն բերող արօրի երկիր։ բ) Լա Տօն կոչուած տեղը, ուր որ հին ատենները Միքայէլ Աբաֆի իշխանին ձկնարանն էր. կտրեցինք 26 կառք խոտ բուսցընող տեղ։ գ) Լա Պըրպըրօյը էլ միք տեղւոյն վրայ. Պըրպըրօյը կոչուած անտառին կից, դէպ ի հարաւ. կտրեցինք շուրջ 15 կառք խոտ բերող երկիր։ դ) Լա Պըրպըրօյը հէլ մարը կոչուած տեղն, անտառներուն ստորոտը, մինչեւ եղէգնային առուակն, ուր հիմակ նոր նշաններ դրինք. կտրեցինք շուրջ 30 կառք խոտ բերող երկիր։

“Գեղին արեւմ. հիւսիսային դին։

“ա) Լա Ռօկոզ կոչուած տեղը. այն պզտիկ կամուրջին քով, ուր որ է Սաքսոն քահանային երկիրը, դէպ ի վար վազող առուակին եւ ասոր վերեւն եղող լերան վրայ կան գեղացւոց արօրի երկիրները։ Արդ՝ 300 գերմ. ձող անոնց թողուցինք Ռօկոզ անուան տակ. — ու կտրեցինք քաղաքաբաշխութեան համար, 50 կառք խոտ բերող երկիր. եւ քովերը նշաններ դրինք։

“բ) Լա Լափաա տեղւոյն վրայ. ան ամէն արքունական արօրի եւ խոտի երկիրներն, որոնք մինչեւ հիմակ երկրատիրոջն էին, յանձնուեցան քաղաքաբաշխութեան։ Ասոնց տարածութիւնն ամենէն դիւրաւ կրնաք գտնել վարձակալին ցանկէն։

“Վերոյիշեալ վճռոյն համեմատ, հասարակութիւնը պահանջեց, որ լութերական եկեղեցւոյն մարդիկներն ալ ձեռուընին ունեցած ամէն ցորենի եւ խոտի երկիրներն ետ տան։ Բայց որովհետեւ այս երկիրները շատ ատենէ ի վեր բողոքականաց ձեռքն են, եւ հիմակուան քարոզիչն Անդր. Կրէֆ ըսաւ թէ, միայն դատաստանական ճամբով կրնան ասոնք իր ձեռքէն առնուիլ — թէ մենք ու թէ հայ հասարակութիւնը նկատում ընելով՝ զանոնք ունեցողներուն ձեռքը թողուցինք։ —

“Գործքերնիս սանկ լմնցընելէն ետեւ, տեղւոյն հասարակութիւնը նորէն ժողովեցինք եւ առջեւնին դրինք, որ վերն ըսուած խոտի դաշտերն ու ցորենի երկիրներն իրենցմէ առ-

նուեցան։ Ուստի ասկից ետքն այն տեղերը կալուածատիրոջ իշխանութեան ու գործածութեան տակ ձգուած են։ Անոնց մէջ մաս չունին։ Իրենց հօն մնալն եւ զանոնք գործածելն արգիլուած է։ —

“Ասոր վրայ 1794. Ապրիլ 30ին Ռուտայլ գացինք։ Հոս ալ առաջին գործքերնիս եղաւ Յովհ. Հինց գիւղապետին տունն երթալ եւ հոն կանչել գեղին ծերերն ու երկրատէր քաղքին վարձականը, զՅովհ. Աղա Ջաքարեան։ Մեր գալուն նպատակը գեղացիներուն առջեւը դրինք եւ վերը յիշուած որոշումն առջեւնին կարդացինք։

“Բայց որովհետեւ հոս ետ առնուելի երկիրներուն նկատմամբ յառաջուընէ ամենեւին գրուած որոշում մը չկար ձեռուընիս՝ իբրեւ կանոն, ուստի երկրատիրոջ համար կտրուելի արօրադիր եւ խոտի դաշտերը՝ բոլոր շրջականերուն վրայ եղած երկիրներէն առնելով պէտք էինք ամբողջացընել։ Սակայն այս կերպ անջատումը, թէ գեղացի բնակիչներուն վնաս պիտի բերէր ու թէ երկրատէր քաղքին օգտակար ու յարմար չէր։ Անոր համար քաղաքաբաշխութիւնն ուզեց որ թէ արօրի եւ թէ խոտի դաշտերուն մէջէն, կտրուին ա՛յն տեղերն, որոնք իրեն ամենէն մօտիկ են։

“Երբ խնդիրը լմնցընելու համար, այս ճամբան տեսանք ամենէն աւելի յարմարը, նկատում ըրինք մէկ կողմանէ արքունական եկամտին եւ մէկալ կողմանէ անոր՝ որ հարկատու ժողովուրդը նուազ զգայ այս բանը։ Գեղացիները

շատ ընդդիմութիւն չցուցուցին․ Թէպէտ եւ ազերսանօք խնդրեցին, որ նկատում ընենք իրենց ողորմելի վիճակին եւ թողունք իրենց գործածութեանն ու կեանքերնուն պաշտպանութեանը համար հարկաւոր տեղերը։

“Ասոր վրայ հրաւիրեցինք գեղին ծերերէն զՑովհ․ Հինց գիւղապետը, զՍտեփ․ Միլլէր, զՑովհ․ Լուդս, զՑովհ․ Վակնէր, զՄիք․ Չալ, զԳէորգ Դանչ, զԱնդր․ Վէպէր, զՑովհ․ Լանկ, զԳէորգ Ֆէք, զԱնդր․ Ֆէք եւ զՑովհ․ Չէդ երէցը։ — Աս ծերերումն՝ իբրեւ գեղին երեսփոխաններումն եւ քաղքին վերոյիշեալ երկու գործակալներումն եւ վարձակալովը գեղին սահմաններն ելանք եւ հոն կալուածատէր քաղքին համար արօրի եւ խոտի յարմար տեղեր կտրեցինք յաջորդ կերպով։

“Գեղին արեւելեան-հարաւային կողմը․

“1․ Դէպ ի Ալմագէրէգ երթալով՝ գեղին վերի դին, ուղղոյն ու անոր քով եղած առուին կից, դէպ ի հարաւ, աւետարանական եկեղեցւոյն կողմի դաշտն․ ուր որ սահմանաքար մը դրինք։ Կրնայ 5 կառք խոտ բերել։

“2․ Անկէ ասդին, գեղին վերեւը, վերն յիշուած լեռնէն վար իջող առուին արեւելեան դին․ դէպ ի կախաղան գացող ճամբուն հիւսիսային կողմը, շուրջ 15 կառք խոտ բերող երկիր։

“3․ Աս խոտի դաշտին անմիջապէս վերի կողմը, լերան գագաթէն դէպ ի վար եղող ուղիէն սկսելով՝ գեղին հիւսիսային ծայրը,

մինչեւ կախաղան գացող ճամբան եւ 2 ին տակ եղող խոտի դաշտավայրէն մինչեւ սաքսոն Հոգաբարձուին խոտանոցը. 44 քոռ ցորեն բերող երկիր մը:

"4. Ույ Ֆալուի սահմանին վրայ Լա Եու-Նասու կոչուած տեղը: Ասիկա վերի դին, ամէն կողմանէ շրջապատած է անտառներով: Վարի դին գեղացւոց արտականները կան: Կտրեցինք հոս շուրջ 20 կառք խոտ բերող դաշտ մը: Ասկից զատ Ցովհ. Դօքաչին արօրի երկիրը. որ 6 քոռ ցորեններէն կրնայ բերել:

"Գեղին Հարաւային-արեւմտեան կողմը.

"5. Գեղէն, Սաս Ույ Ֆալուի դին երթալով՝ դէպ ի արեւելք, կախաղանին կողմը, մինչեւ լերան գագաթը: Դարձեալ՝ կախաղանէն շիտակ դէպ ի հիւսիս, Ույ Ֆալու գացող կամրջի դին, մինչեւ առուակն ու ջաղացք. եւ դէպ ի կալուածատէր վարձակալին շինելու սկսած շէնքը. շուրջ 36 քոռ ցորեն եւ 30 կառք խոտ բերող դաշտ մը, մէկ կտորի մէջ: Աս երկիրը՝ դէպ ի Ույ Ֆալու գացող ուղին երկու կը կտրէ

"Գեղին Հիւսիսային արեւելեան կողմը.

"6. Լա լօգու տը լա Մվարը, այն երեք կտոր արօրի երկիրը, զորոնք ի սկզբանէ հետէ կալուածատէրութիւնը կը գործածէր, շուրջ 22 քոռ ցորեն բերող դաշտավայր մը:

"7. Լունգայի վարի դին, խոտի դաշտ մը. որ ջաղացքին քովի առուէն, եւ գեղի արտաստաններուն քովէն, կ'երկըննայ մինչեւ Ս. Լաս-

Լօյի սահմանները. շուրջ 50 կառք խոտ բեռող երկիր։

“Աս կերպով կատարած գործքէն ետեւ հասարակութիւնը մէկ տեղ ժողովեցինք եւ իրեն հասկըցուցինք, որ ասկից ետքն այն երկիրները երկրատիրոջ կը վերաբերին։ Ուստի եւ այս երկիրներուն տէր ճանչնան քաղքին հասարակութիւնը։

Ցովսէփ Վիշօւյի յ. ձ.
գաւառական նոտար։

Լաւրենտիոս Շարքօղօքի յ. ձ.
գաւառաբաժնի դատաւոր։

Աղեքս. Ջէնի յ. ձ.
գրագիր։”

Երկիրներուն այս կերպ բաժնուիլն ու իրենց օրինաւոր տիրոջ վերադարձուիլը՝ Գրանսիլուանիոյ վերին կառավարութիւնն, ամրացուց յաջորդ որոշմամբը, զոր գրեց 1794 յունիս 26ին արքունական քննիչներուն.

“Ձեր այն տեղեկութեանցը վրայ, զոր Սաս Ույ Ֆալուի եւ Ռուտայլի շրջականներուն մէջ եղող անտառներէն առնուած երկիրներուն վրայօք — Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութեան, իբրեւ կալուածատիրոջ եւ յիշեալ գեղերուն բնակչաց մէջի անմիաբանութիւնը շտկելու նկատմամբ — իբրեւ արքունական քննիչ ու գործակատար՝ ըրած կատարած էք, կը ծանուցուի Ձեզի, թէ՝ ինչպէս որ մէկ կողմանէ, արքունական վերին վարչութեան

*խորհուրդը կ՚ենթադրէ թէ յիշեալ գեղացի բնակիչներուն, երկիրներուն մէջ ըրած աշխատութեանը — նոր օրինաց համեմատ՝ զանոնք եօթը տարի գործածելով՝ արդէն հատուցում ու փոխարինութեան եղած է. — հաշտութիւնն — որ կալուածատէր քաղաքաբաշխութեան եւ գեղացի բնակչաց մէջ ըրած էք — կը հաստատէ. այնպէս որ մէկալ կողմանէ, հաշտութիւն ընելու համար, Ույ Ֆալուի սաքսոն քահանայից յայտարարութեանը վրայ (որուն համեմատ ասոնք՝ իրենց եկեղեցւոյն իրաւունքը, օրինաւոր ճամբով պաշտպանելու կամքերնին յայտնեցին) ըրած դիտումնիդ — իբրեւ տէրութեան օրինաց հետ համաձայնող — կ՚ընդունի, կ՚ամրացընէ ու կը հաստատէ. եւ ձեր վրայ պարտաւորութիւն կը դնէ, որ ասոր նկատմամբ կրկին կողմնակցութիւնները հրահանգէք։*

*"Մեծին Դրանսիլուանիոյ, արքունական վերին կառավարութեան պաշտօնարանէն.*

*"Ի Գլուժ, յամի Տեառն,* 1794 *յունիս* 26.

Վոլֆկանկ Գէմէնյի յ. ճ.

Տ. Կ. Վոլֆկանկ Չէրէի յ. ճ."

*Աս հետեւութիւնն ունեցաւ, Պէդլէն գերդաստանին զգեղացի աւատականները՝ Հայոց ՚դէմ գրգռելը։ Եթէ աւատականք զազգայինները չդատափետէին ու դատաստանի չհանէին, Եղիսաբեթուպոլսեցւոց եւ ոչ մազին ծայրէն կ՚անցնէր, իրենց աւատականներն անհանգիստ*

ընել, տեղերնէն շարժել. ու այնչափ ժամանակէ ի վեր ստացած ու վայելած երկիրներէն զիրենք դուրս հանել: — Հայերն այն վաստակն ունեցան գեղացւոց գանգատներէն, որ 120—150 արտավարի չափ ցորենի ու խոտի երկիր ստացան:

## 17.

Տեսանք քանի մը տեղ[1] թէ որչափ վրէժխնդիր էին Եղիսաբեթուպոլսեցիք, որ իրենց ստակովը գնուած տեղւոյն վրայ — ինչպէս որ առանձնաշնորհութեանց կոնդակներուն մէջ ալ յայտնապէս կեցած է — ոչ միայն օտարք, այլ նոյն իսկ ուրիշ հայազգիք չգան ու չտեղաւորուին:

Բայց մանաւանդ անջնջանելի էր Եղիսաբեթուպոլսոյ Հայոց հակառակութեան հոգին բողոքականաց դէմ, որոնք, ինչպէս պատմութիւնը կը վկայէ, արդէն Աբաֆիներու ժամանակը (իշխանն ալ բողոքական էր) բաւական բազմութեամբ կը գտնուէին Պաշպալով գեղին մէջ:

Հայք՝ հրաման ունենալով, որ զօտարազգիները գոհ ընելով՝ այսինքն իրենց երկիրները գնելով՝ զանոնք կարենան անկէ հեռացընել, առաջին գործքերնին եղաւ, բողոքականներն անկէ ճամբել: — Ունեցած իշխանութիւննին անով սկսան, որ թէ՛ զբողոքական եկեղեցին, ու թէ՛ եկեղեցւոյն վերաբերեալ երկիրներն, անոնց եկամուտներովը՝ ձեռքերնէն առին. որոնց փո-

---

[1] Տես Ա. Հատ. էջ 400—406. դարձեալ 415—418:

խարէն, ուրիշ ողորմելի ու ճախնային տեղեր տուին անոնց։ Բողոքականք լռելու էին, մէյ մ'անոր համար, վասն զի ըստ արտաքին երեւութին Եղիսաբեթուպոլսոյ Հայերն իրաւունք ունէին. բայց մէյ մ'ալ անոր համար՝ որովհետեւ տէրութեան իշխանն՝ ա՛լ բողոքական չէր, հապա Աւստրիոյ կայսրներն էին. որոնք, ինչպէս յայտնի է՝ միշտ պաշտպան էին ուղղափառ հաւատքին։

Բողոքականք կլլեցին ամէն բան, համբերեցին զրկանաց՝ Կարոլոսի Զ.ին ու Մարիամ Թերեզիայի ատեն։ Բայց երբ Հայոց համարձակութիւնն այն աստիճանի հասաւ, որ, ինչպէս պատմութեան ընթացքէն պիտի տեսնենք, նոյն իսկ անոնց գերեզմաննոցին մէկ մասը ձեռքերնէն առին, եւ որ աւելի մեծ է, "հոն տեղի մեռելները տեղերնէն հանեցին եւ անոնց ոսկրները մէկդի նետեցին„ — բողոքականաց համբերութիւնն ա՛լ հատաւ։

Երբ այս բաներուն համար իշխանութեան ու վերին ատեանները բողոքելէն ետեւ ալ, իրենց դէմ եղած զրկանքներուն դարման մը չկրցան գտնել, Յովսէփ Բ. կայսեր դիմեցին։ — Այս բաւական չէր. երբ իշխանապետն Եղիսաբեթուպոլիս եկաւ, անձամբ իրեն ներկայացան եւ աղերսանօք խնդրեցին, որ թէ իրենց եկեղեցին, ու թէ իրենցմէ յափշտակուած երկիրները՝ Հայերն ետ տան։ Կայսրն հաճութեամբ ընդունեցաւ իրենց պատգամաւորութիւնն ու խոստացաւ որ ամէն բան կարգի կը դրուի։ Սակայն խոստումը՝ մնաց խոստում։ Հետեւութիւնն այն

եղաւ, որ ունեցած երկիրներէն եւ ոչ թիզ մը կրցան ետ առնուլ։

Երբ բողոքականք տեսան, թէ պարապի ելաւ ամէն ջանքերնին, որ իրենց վաղեմի ստացուածներէն բան մը Եղիսաբեթուպոլսոյ Հայոց ձեռքէն պիտի չկարենան փրցընել, եկեղեցական-գաւառական ժողովք մը գումարեցին Սէօգէ-ֆալվա գիւղաքաղքին մէջ։ Հոս որոշուեցաւ, որ եկեղեցական վերին ատենին բողոքագիր մը գրեն. մանրամասն տեղեկութիւններ տալով՝ Եղիսաբեթուպոլսոյ բողոքականաց՝ վաղեմի երջանիկ վիճակին ու ներկայ խեղճութեան վրայ. եւ խնդրեն անկէ, որ կերպով մ'օգնէ, որ այս եկեղեցւոյն ստացուածները նորէն ետ առնուին։

Թերեւս աւելորդ չըլլար, այս ժողովոյն, ու վերին եկեղեցական ատեան գրած աղերսագրին Հայերէն թարգմանութիւնը համառօտելով մեր ընթերցողաց առջեւը դնել։

Ժողովոյն արձանագրութիւնը յաջորդն է։

"Վերապատուեալ գլխաւոր ատեան նորոգեալ եկեղեցւոյ։

"Գիւգիւլլէօվարի վիճակին մէջ, ամսոյն 3ին (1815) Սէօգէֆալվա գեղը՝ մէկ քանի եկեղեցական գործառնութեանց ուղղութեան վերաբերեալ բաներու վրայ ժողովք ընելով՝ յառաջ բերուեցան, վաղեմի ժամանակներն այնչափ ծաղկեալ վիճակի մէջ եղած, իսկ հիմայ ողորմելութեան մինչեւ վերջին աստիճանը հասած Պաշպալովի բողոքական եկեղեցւոյն վշտակրութիւնները. զորոնք կը կրէ այս եկեղեցին

հայ հաստրակութեննէն։ Ասոնց վրայ գաղափար մ'ունենալու համար կը ներփակենք, վաւերական հարցաքննութիւն մը եւ վաւերացուցած քաղուածոյք մը (extractus) Գիւգիւլլէօվարի հին արձանագրութեննէն։ — Ասոնցմէ կրնաք տեսնել. 1. Որ կաթուղիկէականաց այն եկեղեցին՝ որ այսօր ալ Հունգարացւոց ժամ կը կոչուի, եւ այն երեք զանգակներն՝ որոնք բերդին մէջ կը պահուին, բողոքականաց եկեղեցւոյն ստացուածքներն էին։ Բաց ասկէ, թէ քահանան եւ ուսուցիչը տներ ալ ունին եղեր։ — 2. Որ քահանային եւ ուսուցչին համար՝ շատ արօտավայր եւ խոտի տեղեր կային եղեր։ — 3. Որ մեր գերեզմաննոցը — մեռելոց ոսկրները դուրս հանելով — շատ փոքրկացաւ։ 4. Թէ քահանան եւ ուսուցիչը Միքայէլ Ա. Աբաֆիի տեննը՝ երկրատէրութեննէն (dominum) բաւական եկամուտ ունին եղեր։ 5. Թէ վերոյիշեալ Հունգարացւոց եկեղեցին եւ անոր կից եղող քահանայի եւ ուսուցչի երկիրները՝ վրանին եղած հիմնարկութիւններովը, հայ բնակիչներն առին։ — Թէպէտ եաքէն ասոնց տեղն այն ատենի արքունական գանձին հօգաբարձուն, Սէնտրէյ, աւելի յարմար ու պատշաճ տեղեր տուաւ, սակայն՝ ասոնք ալ առնուեցան։ Վերջապէս ի խայտառակութիւն մեր կրօնին՝ քաղքին դրսի կողմը, ցած տեղւոյ մը վրայ, գնչուներուն քովերը, տուին մեզի ստակով պզտիկ երկիր մը, ուր որ կը բնակի քահանան։ Կայ հոս փոքրիկ աղօթարան մը, որ բաց անկէ, որ — աստուածային պաշտաման

ժամանակ՝ գնչուներուն սովորական անվայել վարմունքովը մեզի գայթագղութեան պատճառ կ'ըլլայ, անանկ — ցած տեղւոյ մը վրայ է, որ ջրերն ողողելու առեն ու անկէ ետքն ալ, մինչեւ որ շաղախը չչորնայ, հոն մօտենալն անկարելի է։ Ուստի այսպիսի առեն հաւատացեալք եւ ոչ եկեղեցի կրնան երթալ։ — Միւս բանիւ, այս եկեղեցին՝ իր ամէն եկամուտէն ու ներքին եւ արտաքին հիմնարկութիւններէն այնպէս զրկուեցաւ, որ եթէ Գէրէշտի երկու պաշտպաններն, անոր օգնութիւն չմատուցանէին, անկարելի էր որ քահանան կարող ըլլար ապրիլ։ Եւ որովհետեւ հոս մօտիկ նորոգողական եկեղեցի չկայ, ոչ միայն գլխաւոր, այլ նաեւ դուստր (filialis) եկեղեցիներուն մէջ ալ — ինչպէս՝ Սաս Էռնյէի, Տօմալտի, Ալմա գէրըգի, եւ Եղիսաբեթուպոլիս քաղքին մէջ — բազմութեամբ եղած թէ էրիկ ու թէ կնիկ մարդիկ, առանց աստուածային պաշտաման կը մնան։

"Անոր համար, այս ճնշուած, եւ ոչ միայն իր եկեղեցիէն ու քահանայի եւ ուսուցչի ստացուածքներէն, հապա նաեւ ամէն եկամուտէ զրկուած ողորմելի բողոքական եկեղեցին, պարտական կը համարի՝ իր ցաւերն ու գթութեան արժանի վիճակը, վերապատուեալ եկեղեցական վերին ատենին առջեւը դնելու։

"Թէպէտ եւ բաւական պատճառներ կրնայ ունենալ մեր վիճակական ժողովքը պահանջելու որ՝ Եղիսաբեթուպոլսոյ հայ հասարակութիւնն՝ այն բռնութեամբ առնուած եւ գրաւուած եր-

*կիրները, եկամուտներն եւ աստուածային պաշտաման վերաբերեալ բաները Պաշպալովի բողոքական եկեղեցւոյն կամ իրապէս ետ դարձընէ եւ կամ անոնց հաւասար արժէք ունեցող եկամուտներ տայ, այսու ամենայնիւ մեր եկեղեցական ժողովը՝ հասարակաց խաղաղութեան, եւ հայրենասիրութեան փոփոխակի թոյլտուութեան* (Toleranz) *փափաքէն շարժած — եւ անցած ժամանակին վշտակրութիւնները մոռցած — միա՛յն՝ թէ՛ ընդհանուր արդարութեան եւ օրինաց, եւ թէ՛ միանգամայն հայրենեաց միաւորութեան կանոնին հետ միաբանող սկզբունքները յառաջ բերել կ'ուզէ։ Ինչպէս որ ստոյգ է ա՛յն, թէ մեր քաղաքական տէրութեան ապահովութիւնը՝ միացեալ երեք ազգերն ու չորս ընդունուած կրօնները կը կացուցանեն. այնպէս ալ ստոյգ է ա՛յն, որ մեր ընկերութիւնն իւր պաշտպանութիւնը Վեհափառ իշխանապետէն, եւ անոր փոխանորդէն՝ վերին վարչութեան խորհրդէն կրնայ յուսալ։ Նմանապէս, ինչպէս որ ստոյգ է ա՛յն, որ եթէ տէրութիւն մը՝ հաւատքին սուրբ սկզբունքներէն չկառավարուի, այն տէրութեանն ներքին զօրութիւնը խախտուած է. անանկ ալ ճշմարիտ է ա՛յն, որ եթէ հաւատքը՝ բանէ հասկըցող ուսուցչաց ձեռօք չ'առաջնորդուիր, տէրութիւնը վտանգի մէջ է։ Սակայն, եթէ հաւատքին ուսուցիչները չունին իրենց պատշաճ եկամուտները, այն ատեն ասոնք՝ իրենց սուրբ պարտաւորութիւնը չեն կրնար կատարել. վասն զի չունին ապրուստ։ — Հասարակ ժո-*

ղովուրդն ամենէն ստորին տգիտութեան եւ անհաւատութեան մէջ կ'ընկղմի։ Բայց թէ անհաւատութիւնն ինչ տեսակ անհաճոյ հետեւութիւններ եւ խռովութիւններ կը ծնանի — նոյն իսկ ամենէն ծաղկեալ ու քաղաքակիրթ տէրութիւններու մէջ ալ — կը ցուցընէ մեզի պատմութիւնը։ Ուստի մեր ժողովն, Եղիսաբեթուպոլսոյ՝ ատեն մը այնչափ ծաղկեալ եւ ոչ ալ շատ ժամանակէ ի վեր ներս ընդունուած հայ ազգին ձեռօք, բոլորովին եւ մինչեւ ցգթութիւն ճընշուած բողոքական եկեղեցւոյն պահպանութիւնն եւ իր աւերակներէն գոնէ ըստ մասին կանգնուելու իրաւունքն եւ արդարացի պատճառներն ունենալով՝ իրաւամբ կրնայ խնդրել եւ կատարեալ վստահութեամբ յուսալ, որ վերին կառավարութեան պաշտպանութեամբը յաջորդներն ընդունի։

“1. Որ մեծապատիւ վերին կառավարութիւնը՝ Պաշպալովի բողոքական եկեղեցւոյն հիմակուան շատ անյարմար եւ գնչուներուն մէջ եղած տեղւոյն փոխարէն, — ուր որ ջրերուն շատցած ժամանակն՝ եւ սովորաբար անկէ ետքն ալ մահուան վտանգաւ միայն կրնայ մօտեցուիլ, — Եղիսաբեթուպոլսոյ հասարակութենէն եւ քաղաքաբաշխութենէն ուրիշ կարգաւորեալ եւ յարմարագոյն բնակելի եւ բաւական ընդարձակ տեղ մ'ընդունելու բարեհաճի։

“2. Որովհետեւ ընդունուած չորս կրօններուն եկեղեցիներուն քահանաներն, իրենց կենաց պահպանութեանը համար, հաւասար ի-

րուամբ՝ մէկն այնպէս, ինչպէս մէկալը, կանոնական երկիրներ (Canonica Portio) ունին, — ու եթէ մեծապատիւ արքունական վերին կառավարութիւնն այս բանս միացեալ յունական եկեղեցւոյն վրայ ալ տարածած է — նաեւ նորոգեալ կրօնին եկեղեցւոյն ալ այս օգնութիւնը չզլացուի։ Ուստի եւ իրաւունք կը համարինք, վերին եկեղեցական վարչութենէն որդիական վստահութեամբ այս բանը խնդրել։ Եւ որովհետեւ ստոյգ է թէ Պաշպալովի՝ ատեն մ'այնչափ ծաղկեալ բողոքական եկեղեցին, Եղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնն ու քաղաքաբաշխութիւնն, ինք իր գլխուն ու ինքնակաց զօրութեամբն առաւ յափշտակեց, (վասն զի չենք կրնար ենթադրել որ այս բանս վերին հրամանաւ ըրած ըլլայ.) կը խնդրենք, որ վերին Կառավարութիւնը բարեհաճի հրամայել, որ յիշեալ քաղաքաբաշխութիւնը բողոքական եկեղեցւոյն քահանային եւ դպրոցի ուսուցչին կենաց պահպանութեան համար, յարմար եւ լաւ պտղաբեր ու դիւրաւ գործուելի երկիրներ տայ՝ իբրեւ եկեղեցական եկամուտ։ — Ուստի կ'առաջարկենք, որ երկու տեղւոյ վրայ՝ տասնուհինգական քոռ ցորեն բերելու չափ երկիր. իսկ մսրացորենի համար՝ այնչափ երկիր, որ վեց օրուան մէջ կարենայ մարդ հերկել ու ցանել. Նմանապէս 15 կառք լաւ տեսակ խոտ բերող դաշտավայր տայ։ Ասոնց երկու մասն ըլլայ՝ քահանային. իսկ երրորդ մասը՝ ուսուցչին։ — Բաց ասկէ՝ տասանորդներուն տեղ, կը խնդրենք կտոր

մը այգեստան. ուր որ քահանան եւ ուսուցիչը կարենան քիչ մը խաղող մշակել:

“3. Եւ որովհետեւ պարապ տեղ է քահանան, եթէ չկայ եկեղեցի, ուր որ աստուածային պաշտամունքներն ամենայն հանդըստեամբ կատարուին. եւ մէկալ կողմանէ ստոյգ է ա՛ն ալ, թէ հիմակուան աղօթարանը շատ անյարմար է, վասն զի բաց անկէ որ բոլորովին ճախնային տեղւոյ մը վրայ ըլլալուն՝ Գիւգիւլլէօյին ջրերը շատ հեղ կ'ողողեն. նաեւ հոն բնակող գնչուներուն պատճառաւ հաստատուն եկեղեցի շինել եւ աստուածային պաշտամունք կատարել անկարելի է: Անոր համար պատշաճ է, եւ իրաւունք ալ ունինք խնդրելու, որ մեծապատիւ կառավարութիւնը՝ շատ անգամ յիշուած Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան եւ քաղաքաբաշխութեան հրամայէ, որ մեզի ուրիշ՝ յարմարագոյն, պատշաճագոյն եւ աւելի ապահով տեղ մը շնորհէ՝ եկեղեցւոյ եւ գերեզմաննոցի համար: — Եւ որովհետեւ

“4. Ցոյս չկայ, որ Եղիսաբեթուպոլսոյ հայ հասարակութենէն ու քաղաքաբաշխութենէն, որպիսի եւ իցէ խիստ միջոցներով ալ, ժողովրդապետութեան համար հարկաւոր եկամտի ներքին ու արտաքին երկիրներ եւ եկեղեցւոյ ու գերեզմաննոցի յարմարագոյն տեղեր կարենանք ընդունիլ, առանց մասնաւոր հսկողութեան, անոր համար լաւ կ'ըլլար, արքունական վերին կառավարութենէն խնդրել, որ Գիւգիւլլէօ գաւառին մէջէն, մէյ մէկ կաթուղի-

կեայ հռոմէական, բողոքական եւ կալուինական՝ բանէ հանկըցող գործակատար խրկուի, որոնք կանոնական եկամտի երկիրներ դրուելուն նկատմամբ եղած հրամանը գործադրեն. եւ ասոր վրայօք կազմած կարծիքնին Գիւգիւլլէօ գաւառին վերին պաշտօնարանին ձեռօքը՝ եկեղեցւոյ վերատեսչութեան խորհրդին առջեւը դնեն։ — Վերջապէս

"5. Կարեւոր կը համարի վիճակական ժողովս, վերապատուեալ եկեղեցական վերին ատենին ձեռօք, արքունական բարձրագոյն Կառավարութենէն զայն ալ խնդրելու, որ — որովհետեւ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան հայազգի բնակիչներն զհունգարացի եւ մանաւորապէս բողոքական բնակիչները՝ քաղաքացւոյ իրաւունքէն զրկեցին, — բարեհաճի արքունական վերին վարչութիւնը, յիշեալ քաղքին հայ հասարակութեանն եւ անոր քաղաքաբաշխութեանն այնպիսի հրամաններ տալ, որ իրենց մէջ տեղաւորուած եւ ասկէ ետքն ալ — ընդունուած կրօնէ — հոն գաղթելի բնակիչներն ու քաղաքացիները խաղաղութեան մէջ թողուն, որ իրենց յատուկ արուեստը պատուաւոր կերպով շարունակեն։ Եւ այսպէս՝ ընդունուած օրինաց Երրորդ Մասին ՁԱ գլխուն, եւ Ա. յօդուածին Բ. կէտին — ինչպէս նաեւ տէրութեան 1791 տարուան ժողովոյն ԺԹ. յօդուածին — իրաւունքն եւ միութեան ներողամտութիւնը ճանչնան, առանց որ եւ է կրօնի եւ ազգայնութեան զանազանութեան։

“Այս խոնարհական տեղեկատուութիւններէն ետքը կը մնանք, Մեծապատիւ Նորոգողական եկեղեցական վերին ատենին

Տիչէօ Ս. Մարդօն 1815, Մարտ. 22.

Խոնարհ ծառայք եւ որդիք

Միքայէլ Փէօլտվարի յ. ձ.

եկեղեցպանի տեղապահ։

Աղեքսանդր Գազուշի յ. ձ.

եկեղեցպանի տեղապահ։„

Բողոքական եկեղեցւոյն վերին ատեանը խլրտուած եւ շատ բաներու բաղձացող ու շատ բաներ պահանջող վիճակական եկեղեցւոյն առաջարկութիւնն ու բողոքումն իւրացընելով՝ աղաչանաց թուղթ մը գրեց արքունական վերին կառավարութեան խորհրդոյն։ Ասոր մէջ վերն ըսուածները համառօտ ու հոծ կերպով մը յառաջ բերելով՝ կը խնդրէ կառավարութենէն, որ այս խնդրոյն մէջ բողոքական եկեղեցւոյն իրաւունքը պաշտպանել եւ խնդրուածները շնորհել բարեհաճի։

Ահաւասիկ բողոքական եկեղեցւոյն վերին ատենին նամակը։

“Ամենապատիւ արքունական վերին կառավարչութեան խորհուրդ։

“Մեր Գիւգիւլլէօվարի եկեղեցական վիճակին առաջնորդներն անցած տարւոյն մարտ 22ին, եւ ետքը մեր եկեղեցական խորհրդին հրամանովն՝ առաջիկայ տարւոյս փետր. 26ին, մեր

Եղիսաբեթուպոլսոյ մայր եկեղեցիէն եւ անոր պաշտօնատէրներէն վաղեմի ժամանակներն առանց պատճառի (via facti) առած երկիրներուն եւ եկամուտներուն առնուելուն եւ վերաստանալուն նկատմամբ ըրած աղաչանքներն ու տեղեկութիւններն, անոնց քով դրած արձանագրութիւններովը մեր վերին եկեղեցական ատենին առջեւը դրին: — Ասոնց բնագիրները հոս ներփակելով՝ մեծարանօք կը խնդրենք որ զանոնք քննելէն ետեւ, մեզի դարձընելու բարեհաճիք:

"Ասոնց մէջ բովանդակուած պաշտօնական տեղեկութիւններէն եւ յանուանէ՝ առաջինէն յայտնապէս կը տեսնուի, որ մեր յիշեալ Եղիսաբեթուպոլսոյ եկեղեցին, թէ եկեղեցական շէնքերու՝ այսինքն եկեղեցւոյ, զանգակներու, քահանայի եւ ուսուցչի տներու եւ եկեղեցական եկամտի երկիրներու, եւ թէ միանգամայն քահանայի եւ դպրոցի ուսուցչի եկամուտներու նկատմամբ՝ շատ լաւ վիճակի մէջ է եղեր: Բայց ասոնք բոլորն առնուեցան. եւ այն երկիրներն ալ որ անոնց տեղը տրուեցան, ետքէն ետ առնուեցան. ու այս՝ վերջին խեղճութեան հասած եկեղեցւոյն, իր աստուածային պաշտամունքը կատարելու համար՝ շատ անյարմար ու բոլորովին անգործածելի տեղ մը տրուեցաւ, ծաղրածութեան համար՝ ան ալ ստակով: Հոս է հիմակ մատուռն ու քահանային բնակարանը: Մէկալ ամէն ստացուածներէն, թէ եկեղեցին ու թէ քահանան բոլորովին զրկուած են:

"Ներփակուած տեղեկութիւններէն ան ալ կը տեսնուի, որ այս եկեղեցին, թէ իր մէջն՝ եւ թէ մանաւորապէս իր շրջականերն եղած ժողովրդեան բազմութիւնը նկատելով՝ մանաւոր մտադրութեան արժանի է։ Ուստի լի մեծարանօք կը խնդրէ մեր վերին եկեղեցական ատեանը, մեծապատիւ թագաւորական վերատեսչութեան խորհրդէն, որ այն եկեղեցւոյն ողորմելի վիճակը նկատելով՝ վերոյիշեալ եկեղեցպանին աղաչանքին համեմատ, բողոքականաց եկեղեցւոյն, ժողովրդապետին եւ ուսուցչին յարմար տեղ տրուի։ Անկէ զատ, կտրուին եկամտի երկիրներ։ — Բարեհաճեցէք հրաման տալ նաեւ անոր նկատմամբ, որ նոյն քաղքին մէջ բնակող բողոքականները, քաղաքացիութեան իրաւունքէն չզրկուին։ — Եմք ամենայն մեծարանօք, մեծապատիւ արքունական վերին կառավարութեան խորհրդին.

"Դրանսիլուանիոյ բողոքական եկեղեցւոյն վերին ատենէն. Գլուժ 1816 Դեկտ. 29։

Խոնարհ ծառայք
Պր. Լատիզլաւոս Պանֆի յ. ձ.
Լատիզլաւոս Այդայի յ. ձ.„

Թէ Եղիսաբեթուպոլսոյ բողոքական եկեղեցին՝ Հայոց հոս գաղթելէն յառաջ ստուգիւ շատ ծաղկեալ վիճակի մէջ էր, յայտնի է։ Դրանսիլուանիոյ իշխանները, բայց մանաւանդ Միքայէլ Աբաֆի Ա.՝ կարգաւորեալ եկամուտներ կապած էին եկեղեցւոյն, անոր քահանային եւ ուսուցչին. այնպէս որ ասոնք, թէ ցորենի

արտեր եւ թէ խոտի ընդարձակ դաշտեր ունէին։ Ասոնցմէ զատ, ունէին նաեւ ուրիշ հաստատուն եկամուտներ, զորոնք այլեւայլք իրենց պարգեւած էին, ըստ մասին իրական դրամով՝ ըստ մասին բնութեան բերքերով։ — Բայց ինչպէս տեսանք, Հայք՝ իրենց տրուած իշխանութեան զօրութեամբն՝ որ օտարականներն անկէ կարենան հեռացընել, նախ՝ Արաֆի գերդաստանին շինել տուած բողոքական եկեղեցին անոնց ձեռքէն առին. անոր յատկացեալ երկիրները գրաւեցին. քահանային եկամուտները հետզհետէ կտրեցին. եւ անոնց բերանը գոցելու համար, գնչուներուն բնակութեան տեղը՝ ծաղրածութեան համար, կտոր մ'երկիր տուին։ Ասկէ զատ, ինչպէս քիչ մ'ետքը պիտի տեսնենք, անոնց գերեզմաննոցը կտրեցին, մէջէն մեռելները հեռացուցին, տեղը՝ խոտանոց ըրին. ու անոր միայն մնացած մէկ մասն անոնց թողուցին։ Այս ամէն բանին վկայ են, վիճակական ժողովին առ վերին եկեղեցական ատեան գրած պաշտօնական թուղթը, ժամանակակից արձանագրութիւններն ու տարեգիրներուն մեզի թողուցած յիշատակարանները։ Ստոյգ է, որ բողոքականք՝ եղածները քիչ մը մեծցուցած են, որպէս զի վերին իշխանութիւնն ի գութ շարժեն. բայց ան ալ ամենաստոյգ է, որ ազգայինք — զբողոքականները քաղքին սահմանէն հեռացընելու համար — իրենց դէմ ամէն տեսակ բռնութիւն ու անգթութիւն ի գործ դրին։ Ասոնցմէ ազգայինք արդարանալ չեն կրնար։

Ժամանակակից յիշատակարաններն եւ տարեգիրները յայտնապէս կը ցուցընեն, թէ բողոքականք որչափ երկիրներ ունէին. թէ՛ ուր տեղ. երբ՝ եւ որմէ՛ ընդունած էին զանոնք: Թէ Արաֆի իշխանը, քահանային՝ երբ եւ որչափ եկամուտ կապած էր. թէ՝ նոյն իսկ ազգայինք Պաշպալով գաղթելէն յառաջ, եւ Արաֆիին կենդանութեանը ժամանակը՝ բողոքական քահանան ինչ կ'ընդունէր արքունիքէն. եւ ինչ՝ իր ժողովրդէն: —

Ասոնց ամենուն վրայօք՝ 1677ին, եւ յաջորդ տարիներուն մէջ գրի անցուած կահագիրները դեռ կեցած են:

Այս յիշատակարանաց հայերէն թարգմանութիւնը համառօտելով ընթերցողաց առջեւը կը դնեմ:

Ահաւասիկ՝ Պաշպալովի բողոքական եկեղեցւոյն ստացուածոց կահագիրը, բառ առ բառ:[1]

“Անցած (1654) տարւոյն մէջ, իմ տիկին մայրս, ազնուական Գէորգ Արաֆիին ամուսինը՝ տուած էր եկեղեցւոյն, Ցակովբ Փէգէդդէէն Մնացած դաշտավայրը. որ թէ ջաղացքին անկիւնը բռնած է եւ թէ զանիկա կը շրջապատէ: Այս երկիրը՝ մինչեւ այն ատեն Միքայէլ Կատարինէին էր: Եւ որովհետեւ եկեղեցին այս կողմերը խոտի դաշտ չունէր, անոր համար ես ալ իմ ձեռքովս կ'ամրացընեմ, որ ասկից ետքն այս տեղը՝ քարոզիչներն ազատապէս վայելեն:

[1] Համեմատէ, Tractatuale protocollum. 1677. էջ 66:

— Ցով՛Հ. կօկանյին ալ, իւր ազատ կամօքը՝ Շարոշի ջաղացքին քով, կոոր մը խոտի դաշտ տուաւ իւր երկիրներէն: Ասոր՝ ես ալ ընդդիմութիւն չունիմ: — Երկու դաշտի վրայօք ալ, Պաշպալովի քարոզիչներն, ասկից ետքն ազատութեամբ կարենան տրամադրել:

"Տուեալ ի Գադօնա (Katonaini) յամի Տեառն 1655. Մարտ 29.

*Միք. Աբաֆի յ. ձ.*"

Ուրիշ տեղ ալ այսպէս գրուած է. "Մեր գթած տէրը, Միք. Աբաֆի, եւ ամենագթած տիկինն՝ Աննա Պորնէմիսա, Պաշպալովի քարոզչաց Հետ, այսպիսի միաբանութիւն (conventio) մ'ըրին. 1668ին, Մարտի 1ին.

"Ըլլայ վճարք, իրական դրամով, տարուէ տարի՝ 32 Ֆիորին. — 125 դէզ ցորեն — 25 կոյտ վարսակ. — երկու մառ գինի. — մէկ գիրցած խոզ. — 8 քառորդ կարագ. — ութը քառորդ մեղր. — երեք պանիր. — 15 կառք փայտ. — Հինգ գլուխ (kö) աղ. — երեք քոռ կորեկ: — Ամէն մէկ վալաքէն՝ մէկ քառորդ գառն: — Աս եկամուտները կու տային նոցին մեծափառութիւնները՝ 1677ին Ց. Անդրէաս Վալյիի Հազարապետութեանն առենը:"

Դարձեալ՝ 1714ին արձանագրութիւններուն մէջ, յաջորդները կը գտնենք գրի անցուած.

"Քարոզչի վարձք.

"Նախ. Դղեակէն. 125 քոռի չափ ցորեն բերող երկիր. — 25 չափ վարսակ. — 80 մառ

գինի. — 32 ֆիորին իրական դրամ. մէկ գէր խոզ. չորս չափ (Eitel) կարագ. նոյնչափ մեղր. — 30 ֆունտ պանիր. 15 կառք փայտ. հինգ գլուխ աղ. երեք քոռ կորեկ. մէկ քառորդ գառն։ — Մէկ տարին՝ Հունտորֆի կողմն եղող դաշտը, մէկալ տարին քաղքին դին եղող դաշտը կրնայ հնձուիլ։

“Երկրորդ. Հասարակութենէն. ամէն ամուսնացած մարդ՝ երեքական դէզ ցորեն, մէկ դէզ վարսակ, երեք կառք փայտ։ Եկամուտները՝ 60ական ստակ։ — Ամուսնութիւնն օրհնելու համար՝ մէկ ֆիորին. — Թաղման արարողութեան համար՝ մէկ ֆիորին. — Մկրտութեան համար՝ հաւ մը եւ հաց։„

Քիչ մը վար. “Գղեկէն կ՚ընդունի քարոզիչը՝ 24 քոռ ցորեն. 12 ֆիորին՝ իրական դրամ։ — Ժողովրդենէն՝ ամէն ծուխի համար, մէկ քոռ ցորեն. մէյ մէկ հաց ու մէկ կառք փայտ. — Թաղման համար՝ մէկ հաւ։„

Այս յիշատակարանին, իբրեւ շարունակութիւն — 209 էջին վրայ — անցուած են յաջորդները.

“Կայ երեք դաշտավայր։ Առաջինն է դէպ ի Հունտորֆի սահմանները։ Ասոր դրացի էր՝ Սէնդ Իվանի կողմանէ, Իլյէշ Եանօշ։ Ասդիէն՝ անտառը. մէկ կողմանէ՝ Օբրա Մոլնար։ Հունտորֆի կողմանէ, առուակին անդին, մեծապատիւ իշխանին երկիրը։ — Մէկալ երկիրն է՝ ջրանցքէն անդին. Ցակովը Գէգէդդէէն մնացած. որուն մէկ կողմն է առուակը՝ մէկալ կողմը

Պետրոս Իպրանյի։ — Երրորդ երկիրը՝ ջաղացքին կից է։ Ասոր դրացի է՝ ասդիէն Մարդօն ՚Լէօրինց. վարէն՝ Ցովհ. Իլյէշ. երրորդ կողմանէ առուակը։ — Կայ երեք զանգակ. հաւասար չեն. մեծ, միջին ու պզտիկ։„

Ուրիշ տեղ մըն ալ այսպէս կը գտնենք. "1729ին, բողոքականաց եկեղեցին եւ ժողովրդապետութեան շէնքն, արքունի գանձուց տեղապահ՝ Ցովհան. Սէնտրէյ, առաւ. եւ ժողովրդապետական շէնք մը տուաւ ուրիշ կողմ։ Ասոր դրացի է, դէպ ի արեւելք՝ Սամուէլ Բօյ. վարի դին, գինետունը. դէպ ի արեւմուտք եւ հիւսիս՝ Սամուէլ Բօյին խոտանոցը։ Այս ժողովրդապետական տեղը Հայերն առին եւ ուրիշ ամայի տեղ մը տուին 40 ֆիօրինով։ Հոս կը բնակի հիմայ ժողովրդապետը. եւ հոս պիտի կանգնուի մատուռը։ Այս տեղւոյն վրայ եղող բոլոր շէնքեր՝ եկեղեցին կանգնեց։ Այս երկրին գնման թուղթը, եկեղեցւոյն արկղին մէջն է։„

## 18.

Բողոքական եկեղեցւոյն աղերսագիրներն՝ առանց արձագանգի չմնացին։ — Ինչպէս տեսանք՝ խնդիրը Դրանսիլուանիոյ կառավարութեան առջեւն ելաւ։ Ասիկա արձանագրութիւնները վերաքննելու համար, ատենակալութեան խրկեց։ — Հոս՝ խնդիրը ծանր կերպարանք մ'առաւ։ Երդման կոչուեցան արժանահաւատ վկաներ. որոնց առջեւը դրուեցան յաջորդ հարցումները.

Նախ. Գիտէ՞ վկան, յայտնապէս ու ապահովապէս, կամ արժանահաւատ վկաներէ լսա՞ծ է, որ այսօր ալ կանգուն կեցած հռոմէական կաթողիկէ եկեղեցին, Միքայէլ Արաֆի իշխանին մահուանէն ետեւ՝ բողոքականներէն կաթողիկէականաց ձեռքն անցնելով, այն ատենի արքունական գանձուց տեղապահ, Յովհ. Սէնտրէյ, ասոր փոխարէն բողոքականաց՝ ուրիշ եկեղեցւոյ տեղ տուած ըլլայ: — Թէ որ այնպէս է. ու՞ր, ո՞ր փողոցին մէջ, եւ ի՞նչ տեսակ երկիր տուաւ եկեղեցւոյ եւ ժողովրդապետութեան համար:

Երկրորդ. Այն՝ Յովհ. Սէնտրէյին կտրած ու տուած տեղն որո՞նք առին բողոքականներէն. եւ ի՞նչ կերպով: Ասոր փոխարէն, ու՞ր եւ ի՞նչ տեղ տուին: Այն տեղը մշտնջենապէ՞ս տրուեցաւ բողոքականաց: Եւ Յովհ. Սէնտրէյի կտրած տեղւոյն, մանաւանդ թէ յառաջագոյն յիշուած եւ այսօր ունեցած տեղւոյն՝ հաւասա՞ր է, նմա՞ն է. եւ արդեօք յարմա՞ր՝ որ հոն աստուածային պաշտամունքներն առանց արգելքի եւ անհանգստութեան կարենան կատարուիլ: Երբ ջրերն ողողեն — եւ ուրիշ անյարմար ժամանակները, — կրնա՞յ հոն աստուածային պաշտամունք կատարուիլ: — Թող ըսէ վկան:

Երրորդ. Յիշեալ Յովհ. Սէնտրէյի ժամանակն, երբ եկեղեցին առնուեցաւ, առնուեցա՞ն նաեւ բողոքական եկեղեցւոյն քահանային եւ ուսուցչին՝ որոշեալ ցանելու եւ հերկելու յարմար երկիրները: Եւ եթէ թողուեցան այն

ատեն, անկից ետքն, ո՞ր միջոցին, ո՞ր ժամանակն առնուեցան. եւ ո՞վ առաւ: — Տրուեցա՞ւ ասոնց տեղ ուրիշ երկիր. ուսկից որ եկեղեցին եւ իւր պաշտօնատէրները կարենան ապրիլ: — Դարձեալ.

Չորրորդ. Երբ՝ իբր 1781ին, այն ատենի քահանան Յովսէփ Բ. Վեհափառ Կայսեր աղերսագիր մը ներկայացուց, հոս Եղիսաբեթուպոլսոյ մէջ՝ զանգակներուն նկատմամբ — որ այն միջոցին դղեակն էին, եւ որոնց վրայ բողոքականք իրաւունք մ'ունենալ կը համարէին. — աղերսագրին ի՞նչ պատասխան եկաւ. որո՞ւն ձեռքը հասաւ. եւ ի՞նչ հրաման տրուեցաւ զանգակներուն համար: Այս հրամանին նկատմամբ, այն ատենի դատաւորն որո՞ւն յայտնեց բան մը. եւ ի՞նչ կերպով: — Վերջապէս

Հինգերորդ. Ի՞նչ գիտէ վկան բողոքականաց գերեզմաննոցին վրայօք: Ա՞յնչափ էր անոր տարածութիւնն, որչափ որ է այսօր, կամ ընդհակառակն անկէ կտրուեցա՞ւ բան մը: Ու եթէ կտրուեցաւ, որո՞ւն հոգաբարձութեանը ժամանակ պատահեցաւ այս բանս: Երկու կողմանէ, ու վերէն, ո՞րչափ առնուեցաւ ու տրուեցաւ անկէ քաղաքին Դոնորոգին: — Ի մասնաւորի տեսա՞ծ ու լսա՞ծ է վկան, որ այն միջոցին, երբ թմբերը կանգնուեցան՝ հին դագաղներուն մէջ հանգչող դիակներն ալ կտրուած ըլլան: — Այս բաները՝ վկան, ամէն պարագաներովը, երդում ընելէն ետեւ, ըստ իր խղճմտանացն

ըսէ. — Նաեւ անոնց անունները որոնք այս նիւթիս մէջ գործակից եղած են։ — —

Տասնուվեց վկայ ներկայացան ատենին, ու անոնք վերոյիշեալ հարցմանց ու կէտերուն վրայ, այլեւայլ կերպով յայտնեցին իրենց կարծիքն ու գիտութիւնը. բայց մէկն աւելի յայտնի ու մեկին, մէկալն աւելի մութ ու անորոշ։ Սակայն գրեթէ ամէնք մի եւ նոյն բանը վկայեցին։

Ասոնց մէջէն, յառաջ կը բերեմ միայն մէկ երկու հոգւոյ վկայութիւնն, որովհետեւ գրեթէ միեւնոյն վկայութիւններն ու պատասխանները տուած են մէկալներն ալ։

Արդ՝ առաջին վկան էր՝ Յովհաննէս Ռօպ. 56 տարեկան, ուղղափառ կաթուղիկեայ։

Առ առաջին կէտն այսպէս վկայութիւն տուաւ։ Ես յայտնի ու ապահովապէս չեմ գիտեր։ Բայց իբրեւ ստոյգ՝ անանկ լսած եմ մօրաքուրէս, որ Եղիսաբեթուպոլսեցի էր, եւ բողոքական քահանային կնիկն, որ հիմակուան ուղղափառ հունգարական եկեղեցին. Աբաֆի իշխանին մահուան ժամանակն առնուեցաւ բողոքականներուն ձեռքէն։ Մինչեւ այն ատեն բողոքականներունն էր։ Ու այն ատեն բողոքական եկեղեցւոյն տեղ, Պուտէի կոչուած փողոցին մէջ, տուին եկեղեցւոյ տեղ մը, ուր որ այսօր Չար Դաւիթ անունով հայ մը կը բնակի։ Բայց ան բանը չլսեցի որ մեծապատիւ փաստաբան Սէնտրէյ առած ըլլայ։ Միշտ ան լսեցի թէ Հայերուն առին։

Առ երկրորդն. Ան բողոքական եկեղեցւոյն առնուելէն ետեւ, իբրեւ փոխարէն՝ Պուտէի փողոցին մէջ տրուած ժողովրդապետական տեղն ալ, Հայերը բողոքականներէն առնելով (թէ ինչ կերպով, չեմ գիտեր) — այնպէս լսեցի որ — ասոր փոխարէն տրուեցաւ անկից ետքն եկեղեցւոյ եւ ժողովրդապետութեան տեղ, ազնուականաց փողոցին մէջ, ուր որ հիմակ Ատոբշային (անշուշտ Ակոբշայ) մահուանէն ետեւ Ջապավա անուն հայ մը կը նստի։ Այս տեղը՝ եկեղեցւոյ յարմար է, բայց չի կրնար համեմատուիլ առնուած եկեղեցւոյն, եւ անկից ետքը՝ Պուտէի փողոցին մէջ տրուած, եւս առաւել, հիմակուան տեղւոյն հետ. որն որ քաղքին ծայրը, հեռու տեղ մըն է, եւ ամենեւին եկեղեցւոյ յարմար տեղ չէ. մէյ մ'անոր համար, որ գնչուներու մէջ է, մէյ մ'ալ որ՝ երբ ջրերը կ'ողողեն ու ցեխ է, հոն եւ ո՛չ իսկ աստուածային պաշտամունք ազատապէս կրնան կատարուիլ։ Մանաւանդ երբ որ ջրերը շատնան, մարդ եւ ոչ հոն կրնայ երթալ։

Առ երրորդն. Երբ որ եկեղեցին առին, այնպէս լսեցի՝ որ ա՛յն բողոքական եկեղեցւոյն վերաբերեալ ամէն եկամտի երկիրներն ալ առնուեցան. Թէպէտ եւ, ինչպէս ի լսելոյ գիտեմ, այնչափ կար, որ անոնցմէ քահանան եւ վարպետը հանգիստ կերպով կրնային ապրիլ։ Առնուեցան նաեւ ա՛ն ցորենը, մսրացորենը, գինին եւ ուրիշ տասանորդներն, որոնք դղեկէն կու գային, աս տեղացի բողոքական քահանաներուն,

անմահ յիշատակաց արժանի Արաֆի իշխանին առենը։ Բայց թէ, առնց առնուելէն ետեւ, տրուեցա՞ւ փոխարէն ուրիշ եկամտի երկիր եւ կամ առնց նման բան մը, չեմ կրնար ըսել։

Առ չորրորդն. Այն աղերսագրին վրայ, զոր բողոքական քահանան, Տէր Պանեային, մատոյց Յովսէփ Բ. Վեհափառ Կայսեր — այն ժամանակ որ Եղիսաբեթուպոլիս եկած էր — նկատմամբ զանգակներուն, որ այն միջոցին դղեակն էին, որ զանգակներն, աղէկ գիտեմ, բողոքականներէն առած հիմակուան ուղղափառ եկեղեցւոյն կը վերաբերէին — նպաստաւոր պատասխան ընդունեցան բողոքականք։ Ես ալ անձամբ ներկայ էի, երբ որ պատուելի Տէր Պանեայի, կայսեր ներկայացուց աղերսագիրը։ Տուած պատասխանն, այն առենի դատաւորին Միքայէլ Չիգիի ձեռքն անցաւ, որ Յովսէփ կայսեր, աղաչանաց թղթին տուած պատասխանն — ինծի՝ իբրեւ այն առենի բողոքական մարդու եւ միանգամայն եկեղեցպանի — այս խօսքերով յայտնեց. Ա՛լ այսուհետեւ ազատապէս կրնաք հնչեցընել զանգակները, մեռել ունեցած առեններդ։

Առ հինգերորդն. Բողոքականաց գերեզմաննոցին տեղն, ես ալ շատ աւելի մեծ գիտեմ, եւ տեսած եմ։ Կան զի շատ առեն չկայ, որ Հայերը՝ մեծկակ կտոր մը քաղքին Գոնորոգին հետ միացուցին։ Թէպէտ ան միտքս չէ, թէ որու՞ն հոգաբարձութեան ժամանակն եղաւ այս գրաւումը։ Սակայն ա՛ն ստոյգ է, թէ շատ աւելի

ընդարձակ էր։ Ան ալ հաստատութեամբ գիտեմ ու յատուկ աչուըներովս տեսած եմ, թէ երբ գերեզմաննոցին թմբերը շինեցին, Հայերը՝ շատ դագաղ, եւ այն դագաղներուն մէջ եղած մարմիններն ալ՝ կտրտեցին։ Աս հարցմանց — ինչպէս կը կարծեմ — ծերերն աղէկ վկայ կրնան ըլլալ։ Աւելի չեմ գիտեր։ —

Երրորդ վկան, պատուական տիկին Յուդիթ Միյկեարդօ, 93 տարեկան, չմիացեալ։

Առ առաջինն. Այսօր ալ կանգուն կեցած ուղղափառ եկեղեցին՝ բողոքականներէն առնուելով՝ ի լոյ գիտեմ, թէ այն տեղւոյն փոխարէն, մեծապատիւ Սէնտրէյ, բողոքականներուն՝ Աղնուականաց փողոցին մէջ — ուր որ կը նստին Հունգուցին որբեւարին եւ Մարգուց, — եկեղեցւոյ տեղ եւ ժողովրդապետական երկիր տուած էր։ Այս տեղն եկեղեցւոյ յարմար էր։

Առ երկրորդն. Գիտեմ, թէ Հայերն առին բողոքականներէն, այ՛ն կտրուած տեղը, զոր Սէնտրէյ տուած էր Աղնուականաց փողոցին մէջ՝ իբրեւ ժամի տեղ։ Բայց թէ ի՛նչպէս. չեմ գիտեր։ Եւ ասոր վրայ, տուին այսօրուան բողոքական եկեղեցւոյն տեղը։ Սակայն, ո՛չ Սէնտրէյին յառաջուան տուած, եւ ո՛չ ալ հիմակուան տեղը, նման է առնուած հին եկեղեցւոյն եւ ժողովրդապետական տեղւոյն։ Ի մասնաւորի, հիմակուան բողոքական եկեղեցւոյն տեղն եւ ոչ ալ եկեղեցւոյ տեղ է. վասն զի հեռու իյնալով՝ երբ ջրերը կը յորդեն եւ ցեխ է, եւ ոչ իսկ կրնայ անոր մօտեցուիլ։ Ուր թողունք որ հոն

աստուածային պաշտամունք ազատապէս կատարելն անկարելի է։

Առ երրորդն. Եկեղեցւոյն առնուելու ժամանակը չառնուեցան բողոքական եկեղեցւոյն ցորենի եւ խոտի դաշտերը, հապա անկից ետքը, Գաբրիէլ Նէմէշի հոգաբարձութեան ատենն՝ իր ամէն այգիներովն, որոնք շատ էին. այնպէս որ եկեղեցւոյ մարդիկն անոնցմով կ'ապրէին։ Բայց թէ անոնց տեղ ուրիշներ տրուեցա՞ն. չեմ գիտեր. եւ ոչ ալ մէկէ մը լսած եմ։

Առ չորրորդն. Միայն այնչափս կրնամ ըսել այս հարցման, որ երբ Յովսէփ կայսր Եղիսաբեթուպոլիս եկաւ, այն ատենի բողոքականքահանան տուաւ Նորին Մեծափառութեանն աղերսագիր մը։ Բայց թէ ինչ կար աղերսագրին մէջ եւ ինչ պատասխան եկաւ, չեմ կրնար ըսել։

Առ հինգերորդն. Գերեզմանոցը՝ շատ աւելի ընդարձակ ու մեծ գիտեմ, քան որչափ է հիմակ։ Ուրիշ բան չեմ գիտեր։ —

Վեցերորդ վկան, պատուաւոր քաղաքացի մը, Մարտինոս Կլէօրֆի, բողոքական, 52 տարեկան։

Առ առաջինն. Որովհետեւ այս բանս շատ հին է, չեմ կրնար գիտնալ. բայց ընդհանուր զրոյցէն, իբրեւ ստոյգ, այնպէս լսած եմ, որ ըսած ըլլան շատ արժանահաւատ մարդիկ, թէ այս հռոմէական կաթուղիկէ եկեղեցին, որ ընդհանուր անուամբ՝ հունգարական կ'անուանուի, հին ատենները՝ ողորմած հոգի Միքայէլ Աբաֆի իշխանէն յառաջ ու իր ժամանակը բողոքական-

ներուն է եղեր։ Բայց թէ ինչ կերպով հռոմէականաց ձեռքն անցաւ, եթէ լսած ալ եմ՝ չեմ յիշեր։ — Լսեցի ալ որ առնուած եկեղեցւոյն տեղւոյն փոխարէն՝ բողոքականաց ուրիշ եկեղեցւոյ տեղ տրուեցաւ, Ազնուական փողոցին մէջ. բայց չեմ կրնար ըսել, թէ ուր էր այն տեղը։

Առ երկրորդն. Թէ այս Ազնուական փողոցին մէջ տրուած տեղն ինչ կերպով, որոնք առած են բողոքականներուն ձեռքէն, եւ անոր տեղ նորէն ուրիշ մը տուած ըլլան, չեմ գիտեր։ Ես միայն հիմակուանը կը ճանչնամ։ Եւ չեմ ալ գիտեր, թէ ինչ ճամբով եղաւ այս բանս։ Ան ստոյգ է, որ քառասուն ֆլորինի գնեցին։ Բայց անանկ անյարմար տեղ մըն է, որ ցեխ եղած առեն եւ մանաւանդ երբ որ ջրերը կը շատնան, հոն երթալ անկարելի է։ Այս տեղն՝ եկեղեցւոյ համար ցած է։ Գնչուներուն մէջն ալ ըլլալով՝ անոնց խօսակցութիւնները մարդուն երբեմն գայթագղութիւն ու անհանգստութիւն կը պատճառեն.

Առ երրորդն. Ես ի լրոյ միայն կրնամ ըսել, թէ բողոքական եկեղեցին եւ անոր մարդիկն՝ արտականներ, խոտի դաշտեր, անտառներ, այգիներ ունեցած են։ Բայց ասոնց՝ որչափ եւ ուր ըլլալը — երբ՝ եւ որոնց ձեռօք առնուած ըլլալն որոշ չեմ գիտեր։ Թէ հիմակ քիչ ունին՝ ան ստոյգ է։

Առ չորրորդն. Աս ալ լսած եմ, որ երբ Յովսէփ Կայսր հոս եկաւ — ժամանակը ճշդիւ

չեմ կրնար ըսել — այն ատենուան բողոքական քահանան, որուն անունը չեմ յիշեր՝ աղերսագիր մատոյց բերդն եղած զանգակներուն համար, զորոնք բողոքականք կը պահանջէին։ Թէ այս աղերսագրին ինչ պատասխան եկաւ, չեմ գիտեր։ Այսչափս լսեցի իբրեւ ստոյգ, որ անկից ետքը բողոքականք ալ, այնպէս գործածեցին այն զանգակներն, ինչպէս կաթուղիկէականները։ — Այս հարցման վրայօք ուրիշ բան չեմ գիտեր։

Առ հինգերորդն. Ես ալ գիտեմ թէ բողոքականաց թաղուելու տեղն աւելի ընդարձակ էր, քան որչափ է հիմակ. բայց քաղաքը թումբ մը քաշեց անոր քով եւ բաւական կտոր մը Դռնորդին տուաւ։ Թէ երբ կանգնուեցաւ այս ամբարտակն եւ ով էր քաղքին հոգաբարձուն, մոռցած եմ։ Բայց թէ այն առթիւ դագաղներ եւ անոնց մէջ հանգչած մարմինները կտրտած, մէկուն գլուխը, մէկուն ոտքը հեռացուցած ըլլան՝ ստուգութեամբ կրնամ վկայել, որովհետեւ յատուկ աչուըներովս տեսած եմ։ Ասոր նկատմամբ բողոքականք գանգատեցան այն ատենուան դատաւորին, Նիկողայոս Չիգիին. բայց ինք պատասխան տուաւ՝ թէ “չորտմին շատ, որովհետեւ ամէնքը փոսի մը մէջ ալ կրնան սղմիլ։„

Աս ամէն վկայութիւններէն, ժամանակակից տարեգիրներէն, կահագիրներէն եւ արձանագրութիւններէն ու փոխն ի փոխն եղած պաշտօնական նամակագրութիւններէն եւ տեղեկագրութիւններէն իբրեւ ստոյգ կրնանք հե-

տեւցընել, Նախ. Թէ այսօրուան Հունգարացւոց կոչուած ուղղափառ եկեղեցին, հին առենները՝ բողոքականացն է եղեր. Թէ ունէին անշարժ երկիրներ ու կալուածներ, որոնք՝ իրենց այնչափ եկամուտ կը բերէին, որ եկեղեցին եւ անոր պաշտօնատէրներն ըստ պատշաճի անոնցմէ կրնային ապրիլ: — Երկրորդ Թէ, Թէպէտ Սէնտրէյ, արքունական գանձուն հոգաբարձուն, այս՝ իրենցմէ առած եկեղեցւոյն փոխարէն ուրիշ տեղ մը տուած է, բայց Հայք զա՛ն ալ անոնցմէ յափշտակած ու ողորմելի ճախճախուտ տեղ մը տուած են քաղքէն դուրս, գնչուներուն տեղն՝ որ բոլորովին անյարմար էր աստուածային պաշտամունք կատարելու. չէ՛ Թէ միայն գնչուներուն պատճառաւն, որ հոն կը կռուըտէին ու կը կանչուըռտէին՝ երբ բողոքականք իրենց աստուածային պաշտամունքը կը կատարէին, հապա նաեւ անոր համար, որ ցած տեղ մ'ըլլալով՝ ջրով կը լեցուէր. եւ այս միջոցին, նոյն իսկ անոր մօտենալն անկարելի էր:

Երրորդ. Անտարակոյս բողոքականաց գերեզմաննոցն աւելի ընդարձակ էր. եւ Հայք, անկէ բաւական մաս մը կտրելով՝ կալուածատէրութեան հետ միացուցին. անշուշտ անոր համար, վասն զի բողոքականաց թիւը նուազելով՝ յառաջուան չափ գերեզմանատեղւոյ պէտք չունէին: Բայց գովելի գործք մը չէր ա՛ն — որ բոլորովին ստոյգ պիտի չըլլայ — Թէ երկիրը՝ գերեզմաննոցէն զատելու համար փոս փորած կամ՝ ամբարտակ շինած առեններին, բողոքակա-

նաց մեռելներուն դագաղներն ալ կոտրտած՝ մեռելները տեղէն շարժած ու նետած ըլլան։ — Դատաստանական երկարատեւ խնդրոց ու քննութեանց հետեւանքն ան եղաւ, որ Դրանսիլուանիոյ վերին կառավարութիւնը հրամայեց, (1817 Մայ. 8ին գլուժէն) Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութեան, որ բողոքականներուն — իրենցմէ առնուած եկեղեցւոյն, արօտաստաններուն, եւայլն. փոխարէն՝ — մէկ ամսուան միջոցին մէջ ուրիշ տեղեր տայ։ Եւ այս բանիս վրայօք տեղեկացընէ զարքունական վերին կառավարութեան խորհուրդը։

Ահաւասիկ հրամանագրին թարգմանութիւնը.

“Յանուն ամենագթած Տեառն մերոյ, սըրբոյ կայսերական թագաւորական եւ առաքելական Վեհափառ կայսեր, իշխանի մեծին Դրանսիլուանիոյ, տիրոջ սիգուլական Վիճակացն. եւն։

“Խոհեմ եւ շրջահայեաց արանց, ողջոյն շատ եւ շնորհք՝ մեր կայսերական տեառնէն բազմացի։ — Այս մեծ իշխանութեան մէջ եղած բողոքական եկեղեցւոյն վերին ատենին — Դեկտ. 29ին — մեր առջեւը դրած տեղեկութիւններն, որուն համեմատ, այն քաղքին բողոքական եկեղեցին — իրմէն առնուած եկեղեցական շէնքերուն եւ եկամուտներուն փոխարէն՝ եկեղեցւոյ, ժողովրդապետութեան եւ ուսուցչի տեղ, դարձեալ՝ կանոնիկոսական երկիրներ կը խնդրէ, ներփակուած թղթերովը մէկ տեղ — բնագիրները՝ մեզի դարձնելու պայմանաւ —

Ձեզի կը խրկենք, այն հրամանաւ, որ վերին եկեղեցական ատենին փափաքը գոհ ընէք։ Եւ այս կարգադրութեան, ինչպիսի՛ կերպով կատարուելուն վրայօք, մինչեւ գալ Յունիս ամսոյն վերջը՝ Ձեր տեղեկութիւնները մեր արքունական Կառավարութեան խորհրդին առջեւը դնէք․

“Վեհափառական բարեյօժար կամօք կը մնամ․

“Տուեալ՝ Դրանսիլուանիոյ մեծ իշխանութեան Թագաւորական Կառավարութենէն ի Գլուժ․ յամի Տեառն 1817․ Մայիս 8։

Տ․ Կ․ Գ. Լ. Պանֆի յ. ձ.ո

Եղիսաբեթուպոլսոյ ազգայինք առաջինկայ հրամանագրին հետեւութեամբը շատ նեղ վիճակի մէջ մտան։ Ծանր էին բարձրագոյն իշխանութեան առջեւն իրենց դէմ եղած ամբաստանութիւնները․ բայց աւելի ծանր՝ իրենց դէմ եղած որոշումն։ Ասոր մէջէն դիւրութեամբ ելլել չէին կրնար։ Սակայն խնդիրն երկարեցին եւ դարձուածքով մը՝ գտնուած նեղ վիճակէն ազատեցան։

Առաջին գործքն եղաւ, որ իրենց մտերիմներուն եւ լաւազգածներուն խորհուրդը խնդրեցին։ Ասոնք ան խորհուրդը տուին, որ խնդիրն ուրիշ կերպով՝ նորէն վերին Կառավարութեան առջեւը դնեն։ Ուստի քաղաքաբաշխութիւնն ամէն ոյժը ժողովելով՝ Նոյ․ 18ին, օրինաց վրայ յեցած պատճառներով՝ տեղեկագրութիւն մը մատոյց վերին Կառավարութեան։

Կառավարութեան վերին խորհուրդն աս տեղեկութիւններով շատանալով՝ Դեկտ. 31ին, 12.158 թուականով բողոքական եկեղեցական վերին ատենին հաղորդեց, որ իրեն (կառավարութեան) խրկած բոլոր պատճէններն ետ կը դարձընէ. եւ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան յառաջ բերած պատճառները նկատելով եւ զանոնք իրաւացի համարելով՝ առ այժմ բողոքականաց եկեղեցւոյ, տեղեր եւ կանոնիկոսական երկիրներ կտրել տալ չի կրնար։

Սակայն բողոքականք այս նոր կարգադրութեան վրայ գոհ չեղան։ Խնդիրը՝ նորէն ձեռք առին. եւ կրկին ու կրկին գրեցին կառավարութեան, ստիպելով զինք, որ մէյ մ'որոշածը գործադրէ. եւ րոպէ մը յառաջ գոհ ընէ իրենց իրաւացի պահանջքը։

Վերջապէս կառավարութիւնը շատ ստիպումներէն ձանձրացած, 1827, Աւգ. 21ին, նոր որոշում մ'ըրաւ։ Ասոր մէջ կը հասկըցընէ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան՝ որ 1817ին տուած տեղեկութիւններն ու պատճառաբանութիւնները, չեն արժեր. որովհետեւ առաջիկայ դէպքին վրայ չեն կրնար մերձեցուիլ։ — Ուստի նախընթաց (1817, Դեկտ. 31, 12.158 թուականով) որոշմանը բոլորովին հակառակ՝ կը հրամայէ Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան, որ բողոքականաց՝ եկեղեցւոյ տեղ եւ կանոնիկոսական եկամտի երկիրներ կտրէ. ապա թէ ոչ՝ հրամանին գործադրութեանը համար յանձնակատար մը կը խրկէ քաղքին վրայ։ —

Ասով ամէն բան փոխուեցաւ: Բոլորովին նոր ու տարօրինակ հրամանագրին վրայ Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութիւնն ու ազգայինք թէպէտ արտաքոյ կարգի այլայլեցան ու զայրացան. բայց չշփոթեցան: Շուտ մը ընդհանուր ժողովք գումարելով՝ որոշեցին, որ նորէն գրեն վերին կառավարութեան: — Իրօք, 1827. Նոյեմբ. 2ին, ընդարձակ տեղեկագրութիւն մը մատոյց հասարակութիւնը վերին կառավարութեան: — Ասոր մէջ՝ օրէնքներէն, բարձրագոյն հրամանագիրներէն ու կայսերական արտօնագրութիւններէն ցուցընել կը ջանայ որ բողոքականաց եկեղեցւոյն պահանջմունքներն ամէնեւին հիմն ու տեղի չունին:

Թուղթը՝ Նոյ. 6ին՝ 2520 թուականով, խրկեց քաղաքաբաշխութիւնը, վերին կառավարութեան:

Աւասիկ թղթին հայերէն թարգմանութիւնը:

"Մեծապատիւ եւ ազնուամեծար խորհուրդ.

"Մեծապատիւ արքունական կառավարութեան վերին խորհրդին, առաջիկայ տարւոյն Ագոստ. 21ին՝ 7669 թուականով տրուած այն բարերար հրամանագիրն, որուն ձեռօք պարտաւորութիւն կը դրուի Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան վրայ, որ բողոքական եկեղեցւոյն համար, եկեղեցւոյ եւ ժողովրդապետութեան յարմար տեղեր եւ եկամուտ երկիրներ կտրէ. միանգամայն բողոքականաց գերեզմաննոցին տեղն՝ իր վաղեմի սահմանին մէջ դնէ — քաղաքային

խորհրդին որոշմանը համեմատ, մեր հասարակութեան առջեւը հրատարակուեցաւ։ Եւ որովհետեւ այս Մեծ իշխանութեան մէջի՝ բողոքական եկեղեցւոյն առեանն, այս նիւթիս նկատմամբ, զմեզ նորէն ու նորէն ամբաստանեց՝ մենք զմեզ վերջին ատիճանի վշտացած կը գտնենք։ — Այս պարագաներն զմեզ կը պարտաւորեն, որ արքունական մեծապատիւ ատենին առջեւը, նոր ամբաստանութեանց դէմ, նոր պատճառներ աւելցընենք՝ այնչափ աւելի, որչափ հաստատութեամբ համոզուած ենք, թէ բարձրագոյն կառավարութեան ատենին դիմելէն՝ զմեզ ոչ ոք կրնայ արգելուլ։

"Արդէն ասկից շատ յառաջ՝ բողոքական եկեղեցւոյն վերին ատեանը խնդրած էր, ամենապատիւ արքունական վերատեսչութեան խորհրդէն, որ մեր հասարակութիւնն, իրեն եկեղեցւոյ ու ժողովրդապետութեան տեղեր եւ եկամուտ երկիրներ կորեւ տայ։ Սակայն մեծապատիւ կառավարութիւնն — ինչպէս պաշտօնական արձանագրութիւններն (acta) կը ցուցընեն — 1817 Դեկտ. 31ին տուած հրամանագրովը՝ մեր հակառակ պատճառներն, այնպէս օրինաւոր եւ իրաւացի գտաւ, որ յիշեալ նիւթին նկատմամբ բողոքական եկեղեցւոյն մատուցած աղաչանքը մերժեց։ — Երբ մենք, այս հրամանագրին հետեւութեամբն անվրդով կը կենայինք, ու եւ ոչ մոքերնէս կրնայինք անցընել, որ այս հրամանը դարձեալ փոփոխութեան տակ կարենայ իյնալ — առանց մեծապատիւ բողոքական եկեղեցւոյն

*վերին ատենին գրած աղաչանացնոր Թուղթը մեզի հաղորդելու, առանց անոր մէջ բովանդակուած պատճառները տեսնելու, զարմանալեօք ընդունեցանք նոր հրաման մը։ — Ասկէ ստիպուած, մեր նորագոյն պատճառներն, ամենապատիւ արքունական վերատեսչութեան առջեւը խոնարհ մեծարանօք դնելու կը համարձակինք՝ յաջորդներու մէջ.*

“*Ա.* 1777. *Ապրիլ* 17*ին, տրուած արքունական պատասխանին, եւ* 1781 *Աւգոստ.* 9*ին, ամենապատիւ արքունական կառավարութեան տուած հրամանին համեմատ՝ որոշուած է, որ եկեղեցւոյ եկամտի երկիրներ կտրուին, տրուին, միայն հասարակաց երկիրներէն։ — Արդ՝ այս քաղքին եւ անոր շրջակայ կալուածներուն մէջ, ասանկ երկիրներ չկան։ Հոս՝ ամէն հասարակաց երկիր* (commune terrenum), *քաղքին քաղաքացեացը մէջ բաժնուած է։ Ուստի երկիր ու տեղ չկայ, ուսկից որ բողոքական եկեղեցւոյն խնդրած կանոնիկոսական մասը կարենանք կտրել ու տալ։*

“*Բ. Թէ մեր հասարակութիւնը, բողոքական եկեղեցւոյն կալուածներն ու եկամտի երկիրներն առած, գրաւած կամ զանոնք ծախած ըլլայ՝ երբեք մէկը չկրցաւ ցուցընել։ Իսկ եթէ անոնք առանց օրինաւոր ճամբու* (per omne inconcessum) *հռոմէական կաթուղիկէ եկեղեցւոյն ձեռքն են, թող բողոքական եկեղեցին, իր պահանջմունքն, անոր դէմ ընէ, եւ ոչ թէ մեր հասարակութեանը դէմ։ — Բայց այն ատենն*

ալ իր պահանջմունքն օրինաւոր չէ. որովհետեւ նոյն ինքն օրէնքները հաստատած, որոշած են, որ եթէ մէկ եկեղեցին աւելի եկամուտ ունի քան մէկալը, այս մէկալ եկեղեցին՝ իրաւունք չունի անկէ բան մը պահանջելու։

“Գ. Ինչպէս Եղիսաբեթուպոլսոյ բողոքական եկեղեցւոյն յիշատակարաններէն կը տեսնուի. պահանջող եկեղեցին, 1677ին, միայն երկու կտոր անշարժ կալուած ունէր։ — 1714ի արձանագրութիւններուն մէջ այնպէս կը գտնենք, որ երեք խոտի դաշտ ունեցած ըլլայ։ Բայց ինչպէս կ՚երեւայ, մարդուն մէկն՝ աս տեղերուն միայն երկու մասին գործածութիւնը տուած է եկեղեցւոյն. որովհետեւ երկրորդ էջին մէջ, այն բացատրութիւնը կայ, որ փոխնիփոխն (alternatim) խոտը կրնան հնձել։ — Ուսկից յայտնապէս կը հետեւի, թէ բողոքական եկեղեցին, երբեք խոտի դաշտեր ունեցած չէ, իբրեւ յատուկ ստացուածք։ Արդ՝ ինչ որ չունէր, զանիկա մէկն իրմէն չէր կրնար առնուլ։

“Դ. Այն արձանագրութենէն — ուստի եւ հակառակորդին յատուկ մուրհակներէն (documentum) — կը տեսնուի թէ, հռոմէական կաթուղիկէ քահանային ձեռքն եղած ըլլան բողոքականաց եկեղեցւոյն քանի մը երկիրները։ Արդ՝ եթէ գրեթէ հարիւր տարիէ ի վեր այն երկիրներն ուղղափառ եկեղեցւոյն ձեռքն են, զանոնք — 1759ի, Աւգոստ. 6ին — փոխադրութեան (transactionalis) պատճէնը՝ հասարակութեան տալով՝ ամրացուց։ Բողոքական

եկեղեցին, այս փոխադրութիւնը ճանչցաւ. անոր դէմ երբեք չբողոքեց: Ուստի եթէ բնութեամբ ալ առնուած ըլլայ այն երկիրն՝ ալ զօրութիւն չունի վերաստանալու բողոքումը. որովհետեւ Եռեակ մատենին, Ա. Մասին ՀԲ. Գլխուն, Երկրորդ յօդուածին համեմատ՝ եկեղեցական ստացուածոց մէջ հաստատուած նախագրաւումը՝ արդէն իսկ զանիկա օրինաւոր ըրած է: — Իսկ ան, որ եթէ մէկն եկեղեցիէ մը, բան մ'առած կամ գրաւած է, այն գրաւուած բանին կամ կալուածին տեղը, մեր հասարակութիւնն պարտական ըլլայ ուրիշ մը տալու, օրինաց եւ իրաւանց մէջը չկայ:

"Ե. 1813ին երդման կոչուած վկաններուն խոստովանութիւններն ամենեւին զօրութիւն չունին: — Վկանները՝ կը վկայեն ի լսելոյ եւ ի լրոյ: Եւ ուրիշ բան չէին կրնար վկայել. վասն զի բողոքական եկեղեցւոյն արձանագրութեանը համեմատ, այն կալուածներն՝ արդէն 1750ին, պահանջող եկեղեցւոյն չէին:

"Զ. 1752ին հրատարակուած երկրակալութեան ցանկէն (urbarialis conscriptio) — երբ Պաշպալովի կալուածատէրութիւնը դեռ մեր հասարակութեանը վրայ անցուած չէր — յայտնապէս կը տեսնուի որ, թէ ուղղափառ հռոմէական կաթուղիկէ ու թէ միացեալ յունադաւան կրօններուն եկեղեցիներուն կալուածները՝ կորուած, տրուած էին: Ուստի հայ հասարակութիւնը բողոքական եկեղեցիէն, բան մը գրաւած չի կրնար ըլլալ:

“Է. Երբ 1758ին Պաշպալովի կալուածատէրութիւնը մեր Հասարակութեան տրուեցաւ, ինչպէս ուրիշ երկրակալութեան ցանկէ մը կ'երեւայ, այն միջոցին միայն Հռոմէական կաթուղիկէ եւ միացեալ յունական եկեղեցիներուն համար կտրուեցան կանոնիկոսական տեղեր եւ ոչ թէ բողոքական եկեղեցիներուն համար։ — Մեր Հասարակութիւնը՝ մինչեւ ցայսօր, ունի միայն զա՛ն. — եւ ոչ աւելի — ա՛յն օրինաւոր իրաւամբ, ինչ որ այն ատեն արքունական գանձէն ընդունեցաւ։

“Ը. Մինչեւ հիմակ, Նոր ու չլսուած խընդրուածքի տեսակ մըն է, որ եթէ եկեղեցի մը՝ գէշ եւ անյարմար տեղւոյ վրայ շինուած է, զանիկա՝ աւելի լաւ, յարմար, հանգիստ եւ ապահով ընելու համար, չէ՛ թէ ինք՝ եկեղեցին եւ անոր անդամները, այլ Հասարակութիւնն, իւր սեպհական երկիրներէն տեղ տալով՝ լաւագոյն եւ ապահովագոյն ընելու է։ — Արգելուած չէ բողոքականաց, որ — եթէ իրենց եկեղեցւոյն տեղն, ինչպէս կ'ըսեն, անյարմար է — լաւագոյն տեղ մը գնեն եւ անոր վրայ եկեղեցի կանգնեն։ Բայց տեղ մը գրուած չէ, թէ զաս ընելու պարտական ըլլայ հռոմէական կաթուղիկէ եկեղեցւոյն Հասարակութիւնը։

“Թ. Երբ բողոքական եկեղեցին ժամ շինելու համար ողորմութիւն ժողովելու եկաւ՝ (1723ին) ճանչցաւ ու ցուցուց, որ աղէկ տեղ ու աղէկ եկեղեցի չունի. յարմարագոյն եկեղեցի մը կանգնել կ'ուզէ։ Այս առթիւ մեր Հասարա-

կութիւնն ալ, իրեն դրամական օգնութիւն մատոյց։

“Ժ. Բողոքական մեծապատիւ եկեղեցական ատեանը կը հաստատէ, թէ մենք — չորս ընկալեալ կրօնները հաւասարապէս պարտաւորող իրաւանց եւ երկրին օրինաց համեմատ — ժամի տեղ, քահանայի եւ վարպետի եկամտի երկիրներ, պարտական ենք տալու իր եկեղեցւոյն։ Բայց ասիկա, ամէն օրական սովորութիւններուն հակառակ բան մը կը պարունակէ։ Որովհետեւ միութիւնն եւ անոր վրայօք եղած օրէնքները, զա՛ն միայն կը հաստատեն, որ իւրաքանչիւր ոք իր կրօնն ազատապէս կարենայ գործադրել։ Թէ որ քանի մը տանուտէր ուզեն եկեղեցւոյ տեղ գնել, եկեղեցի կանգնել իրենց յատուկ ստակովը, այս բանիս մէջ, մէկն իրենց արգելք մը չկարենայ դնել։ Բայց օրէնք մը երբեք ըսած չէ, որ մէկ կրօնի մէջ եղած հասարակութիւն մը, իր մէջը տեղաւորուած ուրիշ կրօնի մարդիկներուն համար, իր յատուկ երկիրներէն, ձրի եկեղեցւոյ տեղ եւ ժողովրդապետութեան երկիրներ տալու պարտական ըլլայ։ Եթէ այս բանս հիմ մ'ունենար, այն ատեն, երբ լութերականք եւ կալուինականք այս տեղս գաղթելու ըլլան, ամէն ատեն եւ ամենուն եկեղեցի եւ ժողովրդապետութեան տեղեր տալու պարտական պիտի ըլլայինք։ Վերջապէս

“ԺԱ. Անալստոյգ չէ ու չէ ապացուցուած, որ բողոքական եկեղեցւոյն գերեզմաննոցէն, տեղ առած ըլլայ մեր հասարակութիւնը. որովհետեւ

ինչ թաղուելու տեղ որ ունէին այն միջոցին երբ արքունական կալուածատէրութիւնը մեզի յանձնուեցաւ, մինչեւ այսօր իրապէս կեցած մնացած է։ Բողոքական եկեղեցին ասոր հակառակը երբեք հաստատած չէ. ու չի կրնար հաստատել։

"Այսպէս ուրեմն, երբ մեր քաղաքային հասարակութիւնը՝ տէրութեան օրէնքներովն եւ այս նիւթիս վերաբերեալ քանի մը վերին իշխանական կարգադրութիւններով՝ յայտնապէս ցուցուց.

"ա. Թէ, կանգուն կեցած վերին հրամանները՝ կանոնիկոսական եկամուտի տուչութիւնը, հոն միայն կը կարգադրեն, ուր եւ որ քաղաքներուն մէջ հասարակաց երկիրներ կան.

"բ. Թէ այս քաղքին ամէն երկիրներն, առանձնական քաղաքացւոց մէջ բաժնուած ըլլալով՝ հասարակաց երկիրներ չունի. ուսկից որ պահանջող բողոքական եկեղեցւոյն համար, հրամայուած երկիրները բաշխուին.

"գ. Թէ մենք, երբեք անանկ երկիր մ'առած չենք, որուն վրայօք հիմնական կերպով մը կարենայ բողոքական եկեղեցին ըսել, թէ իրմէն գրաւած առած ենք։ — Երբ ցուցուցինք.

"դ. Թէ խառն տուչութեամբ (mixta donatio) մեր սեպհական ստացուածքն եղած երկրակալութիւնները, հիմակ ալ այնպէս են, ինչպէս որ մեր Վեհափառ իշխանապետէն մեզի տրուած ատեն. եւ անոնց մէջ — օրինաւոր ճամբէն դուրս — մէկն զմեզ անհանգիստ ընել չի կրնար։ — Երբ ցուցուցինք վերջապէս.

“Ե. Թէ նոյն իսկ պահանջող բողոքական եկեղեցւոյն յատուկ մուրհակներն, իրեն դէմ կը վկայեն — թէ ամէն բանի մէջ իրաւունք ունինք. թէ մենք երբեք մէկէ մը բան մ'առած չենք, զոր ետ տալու հարկադրինք։ — Երբ ամէն կերպով ցուցուցինք, որ մշտնջենաւոր տուչութեամբ մեզի տրուած իրաւունք մը չենք կրնար կորսնցընել. հաստատութեամբ կը յուսանք որ ամենապատիւ արքունական կառավարութեան վերին խորհուրդն՝ արդարապէս եւ հայրական գթութեամբ, ինչպէս որ 1817 Դեկտ. 31ին տուած հրամանագրովն որոշեց, որ բողոքական եկեղեցւոյն ամբաստանութիւններն անհիմն են ու զինք իր ամէն պահանջմունքներովը մերժեց. այնպէս ալ հիմակ՝ երբ մեր հասարակութիւնը, բողոքական եկեղեցւոյն, վերին իշխանութեան նոր ամբաստանութեանցը վրայ աւելի յայտնի ու լուսաւոր կերպով կը ցուցընէ իր իրաւունքները, կը յուսայ թէ բողոքողները գթածաբար մերժել պիտի հաճի։

“Ուստի որդիական մեծարանօք կը խնդրենք, ամենապատիւ խորհրդէն, որ այս նիւթիս նկատմամբ եղած պատճառներն ի նկատի առնելով՝ բարեհաճի զմեզ բողոքական եկեղեցւոյն պահանջմունքներէն ազատ ընել։ — Կը խնդրենք միանգամայն, որ բողոքող եկեղեցւոյն եւ անոր անդամոցն իմացընէ, որ եթէ եկեղեցւոյ տեղերու, քահանայի եւ վարպետի երկիրներու պէտք ունի, զանոնք՝ ուրիշ քաղաքներուն սովորութեանը համեմատ, իւր յատուկ ստակովը գնէ

եւ զմեզ՝ մերինին մէջ անհանգիստ չընէ։ — խորհուրդն այս բանս արդէն, 1817ին տուած հրամանագրովն այսպէս ճանչցաւ եւ այսպէս ընդունեցաւ։ Ուրիշ կողմանէ, մասնաւոր մեծարանօք ենք՝ ամենապատիւ խորհրդոյդ․

Եղիսաբեթուպոլիս 1827․ Նոյեմբ․ 22․

պարտաւորեալ ծառայք

Եղիսաբեթուպոլսոյ եղբուեալ հասարակութիւնը։»

Աս հիմնովին ու զօրութեամբ գրուած տեղեկութիւններն ունեցան իրենց ազդեցութիւնը։ Վերին կառավարութիւնը համոզուեցաւ, որ բողոքական եկեղեցւոյն պահանջմունքներն ստուգիւ անտեղի են եւ իրաւունքն ազգայնոցն է։ Խնդիրը մէկդի դրաւ, որ մնաց մոխրոյ տակ։ — Կամաց կամաց ամէն բան մոռցուեցաւ։ Զեղիսաբեթուպոլսոյ հասարակութիւնն անկից ետքն ոչ ոք անհանգիստ ըրաւ․ եւ մնացին Հայք այն վիճակին մէջ, որ վիճակին մէջ որ անկից յառաջ էին։ Այնուհետեւ ոչ ոք զիրենք ստիպեց որ բողոքականաց եկեղեցւոյ տեղ՝ ու ժողովրդապետին եւ ուսուցչին եկամուտ երկիրներ կտրեն։

Խնդիրն անով վերջացաւ, որ դարուս երկրորդ կիսուն սկիզբները՝ Հալլէր կոմսուհին, բողոքական եկեղեցւոյն պարգեւեց, քաղքին մէկ հիւսիսային արեւմտեան ծայրն ունեցած ագարակն՝ իւր տնովը։ — Ասոր մէկ մասին մէջ կը բնակէր բողոքական քարոզիչը, մէկալին մէջ կը կատարուէին աստուածային պաշտամունքները՝ մինչեւ վերջին տեններս։ Երբ բողոքական եկե-

ղեցին 1894ին, ունեցած մէկ եկամուտ տունը ծա-
խելով՝ կանգնեց 1896ին՝ ժողովրդապետութեան
շէնքին քով՝ հին խրճիթին տեղ եկեղեցի մը՝ ա-
մէն բան մոռցուեցաւ. ու տիրեց խաղաղութիւն։

## 19.

Եղիսաբեթուպոլսոյ հասարակութեան
տրուած այն առանձնաշնորհութիւնը, որուն
համեմատ, օտարազգիք պիտի չկարենային բնա-
կիլ իրենց քաղաքը՝ կամաց կամաց սկսաւ կոր-
սնցընել իր ոյժը։ Ասոր բուն պատճառն եղան
ազգայինք. վասն զի չարաչար գործածեցին
իրենց տրուած արտօնութիւնը։ Որովհետեւ երբ
մէկ կողմանէ սաստիկ կ'ընդդիմանային, որ չըլլայ
թէ առեւտրէ ու երկրագործութենէ հասկցող
կարգաւորեալ, ազնուական ու հարուստ մարդ
իրենց մէջ գայ բնակի, — մէկալ կողմանէ շատ
սիրով կ'ընդունէին անանկ հասարակ արուես-
տաւոր, գործավար ու բանէ չհասկցող մար-
դիկ, որոնք իրենց առեւտրին ու շահուն վնաս
չէին կրնար հասցընել։

Սակայն ժամանակ անցնելէն ետեւ, գըտ-
նուեցան անանկ հայամէտ, քսուըրտող օտա-
րազգիներ, որոնք՝ իրենք զիրենք ազգայնոց
սիրցուցած ըլլալով՝ Եղիսաբեթուպոլսեցւոց
շնորհիւը կրցան քաղաք փոխադրուիլ եւ հոն
տուն ու տեղ ստանալ։ — Այս բանս ըստ
ինքեան արտօնութեանց դէմ էր։ Բայց Եղի-
սաբեթուպոլսեցւոց հաւանութեամբն ըլլալուն՝
ձայն հանող չեղաւ։ Երբ ետքէն ուրիշ օտար-

*ներ ալ Եղիսաբեթուպոլիս գտնուող Հունգարացւոց գործքին յաջողելն ու լաւ երթալը տեսան, իրենց ալ բաղձանք եկաւ Եղիսաբեթուպոլսոյ քաղաքացի ըլլալու։ Բայց որովհետեւ այս բանս Եղիսաբեթուպոլսեցւոց քմացը համաձայն չէր՝ իրենց վախճանին չկրցան հասնիլ։ Ու քաղաքը կրցաւ բաւական ժամանակ յաջողցընել, որ օտար մարդ հոն ոտքը չդնէ։*

*Սակայն գտնուեցան անանկ ազդեցութիւն ունեցող օտարականներ, որոնք տեսնելով որ մէկ երկու արուեստաւոր ու Հայոց սիրելի անձ կը բնակի քաղքին մէջ՝ այլեւայլ պատճառներու համար խնդրեցին, որ իրենք ալ Եղիսաբեթուպոլսեցի բնիկ կարենան ըլլալ։ Երբ ազգայինք, իրենց իրաւանցը վրայ յենլով, ոտք կոխեցին ու այս բանս չներեցին, անոնք Տրանսիլուանիոյ վերին Կառավարութեան ու նոյն իսկ կայսեր դիմեցին. պատճառ բերելով, որ եթէ մէկուն ներուած է Եղիսաբեթուպոլիս բնակիլ, ներուած է նաեւ մէկալին։ Բաց ասկէ կասկածելի ցուցուցին զազգայինները տէրութեան առջեւ։ — Ու իրօք — ինչպէս պիտ՚որ տեսնենք — այս բանս գլուխ հանեցին։ — Թէպէտ ազգայինք ջանացին ամէն կերպով իրենց արտօնութիւններէն ցուցընել, որ այս բանս չի կրնար ըլլալ, բայց իրենց վախճանին չհասան։ Բանը բանէն անցած էր։*

*Ասոր նկատմամբ առաջին յաջող քայլն առաւ Լատիզլաւոս Տօրտայի հունգարացին, դարուս առաջին քառորդին մէջ* (1811)*։ Աս կա-*

լուածատէրն, Եղիսաբեթուպոլսոյ բնիկ ըլլալու փափաքելով՝ խնդրեց ազգայնոցմէ, որ զինք քաղաքացի ընդունին։ Երբ Հայք այս բանս չընդունեցան, աղերսագիր մը գրեց վերին իշխանութեան եւ Վեհափառ կայսեր։ Արքունիքէն իրեն հրաման եկաւ, որ Եղիսաբեթուպոլիս կարենայ մտնել եւ հոն ազատապէս բնակիլ։

Հասարակութիւնն այս անլուր բանին վրայ սաստիկ այլայլած, կայսեր դիմեց։ Բայց ի զուր։
— Եղիսաբեթուպոլսեցիք՝ ալ սկսան արքունեաց առջեւը կասկածելի երեւնալ։ Իրենց մեծութեան ոսկեդարն սկսաւ կամաց կամաց իջնալ։
— Աղերսագիրը՝ զոր Վեհափառ կայսեր գրեցին, թէպէտ շատ հիմնովին կերպով ու պատճառաբանութեամբ յօրինուած էր՝ ընդունելի չեղաւ։

Աղերսագրին բովանդակութիւնը համառօտելով, անոր մէջէն քանի մը էական կէտ ընթերցողաց առջեւը կը դնեմ։

“Մեր խոնարհ աղաչանքը Մեծափառութեանդ գահոյից առջեւը դնելով . . . կը խնդրենք որ մեր գանգատը գթութեամբ ընդունելու բարեհաճիք . . .։

“Շոմոկյօմցի երկրատէր մը — Լատիզլաւոս Գօրտայի — ասկէ տասը տարի յառաջ, առանց մեկուն ընդդիմանալուն, մեր քաղքին մէջ տներ գնեց . . .։ Մեր հիւրերը սիրով կ'ընդունինք, ինչպէս որ կը վայելէ, եւ ինչպէս որ պարտականութիւննիս է . . .։ Բայց Լատիզ. Գօրտայի ասով գոհ չըլլալով, մանաւորութիւն մը կ'ու-

զէ։... Դրանսիլուանիոյ վերին կառավարութեան դիմեց, այն նպատակաւ, որ մենք զինք հայ քաղաքացի ընդունինք. եւ կամ ուրիշ խօսքով՝ որ հայ ըլլայ։ Նոյն աղաչանաց թուղթը կառավարութիւնը մեզի խրկեց։ Եւ մենք հարկաւոր տեսանք, աստ վրայօք մեր երդուեալ հասարակութեան կարծիքը լսելու։

"Ասիկա իր դիտողութիւններն ընելու չյապաղեցաւ. զոր անմիջապէս մեծապատիւ կառավարութեան խորհրդին խրկեցինք։ Սակայն կառավարութիւնն այն հրամանը տուաւ մեզի, որ առանց յապաղելու զՆատ. Դօրտայի հայ քաղաքացի ընդունինք։ — Այս անակնկալ որոշումը մեր վրայ այն ցաւալի ազդեցութիւնն ըրաւ, որ յիշեալ աղան, մեր յատուկ ստացուածքին վրայ յարձակելու կը ճգնի։ — Ուստի եւ նորէն դիմեցինք վերին կառավարութեան, խնդրելով որ այս որոշումն ոչնչացընէ, ապա թէ ոչ՝ վեհափառութեանդ դիմելու պիտի ստիպուինք։ Սակայն վերին կառավարութիւնն՝ երկրորդ անգամ յառաջ բերած պատճառներն ալ ոչինչ համարելով՝ իր որոշումէն ետ չկեցաւ։ Եւ նորէն հրամայեց, որ զՆատ. Դօրտայի քաղաքացի ընդունինք, ապա թէ ոչ այս բանս քաղաքական գործք (politicum) պիտի համարուի։

"Վեհափառ Տէր. Հին ճշմարտութիւն մըն է, թէ անկարելին ուզողը ոչինչ կ'ուզէ։ — Լատիզլաւոս Դօրտայի, կա՛մ զան կ'ուզէ, զոր արդէն իրապէս ունի. եւ կա՛մ ըստ բաւականի

չէ ըմբռնած՝ ինչ որ փաստկածէն վեր՝ կ'ուզէ։
— Կ'ըսէ, թէ, զա՛ն կ'ուզէ զոր արդէն ունի։ Ասկէ կը տեսնուի, որ չ'ուրանար 1. թէ մեր քաղքին մէջ ազատապէս տներ գնեց. 2. թէ առանց ընդդիմութեան, քաղաքն ա՛ն ստացուածքներն ըստ օրինի եւ ըստ պատշաճի վրան անցընել տուաւ. եւ թէ զասոնք, առանց վրդովման՝ անկախութեամբ կը վայելէ. 3. թէ՝ իր ստիճանին համեմատ մեր երդուեալ հասարակութիւնն իրեն պարտուպատշաճ պատիւը կ'ընէ։ Վասն զի ամէն շնորհմունքներուն նկատմամբ՝ հաւասար է ամէն քաղաքացեաց. եւ առանց արգելքի մը՝ մեր վաճառանոցին մէջ կրնայ գնել ու ծախել։ Մեր ջաղացքները կը գործածէ։ Իր դուարները՝ մեր հօտերուն մէջ եւ իր ձիերը՝ մեր ապաստաններուն մէջ, մեր արօտատաններուն վրայ կ'արածին։

"Երբ մենք յօժարակամ Լատ. Գօրտայի աղային ընդունելութեան նկատմամբ ասանկ յայտարարութիւն ընելու կը համարձակինք, յայտնի է թէ մենք չէ՛ թէ միայն յիշեալ աղային փափաքը, հապանաեւ մեր տէրութեան օրէնքներն ալ կը կատարենք։ Ուստի ո՞վ կրնայ զմեզ ամբաստանել թէ ընդունուած օրինաց Գ. Մասին, ՁԱ. Գլխոյն, Ա. յօդուածին դէմ աքացել կ'ուզենք։

"Արդ՝ եթէ մենք արգելք մը չդրինք որ Լատ. Գօրտայի մեր քաղքին կենդրոնը՝ տուն գնէ, զանիկա ըստ օրինաց իր վրայ անցընէ, մեր վաճառանոցին մէջ ազատապէս գնէ ու

ծախէ, մեր ջաղացքները գործածէ, իր դուարները՝ մեր դաշտերուն վրայ արածէ, մեր եկեղեցւոյն մէջ իր ջերմեռանդութիւնն ըստ կամի կատարէ. — Ի՞նչ բանի վրայ կրնայ տժգոհ ըլլալ: Որովհետեւ ամէն բան ունի, ինչ որ կրնայ ունենալ:

"Բայց թերեւս ուրիշ բաներու կը բաղձայ: Եւ այն ատեն կը հարկադրինք ըսելու, թէ այնպիսի բանի մը կը փափաքի, որուն անկարելիութիւնն ըստ բաւականի չէ հասկցած:

"Առանց շնորհակալութեան զգացման չենք կրնար չյիշել՝ Վեհափառութեանդ նախնեացը մեզի համար ըրած շնորհմունքները. սկսեալ Կարոլոս Զ.էն՝ մինչեւ Լէոպոլտոս Բ.: Մեր երջանկութեան առաջին հիմնաքարը դրաւ Կարոլոս Զ. — զոր աճեցնելով՝ կատարելագործեց մեր մեծ տիկինը՝ Մարիամ Թերեզիա: Աս Վեհապետէն ընդունեցան մեր պապերն այն արտօնութիւնը, թէ Պաշպալովի կալուածատէրութիւնը — ուրիշ ամէն ազգայնութիւններն անկէ դուրս հանելով — տրուած է միայն Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց: Ուստի այս երկիրը՝ մենք — իբրեւ մեր պապերուն օրինաւոր եւ բնական ժառանգներն — այնպիսի օրինօք ունինք, որ զանիկա օտարաց վրայ չենք կրնար անցընել: — Ուստի եթէ Լատ. Գօրտայի, մեր քաղաքացեացը մէջ ընդունուելով — տէրութեան ու բնութեան օրէնքները մոռնալով — կը ջանայ այս անդիմադրելի շէնքին անկեան քարը շարժել, յայտնի է թէ անկարելի բան կ'ուզէ:

"Ամէն ժառանգութիւն, ժառանգներուն սպառելէն ետեւ՝ երկրին այն տիրոջն անցնելու է, ուսկից որ ժառանգութիւնն եկած է։ Այսպէս՝ Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց սպառելէն ետեւ՝ Պաշպալովի կալուածատէրութիւնն իր սկզբնական տիրոջը՝ Վեհափառութեանդ տանը դարձուելու է։ Եթէ մենք, Լատ. Գօրտայիի օրինակին հետեւելով՝ Հայոց ժառանգութեան մասնակից ընէինք օտարազգիները՝ այն ատեն, չէ՞ինք համարուիր արդեօք, թէ ջանալ կ'ուզենք որ այս կալուածատէրութիւնն իր նախնական տիրոջ ձեռքը չանցնի։

"Ուստի իրաւամբ կրնանք զարմանալ Գրանսիլուանիոյ վերին կառավարութեան խորհրդին եւ Վեհափառութեանդ ատենադպրին այն որոշմանը վրայ, որ այս նիւթն իբրեւ քաղաքական խնդիր համարելով՝ զմեզ — երկու տողով մը — այս մշտատեւ ժառանգութենէն, այս կալուածատէրութենէն դուրս հանել կ'ուզեն...։

"Ա՛ս է զոր Վեհափառութեանդ առջեւը դնելու համարձակեցանք...։

"Շատ դէշ կը դատեն անոնք, որոնք որ զԼատ. Գօրտայի հայազգի չընելէն՝ կը հետեւցնեն թէ մենք, Հայերս, ազգատեաց ենք։... Բաց է մեր փոքրիկ քաղաքն ամէն պատուաւոր մարդու։ Բայց թէ մենք, մէկը մեր մէջը սիրով ընդունելէն զատ, զանիկա նաեւ մեր ժառանգութեան մասնակից ընենք, եւ մեր ժառանգներուն ստացուածքն օտարներուն տալով՝ մեր օրինաւոր ժառանգները, ժառանգութենէն զրկենք

— զաս չենք ըներ։ Աս բանս Աստուած կ'ատէ, եւ օրէնքները կ'արգելուն։

“Ուստի ծունր դրած կը պաղատինք, Վեհափառ Տէր, բարեհաճեցէք, այս խիստ վտանգին մէջ... մեզի օգնութեան հասնելով՝ զմեզ մխիթարել ու երջանկացընել։ Որով ամէն Եղիսաբեթուպոլսեցի ազգային, բարձր ձայնիւ գոչէ իր թոռներուն թէ, ինչ որ Կարոլոս Զ. սկսաւ, Մարիամ Թերեզիա՝ շինեց, Յովսէփ Բ. պահեց, Լէոպոլտոս Բ. զարդարեց — զանիկա Փրանկիսկոս Ա. անմահացուց...„ : —

Սակայն աս աղաչանաց թուղթն արդիւնք մը չունեցաւ. կարելի է անոր համար, վասն զի շատ իմաստութեամբ գրուած էր։ — Ընդհակառակն նորէն հրաման եկաւ Եղիսաբեթուպոլսոյ քաղաքաբաշխութեան, որ թէ՛ զլատիզլաւոս Գօրտայի եւ թէ՛ որ եւ է օտարազգի, որ կը փափաքի քաղաքացի ըլլալ՝ անմիջապէս ընդունուի. եւ քաղաքային պաշտօնի ատակ եղողներն՝ ըստ կարողութեան պաշտօնի առնուին։

Ասոր վրայ շատ վշտացաւ թէ՛ քաղաքն ու թէ՛ հասարակութիւնը. բայց բան մը չէր կրնար ընել։ Համբերելու եւ լռելու էր։

Արձանագրութիւններէն մէկուն մէջ դառնապէս կը գանգատի հասարակութիւնն այս բանիս վրայ։ Բայց անօգուտ տեղ։ —

Անկէ ետքն օտարականները՝ չէ՛ թէ միայն առանց արգելքի եւ ընդդիմութեան քաղաքացի կ'ընդունուէին, այլ նաեւ առանց խտրութեան քաղաքային պաշտօններու մէջ ալ մտան։

Այսպիսիներուն համար հարկ եղաւ որ քաղաքը նոր երդման ձեւ մը յօրինէ։

"Գիտութիւն ըլլայ ապագայի Մակիսդրադին ու Հասարակին, դէ հետեւեալ Formulaն Juramenti concivilitatis[1], անոր էտէվանց, որ շօմօտիումի Գօրտայի Լասլօն զիրեն փափակը, վասն զի քաղքըցի դարնար, մեր Հասարակութիւնն ամենայն սօյ ընդիմութեանը քով ալ արաչ տանելու չի դադրելով, վերչապէս գթած խօնթիքարութեանը մօտէն հրաման եկիլ է, որ անպատճառ քաղքըցի ներս արնըվի, ex homagiali obsequio գըլօխ ճիկած է[2]։ Եւ ան ժամանակը հէտէվեալ Formulaն շարադրած է Caeterum, դէ Supplicante որպիսի Conditio յով նեսարած է[3]? Ալվի անոր էտէվանց հէտէվեալ de Sessione 25 Januarii 822 Nroqu. Protocolli Oecomenici 43 առած improtocollatioյէն կ՚երէվի[4]„։

Ահա հունգարերէն երդման ձեւին թարգմանութիւնը։

"Ես Ա. Ա. կ՚երդնում կենդանի Աստուծոյ, Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. Ս. Երրորդութեան, երանուհի Կոյս Մարեմայ եւ ամէն սրբոց անուան վրայ, որ այս ազատ թագաւորական Եղիսաբեթուպոլիս քաղքին հաւատարիմ

1 Քաղաքացի ըլլալու երդման ձեւը։

2 Հաւատարիմ հպատակութեամբ գլուխ ծռած է։

3 Շարադրուած է, ինչպէս ուրիշներուն, թէ աղաչաւորն ինչ պայմանաւ քաղաքացի ընդունուած է։

4 1822 յունուար 25 եղած տնտեսական ժողովոյն արձանագրութեան, 43 թուէն կ՚երեւայ։

քաղաքացի պիտի ըլլամ: Որ. քաղքին, որ եւ է յառաջ գալու եւ վրաս իյնալու ծանրաբեռնութիւնը սիրով պիտի կրեմ: Առաջնորդները պիտի պատուեմ, իրենց հնազանդ պիտի ըլլամ: Քաղքին սահմանադրութիւնն եւ ամէն կանոնադրութիւնները պիտի պահեմ եւ ընդ հակառակն ամենեւին բան մը պիտի չգործեմ, ինչ որ անոնց՝ եւ յանուանէ քաղքին արտօնութեանցը դէմ կրնայ ըլլալ. ոչ ուղղակի եւ ոչ ուրիշներու ձեռօք՝ ըլլայ գործքով կամ խորհուրդ տալով եւ կամ գրգռելով: Կալուածատէրութեան որ եւ է անունով անուանուած եւ Վեհափառութիւններէն տրուած արտօնութեանց համեմատ, միայն Հայոց տրուած առանձնաշնորհութեանց եւ իրաւանց վրայ ամենեւին աչք պիտի չտնկեմ. անոնց վրայ իրաւունք ունենալ պիտի չբաղձամ: Այսպէս օգնէ ինծի Աստուած. եւ այսպէս տայ իմ հոգւոյս փրկութիւնը:„

Օտարազգի պաշտօնատէրաց երդման ձեւը:

“Ես Ա. Ա. կ՛երդնում յանուն ամենասուրբ Երրորդութեան Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. Սրբուհւոյ Կուսին Մարեմայ եւ ամէն սրբոց անուան վրայ, որ իմ Վեհափառ իշխանիս հաւատարիմ եւ հնազանդ պիտի ըլլամ. եւ վերին հրամանները նուիրական պիտի համարիմ: — Կը խոստանամ նաեւ, որ այս ազատ եւ ազնուական Եղիսաբեթուպոլիս քաղքին խորհրդին եւ առաջնորդացը հաւատարիմ քաղաքացի պիտի ըլլամ: Քաղքին օգուտը յառաջ պիտի տանիմ եւ անոր վնասը բոլոր զօրութեամբ

հեռացընելու պիտի ջանամ։ Այսպէս օգնէ
ինծի Աստուած. եւ այսպէս տայ իմ հոգւոյս
փրկութիւնը։„

Գրագիրներուն երդման ձեւը։

"Ես Ա. Ա. կ'երդնում ամենակարող Աս-
տուծոյ, Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ.
Ս. Երրորդութեան. երանուհւոյ Կուսին Մա-
րեմայ. եւ ամէն սրբոց անուան վրայ։ Այն-
պէս օգնեն ինծի եւ այնպէս տան իմ հոգւոյս
փրկութիւնն, որ ես իբրեւ գրագիր, մեծապա-
տիւ դատաւորին եւ ազնուամեծար խորհրդին ու
քարտուղարներուն հաւատարիմ պիտի ըլլամ։
Ամէն պատահելի դէպքերուն մէջ, ազնուա-
մեծար խորհրդին եւ մեծարգոյ հասարակու-
թեան գաղտնիքները պիտի պահեմ եւ ամե-
նեւին մէկու մը պիտի չյայտնեմ։ Եւ ինչպէս որ
քաղքին վնասն ամէն զօրութեամբ հեռացընե-
լու՝ անանկ ալ իր օգուտն ամէն զօրութեամբ
յառաջ տանելու պիտի ջանամ։ Ինծի տրուելու
յանձնարարութիւնները պիտի կատարեմ. եւ
յանձն առած պաշտօնս ճշդիւ պիտի կատարեմ։
Աստուած ինծի այնպէս օգնէ. եւ այնպէս տայ
իմ հոգւոյս փրկութիւնը։„ —

Այն ազգայնոց համար, որ Եղիսաբեթու-
պոլիս գալթելով հոն կը հաստատուէին՝ քա-
ղաքը յաջորդ երդման ձեւը շարադրեց։

"Formula Juramenti Նոր եկող Հայոց։

Ես N. N. կու էրփընամ արաջի ամենա-
կարողին Աստուծոյ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն
սրբոյ, ինչպէս որ ես Austria ի գըթաց կայսերին

հալալ պիլամ, խոստանալով նորէն հաւատարմութիւն եւ հնազանդութիւն։ Նոյնպէս կու խոստանամ թէ այս Էլիզաբեդայ քաղաքիս Գ. Մակիսդրադին եւ Գ. Առաջնորդացը հընազանդ քաղաքացի պիլամ եւ զառաջ երթալը իմ ուժիս գօրայ առաջ պի տանիմ ու ըզզէնը հերացընէլու պի ջանամ։ Աստուած ինծիկ ամպէս օգնէ. ու ամէն սուրբ։„

Քաղքին հոգաբարձուն, յաջորդ կերպով կ՚ընէր իր երդումը.

"Formula Juramenti Provisoris deponendi.[1]

Ես (անուն) կու էրփընամ անուն ամենակարողին Աստուծոյ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. երեք անձինք եւ մէկ Աստուած. Տիրամայր սուրբ Աստուածածին եւ ամենայն սուրբք Աստուծոյ այնպէս օգնին ինծիկ եւ զհոգւոյ փրկութիւնս տան, ինչպէս որ ես հնազանդ պիլամ Գ. Ա. Գիրօվին, Գ. Մակիսդրադին, նաեւ Ա. Սուդաշին։ Եւ ինչ ալ օր հրամայվի ինծի Գ. Ա. Գիրովէն կամ Գ. Հասարակէն նայ, ըստ Պարտականութեանս սիրով եւ հնազանդութեամբ վերջ պի տանիմ։[2] Եւ ինչ ալ օր զիմ պաշտօնս կու պատկանի, զան սըրտանց եւ հալալութեամբ պի կատարիմ։ Թէ օր ուրեք մը իմանայի կամ օզկայէն լսէի թէ Գ. Հասարակին շահմ̃ն, կամ Աստուած մի արասցէ զէնմ̃նայ գար, նայ, զարաս[3] եւ արանծ ուշանալու Գ. Ա. Գի-

1 Ցնտեսին, հոգաբարձուին ընելի երդման ձեւը։

2 Գլուխ կատարեմ, ընեմ։

3 Անմիջապէս, շուտ. լեհերէն է։

րովին իմաց պի անիմ. եւ ինչ օր ընդրէկ ուժըս եւ կարողութիւնս տանի, ճակդ պի անիմ գշահըն հասարակինը արաջ տանէլու եւ զզէնը հերացընէլու։ Զմօրըսդանը ընդրէկ Dominium-ինը սերտ սերտ visitat պանիմ։ Թէ օր իքմը praevaricatia իմանայի... եւ վօվալ օր ըլար զան ալ զարաս իմած պանիմ եւ մարդույալ kedvezüit[1] չիպի անիմ. այլ որպէս պարտականութիւնս բերէ, զամենայն բանը, ինչօր պարտականութիւնս կու ցուցնու, պի լըմնցնում։ Աստնց քովլ, ինչ ալ օր Պ. Ա. Պիրօվը, կամ Պ. Մակիսդրադը, ամպէս secret[2] բան մը ինծի յայտնէր կամ ապըսպըրէր օր վերջ տանիմ, նայ, զնույնը մարդույալ չիպի տարածիմ, այլ in Secreto վերջ պի տանիմ։ Այնպէս ինծի օգնէ Աստուած եւ ամենայն սուրբք։„ —

Իսկ բնիկներն, (1790—1810) անանկ կերպով կ'ընէին երդումն, որ թէպէտ յէականս ուրիշ տեղ յառաջ բերուած (Տես Հատ. Ա., էջ 468—474) երդման ձեւին հետ գրեթէ նոյն է. բայց իշխանութիւնն անոր մէջ նոր բացատրութիւններ աւեցընելով՝ կ'երեւայ որ հարկաւոր տեսած է, թէ մինչեւ այս կողմերը տարածուած գաղղիական յեղափոխութեան վնասակար արմատներուն ջիղերն ալ փրցընէ։

"Formula Juramenti Suae Matti. SSmae. deponendi.[3]

---

1 Շնորհք ընել, աչք գոցել. հունգ. է։

2 Գաղտնի, գաղտնիք։

3 Մեծափառ. ինքնակալին ընելու երդման ձեւը։

Ես N. N. կու էրֆընամ՝ անուն ամենակարօղին եւ լըման հօգօվ կու խօստանամ, մեր գըդած կայսերին էրկուսում Leopolduշին, ընտրած հրօմայու խօնթիքարին, Ungariaյու, Bohemiaու եւ այլն արաքելական թաքաւորին եւ Transilvaniaյու Princessին, թէ վերոյ գովեալ թաքաւորին եւ մնացգորդին[1] եւ իմ արաջնորդացըս, բոլոր կենացս մէջ հաւատարիմ խոնարհ ծառայ պիլամ։ Իմ թաքաւորիս եւ հետեւօղնուն կացութեանը, արժանաւորութեանը, երկըրնունը կամ արաչնորդացըս ընդէմ, ոչ ծածուկ եւ ոչ բաց քան ինչ քիչ խուծածով ըլալու չի պի ջանամ, կամ օզկանուն ատ կերպիվը ժաժէլու պատճառ, խըրատօվ կամ ընկերօղ չի պիլամ։ Հաթէ, թէ օր զօզկաներըն ալ ընդէմ ջանալու իմանաի, կամ թաքաւորիս եւ մնացգորդնուն ընդէմ կամ էրկըրնունը կամ արաջնորդացըս զին մը որեւիցէ կէրպիվ թէ կարնայ հանդըպելու, հասգընայի, զանպիսինըրը կամ ես մէնը կամ օզկային ապօվ կանըխեկանց պի իմացնում։ Մինչեւ ան ատեննալ, բոլոր ուժովըս զնոյն զարարութիւնը արգիլելու եւ հետ վերցընելու պի ջանամ։ Այլ կերպիւ իմ թաքաւորիս եւ իւր մնացգորդնուն, նաեւ արաջնորդացս աղէկն բոլոր ուժովըս արաջ պի տանիմ։ Այնպէս ինծիկ աստուած աջօղէ եւ իմ հոգոյ փրկութիւնս տայ։,

*

1 Ժառանգ, յաջորդ։

